# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԻԴ.

# ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՔ

# ՆԱԽՆԵԱՑ ՌԱՄԿՕՐԷՆԻ ՎՐԱՅ

ՄԱՍՆ Ա.



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1897.

# ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՔ

# ՆԱԽՆԵԱՑ ՌԱՄԿՕՐԷՆԻ ՎՐԱՅ

ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ ԵՒ ՔԱՂՈՒԱԾՔՆԵՐ

ԳՐԵՑ

Հ. ՂԵՒՈՆԴ Վ. ՅՈՎՆԱՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷ.

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

## ՌԱՄԿՕՐԷՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՏԵՏՐ Ա.

*Ն. Շնորհալի, Մ. Հերացի, Գոնիոս Անատողիոս, Հայ Բժշկականութիւն եւ հին Բժշկարանք, Սմբատ Սպարապետ, Ռամկագիր Եկեղեցականք եւ Դիւանականք:*



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1897.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ*

Հայերէն գրութիւնք լեզուի նկատմամբ՝ երեք այլեւայլ կերպարանօք կ'ելլեն մեր առջեւ, որ են՝ Գրաբարն, Նախնեաց ռամկօրէնն, եւ այժմու Գաւառականք՝ յորոց երկուք միայն գրաւոր են, այն է Տաճկահայոցս (արեւմտեան) եւ Ռուսահայոց (արեւելեան) բարբառք: Շատ մատենագիրք բազմաթիւ գրուածովք զանազան տեսակէտներէ զբաղած են առաջնոյն, ոչ սակաւք իրենց աշխատասիրութեանց նիւթ ըրած են երրորդէն՝ Տաճկահայոց բարբառն, զոր ի վերջին ժամանակս Արդի գրաւոր լեզու կը կոչենք: Իսկ երկրորդն կամ Նախնեաց ռամկօրէնն, թէպէտ յընդհանուրն այլեւայլ քննութեանց եւ խորհրդածութեանց նիւթ եղած է ըստ բաւականին, սակայն ոչ այնչափ մանրամասն՝ որչափ նիւթոյն կարեւորութիւնը կ'արժէ: Բայց յայսմ՝ մասին զարմանալին է՝ շատերուն եւ բանասիրաց իսկ իբր խոտան ինչ եւ անպիտան նկատելը, մանաւանդ թէ արհամարհանօք եւ ծուռ աչօք նայիլը:

---

* Հետազօտութիւնքս, որոնք նախ մասն առ մասն լոյս տեսած էին «Հանդէսի» մէջ (սկիզբը տես «Հանդ.» 1888, Թ. 1), լոյս կը տեսնեն առանձին գրքոյկով՝ աւելի ճոխացած յաւելուածներով: Լոյս տեսնող այս Ա. Մասն լիովին տպագրուած էր այժմ հանգուցեալ Հեղինակին կենդանութեան ատեն եւ անոր խնամովք: Բ Մասն՝ որուն մեծագոյն մասին տպագրութիւնն ալ Հեղինակը հոգացած էր, տակաւին լիակատար աւարտած չէ տպագրութեամբ, բայց քիչ ժամանակէն նոյնպէս լոյս կը տեսնէ:

Ոչ այլ ինչ մեկնութիւն կարող ենք գտնել այս երեւոյթին, եթէ ոչ՝ ըսել թէ գլխաւոր եւ գուցէ միակ պատճառն է իր միջինդարեան նկարագիրն, որով ի հարկէ հաղորդ գտնուելու էր բախտի ամենայնի՝ որ ինչ միջինդարեան է: — Դասական հնութեան սիրողք կ՚արհամարհեն յամենայնի զմիջինդարեան, վասն զի զուրկ է իրենց աչուին շլացընող շողուն պայծառութենէն՝ զոր իրօք ունի դասականն հնութիւն. կ՚արհամարհեն նոյնպէս նորութեանց սիրահարեալք, որովհետեւ տարբեր է իրենց վարժածէն եւ հաճոյականէն:

Այսպէս է ճշդիւ նկատմամբ առաջարկեալ նիւթոյս. եւ յայսմ՝ մասին կատարելապէս կը միաբանին հնասէրք եւ նորասէրք, կամ՝ թէ ըսենք՝ գրաբարասէրք եւ աշխարհաբարասէրք: Առաջինք կ՚արհամարհեն զՆախնեաց ռամկօրէնն, չտեսնելով անոր վրայ հին գրաւորին ճոխութիւնն ու վայելչութիւնն. արհամարհոտ աչօք կը նային նաեւ յետինք, չգտնելով ի նմին իրենց ընտելականին պարզութիւնն ու դիւրիմացութիւնը: — Բայց թէեւ զիջանինք ըստ մասին ինչ իրաւունք տալ երկու կողմանց եւս, սակայն կարծենք թէ իրաւամբք իսկ կարող ենք ըսել թէ երկուքն ալ կ՚անիրաւին այնպիսի լեզուի, որ՝ թող զի ունի իր յատուկ վայելչութիւնն, կարող է մեծ եւ օգտակար ծառայութիւն մատուցանել թէ գրաբարին եւ թէ մանաւանդ արդի լեզուին:

Առ այժմ՝ խօսքը՝ վերջնոյն նկատմամբ ունեցած օգտակարութեան ամփոփելով, ինչպէս կարող էինք արդի լեզուին կազմակերպութեան իւրաքանչիւր յեղաշրջութեան հասու լինել, եթէ առաջի աչաց չունենայինք Նախնեաց ռամկօրէնին դարէ ի դար փոփոխութիւններն: Ուստի՞ կարող էինք իմանալ այնչափ բառերու եւ ձեւերու ծագումն, որ օտար կամ՝ օտարացած են գրաբարէն եւ այնպէս սովորական արդի լեզուին, եթէ չգտնէինք զանոնք Նա-

*խնեաց ռամկօրէնին նաեւ սկզբնական գրութեանց մէջ: Եւ ո՞վ կրնայ չտեսնել թէ ինչպիսի առատ գանձարան է Նախնեաց ռամկօրէնը կարեւոր բառից՝ զոր չունի հին գրաւոր լեզուն. եւ միթէ փո՞քր շահ է արդի լեզուիս նոյնպիսեօք աճեցընել իւր բառից մթերքն՝ որ այնչափ պակասաւոր է: Վերջապէս արդեօք լաւագոյն չէ՞, ի դարման աղքատութեան ձեւոց եւ ասացուածոց այժմու բարբառոյս, փոխանակ օտար եւ մուրացածոյ գրերու դիմելու՝ հանել առնուլ մեր սեպհական յորդաբուղխ ակնաղբերէն, որ այնպէս ձեւաշատ է: — —*

*Բայց երկրիս երեսն ամենայն ինչ փոփոխութեան ներքեւ ինկած է: — Ինչպէս բաւական ժամանակէ ի վեր շատերն իրենց գաղափարը փոխած են միջին դարու նկատմամբ, մինչեւ յիմանս նախընթաց արհամարհանաց յաջորդած է զարմանք եւ զմայլումն. նոյնպէս ի վերջին ժամանակս կը նշմարի ոչ փոքր փոփոխութիւն կարծեաց՝ գէթ առ ուսումնականս ազգիս՝ Նախնեաց ռամկօրէնին վրայ, թէեւ լոկ ի տեսականին: Սակաւ ժամանակէ ի վեր ատ անդ ոմանք թէ գրով եւ թէ բերանացի իրենց ցաւը կը յայտնեն նոյն նիւթոյն այնպէս մոռացեալ եւ լքեալ թողուելուն վրայ, բաղձանք ցուցընելով աւելի ուշադրութիւն եղած տեսնելու: Աստի կարծենք ներկայ գրութեամբս հաճոյական գործ գործել այսպիսեաց, մանաւանդ զի յուսանք այսու գըրքիս ըլլալ այլոց՝ իրենց գրաւոր գործունէութենէն մասն մի նուիրելու հայ գրականութեան այս ճիւղին:*

*Ի սրտէ կը բաղձանք որ այս մեր յոյսն արդեամբք ի գլուխ ելլելով, հմտագոյնք քան զմեզ զբաղին այս նիւթով եւ հաճին զուսումնականս, որք անշուշտ կը ցանկան եւ կը սպասեն ամենայն մասամբք եւ հիմնական գրութիւն մ'ունենալ. ուր մենք կը ճանչնանք եւ կը խոստովանինք իսկ՝ թէ առաջիկայ աշխատասիրութիւնս բաւական չէ անոնց ակնկալութիւնը լիով կատարելու: Վասն զի մտօք չու-*

նինք Նախնեաց ռամկօրէնին ոչ օրինաւոր Քերականութիւնն եւ ոչ լիակատար Գրագիտութիւնն յօրինելու․ այլ այնչափ ինչ միայն պիտի ճաւենք՝ որչափ հարկաւոր է ընդհանուր գաղափար առնալու նոյն բարբառոյն կազմութեան վրայ, եւ այն մասանցն եւեթ պիտի նուիրենք մեր գլխաւոր ուշադրութիւն, որք կապ ու յարաբերութիւն ունին արդի լեզուիս հետ, այն մասանց՝ կ՚ըսեմ՝ զորս եղանակաւ իսկ մեզի սեպհականած ենք կամ՝ որոց մեզի ընտանենալը բաղձալի կ՚երեւայ։

Յուսանք որ ի շնորհս այս մեր յայտարարութեան, եւ միտ դնելով թէ դոյզն գրութիւնս առաջին փորձ մըն է այն նիւթոյն վրայ, չեն մեղադրեր զմեզ ուսումնականք. եւ մենք մեր աշխատութիւնն ըստ բաւականին վարձատրուած կը համարինք, եթէ օրինակ ըլլանք այլոց՝ կատարելագոյն եւ գիտնականագոյն ինչ հրատարակելու, եւ առ փոքր մի հանգանակենք արդի լեզուիս կատարելագործութեան։



# ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՔ

# ՆԱԽՆԵԱՑ ՌԱՄԿՕՐԷՆԻՆ ՎՐԱՅ

## ՆԱԽԱՃԱՌ.

### 1.

Լեզուի մը վրայ խօսիլ ուզողն յառաջ քան զամենայն պէտք է հետազօտել թէ ուստի՛ է եւ երբ անոր ծագումն։ Անշուշտ մեզմէ ալ կը սպասուի այսպիսի հետազօտութիւն Նախնեաց ռամկօրէնին նկատմամբ, զոր կը փորձենք կատարել։ Բայց խնդիրն ըստ պատշաճի լուսաւորելու համար՝ հարկ է որ առ սակաւ մի հեռանանք մեր յատուկ նիւթէն, եւ շատ դարեր վեր ելլելով՝ դիտենք մեր գրականութեան սկզբնաւորութիւնն, որով ըլլալու հետազօտութիւնը կը դիւրանայ։ Յօժարութեամբ իսկ կը մխինք յայս զարտուղութիւն, որովհետեւ այսու կարող ենք ցրել այն ոչ սակաւ մտաց մէջ արմատացեալ կարծիքն՝ թէ Նախնեաց ռամկօրէնն յառաջ եկած է պարզապէս գրաբարէն, որ յընթացս դարուց ի բերան ժողովրդեան ապականելով, հասած է յայն վիճակ՝ յոր կը գտնենք զնա ի վախճան ԺԲ. դարուն։

Յայտնի է թէ որպիսի եւ իցէ լեզու, եւ առանձինն մեր գրաբարին պէս հարուստ, կանոնաւոր եւ ամէն կարեւորօք ճոխացեալ լեզու, ի սակաւ ժամանակի յերեւան չ՚ելլեր։ Աւելորդ է դարձեալ յիշատակելն անգամ՝ թէ կանխագոյն է խօսք քան

զգրաբարն, այսինքն թէ գրաբար լեզուն կ'ենթադրէ խօսեալ լեզու: Արդ գիտենք որ Հայերէն նշանագրաց գիւտին՝ անմիջապէս յաջորդեցին, եւ այն՝ կարճ միջոցի մէջ եւ համեմատաբար ոչ այնչափ բազմաթիւ անձանց ձեռօք, բազմաթիւ մեծամեծ եւ պքանչելի մատեանք՝ ի զարմանս եւ ի հիացումն չորեքտասան դարուց ժառանգացս:

Ասոր բնական հետեւանքն է ըսել՝ թէ նոյն մատենից լեզուն նորահնար չէր, այլ ի հնուց եկած, այն լեզուն էր՝ որով կը վարուէին ժողովրդեան բարձրագոյն դասք, արքունիք, եկեղեցականք եւ ազատանին, այն լեզուն՝ որով իրենց երգերն ու զրոյցները շարադրած էին անուանի երգահանք Գողթն գաւառի, այն լեզուն՝ զոր թէեւ հաւանականաբար չէր գործածեր միջնաշխարհին բոլոր ժողովուրդը, բայց կը հասկընար, իւր սովորական բարբառէն անշուշտ շատ տարբեր չըլլալով: Արդ մեր գրականութեան Նախահարքը, զոր սովոր ենք Առաջին Թարգմանիչք կոչել, ձեռք զարկին այն խօսեալ լեզուն ի գիր առնուլ՝ գրաւոր ընել:

Տարակոյս չկայ որ ասոնց ջանիւքն ու ճարտարութեամբ՝ նոյն ազնուականաց եւ գրագիտաց հին լեզուն կամ բարբառն առաւել եւս յղկուած, յարդարուած, կանոնաւորուած է, միանգամայն ոչ սակաւ ազդեցութիւն ընելով իրենց գրութեան վրայ ծանօթ լեզուք եւս, մանաւանդ յունարէնն: Բայց այս՝ խնդրոյն էութիւնն ամենեւին չի փոխեր, հաստատուն մնալով միշտ՝ թէ առաջին մատեանք որ նշանագրաց գիւտէն անմիջապէս ետքը գրուեցան՝ այն լեզուաւ են, զոր կը խօսէր եւ կամ գէթ կը հասկընար մասն մի նոյն ժամանակի ժողովրդենէն: Վկայ են այսմ ամէն ժամանակակից կամ իբր ժամանակակից պատմագիրք, որ կը հաստատեն թէ յառաջագոյն յիմացուածոյ գրոց կամ ընթերցուածոց զրկեալ ժողովուրդք՝ Թարգմանչաց գրութիւնն անմիջապէս սկսան հասկընալ:

Սակայն եւ ոչ իսկ պէտք կայ դիմելու այսպիսի մակաբերութեանց եւ պատճառաբանութեանց՝ իմանալու համար թէ Թարգմանչաց գրաւոր լեզուն նոյն էր ժողովրդեան մեծագոյն մասին բարբառոյն հետ կամ անոր նման։ Բարեբախտութեամբ պահուած են նշխարք հին հեթանոսական երգոց եւ զրուցաց, որ ճշդիւ յիշեալ գրոց լեզուն կը խօսին։ Արդ այս երգք եւ զրոյցք, ինչպէս գիտենք, բազմաթիւ էին եւ երկայն, եւ թէպէտ հին՝ շատ հին, բայց Թարգմանչաց ժամանակին եւ մինչեւ Ե. դարուն վերջն ի բերան ժողովրդեան կը պտըտէին։ Խորենացի՝ տեղ մը ասոնցմէ քանի մի տող յառաջ բերելով՝ կը յաւելու. "Զայս երգելով ոմանց բամբռամբ՝ լուաք իսկ ականջօք մերովք". (Գիրք Ա. Գլ. ԼԱ.) եւ յայտնի է թէ ժողովուրդն այն լեզուաւ կ'երգէ կամ երգ մուիկ կ'ընէ՝ զոր կը հասկընայ։ Բայց աւելի ապացուցական վկայութիւն բերենք։ Նոյն մատենագիր՝ ժողովրդեան, մանաւանդ թէ գեղջկաց գործածած խօսք կամ առակ մի կը յիշատակէ, որոյ լեզուն թէ՛ երգոց եւ թէ՛ Թարգմանչաց լեզուին կատարելապէս միաբան է։ Շիրակ գաւառին բարեբերութեան եւ Շարայի շատակերութեան վրայ խօսելով՝ այսպէս կը գրէ. "Վասն որոյ արդարանալ թուի առասպելին՝ որ ասէ ի մէջ գեղջկաց. Թէ քո Շարայի որկորն է, ասէն, մեր Շիրակայ ամբարքն չեն"։ (Գիրք Ա. Գլ. ԺԲ։) Կրնայ թերեւս ի հաստատութիւն ասացելոցս առնուիլ նաեւ Բուզանդայ խօսքն, որ կը գրէ Դ. դարու հայ ժողովրդեան վրայ՝ թէ կը սիրէին "զիւրեանց երգս առասպելաց զվիպասանութեանն", անշուշտ ոչ միայն անոնց նուագաց կամ եղանակաց, այլ մանաւանդ խօսքերուն պատճառաւ, զոր ի հարկէ պէտք էին հասկընալ։ (Դպր. Դ. Գլ. ԺԳ։)

## Չ.

Ապա ուրեմն ի Ե. դարու Հայաստանի մէջ կար ժողովրդական բարբառ, զոր ի գիր առնլով Թարգմանիչք՝ ըրին գրաւոր լեզու։ Բայց ենթադրելու ենք թէ այն՝ նաեւ հեռաւոր գաւառաց մէջ ճշդիւ միեւնոյն բարբառը չէր գործածուեր. վասն զի ամէն ժամանակաց եւ ամէն ազգաց լեզուաբանական պատմութիւնն կը ցուցընէ թէ անկարելի է որ հազարաւոր մղոն ընդարձակութեամբ երկրի վրայ բնակող միլիոնաւոր ազգն ամէն կողմ դարերով ճիշդ միեւնոյն լեզուն խօսի։ Աստի կը ստիպուինք հետեւցընել թէ նաեւ ի սկզբան գրականութեանս կային ի Հայաստան զանազան գաւառական (ժողովրդական, ռամկական) բարբառք, որ առաւել կամ նուազ կը տարբերէին արքունեաց եւ եկեղեցականաց, երգոց եւ զրուցաց բարբառէն, զոր Թարգմանիչք, ինչպէս ըսինք, ի գրաւոր լեզու բարձրացուցին։

Բայց չունի՞նք արդեօք նիւթական եւ յայտնի ապացոյց գոյութեան այսպիսի իրարմէ զանազանեալ բարբառոց ի հին եւ ի հնագոյն ժամանակս։ — Թէեւ չեն պակսիր հին ժամանակներէն ակնարկութիւնք՝ որ զայն ցուցընել կ'երեւան, եւ յետին դարուց գրութեանց մէջ կը գտնուի աւելի որոշ եւ բացայայտ վկայութիւն[1]. սակայն ասոնք չեն կրնար կատարեալ ապացուցական զօրութիւն ունենալ։ Ուստի կը մնայ հետազօտել ի գիրս՝ թէ կարելի՞ է արդեօք գտնել անոնց մէջ այնպիսի կէտեր, որ

---

[1] Թուի թէ ասոնք կ'ակնարկէ Կորիւն ի Վարս Ս. Մեսրոպայ, երբ Հայաստանի այլեւայլ կողմանց լեզուն՝ "խոշորագոյն եւ խեցբեկագոյն" կ'անուանէ։ Իսկ յետին դարուց վկայութիւնն է Երզնկացւոյնն, որ քանի մի գաւառական բարբառներ յիշատակելով, անոնցմէ միոյն Ոստանէջ անունն կու տայ, անշուշտ այս անուամբ իմանալով մեր գրաւորին ծնունդ տուողն։ Տես Քնն. Քերակ. Նախաշ. էջ 42—45։ Պտմ. Հայ. Դպր. Բ. Հտ. էջ 61։ Բազմավէպ, 1878, էջ 214։

բաւական ըլլան յայսմ մասին գոնեայ աղօտ նշոյլ մի ցուլացընել: — Փորձենք:

Ա. Ծանօթ է բանասիրաց որ Ս. Մեսրոպայ երիցագոյն աշակերտաց յաջորդող կրտսերագոյն աշակերտք, որոց մատենագրական գործունէութիւնն սկսած է իրենց անմահանուն Վարդապետաց (Սահակայ եւ Մեսրոպայ) մահուանէն ետեւ, իրենց գրուածոց մէջ բաւական յաճախութեամբ այնպիսի արմատական եւ ածանցեալ բառեր կը գործածեն, որ թէեւ օտար բառեր չեն, — ոչ Սամյէտի կամ Քաֆրաստանցիի կամ սերնդոց Քամչաթքացւոց, (ինչպէս կատակով ըսած է անուանի Բանասէր մի,) եւ ոչ մերձաւոր ազգաց՝ Յունաց, Պարսից, Ասորւոց, — այլ բուն հայկական են, սակայն երբեք ի կիր արկած չեն ոչ իրենց ուսուցիչքն եւ առաջնորդք, եւ ոչ երիցագոյն աշակերտակիցք, որ առ կենդանութեամբ Վարդապետացն գրած են: Այնու աւելի զարմանալի կ'երեւայ եւ աչքի կը զարնէ այս զանազանութիւնն՝ որ նոյն բառերէն դէթ ոմանք շատ յաճախ կրնային գործածուիլ: Օրինակ ըլլայ արմատական բառից՝ արփի, ուղարմ, փարթամ, պաճանք, պրոհել, հրճուել . . . եւ ածանցեալ բառերու՝ աղօթել, ողջունել, ուրախանալ, ուրախացուցանել, պատասխանել, գեղջուկ, վաղեմ . . . :

Բ. Դարձեալ, ինչպէս յայտնի է, նոյն կրտսերագոյն աշակերտաց դասէն ոմանք լեզուին մէջ չափազանց հելլենաբանութիւն մուծանելով, բաց յայլոց նորութեանց՝ շատ ածանցներ հնարած են սկզբնական մասնիկներով: Արդ այս մասնկանց ոմանք յայտնապէս առնուած են բուն հին հայերէն բառերէ. բայց կան նաեւ այնպիսի մասնիկք, որոց հետքն անգամ չի գտնուիր հնոց մէջ, կամ թէ կարելի չ'երեւար այս կամ այն հայերէն բառէն հանել: Այսպէս կը մակաբերենք՝ թէ արտաբերել, հակասութիւն, ներգործութիւն, գերբերութիւն, ստորագրել... ածանցները ձեւացընող մասնիկներն

առնուած են արտաքոյ, հակառակ, ներքոյ, պարել (շուրջ), արտաքին . . . բառերէն։ Բայց ուստի՞ հնար է հանել բաղդատել, մակերեւոյթ, տրամաբան, փաղանուն . . . ածանցներուն սկիզբը կցած մասնիկներն, որոց նման բառ չկայ հին լեզուին մէջ։

Գ. Վերջապէս Թարգմանչաց ժամանակէն բաւական ետքը, առաւելապէս Նախնեաց ռամկօրէնին գրութեամբ յերեւան ելլելուն մօտաւոր ատենները, կը գտնենք քանի մի շատ գործածական բայերուն այս կամ այն ժամանակին մէջ՝ գրաւորի սովորական հին կազմակերպութենէն օտար ձեւեր, որ կը տեսնուին՝ թէեւ ցանցառ՝ միջին դարուց գրաբար մատենագրութեանց մէջ, եւ յետոյ՝ ըստ ժամանակին յառաջանալուն՝ շատ յաճախած են եւ Նախնեաց ռամկօրէնին մէջ սովորական եղած։ Այսպիսի են. անցա, անց. ելա, ել. էջա, էջ. հասա, եհաս. մտա, եմուտ. կեցա, եկեաց. կացա, եկաց . . . ։ Նոյն կազմութեամբ կրաւորական ձեւեր՝ իբրեւ ներգործական գործածուած. տեսա, ետես. գտա, եգիտ. առա, էառ, առ. հարցա, եհարց . . . ։ Եւ դարձեալ նորանոր ձեւերով՝ տուին, ետուն. դրին, եդին. դրաք, եդաք. լսեց, լուաւ . . . հասէր, հաս. գիտացէր, գիտա. տուէք, տուք. դրէք, դիք. լսեցէք, լուարուք . . . դրեալ, եդեալ . . . երէկ, եկն. երեր կամ ետուր, ետ. եդէր, եդ . . . ։ Իսկ մտնուլ, տեսնուլ, գտնուլ, պրծնուլ, ուտնուլ . . . մտնում, տեսնում, գտնում . . . եւ այլ նմանիք Նախնեաց ռամկօրէնին՝ դեռ այսօր այս կամ այն գաւառականներին սովորական կերպերն են։

Արդ այս երեք կէտերուն մէջ նշանակուածներն եւ ասոնց նմաններն արժանի մտադրութեան երեւոյթք են, որ ի հարկէ մեկնութիւն պիտի ունենան։ Ըսել՝ թէ հնոց մէջ չգտնուած բառերն ամէնէն յառաջ գործածողներն ինքնին հնարած են, ոչ յանդուգն միայն՝ այլ նաեւ յիմարական կարծիք կ՚ըլլար, մանաւանդ երբ արմատական բառերու

վրայ է խօսքն։ Նոյնպէս անհնար է մտածել՝ թէ բայերու ժամանակաց նորաձեւ կերպարանքն հին գրաւորին անհմտութենէն ծագած է, ուր զի ատոնց հետ միահաղոյն գործածուած կը գտնուին նաեւ հին ձեւերն։ Ըստ մեզ՝ աւելի պատշաճ կ՚երեւայ ըսել թէ այս ամենայն բառերն ու ձեւերն ի գիրս առաջին Թարգմանչաց չէին գտնուիր, վասն զի անծանօթ էին դեռ այն դարուն, կամ այն բարբառոյն՝ զոր հիմն առին գրաւոր լեզուին, յատուկ ըլլալով այլ գաւառական բարբառոց, յորոց յետոյ առին երկրորդ Թարգմանիչք կամ յաջորդ դարուց մատենագիրք։ Թէպէտ կրնայ բայի կազմակերպութեանց մի մասն յընթացս դարուց ձեւացած ըլլալ։

Այս կը զրուցենք ոչ եթէ հաստատելով, այլ լոկ իբրեւ խորհրդածութիւն՝ հետազօտութեան նիւթ տալով բանասիրաց ուշադրութեան։

Բնական է. թէ ոմանք զարմանան վերն, ի վերջ Ա. յօդուածոյն՝ թերեւս նաեւ Բ. եւ Գ. յօդուածոց մէջ՝ յառաջ բերուած բառերուն վրայ։ Ուստի իրերն աւելի լուսաւորել կ՚ուզենք։

Գիտենք թէ յիշեալ բառերէն ոմանք մի կամ երկու անգամ կը հանդիպին նաեւ առաջին Թարգմանչաց գրութեանց մէջ. բայց իրաւամբք կասկածելի կը համարինք վաւերականութիւնը, (բուն անոնց գրչէն ելած ըլլալը։) Անոր համար չվարանեցանք չեղածի տեղ դնել ի գործնականին, իբր առոյգ գուշակելով օրինակողաց անհաւատարմութիւնն եւ անճշդութիւնն։ Օրինակ առնունք վերոյիշեալներէն՝ պտտախանել բայն, որոյ սուրբ Գրոց մէջ մի անգամ միայն գտնուիլն, — ուր իբր 900 անգամ առիթ եղած է գործածութեան եւ չէ բնաւ գործածուած, — շատ տարիներէ ի վեր տարօրինակ հետաքրքրական երեւոյթ մի էր մեզի։ Այս միակ գործածութիւնն Յոբայ գրոց հետեւեալ համարին մէջ է՝ ըստ Զօհրապեան տպագրութեան. (Վենետ. 1805.) «Ո՞վ է սոտոխն իմ, որ պտտախանեսցէ ինձ. զխա՞րդ կարկեցայց»։ (Գլ. ԺԳ. 19։) Հարկ եղաւ հետազօտել. եւ աչհաւատիկ արդիւնքն որ ունեցանք։ Քսանուիրեք (18 ձեռագիր եւ 5 տպագրեալ) օրինակաց մէջէն՝ միայն երեքն, (այն է՝ երկու Վենետ. տպգր. 1805 եւ 1860, եւ մեր երեք ձեռագրաց մին միայն) ունին յիշեալ յաւելուածն. ուր

զի մնացեալ (3 տպագիր եւ 17 ձեռագիր) օրինակաց մէջ չկայ ամենեւին, այլ 18ին մէջն հաւասարապէս կը կարդացուի՝ “Ո՞վ է ոսոխն իմ. զի՞արդ կարկեցայց„. — Իսկ երկու օրինակք, այն է՝ Ոսկանեան եւ անոր հետեւողութեամբ Կոստանդնուպոլսեան տպագրութիւնք, կ՚ըսեն ըստ լատինականին՝ “Ո՞վ է ոսոխն իմ, եկեսցէ. զի՞արդ կարկեցայց„[1]:

Կը մնայ ուրեմն “Որ պատասխանեսցէ ինձ„ մասն՝ Հայ օրինակողի կամայական յաւելեալ կապերտն: — Այն ապացուցեալ իրականութիւնն այնու եւս աւելի կը հաստատուի՝ որ ո՛չ եբրայական բնագրին եւ ո՛չ ուրիշ որ եւ է թարգմանութեանց մէջ հետք կ՚երեւայ նոյն անհարազատ յաւելուածոյն:

Ի վերջոյ այս եւս կը յաւելունք: Որովհետեւ մեր խօսքն այստեղ բառերու ընտիր կամ խոտան ըլլալուն վրայ չէ, որ այս գրութեանս նպատակէն բոլորովին դուրս խնդիր է, այլ միայն՝ դաս մի բառից այս կամ այն մատենագրաց մէջ գտնուելուն եւ չգտնուելուն վրայ, — անոր համար թէեւ յառաջ բերուած բառերէն մին կամ միւսն արդեամբք իսկ գտնուի առաջին Թարգմանչաց գրութեանց մէջ, սակայն եւ այնպէս մեր ապացուցութեան զօրութիւնն չի նուազիր: Վասն զի միշտ կը մնան շատ մը գործածական բառք, զոր առաջինք յաճախ իսկ առիթ ունենալով՝ չեն ի կիր արկած, եւ յաջորդք ի կիրառութիւն մուծած են անխտիր: Այս է խնդրոյն էութիւնն, եւ յայս կը յենու մեր ապացուցութիւնն:

Դ. Բայց զանազան գաւառականաց գոյութեան շատ աւելի յայտնի նշան եւ ապացոյց կրնան համարուիլ Նախնեաց ռամկօրէնին անհամար բառերն ու կազմակերպութիւններն, որ ամենեւին չեն տեսնուիր հին ժամանակուան՝ ըստ մասին եւ ոչ իսկ միջին դարուց՝ գրաբար գրուածոց մէջ: Ասոնք չեն կրնար ռամկագիր հեղինակաց ինքնաստեղծ բառերն ու ձեւերն ըլլալ. այլ ի հարկէ իրենց ծննդեան կամ բնակութեան տեղւոյն ժամանակակից ժողովրդական բառերն ու ձեւերն ըլլալու

---

[1] Զօհրապ՝ որ նշանաւոր է ի հաւատարմութեան մասին, եւ այս տեղ իբր օրինակաց տարբերութիւն՝ նշանակած է միայն Ոսկանի եկեսցէն, չյիշատակելով ամենեւին այլ տարբերութիւն, հարկ է ըսել թէ ձեռագրաց այս համարն աչքէն փախեր է:

*են, զոր իւրաքանչիւր ի գրուածս իւր մուծած է։ Նոյնն ըսելու է նաեւ կերպ կերպ յատուկ ասացուածոց, միանգամայն ոճմանց եւ ամփոփմանց վրայ, որ այնպէս մեծ դեր կը խաղան ռամկական գրութեանց մէջ։*

*Կարծենք թէ այսչափ բաւական է մեծ հաւանականութեամբ հաստատելու՝ թէ կային ի Հայս զանազան գաւառական բարբառք, որ գրաւոր լեզուին հետ եւ անկէ անհամեմատ առաւելութեամբ կենդանի մնային ի ժողովրդեան յընթացս դարուց, գրաւորն կարող չըլլալով զանոնք անհետացնել եւ միակ տիրող ըլլալ։ Այս է ընդհանուր պայման ամենայն լեզուաց, որմէ չունինք պատճառ ի բաց առնլոյ հայ լեզուս. եւ թէ իրօք բացառութիւն եղած չէ՝ կը վկայէ գաւառական բարբառոց այժմու գոյութիւնն եւս։ Ստոյգ է՝ անդստին ի սկզբանէ գրականութեան մեծ ջանք եղած եւ սաստիկ փոյթ տարուած է՝ թագաւորական հրամանօք եւ արքունի գանձիւք իսկ՝ գրաբարը տարածելու եւ ժողովրդեան ընտանի ընելու. սակայն եւ այնպէս ամէն կողմ ժողովրդեան մեծագոյն մասն պահած է իւր գաւառական այլեւայլ բարբառներն, թէեւ ի միոյ կողմանէ օրըստօրէ աւելի աղաւաղելով, ինչպէս բնական է ամէն ռամկական բարբառոց, եւ ի միւս կողմանէ առաւել կամ նուազ աստիճանաւ գրաւորին ազդեցութիւնը կրելով։*

*Այսպէս եղած է ի սկզբանէ եւ այսպէս կը շարունակէ միշտ՝ ոչ առ մեզ միայն, այլ նաեւ առ այլ ազգս։ Այժմու կենդանի լեզուաց մէջէն՝ օրինակի համար՝ յիշենք միայն երկու երեք գլխաւոր եւրոպական լեզուները։ Գաղղիոյ, առաւել եւս Գերմանիոյ եւ մանաւանդ Իտալիոյ մէջ, ոչ ի գիւղս, յաւանս եւ ի գաւառաքաղաքս եւեթ, այլ եւ ի մայրաքաղաքս իսկ, ժողովրդեան միոյ մասին բերանը տիրող են գաւառական կամ ռամկօրէն բար-*

բառք։ Եւ եթէ համեմատենք հին ժամանակաց հաղորդակցութեան միջոցներն, ուսմունք տարածելու եւ գրաւոր լեզու սորվեցընելու գրքերն ու դպրոցներն՝ ընդ այժմուս, կը հարկադրինք խոստովանիլ՝ թէ տասնապատիկ, եթէ ոչ հարիւրապատիկ, աւելի դժուար էր Հայաստանի ժողովրդեան գաւառական բարբառոց փոխուելով գրաւորին հետ նոյնանալը, քան թէ վերոյիշեալ նոր ազգացն։

Այս ամենայն առաջի աչաց ունենալով, կը համարինք թէ կարող ենք կնքել հետազօտութիւնն՝ զոր յանձն առինք ընել ի սկզբան գրութեանս առաջարկեալ խնդրոյն վրայ, եւ կ՚ըսենք. Նախնեաց ռամկօրէնն ծագած է Հայաստանի ժամանակակից գաւառականներէն, եւ զանազան եղանակաւորմամբ՝ հին գրաւոր լեզուէն. կամ թէ խառնուրդ է ժամանակակից գաւառական բարբառոց եւ գրաւոր լեզուի։

## 3.

Տեսնենք արդ թէ ժողովրդական կամ գաւառական բարբառոց հետքերը կը գտնուին ի գիրս հին մատենագրաց։

Անցողակի յիշատակած ենք թէ նաեւ ի Ե. դարու կար եւ պէտք էր գտնուիլ՝ նոյն իսկ մեր գրականութեան որորոցին շրջանակն՝ ժողովրդական բարբառ, որ ինչպէս դիտեցինք՝ չէր կրնար մեծ տարբերութիւն ունենալ գրաւորէն։ Արդ այս բարբառն՝ այնպէս ինչպէս կը գործածէր ժողովուրդն՝ ոչ երբեք ի հրապարակ ելած է առանձին ինքնական գրութեամբ, կամ թէ մինչեւ առ մեզ հասած չէ այնպիսի գրութիւն։ Հազիւ թէ կարող ենք վերիվերոյ եւ ըստ մասին գաղափար ունենալ ինչպիսի ըլլալուն՝ հին մատենագրաց մէջ աստ անդ տեսնուած ասացուածներէն, յորս յեցեալ՝ կրցանք համարձակ հաստատել թէ նոյն բարբառն չունէր

մեծ տարբերութիւն բուն գրաւորէն ըստ կազմակերպութեան, ոչինչ օտարութիւն, ոչինչ հակառակ անոր կանոնաց, ոչինչ ասացուած՝ որ բոլորովին անսովոր համարուի գրաւորին մէջ։ — Ըսինք ըստ մասին. վասն զի այն եւս հաւանականութեան սահմանէն դուրս չէ, որ նոյն ժողովրդական բարբառոյն մէջ գտնուէին նաեւ այնպիսի ձեւք եւ բացատրութիւնք, զոր մատենագիրք ժամանակին պատշաճ չեն համարած մուծանել ի գրաւորն։

Զիարդ եւ իցէ, նոյն մատենագրաց մեզի հաղորդածին նայելով, այս գլխաւոր տարբերութիւնը կը գտնենք գրաւորին եւ ժողովրդականին մէջ՝ որ գրաւորին ոճն ընդհանրապէս բարձրագոյն, ծանրագոյն, կանոնաւորագոյն է. իսկ ժողովրդականին յատուկ է ընտանեկան սիրուն կերպ, բնական պարզութիւն, ախորժալուր փափկութիւն։ Եթէ ներեալ է նմանութեամբ խօսիլ, առաջինն ճարտար պարտիզպանի ձեռօք յարդարեալ արուեստական բուրաստան է, երկրորդն՝ բնութեամբ ինքնին ձեւացած ծաղկալից մարգագետին։

Ասոր համոզուելու համար բաւական է կարդալ Ե. դարու գրուածոց հնագոյններէն՝ զՓաւստոս Բուզանդացի, եւ նոյն դարուն յետնագոյններէն՝ զՂազար Փարպեցի, այն երկու մատենագիրներն՝ որոց աշխատասիրութեանց մէջ ամէնէն աւելի կը գտնուին նոյն ժողովրդական կամ ընտանեկան բարբառոյն հետքերն։ Մեր այս գրութեան համար ալ կարեւորութիւն ունին ասոնք[1]. որովհետեւ թէ ըստ առանձին բառից եւ թէ ըստ դարձուածոց՝ մեծագոյն մասամբ անցած են նաեւ ի Ռամկօրէնն

[1] Ասոնցմէ գլխաւորներն ի յաջորդս հետզհետէ յառաջ կը բերենք ըստ տեղւոյն։ Աւելի ընդարձակ եւ մանրամասն տեղեկութիւն ունենալ ցանկացողը, կրնայ գտնել բոլոր Ե. դարու՝ ինչպէս նաեւ յաջորդ դարուց մատենագիրներուն գործածած ժողովրդական եւ գաւառական ասացուածոց մեծ մասը՝ Քնն. Քերակ. մանաւանդ Նախաշաւղին մէջ՝ քերականական կարգաւ ամփոփուած։

նախնեաց, այլ գաւառականաց պէս՝ միջնաշխարհի կամ Այրարատեան ժողովրդական բարբառն եւս մասնակցած ըլլալով անոր կազմութեան եւ ամենէն վայելչագոյն մասը կացուցանելով:

Իսկ բուն ռամկօրէնի կամ այլ գաւառականաց հետքերը՝ քանի հեռանանք Ե. դարէն՝ նոյնչափ յաճախ կը գտնենք ի գիրս, որ Է. դարէն սկսեալ՝ ուրեք ուրեք անոնց բառերն ու ասացուածները կը հանեն մեր առջեւ: Այնպէս որ ռամկական գրութեանց իրօք սկսելէն յառաջ, անոր յատուկ բառից, ոճմանց, ամփոփմանց, ղեղչմանց եւ քերականական կազմակերպութեանց իսկ բաւական առատ ժողովածոյքը կրնանք քաղել նախընթաց ժամանակաց գրուածներէն: Արդարեւ Է. դարէն ետեւ ալ կան շատ մատենագիրք՝ որոց գրութիւնք ազատ են ռամկականութենէ. բայց կը գտնուին նաեւ ոչ սակաւք՝ յորս խառն է նոյն ռամկական տարրն: Վասն զի տեղն ու ժամանակն առանց ազդեցութեան չեն մնար ո՛ր եւ է հեղինակի ոճոյն վրայ, թէեւ ճարտար մատենագիր ըլլայ, եւ հմուտ եւ վարժ լեզուին՝ որով կը գրէ: Ո՞չ ապաքէն այլազգ կը գրէ այն՝ որոյ գաւառին եւ ժամանակին բարբառն բուն հնոյ գրաւոր լեզուին աւելի մօտաւոր է, եւ այլազգ այն՝ որոյ տեղւոյն եւ ժամանակին բարբառն նոյն գրաւոր լեզուէն շատ հեռացած է: Արդ միջին դարուց հեղինակներէն ոմանք, եթէ նաեւ չէին տեղեաւ հեռի գրականութեան կենդրոնէն, այնպիսի ժողովրդոց մէջ կ՚ապրէին, որոց բարբառը տարբեր էր հին ժամանակաց բարբառէն, եւ ինքեանք իսկ այն հին ժամանակաց բարբառէն տարբեր բարբառով կը վարուէին իրենց ընտանեկան յարաբերութեանց մէջ: Ամէն մարդ ինքնին կը տեսնէ՝ որ այսպիսի պարագայից մէջ շատ դժուար էր որ իրենց գրութիւնն եւս շատ կամ քիչ չկրէր նոյն բարբառոյն ազդեցութիւնը:

Գրաւորին մէջ ռամկականութեան կամ գաւ-

առական բարբառոյ խառնուրդ գտնուելուն առաջին մտադրութեան արժանի օրինակ է Է. դարուն բաւական ծանօթ հեղինակն՝ Յովհան Մամիկոնեան, որուն՝ հետեւեալ քանի մի դարուց մէջ՝ ոչ ոք կրցած է կիսով չափ մերձենալ՝ թող թէ հաւասարիլ։ Հազիւ հինգ դար յետոյ եղած է Մատթէոս Ուռհայեցի, որ բուն ռամկական գրութեանց սկսելէն քիչ յառաջ գրելով, զՄամիկոնեանն իսկ անցուցած է։ Այնպիսի է այս երկու մատենագրաց լեզուն, որ ոմանք չեն վարանիր ռամկական կամ աշխարհիկ ու խօսուած լեզու կոչել[1]։

## Դ.

Բաց ինքեան եւ ի տեսականին միաբան եւ համամիտ ենք մենք ալ այս կարծեաց. վասն զի երբ որպիսի՛ եւ իցէ գրութեան մէջ բաւական յաճախութեամբ մուտ գտած է ռամկական տարրն, այնուհետեւ չի կրնար զուտ գրաբար համարուիլ։

---

[1] Յովհաննու Մամիկոնենոյ գրութիւն կ՚անուանենք՝ Տարօնոյ երկմասնեայ պատմութիւնն, որոյ առաջին մասն կը համարուի Զենոբայ Գլակայ Ասորւոյ աշխատասիրութիւնն՝ որպէս թէ ասորերէն գրուած, իսկ երկրորդ մասն՝ բուն Մամիկոնենոյն։ Երկուքին հայերէնին նոյնութեան նայելով, այժմ առ հասարակ այնպէս կը կարծուի թէ այս վերջինն ըլլայ թարգմանիչ առաջնոյն. ուստի երկուքն իբր մի ամբողջ կը նկատուին։ Արդ այս գրութեան ռամկականութեան կարծիքն ի նոր ժամանակս ընդհանրապէս ընդունելի եղած է, քանի որ Քնն. Քերակ. Նախաշաւղին մէջ մի բառ միօջէ յառաջ բերուած են նոյն գրոց ռամկական բառերն ու ասացուածներն. (էջ 123—130.) ուր զի յառաջագոյն կ՚ըսուէր թէ "Պարզ կամ սփոփին է— անշուտ" ոճով գրուած են. (Տես Հայկազն. Բառն. Մատենից ցուցակին մէջ՝ Զենոբ Գլակ եւ Յովհ. Մամիկ.) եւ հազիւ ի Պատմ. Հայ. Դպր. կը յաւելցուի՝ "Գրեթէ ռամկական ոճով"։ (Ա. Հտ. Ա. տպ. էջ 321. Բ. տպ. էջ 414։) Աւելի բացայայտ կ՚ըսուի ուրիշ տեղ՝ թէ "Այս անձին ընծայուած պատմական գրուածքը՝ աշխարհիկ "բանասիրութեան կը վերաբերի"։ (Տես Պատմ. Հայ. Դպր. Բ. Հտ. էջ 78. եւ Բազմավէպ, 1878. էջ 220։) — իսկ Մատթէոսի Ուռհայեցւոյ այնչափ մտադիր եղող չկայ. միայն ի Պատմ. Հայ. Դպր. կ՚ըսուի թէ "Իր ժամանակին գրեթէ խօ-"սուած լեզուաւը կը գրէր". որ ըսել է՝ ռամկօրէն։ (Ա. Հտ. Ա. տպ. էջ 543. Բ. տպ. էջ 645։)

Սակայն ոչ պատշաճ եւ ոչ իսկ կարելի է՝ ռամկօ-
րէն անուանել ամէն գրուած՝ յոր խառնեալ է ռամ-
կականութիւն. ուստի ի հարկէ զանազանութիւն
պէտք է ընել եւ խտրոց դնել բուն ռամկօրէնի եւ
ռամկականութիւն ունեցող գրաբարի մէջ:

Բայց եւ այս՝ դժուարութենէ ազատ չէ, նայ-
ելով բուն ռամկօրէն նախնական գրութեանց վի-
ճակին: Վասն զի այն գրութիւնք եւս ծայրէ ի
ծայր նոյն ռամկօրէն բարբառով շարադրեալ չեն՝
բոլորովին անխառն ի գրաբարէ: Չկայ գրեթէ ռամ-
կօրէն գրուածք, մանաւանդ ի հնագոյն ժամանակս,
յոր խառն չգտնուի ռամկականին հետ՝ գրաբար,
նորաձեւին հետ՝ հնաձեւ: Սովորաբար ամէն պար-
բերութիւն կազմուած է հին եւ նոր բառերէ, ռամ-
կաձեւ եւ գրաբարաձեւ ասացուածներէ եւ դար-
ձուածներէ, ըստ ճիշդ կանոնաց գրաբարի եւ դար-
ձեալ ըստ ռամկական կերպի հոլովուած եւ խո-
նարհուած անուններէ եւ բայերէ: Շատ անգամ
մի եւ նոյնն՝ է՛ զի ըստ հնոյն եւ է՛ զի ըստ նորոյն
բացատրուած կը տեսնուի, եւ այն՝ գրեթէ միեւ-
նոյն տողի մէջ: Յաճախ եւս՝ առաւելապէս ի հնա-
գոյն ռամկական գրութիւնս կը հանդիպին մէջ ընդ
մէջ զուտ գրաբար պարբերութիւնք եւ երկայն հա-
տուածք եւս, յորս հազիւ կը գտնուին ռամկօրէնի
նշմարանք, եւ որոց ոճն երբեմն ազնուագոյն է
քան զբուն գրաբար ժամանակակից գրութեանցն:
Եւ այս առ ոմանս նշան է՝ թէ ոչ առ անհմտու-
թեան հին գրաւորին, այլ դիտմամբ եւ մասնաւոր
նպատակի համար ընտրած են ռամկօրէն գրել:

Ռամկօրէն գրուածք այս կերպարանքն ունե-
նալով, ի դէպս ինչ այնչափ դիւրին չէ զանոնք զա-
նազանել ռամկականաւ խառնեալ գրաբարէ՝ երբ
սակաւատող հատուածք ամբողջութենէն անջատեալ
գտնուին: Այսպէս, օրինակի համար, եթէ Ուռ-
հայեցւոյն (ռամկականաւ խառն) Պատմութենէն եւ
Սմբատայ (ռամկօրէն) Տարեգրութենէն՝ միեւնոյն

նիւթոյն վրայ գրուած համառօտ կտորներ հանուին եւ քով քով դրուին, հազիւ առաջնոյն՝ նուազ, եւ երկրորդին աւելի ռամկականութիւն ունենալէն՝ կարող է մակաբերուիլ իրականութիւնն։

Դնենք իբրեւ օրինակ՝ քանի մի կարճ հատուածներ նոյն գրութիւններէն, որոց իրարու յարաբերութեան վրայ յընթացս առիթ կ՚ունենանք խօսելու։

Տէրն Ամթայ կին էր։ Ելեալ կինն ի վերայ պարսպին, աղաղակէր եւ ասէր՝ թէ Ի վերայ կնո՞ջ գաս ° կռուել, ով Զմշկիկ, եւ չհամարիս քեզ նախատինք։ Եւ թագաւորն ասաց. Երդուեալ եմ քանդել զպարիսպ քաղաքիդ։ Եւ ասէ կինն. Քակէ պյանդուրոյն նորա ի վերայ Դգղաթ գետոյ, եւ կատարէ այնով զերդումն քո։ Եւ արար այնպէս եւ գնաց[1]։ Քանզի Զմշկիկն այն ի Խողնայ էր, ի Զմշկածակուցն. Նոյնպէս եւ կինն եւս անտի էր։

ՍՄԲԱՏ

Տէրն Ամթայ քաղաքին կին էր։ Եւ ելեալ կնոջն ի վերայ պարսպի քաղաքին, ասէ ցթագաւորն. Ի վերայ կնո՞ջ գաս ի պատերազմ, եւ չհամարիս զայդ քեզ նախատինք։ Եւ ասէր թագաւորն. Երդում ունիմ առ ի քակել զպարիսպս քաղաքիդ։ Ասէր տիկինն քաղաքին. Էջ քակեա պյանդուրոյն՝ որ կայ ի վերայ Ադգաղատ գետոյ, եւ այնու կատարեա զերդումն քո։ Եւ արար թագաւորն այնպէս. վասն զի Զմշկիկն ի գաւառէն Խողնայ էր, ի տեղւոյն որ այժմ կոչի Զմշկածակք, եւ կինն ի նմին սահմանացն էր։

ՄՏԹ.. ՈՒՌՀԱՅԵՑԻ

Մեռաւ Մոնոմախն եւ թագաւորեաց Թէոդորն, եւ կեցեալ թագաւոր ամս երկու եւ ամիսս երեք եւ մեռաւ, եւ նստաւ թագաւոր Միխայել ալեւորն։ Ելեալ իշխան ումն հակառակ Միխայելին, եւ յետ փոքր ժամու ժողովէր եւ բերէր զտուկն Ուռ-

[1] Հոս մի անգամ ընդ միշտ կը ծանուցանենք թէ բերուած օրինակներուն մէջէն դուրս կը թողունք այն ամենայն որ արտաքոյ է մեր նպատակին. երբեմն բառեր, երբեմն նաեւ ամբողջ պարբերութիւններ, նա թէ՝ երկայն հատուածներ ալ։

*հայու զՏուկիծ, եւ եդեր թագաւոր, եւ ինքն միակեաց եղեւ։* ՍՄԲԱՏ

*Մեռանէր Մոնոմախ. եւ կացեալ յաթոռ թագաւորութեանն Թէոդոռն զամս երկու եւ ամիս երեք, եւ փոխեցաւ առ Քրիստոս. եւ նստաւ յաթոռ թագաւորութեանն Միխայլ ալեւորն։ Եւ ելանէր իշխան ոմն եւ խնդրէր զաթոռ թագաւորութեանն. եւ հրամայեաց դեկան զարկանել* յիւր անունն։ Եւ եղեւ զի ձեռն կողմն անձինն թուլացաւ, եւ բերեալ զտունկ քաղաքին Ուռհայոյ, որում անունն էր Տուկիծ, նստոյց զնա թագաւոր եւ ինքն եղեւ վանական։* ՄՏԹ. ՈՒՌՀԱՅԵՑԻ

*Առաքէր Մոնոմախն կուրտ մի Պարակամանոս անունն շատ զօրօք յարեւելս ի խնդիր քաղաքին Անւոյ, որ եկեալ հ——— ի դուռն քաղաքին։ Իսկ Հայոց ազգն որք էին ի քաղաքին Անի, ոչ հաւանեցան տալ զքաղաքն, այլ ո—ղէին զԳագիկ թագաւորն իւրեանց։ Եւ միաբան ելան ի կռիւ ընդ զօրսն Յունաց, եւ կոտորեցին եւ շատ աւարաւ դարձան ի քաղաքն։* ՍՄԲԱՏ

*Զօրաժողով արար թագաւորն Մոնոմախ, եւ յուղարկեաց* զնոսա յարեւելս ի խնդրել զքաղաքն Անի, եւ կացուցանէր զօրագլուխ զՊարակամանոսն զայր ներքինի կուրտ գոլով. եւ գայր զօրօք բազմօք հասանէր ի դուռն Անւոյ։ Իսկ Հայոց ազգն որք էին ի քաղաքն Անի, ոչ հաւանեցան տալ զքաղաքն, այլ ո—ղէլով ո—ղէին զթագաւորն իւրեանց։ Եւ յայնժամ ելանէին միաբան ի պատերազմ ընդ զօրսն Հոռոմոց, եւ կոտորելով արարին հալածականս եւ ո—լփեցին զամենայն բանակն նոցա։* ՄՏԹ. ՈՒՌՀԱՅԵՑԻ

*Բայց հարկ է որ բացատրենք թէ այս երկու տեսակ գրութեանց նկատմամբ ինչ ընթացք բռնած ենք։ Զուտ գրաբար չեղող գրութիւններէն՝ միայն այնպիսիներն՝ ——ձօրէն, ——ձոգէր, ——ձոխօ . . . կը կոչենք, յորս ռամկօրէնի ամէն կերպ բառերը, մասնիկները, սղմունքն, ամփոփմունքը, ձեւերը, դարձուածները, կազմակերպութիւններն անխտիր*

---

* *Տես Հատածիս վերջն։*

ի կէր արկեալ կը տեսնենք, որմէ կը մակաբերենք թէ ռամկօրէն գրել դիտած են հեղինակները, թէ-եւ յաճախ իսկ գրաբար խառնուած ըլլայ գրուածոյն մէջ։ Իսկ այնպիսիներն՝ որ ի սկզբանէ մինչեւ ցվերջ գրաբար գրուած են, եւ լոկ աստ անդ ռամկական բառեր, որոշ ինչ ձեւեր, երբեմն նաեւ ռամկական դարձուածներ խառնուած են, միով բանիւ՝ երբ կը տեսնենք թէ գրաբար գրելու դիտում ունեցեր են մատենագիրք, եւ մէջ ընդ մէջ՝ կամ անզգուշութեամբ եւ կամ մասնաւոր նպատակաւ եւ յատուկ պատճառաւ՝ ռամկականութեան մուտք տուեր են, կ'անուանենք ռամկախառն։

Ահա երկու օրինակ ռամկախառն գրութեանց յՈւռհայեցւոյն, եւ նոյն օրինակաց (գրաբարախառն) ռամկօրէնն՝ Սմբատայ (ռամկախօս) Տարեգրութենէն։ Երկրորդ օրինակին վրայ կը յաւելունք Սըմբատայ ժամանակակից Պատմագրի մը անխառն գրաբարը։ Դիւրին է պայծառ տեսնել ասոնցմէ՝ թէ յինչ է հաստատեալ զանազանութիւնն զոր դրինք այս երեք տեսակ գրութեանց մէջ։

Ի ժամանակին յայնմիկ էր Գագիկ ի Կարս, եւ յուղարկէց առ նա Սուլտանն գալ ի հնազանդութիւն։ Եւ էր Գագիկ իմաստուն, խորհեցաւ զերծանել ի նմանէ խաղաղութեամբ. հագաւ զլաւ սեւ՝ շոր սգաւոր, եւ նստաւ ի վերայ սեւ բարձի։ Եւ երբ տեսաւ զնա դեսպանն, հարցաւ եւ ասէ, թէ Դու թագաւոր ես, է՞ր ես սեւ հագեր։ Եւ ասէ Գագիկ. Յորմէ հետէ մեռաւ բարեկամն իմ Տողրիլ Սուլտանն, եղբայր Աբասլանայ, ես սեւեմ հագեր. քանզի խէտ սիրէաք զիրար։ Եւ զարմացեալ դեսպանն՝ երթեալ պատմեաց Սուլտանին. եւ նա լսեց եւ հիացաւ յոյժ, եւ սիրեաց զԳագիկ վասն բարեկամութեան եղբօրն. եւ ելաւ ամէն հեծելովն՝ եկն ի Կարս առ Գագիկ ի տես, եւ հագոյց նմա հալաւ թագաւորական։ Եւ արար Գագիկ պատիւ Սուլտանայ եւ զօրաց նորա։ Զայս՝ այս ցեղ արար Գագիկ, եւ զերծաւ խաղաղութեամբ։ ՍՄԲԱՏ

Յայնմ ժամանակի էր Գագիկ ի Խարս, եւ յղեաց Սուլտանն առ նա դեսպանս զի գայցէ նմա յերկրպագութիւն։ Եւ էր Գագիկ այր հանճարեղ եւ իմաստասէր, եւ խորհեցաւ հնարս զերծանել խաղաղութեամբ ի Սուլտանէն։ Յայնժամ զգեցաւ սեաւ զգեստ սգաւորի եւ նստաւ ի վերայ սեաւ բարձի։ Եւ յորժամ փեսոս զնա դեսպանն Սուլտանին՝ հարցուկ լինէր* եւ կամեցաւ զպատճառն ուսանել, եթէ Վասն էր ես սեւօք, զի ահա դու այր թագաւոր ես։ Եւ նա ասէր՝ թէ Յորժամ մեռաւ իմ բարեկամ Տուղրիլ Սուլտանն, եղբայր Աբասլանայ, ես յայնմ աւուր զգեցայ զայս սեաւ զգեստս։ Եւ հիանայր այրն յոյն եւ երթեալ պատմեաց Սուլտանին, եւ նա զարմանայր յոյժ, եւ յարուցեալ ամենայն բանակօքն եկն առ Գագիկ ի Խարս եւ զգեցոյց նմա զգեստ թագաւորական. եւ արար Գագիկ ճաշ Սուլտանին։ Եւ զայս այսպէս լսեցաւ, եթէ մէջ գառին վերայ զոր խորովեաց, ծախք եհան հազար դահեկան։ Եւ այսու զերծաւ խաղաղութեամբ։

ՄՏԹ. ՈՒՌՀԱՅԵՑԻ

Էր յաւուրսն յայն մետրապօլիտ մի ի Կեսարիա Մարկոս անուն, յոյժ անուանի եւ փարթամ, եւ հայհոյիչ աշխարհիս Հայոց։ Նա շատ աղճատէր զՀայերն, եւ այնչափ՝ մինչ զի շանն անունն Արմէն էր դրել։ Իսկ թագաւորն Գագիկ գիտէր զչարիս նորա։ Եւ յորժամ եկն ի Կեսարիա, էառ իջեվանս ի տուն Մարկոսի. եւ Մարկոս ընկալաւ զնա յոյժ կամաց։ Իբրեւ ճաշեցին եւ ուրախացան ի գինի, ասէ Գագիկ ցՄարկոս. Լուեալ եմ թէ մեծ շուն ունիս, եւ կամիմ տեսանել զնա։ Ձայնեաց մետրապօլիտն զշունն եւ ասէ, Արմէն, Արմէն։ Եւ եկն շունն։ Եւ ասէ Գագիկ. Արմէ՞ն է անունն շանդ։ Ասէ Մարկոս. Վասն բազում զօրութեանն կոչեմք զնա Արմէն։ Եւ ակնարկեաց Գագիկ զինուորացն, եւ նոքա կալան զշունն եւածին ի քուրձ մի՝ զոր յառաջ դրեալ էին։ Տեսեալ զայն Մարկոս՝ բարկացեալ կոչէր զշունն։ Եւ քմծաղեալ Գագկայ հրամայեաց բռնել զշուն Մարկոս եւ ածել ի քուրձն ընդ շանն։ Եւ նոքա արարին այնպէս. կապեալ զբերան քրձին՝ սկսան դալար ճիպոտօք ծեծել զշունն։ Եւ շունն բարկացեալ՝ լափէր զՄարկոս, մինչեւ սատակեաց զնա։

ՍՄԲԱՏ

Գայր խաղայր Գագիկ ի Կեսարիա քաղաք Գամրաց, եւ յարձակեցաւ ի վերայ մետրապոլտին, որում անուն ասէին Մարկոս, վասն զի էր հայհոյիչ չար եւ պիղծ, մինչեւ իւր շանն անուն Արմէն կոչէր։ Եւ յառաջ ժամանակաց զայս ամենայն լուեալ էր Գագիկ արքայ Հայոց, եւ յորժամ մերձ եղեւ առ մետրապոլիտն, կամեցաւ զիջեւանս առ նա առնել*։ Եւ լուեալ կիւռ Մարկոս ակամայ եւ ոչ կամաց* ելանէր ընդդէմ Գագկայ։ Բայց Գագիկ իբրեւ սկսաւ ուրախանալ ընդ գինեաւն*՝ յայնժամ սկսաւ ասել Գագիկ ցկիւռ Մարկոս՝ եթէ Լուեալ եմ եթէ քո շուն զօրաւոր կայ, եւ կամիմք տեսանել զնա։ Եւ կեղծեցաւ Մարկոսն թէ կամի ողջունել զնա իւր, եւ զանց արար զբանիւն։ Եւ յորժամ կրկնեաց զբանն Գագիկ, կոչեցին զշունն, եւ նա ոչ գայր. քանզի զանունն ոչ համարձակեցան ձայնել՝ զԱրմէնն։ Եւ ասէ Գագիկ. Զիւր անունն ձայնեցէք, որ գայ։ Եւ յայնժամ Մարկոս ձայն տուեալ շանն՝ ասէր. Արմէն, Արմէն։ Եւ տեսեալ Գագիկ՝ ասէ. Արմէ՞ն կոչի շունս այս։ Եւ ամաչեալ* յոյժ Մարկոս՝ ասէ. Մանուկ է, վասն այնր ասեմք իւր Արմէն։ Եւ ասէր Գագիկ։ Այժմ տեսանեմ թէ ո՛վ է մանուկն, Արմէն՝ թէ Հոռոմն։ Եւ մեծ քուրձ մի պատրաստական տանէին։ Եւ ակնարկեաց Գագիկ, եւ յայնժամ հետեւակքն արկանէին զնա ի քուրձն։ Եւ տեսեալ կիւռ Մարկոս, սկսաւ բարկանալ, եւ ժպտեալ Գագիկ եւ մատամբ արարեալ սպասաւորացն. եւ յայնժամ ընդ չորից կողմանցն* պատեցին զՄարկոս եւ արկանէին ի քուրձն առ Արմէնն կոչեցեալ շունն։ Եւ հրամայեաց Գագիկ սաստկապէս ուժգին հարկանել զշունն. եւ նորա զայրացեալ՝ արձակէր* ի վերայ Մարկոսի եւ լափէր զնա ատամամբ. եւ այսպէս չարեաւ* սատակեցաւ չար հայհոյիչն։

ՄՏԹ. ՈՒՌՀԱՅԵՑԻ

Գագիկ Թագաւորն եկն ի Կեսարիա։ Լուաւ նա թէ Մարկոս ոմն մետրապոլիտ Կեսարու ունի շուն մի, եւ զանուն շանն Արմէն կոչեցեալ է եւ այսպէս ձայնէ զնա։ Գնաց Թագաւորն իջեւանս առնել առ մետրապոլտին, եւ նա ընկալաւ զնա։ Եւ իբրեւ ընդ գինիս մտին, ասէ Թագաւորն. Լուեալ է իմ թէ ունիս դու շուն ազնիւ. ցոյց ինձ զի տեսից։ Ասէ մետրապոլիտն. Աւասիկ է առ դուրս հանդէպ մեր։ Եւ ասէ Թագաւորն.

Ձայնեա զի գայցէ այսր. եւ նա ձայնէր նմա այլ շան անուն, եւ ոչ զիւրն. իսկ շունն ոչ ընդոստանայր եւ ոչ գայր ի ներքս։ Ասէ Թագաւորն. Զիւր անունն ձայնեա նմա։ Եւ իբրեւ ձայնեաց՝ Արմէն Արմէն, վաղվաղակի ի վեր յարեաւ եւ եկն։ Ասէ Թագաւորն. Ընդէ՞ր ես կոչեալ դմա զայդ անուն։ Ասէ մետրապոլիտն. Զի մանուկ է։ Եւ հրաման ետ Թագաւորն ծառայից իւրոց եւ ասէ. Բերէք քուրձ մի մեծ եւ արկէք անդ զշունն, եւ հազիւ կարացին արկանել։ Եւ ասէ Թագաւորն. Արկէք եւ զեպիսկոպոսդ. թող տեսից թէ մանուկ է շունդ, որպէս ասաց դա։ Իսկ նա լայր եւ աղաչէր։ Եւ ասէ Թագաւորն. Արդ խթանաւ խթեցէք զշունդ՝ զի կերիցէ զդա։ Եւ նոքա խթէին զշունն, եւ նա առ կսկծի ցաւոյն՝ ժանիւքն եւ մագլօքն պատառ պատառ եհերձ զնա, մինչեւ մեռաւ։

ԿԻՐԱԿՈՍ ԳԱՆՁԱԿԵՑԻ

Մինչեւ այստեղ Մատթէոս Ուռհայեցիէն առնուած հատուածոյ մէջ, բաց ի ռամկականութենէն՝ մտադրութեան արժանի է նաեւ գրաբարի անկածութեան վիճակն։ Յօրինակս աստեղանիշ նշանակած ենք քանի մի անտեղութիւնքն, այսինքն՝ սխալները, զոր աստ կը պարզենք։

Ոչ կամաց, փոխ՝ յոչ կամաց (ինչպէս կը դնէ Սմբատ)։

Արձակէր, փոխ՝ յարձակէր։

Չարեաւ, փոխ՝ չարաւ։

Զիջեւանս առ նա առնել, փոխ՝ Սմբատայ հետ ընելու՝ իջեւանս։ (Տես "Օթեւանս առ նմա արասցուք„։ Յովհ. ԺԴ. 13։)

Դեկան զարկանել, փոխ՝ դահեկան հատանել։ (Յայտնի է որ գրաբարի մէջ զարկանել կը նշանակէ բռնաբարեամբ կամ ուժգին զարնել։)

Յուղարկել, փոխ՝ յղել, առաքել։ (Գրաբար յուղարկել է պատուոյ, ցաւակցութեան, ուղեկցութեան համար ընկերանալ։)

Հարցուկ (կամ ինչպէս մեր երկու գրչագիր օրինակներն ունին՝ հարցու) լինէր, փոխ՝ եհարց, զոր Սմբատ ռամկօրէնի սովորական կերպիւ կը դնէ՝ հարցուց։

Ուրախանալ ընդ գինեաւ, ընդ չորից կողմանց կալան զնա...։

Աւելորդ է եւ մեր նպատակէն դուրս՝ ասոնց եւ նմանեաց վրայ խորհրդածութիւն ընել։ Այսպիսեաց նկատմամբ բաւական գրած է Քնն. Քերակ. հմուտ Հեղինակն՝ Նախաշաւիղին մէջ։ Տես առանձինն էջ 132—138։ — Բայց այն եւս առանց երկբայութեան է, որ նաեւ ընդօրինակողք մեծապէս օգնած են այս անտեղութեանց բազմանալուն, ինչպէս տեսանք ղափախանել բառին առթիւ։

## 5.

Ռամկօրէն գրութեանց՝ մանաւանդ ի սկզբան անդ՝ աւելի կամ պակաս գրաբարով խառն ըլլալը բնական էր, քանի որ Ուռհայեցւոյն պէս գրաբար գրողներ օրինակ կային ռամկագիր հեղինակաց առջեւ։ Անոնք հնոյն մէջ մուծած էին ի նորոյն, ասոնք նորոյն մէջ սկսան մուծանել ի հնոյն. նախորդաց ռամկախառն գրաբարին դիմաց՝ յաջորդք հնարեցին գրաբարախառն ռամկօրէն։ — Բայց թէեւ այս օրինակը չգտնուէր, դժուարաւ կարող էին ռամկախօս մատենագիրք յանկարծ միահաղոյն թողուլ զայն ամենայն՝ որ մինչեւ նոյն ժամանակ տեսած էին ի գիրս, եւ բոլորովին տարբեր եղանակաւ գրել, գրել ճիշդ այնպէս՝ ինչպէս կը խօսէին։

Դարձեալ այն եւս բնական էր՝ որ թէ այս նկատմամբ եւ թէ այլ եւս շատ հայեցմամբք՝ ռամկօրէն գրութիւնք իրարու աննման ըլլային, ինչպէս իրօք են. այնպէս որ անմիօրինակութիւնն նոյն գրոց նկարագիրներէն մին է։ — Ամէն նորութիւն ինքնին իւր հետն անորոշութիւն եւ տարտամութիւն կը բերէ, մանաւանդ երբ հիմնեալ չէ կանխաւ խորհրդածեալ եւ հաստատուն սկզբանց վրայ, չունի որոշ յատակագիծ. իսկ այս անորոշութիւնն առիթ ու պատճառ կու տայ անմիօրինակութեան, նա թէ խառնակութեան։ Այսպէս՝ առաջին անգամ ռամկօրէն գրելու ձեռնարկողն՝ առջեւն յամենայնի հետեւելու օրինակ չունենալով, բնականաբար իւր

*խօսածին եւ լսածին համեմատ պիտի գրեր, բայց ազդուելով ի միոյ կողմանէ՝ կարդացած գրաբարէն, ինչպէս ի վեր անդր ակնարկեցինք, եւ ի միւս կողմանէ՝ յայլեւայլ պարագայից։*

*Բայց ի՞նչ եւ ինչպիսի՞ են այն պարագայք։ — Յայտնի է թէ ամէն գրութեան լեզուին ու ոճոյն վրայ ազդեցութիւն կ'ընէ հեղինակին հայրենիքն ու տեղն ուր կը գրէ, ինչպէս յառաջ* (էջ 12) *յիշեցինք. — անձանց շրջանն կամ ընկերութիւնն յոր կը դեգերի սովորաբար. — իւր կրթութեան կամ հրահանգութեան, եւ առաւել եւս՝ գրաւոր լեզուի հմտութեան աստիճանն. — նիւթն որով կը զբաղի եւ որոյ վրայ կը գրէ. — աստիճան հրահանգութեան եւ վիճակ ընթերցողաց՝ որոց գլխաւորաբար կը դիտէ ուղղել իւր գրութիւնն։ — Այս եւ այլ այսպիսի պարագայք բնականապէս իրարմէ տարբեր գոյն կամ կերպարանք կու տան ոչ միայն զատ զատ մատենագրաց՝ այլ եւ նոյն մատենագրի զանազան գրուածոց։*

*Այսր ակներեւ փորձն ունինք ի բուն ռամկական գրութիւնս, ինչպէս յետոյ պիտի տեսնենք. առ այժմ մերձեցընենք ռամկախառն գրաբարի, դիտելով միայն ի մասին նիւթոյն։*

*Կարդանք որպիսի եւ իցէ եկեղեցական պաշտամանց գիրք*[1]*, կրօնական նիւթոց վերաբերեալ ամէն գրութիւն, որ Ե. դարէն մինչեւ ԺԳ. դար շարադրուած են. շատ սակաւ կամ գրեթէ ոչինչ հետք ռամկականութեան կը գտնենք, այլ ամենայն ինչ անխառն գրաբար, այնպէս ինչպէս իւրաքանչիւր ժամանակին գրաբարի վիճակն կը տանէր։*

[1] *Եկեղեցական պաշտամունք ըսելով՝ կ'իմանանք բուն եկեղեցւոյ ընթերցմունքն, աղօթքն, երգեցմունքն . . . եւ ոչ թէ խրատագիրքն՝ որ հասարակօրէն ռամկախառն եւ ռամկախօս են, ինչպէս ի տօնացոյցս՝ երբեմն նաեւ ի մաշտոցս կը տեսնուի։ Եթէ երգեցմանց մէջ կայ բացառութիւն՝ են տաղերն, որ անոնք ալ առաւելապէս յետին դարուց գրութիւնք են։*

Թէ որչափ մեծ էր յայսմ մասին ի կիր արկեալ զգուշաւորութիւնն, յայտնապէս կը տեսնենք Ներսիսի Շնորհալւոյ Ընդհանրականին մէջ, որոյ հրատարակութիւնն գրեթէ կը զուգընթանայ ռամկական ինքնակաց գրութեանց սկզբնաւորութեան հետ։ Նոյն նշանաւոր թուղթն՝ զոր գրած է ի կաթողիկոսութիւն բարձրացած ժամանակ, ամբողջապէս անխառն գրաբար է. այնպէս զի խօսքն հետզհետէ ազգին թէ՛ եկեղեցական եւ թէ՛ աշխարհական կարգէ ամէն դասերուն առանձին առանձին ուղղելով, ճիշդ միեւնոյն գրաբար լեզուաւ կը խօսի իշխանաց, զինուորաց, քաղաքացւոց, երկրագործաց, մինչեւ կանանց անգամ, որով կը խօսի եպիսկոպոսաց, քահանայից, վանականաց։

Այս երկիւղած զգուշաւորութիւն՝ որով ամէն մատենագիրք մեծապէս խնամ տարած են չմուծանել յայն գրութիւնս՝ ինչ որ գոյն ունի ռամկականութեան, կարծենք թէ այն նուաստ համարմանէն պատճառած է՝ զոր կ'երեւայ թէ գրագէտք եւ եկեղեցականք առհասարակ ունէին ռամկօրէնի վրայ, որով կրօնի բարձրութեան եւ ազնուութեան անարգանք հասուցանել կը համարէին՝ յայնպիսիս ռամկականութիւն խառնելով։

Իսկ թէ իրօք նուաստ եւ արհամարհ գաղափար ունէին, թէեւ ուրիշ ցոյց չգտնուէր՝ բաւական է միայն միտ դնել այն բարբառոյն տրուած անուններուն, յորս առաջին տեղին ունի գեղջուկ կամ գեղջկոյ բարբառ, որպէս թէ աւելի յատուկ լեզու գեղացւոց՝ քան քաղաքացւոց։ Այսպէս Ներսէս Շնորհալի իւր վերոյիշեալ Ընդհանրականին մէջ՝ իբրեւ մեկնութիւն հայհոյութիւն բառին՝ կը գրէ թէ “Որ ըստ գեղջկոյն բարբառոյ՝ իշոցք “անուանի„։ (Տպ. Վենետ. 1838, էջ 54։) Զնոյն գեղջուկ բացատրութիւն կը գտնենք նաեւ ի յաջորդ ժամանակս։ Մխիթար Հերացի՝ իւր ռամկօրէն գրուածոյն լեզուն՝ Գեղջուկ եւ արձակ բարբառ կը կոչէ. այլ ոմն՝ Հասարակ եւ գեղջուկ բարբառ անուն կու տայ նոյն գրուածոյն։ (Տես ի տպ. Վենետ. Մտնգր. Ցուցըն. եւ էջ 1, Ծանօթ.։) Առանց գրեթէ ժամանակակից Յիշատակարանի մը մէջ կը կարդանք. “Գրեցաւ յեղբայրանոցս

որ ի գաւառիս Լամբրունի, որ գեղջուկ բարբառով ի հին սովորութենէ՝ Գեմրաձգեր յորջորջի»։ (Սիսուան, էջ 114։) Զնոյն անուն կը գտնենք մինչեւ վերջին դարուց ռամկական Առակաց հաւաքածոյի մը մէջ, այսպէս. «Դարձեալ գեղջուկ բառով ասեն՝ թէ Երբ մարդոյն ստոլվաթն բերէ՝ նա գայլն գեհ (ոչխարաց հօտ) բերէ»։ Ձեռգ. Մոնդրնիս, Թ. 51։) Արծրունի գործածած է գեղջկաբանել՝ ռամկօրէն բսել նշանակութեամբ։ — Ի յաջորդ Հատածին առիթ կ'ունենանք նոյն անուան վրայ զատ դիտողութիւն ընելու։ Բաց անկէ՝ չեն պակսիր այլ եւս անուանք, որ են. Գռեհիկ բան, ռամկաց (սովորական) խօսք, Հասարակաց բառ, — աշխարհի բառ, աշխարհական խօսք կամ բան, աշխարհի բառ, աշխարհաբառ, (իբր՝ աշխարհաբարբառ) կամ աշխարհաբար, որոց մանաւանդ յետինն եւ աշխարհիկ լեզու այժմ առ մեզ եւս սովորական է։

Այս անուանց վերջիններն՝ նախընթացից տուած նուաստ համարման վրայ այնպիսի նշանակութեան գաղափար կը յաւելուն, իբր արտաքին, որ է ասել՝ Եկեղեցական եւ կրօնական լեզու, որ ի հարկէ զգուշալի պիտի երեւցընէր ռամկական բարբառոյն ոչ միայն յեկեղեցական պաշտամունս կիրառութիւնն, այլ նաեւ յորեւիցէ կրօնական գրութիւնս խառնուրդն իսկ։ Եւ հաւանականաբար՝ բաց յայլոց պատճառաց՝ սոյն նկատումն եւս զեկեղեցականս ի զգուշութեան կը պահէր այս նիւթոյս մէջ։

Ըստուածներուն ոչ փոքր հաստատութիւն կուտայ սոր հակառակ ընթացքն՝ զոր կը բռնեն միեւնոյն մատենագիրք իրենց արտաքին կամ բուն կրօնականէ զատ գրութեանց մէջ։ Եւ արդարեւ կը տեսնենք թէ ոչ սակաւք այս նկատմամբ չեն այնպէս զգուշաւոր ի պատմական գրեանն, ի նամականին ... եւ առաւել եւս ի չափաբերականս. այլ ոմանք յաճախ՝ ոմանք ցանցառ, գրաբարին հետ կը խառնեն ռամկօրէն. այնպէս որ միեւնոյն մատենագրին երկու տեսակ գրուածքն իրարու համեմատելով, կը գտնենք թէ յառաջիննան բոլորովին անխառն գրաբարով վարուողն՝ ի յետինսն ուրեք ուրեք ի ռամկականութիւն կը շեղի։

Օրինակ առնունք ի նշանաւոր մատենագրաց Ժ. դարուն՝ զԳրիգոր Նարեկացի։ Այս հոգելից

Վարդապետին կրօնական արձակ գրութիւնքն ազատ են գրեթէ ռամկական խառնրդէ. իսկ այն անհամեմատ գեղեցիկ Տաղերն ու Մեղեդիներն, որ միջին դարու հայ մատենագրութեան չքնաղ մարգարիտներն կրնան իրաւամբք կոչուիլ, եւ տեղ տեղ Գողթան երգերը կը յիշեցընեն, ունին բաւական յաճախութեամբ ռամկական բառեր ու դարձուածներ, որ իւր յատուկ գրաբարին հետ շատ փափուկ եւ վայելուչ ամբողջ կը կազմեն։

Ահաւասիկ փոքր ճաշակ մի։

Յարութեան տաղէն

. . . Ի Մասեաց յաջ կողմանէն
Սայլիկն ածեալ են կացուցեալ.
Եւ ահա չշարժէր սայլիկն այն,
Եւ ահա չխաղայր անիւն այն։
Եթէ սամիքն են արծաթի, լուծն էր ոսկի,
Եւ առասանքն ապրէշիմ.
Փոկեր շուրջն շարանըման հուլ մարգարիտ։ . .
Այն եզոցըն ճոխ էր եւ ճապուկ,
Ուռամիջակ, հաստաբազուկ,
Լայնաթիկունք, խարտիշագեղ, ահեղագոչ.
Նա ձայն ածէր եղնամոլին,
Կանչիւն առնէր աթոռակին։
Եթէ եզինքն են սաթ ու սպիտակ,
Եղջիւրն ոսկի խաչանըման,
Եւ մազն ոսկի հուլ մարգարիտ.
Եւ ահա շարժէր սայլիկն այն,
Եւ ահա խաղայր անիւն այն։
Ի գիւղ գայր, ի գիւղ, սայլիկն ի գիւղ,
Ի Մասեաց յաջ կողմանէն
Սայլիկն ի գիւղ գայր ի գիւղ,
Եւ ճռնչելով գայր մտանէր յԵրուսաղէմ։

Վարդավառի տաղէն

. . . Այդ սօս ու տօսախ ծառերդ
Վարդագոյն ոստս արձակեցին։
Այդ նոճ ու բողբոջ արօտ,
Զարդ առեալ վարդն շուշանին։
Շուշանն շողէր յովտին,
Շողշողէր դէմ արեգականն.

Այն հիւսիսային հաւէն,
Հովհարբեալ գոհար շուշանին.
Յայն հարաւային լեռնէն,
Քաղցր օդով ցօղէր շուշանին։
Շուշանն շաղով լցեալ
Շող շաղով եւ շաղ մարգարտով.
Ծաղկունք ամէն շաղ առին,
Շաղն յամպէն, ամպն յարեգակնէն.
Աստեղքն ամէն շուրջ առին,
Դէմ լուսնին գունդ գունդ բոլորին.
Գունդ գունդ խաչաձեւ գնդակ,
Յօրինուած երկնից շուրջանակ։

Չեն պակսիր նաեւ ի յաջորդ դարս նոյնպիսի օրինակք, յորոց կը յիշատակենք միայն զՆերսէս Լամբրոնացի, որոյ առ Լեւոն Թագաւոր նամակին ռամկականութիւնքն առիթ տուած են զնոյն նամակն աշխարհիկ լեզուաւ գրեալ համարելու. իսկ մենք՝ յառաջագոյն (էջ 16) նշանակեալ սկզբան համեմատ՝ ռամկախառն գրաբար գրուածոց կարգը կը դասենք: Նովին սկզբամբ՝ նոյնպիսի կը համարինք նաեւ ԺԲ. դարուն սկիզբէն՝ Վարդանայ Հայկազին Գերեզմանական տաղն ի Գրիգոր Վկայասէր, որ ի յետին ժամանակս յերեւան ելաւ, եւ որոյ հմուտ հրատարակիչք բուն ռամկագիր կամ աշխարհիկ լեզուաւ գրեալ կը համարին։ (Տես Բազմավէպ, 1873, էջ 26։ Պտմ. Հայ. Դպր. Հտ. Ա. էջ 677։) Վասն զի թէպէտ բաւական ռամկականութիւն բովանդակէ, միշտ ըստ մեծագոյն եւ էական մասանց գրաբար է, ուստի եւ յառաջագոյն տրուած մեկնութեան համեմատ՝ ռամկախառն միայն։

## 6.

Մինչեւ ցայս վայր ըսուածներէն կարող ենք հետեւցընել՝ թէ քանի մի դարէ ի վեր ռամկականութիւնն մեղմով կը սպրդէր գրաւոր լեզուին մէջ եւ միշտ աւելի կը յառաջանար։ Միեւնոյն միջոցին գրաբարն իւր սկզբնական վիճակէն օրըստօրէ հեռանալով, այն ժամանակաց գրութիւնքն ըստ մա-

սին ռամկական գոյն կ'առնուին: Ստոյգ է՝ կարող ենք իրաւամբք կասկածել թէ ինչ ինչ յետոյ ընդօրինակողաց ձեռօք մուտ գտած է. բայց կարելի չէ ամենայն խոտորումն ի գրաբարէ, ամենայն ռամկականութիւն՝ կասկածանաց ներքեւ արկանել: Մանաւանդ զի ունինք նաեւ այնպիսի ապացոյցներ, որոց նկատմամբ ամենեւին հնար չէ կասկածիլ: Այս ապացոյցք են հին արձանագրութիւնք, որոց վրայ հետեւեալ խորհրդածութիւնը կ'ընէ Քնն. Քերական. “Որչափ մատենագրութիւնն զգուշա-
“ցած ըլլայ ազգային լեզուին նոյն արատաւոր կող-
“մը (ռամկականութիւնն) յաջորդներուն ցուցընե-
“լու, այն լռութիւնն ուրիշ կողմանէ կը փոխարի-
“նեն բազմաթիւ վիմաքանդակ արձանագրութիւն-
“ները, որոնք ասդին անդին Հայաստանի (մանաւ-
“անդ Այրարատեան գաւառին) տաճարներուն ու
“պարիսպներուն վրայ դեռ կը կարդացուին, եւ
“որոնց հնութիւնը մինչեւ Թ. դարուն սկիզբները
“կ'ելլէ„[1]:

Այսպէս՝ ասկէ քսան տարիէ աւելի յառաջ, երբ հազիւ փոքր մաս մի ծանօթ էր այն առատ հաւաքածոյին՝ զոր տասնուհինգ տարի ետեւ մեզի հաղորդեց ազգային հմուտ Աշխարհագէտն[2]: Ասոնց միջոցաւ շատ աւելի յայտնի կը տեսնուի՝ քան ժամանակակից ռամկախառն գրուածովք, թէ որչափ խորամուխ եղած էր լեզուին մէջ քանի մի դարէ վեր ռամկական տարրն: Նոյն արձանագրութեանց հարուստ (300) հաւաքածոյին վեր ի վերոյ հետազօտութիւնն իսկ բաւական է տեսնելու՝ թէ այնչափ

---

[1] Նախաշ. էջ 140: Մատենագիրն այս տեղ Տերորդ Ծանօթ. մէջ նոյն արձանագրութիւնքն հաւաքողներուն վրայ համառօտ տեղեկութիւն տալէն ետեւ, խօսքին ընթացքն յառաջ տանելով, այն արձանագրութեանց մէջ բովանդակուած ռամկական բառերուն վրայ հետազօտութիւն կ'ընէ եւ օրինակներ ի մէջ կը բերէ: Տես էջ 140—145:

[2] Հ. Ղեւոնդ Վ. Մ. Ալիշան, ի Տեղագր. Շիրակայ. Վենետ. 1881:

բազմութեան մէջ շատ ցանցառ են այնպիսիք, յորս ակնյայտնի չերեւան ցոյցք ռամկականութեան: Նորանոր բառեր, հին բառից նոր նշանակութիւններ, ի հնոյն տարբեր ձեւեր եւ օտարոտի կազմակերպութիւններ . . . ամենայն ինչ առատութեամբ սփռեալ է անոնց մէջ:

---

Ռամկօրէնին այսչափ սովորական եւ տարածեալ ըլլալն իրաւունք կու տար ենթադրելու թէ այն միջոցներուն եղած ըլլան նաեւ ինքնակաց ամբողջ գրութիւնք նոյն բարբառով: Բայց մինչեւ ցայսօր այնպիսի գրութիւն յերեւան ելած չէ, որոյ հնութիւնն ըստ բաւականին ապահով կամ հիմնականապէս ապացուցեալ համարուի. եւ ակնարկութիւնք իսկ որ աստ անդ կը գտնուին՝ շատ որոշ եւ բացայայտ չեն: Այսպիսեաց վրայ ի յաջորդան կը խօսինք:

Առ այժմ հետազօտենք նոյնպիսի ակնարկութեանց մին, որ բաւական ծանօթ է գրագիտաց եւ սովորաբար իբր նշան կամ ապացոյց կ՚առնուի գոյութեան ռամկօրէն մատենի ի Թ. դարու:

Յիշեալ մատեանն է Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ, զոր կը յիշատակէ Յովհաննէս Զ. կաթողիկոս († 925) իւր պատմագրութեան մէջ՝ զհեղինակն “Մերուժն ժամանակի պատմագիր„ կոչելով: Ինք նոյն գրութեան ոճոյն վրայ այնպէս կը խօսի, որ կրնայ նաեւ իմացուիլ թէ Ռամկօրէն լեզուաւ գրեալ ուզէ ըսել, ինչպէս իրօք հասկըցած են ոմանք[1]: Սակայն յարգելով հանդերձ ասոնց կարծիքն, կը համարինք թէ դժուարաւ հնար է նոյն խօսքէն հետեւցընել ստուգութեամբ, որ Շապուհ այն լեզուաւ գրած է՝ զոր մենք Նախնեաց ռամկօրէն կը կոչենք:

---

[1] Տես Քնն. Քեր. Նախաշ. էջ 131: Պատմ. Հայ. Դպր. Հտ. Բ. էջ 78: Բազմավէպ, 1878, էջ 221:

Ամենածանօթ է թէ անհետ կորուսեալ է Շապհոյ Բագրատունւոյ Պատմագրութիւնն, միանգամայն ոչ Յովհ. Կաթողիկոս ինքնին եւ ոչ այլ քանի մի յետնագոյն մատենագիրք՝ որ զնոյն պատմագրութիւն կը յիշեն, անոր խօսքերէն ոչինչ ամենեւին յառաջ կը բերեն: Ուստի միակ հիմն որոյ վրայ պիտի հաստատենք մեր որոշումն՝ կը մնայ Պատմագիր Կաթողիկոսին խօսքն, որ այս է. «Հանճեցաւ բանս՝ ոչ երկրորդել միւսանգամ «զհետեւանս զրուցաց Շապհոյ Բագրատունւոյ եւ մե«րումս ժամանակի պատմագրի, որ... թէպէտ (զ)ստու«գութիւն սահմանական բանի բացատրութեան եւ զբո«լորովին բաժանումն ապացուցից ոչ կարացեալ ըստ «քերթողական հրահանգացն համառօտաբար ընձեռել, «սակայն ըստ իւրում ժամանակի ընտանի գոլով նորա «զրուցացն ամենայնի, գեղջուկ բանիւ բաւական քեզ տայ «պատճառս տեղեկութեան»[1]:

Արդ ըստ մեր կարծեաց՝ այս խօսքն շատ դիւրաւ կրնայ սովորաբար տրուածէն տարբեր մեկնութիւն ընդունիլ: Խնդրոյն էութիւնն յայնմ կը կայանայ՝ որ արդեօք գեղջուկ բառ բացատրութիւնն Շապհոյ գրութեան լեզուին՝ թէ ընդհանուր կերպին կամ ոճոյն վրայ առնուելու է: Եթէ միտ դրուի ընթացից ասութեան, կամ թէ ըսենք՝ տրամաբանական զօդոյն, ի հարկէ պէտք է որ առնունք ընդհանուր կերպին կամ ոճոյն վրայ: Վասն զի ինչ պատշաճութիւն կ'ունենայ գրութեան լեզուին ռամկական կամ գրաբար ըլլալուն՝ հեղինակին «զբոլո«րովին բաժանումն ապացուցից — ըստ քերթողական «հրահանգացն — համառօտաբար ընձեռել» — կարենալն ու չկարենալը. ո՞չ ապաքէն հնար է թէ՛ միով եւ թէ՛ միւսով նոյն պահանջմանց համեմատ գրել կամ չգրել: — Ապա ուրեմն յայտնի է որ Յովհաննու Կաթողիկոսի խօսքը լեզուի ռամկականութեան վրայ չէ, այլ իմաստասիրական կամ քերթողական կերպին եւ ոճոյն վրայ:

Իսկ եթէ ըսուի որ հինք՝ գեղջկաց կամ գեղջուկ բառ բացատրութիւնն այն լեզուն նշանակելու համար կը գործածէին՝ զոր մենք Նախնեաց ռամկօրէն կը կոչենք. ինչպէս յառաջ (էջ 23) տեսանք. մեր պատասխանն այն է՝ թէ այո՛ այդպէս է. բայց կը գործածէին նաեւ ճիշդ այն

---

[1] Յովհ. Կաթող. Պատմութիւն Հայոց, ի լոյս ընծայ. Մկր. Էմին. Մոսկուա, 1853, էջ 73, 74: — Տես նաեւ էջ 5, 63, 79, ուր միեւնոյն Պատմագիրը կը յիշատակէ, բայց միշտ ըստ իմաստին միայն ի վկայութիւն կ'առնու, եւ ոչ երբեք խօսքն ի մէջ կը բերէ, ինչպէս զրուցեցինք: — Յայսմ մասին տես նաեւ յետոյ (էջ 42) դրուած դիտողութիւնն:

իմաստով՝ զոր մենք կու տանք վերոյիշեալ խօսքին: Ահա-
ւասիկ քանի մի օրինակ: — Սարգիս Վ. ի սկզբան մեկնու-
թեան Կաթող. Թղթոց՝ խօսելով թէ ինչպէս ճառելու
է Ս. Գրոց իմաստին վրայ, կը գրէ. “Ոչ պարտիմք . . .
“զդժուարապատում եւ զերաղահանական բանից բուռն
“հարկանել, եւ ոչ գեղջուկ բանիւք աղաւաղել զտեսու-
“թիւն մտացն, եւ արհամարհելի ցուցանել զվայելչա-
“կանն՝ ուսումնասիրաց եւ բանասիրաց„: (Ճառ Ա. տպ.
Կոստ. 1828, էջ 13:) Կարծեմ ոչ ոք կարող է ըսել թէ
գեղջուկ բառ այս տեղ ռամկօրէն բարբառ նշանակէ:

Աւելի յայտնի է Կիրակոսի Վ. Գանձակեցւոյ
խօսքն, որ Սարկաւագ վարդապետին համար կը գրէ.
“Սորա բանքն ամենայն՝ իմաստասիրական ոճով է, որպէս
“զԳրիգորի Աստուածաբանի, եւ ոչ գեղջուկ„: (Տպ.
Վենետ. էջ 64:) Շատ մեծ նմանութիւն կայ Գան-
ձակեցի Վարդապետին եւ Դրասխանակերտցի Հայրա-
պետին կիրառութեան մէջ. ինչպէս առաջինն զգեղջուկ
կը գործածէ իբրեւ հակադրեալ իմաստասիրական ոճոյն,
նոյնպէս երկրորդն ի կիր արկած է իբրեւ հակադրեալ
ներբողական հրահանգաց, որպէս թէ ուզէր ըսել. Չէ
կրցեր Շապուհ Բագրատունի կարգաւորեալ ուսումնա-
կան ոճով գրել իւր պատմութիւնն:

Յովհ. կաթողիկոսի կիրառութեան ամէնէն նման
նշանակութեամբ գործածուած է գեղջուկ բառն հին
ձեռագիր բառարանի մը մէջ, ուր կը կարդացուի. “Այս
“բառք են ներբողականք վասն չափոյ Հոմերական տա-
“ղից, զի ներբողական արհեստքն չափաբերականք են եւ
“չափով վարին. (եւ) են որ գեղջուկ են, որով ճարտա-
“սանք վարին, զի յաճախապէս փոխաբերին սակս զարդու
“ճարտասանից[1]„: Աստ եւս գեղջուկ ի կիր արկեալ է իբր
հակադրեալ ներբողականի:

Ի վերջոյ այս ալ կը յաւելունք, թէ անկախ
յասացելոցս՝ հաւանական չէ, որ Յովհ. Կաթողիկոս
գեղջուկ բառ բացատրութիւնն ի կիր արկած ըլլայ ռամ-
կօրէն լեզու նշանակութեամբ. վասն զի ի վեր անդր ի
վկայութիւն առնուած խօսքէն քանի մի տող յառաջ (էջ
73) ի բերան ժողովրդեան պարտող անուն մի յիշելով,
չ'ըսեր գեղջուկ բառ. այլ մեզի պէս՝ ռամկաց խօսք. “Ստե-
փանոս, որ կոչի ի ռամկաց սովորական խօսից անուանիւր„:

Այս է մեր տեսութիւնն, որոյ դատաստանը բա-
նասիրաց կը թողունք:

---

[1] Ի ձեռագիրս Ակնայ Ս. Գէորգ եկեղեցւոյն: Տես
Սրուանձտեանց, Թորոս Աղբար, տպ. Կոստ. 1888, Հտ. Բ.
էջ 318: — Նոյնը կը գտնուի նաեւ Արիստակեայ Գրչու-
թեան մի օրինակին մէջ՝ մանր մանր տարբերութեամբք:

Զնարդ եւ իցէ, չկարենալով այսպիսի խնդրական գրուածոյ վրայ հաստատուիլ, եւ ոչ ի վեր անդր (էջ 28) յիշատակուածներուն վրայ, հարկ է որ կապուինք ի մեր ձեռս հասածին, որոյ ժամանակին նկատմամբ հնար չէ կասկածիլ. ուստի եւ Շապհոյ Բագրատունւոյ ժամանակէն իբր երեք դար վար իջնալով, գա՛նք մինչեւ ԺԲ. դարուն կէսն, որպէս զի խնդրական գրութեանց սկիզբը գտնենք:

## Է.

Բայց նախ քննենք թէ կա՞ր արդեօք կարօտութիւն այսպիսի նորօրինակ գրութեան. չէի՞ն բաւեր այն գրաբար մատեանքն որ այնչափ դարերէ ի վեր բաւական եղած էին ընդհանուր ազգին ամէն կրօնական եւ ուսումնական պիտոյքն լնուլ:

Ամենէն ընկալեալ եւ ամէն ժամանակաց փորձառութեամբ հաստատեալ ճշմարտութիւն է, որ ազգի կամ ժողովրդեան մը թէ՛ մտաւորական հրահանգութեան եւ թէ՛ նիւթական բարգաւաճութեան մեծապէս կը նպաստէ, նա թէ կարեւոր իսկ է՝ իւր սեպհական, եթէ ոչ խօսած՝ գոնեայ լաւ հասկցած լեզուաւ գիրք եւ դպրութիւն ունենալ: — Այս համոզմամբ էր՝ որ մեր դրականութեան հիմնադիրք այնչափ մեծաջան վաստակօք աշխատեցան ի գիւտ հայերէն նշանագրաց: Եւ երբ այս իրենց ջանքն ու աշխատութիւնն յաջողութեամբ պսակեցաւ, եւ ձեռն արկին գրաւոր գործունէութեան, բոլոր Հայաստան աշխարհի բարբառոց մէջէն զայն ընտրեցին՝ որ ոչ միայն ազնուագոյն եւ պատշաճագոյն էր քան զայլսն, այլ նաեւ անտարակոյս ընդարձակագոյնս տարածեալ քան զայլ բարբառս՝ իւրաքանչիւրն առանձին առանձին առեալ:

Ինչպէս քանի մի անգամ կրկնեցինք, իրենց գրութեան լեզուն եթէ ունէր եւս տարբերութիւն ինչ ժողովրդեան խօսածէն, թող զայն՝ որ ամենուն

իմանալի էր, իրաւամբք կը յուսացուէր թէ գրոց եւ դպրութեան օրըստօրէ աճելովն ու տարածուելովն՝ նոյն իսկ ժողովրդեան լեզուն հետզհետէ աւելի մօտենայ գրաւորին: Հարկ չկայ աստէն մանրամասն յառաջ բերել եթէ ի կեդրոնավայրի տէրութեան եւ եթէ երկրին մինչեւ յետին սահմաններն եղած ջանքերը, կրուած աշխատութիւնները, ծախուած գանձերը, նոյն գրաւոր լեզուն յամենայն գաւառս երկրին մուծանելու, եւ այնու ժողովրդեան մէջ ուսումն ու հրահանգութիւն տարածելու համար: Ունեցան անոնք իրենց արդիւնքը, թերեւս ոչ այնչափ առատութեամբ՝ որչափ կը յուսացուէր, եւ ոչ բոլորովին համեմատ՝ եղած զոհողութեանց. բայց ունեցան: Սակայն ազգին ամէն դասուց վրայ ի մասին մտաւորական հրահանգութեան ընելու ազդեցութիւնն ո՛չ շատ ընդհանուր եղաւ եւ ո՛չ երկարատեւ: Նոյնպիսի, եւ եթէ չենք սխալիր՝ անյաջողագոյն եւս, ելք ունեցան նաեւ յաջորդ ժամանակաց փորձերն, զոր աստ անդ յիշատակուած կամ ակնարկուած կը գտնենք:

Ծանօթ են այս անյաջողութեան աղէտալի պատճառներն, յորս նուազագոյն ազդեցութիւն ունեցողը չէ՝ կառավարութեան կեդրոնին եւ հայրապետական աթոռոյն յաջորդաբար յայլեւայլ կողմանս փոխադրուիլն, եւ այն՝ յայնպիսի կողմանս, որոց ժողովրդական բարբառն ի հարկէ նոյն չէր Այրարատեան գաւառին բարբառոյն հետ:

Յասացելոցս դիւրին է իմանալ՝ թէ հայ գրականութեան սկզբնաւորութենէն քանի մի դար յետոյ, ազգին մեծ մասն զրկեալ էր իւր լաւ հասկըցած եւ ըստ մասին նաեւ խօսած լեզուաւ գիրք եւ դպրութիւն ունենալու նպաստաւորութենէն:

Տխուր էր արդարեւ այս վիճակն, եւ տխրագոյն ապագայի երկիւղ պատճառելու էր. որովհետեւ գրաբարի հմտութիւնն օր քան զօր նուազելով ի ժողովրդեան, դիւրին էր գուշակել թէ ի

հարկէ պիտի գայ ժամանակ, որ բոլորովին անմատոյց ըլլան իրեն գրաբար գրութիւնք, որով յետ դարուց ինչ յայնպիսի վիճակ հասնի ազգն, որ շատ աննման չըլլայ Նշանագրաց գիւտին նախընթաց ամենատխուր վիճակին։

Թերեւս չափազանց յուսահատ երեւայ ոմանց այս մեր կարծիքն. Թերեւս շատք այնպէս համարին թէ ժողովուրդն ի հարկէ իմանալու էր այն լեզուն՝ որ ի տղայութենէ լսած էր եւ ամէն օր կը լսէր յեկեղեցիս, յաստուածային պաշտամունս եւ յընթերցմունս, մանաւանդ զի միայն գրաբար էր այն ամենայն՝ զոր գէթ մասն մի ի ժողովրդենէն անձամբ կը կարդար եւ մեծ մասն ի բերան առած կը զբուցէր յառանձնական աղօթս։ — Ստոյգ է եւ չի կրնար ուրացուիլ թէ յայն ժամանակս գրաբարն՝ օտար լեզուի նման՝ բոլորովին անիմանալի չէր եւ չէր կրնար ըլլալ ռամկին իսկ։ Արդարեւ կը հասկընային բազումք եւ Թերեւս նաեւ ամէնքն, բայց՝ ոչ եթէ կատարելապէս եւ ամենայն մասամբք։ Կը հասկընային, սակայն զայն միայն՝ որ նման էր իրենց սովորական խօսից եւ կամ անկէ բոլորովին տարբեր չէր։ Կը հասկընային. կամ լաւ եւս ասել՝ վեր ի վերոյ իմաստ կը հանէին. բայց թէ ճշգիւ կը թափանցէին իմաստից ամենայնի որ կը լսէին, այն տարբեր խնդիր է։ Կարծենք՝ ճշմարտութենէ հեռացած չենք ըլլար, եթէ ըսենք որ ժողովըրդեան մեծի մասին գրաբար հասկընալն՝ այն կէս ի կէս բժշկեալ կուրին տեսութեան նման էր, որ քայլող մարդիկն իբրեւ ծառ կը նշմարէր։ Կարծենք թէ այն ժամանակուան ռամկին մեծ անիրաւութիւն չենք ըներ, եթէ պատշաճ համեմատութիւնն պահելով՝ համարինք թէ իրենց մէջ ալ չէին պակսեր այնպիսիներ, որ լսելով՝ "Կեանք անչանց մերոց, — Զանօրէնութիւնս իմ ես ինչէն գիտեմ, — Մարդ մը՛ր՝ որ գործեր զերկիր, — Զի Աստուած ընդ մեղ է....„ իմանային, ինչպէս 40—50 տարի յառաջուան մարդիկներէ ոմանց վրայ լսած ենք թէ իմացեր են՝ "Կեանքս անչաւոր է, — Զանօրէնութիւնս իմ ես ինչո՞ւ գիտեմ։ — (Մուրս ի վրան,) մարդ մը՛ր՝ որ գործեր։ — Զի Աստուածս ձենձ է....„։ Ուր կը տեսնենք թէ ռամիկն իրականէն շատ տարբեր միտք կ'առնու եւ հասկընալ կը կարծէ գրաբարին այն մասերն՝ որ իւր սովորական խօսակցութեան մէջ ի կիր արկածին աննման են, ինչպէս են՝ անչանց. ինչէն, մարդ մը՛ր (չկար), ընդ մեղ։ Եւ ո՛վ չի գիտեր թէ գրաբարին մէջ որչափ ասացուածք եւ բացատրութիւնք կը գտնուին, որ

բոլորովին տարբեր են անգրագէտ մարդկան նովին նշանակութեամբ գործածածէն[1]:

Ի հաստատութիւն ասացելոցս կարող էինք ոչ սակաւ օրինակներ կամ դէպքեր յառաջ բերել. բաւական ըլլան յիշորդ երկուքն: Ներսէս Շնորհալի անշուշտ պատճառ մ'ունեցած պիտի ըլլայ՝ իւր սովորութեան հակառակ՝ ռամկօրէն գրելու ժողովրդեան համար շինած Առեղծուածներն կամ Հանելուկներն: Եւ ի՞նչ կրնայ ըլլալ այս պատճառն, եթէ ոչ՝ ժողովրդեան ըստ պատշաճի գրաբար չհասկընալը: — Յառաջ (էջ 22, Ծան.) նշանակեցինք թէ աստուածային պաշտամանց վերաբերեալ գրոց խրատագիրք կամ կարգադրութեանց հրահանգք ռամկախառն կամ ռամկօրէն շինուած են, ուրզի բուն աղօթք եւ երգեցմունք զուտ գրաբար են: Ի՞նչ է այս զանազանութեան պատճառն: Թէեւ չկարենանք շատ հին ժամանակաց գրութիւն համարիլ այն հրահանգներն, սակայն եւ այնպէս չենք կարող կարծել թէ գրաբարի անհմտութենէն պատճառած ըլլայ ռամկականութիւնն. վասն զի նիւթն այնպիսի է՝ որ ի հարկէ բարձրաստիճան եկեղեցական գրիչ կ'ենթադրէ: Այս ուրեմն պէտք է հետեւցընել թէ յայսմ եւս միեւնոյն պատճառէ յառաջ եկած ըլլայ. այս ինքն՝ ըսել թէ նոյն հրահանգները գրողն ուզած է ստորին կարգի կղերականաց՝ դպրաց եւ երգչաց՝ իրենց դիւրահաս լեզուաւ իմացընել անոնց կարեւոր նիւթերն, զոր չէին կարող ճշդիւ հասկընալ՝ եթէ այն հրահանգք անխառն գրաբար լեզուաւ տրուէին:

Բայց հնար է որ սխալինք մեր մակաբերութեան մէջ. ուստի միտ դնենք իրականութեան: Հարցընենք

---

[1] Անգրագէտ ռամկին գրաւոր լեզուն այսպէս ծուռ եւ իւր սովորական բարբառոյն համեմատ հասկընալն՝ մեր ազգին միայն արտօնութիւնը չէ: Լսած կամ կարդացած ենք լատիներէն հաւատամքին՝ Passus sub Pontio Pilato (Չարչարեցաւ առ Պոնտացւով Պիղատոսիւ) խօսքն, իտալացւոյ մը՝ È passato sotto il ponte Pilato (Պիղատոս կամրջին տակէն անցաւ) հասկընալն: Նոյնպէս ուրիշի մը՝ Sine qua non (Առանց որոյ ոչ) ասացուածն՝ իբր Sino quà e poi no (Մինչեւ հոս՝ անկէ անդին չէ, որպէս թէ հաւատաբազոր՝ Մինչեւ ցայսր եկեսցես եւ...) գործածելն: Դարձեալ Գաղղիացւոյ մը՝ Marci Tullii Ciceronis opera (Մարկոսի Տուղղիոսի Կիկերոնեայ մատենագրութիւնք) վերնագիրն, զոր հաւանաբար իւր տիրոջ մատենադարանին մէջ կարդացած էր, իւր հասողութեան համեմատ մեկնելով, պնդելն թէ Կիկերոն թատերգու հեղինակ է, եւ նոյն վերնագիրը կը նշանակէ. Les opéras de Cicéron, marchand de tulle (Շղարշի՝ Թիւլի վաճառական Կիկերոնի թատերգութիւնք:)

Շնորհալւոյն ժամանակակից Մխիթարայ Հերացւոյն՝ թէ բժշկարանդ ինչո՞ւ ռամկօրէն գրեցիր։ Պատասխանն արդէն տուած է. «Արարի զսա գեղջուկ եւ արձակ բարբառով. զի դիւրահաս լիցի ամենայն ընթերցողաց։ Ապա ուրեմն ինք համոզեալ էր թէ ընթերցողաց մէջ կային ոմանք — եթէ չըսենք՝ շատք — որոց դիւրահաս չէր գրաբառն։ — Հարցընենք իրմէ իբր դար մի յետոյ ապրող Յովհաննու Երզնկացւոյն՝ թէ ինչ պատճառաւ բոլոր գրուածոցդ մէջ գործածած սովորական գրաբարդ թողլով, «աշխարհական» (աշխարհիկ) լեզուաւ գրեցիր «Յաղագս երկնային շարժման» գրութիւնդ։ Ինք կանխած պատասխանած է՝ թէ «Պարզեալ գրեցի համառօտ բանիւ եւ աշխարհական խօսիւք, վասն դիւրաւ հասկանալոյ ամենայն ընթերցողաց։» (Տպ. Նախիջեւան, 1792. Յռջբն. Հեղին. էջ Ժ.։) Ուրեմն փորձիւ գիտէր թէ դիւրաւ հասկանալի չէ գրաբարն ընթերցողաց։

Մտադրութեան արժանի է այս երկու վկայութեանց մէջ ի կիր արկեալ ընթերցողաց բառն. այնու զի եթէ ըստ համարման այս ժամանակակից մատենագրաց՝ ընթեռնուլ կրցողներն իսկ չէին ի վիճակի դիւրաւ հասկանալոյ գրաբար գրութիւնքն, հարկ է ենթադրել թէ աւելի եւս անկարող էին անոնք՝ որ ընթեռնուլ չէին գիտէր։ Իսկ թէ ինչպիսի էր համեմատութիւնն ընթեռնուլ գիտցողներուն եւ չգիտցողներուն մէջ, այդ իմանալու համար՝ բաւական է միտ դնել թէ տակաւին երկու երեք դար կար տպագրութեան գիւտին, եւ քանի մի ձեռագիր իբր սեպհական ստացուած ունենալն՝ այնչափ դիւրին չէր, եւ բաւական մեծ գանձի տէր ըլլալ կը համարուէր։

Բերենք ի վերջոյ այլ եւս իրականութիւն մի։ — Գիտեն անշուշտ շատք թէ Մխիթարայ Գօշի Դատաստանագիրքն պարզ գրաբար լեզուաւ է, չունենալով այն խրթին բառերն եւ ուռուցիկ ոճն՝ որ կը գտնուին յոմանս ի միջինդարեան մատենագրաց։ Ծանօթ է նոյնպէս թէ Դատաստանագիրքը՝ ժողովրդեան շատ ստորին դասուց եւ անգրագիտաց համար չէ, այլ բարձրաստիճան եւ ըստ կարի ուսեալ անձանց համար։ Սակայն այս, կը կրկնենք, պարզ գրաբար լեզուաւ գրուած մատեանն, — նոյն իսկ ուսեալ եւ բարձրաստիճան անձանց — անհասկանալի էր ԺԳ. դարու, եւ այնչափ անհասկանալի՝ մինչեւ մատենագիր իշխան մի հարկ համարած է ռամկօրէնի դարձընել, որպէս թէ օտար եւ անծանօթ լեզուէ յազգային լեզու թարգմանէր։ Եւ թէպէտ այս աշխատասիրութեան մէջ ազգին նոյն ժամանակուան պիտոյից համեմատ փոփոխութիւններ կ՚ընէ,

կը համառօտէ, յաւելուածներ կը մուծանէ, այնպէս զի հնար է իբրեւ նոր անկախ գրութիւն համարիլ. բայց ինք իբրեւ բուն պատճառ եւ շարժառիթ նոյն ծանր եւ դժուարին ձեռնարկութեան՝ յառաջ կը բերէ նախնական — կ'երեւկնենք՝ պարզ գրաբար — գրութեան անհասկանալի ըլլալն: Ահաւասիկ իւր խօսքերն. “Ես Սմբատս ... որդի Կոստանդեայ Թագաւորահօր ... բազում աշխատեցայ ի սա, ծերացեալ մնօք, ի հին եւ յանհասկանալի բառից. եւ բազում աշխատութեամբ փոխեցի զսա ի մեր հեշտալուր բառս„ ... :

Նոյն իմաստն ընդարձակագոյն եւ բացայայտագոյն կը գտնուի այլ օրինակի մը մէջ, զոր թէեւ յաւելուած համարինք ընդօրինակողին կամ կարգադրողին, մեր ցուցման զօրութիւնն ամենեւին չի նուազիր, վասն զի Թարգմանչին ժամանակակից գրչի գրութիւն է, ինչպէս խօսքին շարունակութիւնէն կը տեսնուի. վասն զի կը գրուցէ թէ “... Մեղաց թողութիւն խնդրեցէք պարոնին մերոյ Սմբատայ, զի սա նոր ձեւ փոխել ի յիւր լուսաւորեալ գրչին„ : — Արդ այս երկրորդ ընդարձակագոյն եւ բացայայտագոյն ընթերցուածն հետեւեալն է. “Ես Սմբատս ... որդի Կոստանդեայ Թագաւորահօր ... բազում աշխատանօք աշխատեցայ ի Դատաստանագիրքս ծերացեալ մնօք եւ ձեռօք, ի հին եւ ի դժուարաբառ եւ յանհասկանալի գրոց. վասն զի այլակերպած էր եւ հեռացած ի հին հայ բառէն ի նորոյս, հանց որ ինչ մէն հասկանալ եւ ոչ յօգտել գոյր: Եւ բազում աշխատութեամբ փոխեցի զսա ի մեր հեշտալուր եւ ի ռամկական բառս„ ...[1]:

Ցուցալով որ այս ապացուցութիւնք բաւական ըլլան ամէն տարակոյս փարատելու եւ որպիսի եւ իցէ գիտնագրութիւն լռեցընելու՝ կը դառնանք ի կարգ բանիցս:

---

[1] Բերուած օրինակաց առաջին ընթերցուածն է Ս. Ղազարու մատենադարանի ձեռագրին, իսկ երկրորդն՝ Էջմիածնի մատենադարանի (Թ. 491) ձեռագրին, զոր յառաջ կը բերէ եւ մեկնաբանէ՝ Մխիթարայ Գօշի գրաբար Դատաստանագրոց հրատարակութեան ընդարձակ եւ հմտալից Յառաջաբանին մէջ (տպ. Վաղարշապատ, 1880, էջ 54) Վահան Ծ. Վ. Բաստամեանց: Յայտնի է որ մենք ալ պիտի զբաղինք այս գրութեամբ յընթացս գործոյս, ուր առիթ կ'ունենանք խօսելու նաեւ ի վեր անդր յառաջ բերուած հատուածին վրայ, որոյ՝ “Այլակերպած էր եւ հեռացած ի հին հայ բառէն ի նորոյս„ մասն, զոր ո՛չ մենք կարող եղանք հասկընալ եւ ո՛չ այլք, հարկ համարեցանք ստուգել տալ ի բնագրէն, եւ իմացանք թէ ճշդիւ նոյնպէս է:

Չենք կարող կարծել թէ յընթացս այնչափ դարուց գտնուած չըլլան յազգին բաւական սրատես անձինք, որ զայս ամենայն ըմբռնելով՝ ունեցած չըլլան շարեացս դարման տանելու խորհուրդն։ Հաւանական է նաեւ որ գէթ ի վերջին ժամանակս ոմանք տեսած ըլլան ժողովրդական կամ ռամկական բարբառով շարագրեալ գրոց կարեւորութիւնն, որոյ խորհուրդն բնականաբար կրնար ծնանել ի միտս՝ ընթերցմամբ այնպիսի գրոց, որք թէեւ գրաբար էին, բայց այնչափ ռամկական բացատրութիւններ կը բովանդակէին, որ եթէ ի մի վայր գումարուէին՝ բաւական էին ընդարձակ իսկ ռամկական գրութիւն ձեւացընելու։

Բայց մեծ եւ սաստիկ է հնաւանդ սովորութեանց զօրութիւնն. ոչ ոք կը համարձակէր յայնչափ դարուց հետէ վարժուած գրութեան կերպէն խոտորիլ եւ հակառակ կամ տարբեր կերպի ձեռնամուխ լինել։ Կարծենք թէ ճշմարտութենէ չենք հեռանար, եթէ ի կարգի զանազան նկատմանց եւ ակնածութեանց՝ որ նոյնպիսի խորհրդոյ գործադրութիւնն կը խափանէին, դնենք նաեւ անձնական պատիւն աղարտելու սնոտի երկիւղն։ Թերեւս ռամկօրէն գրոց օգուտն ու կարեւորութիւնը տեսնելով՝ անձամբ ի նոյն ձեռնարկելու խորհուրդն ունեցողներէն ոմանք յետս կասէին՝ իրենց ամօթ ու նախատինք համարելով այնպիսի բարբառ գործածել գրուածոց մէջ, որ ըստ գաղափարի ժամանակին՝ բուն գեղջկաց կամ գռեհկաց սեպհական էր։ Թերեւս այնպէս կարծէին թէ ռամկօրէն գրել՝ լեզուին խոստովանութիւն է գրաբար գրելու անկարողութեան։

Այսպիսի եւ ասոնց նման սնոտի ակնածութեամբք եւ թիւր երեւակայութեամբք սահեցան անցան տարիներ եւ դարեր, եւ եթէ չուզենք ըսել բովանդակ ազգն, ի հարկէ ըսելու ենք՝ ազգին մեծագոյն մասն, ժողովրդեան միջին ու ստորին դա-

սերն, զըկեալ մնացին հրահանգութեան պատշաճաւոր միջնորդներէն, ուսման գրաւոր օգնութենէն։ Նոյն երկարատեւ միջոցին՝ գրաբարն առ սակաւ սակաւ գրեթէ եկեղեցականաց յատկացեալ ստացուած դառնալով, որոց գրաւոր գործունէութիւնն՝ ինչպէս ծանօթ է՝ աւելի կրօնական եւ առ առաւելն պատմական նիւթոց ամփոփեալ էր, արտաքին գիտութեանց, ուսումնական եւ բանասիրական նիւթոց հոգ տանող չէր գտնուեր։ Այնպէս որ ուսմանց եւ գիտութեանց զբաղիլ ուզող սակաւաւոր անձինք, իրենց ուսումնասիրութիւնն յագեցընելու համար՝ կը հարկադրէին հայրենիքէն հեռանալ, յօտար գաւառս երթալ, օտար լեզուներ սորվիլ, գլխաւորաբար արաբական լեզուն, եւ այն միջոցով կատարելագործել իրենց ուսմունքն ու հրահանգութիւնն։

## 8.

Այս վիճակ իրաց չէր կրնար մշտատեւ ըլլալ. ի հարկէ փոփոխութիւն կամ նորոգութիւն մուտ պիտի գտնէր, ի հարկէ պիտի գար ժամանակ՝ որ ժողովրդական բարբառն ի գիր առնուէր, յերեւան ելլէին ռամկական գրութիւնք։ Հասարակօրէն կ'ըսուի թէ ժողովուրդն իբր բնական ազդմամբ կ'իմանայ իւր հարկաւորն ու օգտակարն, եթէ որոշակի եւ պայծառ ըմբռնմամբ ոչ, անորոշ եւ աղօտ գաղափարով։ Այսպիսի պէտք էր ըլլալ ի վերջին ժամանակս ժողովրդեան մեծագոյն մասին զգածումն նկատմամբ առաջիկայ նիւթոյն. ըստ չափու նուազելոյ հմտութեան գրաբարի՝ պէտք էր զգալ թէ կարօտ է խօսած եւ հասկըցած լեզուաւ գիրք ունենալու։

Եւ ի՞նչ կար աւելի բնական՝ քան բաղձալ նաեւ գրուած ունենալ այն լեզուն, որ հասարակ եւ սովորական էր ժողովրդեան ամէն դասուց մէջ, ամէն կողմ ի կիր արկեալ՝ արտաքոյ եկե-

ղեցւոյ, թէ գեղացւոյն խրճթին եւ թէ թագաւորաց եւ իշխանաց ապարանից մէջ. այն լեզուն, կ'ըսենք, զոր իրենց սեպհական կը համարէին ոչ աշխարհական մարդիկ միայն, այլ նաեւ եկեղեցականք եւ բարձրաստիճան իսկ եկեղեցականք, եւ այն՝ Ժ. դարէն (թերեւս նաեւ աւելի հին ժամանակներէ) սկսեալ։ Այսպէս Խոսրով Անձեւացի, հայր Գրիգորի Նարեկացւոյ, ռամկական բարբառն իւրացուցանելով, կը գրէ. “Ստուեր ասի, զոր դուք “շուք կոչէք„. դարձեալ՝ “Ամբողջ է, զոր դուք համբողջն ասէք„. (Ի մեկն. պտրգի, տպ. Վենետ. էջ 29 եւ 55.) թող զայլ յետնագոյնս, որ յաճախ նոյն ձեւով կը բացատրեն ռամկօրէն բարբառոյն յատուկ բառերն։

Հարկ էր որ ժողովրդեան այս գաղափարն՝ ինչպիսի եղանակաւ եւ է՝ իրագործուէր, դարման տարուէր զգացուած կարօտութեան. հարկ էր որ երբ եւ իցէ՝ հասարակաց բաղձանքն իրօք կատարուէր, միով բանիւ՝ ժողովրդական բարբառն ի գիր առնուէր։ Արդեամբք իսկ դարերով ետ մնացած այս գործն ի գլուխ ելաւ, սկսաւ ռամկական գրականութիւնն, եւ մի անգամ սկսեալն յառաջ գնաց, ի սկզբան անդ յամրաքայլ եւ ընդհատութեամբ՝ որչափ կրնայ գուշակուիլ մինչեւ ցարդ մեր ձեռքն հասած գրութիւններէն, իսկ յետոյ՝ արագ եւ անընդհատ։

* * *

Ինչպէս ամէն մարդ ինքնին կը տեսնէ, այս նորամուտ ռամկական գրութեամբք՝ հայ գրականութիւնն մեծ կերպարանափոխութեան ներքեւ իյնալու էր, ոչ ըստ ներքին հանգամանաց կամ ըստ լեզուին միայն, այլ նաեւ ըստ արտաքին պարագայից։

Մեր հին կամ գրաբար մատենագրութեան յատկութեանց մին՝ որ ի սկզբանէ մինչեւ ցվերջն հաստատուն եւ անփոփոխ մնաց, այն էր՝ լինել միշտ

արդիւնք աշխատասիրութեան գրեթէ միայն եկեղեցական դասուն, որ անտարակոյս իբր մասն իւր սեպհական պաշտաման կը նկատէր գրաւոր գործունէութիւնն։ Եթէ ի հանդիսի անցընենք գրագիտաց բազմաթիւ գունդն՝ որ Ե. դարէն մինչեւ ԺԲ. դար իրենց գրաւոր վաստակովք ծանօթ են յազգիս, կարգ ըստ կարգէ մեր առջեւ կ'ելլեն կաթողիկոսունք, եպիսկոպոսունք, վարդապետք, երիցունք, աբեղայք, միով բանիւ՝ կղերական վիճակի ամէն դասերէ անձինք։ Ընդ հակառակն՝ աշխարհական կարգէ մարդիկ, — թէեւ գոնեայ յառաջին դարս մատենագրութեան՝ հմուտ էին գրաբարին, եւ ոմանք իրենց ուսումնասիրութեան եւ ընթերցասիրութեան ցոյցն իսկ տուած են՝ այլեւայլ գրոց շարժառիթ եւ սկզբնապատճառ ըլլալով, — որչափ մեզի ծանօթ է՝ կարծես թէ սկզբամբ հեռու կեցած են գրաւոր գործունէութենէն, զոր թերեւս օտար կը համարէին իրենց վիճակէն։ Ընդ մատենագիր եւ ընդ թարգմանիչ, սկսեալ ի Սահակայ եւ ի Մեսրոպայ՝ մինչեւ ցՇնորհալի եւ նորին անուանակից Լամբրոնացի, միայն ամենածանօթներն առնլով՝ հարիւրէն աւելի հեղինակաց մէջ՝ հազիւ ի ԺԱ. դարու կը գտնենք զԳր. Մագիստրոս իշխանն, Գրիգորի Վկայասէրի հայրն, որ յաշխարհականաց մասնակցած է գրականութեան՝ թէ՛ արձակ եւ թէ՛ չափաբերական գրուածովք, որք գոնեայ ըստ մասին ցմեզ հասած են։

Մեծ ուշադրութեան արժանի է մեր հին մատենագրութեան այս յատկութիւնն, եւ ուսումնասիրաց կարեւոր նիւթ կրնայ մատակարարել բանասիրական-քաղաքական հետազօտութեանց եւ խորհրդածութեանց։ Վասն զի թէպէտ ի քրիստոնէական գրականութեան միջինդարեան համօրէն ազգաց քով կը նշմարուի նոյնպիսի երեւոյթ, բայց ոչ այնու ընդարձակութեամբ կամ սաստկութեամբ՝ որչափ ի մերն։ Արդարեւ անոնց մէջ ալ սակաւաւոր են աշխարհական մատենագիրք՝ համեմատութեամբ եկեղեցականաց. բայց կան բաւական թուով, որ ընդարձակ մատենիւք իսկ հարստացուցած

են իւրաքանչիւր իւր ազգին գրականութիւնն։ Նոյնպիսի եւ Թերեւս աւելագոյն մտադրութեան արժանի է նաեւ այն պարագայն, որ օտար ազգերու աշխարհական մատենագրաց աշխատութիւնք պահուած են եւ մինչեւ ցայսօր կը պահուին. իսկ առ մեզ աշխատութիւնք նաեւ այն սակաւաւոր անձանց՝ որոց անուանք կը յիշատակուին իբրեւ հեղինակ մատենի կամ մանր գործուածոց, գրեթէ անհետ կորուսեալ են։ Ստոյգ է՝ նաեւ եկեղեցական դասուն գրուածոց շատ կորուստներ ունինք ողբալու. սակայն մեծագոյն մասամբ անկորուստ մնացած են, եւ կորուսեալ համարուածներէն եւ նոյն իսկ բոլորովին անծանօթներէն հետզհետէ միշտ յերեւան կ՚ելլեն։

Իսկ աշխարհականաց գրութիւնք ...։ Որչափ եւ սակաւաթիւ համարինք մինչեւ ԺԲ. դար եկեղեցական դասէն դուրս մատենագիրք, յայտնի է թէ եղած են, եւ արգեամբք իսկ քանի մի անձինք՝ ինչպէս ըսինք՝ կը յիշատակուին յայլեւայլ գիրս։ Բայց հազիւ միոյն կամ երկուքին գրուածոց նշմարանք պահուած են եւ մինչեւ մեր ժամանակն հասած. մնացելոց վրայ իրենց անուանէն ի զատ գրեթէ ոչինչ գիտենք։

Յառաջագոյն (էջ 29) խօսեցանք Շապհոյ Բագրատունւոյ պատմութեան կորստեան վրայ, զոր ինչպէս տեսանք՝ ի ձեռին ունի եւ կը գործածէ Յովհաննէս կաթողիկոս. նոյնպէս ունի նաեւ Ուխտանէս Սեբաստիոյ եպիսկոպոս ի Ժ. դարու։ Այս յետինս երկնկեկ գլուխ մի կը լնու Դուլթի մարգարէի Թագին զրուցովն, որոյ վերնագիրն է. "Յաղագս Թագին երանելոյն կոս-"տանդիանոսի, թէ ուստի կամ որպէս յաջողեալ եղեւ "նմա ի Տեառնէ, Շափոյ (Շապհոյ) որդւոյ Աշոտոյ... "ասացեալ ի պատմութեան իւրոյ„։ (Տպ. Վաղարշապատ. Հատ. Ա. էջ 109—111։) Կայ նաեւ յիշատակութիւն նոյն զրուցին Ստեփ. Ասողկայ Պատմութեան մէջ՝ այսպէս. "Սա (Կոստանդիանոս) խնդրեաց եւ առ "զնախկի Թագն Դուլթի մարգարէին ի Շապհոյ Պարսից "արքայէ, զոր բարձեալ էր ի գլխոյն Յեքոնիայ որդւոյ "Յովակիմայ՝ Նաբուգոդոնոսոր արքայն, որպէս ուսուցանէ "քեզ Պատմութիւնն Շապհոյ Բագրատունւոյ, որդւոյ "Աշոտոյ անթիպատրկի„։ (Տպ. Պետերբուրգ, 1885, էջ 138[1]։) Իսկ այն ժամանակներէն ետեւ՝ միայն անունը

[1] Տես նաեւ Պատմ. Հայ. Դպր. Հտ. Ա. էջ 486։ Նոյն Դպրութեան մէջ (էջ 513, 514) յառաջ կը բերուի նաեւ յիշատակարան մի, յորում այսպէս կը գրուի Շապհոյ Բագրատունւոյ պատմութեան վրայ. "Այս՝ ի պատմութենէ

կը յիշատակեն ԺԲ. դարուն Սամուէլ Անեցի եւ ԺԳ. դարուն Կիրակոս Գանձակեցի, իրենց գրոց սկիզբն ի կարգի այլոց պատմագրաց. ի նմին դարու նաեւ Մխիթար Անեցի կը յիշատակէ նոյնպէս ի կարգի այլոց պատմագրաց. (տպ. Պետերբուրգի, 1879, էջ 15.) եւ հաւանական կ'երեւայ որ ասոնք ի ձեռին ունեցած չըլլան։ — Արդարեւ միեւնոյն Թագին զրոյցն յառաջ կը բերէ նաեւ Վարդան Վարդապետ՝ ի ԺԳ. դարու առանց հեղինակի անուն յիշելու. սակայն պարագայից միտ դնելով՝ կրնայ հաստատուիլ թէ Ուխտանիսէն առած է եւ ոչ Շապուհ Բագրատունիէն[1]։

Որովհետեւ Շապուհ ամենէն ծանօթ մատենագիրն է ի սմին կարգի, կամեցանք ընդարձակագոյն տեղեկութիւն տալ, մանաւանդ զի վրան իբրեւ հին ժամանակաց ռամկագիր հեղինակ եղած կարծիքն՝ զինք մեզի համար կարեւոր անձնաւորութիւն կը կացուցանէ։ Յայսմ մասին աւելորդ չենք համարիր յաջորդ տողերն ալ յաւելուլ։ Թէեւ ըստ արտաքին երեւութին կրնայ կարծուիլ թէ Ուխտանէս զզրոյցն Թագին՝ բուն Շապհոյ Բագրատունւոյ խօսքերովն ի մէջ բերէ. բայց իրն ամէն պարագայիւքն՝ թէ ըստ նիւթոյն եւ թէ ըստ լեզուին՝ ուշի ուշով քննելով, եւ միտ դնելով Յովհաննու Կաթողիկոսին մեղադրութեան, (որ այսու ենթադրութեամբ բոլորովին անհիմն՝ մանաւանդ թէ անիրաւ

Շապհոյ Բագրատունւոյ է, որդւոյ Աշոտոյ Ապուհիւպատ պատրկի, յանուն Դաւթի Բագրատունւոյ՝ որդւոյ Աշոտոյ իշխանաց իշխանի, զոր ի ձեռն առեալ եւ ընկալեալ յօժարութեամբ հօր Դաւթի՝ առաջնորդի վանացս սրբոյն Ստեփաննոսի ի Բագրեւանդ գաւառի, եւ յոյժ բերկրեալ՝ յաղագս հեռի գոլոյ ի ստութենէ եւ լի ճշմարտութեամբ, յաւել յինքենէ զճառս բանից աստուածայնոց"։ Բանասիրաց համար բաղձալի էր որ նշանակուած ըլլար՝ թէ ինչպիսի՛ է այն դէպքն՝ որոյ առթիւ կը յիշատակուի նոյն պատմագիրն։

[1] Վարդան համառօտիւ կը յիշատակէ սրբոց Քառանից Սեբաստիոյ թաքուստն ու նահատակութիւնն, առնլով յընդարձակ պատմութենէ Ուխտանիսի, (Հտծ. Ա. էջ 85—88,) եւ կը վերջացընէ այսպէս. "Զոր (զհնգետասան "Արեգ ամսոյ) Ո—խԲանէս տօն կարգեաց, որ է սկիզբն հան"գիսի նոցա, եւ կատարումն ի Մարտի ինն"։ Եւ այսմ կից կը շարունակէ. "Յետ այսորիկ խաղաղութիւն խնդրեաց "Շապուհ արքայ Պարսից ի Կոստանդեայ . . . եւ նորա "հաւանեալ՝ խնդրեաց ի նմանէ զԹագն Դաւթի մարգա"րէին . . ."։ (Տպ. Վենետ. էջ 42։) Կարծենք թէ ասկէ բնականաբար կրնայ մակաբերուիլ թէ միեւնոյն տեղէն առած է նաեւ Թագին զրոյցն։

կ'ըլլար,) աւելի հաւանական կ'երեւայ որ ըստ իմաստին միայն առած է եւ ինքնին ընդլայնած, քան թէ բառ առ բառ անկէ օրինակած։ — Կը մնանք լսել հմտագունից կարծիքն։

Շապհոյ Բագրատունւոյ պատմութեան բախտին հանդիպած է մեզի մերձաւորագոյն ժամանակաւ՝ Ռուբինեան զարմէն Թորոս իշխանին († 1168 կամ 1169) գրութիւնն։ Այս իշխանին եւ իւր աշխատասիրութեան վրայ տեղեկութիւն ունինք Վահրամ Վարդապետէն, որ Ռուբինեանց ոտանաւոր պատմութեան մէջ այսպէս կը գրէ. «Էր սա (Պարոն Թորոսն) մարմնով յառաջացեալ, «այլ եւ հոգւով յոյժ զօրացեալ . . . աստուածային «գըրովք վարժեալ, եւ յիմաստից արուեստ մտեալ։ Ա-«սեն հոգի սա ընկալեալ, մարգարէի հաւասարեալ. որով «դըժուար բանըս լուծեալ, որ ճշմարտի այժմըս ճշմարտեալ[1]»։

Կայ ասոնցմէ կանխագոյն (Է. դարէն) Դաւթակ անուն Բանաստեղծն կամ Քերթող, զոր յիշատակելէն ի զատ՝ անձնական հանգամանքն եւ փոքր չափաբերական գրութիւնն ի գովեստ Ջուանշիրի մեծի իշխանի, կը հաղորդէ Մովսէս Կաղանկատուացի, ի Պատմութեան Աղուանից[2]։

Բայց աս երեքէն՝ ի գիրս հնոց յիշատակելոց վրայ հետեւեալ տեղեկութիւնն ունինք Հ. Ղեւոնդ Վ. Ալիշանէն, որ ի պատասխանի մեր յատուկ խնդրոյն՝ այսպէս կը գրէ. «Աշխարհական մատենագիր յառաջ քան «ԺԲ. դար, համարիմ, թէեւ գրուածք չերեւիցին «նոցա արդ, կամ՝ հազիւ, «Պօղոսի Տարօնեցւոյ Թարգ-«ման, յորմէ որիշ եւ կրսեր Թուղ Պօղոսի Հէթմոյ «ԺԲ. դարու. մերձաժամանակ սոցին միւս եւս Գրիգորոյ «Բանաստեղծ, զոր ընթեռնուս յԱղուանից պատմու-

[1] Պատմ. Ռուբինեանց, տպ. Փարիզ, 1859. Սմբատայ Տարեգր. կից, էջ 208։ Տես նաեւ Շնորհալի եւ պարագայ իւր, էջ 123։ Բազմավէպ. 1873, էջ 66։ Պատմ. Հայ. Դպր. Հտ. Ա. էջ 757։

[2] Տես տպ. Մոսկաւ, ի լոյս ընծայ. Մկրտիչ Էմին, 1860, էջ 179—182. եւ տպ. Փարիզ, 1860, Հտ. Ա. էջ 351—359։ Յիշեալ գրութիւնն է ողբ «ըստ ալփափետաց «(կամ ալֆաֆիտաց) գլխակարգութեանց», զոր Դաւթակ կամեցեր է նմանեցընել Անյէնէ Նահէբեալ Շարականին. բայց թէ ըստ իմաստիցն եւ թէ ըստ լեզուին անկէ շատ ստորին ու հեռաւոր է։ Մոսկաւի տպ. մէջ կը հասնի մինչեւ Ճ գիրն. իսկ Փարիզի տպ. մէջ կը շարունակէ մինչեւ ցվերջն, թէեւ այս յետնոց մէջ տներ կան՝ որ թերի մնացած կ'երեւան, հազիւ մի կամ երկու տող ունենալով։ — Տես նաեւ Պատմ. Հայ. Դպր. Հտ. Ա. էջ 430 եւ 432։

«թեան Կաղանկատուացւոյն։ — Փիլոն Շիրակացի յԷ․ «դարու թուի ինձ աշխարհիկ։ — Սահակադուխտ քոյր «Ստեփաննոսի Սիւնեաց եպիսկոպոսի, երգահան։ — Մու-«րանալով մարթ է յիշել յԹ․ դարու զՄուշեղ Բա-«գրատունի ըստ պատմութեան Թովմայի Արծրունւոյ։ «— Յովհաննէս Բժշկողէր, ի նմին դարու։ — Ի Ժ․ եւ «ի ԺԱ․ դարս յիշին երեք Գագիկ թագաւորք, Ար-«ծրունին, Բագրատունին եւ Կարեցին, պայքարողք ընդ «Յոյնս եւ Թղթադիրք։ — Մագիստրոս յիշէ զԴանիէլ «երաժիշտ, զոր կարծեմ աշխարհական, եւ որոյ անուան «տառիւք գտանի Մեծացուցէ մի։ — Յիշի ի նմին ժա-«մանակի եւ Խաչիկ ոմն երաժիշտ, այլ չգիտեմ երէց թէ «աշխարհիկ»։

Այսչափ մեր մեծարոյ Թղթակիցն, որոյ հմտալից տեղեկութեան ոչ այլ ինչ ունինք յաւելուլ, բայց եթէ իւր գրուածոց մէջ տեղ տեղ այս աշխարհական մատենագրաց աշխատասիրութեանց կորստեան վրայ յայտնած ցաւոյն մեր եւս ցաւակցութիւնն։ — Բայց իւր յիշատակած Սահակադուխտ երգահանն՝ մեզի կը յիշեցընէ այլ երգահան օրիորդի մը յիշատակն, այն է՝ Վահանայ Գողթնացւոյն († 738) քոյրն, զոր ազգային աւանդութիւնն իբրեւ՝ բանաստեղծուհի կը ճանչնայ՝ իրեն ընծայելով այն փափուկ ու սրտաշարժ Շարականն, որոյ սկիզբն է՝ «Զարմանալի է ինձ քան զերգս երա-«ժըշտականաց ձայնս՝ ողբոց քոց հնչմունքդ»։ Գեղեցիկ է բովանդակն՝ որ հինգ տնէ կը բաղկանայ․ իսկ հետեւեալ տողերն, «Արտաքնոցն զգաստքն ստեղծիչ բանք ան-«տեացն ի պատրութիւն, իսկ քոյդ սիրայնոյ՝ աստուա-«ծարեալ եւ ոգեշահ...» հայ բանաստեղծութեան ընտրելագոյն կտորներէն մին կրնայ համարուիլ։ (Տես ընդարձակագոյն՝ Յուշիկք․ Հտ․ Բ․ էջ 194—200։)

Այս տեղեկութենէն կ՚իմացուի թէ ինչպիսի է կերպարանափոխութիւնն, զոր Հատածիս սկիզբներն յիշատակեցինք՝ ըսելով թէ ռամկական գրականութեամբ մուտ գտնելու էր։ Եւ արդարեւ ոչ փոքր կերպարանափոխութիւն է այն՝ որ գրաւորական գործունէութիւնն եկեղեցականաց շրջանէն դուրս ելլելով, հաղորդեցաւ նաեւ աշխարհականաց, որ հետզհետէ միջամուխ եղան մատենագրութեան։ Այսպէս ԺԲ․ դարուն վերջերը Մխիթար Հերացի բժշկապետն ի գլուխ անցաւ ուսումնական եւ զինուորական կարգէ աշխարհականաց,

որ — թէեւ ոչ այնչափ բազմութեամբ՝ որչափ յառաջագոյն եկեղեցականք — մի ըստ միոջէ իրարու յաջորդեցին, եւ ռամկական մատենագրութիւնն այլեւայլ գրուածովք ճոխացուցին։ Ուստի մին ի յատուկ նկարագրաց այս նոր գրականութեան՝ եղաւ աշխարհականութիւն, զոր օրինակ հին գրականութեանն՝ էր եկեղեցականութիւն։

Բայց այս յատկութիւն նորոյս այնչափ բացարձակ չէր որչափ հնոյն։ Վասն զի ոչ սակաւ եկեղեցականք եւս մասնակցեցան ռամկական գրութեանց, թէեւ յառաջին ժամանակս՝ որչափ յարտաքին նշանաց կրնայ գուշակուիլ՝ իբր ակամայ եւ ստիպեալ, գլխաւորաբար յորջունիս գրելու առթիւ, որոյ պաշտօնական լեզուն էր նոյն ռամկական բարբառն։ Այսր օրինակն արդէն բաւական ժամանակ յառաջ տուած էր Ներսէս Լամբրոնացի՝ իւր առ Լեւոն թագաւոր գրած գրաբար նամակաւն՝ յոր շատ աւելի ռամկականութիւն խառն է քան իւր այլ գրուածոց մէջ։ — Այսպէս մեծն Վարդան Վ. Արեւելցի առ Հեթում թագաւոր, այսպէս միւս Վարդան կամ Վարխամ, այսպէս Գրիգոր Կաթողիկոս Անաւարզեցի եւ այլք։ Այս ակամայ ռամկօրէն գրողներուն կարգը կրնանք դասել նաեւ զՅովհ. Երզնկացի, որ ի նոյն բռնադատեալ կ'երեւայ ի խնդրոյ Վաղթանկ իշխանի, որ իրմէ խընդրած էր գրել իւր "Ցաղագս երկնային շարժման" գիրքն, որոյ սկիզբն իբր թէ ինք զինք կը ջատագովէ նոյնպիսի լեզու ի կիր արկանելուն համար, ինչպէս նախընթաց Հատուածին մէջ (էջ 35) տեսանք, թէեւ աւելի ռամկախառն կրնայ համարուիլ՝ քան թէ իսկապէս ռամկօրէն։ — Սակայն անցմամբ ժամանակի, ըստ մասին գաղափարաց փոփոխուելովն, ըստ մասին եւս գրաբար գրելու վարժութիւնն նուազելով, նաեւ եկեղեցականք աշխարհականաց պէս՝ սոսկ նոյն խառն բարբառով եւս կը գրէին։ Այսպէս մինչեւ ցայժմ ի մեր ձեռս հասած ռամկա-

կան կամ ռամկախառն գրութեանց մէջ կան նաեւ շատ եկեղեցականաց աշխատասիրութիւնք։

Անձանց փոփոխութեամբն բնական էր որ փոխուէր նաեւ մատենագրութեան նիւթն։ Իւրաքանչիւր հեղինակ իւր գրուածոյն մէջ կը զբաղի այնու՝ որ իւր վիճակին կամ գործունէութեան շրջանին ներքեւ է։ Եկեղեցական մատենագիրք մեծագոյն մասամբ գրած էին եւ կը գրէին կրօնական նիւթոց վրայ. այնպէս որ անոնցմէ մեզի մնացած գրոց մէջ, եթէ ի բաց առնունք զպատմականսն, հազիւ քանի մի գիրք կը գտնենք արտաքին կամ ուսումնական նիւթոց վրայ։ Ինչպէս որ բնական էր այս, նոյնպէս բնական էր որ աշխարհականք ալ առաւելապէս աշխարհական կամ արտաքին նիւթոց նուիրէին իրենց գրիչն, գրէին ուսումնական ճիւղերու վրայ՝ ինչպէս իւրաքանչիւր վիճակն իւր հետը կը բերէր։

Այս ամենայն կը տեսնենք ի յաջորդ հատուածս, յորս պիտի խօսինք ռամկական Մատենագրութեան վրայ։

---

# ՄԱՍՆ Ա.

# ՌԱՄԿՕՐԷՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

## *ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ*

### Ա.

*Թէեւ նորանշան եւ օտարոտի հնչէ Ռամկօրէն մատենագրութեան բացատրութիւնս շատերուն ականջին, որք իբր մոռացածին ինչ նկատելով Ռամկական գրականութիւնն, անոր վրայ ճառելն՝ եղջերուաքաղի վրայ խօսելու հաւասար կը համարին: Այս կարծիքն անտի կը ծագի, որ շատք ճիշդ տեղեկութիւն չունենալով նախնեաց ռամկօրէն բարբառով յօրինեալ գրուածոց վրայ, — զոր կամ ի կարգ գրաբար գրոց կը դասեն եւ կամ ընդ հակառակն արդի հայերէն գրուածոց հետ կը նոյնացընեն, — ռամկօրէն գրուածոյ անուամբ կ'իմանան միայն Ախտարք, Երազահան, Վեցհազարեակ... եւ ասոնց նման քանի մի աննշանակ գրութիւնք: Այսպէս սակաւուց միայն ծանօթ է գոյութիւն այս միջին ճիւղի հայ գրականութեան, որ մեր հին (գրաբար) եւ նոր (արդի) լեզուին միջին օղակը կը կազմէ, բնական անցքն է միոյն առ միւսն:*

*Բայց իրօք եւ արդեամբք կայ այս երրորդ (միջին) ճիւղն, որ կարծուածէն ընդարձակ է, եւ ըստ բաւականին հետաքրքրական: — Վերջին* 6—7 *(ԺԲ. — ԺԷ.) դարուց մէջ թէպէտ գտնուած են ոչ սակաւք, որ իւրաքանչիւր ժամանակի գրաբարով գրած են, բայց բազմագոյնք ռամկօրէն կամ ռամ-*

կախուն բարբառով վարուած են։ Արդ. ասոնց գրուածոց մի մասը պահուած է, եւ այս է՝ որ Ռամկօրէն մաթէնաքրօ–նիքա կը կոչենք։

Թէ ինչպիսի ընդարձակութիւն ունի ռամկական մատենագրութիւնն, յայտնապէս պիտի տեսնուի՝ երբ հետզհետէ հրատարակուին ձեռագրաց գլխաւոր հաւաքածոյից օրինաւոր ցուցակք։ Տարակոյս չունինք որ անոնց մէջ բաւական բազմագումար պիտի երեւան ռամկաբարբառ գրութիւնք, մանաւանդ՝ եթէ ի նոյն կարգ դասենք նաեւ ռամկախառն գրաբարներն, որ այնչափ բազմաթիւ են ի յետին դարս։ Անշուշտ մեծ զարմանք պիտի պատճառէ տեսնել — թող զայլ ամենայն ճիւղս գրականութեան՝ որոց իւրաքանչիւր ունի իւր չափաւոր թուով երեւեցուցիչքն — զմեծ բազմութիւն բժշկարանաց, որ ԺԲ. դարէն սկսեալ՝ մինչեւ ԺԶ. դար յօրինեալ կամ թարգմանեալ են, բոլորն ալ ռամկական բարբառով։ Հիմնեալ մեզի ծանօթ հաւաքածոյից վրայ՝ կարող ենք հաստատել թէ չկայ ձեռագրաց գումարութիւն, թէեւ չըլլայ շատ հարուստ, յորում չգտնուի բժշկականութեան վերաբերեալ գոնեայ քանի մի ռամկախօս գրութիւն, թէ որոշ հեղինակի գործ եւ թէ անանուն, է որ ընդարձակ եւ մեծահատոր եւ է որ համառօտ, ըստ մասին համօրէն բժշկականութեան վրայ եւ ըստ մասին այս կամ այն առանձինն ճիւղին վրայ, մինչեւ անասնաբուժութիւնն իսկ ունի իւր յատուկ գրութիւնն։ Կան մինչեւ ի վերջին ժամանակս այսպիսի բժշկական գրուածք, որոց լեզուն գրեթէ մեր արդի հայերէնին հետ կը նոյնանայ։

Ասոնց վրայ պէտք է յաւելուլ նաեւ տատ անդ յիշատակեալ գրքերն՝ որ ցայժմ չեն գտնուած։ Ի մէջ այլոց՝ կայ յազգային մատենադարանի Փարիզու ձեռագիր մի, որ ինքնին իսկ նոր ցոյց մի է ի հաստատութիւն ասացելոցս՝ կրելով Քէֆ–աբա–նու–նի–ա անունն։ Արդ այս ձեռագրին մէջ կը յիշատակուին երեք գիրք թարգմանել տրուած Հեթում (Ա.) թագաւորէն, որք մինչեւ ցայժմ չեն յերեւան ելած։ Ահաւասիկ ձեռագրին խօսքն. “Եւ այս խրատներս այլ ի հետ պողպատ շինելուն եւ “մուխ տալուն էր գրած ի նոյն իմաստասիրացն Պարսից, “զոր թարգմանեց Հեթում թագաւորն Հայոց յորժամ “գնաց ութեւտասն հազար հեծելով ի վրայ Թշնամւոյն “Սուլտանին եւ կոտորեաց եւ սպանեաց զամենեսին, եւ “գնաց մեծաւ պատւով ի Պաղտատ առ Նոր խալիֆայն “եւ մեծ պարգեւօք դարձաւ։ Եւ իմաստասէր ումն սար-

"կաւագ Ստեփաննոս անուն գտեալ առ կայսրն որ այն-
"չափ ազգի ազգի գիր եւ լեզու ուսեալ նման առաջի
"փիլիսոփայիցն, եւ ոչ կայր գիր որ առ նմայ ոչ գտա-
"նէր. եւ նա սիրեցեալ եղեւ ի Հայոց Թագաւորէն վասն
"հզօր գիտութեան, եւ խնդրեաց յարքայէն եւ ետ
"թարգմանել երեք գիրս վասն Ջէոյ Դոյֆրուրնման եւ վասն
"Ֆրէ Լէնելոյ եւ վասն ուրէֆոնյան եւ լուսնի արվեստին, եւ
"բերեալ ի Հայոց աշխարհս»: (Տես Բազմավէպ, 1867,
էջ 354, Ծան.: Տես նաեւ Սիսուան, էջ 487, Ծան. 4:)

Արդէն այս պահուած եւ կամ ի մեր ծանօթու-
թիւն հասած մասն ռամկական մատենագրութեան չա-
փաւոր ընդարձակութիւն ունի. բայց կարծենք չենք
սխալիր՝ եթէ հաստատենք որ ասոնցմէ զատ կան այլ
եւս նոյնպիսի գրութիւնք՝ որոց գոյութիւնն իսկ գաղ-
տնութեան վարագուրաւ ծածկեալ է: Այսմ հաստատե-
լոյ համար չեն պակսիր օրինակներ, որոց մին միայն յի-
շատակենք: Քանի տարի մի յառաջ ոչ ոք գիտէր կամ
կ'երեւակայէր Ասիզոց Անտիոքայ եւ Մխիթարայ Գոշի
Դատաստանագրոց ռամկօրէն Թարգմանութեան կամ Նոր Խմբ-
ագրութեան գոյութիւնն, որք այժմ արդեամբք յերեւան
ելած են, եւ առաջինն հրատարակուած իսկ գաղղիերէն
թարգմանութեամբ[1]: Արդ ո՞վ կարող է հաստատել
թէ նոյնպիսի եւ թերեւս կարեւորագոյն գրուածք չկան
թաղեալ յանկեան ուրեք փոշւով ծածկուած, որոց
մօտաւոր կամ հեռաւոր ժամանակաւ նոյնպէս աշխար-
հածանօթ լինելն ոչ միայն բաղձալի՝ այլ նաեւ ակնու-
նելի է, նայելով փութոյ եւ հոգաբարձութեան՝ որ ի
վերջին ժամանակս գրեթէ ամէն կողմ ի գործ կը դրուի
զայնպիսիս գտնելու եւ ի լոյս ածելու:

Դառնալով ի կարգ բանիցս, կը ցուցենք թէ
որչափ ընդարձակ է ռամկական մատենագրութիւնն,
նոյնչափ ալ հետաքրքրական է: Մատադրութեան
արժանի է մանաւանդ այն պարագայն՝ որ նիւթոց
աւելի պէսպիսութիւն ունի քան զգրաբարն մատե-
նագրութիւն, բովանդակելով զանազան ուսումնա-
կան եւ բանասիրական գրութիւններ թէ՛ հեղի-
նակօրէն շարադրեալ եւ թէ՛ թարգմանօրէն աշխա-
տասիրեալ: Արդէն առաջին ռամկօրէն գրուածոց

[1] Assises d'Antioche, reproduites en français; Venise, 1876, imprimerie arménienne médaillée. Տես նաեւ Բազմավէպ, 1876, էջ 289—327:

նիւթերն են՝ բժշկական, մշակական եւ անասնաբուծական կամ տնտեսական, պատմական, օրէնսգիտական կամ դատաստանական, արքունական...։ Յետոյ եւս յընթացս առաջի մեր կ'ելլեն նոյնպիսի նիւթոց վրայ, միանգամայն բանասիրական եւ բանաստեղծական գրութիւնք, երգք, տաղք, վէպք, առակք, առասպելք եւ նմանիք, ըստ մասին ռամկօրէն եւ ըստ մասին ռամկախառն, ոմանք արձակ եւ ոմանք ոտանաւոր։

Այսու չենք ուզեր ըսել թէ ռամկական մատենագրութիւնս աւելի կարեւորութիւն ունի քան զգրաբարն. քաւ լիցի։ Այսչափ միայն կ'ուզենք իմացընել որ ինչպէս ռամկօրէն բարբառն՝ թէեւ գեղեցկութեան եւ ճոխութեան կողմանէ գրաբարէն շատ ստորին՝ ունի իւր յատուկ վայելչութիւնն ու ձեւաշատութիւնն, նոյնպէս նիւթոց զանազանութեան ու պէսպիսութեան հայեցմամբ՝ ունի առաւելութիւն, յորմէ զուրկ է գրաբարն։ Եւ թէպէտ այս ռամկօրէն գրոց՝ մանաւանդ ի յետին ժամանակս յօրինուածներուն՝ մի մասն չի կրնար ազնիւ ճաշակի եւ ընտիր բանասիրութեան գեղեցիկ օրինակ համարուիլ. սակայն եւ ոչ իսկ բոլորովին խոտան եւ առանց կարեւորութեան է, ոչ միայն ազգայնոցս համար եւ լոկ լեզուաբանական նկատմամբ, այլ նաեւ օտար բանասիրաց եւ ուսումնականաց՝ այլեւայլ հայեցմամբք։ Այոր ապացոյց կրնանք համարիլ նոյն գրութիւններէն ոմանց յեւրոպական լեզուս թարգմանուիլն, զոր յիւրաքանչիւր տեղիս կը նշանակենք ի կարգին։ Եւ թէպէտ ոչ այլ ինչ բովանդակէր՝ բայց միայն զԱնտիոքայ Անսիզքն, ո՞չ ապաքէն այս միակ գրութիւն բաւական էր մեծ ծանրակշռութիւն տալու ռամկական գրականութեանս, որ այնպիսի ամենակարեւոր յիշատակարան հնութեան պահած է։

Այս ամենայն կը ցուցընէ թէ ռամկական գրականութեան վրայ ճառողն՝ ոչ եթէ եղջերուա-

քաղէ կամ անգոյ եւ մնացածին էակաւ կը զբաղի, այլ իրականութեամբ, այնպիսի իրականութեամբ՝ որ արժանի է լիով ուսումնասիրուելու։

* * *

Գրութեանս սահմանաւոր չափն ու յատուկ նպատակն չեն ներեր մեզի ընդարձակօրէն եւ մանրամասն խօսիլ բոլոր ռամկօրէն մատենագրութեան վրայ, թուել մի առ մի ամէն ռամկագիր հեղինակներն, ի մէջ բերել բոլոր գրութիւններն։ Եթէ իւրաքանչիւր հեղինակին կամ գրութեան վրայ համառօտ իսկ տեղեկութիւն տալ, քանի մի սակաւատող օրինակ յառաջ բերել կամենայինք, շատ աւելի կ'ընդարձակէր գործս քան զոր դիտած ենք։ Մանաւանդ զի կան նաեւ ոչ սակաւ այնպիսի գրութիւնք՝ որ մեր նպատակին չեն ծառայեր, սովորական պարզ բացատրութիւններէ ի զատ՝ նոր ձեւ կամ յատուկ ասացուած չքովանդակելով, ուր մեր գլխաւորաբար դիտածն է լեզուաբանական մասն բարբառոյս, որուն բոլորովին անօգուտ են յիշեալ գրութիւնք՝ զուրկ գտնուելով ռամկօրէնի սեպհական վայելչութենէն։ Ո՞ւր թողունք եւ զայն գրեթէ անյաղթելի դժուարութիւնն՝ որ ընդ առաջ կ'ելլէր այդպիսի ձեռնարկութեան՝ թէ՛ ամէնուն վրայ տեղեկութիւն ժողովելու եւ թէ՛ իւրաքանչիւր գրուած ի ձեռին ունենալու։ — Ամենածանօթ է թէ ռամկական գրութեանց շատ փոքր բաժինն ի լոյս ելած է տպագրութեամբ, անհամեմատ մեծագոյն բաժինն անտիպ մնացած ըլլալով աշխարհիս ամէն կողմերն ցիր ու ցան սփռեալ։ Իսկ թէ որչափ դժուարին է այս վերջնոց վրայ լոկ տեղեկութիւն առնուլ՝ թող թէ օրինակն ստանալ, անոնք միայն գիտեն որ առիթ ունեցած են փորձելու[1]։

[1] Բերենք ի մէջ գանգատանքն՝ զոր խոցեալ սրտիւ կ'ընէ յայսմ մասին աշխարհահռչակ Մատենագիր մի. "Ասացից եւ ինչ մի իբրեւ պարզօրէն ի գիտութիւն եւ ի

·Թէ՛ մեր գրութեան նպատակն եւ թէ՛ վերոյիշեալ դժուարութիւններն առաջի աչաց ունենալով, արդէն իսկզբանէ ծանուցած ենք թէ միտ չունինք նախնեաց ռամկօրէնին լիաչափ գրագիտութիւնն յօրինել։ Ուստի եւ այս մասն գրութեանս այնչափ ինչ միայն պիտի բովանդակէ ռամկօրէն մատենագրութենէն՝ որչափ կարող եղած ենք հաւաքել եւ որչափ մեր նպատակին համար կարեւոր է։ Սակայն եւ այնպէս մերովսանն ջանացած ենք լիուլի տեղեկութիւն տալ հայ գրականութեան այս ճիւղին վրայ։ Գլխաւորաբար ուշադիր եղած ենք այնպիսի օրինակներ մէջ բերել, որ անոնց ամբողջութեան մէջ յերեւան ելլեն ռամկօրէն բարբառոյն ամէն յատկութիւնքն, պայծառ տեսնուին համօրէն առաւելութիւնքն ու պակասութիւնքն, վայելչութիւնքն ու տգեղութիւնքն։

## 10.

Կը ցանկայինք՝ հետեւելով սովորութեան գրագիտութեանց՝ ոչ միայն ժամանակագրական կարգաւ դասաւորել մատենագիրներն ու մատենագրութիւններն զոր ի մէջ պիտի բերենք, այլ նաեւ զանազան ժամանակի միջոց բաժնել ռամկօրէն մատենագրութեան բովանդակ տեւողութիւնն։ Բայց գրութիւնս առաջին փորձ մ'ըլլալով եւ մասնական ինչ, եւ ոչ եթէ լիակատար գրագիտութիւն, բաւական կը համարինք լոկ ժամանակի կարգաւ առանձին առանձին ճառել հնագոյն եւ նշանակութեան արժանի գրուածոց վրայ՝ մինչեւ ցԺԶ. դար, ըստ ոճոյն եւ ըստ նիւթոյն՝ մէջ ընդ մէջ զետեղելով

---

“զարմանս ապագայ դարու, զոր ակն ունիմ խոհեմագոյն
“քան զներկայս եղանիլ, զի եւ ոմանք զլացան, եւ այլք
“ոմանք եթէ ետուն ինչ՝ ճարտարեալ ծածկեցին զանուանս
“եւ զհեղինակս մատենիցն, եւ ուր առաւելապէս յուսալի
“էր ինձ գտանել յիշատակս պիտանիս՝ այնքան պնդութեամբ
“ընդդէմ փակեալ էր, զի եւ բաղխել անգամ զդրունսն
“աւելորդ վարկայ„։ Սիսուան, Ցուցքն. էջ ԺԱ. Ծան.։

անյայտ ժամանակաւ գրութիւնքն. իսկ յետնադունաց վրայ կը խօսինք խմբովին, եւ այն՝ որչափ մեր լեզուագիտական հետազօտութեանց համար կարեւորութիւն ունին։

Այս կերպն ընտրելնուս գլխաւոր պատճառաց մին է՝ քանի մի հնագոյն եւ նշանաւորագոյն գրուածոց ժամանակին անորոշութիւնն զոր ակնարկեցինք։ — Ռամկագիր հեղինակութեանց կամ թարգմանութեանց կան ոմանք՝ որոց գրութեան տարին իսկ ճշդիւ նշանակեալ է, կան այլք՝ որոց ժամանակն մերձաւորապէս կրնայ իմացուիլ, նայելով հեղինակին կենաց միջոցին եւ կամ գրութեան առթին եւ պարագայից. բայց կան նաեւ այնպիսիք՝ որոց ժամանակն անորոշ մնացած է, անծանօթ ըլլալով հեղինակին կամ թարգմանչին անունն։

Հին գրութեանց ոմանց ժամանակին այս անորոշութեան, եւ այլ գրոց ժամանակին վրայ լիուլի ապահովութեան պակասութեան պատճառաւ՝ դժուարին է ճշդիւ եւ որոշակի սահմանել թէ երբ սկիզբն եղած է այս կերպ գրութեանց, ո՛վ զառաջինն ձեռնարկած է ի նոյն։ Արդարեւ աստ անդ ակնարկեցինք թէ ըստ մեր տեսութեան՝ ԺԲ. դարուն երկրորդ կէսն կրնայ դրուիլ իբրեւ ժամանակ սկզբնաւորութեան, նոյն միջոցէն ըլլալով մեր ձեռքն հասած ամէնէն հին բուն ռամկական (եւ ոչ լոկ ռամկախառն) գրութիւնն՝ որոյ ժամանակն գէթ մերձաւորապէս որոշ է, եւ հնար չէ կասկածի ներքեւ ձգել։ Բայց ո՞վ կարող է համարձակ վճռել թէ անկէ յառաջ չկային նոյնպիսի գրուածք, երբ կը գտնուին ակնարկութիւնք եւ յիշատակութիւնք իսկ գրութեանց կամ թարգմանութեանց, որք նայելով հանգամանաց ժամանակին եւ անձանց՝ հաւանաբար ի ռամկական բարբառ ըլլալու են, մանաւանդ երբ կայ հին գրութիւն մի՝ որ արդեամբք ռամկական է։ Եւ միթէ կարելի՞ է բոլորովին անգոյ

համարիլ այնպիսի գրուածն՝ որ մեր կարծած ժամանակէն գրեթէ երկու դար յառաջուան վերնագիր կը կրէ։

Մխիթար Հերացի, որ ԺԲ. դարուն երկրորդ կիսուն կը պայծառանար, նոյն դարուն վերջերն հրատարակած բժշկական գրութեան Յառաջաբանին մէջ կ'ակնարկէ թէ իւր ժամանակը կային զանազան բժշկականութիւնք հայ լեզուաւ։ «... Վարժեցայ, կ'ըսէ, «ի դպրութիւն Արաբացւոց, Պարսից եւ Հելլենացւոց։ «Տեսի յընթերցումն որ առ նոսա գրոցն՝ զի ունէին «զարուեստ բժշկութեան լի եւ կատարեալ ըստ առաջին իմաստնոցն, այս ինքն՝ զնախագիտութիւն, որ է «իմաստ եւ վարդապետութիւն բժշկական արուեստից։ «Եւ է Հայք բնաւ ոչ գտի զվարդապետութիւն եւ զիմաստ նախագիտութեան, այլ գործական միայն, եւ «այն՝ ոչ բոլոր կերպի եւ լի, այլ համառօտ եւ ծաղկաքաղ «ազգէ եւ անգէ հաւաքեալ յայլեւայլ գրոց եւ ի մտաց «այլայլած»։

Արդ ուրեմն ի կէս ԺԲ. դարու կային բժշկական գրութիւնք, որոց համար կարող ենք ասել հաւանական կարծեօք թէ ռամկօրէն էին, ինչպէս առհասարակ ամէն նոյնպիսի գրութիւնք յաջորդ ժամանակաց։ Բայց ո՞ւր է լիուլի ստուգութիւն յայսմ մասին. եւ ո՞վ կը համարձակի հաստատել կամ կարող է ապացուցանել թէ գրաբար չէին։ Կարծեմ՝ ոչ ոք կը յանդգնի որոշակի վճիռ տալ, մանաւանդ երբ խորհրդածէ՝ որ եթէ Մխիթարայ ունեցած հայ բժշկական գրութիւնք ռամկական բարբառով էին, ինչո՞ւ պիտի ծանուցանէր իւր Յառաջաբանին վերջերն թէ «Արարի զսա գեղջուկ եւ «արձակ բարբառով», որպէս թէ ի նոր ինչ կերպ գրութիւն ձեռն արկած, որովհետեւ նոյնպիսի գրենոյն սովորական լեզուն արդէն միեւնոյն գեղջուկ կամ ռամկօրէն լեզուն էր։ Եւ թէպէտ այսմ կրնայ պատասխանուիլ՝ որ եթէ այդ պատճառ զօրութիւն ունենար, կը հետեւէր թէ նաեւ մինչեւ ԺԵ. դարուն կէսն գրեալ բժշկարանք գրաբար էին, վասն զի ի կէս նոյն դարուն այլ ոմն մատենագիր բժշկարանի (Ամիրտովլաթ) միեւնոյն կերպիւ կը խօսի իւր գրութիւնն աշխարհաբառ կամ ռամկօրէն յօրինելուն վրայ. — հանդերձ այսու ամենայնիւ Հերացի բժշկապետին յիշած գրոց ռամկական եւ ոչ գրաբար լեզուաւ ըլլալն չի ստանար լիուլի ստուգութիւն, այլ միշտ կը մնայ ի սահմանի հաւանականութեան։

— Դնենք ատա Ամիրտոլվաթայ խօսքն՝ որ ինքնին իսկ բաւական հետաքրքրական է, եւ մեծ լուսաւորութիւն կու տայ ռամկական գրութեանց լեզուին խառնակութեան վրայ։ “Եւ այլ յիշենք թէ էր եղաւ այս
“գիրքս աշխարհաբառ. եւ այս վասն երեք պատճառի։
“Առաջին այն է՝ որ ամենայն մարդ քերական չի կարէ
“կարդալ եւ կամ արտաքին գրեանք՝ որ զայս խրթին
“բաներս յիմանայ. այնոր համար եղաւ աշխարհաբառ։ Եւ
“երկու պատճառն այն է աշխարհաբառ լինելոյն՝ որ այլ
“բառեր խառնեցաք, որ մեք ի տաճկանց բառն գտաք,
“եւ պիտան էր այս բառերս մեզի վասն տաճկանց ստա-
“ծումն առնելուն համար։ Եւ երեք պատճառն այն է՝
“որ կայ ի յայս գիրքս յարապկերէն եւ պարսկերէն եւ
“հոռոմերէն եւ թուրքերէն, այնոր համար՝ որ այս գիրքս
“ի յայլ լեզուէ փոխել է, այնոր համար շատ բառեր
“կայ ի յայս գիրքս, եւ է աշխարհաբառ։ Եւ թէ Ա-
“տուած յաջողէ ի գրոցս վերջն (դնեմք, յաւելցնեմք)
“բառգիրքմն, որ զինչ որ դժար բառ կայ՝ հայ լեզուաւ
“պատմէ, զի որ կարդացողն է՝ դիւրաւ հասկնայ եւ
“ուսանողն դիւրութեամբ ուսանի, եւ իսկի ի ծածուկ
“իրք չի մնայ եւ յայտնի կամօքն Աստուծոյ„։ —

Յառաջ վարելով պատճառաբանութիւնս, կ՚ըսենք, որովհետեւ մեր խօսքն ատա ռամկօրէն գրութեանց սկզբնաւորութեան ճիշդ ժամանակին վրայ է, եւ ոչ եթէ կանխագոյն քան զՄխիթար ռամկօրէն գրութիւն գտնուելուն եւ չգտնուելուն վրայ, — եղեալ եւս թէ ապացուցեալ ըլլար որ իրօք ռամկօրէն բարբառով յօրինեալ էին իրմէ յառաջ գրեալ բժշկարանք, այն միայն ցուցուած կ՚ըլլար թէ ԺԲ. դարէն յառաջ եղած է սկզբնաւորութիւն ռամկական գրոց. իսկ ճիշդ ժամանակ նոյն սկզբնաւորութեան միշտ անորոշ կը մնար, ինչպէս ինքնին յայտ է։

Սակաւ մի յառաջ ակնարկեցինք թէ կայ գրութիւն մի հին՝ որ իրօք ռամկական է։ Այս գրութիւնն է բժշկարան մի մատենադարանի Ս. Ղազարու՝ գաղափարեալ ԺԳ. դարու վերջերն, որ “Մակագիր կը կրէ„ կ՚ըսուի ի Պատմ. Հայ. Դպր. (Հտ. Ա. 654) “Բժշկարան՝ զոր փոխած է ի տաճիկ (այս ինքն՝ յարաբերէն) լեզուէ ի հայս՝ ի ժամանակս յաղթող Բագրատունին Հայոց Գագկայ„։ Նոյն բժշկարան կը յիշատակուի նաեւ այլուր, (Բազմավէպ, 1881, էջ 33 եւ 34,) ուր կը համարուի թէ Գագիկ “հաւանականաբար Գագիկ առաջինն էր„ որոյ թագաւորութեան ժամանակն է 990—1020։ Մենք այս գիրքն ի ձեռին չունենալով, առ այժմ չենք կարող

հնութեան վրայ դատաստան ընել։ Կայ նաեւ մեր մա-
տենադարանին մէջ հին բժշկարան մի (Թ. 101. Ա.)
գրեալ ի թուին ՊՁԷ = 1438, զոր ոմանք ոչ աննման
կը համարին վերոյիշելոյն։ Բայց այս յետինս՝ թէեւ
բաւական հին՝ այնպիսի մեծ հնութեան գաղափար չի
տար։ Երկու գրութեանց իրարու նմանութենէն միայն
հնար է առաջնոյն ժամանակն մերձաւորաբար գուշակել։
Յայտնի է թէ այս գրուածոց վրայ պիտի խօսինք
ի կարգին. բայց քանի որ ասոնց ընծայուած հնութիւնն
ամէն կասկածէ ազատ եւ լիով ապացուցեալ չի կրնար
համարուիլ, ըստ մեզ անորոշ կը մնայ ռամկական մա-
տենագրութեան ճիշդ սկզբնաւորութեան ժամանակին
խնդիրն, զորոյ լուծումն կը թողունք ապագային կամ
քան զմեզ հմտագունից։

Այս ամենայն նկատելով, եւ առաջի աչաց
բերելով Մեսրոպեան նշանագրաց գիւտին նախըն-
թաց Հայերէն գրուածոց մասին տարածեալ զրոյց-
ներն, եթէ չըսենք՝ առասպելներն, — ենթադրե-
լով հանդերձ զհնարաւորութիւն՝ նա մանաւանդ
զհաւանականութիւն վերոյիշեալ կանխագոյն ռամ-
կական գրութեանց, — կը կապուինք իրականու-
թեան, եւ կը սկսինք խօսիլ ԺԲ. դարու կիսէն ի
վեր յօրինեալ կամ թարգմանեալ ինքնակաց ռամ-
կօրէն գրութեանց վրայ, որոց ժամանակին նկատ-
մամբ չի կրնար տարակոյս հանուիլ։ Եւ այս՝ այնչափ
առաւել իրաւամբք, որ այն ժամանակէն յառաջ
համարեալ գրութիւնք, եթէ արդարեւ այնչափ
հին են, մնացած են իբրեւ կղզիացեալ՝ չունենալով
անընդհատ յաջորդութիւն։

# 11.

## Ա. ՆԵՐՍԷՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՇՆՈՐՀԱԼԻ

### Առակք կամ Հանելուկք:

Մինչեւ ցարդ յանուն Շնորհալւոյ ի մեր ծանօթութիւն եկած Առակք մեծագոյն մասամբ տպագրուած են, այնպէս զի մեզի ծանօթ գրչագրաց մէջ հազիւ քանի մի Առակք կան՝ որ տակաւին չեն հրատարակեալ։ — Ահաւասիկ տպագրելոց ցուցակն ժամանակագրական կարգաւ։ Ա. Տպագրութիւն Կոստ. պօլսոյ, Սարգսեան տպ.) ՌՃՀԳ = 1724, որոյ ճակատն է. "Գրքուկս որ պարի Հանելուկք, զոր արարեալ է "Տեառն Ներսէսի Կլայեցւոյ Հայոց Կաթողիկոսի, վասն ուրախութեան "մարդկան": Այս հաւաքածոյն ամէնէն հարուստն է՝ ունենալով 145 Առակ։ — Բ. Տպագրութիւնն է Ջօհրապեան Յովհ. Վ.ի, որ ի Փարիզ 1828ին հրատարակած "Ողբ Եդեսիոյ" քերթուածոյն վերջն յաւելցուցած է Հեղինակին Առակներէն 25 հատ՝ հետեւեալ վերնագրաւ. "Առեղծուածք ինչ ի վերագրելոցն սրբոյն Ներսէսի Շնորհալւոյ": — Գ. Վենետիկի տպագրութիւն, որ ի վերջ Զափաբերականաց Մատենագրին (1830) կցեալ է այս վերնագրաւ. "Տեառն Ներսէսի ասացեալ է զԱռակքս, վասն ուրախութեան մարդկան": Ի Կոստ. պոլիս տպուածէն ետեւ՝ ամէնէն աւելի Առակք կը բովանդակին ասոր մէջ, այսինքն՝ 120 Առակք։ — Դ. Զմիւռնիայի Արշալոյս Արարատեան լրագիրն իւր 572 թուոյն մէջ (1858) հրատարակած է 48 Առակ։ — Կան նաեւ Բազմավէպի 1848—1851 տարեկանաց մէջ Շնորհալւոյ Առակներէն, որ առանց Հեղինակի անուան հրատարակուած են։ Նոյնպէս այս տարի Նիւ-Եօրք հրատարակուելու սկսող Արեգակ օրագրին մէջ ալ քանի մի Առակք կը գտնուին։ — Ձենք խօսիր ձեռագրաց վրայ. վասն զի թէեւ շատ բաւականին կը գտնուին յայլեւայլ Հաւաքածոյս (Ոսկեփորիկ, եւայլն), բայց՝ ինչպէս ըսինք՝ ասոնց մէջ շատ սակաւաթիւ են չհրատարակեալք։ — Ինքնին յայտ է թէ այս զանազան հրատարակութեանց մէջ մեծաւ մասամբ միեւնոյն Առակք յառաջ կը բերուին, թէպէտ իւրաքանչիւրն ունի ինչ ինչ նոր կամ իրեն յատուկ։ Այսպէս ընդ ամենայն կ'ունենանք իբր 200 Առակ։

Ի մէջ նշանաւոր Հայրապետաց՝ որ յայլեւայլ դարս յաթոռ Ս. Լուսաւորչին նստելով, իրենց մեծագործութեամբքն եւ չքնաղ առաքելութեամբք անջինջ յիշատակ թողին ապագայ սերնդոց, շատ բարձր դիրք կը բռնէ Ս. Ներսէս Կլայեցի, որ իրաւամբք կը կրէ Շնորհալի վերադիրն։ Ամենածանօթ է որ այս մեծանուն կաթողիկոսն ԺԲ. դարուն եղած է երկրորդ ոմն Սահակ Պարթեւ՝ ոչ միայն իւր եռանդուն հովուապետութեամբն եւ իմաստուն նախանձաւորութեամբ եկեղեցական հրահանգաց, այլ նաեւ ազգին քաղաքական-բարոյական կենաց վրայ ունեցած մեծ ազդեցութեամբ։

Բայց ոչ նուազ հռչակաւոր է Հայրապետս իւր գրաւոր գործունէութեամբ եւս, եւ եթէ չենք սխալիր՝ իւր ո՛չ նախորդաց եւ ո՛չ յաջորդաց մէջ գտնուած են իրեն նման բազմաբեղուն գրիչ ունեցող անձինք։ Աստ զմեզ զբաղեցընողն պիտի ըլլայ՝ իւր այս բազմաթիւ եւ աշխարհահռչակ գրուածոց գրեթէ ամէնէն աննշանակ համարուողն, այն է՝ իւր Առակներն կամ Հանելուկներն, որ մեծ նշանակութիւն կամ կարեւորութիւն ունին մեզի համար, ըստ որում ռամկօրէն բարբառով են։ Մանաւանդ որ, ինչպէս յառաջագոյն (էջ 56) յիշատակած ենք, ասոնցմէ կանխագոյն համարեալ ռամկական գրութեանց ճիշդ ժամանակին տակաւին բաւական որոշ եւ հնութիւնն իսկ լիով ապացուցեալ չգտնելով, ստիպեալ ենք այն Առակներն իբրեւ հնագոյն ռամկախօս գրութիւն նկատել, եւ զՇնորհալին դասել ի գլուխ ռամկագիր Մատենագրաց։

Առակացս այս մեծ կարեւորութեան պատճառաւ՝ հարկ կը համարինք յառաջ քան զամենայն քննել անոնց վաւերականութիւնն, հետազօտել թէ ստուգիւ Ներսիսի Շնորհալւոյ հարազատ գրուածք են յանուն նորա ցմեզ հասածներն։ — Երկու մասն ունի խնդիրս. նախ՝ թէ արդեօք նոյն Հայրապետն այնպիսի ինչ գրա՛ծ է՝ թէ ոչ. երկրորդ թէ այժմ իւր անուամբ աստ անդ գտնուածներն իրօք իւր գրածներն են։

Ա. Շնորհալւոյն Առակ կամ Հանելուկ գրած ըլլալուն վրայ ամենեւին պատճառ չկայ կասկածելու։ — Գլխաւոր հիմն յոր կը հաստատուի վաւերականութիւն ամէն գրուածոյ՝ աւանդութիւնն է, որ՝ մանաւանդ գրաւորն՝ այնչափ աւելի ապացուցական զօրութիւն կ'ունենայ, որչափ ժամանակաւ մերձաւորագոյն է աւանդուածին։ Արդ Շնորհալւոյն Առակ գրած ըլլալուն գրաւոր աւանդութիւնն ունինք ի հին ժամանակաց։ Կիրակոս Գանձակեցի, — որ եօթանասուն տարիէ աւելի ապրելով, նոյն Հայրապետէն († 1173) մի դար յետոյ († 1272) մեռած է, — իւր պատմութեան մէջ հետեւեալ

կերպիւ կը հաղորդէ մեզի ազգային աւանդութիւնն յայսմ մասին. «Այնպիսի էին, կ'ըսէ, կամք Սրբոյն (Ն. Շնորհալւոյ) զի թէ հնար իցէ՝ ոչ ոք խօսիցի խօսս աշխարհականս բայց ի Գրոց, ո՛չ ի գինարբուս, ո՛չ յայլ ուրախութիւնս։ Վասն այնորիկ եւ արար նա երգս եւ ուսոյց այնոցիկ որ պահէին զերդն, զի փոխանակ վայրապար ձայնից՝ զայն ասասցեն, որոյ սկիզբն է սաղմոսն Դաւթի՝ «Յիշեցի ի գիշերի զանուն քո, Տէր». եւ այսպէս խորհրդաբար ըստ կարգի՝ «Զարթիք փառք իմ», որ այժմ ասի յեկեղեցի ի ժամ գիշերային պաշտաման։... Եւ զի յամենայնի հանճարեղ էր Ներսէս, արար եւ Առակս[1] խորհրդաբարս ի Գրոց[2], զի փոխանակ առասպելեաց զայն ասասցեն ի գինարբուս եւ ի հարսանիս»։

Մեծ նշանակութիւն ունի այս վկայութիւն Գանձակեցի Պատմագրին։ Վասն զի իւր երիտասարդութեան ժամանակ հաւանագոյնս տեսնուած էր՝ զՇնորհալին ան-

---

[1] Այսպէս մեր մատենադարանին բաւական ընտիր բոլորգիր ձեռագիրն (Թ. 84) որ յամին ՌԾԲ = 1603 օրինակուած է, նոյնպէս Մոսկուայի (1858) տպագրութիւնն (էջ 67 եւ 86։) իսկ տպ. Վենետ. (1865) կը յաւելու Հանելուկ բառն, այսպէս՝ «Արար եւ Առակս խորհրդաբարս ի Գրոց եւ Հանելուկս, զի...» (էջ 58) եւ այս յաւելուած կը գտնուի նաեւ Ս. Ղազարու մատենադարանին միւս երկու օրինակաց մէջ, ինչպէս կը ծանուցանէ մեծարգոյ Թղթակից մեր Հ. Ղեւոնդ Վ. Ալիշան. «Ցերեսին եւս մեր օրինակս Կիրակոսի Պատմութեան՝ գոյ Հանելուկ բառն, որպէս տպագրեալն է։ Բայց օրինակք մեր չեն հնագիրք, մին գրեալ է յամին 1669, այլ երկուքն անթուականք, այլ մերձաւորք առաջնոյն»։ — Կ'երեւայ թէ այս վերջին օրինակողք՝ Հանելուկ բառն յաւելցուցած են իբրեւ ժամանակակցաց աւելի սովորական բացատրութիւն՝ Առակ, Առեղծուած, Առասպել հնագոյն բառից։ Նոյն Հանելուկ բառն կը գտնուի նաեւ շատ գրչագրաց մէջ՝ իբրեւ վերնագիր Առակացս, այսպէս՝ «Տեառն Ներսիսի Հայոց կաթողիկոսի ասացեալ Հանելուկս ի Ս. Գրոց, կամ Հանելուկս վասն ուրախութեան մարդկան», նոյնպէս եւս տպագրելոց մէջ. բայց կան նաեւ Առակք, Առեղծուածք, Բախանք վերնագիրք։

[2] Կիրակոսի այս՝ ի Գրոց բացատրութիւնն, եթէ ամենայն ճշդութեամբ առնուի, հարկ կ'ըլլայ հետեւցընել թէ մեր ի ձեռին ունեցած Առակներէն՝ զայնս միայն կարող ենք Շնորհալւոյն ընծայել, որոց նիւթն ի Ս. Գրոց հանուած է, այս ինքն՝ հազիւ բոլորին քառորդն։ Բայց կարծենք թէ հարկ չկայ այնչափ ճշդութեամբ առնուլ, այլ աւելի ընդարձակ միտք իմանալու է իբր թէ կամեցած ըլլայ զրուցել՝ ըստ մասին Ս. Գրոց վերաբերեալ նիւթոց վրայ շինած է։

ձամբ եւ ի մերձուստ ճանչցող անձանց հետ եւ անոնցմէ ընդունած իւր աստ աւանդածն, թերեւս նաեւ անոնց բերնէն լսած զոմանս նոյն Առակաց եւ ինքնին իսկ կրկնած։ Ուստի կարծենք թէ զօրաւորագոյն քան զայս ապացոյց պահանջելու ոչ ոք իրաւունք ունի վաւերականութեան որ եւ է գրուածոյ։

Առակաց նիւթոյն կողմանէ եւս նկատեալ՝ ամենեւին անպատեհութիւն չկայ Հայրապետի մը գրութիւն ըլլալուն՝ իբր հակառակ ծանրութեան եւ բարձրութեան կաթողիկոսական աստիճանին, մանաւանդ թէ շատ պատշաճական է եւ ցոյց եռանդուն Հովուապետի նախանձաւորութեան փառացն Աստուծոյ եւ հոգեշահական օգտի ժողովրդեան, երբ միտ դրուի նպատակին՝ զոր կը յիշատակէ Պատմագիրն, այն է՝ խափանել զխաստակարս եւ զանօգուտս, անոնց փոխանակ՝ անմեղ եւ վայելուչ զուարճութեան նիւթ մատակարարելով։ Եւ այս մտօք կարող ենք ասել թէ այս Առակաց եւ Յիշեսցուք ի գիշերի երգոյն մէջ մեծ կապակցութիւն կայ, որովհետեւ երկուքն ալ միեւնոյն նպատակաւ շինուած են։ — Այսչափ խնդրոյն առաջին մասին վրայ։

Բ. Նոյնպէս երկրորդ մասին վրայ, — թէ արդեօք մեր այժմու յանուն Շնորհալւոյ ունեցածներն՝ նոյն Հայրապետին գրածներն են, կամ թէ անոնք են՝ որոց վրայ կը խօսի Գանձակեցի Պատմագիրն, — կրնանք ապահովապէս հաստատել թէ յանուն Շնորհալւոյ ի ձեռս մեր գտնուած Առակաց մէջ կը բովանդակուին նոյն Հայրապետին գրածներն՝ որոց համար կը վկայէ Կիրակոս. կամ թէ չենք կարող անոնց ըստ մասին, եթէ չըսենք՝ [illegible] մասամբ, հարազատ ըլլալուն վրայ կասկածիլ։ Ի ցոյց այս մասնական հարազատութեան՝ կարող ենք յառաջ բերել՝ որ մեր ունեցած Առակներն յամենայն գարս գաղափարեալ օրինակաց մէջ գրեթէ առանց բացառութեան զանուն Շնորհալւոյ կը կրեն։ Բայց աստի՝ չի գտնուիր անոնց մէջ այնպիսի ինչ որ արքազան անձի անարժան համարուի, ըստ իմաստին եւ ըստ բացատրութեանց։ Չեն տեսնուիր արդարեւ ճարտար գիւտեր, բարձր եւ խորիմաստ գաղափարներ, զոր եւ նիւթն իսկ ինքնին չի վերցըներ, բայց եւ ոչ ցած եւ գռեհիկ են։ Եւ եթէ մանաւանդ միտ դնենք որ ռամիկ ժողովրդեան համար շինուած են, այս հայեցմամբ եւս ընդդիմութիւն հանելու եւ կասկածելու առիթ չենք գտներ։

Բայց ինչպէս որ չի կրնար տարակուսուիլ Առակացս միոյ մասին Շնորհալւոյն գրածերն ըլլալուն վրայ, նոյնպէս ոչ միայն հնարաւոր՝ այլ նաեւ իրաւացի կ՚երեւայ մասնական կասկած, որ վաւերականաց մէջ ապըր-

դած ըլլան նաեւ անվաւերականք, այն Հայրապետին գրածներուն հետ խառնուած ըլլան յետնագոյն հեղինակներէ շինուած հանելուկներ։ Իրաւացի կ'երեւայ, կ'ըսենք, նայելով սովորութեան վերջին դարուց օրինակողաց, որք ըստ քմաց կամ ըստ անձնական մակաբերութեան՝ հեղինակ կը սահմանեն այս կամ այն գրութեան։ Այսպիսի անվաւերականաց ցոյց կրնայ համարուիլ այն՝ որ յաճախ իսկ միեւնոյն նիւթոյն վրայ իրարմէ բոլորովին տարբեր երկու երեք Առակք կը գտնուին յանուն Շնորհալւոյ, յորոց ոմանք ոչ զվայելչութիւն ռամկօրէն լեզուի մեծանուն Մատենագրին ունին եւ ոչ նոյնչափ աղնուութիւն գաղափարաց։ Ոմանք եւս՝ վեց, ութ, մինչեւ տասուերկու եւ աւելի տող ունին, ուր առհասարակ չորս տողով են այլք։ — Դարձեալ Տիրատուր վարդապետի (ԺԴ. դար) Առակք երբեմն Ներսիսիններուն կարգը դասուած կ'ըլլան։ — Վերջապէս՝ ի վախճան Կոս. պոլսոյ տպ. նոյն ինքն Շնորհալւոյն վրայ կայ Առակ մի, զոր հրատարակողն եւ թերեւս միամիտ կամ անմտադիր ընթերցողք իւր յատուկ գրչէն ելած համարին նախընթացից պէս, որ եւ ոչ կարող է մտացի մարդ երեւակայել[1]։

Այս եւ այսմ նման նշանք, ինչպէս ըսինք, յայտնապէս կը ցուցընեն զգոյութիւն անվաւերականաց։ Սակայն ատոնց գոյութիւնն իսկ նոր ապացոյց կրնայ համարուիլ գոյութեան վաւերականաց. որովհետեւ հեղինակութիւն անանուն կամ յետնագոյն գրուածոց՝ այնպիսի անձանց կ'ընծայուի, որոց նմանօրինակ գրուածոց մատենագիր ըլլալն ամենածանօթ է։

— Կը մնայ խնդիր ժամանակին՝ յորում գրած է Շնորհալի իւր Առակներն։ Հաւանական կարծեօք կրնայ զրուցուիլ՝ թէ գրած է կաթողիկոսութեան միջոցին (1166—1173)։ Զայս կը ցուցընէ Կիրակոսի վկայութիւնն զոր ի մէջ բերինք. առաւել եւս կը հաստատուի այս կարծիք՝ եթէ միտ դրուի կարգին զոր կը պահէ Պատմագիրն՝ Շնորհալւոյն այլեւայլ գրութիւնքն յիշատակած ժամանակ։ Բայց այս խնդիր երկրորդական ինչ է. միշտ հաստատուն կը մնայ թէ այս Առակք ԺԲ. դարու երկրորդ կիսոյն գրութիւն են։

---

[1] Ահաւասիկ նոյն Առակն.

Ն. Շնորհալի. Իշխան մի կայր յեկեղեցի,
'Ի ի ծայրագոյն աստիճանի.
Քան զոր չեղեւ ոք աւելի
Երգիչ տաղի 'ւ շարականի։

Ասացելովքս լուծեալ կը համարինք վերոյ-գրեալ խնդրոյն երկու մասունքն ևս։ — Ընդար-ձակ պատճառաբանութեանցս իմաստն համառօտիւ այս կ'ըլլայ. Ա. Տարակոյս չկայ որ Շնորհալի Առակ գրած է։ Բ. Շատ հաւանական և գրեթէ ստոյգ է թէ մեր այժմ յանուն նորա ունեցածներուն մէջ կան իւր գրածներէն. բայց ոչինչ նուազ հաւանա-կան է՝ որ հարազատ Առակաց հետ խառն գտնուին նաև օտարամուտք։ — Ցանկալի՛ էր արդարև այս վերջիններն առաջիններէն բաժնել հանել. բայց տակաւին չունինք ի ձեռին բաւական միջոց ապա-հովապէս ի գլուխ տանելու այս գործողութիւնն, որ շատ դժուարին է և երկայն հետազօտութեանց կարօտ։ Ուստի ապագայ ժամանակաց և յաջո-ղագոյն ու հմտագոյն քննադատից թողլով զայդ գործ, յառաջ բերենք աստէն առձեռն եղածնե-րուն ընտրելագոյններէն[1]։

1. Աբեղայ. Մէկիկ հաւուկ մի կայր փոքրիկ,
'Ի ի գլուխն ունէր սեւուկ թեպրիկ.
Երթայր նստէր ինքըն լռիկ՝
Աղօթք առնէր խիստ սրպրկիկ։
Թեպրիկ, փետրիկ, փոքր փետուր։

2. Ադամ. Կաթողիկոսն էր անղալատ,
Ցիւր վիճակէն ոք չէր ի զատ.
Այնչափ մեղանք արար նա շատ,
Տէրն իւր վըճիռ մահու եհատ։
Անղալատ, անմեղ, յանցանքէ ազատ։

3. Այծ. Ցամէն շրջի ինքն ի քարեր,
Ունի ծախու մազէ քրձեր.
Գինւոյ ունի աղուոր տըկեր,
'Ի. օժտէ ձըրի դանկի կոթեր։

---

[1] Հարկ չէ զրուցել որ ի ձեռս մեր գտնուած թէ տպագրեալ և թէ ձեռագիր օրինակներն իրարու համեմա-տելով, ջանացինք ուղղագոյն և ազնուագոյն ընթերցուածն ընտրել առնուլ։ Բայց աւելորդ համարեցանք մի ըստ միոջէ նշանակել օրինակաց տարբերութիւններն, և թէ իւրա-քանչիւր Առակն ուստի առած ենք։

4. Աննա. Եղբայր, լըռէ դու հետ այսոր.
Կին մարգարէ 'ւ աղօթաւոր
Ծընաւ որդի խիստ հոգեւոր,
Որ ընդհովին օծ թագաւոր։

5. Աշուն. Մանուկ մի կայր զօրեղ հրեղէն,
Խըմեց հատոյց զջուրն ի գետէն.
Ձիոյն 'ւ իշոյն արար նա քէն,
Հնձեց վերոյց զխոտն ի դաշտէն։

6. Աորեղջ. Ջառ ի վերոյ ջուրըն մեկնած,
Ներքոյ ամուր աւզով փակած.
Աւազն ամէն հըրով ըռցած,
Մի քան ըղմի պայծառացած։

7. Արջ. Ըրխուկ մի կայր զէտ ըղֆըրէր,
'Ի ինք խաւ ի վեր մուշտակ ունէր.
Խաղայր քաջօլ° կենայր 'ւ յառնէր,
Ի հետ տանձին զաչերն ածէր։

Ըրխուկ, Ներեւտ՝ շէյխ Բաուէն, Ճերտոն։
Քաջօլ կը Թութ աոյայթ։

8. Բզեզ. Հաւատաւորիկ մի կայր փոքրիկ,
'Ի ինքըն կ'եռայր զինչ ըղանդիկ.
Ցափիկն ունէր տաճկի խնկիկ,
Շուրջ գայ ու գայ զէտ փերեզիկ։

Զինչ, էբրէա, ղեա։

9. Գայլախաղ. Եկ որ ասեմ քեզ այլ առակ,
Որ թէ անկիս՝ վառես կըրակ.
Ի Գաղզաղա հին ժամանակ,
Զմիսըն կտրէր զինչ ըղդանակ։

Մնկիւ, Նորտեւէլ, դէտաս տանէնաւ։

10. Գարնան. Թագուոր տղայ աղուոր տեսակ,
Զամէն հագնի կանաչ դիպակ.
Խաշինք ունի անթիւ բանակ,
Շատ գէր ձիան որձ ու մատակ։

11. Գետ. Օ՜ձ մի կայր գունով կապոյտ,
Գալարելով առնոյր պըտոյտ.
Ցիւր փորըն կայ այն բարւոյն գիւտ,
Որ ի ցամաք մեռնի նա շոյտ։

12. Գիրք. Տուն մի տեսայ սպիտակ բըռած,
Ու սեւ հաւեր ի ներս թառած.
Զուս ածէին ցեղք ի ցեղաց,
Լեզուաւ խօսին բանականաց։

13. Գրիչ. Հաւ մի տեսայ ես անկենդան,
Հատիկ ուտէր ձեռօք մարդկան.
Եթէ զաշխարհս զամէնըն տան,
Ուտէ 'ւ ասէ՝ Չեմ բաւական։

14. Դդում. Ի՛նք մի կայ 'ւ ինքն է ջրբեր,
Հանց գինեխում մարդ չէ տեսեր.
Խըմէ ձըգէ դառնայ ի վեր,
Դարտակ նա չէ մարդոյ ընկեր։

15. Եղէգն. Տըղայն չուտէր բայց միայն հուր,
Մեծին ագռաւըն տայր ապուր.
Հեծեալ հրեղէն ձի եւ գնայ սուր,
Եւ ի յամպոյն հոսէ մեղ ջուր։
Ապուր, ռտիկլէ+, կերակուր։

16. Խնձոր. Որպէս նարինջ հանց է բոլոր,
Եւ երեսուին կարմիր 'ւ աղուոր.
Քան ըզվարդի հոտն է յորդոր,
Ցեղքըն կոչէն զնա թագաւոր։

17. Կապէկ. Մերկ Արապիկ մի ես տեսայ,
Իր խանութպան եւ ջամբռայ.
Զրուցեց ամէջնակ՝ որ հասկացայ,
Շնքիթն աճեղ ու մասխարայ։
Ջամբռայ, սէնէքլայան։

18. Կոճոռ. Որպէս տիկին յուշիկ գընայ,
Պարան յետեւն ի քարշ կու գայ.
Բազմի յոսկի բարձի վերայ,
Որսիկ առնէ քան ըզբազայ։

19. Կոճառ. Նա կարմիր հագնի վարտիք,
Ու խայտուամատ ունի շապիկ.
Բոլորի՛ զինչ ըզկըծիկ,
Կըռիւ առնէ զէտ զԱրապիկ։

20. Մոլեխնեդ. Կայր թագաւոր մի աղքատիկ,
'Ի էր քահանայ խիստ սըպըրկիկ.
Ծընող չունէր ոչ մի ոքիկ,
Կայր ի լերին մերկ ու բոկիկ։

21. Մրջիւն. Կարի տեսայ ես շատ կարուան,
Որ կու իջնայր ի Խորասան.
Իշուին բոկիկ էր 'ւ անփալան,
Մէկիկ հատիկ բառնան ու գան։

22. Նռան. Է նա կանաչ կոճակ բոլոր,
Անպակ գինով լցած ամփոր.
Կարմիր մեղուք ի ներս աղուոր,
Եղբայր, դու կեր զինչ մեղրի ծոր։

Տկճոր, աման։

23. Ողբ. Աւազան որ չէ նա խիստ խեռ,
Ջէտ կլռընկու վիզն է ի կեռ.
Ջէտ այլազգի ելնէ ի լեռ,
Բռնաւ չառնու յոտքըն թեւեռ։

Կեռ, ջուր, ձուկն։

24. Ձէթ. Գայր ի յայգին ինք դող ի դող,
'Ի աշեղ ուտէր ինքըն խաղող.
Գիրացեր է զէտ ըզգէր գող,
Բայց ինք չարժէ մէկիկ մի փող։

25. Սերկեւէլ. Յոսկի խնծոր նըման լինի,
Իւր հոտըն գայ անպակ մշկի.
Ինքն է հագեր դեղին թաղի,
Եւ գայ առջեւ թագաւորի։

26. Սերամորճ. Յուշկիկ երթայ զէտ ըղտիկին,
'Ի էր սապոնած իւր հանդերձին.
Ոսկի փողնոց կայր ի վզին,
Եւ բաց ի բաց էր իւր ագին։

---

Անշուշտ մտադիր եղած է ամենայն ոք, որ այս ամէն Առակներն գրեթէ բոլորովին ռամկախօս են եւ սակաւ ուրեք գրաբարախառն։ Ոչ առանց դիտման ընտրած ենք զայսպիսիս. որովհետեւ գրուածոյս համար առաւելապէս սոքա կարեւորութիւն ունին։ Բայց կան յայլեւայլ հաւաքածոյս նաեւ ամբողջ գրաբար եւ կամ առ փոքր մի ռամկախառն Առակք։ Աւասիկ քանի մի օրինակ սոյնպիսեաց։

Աղ. Է՛ մարդ, աւասա դու ինձ զայս բան,
Ջուր է եւ քար ինքն յանդիման.
Կուտի բըլուր սպիտակ արձան,
Խիստ պիտանի ազգի մարդկան։

Կանթեղ. Յաշխարհական տարերց քառից,
Եւ յունելեաց բարձեալ յերից.
Բարձրանայ եւ խոնարհի,
Անիւն այնու տարուբերի։

Յովբ. Կարդա եւ գիտ զառաքինին,
Որ կին էառ զկուր քեռորդին.
Գոտեմարտեաւ ընդ միշտ Էին,
Բայց կարճեցաւ ջիլն ի տեղին։

Ներսէս Մեծ. Ոմըն չնորհաց հայկազածին
Ցայտնուածն առներ կենաց բանին.
Թէպէտ չէհաս աւարտ նըմին,
Ցուժ գեղեցիկ են բանք նորին:

Ձրաղաց. Մինն ի յանդունդըս տառապէր,
Մինն ի յերեւըն թըռչաներ.
Գըլխովըն ծափըս հարկաներ,
Ըզկենարարըն մեզ բերէր:

Սունկ. Հիմըն չունի՝ տուն երեւի,
Ինքն է վըրան միասինի.
Ցանիան է կոկ զինչ զապիկի,
Առէքն ի քաղէրթ նըմանի:

Ցորեան. Մեռանիմ եւ մահանամ,
Դարձեալ յառնեմ կենդանանամ.
Զաչս ի յերկինըս համբառնամ,
Բազմաստեղօք պայծառանամ:

---

Ի վեր անդր յառաջ բերուած 26 ռամկախօս Առակք՝ ինչպէս ծանուցինք՝ յանուն Շնորհալւոյ ի մեր ձեռս հասածներուն ընտրելագոյնքն են: Կան նաեւ մնացելոց մէջ ոչ սակաւք՝ որ գեղեցիկ տողեր կը բովանդակեն, զոր յետոյ առիթ կ՚ունենանք տեսնելու: Սակայն աստ յառաջ բերուածներն յայտնապէս կը ցուցընեն թէ որչափ մեծ նշանակութիւն ունին այս Առակք ի ռամկական գրականութեան: Մեծանուն Մատենագիրն՝ ինչպէս իւր շատ գրուածոց՝ մանաւանդ Շարականաց մէջ նշանաւոր է իմաստից բարձրութեան եւ կրօնի խորին խորհուրդքն վսեմ կերպիւ բացատրելու մասին, այսպէս իւր Առակաց մէջ գիտցած է ժողովրդական բանաստեղծութեան սեպհական գեղեցկութիւնն ճարտարութեամբ ամփոփեալ դնել առաջի մեր: Պարզութիւն, բնականութիւն, փափկութիւն, ընտանեկան վայելչութիւն, եւ այլ յատկանիշք նոյնպիսի քերթուածոց խիտ առ խիտ կը տեսնուին յայս սակաւ տողս:

Մնալով մեր յատուկ նիւթոյն մէջ, ասոնք մեզի կը ծանօթացընեն Նախնեաց ռամկօրէնին յատկութեանց գլխաւոր մասունքն, յերեւան կը

հանեն նոյն բարբառոյն սեպհական դարձուածներն, մեր առջեւ կը բանան անոր ընտանեկան վայելուչ ձեւերն ու ասացուածներն, որչափ կարելի է համեմատութեամբ սակաւութեան։ Այնպէս որ չափազանցութիւն չըլլար, կարծենք, եթէ Հատածս վերջացընենք ըսելով՝ որ սոյն Առակք միայն բաւական էին օրինակ լինել ապագայ դարուց նոյնպիսի գրուածոց, թէեւ ոչ այլ ինչ ունենայինք ի հնոց այս բարբառով գրեալ։

## 12.

## *Բ. ՄԽԻԹԱՐ ԲԺՇԿԱՊԵՏ ՀԵՐԱՑԻ*

### Ջերմանց Մխիթարութիւն:

Այս գիրքս, որ բաւական ընդարձակ ծաւալ ունի՝ իբր 150 էջ մեծադիր, տպուած է ի Վենետիկ (1832) ի կարգի Մատենագրութեանց նախնեաց, Փարիզու ազգային մատենադարանին նօտրագիր օրինակին վրայէն։ Ծանօթ չեն մեզ այլ գրչագիր օրինակք. բայց շատ հաւանական է որ գտնուին ձեռագրաց հարուստ հաւաքածոյից միոյն կամ միւսոյն մէջ, եթէ ոչ ամբողջ եւ կատարեալ՝ գէթ ըստ մասին, — որք թերեւս առանց անուան հեղինակի ըլլալով, մտադրութեան նիւթ եղած չեն, եւ կամ ոչ ոք փոյթ տարած է հրապարակաւ տեղեկութիւն տալու։ Այսպէս՝ մեր Մատենադարանին Ամիրտոլվաթայ ընդարձակ բժշկարանին (Թ. Ա. 11) վերջն օրինակեալ կը գտնենք ըստ մասին՝ այսու վերնագրաւ. «Պատմութիւն եւ նախազգուշութիւն վասն ամենայն ցեղ բորբոսային ջերմն որիշ որիշ»։ Բայց ոչ միայն պակասաւոր է՝ սկսելով տպագրին ԻԴ. Գլխէն (էջ 56) եւ աստ անդ փոքր փոքր զեղչմամբ շարունակելով մինչեւ ԽԵ. Գլխոյն վերջերն, (էջ 133,) ուր տեղ կը յաւելու՝ «Կատարեցաւ ջերմերն». այլ նաեւ բովանդակն անհմուտ եւ փծուն գրչի գործ ըլլալով՝ շատ աղճատ եւ սաստիկ սխալագիր է, ուր՝ նախընթաց ընդարձակ ձեռագիրն մաքուր նօտրագիր է եւ չափաւորապէս ազատ ի սխալանաց։ Այս պատճառաւ ընդհանրապէս տպագրին կապուեցանք. բայց առնուած օրինակներն ըստ կարի համեմատեցինք ձեռագրին հետ, եւ երբեմն նաեւ այս վերջնոյս հետեւեցանք, զոր եւ նշանակած ենք բերեալ օրինակաց մէջ։

Շնորհալւոյն մահուանէ մետասան տարի յետոյ, իւր անմիջական յաջորդ Գրիգոր Տղայ Կաթողիկոսին ժամանակն եւ անոր յորդորանօքն, ի լոյս ելեալ կը գտնենք Մխիթարայ Հերացւոյ այս գիրքն, զոր կարող ենք անկասկած նկատել իբրեւ հնագոյն ռամկօրէն արձակ գրութիւն, որովհետեւ ինք Մատենագիրն ճշդիւ եւ զգուշութեամբ կը յայտնէ հրատարակութեան ժամանակն, ուր՝ ինչ-

պէս յաճախ ակնարկած ենք, անկէ կանխագոյն համարեալ նոյնպիսի գրութեանց վրայ չունինք այնչափ ստուգութիւն։ — Բայց յիշեալ գիրքն ի քննութիւն չառած՝ ներուի համառօտ յետադարձ տեսութիւն։

Նախընթաց Հատածին մէջ Շնորհալւոյն Առակաց՝ իբրեւ հնագոյն եւ ընտրելագոյն մնացորդ ռամկօրէն մատենագրութեան՝ մեծ ծանրակշռութիւն ունենալն քանի մի անգամ կրկնեցինք։ Աստ հարկ կը համարինք յիշատակել նոյն մատենագրութեան վրայ այլով հայեցուածով ըրած ազդեցութիւնն։ Տեսած ենք (էջ 31—39) թէ շատ ժամանակներէ ի վեր ազգին ընդհանրութիւնն ռամկօրէն գրուածոց կարօտ էր, եւ թէ գէթ մասն մի հայ ժողովրդեան ի հարկէ կը զգար նոյն կարօտութիւնն եւ կը բաղձար որ դարման տարուի։ Սակայն ոչ ոք ձեռն ի գործ կ՚արկանէր. գուցէ նաեւ չունէր ոք ակնկալութիւն նոյն փափաքանաց ի մօտաւոր ժամանակս կատարուելուն։ Այսպէս թէեւ ընդունինք որ ի նախընթաց դարս յօրինեալ ըլլան ինչ ինչ ռամկօրէն գրուածք, հասարակաց կիրառութեան չմտնելով՝ ժողովրդեան համար օգուտ չունեցան, եւ ինչպէս ըսած ենք (էջ 56) յառաջագոյն, կղզիացեալ մնացին եւ առանց ազդեցութեան անցան գնացին։

Յայսմ վիճակի Շնորհալի հայրապետն սակաւատող ռամկախօս Հանելուկներ գրեց եւ միահաղոյն կամ յաջորդաբար ժողովրդեան մէջ տարածեց։ Մենք Պատմագրին մեզի աւանդածին կապուելով, կը համարինք թէ իւր նպատակն էր ժողովրդեան բարոյական օգուտն. թէ անկէ ի զատ դիտումն ունէր, այն չենք կարող հաստատել։ Բայց արդիւնք իրաց կը ցուցընեն թէ իւր ձեռնարկութիւնն առանց ազդեցութեան չմնաց նաեւ ըստ գրաւորական հայեցման։ Կարծես թէ նոր կենդանութիւն գրգռեցաւ յազգին, ռամկօրէն գրու-

թիւնք սկսան երեւնալ հետզհետէ, միով բանիւ սկիզբն առաւ եւ շարունակուեցաւ այն՝ որ այնչափ տարիներ՝ մանաւանդ թէ դարեր խափանեալ մնացած էր։ Այնուհետեւ ջնջուած բարձուած էր, եթէ ներեալ է ասել, նախատինքն որ ի սկզբանէ իբր թէ դրոշմեալ կը համարուէր ռամկօրէն բարբառոյն վրայ. ա՛լ ոչ ոք հարկ ունէր ամաչելու նոյն բարբառով հրապարակ ելլելէն։ Այս է իրականութիւնն, զոր թէպէտ բնական հետեւութիւն համարինք ականաւոր Հայրապետին օրինակին, թէպէտ պատահական դիպուած գնենք, միշտ մտադրութեան արժանի եւ ազգային գրականութեան նշանաւոր երեւութից մին է։ Ցայսմ ամենայնի այն պարագայն եւս պէտք չէ մոռանալ՝ որ Առակախօս Կաթողիկոսին անմիջական հետեւողն եղաւ Մխիթար Հերացի, իւր մտերիմ բարեկամն, որոյ գրութեամբն կը սկսինք աստ զբաղիլ։

Մանրամասն տեղեկութիւն չունինք Հեղինակիս վրայ, եւ ինչ որ գիտենք՝ գրեթէ իւր ինքնագիր Յառաջաբանիւն մեզի ծանուցածն է։ Նոյն Յառաջաբանէն կ՚իմանանք թէ ծննդեամբ Հեր քաղաքէն էր. ուստի եւ իւր անուանակիցներէն կը զանազանուի սովորաբար Հերացի վերադրաւ, թէպէտ եւ ի յաջորդ ժամանակս հասարակօրէն լոկ Մխիթար կը կոչուի։ Իւր ո՛չ ծննդեան եւ ո՛չ մահուան որոշ տարիները գիտենք. բայց թէ ԺԲ. դարուն վերջերն կենդանի էր՝ այն յայտնի է գրութեան տարիէն, զոր ինք որոշակի կը նշանակէ. եւ այս մեզի համար կարեւորագոյն է քան զայլ մանրամասնութիւնս։ Իւր մահուան մասին այսչափ ինչ միայն կարող ենք ասել թէ յաջորդ դարուց հեղինակաց խօսքերէն կը մակաբերուի իւր այս գրութեան հրատարակմանէն ետեւ բաւական ժամանակ ապրած ըլլալը, թերեւս մինչեւ ԺԳ. դարուն առաջին տարիներն, ինչպէս ստորեւ կը տեսնենք։

Իւր ուսումնական կենաց կամ հրահանգու-
թեան վրայ ինքն Մխիթար այսչափ միայն կը գրէ՝
թէ “ի մանկութենէ սիրող եղէ իմաստութեան եւ
“բժշկական արուեստից, եւ վարժեցայ ի դպրու-
“թիւն Արաբացւոց, Պարսից եւ Հելլենացւոց„: Թէ
հիմնովին սորված էր բժշկականութիւն եւ ար-
դեամբք իսկ ի գործ կը դնէր, զայդ կը ցուցնեն՝
բաց յիւր այս հմտալից գրութենէն՝ “Իմաստուն
“բժիշկ, Իմաստուն եւ ճարտար բժիշկ, Մեծն Մխի-
“թար բժիշկն, Իմաստուն բժշկապետ„ եւ այլ սոյն-
պիսի տիտղոսք՝ զոր կու տան իրեն ժամանակակիցք
եւ յաջորդք: Եւ ոչ այսչափ միայն, այլ տեղեակ էր
նաեւ աստեղագիտութեան, որովհետեւ զինքն իւր
բարեկամութեամբն պատուող Շնորհալի “Բժշկա-
պետ եւ աստեղագէտ„ տիտղոսն իրեն կու տայ[1]:

Իսկ իւր գրութեան վրայ Յառաջաբանին մէջ
հետեւեալ տեղեկութիւնն կու տայ Մխիթար: —
Հայերէն լեզուաւ ամենայն մասամբ, թէ՛ ըստ տե-
սականին եւ թէ՛ ըստ գործականին, լիակատար եւ
կարգաւորեալ բժշկականութիւն չգտնուիլն յիշա-
տակելէն ետեւ, զոր յառաջագոյն (էջ 54) ի մէջ
բերինք, խօսքն այսպէս կը շարունակէ. “կամեցայ,
“կ'ըսէ, ըստ իմոյ կարողութեան առնել զգիրքս
“զայս՝ միայն վասն երեք ազգ ջերմանցն համառօտ՝
“նախագիտութեամբն եւ ոտածմամբն: Զբովան-
“դակն՝ որ վասն արուեստի բժշկութեանս՝ թողի,
“եւ զերեք ազգ ջերմանցս միայն հաւաքեցի, եւ
“թարգմանեցի ի հայ բառ: Պատճառ ունելով
“այսմ աշխատութեան եւ զսէր եւ զյօժարութիւն

[1] Այս տիտղոսն կը գտնենք դրոշմեալ ի վերնագրի
քերթուածոյն “Յաղագս երկնից„ զոր նոյն Հայրապետն կ'ըսէ
գրել “ի խնդրոյ առն բժշկապետի եւ աստեղագիտի՝ Մխի-
թարայ„: (Չափաբերականք, տպ. Վենետիկ, էջ 79:) Նոյն
քերթուածոյն վրայ յաւելեալ է այլ փոքր քերթուած՝
իբրեւ Յորդորակ, որոյ վերնագիրն է՝ “Այլաչափ տողք ի
խնդրոյ անուան Նախագիծ տառից„. իսկ Նախագիծ կամ
սկզբնական տառք կը կազմեն “Մխիթար բժիշկ, ընկալ ի
Ներսիսէ զայս բանս„ խօսքն:

“սրբոյ եւ աստուածապատիւ կաթուղիկոսին Հայոց
“Տեառն Գրիգորի, որ մակակոչի Տղայ, սմա որ էր
“առաջնորդ յաթոռ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին
“Հայոց, զոր տեսի ամենայնիւ սիրող իմաստութեան
“եւ հմուտ։ Եւ յաղագս այսորիկ յօժարեցի ի պէտս
“եւ ի յօգուտ սորա առնել զգիրքս զայս ի Հոռոմ
“եւ ի յԱրապիկ եւ ի Պարսիկ գրենաց, ըստ իմոյ
“կարողութեանս եւ շնորհի զոր ետ ինձ Տէր գի-
“տութիւն լեզուաց եւ գրոց նոցա„։

Այս ընդհանուր տեղեկութիւնն եւ իւր գրութեան վրայ քանի մի տողով ծանօթութիւն տալէն ետեւ, կը յայտնէ ռամկօրէն լեզուաւ կամ գեղջուկ եւ արձակ բարբառով գրելուն պատճառն, այս ինքն՝ “Զի դիւրահաս լիցի ամենայն ընթերցողաց„։ Խօսքը կը վերջացընէ՝ գրութեան ճիշդ տարին իմացընելով, այսպէս. “Թարգմանեցաւ եւ գրեցաւ
“գիրքս այս յամի 1184 Տեառն մերոյ Յիսուսի
“Քրիստոսի գալստեանն, յորում էր եւ թուականս
“Հայոց ՈԼԳ. ի հայրապետութեան սրբազան կա-
“թողիկոսիս Հայոց Տեառն Գրիգորի որդւոյ Վասլի
“բարեպաշտ իշխանի Պահլաւունւոյ, որ եւ պատ-
“ճառն է գրոցս„։

Զերմանց Մխիթարութիւն գիրքն թարգմանութի՞ւն է՝ թէ ինքնագիր աշխատասիրութիւն։ — Եթէ Հեղինակիս երկիցս գործածած Թարգմանել բացատրութիւնն ամենայն ճշդութեամբ առնունք, ի հարկէ կարծելու ենք թէ թարգմանութիւն է։ Բայց արդեօք պէ՞տք է այսպէս ճշդիւ եւ անձուկ միտք առնուլ նոյն բացատրութիւնն. միթէ կարելի՝ մանաւանդ թէ պատշաճ չէ՞ աւելի ընդարձակ միտք տալ ի կիր արկած բառին։ Գիտէ ամենայն ոք որ թարգմանել բառն՝ այժմ յարդի լեզուիս միակ նշանակութեամբ կը գործածուի, իբր՝ միով լեզուաւ ըսուածն կամ գրուածն յայլ լեզու փոխել, յորում ինքնին կ'իմացուի՝ սկզբնագրին բովանդակութիւնն առաջի ընթերցողաց դնել ճշդութեամբ, ամբողջապէս, առանց փոփոխութեան եւ յաւելուածոյ։ Եւ եթէ թարգմանիչ մի պատշաճ համարի ի տեղիս տեղիս իւր սկզբնագրէն շեղիլ, համառօտել կամ ընդարձակել, յաւելուլ կամ յապաւել, հաւատարմութիւնը կը պա-

հանջէ որ յայտնապէս ծանուցանէ։ Սակայն այսպէս չէր առ նախնեօք։ Իրենք թարգմանել բառն ոչ միայն մեր այժմու գործածութեան համեմատ կը վարէին, այլ նաեւ ի գործ կ'ածէին՝ յայտնել, մեկնել, ընդարձակագոյնս բացատրել ... նշանակութեամբ. ինչպէս ցայսօր արեւելեան հին ազգաց մէջ ալ նոյն իմաստներն ունի այդ բառդ։

— Թէ Մխիթարայ կիրարկութիւնն ինչ մտօք էր լաւ թափանցելու եւ դիւրաւ զանազանելու համար նմանօրինակ գործածութիւն մ'ի մէջ բերենք։ Սմբատ Սպարապետ իւր յօրինած Տարեգրաց մէջ երկու անգամ զանձն Թարգմանող կ'անուանէ նոյն գրոց։ (Յամն ՈԽԷ. եւ ՈԾԷ.։) Այս Տարեգիրք երկու անգամ տպագրուած են, եւ երկու հրատարակիչք իրարու հակառակ մտօք կ'իմանան եւ կը մեկնեն նոյն բառն։ Ոսկան Գէորգեան Յովհաննիսեանց (տպ. Մոսկուա, 1856, Յռջբն. էջ Է. Ծան. 2) ընդարձակ մտօք առնլով Թարգմանող բառն՝ կը համարի թէ Տարեգիրք սկզբնաբար հայերէն գրուած են. իսկ Կարապետ Վ. Շահնազարեան (տպ. Փարիզ, 1859, Յռջբն. էջ 17, 18) առաջնոյն կարծիքն բացէ ի բաց մերժելով եւ Թարգմանող բառն շատ անձուկ մտօք առնլով՝ կը կարծէ թէ բուն իրական թարգմանութիւն է գրութիւնն Սմբատայ, որ նախ օտար լեզուաւ գրելով՝ յետոյ ինքնին հայերէն թարգմանած է։ Մենք այս նկատմամբ մեր կարծեաց յայտարարութիւնն ապագային պահելով, երբ կը հասնինք Սմբատայ գրուածոց վրայ խօսելու, առ այժմ այնչափ ինչ կը զլուցենք թէ Շահնազարեան Վ.ին կարծիքն այնպիսի անտեղութեանց ներքեւ կ'իյնայ, որ կը զարմանանք թէ ինչպէս կարող եղած է հմուտ Հրատարակիչն պաշտպան կալ նոյն կարծեաց։ —

Դառնալով մեր նիւթոյն, կը համարինք թէ Հեբրացի Բժշկապետին ի կիր արկած թարգմանել բառն հարկ չէ ո՛չ այնչափ անձուկ մտօք առնուլ եւ ո՛չ բոլորովին ընդարձակ մտօք։ Մեզի այնպէս կ'երեւայ որ Մխիթար “Կամեցայ ... առնել զգիրքս, ... հաւաքեցի եւ թարգմանեցի” ըսելով, կը յայտնէ թէ ի ձեռին ունենալով այլեւայլ օտար լեզուաւ գրքեր, անոնցմէ քաղած, կարգի դրած, իւր անձնական դիտողութիւնքն ու փորձառութիւնքն յաւելցուցած ... նոր գիրք մի յօրինած է հայերէն լեզուաւ։ Եւ որովհետեւ ի ձեռին ունեցած գրքերն օտար լեզուաւ էին, անոնցմէ քաղած կամ հաւաքած մասունքն ի հարկէ թարգմանելու էր։ Այս կը համարինք թէ ցուցընեն այն՝ Արարի (յօրինեցի)

զգիրքս, հասարակաց բացատրութիւնքն, զոր թարգմանեցի բառին հետ ի կիր արկած է։ Եւ գրեթէ միեւնոյն իմաստն ինքն արդէն կը բացատրէ ըսելով՝ թէ «Յօժարեցի առնել . . . զգիրքս զայս ի Հոռոմ եւ ի յԱրաբիէ եւ ի Պարսիէ գրենաց։ . . . Կարգեալ եւ շարեալ ըստ չորից նիւթոց կարգի . . . ։ Շարեալ եւ հաւաքեալ ըստ կարգի հին եւ նոր վարդապետաց»։ Զայս ամենայն չէր կարող զրուցել՝ եթէ միակ գիրք մ'ի ձեռին ունենալով, նոյնն անփոփոխ եւ ըստ եղանակի հասարակ թարգմանչի ի հայ լեզու փոխած կամ թարգմանած ըլլար։

Կարծեացս հաւանականութեան վրայ կարող է ընթերցողն ինքնին դատաստան ընել՝ եթէ միտ դնէ գրուածոյն եղանակին եւ կազմակերպութեան, որ կրնայ զրուցուիլ թէ իւրաքանչիւր իջին, եթէ չըսենք՝ տողին, կը յայտնէ ազատ եւ անկախ գրիչ, որ յայլոց առածներն ու քաղածներն իսկ անձին կը սեպհականէ, եւ իբրեւ անձնական յատուկ աղբերէ կը բխէ զբովանդակն։

Կը սկսինք արդ օրինակօք տալ Մխիթարայ լեզուին ճաշակն. եւ նախ գրքին սկզբէն քանի մի հատած, որ շատ աւելի գրաբարախառն են՝ քան գրութեան այլ մասունքն ընդհանրապէս։

Ա. Պարտ է ամենայն մարդոյ՝ որ ըզժշկական արուեստս ի հոգս է առել եւ ունիցի փոյթ բժշկութեան ըզկատարեալն, որ քննէ աղէկ եւ իմանայ վասն ամենայն ցեղ ջերմանցն գիտութեան։ Եւ զայն պատճառն՝ որ յօտար ջերմն ընծայեն, ի մարմնոյն ի զատ պահէ. եւ իւր ջանքն առաւել ի ջերմերոյն բժշկութեանս առնէ, քան վասն այլ ազգ հիւանդութեանցն։ Եւ ոչ մի փոքր ի հիւանդութեանցն գիպելոց. զի սակաւ հիւանդութիւնն, յորժամ անփոյթ լինի եւ յամէ, զօրացեալ բազմանայ եւ յաղթէ մարմնոյն։

Արդ վասն ջերմանցն գիտութեան առաւել պէտ առնել արժան է յաղագս երից պատճառանաց։ Իսկ առաջին պատճառն այն է՝ որ ջերմն քան զամենայն ցեղ հիւանդութիւն ի մարդիկ շատ հասանի. եւ այլ՝ ինքն լինի պատճառ բազում եւ այլ ցեղ հիւանդութեանց։ Եւ երկրորդ պատճառն այն է՝ որ ամենայն ցեղ հիւանդութիւն ի յանդամ մի լինի կամ ի յերկուս, կամ ի սակաւ մասունս մարմնոյն գործեն զցաւն. իսկ ջերմն բովանդակ ընդ ամենայն մասունս մարմնոյն լինի։

Իսկ երրորդ պատճառն այն է՝ որ ջերմանն սկիզբն ի սրտէն լինի. եւ ի սրտէն սփռի ի ձեռն շըն-չաւոր երակացն բովանդակ ընդ ամենայն մարմինն։ Ապա պարտ է բժշկաց քննել եւ իմանալ աղէկ եւ ի միտ առնուլ վասն երեք ազգ ջերմերոյն նախագիտութեան. նոյնպէս եւ զիւրեանց ստա-ծումն եւ զբժշկութիւն իմանալ, եւ անսղալ ստածել եւ բժշկել։

Բ. Պարտ է գիտենալ որ ջերմն օտար տաքու-թիւն է զատ ի բնութենէն, խառնեալ ընդ բնաւ-որական տաքութիւնն՝ որ ի սիրտն։ Առնէ սկիզբն ի սրտէն եւ սփռի ի ձեռն շնչաւոր երակացն ընդ ամենայն մարմինն, որպէս այլ յառաջն ա-սացաք, եւ խափանէ զբնութեան գործերն։ Եւ են բնութեան գործերն այսոքիկ. ցանկութիւն կերակրոյն եւ ըմպելոյն, կանգնելն եւ գնալն եւ արթնութիւնն, յառնելն եւ նստելն եւ այլ ամե-նայն բնութեան գործն որ ի մեզ են։ Թէպէտ եւ ասացաք զբնութեան գործերն՝ որ խափանին ի ջերմերոյն եւ ի յայլ ամենայն ցեղ հիւանդու-թենէ, սակայն ոչ կատարեալ խափանումն, այլ մասնական ինչ. զի մահուամբ միայն խափանին բնութեան գործերն կատարեալ։

Այժմ պատմեմք զորպիսութիւն ջերմանն եւ զիւր գիտութիւնն, որ երեք ազգ են։ Եւ ասացին իմաստասէրքն թէ վասն այնորիկ եղեն երեք ազգ, որ բովանդակ յամենայն մարմնոյն սկսանի. եւ մար-մինք մարդկան ընդ երեք բաժանին։ Առաջին բա-ժինն երեք շունչ են, զոր երեք հոգի անուանեն, որ են հոգի բնութեան, իւր տեղի եւ բնակարան լերդն է. եւ հոգի կենդանութեան, իւր տեղի եւ բնակարան սիրտն է. եւ հոգի զգայութեան, իւր տեղի եւ բնակարան՝ գլխոյն առաջի փորքն է։ — Եւ երկրորդ բաժինն՝ գիջութեններն, զոր հոռոմն խլն անուանէ, եւ տաճիկն խլթ, որ թարգ-մանի չորս նիւթ կամ չորս ենթակայ, որ են ա-րիւն եւ մաղձն, պուլղմն եւ սովդայն։ — Իսկ երրորդ բաժինն չոր եւ պինտ անդամունքն են, որք են ոսկերքն եւ ջիլքն, կապքն եւ լարքն եւ այլ զոր նման է սոցա։

Գ. Այլ բժշկական վարդապետքն նմանեցուցին զմարմին մարդկան ի բաղանիսն. զի բաղանիքն յերեք իրաց (յօր. իրայ) կատարի, որ են որմունքն, ջուրն եւ օդն. նոյնպէս եւ մարմինք մարդկան

> յերեք իրաց են շինեալ, մինն չոր եւ պինդ անդամունքն են; զոր այլ ի յառաջդ ասացաք. եւ երկրորդն գինուլթեներն են, զորս չորս նիւթ անուանեն կամ չորս ենթակայ, որք են արիւնն եւ մաղձն, դալղամն եւ սովդայն. եւ երրորդն երեք շունչ են, զոր երեք հոգի անուանեն. հոգի բնութեան, հոգի կենդանութեան եւ հոգի զգայութեան։
>
> Նոյնպէս եւ ջերմն երեք ազգ են. մինն բնակի ի յերեք հոգիսն, եւ երկրորդն բնակի ի չորս նիւթն, եւ երրորդն բնակի ի չոր եւ ի պինդ անդամունսն. որպէս այլ ի յառաջդ ասացաք կարգաւ մի ըստ միոջէ։ Նմանեցուցին իմաստասէրքն զբաղանեաց շինուածն ի չոր եւ ի պինդ յանդամունքն, իսկ զջուրն ի գինուլթիւնքն՝ որք են չորս նիւթն, իսկ զօդն ի յերեք շունչն՝ զոր անուանեն երեք հոգի։ Զի որպէս բաղանեացն այլ է շինուածն եւ այլ ջուրն եւ այլ օդն, բայց յորժամ մինն ի նոցանէ առաւել ջերմանայցեն՝ ջերմացուցանէ եւ զայլ եւս երկուսն. Նոյն օրինակաւդ տես եւ զջերմն ի մարմինք մարդկան, եւ ընդ մարմնոյն շինուածոցն հետեւի ջերմն. որպէս շինուածք մարմնոյ այլեւայլ են, նոյնպէս եւ ջերմն այլեւայլ լինի։

Այս սակաւ օրինակք բաւական են գրոյս գրաբարախառն մասանց վրայ գաղափար տալու։ — Մխիթար յայսմ մասին տարբեր ընթացք կը բռնէ այլ ռամկախօս մատենագիրներէն։ — Ոչ միայն հնագոյն ռամկագիրք, այլ նաեւ ոչ սակաւք ի յաջորդաց եւ ոմանք ի յետնագունաց իսկ, սովորաբար իրենց գրութիւնն գրաբար կը սկսին, եւ ոմն աւելի՝ ոմն պակաս, բաւական տեղ նոյնպէս յառաջ կը վարեն՝ մէջ ընդ մէջ ռամկօրէն ընդելուզելով. եւ իրենց բնական լեզուին դառնալէն ետեւ ալ՝ երբեմն երբեմն երկայն կամ կարճ գրաբար հատուածներ կը մուծանեն. այնպէս զի բովանդակ գրութիւնն կ'ըլլայ ռամկախառն գրաբարի եւ գրաբարախառն ռամկօրէնի հիւսուած։ Ասոր հակառակ՝ Մխիթար իւր Յառաջաբանէն ի զատ չունի ամենեւին անխառն գրաբար հատուածներ, եւ ոչ իսկ այնպիսի գրաբարա-

խառն կտորներ՝ ինչպիսի էին ի վեր անդր գրուածներն։ Գրեթէ բոլոր գիրքն միեւնոյն ռամկօրէն լեզուաւ կը գրէ. ուստի եւ հազիւ աստ անդ կը գտնենք՝ գրաբարի յատուկ ձեւերէ եւ կազմակերպութիւններէ եւ ասացուածներէ զատ՝ միակ եւ առատաւելն երկու տող միահետ բուն գրաբար նախադասութիւններ։

Թէ՛ առաջիկայ գրուածոյս եւ թէ՛ այլ եւս ռամկօրէն գրուածոց յատկութեանց մին եւս այն է՝ որ հասարակօրէն լեզուն հետզհետէ եւ աստիճանաբար աւելի կը ռամկանայ, մինչեւ ի վերջ կոյս զուտ ռամկօրէնի կերպարանք կ'առնու։ Յայտնի է որ ինչպէս յամենայնի՝ նոյնպէս նաեւ յայսմ բացառութիւնք կը հանդիպին։

Աւասիկ Մխիթարայ Հերացւոյ սովորական լեզուէն օրինակներ.

Դ. Գաղիանոս վասն երեք ազգ ջերմերոյն գիրքն, յառաջին մոչալոյն՝ որ է ճառ, ասէ, եթէ աղէկ իմացիր եւ ի միտ առ, յորժամ առնուն ջերմն ջուր եւ արկանեն ի հով պուտուկ, անպատճառ տաքնայ հով պուտուկն ի ջերմ ջրէն. ապա թէ առնուն հով ջուր եւ արկանեն ի տաք պտուկ, նոյնպէս տաքնայ հով ջուրն ի տաք պուտուկէն։ Օրինակ է պուտուկն չոր եւ պինտ անդամոցն, իսկ ջուրն՝ գիճութեանցն, որք են չորս նիւթքն։ Յորժամ տաքնայ չոր եւ պինտ անդամունքն, տաքցնեն զչորս նիւթն, որ է արիւնն եւ մաղձն եւ պլղամն եւ սովդայն. նոյնպէս թէ տաքնայ չորս նիւթն, տաքցնեն զչոր եւ զպինտ անդամունքն։

Այլ այն ցեղ ջերմն՝ որ ի յերեք հոգիքն լինին. չունի օրինակ որ ի յինքն ի նման լինի ամենայն դիմօք. բայց վասն այնոր որ երեւնայ եւ ընդ գիտութեամբ անկանի, ա՛ռ ի միտ օրինակ զդարբնի փուքսն, որ երբ ի յինքն քաշէ զընիկ տաք օդն, անպատճառ տաքնայ փուքսն ի յայն տաք օդոյն։ Ա՛յլ օրինակ խիստ ի նման յայտ (յայդ) իրացդ ի բնութիւն, եթէ ի միտ առնուս աղէկ եւ գիտանաս՝ որ երբ ի յայն փուքսն գիճութիւն լինի արգելած, մանաւանդ տեսանես մտօքդ՝ որ ճա-

նապարհն մտանելոյն եւ ելանելոյն նեղ լինին. եւ չկարէ անցանել ընդ ինքն այն արգիլած գիճութիւնքն որ ի փուքն կենայ, բայց հողմն անցանի: Այս օրինակս խիստ նման է մարդկային բնութեան գործոյն. զի օդոյն էութիւնն որ խառնեալ է ընդ արեանն եւ ընդ ամենայն շնչաւոր երակօն, նոյնպէս եւ սրտոն, զի՞նչ է պակաս քան զդարբնի փուքոն:

Է. Յորժամ բնաւորական գիճութիւնն հաստանի, չկայ ճար՝ որ այն մարմինն դարձեալ յիւր ողջնութիւնն դառնայ եւ հաստատի: Իսկ բերեմ ես այս բանիս ընկեր եւ օրինակ, որ ընթերցողին դիւրաւ լինի: Զայս իմա որ երբ ծառ՝ յորժամ կտրի ի յիւրմէն, նուազի եւ հատանի իւրիմէն ջուրն եւ հողոյն վաստակելն՝ նա այն ծառն վատթարի, եւ թառամի տերեւն: Ապա թէ դարձեալ վաստակի իւր հողն, եւ ծառոյն ջուր տան, առոյգ պայծառանան իւր տերեւքն, եւ ճոտքն ուժառնեն[1] եւ պտղաբերեն: Ապա թէ զանց առնէ իւր տէրն եւ անհոգ կենայ՝ նա հասանի այն չորութիւնն ի ծառին ճուղքն, եւ վատթարէ զիւր պայծառութիւնն եւ զճուղօն, եւ խափանէ զտերեւն եւ զպտուղն: Ապա թէ դարձեալ այն ծառոյն տէրն պէտ առնէ նմա, զատակն բրէ եւ ջուր տայ, ի խիստ ցրտոյ եւ ի խիստ շողոյ պահէ զծառն, լինի որ յանկարծ այն ծառն դարձեալ յիւր բնական բնութիւնն դառնայ, հետ շատ ստածելոյ եւ դատելոյ: Ապա թէ անտես առնէ տէր ծառոյն, եւ անհոգ կենայ, որ հասանի այն ծառոյն չորութիւնն ի յարմատն եւ ի կեղեւն՝ նա չորանայ ծառն, եւ չիկայ հնար՝ որ ձօնիւ դարձեալ յիւր բնութիւնն դառնայ: Նոյնպէս եւ այս ջերմս՝ երբ ոկիզքն անհոգ կենայ իւր տէրն եւ պէտ չայնէ[2], աւիրի իւր զրոյցն:

1 Ուժ առնէն, իմա՛ ուժ առնուն: Ի ռամկօրէն գրութիւնս շատ անգամ կը հանդիպի առնել՝ փխ. առնուլ, մանաւանդ (հոլովեալ) աներեւութի մէջ. զ. օ. Երակ առ, եւ յետ երակ առնելոյն . . . : Եթէ երակ առնուս . . . ապա յետ երակ առնելոյն . . . : Զչուանչն դժար տայ եւ առնէ:

2 Պէտ չայնէ, փխ. չառնէ: Մինչեւ ամէնէն հին գրութեանց մէջ կը գտնենք առնել բառին կերպարանափոխութիւնքն, որ հետզհետէ այլայլելով՝ եղած է այրնել, (երբեմն նաեւ արնել,) այնել, անել, եւ վերջացած է արդի՝ ընել ոճմամբ:

Բայց պէտք է միշտ անմոռաց ի մտի պահել, որ այս եւ նմանօրինակ փոփոխմունք շատ անգամ աւելի ընդօրինակողաց գործն են քան հեղինակաց: Սակայն եւ այնպէս մենք յայլայլխուս միշտ անփոփոխ կը պահենք ի ձեռս գտնուող օրինակին գրութիւնն, թէ՛ ի ոճմունս

եւ թէ՛ յուղղագրութեան, կ՚ենթադրուի՝ բաց ի յայտնի սխալներէ, զոր ի հարկէ ուղղագրելու էինք։ Այսպիսի անփոփոխ թողեալ գրութիւնք են ի վեր անդր գրեալքն․ յայտ՝ փխկ․ յայտ, ճոփ՝ փխկ․ ճոխ, ճուղք՝ փխկ․ ճիւղք, սատակ՝ փխկ․ յատակ, աւէրել՝ փխկ․ աւերել։ Վասն զի հնար է թէ նաեւ հեղինակն նոյնպէս գրած է։

Զ․ Առաջին ցեղ հալեւմաշն ընծայի, որ կոչի թառամեցնող․ եւ այս ցեղիս ստածումն հեշտ լինի եւ շուտ։ Ապա թէ հասանի այն տաքութիւն ի յայն երրորդ գիճութիւնն, որ ի միսն եւ ի փորոտիսն լինի, նա ընծայ(է)[1] երկրորդ հալեւմաշն, զոր անուանեն բարակ, եւ իւր ստածումն եւ բժշկութիւնն դժար լինի։ Ապա թէ այն տաքութիւնն, որ ի չորրորդ գիճութիւնն հասանի, որ զօդվածն եւ զամենայն անդամս մարմնոյն պինտ ունի․ նա ընծայի երրորդ ցեղ հալումաշն զոր անուանեն քակող եւ անցնող մարմնոյն․ եւ այս ցեղս զստածումն եւ զբժշկութիւնն չընդունի բնաւ։ . . .

Այժմ ցուցանեմ եւ ասեմ զնշաննին եւ զստածումն եւ զբժշկութիւնն զատ ի զատ զամէն մէկ, որ ճանաչեն եւ գիտենան զամէն ցեղ ուրիշ ուրիշ․ եւ ապա ստածեն եւ բժշկեն զայն ցեղն՝ որ ընդունի զառողջութիւնն, եւ այն՝ որ չունի ճարակ առողջութեան՝ ի զատ կենան։

Այժմ ասեմ զառաջին ցեղն, որ իւր պատճառն լինի տրտմութիւն եւ հոգս եւ ի սիրտ ելանելն, եւ այլ զամենայն պատճառքն՝ զոր այլ յառաջդ ասացաք ի յերեք հոգիսն․ եւ հասանի իւր տաքութիւնն ի տեղեստանն որ ընդ երակսն ի մէջ լինի։ Եւ իւր նշանն այս է՝ որ տաքութիւնն միացեալ լինի, եւ իւր գոյնն թառմի, եւ դեղնութիւն անկանի, եւ ի յիւր շօշափելն գտանես սուր տաքութիւն, եւ իւր մուճուրին երակն չիգտուի ամենեւին փարփուտ ի տաքութենէ։ . . .

Իսկ երկրորդ ցեղ հալումաշն լինի յայնկից, որ երբ տաքութիւն հասանի ի բնական յերկրորդ գիճութիւնն՝ որ ի միսն լինի եւ ի փորկարսիքն, ապա այն նշաննին՝ զոր ասացաք ի յառաջին հալեւմաշն, ի յայս ի յերկրորդ ցեղս այլ ի բաց լինի։ Զի յետ կերակուր ուտել
տաքութիւնն յաւելնայ, հանց որ իմանայ
անդն, եւ գիտենայ որ տաքութիւնն
ի մարմինն եւ դժարեցաւ ինքն։ Եւ
ճառն այն է՝ որ տաքութիւնն
ի ներքս ի մարմինն զերդ քամի,

երբ մտանէ կերակուրն եւ ըմպելին, գտանեն զայն պահած տաքութիւնն ի մարմինն, եւ յերեւան բերեն եւ հանեն ի լոյս։ Որպէս գտանեմք զօրինակն ի կրին քարն. զի յորժամ ի կրին քարն ջուր հասանի, նա զիւր տաքութիւնն՝ որ ի ներքսէ պահած ունէր, ի դուրս հանէ. եւ զայդ բանդ Պղատոն ասաց։ Նոյնպէս եւ այլ ասէ՝ թէ յորժամ կրին քարն ի ջուրն հասանի, նա բանայ զիւր գաղտ շնչահանքն եւ զտաքութիւնն ի դուրս վաթէ։ Բայց այլ ոմն ասաց ի բժշկական վարդապետացն՝ թէ հիւանդին կերակուրն կերակրէ զայն օտար տաքութիւնն, շատցնէ եւ ուժովցընէ զինքն, եւ իւր վկայ այն է, որ երբ հալի կերակուրն եւ անցանի՝ նա դառնայ տաքութիւնն այլվի ի յիւր կերպն՝ որ յառաջն էր։

Իսկ երրորդ ցեղ հալեւմաշն, զոր քակող անուանեն, իւր պատճառն այն է՝ որ հասանէ իւր տաքութիւնն ի չորրորդ գիճութիւնն՝ որ ընդ ամենայն մարմնոյն յօդուածան են, եւ զամենայն անդամս պինտ ունին բռնած։ Բայց այսոր նշաննին այլ ի բաց լինին եւ այլ ի յերեւան. զի աչքն խորանայ, եւ աչաց գուբն դարտկի, եւ ի յաչքն ճպուռ լինի, եւ կոպքն թուլանան, եւ ի վայր քաշվի, զերդ մարդոյ որ կքայ եւ ի քուն կամի լինել. եւ երեսաց գոյնն զերդ կրակաց մոխրի լինի, եւ ճակտին կաշին քաշւի, եւ քնքերն ի ներս երթայ, եւ փորն փարփուտ եւ դատարկ կերեւնայ։ Եւ այս ամենայն պատճառս այն է՝ որ բնական գիճութիւնն դարտակեցաւ եւ վճարեցաւ ի մարմնոյն, հանց որ չիմնաց իրք։

Եւ իւր մռճռռին երակն վատուժ լինի եւ փոքր. եւ երակին մարմինն պինդ լինի՝ որպէս զլար քաշած։ Եւ երակին վատուժութեան պատճառն այն է՝ որ մարմնոյն զօրութիւնն հատել եւ կտրել լինի։ Եւ իւր փոքրութեան պատճառն այն է՝ որ հոգի կենդանութեան եւ արիւնն պակասել են, եւ սակաւ լինի յերակն։ Եւ երակին մարմնոյն պնտութեան պատճառն այս է՝ որ բնական գիջութիւնն հատել լինի եւ վճարեալ ի մարմնոյն։

1 Օրինակաց մէջ՝ փակագծեալ նոտրագիրը կը ցուցընէ մեր կողմանէ եղած փոփոխութիւնն, պ. օ. սատ՝ տպագրին «ընծայէ» բառին՝ ըրած ենք «ընծայի» հա[illegible] նախընթաց եւ յաջորդ պարբերութեանց մէջ դրուածներու[illegible]ատածիս վերջերը՝ ձեռագրին «Կերակուր շատ կերիցեն» բառ[illegible]կուր մի շատ կերիցեն» ինչպէս կը պահանջէ իմաստն։ Խ[illegible]եալ բոլորգիրը կը նշանակէ

*Թէ այդ գիր կամ բառ սկզբնագրին՝ մեզի աւելորդ կը Թուի. զ. օ. սա-կաւ մի յետոյ "արգելած լինին„ բացատրուԹիւնն՝ փոխած ըրած ենք "արգելած լինի„։ Այս երկրորդէս պէտք է զանազանել իբրեւ մեկ-նուԹիւն յաւելցուած բառերն, ինչպէս ի վերջ. կոյս Հատածիս՝ լռկցուցին (լոգացուցին)։*

Է. Ապա Թէ խիստ վատուժի հիւանդն, դու-մսի ջուր տուր այս նշանօքս։ Առ ուլու միս ի Թիկանցն եւ ի շլեցն եւ ի կողըյն, մանր կտրա-տէ եւ ի քարէ պտուկ արկ, եւ աղն պակաս արա եւ մեղմ կրակով եփէ։ Եւ որչաք[1] ի մսէն ջուր ելանէ՝ դու հետէն առ զջուրն, ի զատէ աման արկ՝ մինչեւ ցամաքի միսն։ Ապա սակաւ մի անուշահոտ գինի, եւ իւր կիսոյն չաք խնծորի ջուր. զայսոք ի մսին ջուրն խառնէ, եւ մեղմ կրակով սակաւ մի եռցո, եւ ապա տուր կում կում որ խմէ. զի այս ջուրդ խիստ ուժովցնէ զհիւանդն։ . . .

Կերակուր տուր Թրխկիճ եփած եւ տապկած, որ լինի ի հետն նուշ աղնձած։ Եւ առ փերճո-կած սոխ եւ աղնձած, եւ հեղ մի եփէ եւ ձգէ զջուրն. եւ ապա արկ ի վերայ մուզ նռան ջուր կամ սերկեւիլի կամ աղտորի ջուր, եւ այլվի եփէ, եւ տուր որ ուտէ։ Եւ այլ տուր փշատի փոխինդ կամ նռան հատի փոխինտ ի հետ պաք-սիմատի։ Եւ զայս կերակուրքդ տուր (որ)[2] երբ չլինի հազ։ Եւ Թէ հազ լինի՝ տուր խմելոյ տա-ճիկ կուէզ եւ հայկաւ. եւ կերակուր՝ սաքան փո-խան՝ հացի փշրուկ տուր աղնձած նշով, եւ սեր-կեւիլին ջրի փոխան՝ մրտի քամուքան տուր։ . . .

Երբ տաքուԹիւնն անցանի, դալար մանր ձուկն խորված ուտէ, եւ ի խաւարտնուն՝ զհոմս եւ զգիճային ի բան պահէ, որպէս հազարն եւ փըր-փրեմն, զդալար գինձն եւ զոր նման սոցին։ . . .

Զկերակուր շատ Թող չուտէ, մանաւանդ ի յամռան աւուրքն. հով ջուր խմէ քիչ քիչ։ Կերակուր դդմի մուղուլվարայ եւ սպանախ կերցուր, եւ Նաջոյ ձուկ խորված. եւ քան զամենայն ինչ օգտէ խաշափարն՝ որ գարեջրով լինի եփած։ Եւ երբ տաքուԹիւնն պակսի, հաւձագ՝ փերճկոտած գարով ի բան պահէ, եւ բանջրնուն՝ հազար եւ դալար գինձ կերակրի։ Ապա Թէ ջերմն զօրաւոր է, կերակուր՝ Թերխորով ձուի դեղնուց տուր։ . . .

Զկերակուրն ԹեԹեւ եւ դիւրահալ ուտէ, որ անուշահոտոք եփած լինի, զերդ ուլի միս, հաւու ձագ, եւ գառին ողոշար՝ սխտան ջրով։ Եւ ղկնի այտոր՝ խնծորի ջուր, եւ քաղցր եւ ԹԹու

սերկեւիլի ջուր՝ ընդ սակաւ մի գինի խառնեալ, եւ գերմակ հաց փշրեալ խառնէ եւ ուտէ։ . . .

Ապա թէ կարիք է որ ուժովցնես զմարմինն, եւ իւր ջերմն չլինի ուժով, ապա փոստոյն տուր եւ հաւու ձագ եւ կաքվու ձագ եւ փահուան եւ ուլու ոտներ եւ արտալայոյնի՝ դդմով եփած, եւ վլխոտն եւ սպանախ եւ թախտ եփած մաշով, եւ գառին ոտներ եփած փերճոկած գարւով։ . . .

Ապա թէ ջերմն ուժով լինի, ձուի դեղնուց եւ կովուց կաթն տուր, եւ այծու կաթն՝ ընդ գարեջուր խառնեալ, եւ Ռոֆոյ ձուկն կերակրի խորովեալ, եւ ուլի ոտներ, եւ բակլայի ջուր նշի կաթ(ա—)մ[3] եւ հաւու ձագ՝ փերճկած գարւով։ . . .

Հազար տուր ուտելոյ՝ հում եւ խաշած։ Այլ հաւու ձագ մի տաս ուտելոյ, զատել՝ տեսանես որ զօրութիւնն վատուժել լինի։ Ապա հետ[4] երեք շաբաթու տուր հաւու ձագ։ Հետ[4] քառասուն աւուր տարեկան ոչխարի միս։ . . .

Պատրաստեցս ի խողի մսէ եւ յամենայն իրաց՝ որ թանձր ղորկուտ են եւ յուշահալ, եւ յամենայն իրաց որ հով են եւ գիճային. եւ տուր գինի նօսր եւ սպիտակ, զոր[5] չափաւոր տաքութիւն ունի։ Եւ տուր թռչնոյ միս, եւ ի ձկանցն տուր զոր միան քնքուշ լինի, եւ զայն որ թանձր միս ունի եւ ղորկուտ՝ մի տաս. այլ զաղի ձուկն եւ մանանեխ տալ մարթի, բայց ժամ ժամ։

1 Շատ հին ժամանակներէ սկսեալ՝ կը տեսնուի չափ բառն չաֆ եղած։ Բայց տարակուսական է՝ որ ձեռագրաց այս ասմիականութիւնն ամէն տեղ բուն հեղինակաց գրութիւնն ըլլայ։ Վասն զի յաճախ իսկ մեր ձեռագրի չափն՝ այլ ձեռագիր չաֆ կը դնէ. ինչպէս հետեւեալ օրինակին մէջ կը տեսնենք։

2 Տես էջ 79, ծանօթ. 1։

3 Ցօրինակին (էջ 55) տպուած է կոճռամ, ինչպէս նաեւ սակաւ մի յառաջ (էջ 51) կը կարդացուի "Ջայս ամէնս կոճռամն ի բանի պահէ"։ Յայտնի է թէ գրաբարի մէջ այս ամ վերջաւորութիւնն, նաեւ ի հնագոյն եւ ընտրելագոյն գրուածս, մանաւանդ գիտնականաց մէջ՝ ներգոյական հոլով կը ձեւացընէ, եւ շատ սովորական է յայժմու արեւելեան բարբառ եւ ի գաւառականս ինչ։ Բայց շատ ցանցառ կը տեսնուի հին ռամկօրէն գրուածոց մէջ։ Մենք պատշաճ համարեցանք այս տեղ փոխել եւ դնել կոճռամ. վասն զի խօսքին իմաստն ոչ թէ ներգոյական՝ այլ գործիական կը պահանջէ, ուստի եւ վերի օրինակին մէջ ընել կ'ուզուի "Բակլայի ջուր՝ նշի կոճռամքն" եւ վերոյիշեալ միւս խօսքին մէջ՝ "Ջայս ամէնս կոճռամքն ի բանի պահէ". ինչպէս սակաւ մի յետոյ (էջ 56) տպուած է "Ջհայն կոճռամքն ուտէ"։ Մեր դրած ամ եւ ամք վերջաւորութիւնն՝ նոյն հոլովին սովորական ձեւերէն մին է առ ռամկագիրս։ Այսպէս ի հնագոյն ռամկօրէն գրութիւնս եւ մանաւանդ ի հին բժշկարանս կը գտնենք. "Երբ ցկնի (չուննն) գարեջրոյր կաթամ աղէկ է։ Կերակուր տուր ապրտամ։ Առ ի յափիոն մէջն եւ բաթամդ տուրէ։ Բոյթամդ եւ նոյն դեղերովդ զզանկիկն ի վեր կալ՝ խառնէ հաւճձեռամն։ Լից ի հաւանն եւ հաւճձեռամն հար", զոր ուրիշ տեղ բառած էր "Հաւճին կոթոքը պինդ զարկ"։

4 Ոչ ցանցառ կը հանդիպի նաեւ բաւական ուղղագիր ձեռագրաց մէջ՝ հետ գրուած փոխանակ գրելու յետ:

5 Ի ռամկօրէն գրութիւնս յաճախեալ է այսպիսի աւելորդ՝ եթէ չըսենք սխալ՝ կիրարկութիւն զ՚ նախդրին, որ շատ սովորական է նաեւ քանի մի գաւառականաց մէջ:

Ը.[1] Գաղիանոս հրամայէ թէ պարտ է պէտ այրնել եւ ջանալ՝ որչափ կարողութիւն լինի՝ որ զհիւանդութիւնն չյաւելացնես, եւ զհիւանդին ուժն չըլցնես եւ քակես եւ վատուժցնես: Զի ուժն յերկարօրեայ ժամանակի պէտս ունի, որ ծառայէ զհիւանդութիւնն եւ եփէ: Իսկ յորժամ սակաւ կերակուր տաս, օգտէ հիւանդութեան շուտեփելոյն. բայց պակաս ուտելոյն չափն ահոկէ հիւանդին ուժոյն եւ զօրութեանն, պակասի եւ այլ աւելի: Ապա թէ աւելի տաս զկերակուրն, օգտակար է հիւանդին ուժոյն, բայց զնոյն չափս[2] յամեցնէ զհիւանդութեանն զեփիլն:

Ապա պարտ է որ յայտ ի տեղիտ տեսանես՝ թէ յոր չափս է հիւանդութիւնն, եւ ի յոր չափս է ուժն հիւանդին. եւ տեսանես՝ թէ յերկուքն որ ունի կարիք օգնելոյ, եւ այն որ կարիքն կենայ՝ օգնական լեր: Եւ պատրաստեցո ի կերակրէ, յորժամ հիւանդին զօրութիւնն ուժով լինի, եւ հիւանդութիւնն հեշտեփեաց. այլ տուր կերակուր՝ յորժամ զօրութիւն հիւանդին վատուժ լինի, եւ հիւանդութիւն լինի՝ որ խիստ դժար եփի: Եւ զայս կանոնքս զոր ասացաք՝ պահել պարտ է ի յամենայն ցեղ հիւանդութիւն:

Այլ զայս ջերմանս տէրն ի սկիզբն հիւանդութեանն ի բաղանիք չէ պարտ տանել. բայց յորժամ զեփելոյն նշաննին տեսանես, պարտ է որ ի բաղանիս մտանէ: Եւ յամենայն օր չէ պատեհ կերակուր տալ, զի օր ընդ մէջն բաւական է: Այլ ի նուաղոյին օրն զըմպելիքն միայն տուր, զերդ զգարեջուրն եւ զլուրողնին, եւ ի մէկայլ օրն՝ որ չունի զնուաղոյն, տուր զկերակուրն: Եւ այդ հիւանդիտ հանգիստ կալն եւ խաղաղ՝ խիստ օգտակար է. եւ զկշտերն տաքցնելն օգտէ. եւ այլ՝ միջակ հուջնանին խիստ օգտէ, որ ոչ սուր լինի եւ ոչ կակուղ:

Այլ պատեհ է որ հայիս ի սկիզբն հիւանդութեանն, որ թէ կարիք ունի արիւն հանելոյ, եւ օգնէ ուժն եւ տարին եւ ժամանակն, ապա արիւն հան ըստ կարեացն եւ որպիսութեանն: Եւ այլ՝ զկերակրոց նուաղէրն չէ պատեհ հով եւ դիճային առնել, զերդ յիստակ ջերմանն զնուաղէրն. այլ

պատեհ է որ ի յայս ջերմանս ի դեղերն՝ խառնես զպարկեշտացնող եւ զկտրող դեղերն. այլ ի յայս ջերմանս ի գարեջուրն սակաւ մի պղպեղ ընկենուլ օգտակար է։ . . . Եւ լուծման դեղերն զայն տուր՝ որ կակուղ են եւ անահոկ. եւ յետ կերակրոյն վերաբերութիւն այրնել շատ օգտակար է. զի շատք տեսաք՝ որ յամեցին յայդ ջերմա, եւ վերաբերութեամբն ողջացան բնիկ։ (Համեմատութիւնք Յետագրէն։)

1 Այս եւ հետեւեալ երկու օրինակք (Թ. եւ Ժ.) կը տարբերին տպագրէն. զի լանուցած ենք զանոնք ըստ կարի համաձայնեցընել մեր ձեռագրին, յայն մասունս միայն հետեւելով տպագրին, որք ի ձեռագրին խառնակ ու աղճատ են եւ կամ կը պակասին։

2 Տես էջ 81, Ծանօթ. 1։ Այս օրինակին մէջ տպագրին չափերն՝ ի գրչագրին չափ են՝ ինչպէս դրած ենք։

Թ. Գիտացիր որ կան դեղեր՝ որ խօսխօմով օգտեն այս ջերմանս, զոր առաջինք փորձեցին. եւ այդ չէ զարմանք, զի մեր վարդապետն Գաղիանոս յիշել է, թէ փենեայն՝ երբ ի բազուկն կապեն կամ ի վիզն յուխտաւորին, օգտէ։ Որպէս կանք եւ տեսանեմք զխանգուման քարն, որ խօսխօմով զերկաթն կուքաշէ. նոյնպէս կան դեղեր՝ որ կարող են խօսխօմով հակառակ կալ խառնուածոցն եւ հիւանդութեան։ Եւ այլ կանք ու տեսանենք ի վայրի կենդանեացն՝ որ առնուն խոտեր եւ դնեն իւրեանց տեղեատանն, եւ երբ թշնամին գայ այն երէին, նա այն խոտն հակառակ գայ խօսխօմով, եւ չտայ մուտ առնել՝ ուր ինքն կենայ։ Եւ զայս փորձեցին առաջինքն, զի խոզին ոսկրն՝ երբ կտաւով ի վիզն կապեն՝ որ այս ջերմն ունի, օգտակար է։ Նոյնպէս եւ քօշին մօրուքն՝ երբ ի յայն հիվանդին շլինքն կապէ՝ օգտակար է։ Այլ խօսխօմն առանձինն եւ իւրական գործ գործէ։ Այլ՝ երբ զհիւանդին զհանդերձն հանես եւ տղոցկանի[1] հագցնես, եւ այլուվայր հիւանդին հագցնես՝ առանց լուանալոյ, օգտէ ի յայս ջերմանս։ Այլ՝ զսարդն որ զճանճն որսայ՝ կտաւով ի ձախոյ բազուկն կապես, օգտէ։ Այլ՝ թէ զսարդային ոստայնն ձիթով խառնես, եւ զհիւանդին զամէն մարմինն օծանես, օգտէ այն ջերմանն՝ որ ի դողդոմին խորովելոյն ընծայի։ (Համեմատութիւնք Յետագրէն։)

1 Տղոցկան՝ ըստ ձեռագրին, ըստ տպագրին՝ դղացկան, մեզ անծանօթ բառ է. Թերեւս նոյնանշան ըլլայ պատեհուոր կամ պատշաճաւոր բառին, որ է՝ յղի, նոյնանշան այժմու ռամկօրէնին ծոցուոր, երկու հոգւով՝ բացատրութեանց։

Ժ· Տես աղէկ եթէ չկայ պատճառ՝ որ արգիլէ զքեզ, ձա սեւ վրացի կոճ, եւ ի բաղկն դիր՝ զերդ իւր տոամն է. ապա զբաղկն տուր որ ուտէ. եւ վերաբերութիւն առնէ։ Ապա այն հիւանդն՝ որ վերաբերութիւն չկարէ առնել, լուծման դեղ տուր, որ ուժովն լինի. եւ այլ՝ հետ այսօր զաւազ Բէրէտօն տուր՝ զի շատ օգտէ մանաւանդ ի ձմեռան աւուրքն։ Եւ այլ՝ քան զամենայն դեղերն զոր գրել են, եւ մեք փորձել ենք եւ սովոր ենք տալոյ, այն դեղն է որ ոնգձոփ ունի. այս դեղս օգտակար է, եւ ինք յոխըրօխօդէնն է գրած։

Իսկ այն մարդիկն՝ որ հիւանդութեան սկիզբն զայդ դեղերդ ի բան տանին եւ տան յառաջ քան զայն՝ որ հիւանդութիւնն կատարի, զհիւանդութիւնն կրկնեն եւ երկու առնեն, եւ շատացնեն զջերմն. եւ իւր նշանն այն է՝ որ երկու օր նոյն հիտրաց[1] գան, եւ մէկայլ օրն չգան։ Եւ ես տեսայ մարդ մին ի բժշկաց, որ ետ իւր հիւանդին Բէրէտօ+ յառաջ քան զայն՝ որ հիւանդութիւնն կատարէր. եւ ունէր մարդն այն երկու ջերմն՝ նա յաւելացան ջերմերն եւ յիրար կցեցան, եւ եղան մի ջերմ մի յար[2] եւ սպանին զհիւանդն։ (Համեմատութեամբ Յետոփրէն։)

1 Տպագրին հէօրըօց բառը պահեցինք, թէեւ գրչագրին մէջ հէօրէըօց է. վասն զի առաջինն երբեմն կը տեսնուի նաեւ ի ձեռագիրս, միանգամայն այժմեան քանի մի գաւառական բարբառոց եւս ծանօթ է եւ ի յաճախ կիրառութեան։ Ուղղագոյն եւ սովորական ձեւն է հէօրէըօց, իբրեւ ըսել՝ հեռ իրերաց։ Կը գործածուի առաւելապէս՝ զհեռ իրերաց, իրարու եւեւէ, հետըհետէ, անընդհատ՝ նշանակութեամբ. այսպէս է վերին օրինակին մէջ, այսպէս նաեւ "Խմէ ի վաղուընէ երեք օր հէօրէըօց" եւ "Եթէ ուժով լինի ցաւն՝ քառասուն օր հէօրէըօց տուր" խօսքերուն մէջ. սակայն կայ ի կիր արկեալ նաեւ ընդ իրեարս, իրարու հետ՝ նշանակութեամբ, զ. օ. "Խառնէ հէօրէըօց զդեղերանքդ զամէնդ". բայց այս երկրորդ միօք հասարակօրէն կ'ըսուի՝ ընդ իրար, յիրար։

2 Այսպէս ի տպագրին. թերեւս՝ ճոյար։ Իսկ ի ձեռագրին՝ մի ջէրմէն, որ հաւանագոյնս պիտի ըլլայ՝ մի ջէրմ մէն, այսինքն՝ մի ջէրմ մոյն։

Ի մէջ բերեալ օրինակներէս դիւրին է դատաստան ընել Ջերմանց մխիթարութեան վրայ՝ ի մասին ոճոյն կամ լեզուին։ Չի կրնար արդարեւ զրուցուիլ թէ ինչպէս ժամանակի նախաւորութիւնն՝ նոյնպէս նաեւ ոճոյ նախապատուութիւնն ունենայ, ռամկական բարբառոյն ընտրելագոյն օրինակն ըլլայ, կամ թէ նոյն բարբառոյն համօրէն վայելչութիւնքն յինքեան բովանդակէ. վասն զի

եւ ոչ խակ գրութեան նիւթն յարմար է գեղեցիկ ստացուած եւ զարգարուն ու ծաղկալից ոճ ի կիր արկանելու։ Սակայն չէ հնար ուրանալ թէ ըստ բաւականին կոկ ու կարգաւորեալ է բովանդակն. ռամկականութիւնն չափազանց չէ, բառերու հին ձեւերն մեծաւ մասամբ անփոփոխ պահուած են, գրաբար բացատրութիւնք, ստացուածք եւ ձեւակերպութիւնք՝ առատ։ Ի վեր քան զամենայն այս առաւելութիւնն ունի, որ բոլոր ստացուածքն պարզ են ու բացայայտ, հեշտալուր ու դիւրիմաց, որով ամենայն ոք՝ մինչեւ բժշկականութեան բոլորովին անտեղեակն անգամ՝ դիւրաւ եւ անաշխատ կ՚իմանայ։ Վերջապէս քերականօրէն եւս նկատելով, ռամկախօս գրուածոց մէջ ամէնէն աւելի կանոնաւոր սութեան կերպ ունեցողներէն է, գուն ուրեք մուտ տալով անկարգ եւ անքերական նախադասութեանց, մանաւանդ այն աղճատ եւ խառնակ դարձուածոց, որ ոչ ցանցառ կը հանդիպին առ բազումս ի ռամկագրաց։ Եւ հաւանական է թէ այն սակաւաւոր թերութիւնք եւս՝ որ յայսմ մասին կը դիտուին, ինչպէս նաեւ ստորնագոյն ռամկականութիւնք՝ որ ուրեք ուրեք կը տեսնուին ի գրութեանս, առաւելապէս ընդօրինակողաց անհմտութեան կամ ինքնակամ փոփոխութեանց պտուղն են[1]։

Ոչ ինչ նուազ գովութեան արժանի դարձեալ այնու է՝ զի շատ ռամկօրէն գրուածներէ աւելի միօրինակութիւն ունի, սակաւ բացառութեամբք՝ ծայրէ ի ծայր միեւնոյն ռամկօրէն բարբառն հաստատուն պահելով։ Այնպէս որ Մխիթարայ այս գրութիւնն կարդացողը կարող է համարիլ թէ

[1] Թէ շատ գրութիւնք ընդօրինակողաց ձեռօք փոխուած եւ այլայլած են, ամենածանօթ բան է։ Ապահով ենք որ եթէ հնագոյն եւ ընտրելագոյն ձեռագիրք յերեւան ելլէին Մխիթարայ, ի վեր անդր ակնարկուած թերութեանց գէթ մեծագոյն մասն չենք գտներ անոնց մէջ։ — Ի յաջորդ Հատածին առիթ կ՚ունենանք այս նիւթոյն վրայ ընդարձակօրէն խօսելու եւ ըսուածն օրինակօք հաստատելու։

խառն կտորներ՝ ինչպիսի էին ի վեր անդր գրուածներն։ Գրեթէ բոլոր գիրքն միեւնոյն ռամկօրէն լեզուաւ կը գրէ. ուստի եւ հազիւ աստ անդ կը գտնենք՝ գրաբարի յատուկ ձեւերէ եւ կազմակերպութիւններէ եւ ասացուածներէ զատ՝ միակ եւ առաւելն երկու տող միահետ բուն գրաբար նախադասութիւններ։

Թէ՛ առաջիկայ գրուածոյս եւ թէ՛ այլ եւս ռամկօրէն գրուածոց յատկութեանց մին եւս այն է՝ որ հասարակօրէն լեզուն հետզհետէ եւ աստիճանաբար աւելի կը ռամկանայ, մինչեւ ի վերջ կոյս զուտ ռամկօրէնի կերպարանք կ՚առնու։ Յայտնի է որ ինչպէս յամենայնի՝ նոյնպէս նաեւ յայսմ բացառութիւնք կը հանդիպին։

Աւասիկ Մխիթարայ Հերացւոյ սովորական լեզուէն օրինակներ.

> Դ. Գաղիանոս վասն երեք ազգ ջերմերոյն գիրքն, յառաջին մուխալաֆն՝ որ է ճառ, ասէ, եթէ աղէկ իմացիր եւ ի միտ առ, յորժամ առնուն ջերմն ջուր եւ արկանեն ի հով պուտուկ, անպատճառ տաքնայ հով պուտուկն ի ջերմ ջրէն. ապա թէ առնուն հով ջուր եւ արկանեն ի տաք պտուկ, նոյնպէս տաքնայ հով ջուրն ի տաք պուտուկէն։ Օրինակ է պուտուկն չոր եւ պինտ անդամոցն, իսկ ջուրն՝ գիճութեանցն, որք են չորս նիւթքն։ Յորժամ տաքնայ չոր եւ պինտ անդամունքն, տաքցնեն զչորս նիւթն, որ է արիւնն եւ մաղձն եւ պալղամն եւ սավդայն. Նոյնպէս թէ տաքնայ չորս նիւթն, տաքցնեն զչոր եւ զպինտ անդամունքն։
>
> Այլ այն ցեղ ջերմն՝ որ ի յերեք հոգիքն լինին. չունի օրինակ որ ի յինքն ի նման լինի ամենայն դիմօք. բայց վասն այնոր որ երեւնայ եւ ընդ գիտութեամբ անկանի, ա՛ռ ի միտ օրինակ զդարբնի փուքսն, որ երբ ի յինքն քաշէ զընիկ տաք օդն, անպատճառ տաքնայ փուքսն ի յայն տաք օդոյն։ Ա՛յլ օրինակ խիստ ի նման յայտ (յայդ) իրացդ ի բնութիւն, եթէ ի միտ առնուս աղէկ եւ գիտանաս՝ որ երբ ի յայն փուքսն գիճութիւն լինի արգելած, մանաւանդ տեսանես մտօքդ՝ որ ճա-

*նապարհն մտանելոյն եւ ելանելոյն նեղ լինին. եւ չկարէ անցանել ընդ ինքն այն արգիլած գինութիւնքն որ ի փուքն կենայ, բայց հողմն անցանի։ Այս օրինակս խիստ նման է մարդկային բնութեան գործոյն. զի օդոյն էութիւնն որ խառնեալ է ընդ արեանն եւ ընդ ամենայն շնչաւոր երակսն, նոյնպէս եւ սիրտն, զինչ է պակաս քան զգարբնի փուքսն։*

*Է. Յորժամ բնաւորական գինութիւնն հատանի, չկայ ճար՝ որ այն մարմինն դարձեալ յիւր ողջնութիւնն դառնայ եւ հաստատի։ Իսկ բերեմ ես այս բանիս ընկեր եւ օրինակ, որ ընթերցողին դիւրաւ լինի։ Զայս իմա որ երբ ծառ՝ յորժամ կտրի ի յիւրմէն, նուազի եւ հատանի իւրիմէն ջուրն եւ հողոյն վաստակելն՝ նա այն ծառն վատթարի, եւ թառամի տերեւն։ Ապա թէ դարձեալ վաստակի իւր հողն, եւ ծառոյն ջուր տան, տայց պայծառանան իւր տերեւքն, եւ ճոտքն ուժառնեն[1] եւ պտղաբերեն։ Ապա թէ զանց առնէ իւր տէրն եւ անհոգ կենայ՝ նա հատանի այն չորութիւնն ի ծառին ճուղքն, եւ վատթարէ զիւր պայծառութիւնն եւ զճուղսն, եւ խափանէ զտերեւն եւ զպտուղն։ Ապա թէ դարձեալ այն ծառոյն տէրն պէտ առնէ նմա, զատակն բրէ եւ ջուր տայ, ի խիստ ցրտոյ եւ ի խիստ շողոյ պահէ զծառն, լինի որ յանկարծ այն ծառն դարձեալ յիւր բնական բնութիւնն դառնայ, հետ շատ սնուծելոյ եւ դատելոյ։ Ապա թէ անտես առնէ տէր ծառոյն, եւ անհոգ կենայ, որ հատանի այն ծառոյն չորութիւնն ի յարմատն եւ ի կեղեւն՝ նա չորանայ ծառն, եւ չիկայ հնար՝ որ ձօնիւ դարձեալ յիւր բնութիւնն դառնայ։ Նոյնպէս եւ այս ջերմս՝ երբ սկիզբն անհոգ կենայ իւր տէրն եւ պէտ չայնէ[2], աւիրի իւր զրոյցն։*

1 Ուժ առնէն, իմա՝ ույժ առնուն։ Ի ռամկօրէն գրութիւնս շատ անգամ կը հանդիպի առնել՝ փխկ. առնուլ, մանաւանդ (հոլովեալ) աներեւութի մէջ. զ. օ. Երակ առ, եւ յետ երակ առնելոյն . . . ։ Եթէ երակ առնուս . . . ապա յետ երակ առնելոյն . . . ։ Զչունչն գժար տայ եւ առնէ։

2 Պէտ չայնէ, փխկ. չառնէ։ Մինչեւ ամէնէն հին գրութեանց մէջ կը գտնենք առնել բառին կերպարանափոխութիւնքն, որ հետզհետէ այլայլելով՝ եղած է այրնել, (երբեմն նաեւ արնել,) այնել, անել, եւ վերջացած է արդի՝ ընել ոճամբ։

Բայց պէտք է միշտ անմոռաց ի մտի պահել, որ այս եւ նմանօրինակ փոփոխմունք շատ անգամ աւելի ընդօրինակողաց գործն են քան հեղինակաց։ Սակայն եւ այնպէս մենք յայտաբերս միշտ անփոփոխ կը պահենք ի ձեռս գտնուած օրինակին գրութիւնն, թէ՛ ի ոճունս

եւ թէ՝ յուղղագրութեան, կ'ենթադրուի՝ բաց ի յայտնի սխալներէ, զոր ի հարկէ ուղղագրելու էինք։ Այսպիսի անփոփոխ թողեալ գրութիւնք են ի վեր անդր դիպեալքն. յայտ՝ փխկ. յայտ, ճոտ՝ փխկ. ճաղ, ճողք՝ փխկ. ճիղք, ատակ՝ փխկ. յատակ, ուխրել՝ փխկ. ուխրել։ Վասն զի հնար է թէ նաեւ հեղինակն նոյնպէս գրած է։

Զ. Առաջին ցեղ հալեւմաշն ընծայի, որ կոչի թառամեցնող. եւ այս ցեղիս ստածումն հեշտ լինի եւ շուտ։ Ապա թէ հասանի այն տաքութիւն ի յայն երրորդ գիճութիւնն, որ ի միսն եւ ի փորոտիսն լինի, նա ընծայ(է)[1] երկրորդ հալեւմաշն, զոր անուանեն բարակ, եւ իւր ստածումն եւ բժշկութիւնն դժար լինի։ Ապա թէ այն տաքութիւնն, որ ի չորրորդ գիճութիւնն հասանի, որ զօդվածն եւ զամենայն անդամս մարմնոյն պինտ ունի. նա ընծայի երրորդ ցեղ հալումաշն զոր անուանեն քակող եւ անցնող մարմնոյն. եւ այս ցեղս զստածումն եւ զբժշկութիւնն չընդունի բնաւ։ . . .

Այժմ ցուցանեմ եւ ասեմ զնշաննին եւ զստածումն եւ զբժշկութիւնն զատ ի զատ զամէն մէկ, որ ճանաչեն եւ գիտենան զամէն ցեղ ուրիշ ուրիշ. եւ ապա ստածեն եւ բժշկեն զայն ցեղն՝ որ ընդունի զառողջութիւնն, եւ այն՝ որ չունի ճարակ առողջութեան՝ ի զատ կենան։

Այժմ ասեմ զառաջին ցեղն, որ իւր պատճառն լինի տրտմութիւն եւ հոգս եւ ի սիրտ ելանելն, եւ այլ զամենայն պատճառքն՝ զոր այլ յառաջդ ասացաք ի յերեք հոգիսն. եւ հասանի իւր տաքութիւնն ի տեղեստանն որ ընդ երակսն ի մէջ լինի։ Եւ իւր նշանն այս է՝ որ տաքութիւնն միացեալ լինի, եւ իւր գոյնն թառմի, եւ դեղնութիւն անկանի, եւ ի յիւր շօշափելն գտանես սուր տաքութիւն, եւ իւր մաճաւին երակն չիգտուի ամենեւին փարփուտ ի տաքութենէ։ . . .

Իսկ երկրորդ ցեղ հալումաշն լինի յայնկից, որ երբ տաքութիւն հասանի ի բնական յերկրորդ գիճութիւնն՝ որ ի միսն լինի եւ ի փոր կարսիքն, ապա այն նշաններն՝ զոր ասացաք ի յառաջին հալեւմաշն, ի յայս ի յերկրորդ ցեղս այլ ի բաց լինի։ Զի յետ կերակուր ուտելոյն տաքութիւնն յաւելնայ, հանց որ իմանայ հիւանդն, եւ գիտենայ որ տաքութիւնն յաւելցաւ ի մարմինն եւ դժարեցաւ ինքն։ Եւ իւր պատճառն այն է՝ որ տաքութիւնն արգելած լինի(ն)[1] ի ներքս ի մարմինն զերդ քամի, եւ պահած լինի.

երբ մտանէ կերակուրն եւ ըմպելին, գտանեն զայն պահած տաքութիւնն ի մարմինն, եւ յերեւան բերեն եւ հանեն ի լոյս։ Որպէս գտանեմք զօրինակն ի կրին քարն. զի յորժամ ի կրին քարն ջուր հասանի, նա զիւր տաքութիւնն՝ որ ի ներքսէ պահած ունէր, ի դուրս հանէ. եւ զայդ բանդ Պղատոն ասաց։ Նոյնպէս եւ այլ ասէ՝ թէ յորժամ կրին քարն ի ջուրն հասանի, նա բանայ զիւր գաղտ շնչահանքն եւ զտաքութիւնն ի դուրս վաթէ։ Բայց այլ ոմն ասաց ի բժշկական վարդապետացն՝ թէ հիւանդին կերակուրն կերակրէ զայն օտար տաքութիւնն, շատցնէ եւ ուժովցընէ զինքն, եւ իւր վկայ այն է, որ երբ հալէ կերակուրն եւ անցանի՝ նա դառնայ տաքութիւնն այլվի ի յիւր կերպն՝ որ յառաջն էր։

Իսկ երրորդ ցեղ հալեւմաշն, զոր քակող անուանեն, իւր պատճառն այն է՝ որ հասանէ իւր տաքութիւնն ի չորրորդ գիճութիւնն՝ որ ընդ ամենայն մարմնոյն յօդուածսն են, եւ զամենայն անդամս պինտ ունին բռնած։ Բայց այսոր նշաններն այլ ի բաց լինին եւ այլ ի յերեւան. զի աչքն խորանայ, եւ աչաց գուբն դարտկի, եւ ի յաչքն ճպուռ լինի, եւ կոպքն թուլանան, եւ ի վայր քաշվի, զերդ մարդոյ որ կքայ եւ ի քուն կամի լինել. եւ երեսաց գոյնն զերդ կրակաց մոխրի լինի, եւ ճակտին կաշին քաշուի, եւ քնքերն ի ներս երթայ, եւ փորն փարփուտ եւ դատարկ կերեւնայ։ Եւ այս ամենայն պատճառս այն է՝ որ բնական գիճութիւնն դարտակեցաւ եւ վճարեցաւ ի մարմնոյն, հանց որ չմնաց իրք։

Եւ իւր մոռտուին երակն վատուժ լինի եւ փոքր. եւ երակին մարմինն պինդ լինի՝ որպէս զլար քաշած։ Եւ երակին վատուժութեան պատճառն այն է՝ որ մարմնոյն զօրութիւնն հատել եւ կտրել լինի։ Եւ իւր փոքրութեան պատճառն այն է՝ որ հոգի կենդանութեան եւ արիւնն պակասել են, եւ սակաւ լինի յերակսն։ Եւ երակին մարմնոյն պնտութեան պատճառն այս է՝ որ բնական գիջութիւնն հատել լինի եւ վճարեալ ի մարմնոյն։

1 Օրինակաց մէջ՝ փակագծեալ նոտրագիրը կը ցուցընէ մեր կողմանէ եղած փոփոխութիւնն. զ. օ. աստ՝ տպագրին «ընծայէ» բառին՝ ըրած ենք «ընծայի» համաձայն նախընթաց եւ յաջորդ պարբերութեանց մէջ գրուածներուն, եւ հատուածիս վերջերը՝ ձեռագրին «Կերակուր շատ կերիցեն» բառը՝ «Կերակուր մի շատ կերիցեն» ինչպէս կը պահանջէ իմաստն։ Իսկ փակագծեալ բոլորգիրը կը նշանակէ

Թէ այդ գիր կամ բառ սկզբնագրին՝ մեզ աւելորդ կը թուի. զ. օ. առակաւ մի յետոյ "արգելած լինին" բացատրութիւնն՝ փոխած ըրած ենք "արգելած լինի"։ Այս երկրորդէս պէտք է զանազանել իբրեւ մեկնութիւն յաւելցուած բառերն, ինչպէս ի վերջ կոյս Հատուածիս՝ լոկցուցին (լոգացուցին)։

Է. Ապա թէ խիստ վատուժի հիւանդն, դումսի ջուր տուր այս նշանօքս։ Առ ուլու միս ի թիկանցն եւ ի շլեցն եւ ի կողոյն, մանր կտրատէ եւ ի քարէ պտուկ արկ, եւ աղն պակաս արա եւ մեղմ կրակով եփէ։ Եւ որչափ[1] ի մսէն ջուր ելանէ՝ դու հետէն առ զջուրն, ի զատէ ամանն արկ՝ մինչեւ ցամաքի միսն։ Ապա սակաւ մի անուշահոտ գինի, եւ իւր կիսոյն չափ խնձորի ջուր. զայտոք ի մսին ջուրն խառնէ, եւ մեղմ կրակով սակաւ մի եռացո, եւ ապա տուր կում կում որ խմէ. զի այտ ջուրդ խիստ ուժովցնէ զհիւանդն։ . . .

Կերակուր տուր թրթկիճ եփած եւ տապկած, որ լինի ի հետն նուշ աղնձած։ Եւ առ փերճոկած սոխ եւ աղնձած, եւ հեղ մի եփէ եւ ձգէ զջուրն. եւ ապա արկ ի վերայ մուզ նռան ջուր կամ սերկեւիլի կամ աղտորի ջուր, եւ այլվի եփէ, եւ տուր որ ուտէ։ Եւ այլ տուր փշատի փոխինդ կամ նռան հատի փոխինտ ի հետ պաքսիմատի։ Եւ զայս կերակուրքդ տուր (որ)[2] երբ չլինի հաղ։ Եւ թէ հաղ լինի՝ տուր խմելոյ տաճիկ կուեզ եւ հայկաւ. եւ կերակուր՝ սոխան փոխան՝ հացի փշրուկ տուր աղնձած նշով, եւ սերկեւիլին ջրի փոխան՝ մրտի քամուքսն տուր։ . . .

Երբ տաքութիւնն անցանի, դալար մանր ձուկն խորված ուտէ, եւ ի խաւարտնուն՝ զհոմն եւ զգիճային ի բան պահէ, որպէս հազարն եւ փըրփրեմն, զդալար գինձն եւ զոր նման սոցին։ . . .

Զկերակուր շատ թող չուտէ, մանաւանդ ի յամռան աւուրքն. հով ջուր խմէ քիչ քիչ։ Կերակուր դդմի մուղուճպրայ եւ սպանախ կերցուր, եւ նաճրայ ձուկ խորված. եւ քան զամենայն ինչ օգտէ խաշափարն՝ որ գարեջրով լինի եփած։ Եւ երբ տաքութիւնն պակսի, հաւձագ՝ փերճկոտած գարով ի բան պահէ, եւ բանջրնուն՝ հազար եւ դալար գինձ կերակրի։ Ապա թէ ջերմն զօրաւոր է, կերակուր՝ թերխորով ձուի դեղնուց տուր։ . . .

Զկերակուրն թեթեւ եւ դիւրահալ ուտէ, որ անուշահոտոք եփած լինի, զերդ ուլի միս, հաւուձագ, եւ գառին ողոշար՝ սխտան ջրով։ Եւ ղինի այտոր՝ խնձորի ջուր, եւ քաղցր եւ թթու

սերկեւիլի ջուր՝ ընդ սակաւ մի գինի խառնեալ, եւ գերմակ հաց փշրեալ խառնէ եւ ուտէ։...

Ապա թէ կարիք է որ ուժովցնես զմարմինն, եւ իւր ջերմն չլինի ուժով, ապա փառառոյն տուր եւ հաւու ձագ եւ կաքվու ձագ եւ փաճուճ եւ ուլու ոտներ եւ արտալայնի՝ դդմով եփած, եւ վլխոռն եւ սպանախ եւ թախտ եփած մաշով, եւ գառին ոտներ եփած փերճակած գարուով։...

Ապա թէ ջերմն ուժով լինի, ձուի դեղնուց եւ կովուց կաթն տուր, եւ այծու կաթն՝ ընդ գարեջուր խառնեալ, եւ ճոճոյ ձուկն կերակրի խորովեալ, եւ ուլի ոտներ, եւ բակլայի ջուր նշի կաթ(տա)մ[3] եւ հաւու ձագ՝ փերճկած գարուով։...

Հազար տուր ուտելոյ՝ հում եւ խաշած։ Այլ հաւու ձագ մի տար ուտելոյ, զատել՝ տեսանես որ զօրութիւնն վատուժել լինի։ Ապա հետ[4] երեք շաբաթու տուր հաւու ձագ։ Հետ[4] քառասուն աւուր տարեկան ոչխարի միս։...

Պատրաստեցո ի խոզի մսէ եւ յամենայն իրաց՝ որ թանձր ղորկուտ են եւ յուշահալ, եւ յամենայն իրաց որ հով են եւ գիճային. եւ տուր գինի նօսր եւ սպիտակ, զոր[5] չափաւոր տաքութիւն ունի։ Եւ տուր թռչնոյ միս, եւ ի ձկանցն տուր զոր միան քնքուշ լինի, եւ զայն որ թանձր միս ունի եւ ղորկուտ՝ մի տար. այլ ղաղի ձուկն եւ մանանեխ տալ մարթի, բայց ժամ ժամ։

1 Շատ հին ժամանակներէ սկսեալ՝ կը տեսնուի չափ բառն չափ եղած։ Բայց տարակուսական է՝ որ ձեռագրաց այս ռամկականութիւնն ամէն տեղ բուն հեղինակաց գրութիւնն ըլլայ։ Վասն զի յաճախ իսկ միոյ ձեռագրի չափն՝ այլ ձեռագիր չափ կը դնէ. ինչպէս հետեւեալ օրինակին մէջ կը տեսնենք։

2 Տես էջ 79, ծանօթ. 1։

3 Օրինակին (էջ 55) տպուած է խորտամ, ինչպէս նաեւ սակաւ մի յառաջ (էջ 51) կը կարդացուի «Զայս ամէնս խորտամ ի բանի պահէ»։ Յայտնի է թէ գրաբարի մէջ այս տամ վերջաւորութիւնն, նաեւ ի հնագոյն եւ ընտրելագոյն գրուածս, մանաւանդ դիպուածոց մէջ՝ ներգոյական հոլով կը ձեւացընէ, եւ շատ սովորական է յայժմու արեւելեան բարբառս եւ ի գաւառականս իսկ։ Բայց շատ ցանցառ կը տեսնուի հին ռամկօրէն գրուածոց մէջ։ Մենք պատշաճ համարեցանք այս տեղ փոխել եւ դնել խորտամ. վասն զի խօսքին իմաստն ոչ թէ ներգոյական՝ այլ գործիական կը պահանջէ, ուստի եւ վերի օրինակին մէջ ըսել կ'ուզուի «Բակլայի ջուր՝ նշի խորտմօք», եւ վերոյիշեալ միւս խօսքին մէջ՝ «Զայս ամէնս խորտմօքն ի բանի պահէ». ինչպէս սակաւ մի յետոյ (էջ 56) տպուած է «Զհացն խորտմօքն ուտէ»։ Մեր դրած տամ եւ տամն վերջաւորութիւնն՝ նոյն հոլովին սովորական ձեւերէն մին է առ ռամկագիրս։ Այսպէս ի հնագոյն ռամկօրէն գրութիւնս եւ մանաւանդ ի հին բժշկարանս կը գտնենք. «Երբ ցկնի (շունն) գարէալուր կաթտամ աղէկ է։ Կերակուր տուր ապտամ։ Առ ի յափիոն մէջն եւ բուլթամք արարէ։ Բոյթամք եւ նոյն դեղերովք զշանկիկն ի վեր կալ։ խառնէ հոլիճեռամն։ Լից ի հովանն եւ հոլիճեռամն հար», զոր ուրիշ տեղ բուած էր «Հոլիին կոթովը պինդ զարկ»։

4 Ոչ ցանցառ կը հանդիպի՝ նաեւ բաւական ուղղագիր ձեռագրաց մէջ՝ հետ գրուած փոխանակ գրելու յետ։

5 Ի ռամկօրէն գրութիւնս յաճախեալ է այսպիսի աւելորդ՝ եթէ չըսենք սխալ՝ կիրարկութիւն զ՚ նախդրին, որ շատ սովորական է նաեւ քանի մի գաւառականաց մէջ։

Ը.[1] Գաղիանոս հրամայէ թէ պարտ է պէտ այրնել եւ ջանալ՝ որչափ կարողութիւն լինի՝ որ զհիւանդութիւնն չիյաւելացնես, եւ զհիւանդին ուժն չըլցնես եւ քակես եւ վատուժցնես։ Զի ուժն յերկարօրեայ ժամանակի պէտս ունի, որ ծառայէ զհիւանդութիւնն եւ եփէ։ Իսկ յորժամ սակաւ կերակուր տաս, օգտէ հիւանդութեան շուտեփելոյն. բայց պակաս ուտելոյն չափն աշոկէ հիւանդին ուժոյն եւ զօրութեանն, պակասի եւ այլ աւելի։ Ապա թէ աւելի տաս զկերակուրն, օգտակար է հիւանդին ուժոյն, բայց զնոյն չափս[2] յամեցնէ զհիւանդութեանն զեփիլն։

Ապա պարտ է որ յայտ ի տեղիտ տեսանես՝ թէ յո՛ր չափս է հիւանդութիւնն, եւ ի յո՛ր չափս է ուժն հիւանդին. եւ տեսանես՝ թէ յերկուքն ո՛ր ունի կարիք օգնելոյ, եւ այն որ կարիքն կենայ՝ օգնական լեր։ Եւ պատրաստեցո ի կերակրէ, յորժամ հիւանդին զօրութիւնն ուժով լինի, եւ հիւանդութիւնն հեշտեփեաց. այլ տուր կերակուր՝ յորժամ զօրութիւն հիւանդին վատուժ լինի, եւ հիւանդութիւն լինի՝ որ խիստ դժար եփի։ Եւ զայս կանոնքս զոր ասացաք՝ պահել պարտ է ի յամենայն ցեղ հիւանդութիւն։

Այլ զայս ջերմանս տէրն ի սկիզըն հիւանդութեանն ի բաղանիք չէ պարտ տանել. բայց յորժամ զեփելոյն նշաննին տեսանես, պարտ է որ ի բաղանիս մտանէ։ Եւ յամենայն օր չէ պատեհ կերակուր տալ, զի օր ընդ մէջն բաւական է։ Այլ ի նոպային օրն զըմպելիքն միայն տուր, զերդ զգարեջուրն եւ զշորոտնին, եւ ի մէկայլ օրն՝ որ չունի զնոպայն, տուր զկերակուրն։ Եւ այդ հիւանդիտ հանգիստ կալն եւ խաղաղ՝ խիստ օգտակար է. եւ զկշտերն տաքցնելն օգտէ. եւ այլ՝ միջակ հոսնանին խիստ օգտէ, որ ոչ սուր լինի եւ ոչ կակուղ։

Այլ պատեհ է որ հայիս ի սկիզըն հիւանդութեանն, որ թէ կարիք ունի արիւն հանելոյ, եւ օգնէ ուժն եւ տարին եւ ժամանակն, ապա արիւն հան ըստ կարեացն եւ որպիսութեանն։ Եւ այլ՝ զկերակրոց նոպաքէրն չէ պատեհ հով եւ գիճային առնել, զերդ յիստակ ջերմանն զնոպաքէրն. այլ

պատեհ է որ ի յայս ջերմանս ի դեղերն՝ խառնես զպարկեշացնող եւ զկտրող դեղերն․ այլ ի յայս ջերմանս ի գարեջուրն սակաւ մի պղպեղ ընկենուլ օգտակար է։ . . . Եւ լուծման դեղերն զայն տուր՝ որ կակուղ են եւ անահոկ․ եւ յետ կերակրոյն վերաբերութիւն այրնել շատ օգտակար է․ զի շատք տեսաք՝ որ յամեցին յայդ ջերմն, եւ վերաբերութեամբն ողջացան բնիկ։ (Համեմատութեամբ Յիպոկրատին։)

1 Այս եւ հետեւեալ երկու օրինակք (Թ․ եւ Ժ․) կը պակսին տպագրէն․ զի ջնջուած ենք զանոնք ըստ կարի համաձայնեցընել մեր ձեռագրին, յայն մասունս միայն հետեւելով տպագրին, որք ի ձեռագրին խառնակ ու աղճատ են եւ կամ կը պակասին։

2 Տես էջ 81, Ծանօթ․ 1։ Այս օրինակին մէջ տպագրին շատերն՝ ի գրչագրին չափ են՝ ինչպէս դրած ենք։

Թ․ Գիտացիր որ կան դեղեր՝ որ խօսխոբով օգտեն այս ջերմանս, զոր առաջինք փորձեցին․ եւ այդ չէ զարմանք, զի մեր վարդապետն Գաղիանոս յիշել է, թէ փիննայն՝ երբ ի բազուկն կապեն կամ ի վիզն յուխտաւորին, օգտէ։ Որպէս կանք եւ տեսանեմք զխանդումանդ քարն, որ խօսխոբով զերկաթն կուքաշէ․ Նոյնպէս կան դեղեր՝ որ կարող են խօսխոբով հակառակ կալ խառնուածոցն եւ հիւանդութեան։ Եւ այլ կանք ու տեսանենք ի վայրի կենդանեացն՝ որ առնուն խոտեր եւ դնեն իւրեանց տեղեստանն, եւ երբ թշնամին գայ այն երէին, նա այն խոտն հակառակ գայ խօսխոբով, եւ չտայ մօտ առնել՝ ուր ինքն կենայ։ Եւ զայս փորձեցին առաջինքն, զի խոզին ոսկրն՝ երբ կտաւով ի վիզն կապեն՝ որ այս ջերմն ունի, օգտակար է։ Նոյնպէս եւ քօշին մորուքն՝ երբ ի յայն հիվանդին շլինքն կապէ՝ օգտակար է։ Այլ խօսխոբն առանձինն եւ իւրական գործ գործէ։ Այլ՝ երբ զհիւանդին զհանդերձն հանես եւ տղոցկանի[1] հագցնես, եւ այլուվայր հիւանդին հագցնես՝ առանց լուանալոյ, օգտէ ի յայս ջերմանս։ Այլ՝ զարդն որ զճանճն որսայ՝ կտաւով ի ձախոյ բազուկն կապես, օգտէ։ Այլ՝ թէ զարդային ոստայնն ձիթով խառնես, եւ զհիւանդին զամէն մարմինն օծանես, օգտէ այն ջերմանն՝ որ ի պուլղամին խորովելոյն ընծայի։ (Համեմատութեամբ Յիպոկրատին։)

1 Տղոցկան՝ ըստ ձեռագրին, ըստ տպագրին՝ դղացկան, մեզի անծանօթ բառ է․ Թերեւս նոյնանշան ըլլայ պատեհուոր կամ պատեզուոր բառին, որ է՝ յղի, նոյնանշան այժմու ռամկօրէնին ծոցուոր, երկու հոգւով՝ բացատրութեանց։

Ժ. Տես աղէկ եթէ չկայ պատճառ՝ որ արգիլէ զքեզ, առ սեւ վրացի կոճ, եւ ի բաղկն դիր զերդ իւր տամն է. ապա զբաղկն տուր որ ուտէ. եւ վերաբերութիւն առնէ։ Ապա այն հիւանդն՝ որ վերաբերութիւն չկարէ առնել, լուծման դեղ տուր, որ ուժովն լինի. եւ այլ՝ հետ այսոր զաւազ Բիբիտոյն տուր՝ զի շատ օգտէ մանաւանդ ի ձմեռան աւուրքն։ Եւ այլ՝ քան զամենայն դեղերն զոր գրել են, եւ մեք փորձել ենք եւ սովոր ենք տալոյ, այն դեղն է որ անգծոփ ունի. այս դեղս օգտակար է, եւ ինք յոխրոխոգբէն է գրած։

Իսկ այն մարդիկն՝ որ հիւանդութեան սկիզբն զայդ դեղերդ ի բան տանին եւ տան յառաջ քան զայն՝ որ հիւանդութիւնն կատարի, զհիւանդութիւնն կրկնեն եւ երկու առնեն, եւ շատացնեն զջերմն. եւ իւր նշանն այն է՝ որ երկու օր նոպոյն հիտրաց[1] գան, եւ մէկայլ օրն չգան։ Եւ ես տեսայ մարդ մին ի բժշկաց, որ ետ իւր հիւանդին Բիբիտոյ յառաջ քան զայն՝ որ հիւանդութիւնն կատարէր. եւ ունէր մարդն այն երկու ջերմն՝ նա յաւելացան ջերմերն եւ յիրար կցեցան, եւ եղան մի ջերմ մի յար[2] եւ սպանին զհիւանդն։ ([illegible]։)

1 Տպագրին հետրաց բառը պահեցինք, թէեւ գրչագրին մէջ հետիրաց է. վասն զի առաջինն երբեմն կը տեսնուի նաեւ ի ձեռագիրս, միանգամայն այժմեան քանի մի գաւառական բարբառոց եւս ծանօթ է եւ ի յաճախ կիրառութեան։ Ուղղագոյն եւ սովորական ձեւն է հետեւոց, իբրեւ ըսել՝ հետ իրերաց։ Կը գործածուի առաւելապէս՝ զհետ իրերաց, իրարու ետեւէ, հետզհետէ, անընդհատ՝ նշանակութեամբ. այսպէս է վերին օրինակին մէջ, այսպէս նաեւ "Խմէ ի վաղուեննէ երեք օր հետիրաց„ եւ "Եթէ ուժով լինի ցաւն՝ քառասուն օր հետիրաց տուր„ խօսքերուն մէջ. սակայն կայ ի կիր արկեալ նաեւ ընդ իրեարս, իրարու հետ՝ նշանակութեամբ, զ. օ. "Խառնէ հետիրաց զդեղերանքդ զամենդ„. բայց այս երկրորդ միտք հասարակօրէն կ'ըսուի՝ ընդ իրար, յիրար։

2 Այսպէս ի տպագրին. թերեւս՝ մեայար։ Իսկ ի ձեռագրին՝ մի ջերմեն, որ հաւանագոյնս պիտի ըլլայ՝ մի ջերմ մեն, այսինքն՝ մի ջերմ միայն։

Ի մէջ բերեալ օրինակներէս դիւրին է դատաստան ընել Ջերմանց Մխիթարութեան վրայ՝ ի մասին ոճոյն կամ լեզուին։ Չի կրնար արդարեւ զրուցուիլ թէ ինչպէս ժամանակի նախաւորութիւնն՝ նոյնպէս նաեւ ոճոյ նախապատուութիւնն ունենայ, ռամկական բարբառոյն ընտրելագոյն օրինակն ըլլայ, կամ թէ նոյն բարբառոյն համօրէն վայելչութիւնքն յինքեան բովանդակէ. վասն զի

եւ ոչ իսկ գրութեան նիւթն յարմար է գեղեցիկ ասացուած եւ զարդարուն ու ծաղկալից ոճ ի կիր արկանելու։ Սակայն չէ հնար ուրանալ թէ ըստ բաւականին կոկ ու կարգաւորեալ է բովանդակն. ռամկականութիւնն չափազանց չէ, բառերու հին ձեւերն մեծաւ մասամբ անփոփոխ պահուած են, գրաբար բացատրութիւնք, ասացուածք եւ ձեւակերպութիւնք՝ առատ։ Ի վեր քան զամենայն այս առաւելութիւնն ունի, որ բոլոր ասացուածքն պարզ են ու բացայայտ, հեշտալուր ու դիւրիմաց, որով ամենայն ոք՝ մինչեւ բժշկականութեան բոլորովին անտեղեակն անգամ՝ դիւրաւ եւ անաշխատ կ'իմանայ։ Վերջապէս քերականօրէն եւս նկատելով, ռամկախօս գրուածոց մէջ ամենէն աւելի կանոնաւոր ասութեան կերպ ունեցողներէն է, դուն ուրեք մուտ տալով անկապ եւ անքերական նախադասութեանց, մանաւանդ այն աղճատ եւ խառնակ դարձուածոց, որ ոչ ցանցառ կը հանդիպին առ բազումս ի ռամկագրաց։ Եւ հաւանական է թէ այն սակաւաւոր թերութիւնք եւս՝ որ յայսմ մասին կը դիտուին, ինչպէս նաեւ ստորնագոյն ռամկականութիւնք՝ որ ուրեք ուրեք կը տեսնուին ի գրութեանս, առաւելապէս ընդօրինակողաց անհմտութեան կամ ինքնակամ փոփոխութեանց պտուղն են[1]։

Ոչ ինչ նուազ գովութեան արժանի դարձեալ այնու է՝ զի շատ ռամկօրէն գրուածներէ աւելի միօրինակութիւն ունի, սակաւ բացառութեամբք՝ ծայրէ ի ծայր միեւնոյն ռամկօրէն բարբառն հաստատուն պահելով։ Այնպէս որ Մխիթարայ այս գրութիւնն կարդացողը կարող է համարիլ թէ

---

[1] Թէ շատ գրութիւնք ընդօրինակողաց ձեռօք փոխուած եւ այլայլած են, ամենածանօթ բան է։ Ապահով ենք որ եթէ հնագոյն եւ ընտրելագոյն ձեռագիրք յերեւան ելլեն Մխիթարայ, ի վեր անդր ակնարկուած թերութեանց գէթ մեծագոյն մասն չենք գտներ անոնց մէջ։ — Ի յաջորդ Հատածին առիթ կ'ունենանք այս նիւթոյն վրայ ընդարձակօրէն խօսելու եւ ըսուածն օրինակօք հաստատելու։

առաջի աչաց ունեցածն՝ հեղինակին ժամանակուան ու գաւառին ժողովրդեան լեզուն է, ենթադրելով միշտ զզանազանութիւնն որ ի հարկէ գտնուելու է ի մէջ գրաւոր եւ բերանացի, ուսումնական եւ ընտանեկան խօսից։ Միով բանիւ արժանի է Հերացի Բժշկապետս ի մէջ նշանաւոր ռամկագիր հեղինակաց դասուելու, եւ իւր գրութիւնն՝ ռամկական գրականութեան գլխաւոր աշխատասիրութեանց մին համարուելու է, որ ընտիր օրինակ կը մատակարարէ նոյնպիսի գրուածոյ։

Գրոյս լուսաւոր կողմանքն դիտելէն ետեւ, ստիպեալ ենք յիշատակել նաեւ միակ նսեմական կողմն, որ է՝ խառնուրդ օտար՝ մանաւանդ արաբական բառից, որ ընդ բովանդակ գրութիւնն սփռեալ են, եւ բաւական տգեղ գոյն կու տան գործոյն։ Թող զայն ճիշդ բժշկական եւ ընդհանրապէս ուսումնական բացատրութիւնքն, որոց համազօր հայ բառեր գտնելն այնչափ դիւրին չէր թերեւս, — չեն պակսիր նաեւ սովորական ու հասարակ բացատրութիւնք օտար լեզուաւ, որոց փոխանակ՝ բնիկ ազգային բառեր ի գործ ածել դժուարին չէր, այնպիսի բառեր՝ կ'ըսենք, որ անշուշտ նոյն ժամանակին ընթերցողաց իսկ աւելի հեշտալուր եւ դիւրիմաց էին քան զկիրարկեալ օտար բացատրութիւնքն։ — Այս յաճախութիւն օտար բառից յայնպիսի հին գրութեան՝ այնու աւելի աւաղելի է, որ եթէ չենք վրիպիր՝ առանց ազդեցութեան մնացած չէ հետեւեալ դարուց հեղինակաց վրայ, որք գլխաւորաբար ի բժշկականս առաւել քան զառաւել զեղծած են այս նկատմամբ։

Առ այժմ այսչափ սոյն նիւթոյն վրայ, որ ի յաջորդս զմեզ ընդարձակագոյնս պիտի զբաղեցընէ։

— Թերեւս զարմանան ընթերցողք մեր խորհրդածութեան այս վերջին մասին վրայ, չտեսնելով յառաջ բերեալ օրինակաց մէջ այնչափ օտար բառից յաճախութիւն։ Պատճառն այն է՝ որ ջանացինք այն-

պիսի հատուածներ ի մէջ բերել, որ ազատ են նոյն կեղտէն։ Բայց որպէս զի ամէն մարդ ինքնին տեսնէ ասացելոցս ստուգութիւնն, բաւական է հետեւեալ կտորն։

«Մոփդոուխ օխվրոյէ։ Ա՛ռ +ոպոուլէ հուլէլոյ եւ սեւ հուլէլոյ ի կորզէն հանած եւ ձարձատ արարած՝ տասն տասն դրամ. պուլէլոմ եւ ամլոմ օէնէմոտէ եւ մորօոխի տակ՝ հինգ հինգ դրամ. գամոյնաչիր քան հատ. չէկ չամիչ ի հատճէն հանած քան դրամ. ղոֆէրի, հուռոմ օշինդր եւ եզնալեզու եւ պոտրոնպօյէէ տերեւ եւ պոսոպոյէճ չորս չորս դրամ. ոտփոխօտօս երեք դրամ։ Զամէնս եփէ չորս լիտր ջրով, մինչեւ մնայ կէս լիտր. ապա ա՛ռ ոֆոէմոն եօթն դրամ, եւ ի ներս ի մոպոուխն ընկէ, խառնէ եւ ի կրակէն ի վայր կալ, եւ պահ մին համբեր տուր. ապա աճռէ զամէնն եւ պարզէ. եւ ա՛ռ ի յայտ ջրէտ հարիւր դրամ, եւ դիր ի վերայ միխոլ մի աղցած եւ մաղած սոպո սոսխոպրէ, եւ կէս միխոլ նաւթի աղ, եւ երկու թէնչ սեւ վրացի կոճ. եւ հետ նոպոյին ի մէկայլ օրն տուր որ խմէն եղկ. զերդ այլ լուծման դեղէ սոսմ է։ Իւ երբ զամէնտ արարեալ լինի, տուր ղոֆրէ չօպրս եւ միխոլ մի ընդ երկու նուկի օրէնմոլէն ջրախառն. եւ երբ հիւանդութիւնն եփած լինի, պատեհ է զայս դեղերս ի բան տանել։

Աֆոոֆ օխվրոյէ։ Ա՛ռ սեւ հուլէլոյ եւ +ոպոուլէ հուլէլոյ ի կորզէն հանած՝ եօթն եօթն դրամ. պոսոպոյէճ եւ ոֆոէմոն՝ երեք երեք դրամ. զամէնս աղա եւ մաղէ, եւ ա՛ռ ի դեղէտ երեք դրամ,՝ եւ ֆէնէտ շաքար երեք դրամ, յիրար խառնէ, եւ տուր որ առնու. եւ ի վերայ տաք ջուր խմէ. ի նոպոյին օրն մի տար, այլ ի մէկայլ օրն տուր. օգտէ եթէ Աստուած կամի։ Ապա թէ յերկար քաշէ այս ջերմս, եւ ձմեռն ի վերայ հասանի, եւ եփելոյ նշանն երեւնայ, ապա պատեհ է ի բան տանիս մէկ մի ի տաք մոճոոննոյն, զերդ ոնգձոփի մոճոոնն, կամ ոնգձոփի հոպն, յամէն երեք երեք օր տուր կէս դրամ. օգտէ թէ Աստուած կամի»։

Չենք խօսիր այն օտար բառից վրայ՝ որ յայտնապէս ի յետնագոյն ժամանակս մուծուած են. զ. օ. Այս ցաւուս Նէղով ճար արա։ Ջանք արա ամէն հէոնորով։ — Թող՝ զղորբոոպ, զխէոր, զդոպոլէր, զ+ոհրէպո... զհոոոն եւ զհովլոնի կոթ եւ զայլ նոյնպիսիս՝ որ նաեւ շատ հին ռամկագրաց սովորական են։

* * *

Ջերմանց մխիթարութիւնն Հերացի Բժշկապետին միակ գրութիւնն է՝ եթէ ունի այլ եւս նոյնօրինակ աշխատութիւնք։ — Ինք իւր Յառաջաբանին մէջ այն-

պէտի կերպիւ կը խօսի, որ կրնայ իմացուիլ թէ մինչեւ ցայսօր զմեզ զբաղեցընող գիրքն իւր բժշկական գրուածոց երախայրիքն է. եւ ոչ ինչ ակնարկութիւն կ'ընէ յորմէ մակաբերուի անկէ զատ գրութեան ձեռնամուխ ըլլալու գիտաւորութիւնն: Ժամանակակից եւ յետնագոյն մատենագրաց մէջ եւս, որչափ մեզի ծանօթ է[1], յայսմ մասին ուղղակի վկայութիւն չի գտնուիր, ոչ ի կողմն եւ ոչ յընդդէմն. որչափ գիտենք՝ ոչ ոք կ'ըսէ թէ Մխիթար այս ինչ գիրքն յօրինած է, ոչ ոք ալ ընդ հակառակն՝ թէ Ջերմանց մխիթարութենէն զատ գիրք չունի: Սակայն եւ այնպէս վերոյիշեալ մատենագրաց անուղղակի վկայութեանց վրայ հիմնեալ՝ կարող ենք հաստատել որ ոչ միայն հաւանական, այլ նաեւ ստոյգ է թէ նոյն գրոց հրատարակմանէն ետեւ՝ այլեւայլ գրուածներ աշխատասիրած է: Այս կ'իմանայինք ի սկզբան Հատածիս (էջ 69) ըսելով թէ "Յաջորդ դարուց հեղինակաց խօսքերէն կը մակաբերուի իւր այս (Ջերմանց մխիթարութիւն) գրութեան հրատարակմանէն ետեւ բաւական ժամանակ ապրած ըլլալն„, որով կարողացած է այլ եւս գրաւոր աշխատութիւններ ի լոյս ածել:

Թէ այս յետնագոյն գրուածք՝ բժշկականութեան վերաբերեալ նիւթոց վրայ էին՝ զայդ յիշատակելն անգամ աւելորդ է. բայց թէ ինչպիսի՛ էին, — զանազան ախտից եւ հիւանդութեանց վրայ յատուկ պիտաւութիւնք, եթէ լիակատար բժշկականութիւն, կամ թէ երկուքին եւս, — յայսմ ի մթան կը թողուն զմեզ յաջորդ դարուց հեղինակք, որոց խօսքերէն միայն կ'իմանանք թէ Մխիթար բժշկական գրութիւններ ունի զատ ի Ջերմանց մխիթարութենէ. թէեւ հաւանական կը համարուի որ նաեւ լիակատար բժշկականութիւն գրած ըլլայ: Ջիարդ եւ իցէ, վերոյիշեալ հեղինակք, ինչպէս զրուցեցինք, գրոց անուն կամ վերնագիր չեն յիշատակեր. ինչ որ Մխիթարայ՝ մեզի անծանօթ գրաւոր գործունէութեան վրայ կը գրեն՝ անորոշ բանք են: Յիշատակութիւն եւ ակնարկութիւն կ'ընեն այս ինչ կամ այն խօթութեանց վրայ իւր ունեցած կարծեաց եւ անոնց սահմանած դարմանոց, իւր գրութիւններէն վկայութիւն կը բերեն, բժշկութեան վերաբերեալ նիւթոց մէջ իւր հեղինակութեան կը դիմեն, զինքն իբր թէ ընթերցողին հետ ի հաղորդակցութիւն կը մուծանեն՝ իւր խօսքերն ի մէջ բերելով, զընթերցողն ի նորա գիրս կ'առաքեն՝ բայց առանց ծանուցանելու թէ յոր գիրս:

---

[1] Տես նաեւ Շնորհալի եւ պարագայ իւր: Վենետ. 1873, էջ 260, 261:

Ստուգիւ շնորհակալութեան արժանի են այս մատենագիրք, որ Մխիթարայ վրայ այն անորոշ եւ վարկպարազի տեղեկութիւններն իսկ կու տան, միանգամայն իւր գրուածոց հատակտորներն առ մեզ կը հասուցանեն։ Սակայն մեծագոյն եւս շնորհակալութեան պարտաւոր կը կացուցանէին զմեզ, եթէ այնպիսի եղանակաւ գրէին՝ որ լուսաւորագոյն ծանօթութիւն ստանայինք նորա գրուածոց վրայ, եթէ գոնեայ կարենայինք իմանալ թէ իւր անուամբ յառաջ բերուած խօսքին որչափ մասն իւրն է. ուր կը դադրի ինք եւ իրենք կը շարունակեն. դէթ ապահովութիւն ունենայինք թէ անոր խօսքերն՛ հաւատարմութեամբ եւ անփոփոխ մեզի կը հաղորդեն՝ առանց այլայլելու եւ յաւելուածներ մուծանելու։

Արդարեւ յատկապէս հայ բժշկականութեան վրայ գրողը՝ կարող է մեծապէս օգտիլ վերոյիշեալ տեղեկութիւններէն, իմանալով թէ ինչպիսի նիւթեր շօշափեր է մեր երիցագոյն բժիշկ-մատենագիրն իւր գրութեանց մէջ, ինչ կարծիք ունեցեր է այս ինչ կամ այն ախտին ու հիւանդութեան վրայ, ինչ դեղ ու դարման առաջարկեր է միոյն կամ միւսոյն համար։ Բայց ոչինչ կամ սակաւ շահ կ'ունենայ բանասէրն լեզուաքննին՝ որոյ գործն է հետազօտել այլեւայլ ժամանակի բառերն ու ասացուածներն, երբ իւրաքանչիւր քայլին հարկ է որ տարակուսի թէ այս ինչ բառը՝ գործածուածն ու ասացուածը բուն Մխիթարայ են՝ եթէ անոր խօսքն յառաջ բերողին։

Միակ օրինակ բաւական կը համարինք ի հաստատութիւն ասացելոցս։ Ասար Սեբաստացի իւր բժշկարանին ՀՁ. Հատածին սկիզբներն զՄխիթար խօսել կու տայ եւ նորա անուամբ կը փակէ նոյն երկայն Հատածն՝ այսպէս։

«Վասն այն ցավոյն՝ որ Ջերեսօքն լինի մարդն,
«եւ իր նշանն այն է որ քիթն կալվի, հոտ չառնէ,
«եւ բժշկնիրն այսոր ղուֆուամ կոչեն, որ է Նուպլոյ, որ
«իջանէ ի գլխոյն եւ գայ ընդ քիթն, եւ պատճառն այն
«է՝ որ մարդն քրտնի եւ քրտնած ցուրտ առնու։ Ցայն-
«ժամ քիթն կծի եւ քորի եւ փնչա վատ. եւ ընդ
«քիթն ջուր գայ։ Երբ այս նշանքս լինի՝ այսոր Ջերե-
«սօքն կոչեն։ Այլ ես Մխիթարս յիշեմ կարծառօտ՝
«եթէ ուստից լինի Երեսօքն եւ կամ Նուպլուն։ Ցորժամ
«լնու ի գլուխն գիջութեամբ եւ յուղարկէ ի խնծորս
«ն ի զանկիկն[1], նա զփողքն խշրէ, եւ այն Նուպլոյ կոչի.

[1] Այսպէս է ի ձեռագրին։ Կ'երեւայ որ պէտք է ընթեռնուլ "ի խնձորսն, այս ինքն՝ ի զանգիկն„։ Ինքն Ասար

«պա թէ ի քիթն ուղարկէ՝ այն Ջերեաօքն կոչի։ Եւ
«այն որ ի տաք պատճառանաց լինի եւ այն որ իջանէ
«լինի եւ տաք[1]. պարտ է օծանել վարդի ձիթով եւ որ
«նման է այդմ։ Ապա թէ ի հով պատճառանաց լինի,
«այն որ իջանէ՝ հաստ լինի եւ հով. պարտ է տաք ծխել
«սամթի ձիթով եւ որ նման է. օգտէ։ Առ կորեկ եւ
«թեփ խառն, եւ տաքցու քաշ ի շաքրեռացն եւ լից ի
«կտաւ ֆետոյ եւ ի գլուխն պլորէ, որ տաքցնէ. եւ արա
«փոխ առ փոխ՝ որ աղէկ քրտնի. որ կտրէ զիջուածքն
«որ ի գլուխն իջնէ. շատ գէշ պատճառնի այնէ։ Եւ
«երբ ի կուրծան իջնէ, նշան այն է՝ որ ձայնն կտրի։ Եւ
«որչափ ճար կայ՝ ջանայ որ ի կուրծքն չիջնու։ Եւ առ
«սոնիճ, աղնձէ եւ ի վուշ կտաւ ծրարէ, եւ ճիճն ի ներք
«հոտոտայ, եւ շատ օգտէ իւր, եւ ի մսոյ եւ ի գինոյ
«պատրաստ կալ...»։

Այսպէս յառաջ կը տանի խօսքն նոյնչափ մ'ալ,
եւ կը հանի Հատածին կէսն։ Յետոյ առանց նոր Հա-
տած սկսելու եւ զատ վերնագիր յաւելլու, հազիւ բա-
ժանման երկրորդական նշան դնելով, կը շարունակէ
տարբեր նիւթոյ վրայ. «Յորժամ, կ'ըսէ, խիստ եւ շատ
«հիւնդութիւնք լինի, պատճառն այն է՝ որ օդն եղծած
«լինի եւ բորբսած, եւ հետ շնչոյն մտանէ եւ փոխէ
«զառողջընութիւնն...»։ Բոլոր Հատածը կը վերջաւորէ
այսպէս. «Եւ զայլ ստածումն գտանես ի դիրս Մխիթա-
«րայ բժշկին»։

Արդ ո՞վ կարող է ճշդիւ սահմանել թէ այս ընդ-
արձակ Հատածին որչափն Հերացւոյն է։ Հարեւանցի
հայեցմամբ կրնայ մարդ այնպէս կարծել թէ բովանդակն
իւրն ըլլայ. բայց կարծենք թէ ուշադրութեամբ կար-
դացողն՝ իրաւունք կ'ունենայ կասկածելու նոյն իսկ յա-
ռաջ բերուած փոքր մասին՝ անփոփոխ ի գրոց նորա
առեալ ըլլալուն վրայ։ Նոյն մասին մէջ կը գտնենք՝ ի
մէջ այլոց՝ ֆետոյ, պլորել (բոլորել), ճիճն (ստէպ), որ յե-
տոյ մի անգամ ալ կը կրկնուի. կաննաեւ՝ ի խէչն (մօտ,
քովը) եւ այլ նման բառեր, յորոց ոմանք թէպէտ բաւա-
կան հին ռամկախօսից սովորական բացատրութիւնք են,
բայց օտար ի Հերացւոյն։ Հատածին երկրորդ կիսոյն
մէջ կը գտնենք Գաղիանոսի անունն՝ Ճալինոս եղած,

---

տեղ մի կը գրէ. «Ջանկիկ, որ է խնծորքն, եւ այլք ձանձ-
ողէք ասեն»։

[1] Այս պարբերութեան՝ թէպէտ միտքն յայտնի, բայց
առ փոքր մի խառնակ է սասցուածն։ Պէտք է կարդալ կամ
իմանալ այսպէս. «Եւ թէ ի տաք պատճառանաց լինի, եւ
այն որ իջանէ՝ լինի տաք»։

որ ոչ երբեք կը տեսնուի ի Ջերմանց մխիթարութեան։ Դարձեալ կայ ի վերջ կոյս Հատածին վկայութիւն մի նոյն յոյն բժշկապետէն՝ գրեթէ զուտ գրաբար լեզուաւ՝ այսպէս. «Ասէ իմաստունն Գաղիանոս, թէ յորժամ «ջերմութիւն պատահէ ումեք, պարտ է նմա ղօփրօօփել «ի կերակրոց, զի ջերմութիւն պակասեսցի, զի (է)[1] սա- «կաւ հիւանդութենէ եւ ի ղղօփրօօփելոյ՝ ծանր հիւ- «անդութիւնք գիպի մարդոյ։ Եւ դարմանեցին այսպէս. «կերակուր (տ՛)[1] շատ կերիցեն՝ զի մի ծանրասցին, եւ մի «սակաւ՝ զի մի սովեսցին։ Այլ հայեսցի բժիշկն ի հիւ- «անդութիւնն եւ ի ժամանակն, յօդն եւ յեզանակն. «եւ ոյնէ— տեսցէ թէ որ օգտակար է մարդկան եւ կամ «որ վնասակար, եւ ի գործ դնի ըստ արժանեացն»։ Այսմ նման օրինակ ոչ ուրեք կը պատահի ի Ջերմանց մխի- թարութեան, ուր բազմաթիւ վկայութիւնք ի Գաղիա- նոսէ միշտ բոլոր գրքին սովորական ռամկօրէն բարբա- ռովն են։ — Վերջապէս վկայութեանս կից՝ կայ դէպքի մի յիշատակութիւն, զոր դժուարաւ կարող ենք տալ Մխիթարայ։ «Ըսաց Տէր Բարդողիմէոսն ի Հոռոմ քա- «ղաքն՝ եթէ գիժար հիւանդ էի եւ ջերմոտ, գինով «լոկցուցին (լողացուցին) եւ հօփմոյ ապուր կերցուցին. «պառկեցայ, քրտնեցայ, եւ լաւցայ ողորմութեամբն Ա- «ստուածոյ»։ (Ձեռագ. մատենադարանիս, Թ. 72, Բ. էջ 131—134։)

Առ այժմ այսչափ։ Ի յաջորդս՝ երբ բժշկարա- նաց վրայ խօսինք, առիթ կ'ունենանք սոյն նիւթոյն վերադառնալու։ — Նոյնպէս առիթ կ'ունենանք Մխի- թարայ՝ մեզի ծանօթ գրութեան հետ նորէն զբաղելու. որովհետեւ ասոնց մէջ պիտի հանդիպինք զանազան Հատածոց, որ յայտնապէս նոյն գրութենէն առնուած են, է զի քաղուածոյ եւ է զի բառ առ բառ, ոչ ըստ իմաստին միայն՝ այլ նաեւ ըստ լեզուին եւ ոճոյն։

---

Յանուն Հերացւոյն ցմեզ հասած է համառօտ գրութիւն մի եւս Ականց պատուականաց վրայ, զոր յե- տոյ կը տեսնենք ի կարգի նոյնօրինակ գրուածոց։

---

[1] Տես էջ 79, Ծանօթ. 1։

# 13.

## Գ. ՊՈՆԻՈՍ ԱՆԱՏՈԼԻՈՍ ՊԵՐԻԹԱՑԻ

### Գիրք Վաստակոց կամ Երկրագործութեան[1]։

Բուսական մատենագրութեան այս գլխաւորագոյն մատեանն, որոյ ընդարձակութիւն գրեթէ կրկինն է նախընթացին՝ ըստ պարունակութեան, եւ կարեւորագոյն եւս քան զայն՝ բանասիրական կամ լեզուագիտական հայեցմամբ, պիտի գտնուի անտարակոյս գրչագրաց զանազան հաւաքածոյից մէջ. բայց մեզի ծանօթ են միայն երկու օրինակք մատենադարանի Ս. Ղազարու եւ մի օրինակ մեր մատենադարանին (Թ. 26)։ Եւ թէպէտ երեքն ալ նոր ժամանակաց գրչութիւն են՝ նորագիր, բայց երրորդն՝ գաղափարեալ ի Կոստանդնուպոլիս յամի 1787, շատ մաքուր եւ գրեթէ զերծ ի սխալանաց՝ ընտիր օրինակ է։ Այս վերջնոյս հետեւողութեամբ եղած է միակ տպագրութիւնն ի Վենետիկ (1877), եւ հրատարակութեան վերակացուն (Հ. Ղեւոնդ Վ. Ալիշան) թէ՛ ի Յառաջաբանին եւ թէ՛ յետոյ առանձին թղթով կը վկայէ թէ այս մեր օրինակս ընտրելագոյն է քան զայլսն։ — Գաղափարողն եղած է Գէորգ Վարժապետ Պալատեցի, որ դժբախտաբար տեղեկութիւն չի տար սկզբնագրին վրայ՝ յորմէ օրինակած է, եւ ոչ ալ գիտէ թէ ուր է այժմ, եթէ ճարակ եղած չէ հրդեհի։ Նոյն ընդօրինակողն ի վերջ գրոցն յաւելուցած է խրթին կամ անսովոր բառերու բառարան մի, զոր լրացընելով եւ ուղղելով՝ յարած է նաեւ ի վերջ տպագրութեան քաջահմուտ հրատարակիչն։

Թէ առաջիկայ գիրքս յոյն հեղինակի գործ է՝ զայն յայտնապէս կը ցուցընէ ձեռագրին համառօտ յիշատակարանն, որ տպագրին սկիզբը դրուած է, եւ է այս. «Այս գիրք Պոնիոսի Անադալիոսի՝ որ ի «քաղաքէն Պէրութայ, զոր շինեաց յաղագս տնկոց «եւ վաստակոց մարդկան, եւ անուանեաց զսա «Վաստակոց գիրք։ Եւ համառօտեաց ի Փլորնդիոսէ «եւ ի Լաոնդիոսէ եւ ի Դարընդիոսէ եւ յայլոց «բազմաց, յոյժ պիտանի, եւ ի յընտրելոյն Նիկո«լիոսէ։ Եւ բաժանեաց զսա ի չորեքտասան գլուխս»։ (Ձեռգ. էջ 189։) — Այնչափ ինչ միայն հնար է ապահովութեամբ հաստատել այս խօսքէն՝ թէ ունինք առաջի մեր թարգմանութիւն մի, որոյ սկըզ-

---

[1] Ինչպէս յետոյ ըսուածներէն պիտի իմացուի, առաջիկայ գրութեանս ժամանակն անյայտ՝ ուստի եւ այնպիսիներէն ըլլալով, որոց համար զրուցած ենք յառաջագոյն (էջ 52) թէ ըստ ոճոյն եւ ըստ նիւթոյն՝ մէջ ընդ մէջ կը զետեղենք, գլխաւորաբար լեզուին ու ոճոյն նայելով՝ պատշաճ համարեցանք այս տեղս դնել։

բնագիրն յունարէն է։ Իսկ թէ թարգմանութիւնն եղած չէ ուղղակի նոյն սկզբնագրէն՝ այլ արաբական հին թարգմանութեան վրայէն, այն եւս ստոյգ կ'երեւայ հայ գրութեան լեզուէն եւ յայլոց պարագայից։ Միով համոզուելու համար՝ բաւական է միտ դնել որ գրոցս իւրաքանչիւր հատածին վրայ՝ փոխանակ սովորական Գլուխ բառին՝ գրուած է Դուռն, որ զուտ արաբական է կամ արաբերէն Պապ բառին նիւթական թարգմանութիւն, ինչպէս կը գտնենք յարաբերէնէ թարգմանեալ գրոց գրեթէ ամենուն մէջ։

Մեր գործոյն նպատակէն դուրս է հետազօտութիւն ընել գրոցս սկզբնական կազմութեան, ինչպէս նաեւ հեղինակին հայրենեաց եւ ժամանակին, արաբական թարգմանութեան եւ նմանեաց վրայ. այս ամենայն խնդրոց եւ այլոց նմանեաց նկատմամբ հնախուզից հետաքրքրութիւնն հաճելու բաւական է Վենետիկի տպագրութեան ընդարձակ Յառաջաբանն։ — Գրութեանս յատուկ նպատակին նայելով, մեզի ամենէն աւելի կարեւորն է՝ հայ թարգմանութեան ժամանակն իմանալ։ Բայց դժբախտաբար ոչ ուրեք կը գտնենք տեղեկութիւն եւ ոչ իսկ թեթեւ ակնարկութիւն թարգմանչին անձին կամ ժամանակին վրայ։ Այնչափ ինչ միայն կրնանք մակաբերել գրոց քանի մի խօսքէն՝ թէ թարգմանութիւնն եղած է ի Կիլիկիա եւ Ռուբինեանց իշխանութեան ժամանակն։ Իսկ նոյն ժամանակն աւելի եւս ճշդելու եւ գէթ մերձաւորապէս որոշելու՝ ոչ այլ ինչ հնարք կը մնայ, բայց եթէ միտ դնել ոճոյ եւ ներքին ընդհանուր հանգամանաց գրութեան։

Արդ ուշադիր քննութեան ենթարկելով զգրուածն եւ բաղդատելով ամենէն հին ռամկօրէն գրութեանց հետ, հաւանական կարծեօք կարող ենք հաստատել թէ հին՝ շատ հին ժամանակի գործ է, թերեւս քան զամենայն ռամկախօսս հնա-

գոյն։ Այսպէս՝ թէպէտ Շնորհալւոյն եւ առաւել եւս Հերացւոյն ռամկական գրուածոց ժամանակն որոշակի գիտցուելով, չէինք կրնար կանխագոյն քան զնոսա դասաւորել զՎաստակոց գիրքն եւ տալ այնմ զնախաւորութիւն ժամանակի, բայց իրաւամբք տալու ենք զնախապատուութիւն լեզուի եւ ոճոյ գոնեայ ի մասին Մխիթարայ։ Արդ որովհետեւ կը տեսնենք թէ ռամկօրէն գրութիւնք այնչափ աւելի իրենց գեղն ու վայելչութիւնը կը կորուսանեն կամ գէթ ստորնագոյն եւ խառնակ կերպարանք կ'առնուն՝ որչափ աւելի յետնագոյն են ժամանակաւ, ի հարկէ հետեւցընելու ենք թէ մեծ հնութիւն ունի գրութիւնս։

Եւ արդարեւ ի՞նչպէս կարելի է այս հնութիւնն զլանալ այնպիսի գործոյ՝ որ սկզբէն մինչեւ վերջը լի եւ զեղեալ է բովանդակ վայելչութեամբ, համօրէն զարդուք եւ ընտրելագոյն ասացուածովք ռամկական բարբառոյ. — միանգամայն՝ ընդհանրապէս խօսելով՝ հեռի եւ ազատ է այն չափազանց ստորին ձեւերէն եւ կազմակերպութիւններէն, այն բազմատեսակ սղմունքներէն եւ զեղչմունքներէն՝ որ նոյն իսկ ԺԳ. եւ ԺԴ. դարուց գրութեանց սովորական են։ Ո՞ւր թողունք գրաւոր՝ նա թէ դասական բառից եւ ձեւոց յաճախ կիրարկութիւնն, հին բառից անփոփոխ եւ անայլայլ պահպանութիւնը, գրաբար ընտիր ասացուածոց եւ դարձուածոց յաճախութիւնն, ուր ինքնատեղծ բարդերուն եւ ածանցներուն անգամ ճաշակալից յստակութիւնն, ընդ բովանդակ գրութիւնն՝ ռամկօրէնին հետ գրաբար տարերաց եւ ձեւոց ընդելուզումն։ Ո՞չ ապաքէն այն եւս մեծ հնութեան նշան է՝ որ ոչ միայն գրաբար մասունք առանձին առեալ՝ այլ նաեւ ռամկօրէնին մէջ խառնեալքն մեծագոյն մասամբ այնպէս ընտիր են, մինչեւ կարող ենք հաստատել՝ թէ քան զայլ ամենայն ռամկախառն գրուածոց գրաբար մասունքն ընտիր եւ կարգաւո-

*բեալ ըլլալէն զատ, ԺԲ. դարէն ետեւ յերեւան ելլող գրաբար գրոց շատերուն լեզուէն նախամեծար համարելի են*[1]։

*Գրութեանս լեզուին ճաշակն՝ ըստ սովորութեանս՝ օրինակօք տալէն յառաջ, հարկ կը համարինք փոքր դիտողութիւն մ'ընել։ — Յառաջ (էջ 21) նշանակած ենք թէ Անմիօրինակութիւն՝ ռամկօրէն գրուածոյ նկարագիրներէն մին է, այնպէս զի ոչ միայն զանազանից ասութիւնք իրարու աննման են, այլ նաեւ շատ անգամ միեւնոյն անձին ու գրութեան այլեւայլ մասունք տարբեր տարբեր գունով ու կերպարանօք կ'ելլեն մեր առջեւ։ Սոյն անմիօրինակութեան գլխաւոր օրինակներէն է Վաստակոց գիրքս՝ մանաւանդ ի մասին զուգընթացութեան կամ խառնութեան գրաբարի եւ ռամկօրէնի։ Այս հայեցմամբ հնար է իրարմէ զանազանեալ երեք կարգի բաժնել զգրութիւնս, որ են՝ գրեթէ անխառն գրաբար, գոգցես զուտ ռամկօրէն, գրաբարախառն ռամկօրէն կամ ռամկախառն գրաբար։*

*Սկսինք գրաբար օրինակներէն, որ ոչ միայն ի սկզբան գրոյն կը գտնուին յաճախ՝ ինչպէս յայլ*

---

[1] Գրոցս հնութեան վրայ միեւնոյն կարծիքն ունի նաեւ գրիչ Յառաջաբանի տպագրութեան, որ ըսելէն ետեւ՝ թէ "Ժամանակ թարգմանութեան կարծեմ զԺԳ. դար", իբր թէ աւելի հնութիւն տալու համար՝ կը յաւելու "Վաղագոյն քան անագան"։ Եւ ի ցոյց այս իւր կարծեաց՝ յառաջ կը բերէ լեզուն. "Զի ոչ միայն, կ'ըսէ, ամբողջ յետին դա-
"րու իշխանութեան Կիւլիկեցւոց մերոց՝ ոչ յուսացուցանեն
"այսպիսի մտադիւր պարապմունս գիտնականս. այլ եւ ոչ
"այսօրեան յօրակո—ւթի—ն ի— կերպո—ւթի—ն լեզո—ւ ակնունելի է ի
"ժամանակաց՝ յորս գրեթէ լաւ եւ դադարէ իսկաբա-
"նութիւն հայերէն խօսից եւ դպրութեանց։ Քանզի թէ-
"պէտ եւ յաշխարհիկ բարբառ եւ յոճ յեղեալ են գիրքս
"այս, այլ չեն ինչ նուազեալ ի շնորհաց յստակութեան եւ
"սեփականութեան հայրենի լեզուի, հանդերձ գիւտով եւ
"գիտութեամբ արուեստական կամ բնախօսական բառից..."։
(Էջ ԺԵ։) Նոյն միտք կը գրէ դարձեալ ի վերջին ժամանակս յառաջնին նամակի. "Զարմանալի ինձ է թարգմանու-
"թիւնն. այնու զի ուրեք ռամկախօս եւ մերձաւոր մեզ
"ժամանակաւ երեւի, եւ այլուր գրաբան եւ հնակերպ։
"Առն հմուի եւ ոչ հետեւակի թուի ինձ գործն"։

ամենայն ռամկախօսս, այլ նաեւ յետոյ ի տեղիս տեղիս։

Ա. Յիւրաքանչիւր ժամանակ եւ ի մարդկային հասակին՝ ուսմք որ հետեւին երկրագործութեան, ամենայնիւ առաւելութեամբ ազնիւ է տղայական եւ մանկութեան հասակն։ Եւ պարտ է նոցա ծառայապէս կալ այնոցիկ՝ որք հմտացեալք լինին գործոյն եւ հասեալ ի ժամանակս ծերութեան. վասն զի անյոյլաբար խլեն ի գետնոյն զամենայն փշաբեր եւ զանտառախիտ բանջարսն եւ զծառսն, եւ սրբիչք են ճանապարհաց անդեացն եւ վաստակոցն, եւ անխոնջ փորեն, պեղեն, փոցխնեն, սատածեն, նաեւ ժողովեն, խրտուցանեն զվնասակար ձագսն, եւ վարեն զանասունս յանդեացն։ Եւ յայս ամենայն վերոյգրեալ գործս՝ տղայքն առաւելագոյնք են քան զմիջահասակ մանկտին. վասն զի անյոյլաբար ցածանան եւ վերանան, եւ հեշտագոյն է նոցա քան մեծամեծացն, եւ որպէս ի խաղ ընթանան ի գործն անխոնջ։ Եւ այսու ամենայնիւ ուսանին զգործն եւ զբնութիւն գետնոյն եւ զհողոյն ժամանակացն եւ զեղանակ տարւոյն։ Եւ զայս ամենայն տեսութեամբ եւ փորձիւք պարտ է ուսանիլ։

Բ. Վասն ջրոյ թէ որպէս պարտ է ժողովել զանձրեւաջուրն։ Արժան է յառաջ քան զամենայն ինչ զջրոյ խոկալ, ոչ եթէ վասն ըմպելոյ միայն, այլ եւ վասն վաստակոց եւ բուսոց երկրի, եւ վասն օդոցն խոնաւացուցանելոյ. վասն զի յամառայնոջն՝ դալարացուցիչ է մարմնոցն եւ անցուցիչ չորութեանցն, եւ կատարեալ հակառակ է ամառնային այրեցմանցն։ Եւ եթէ ումեք ուրդէ ի գեղակն աղբիւր քաղցրահամ՝ արժան է այնու բաւականանալ. եւ թէ ոչ՝ նա անձրեւին ջրէն պարտ է ճար առնել. ոչ ի վերայ այնպիսւոյն զոր սովորեցան ոմանք ժողովել, եւ ոչ որ աղբահոտեալ եւ աղտեղացեալ է յաղբէ անասնոցն, այլ արժան է այսպիսի արուեստիւ ժողովել, որ . . .։

Գ. Պարտ եւ արժան է չփոփոխել զբնակիչս եւ զտունկս լաւագոյն շինուածոցն՝ ի վատթարագոյն վայրս. զի ասացին ոմանք ի գիտնականացն, թէ չէ պարտ զբարուոք տեղեացն սովորեալ մարմինսն՝ տանել ի վատթարն, ապա թէ ոչ՝ վնաս

*մահու լինի նոցա, այլ արժան է պատրոնին հայրաբար խնամել զժողովուրդն, եւ ի լաւագոյն տեղիս բնակեցուցանել, եւ եթէ չիցէ հնար՝ ի միջասահման տեղիս։ Զի առաջին բժշկապետքն տեղեկացեալ են եւ գրեալ ճշգրտիւ, որ պարտ է մարդկային ազգիս պատրաստ լինել ի փոփոխել երկրին եւ օդոյն. եւ ոչ եթէ մարդկութեան միայն, այլ եւ տնկոցն եւ անասուն կենդանեացն։*

*Դ. Նախ արժան է զօգտակար եւ զամենընդունելի եւ զվայելուչ եւ զօրհնեալ ձիթենւոյս զդրութիւնն եւ զսահմանն ընդ գրով արկանել. եւ ապա զբարեբուղխ պտղոյն զպարարտ եւ զօգտակար իւղոյն, վասն զբօսանաց մարդկան. որպէս աւանդեցաւ մեզ ի հնարագէտ իմաստնոցն, որք կամեցան յիւրեանց վաստակոցն վայելել զկենցաղս. եւ յայլոցն հրաժարել։ Ուստի արժան համարեցաք նախ առաջին այն ծառոյն Նէրողէր դնել՝ որք թափեն զծաղիկն եւ ապականեն զպտուղն. եւ ապա զտնկելն եւ զսերմանելն, զտածելն եւ զշինելն։ Եւ նախ՝ առաջին սահման է, որ մարդ թէ սուրբ չլինի յախտից եւ ի մարմնական աղտեղութեանց, չմերձենայ ի ծառն, ոչ ի հոտել եւ ոչ ի տնկել եւ ոչ ի քաղել զօրհնութեան պտուղս։ Այլ արժան է որ գործեն զսա՝ մաքուր եւ սուրբ յամենայն աղտեղութեանց լինել։ Եւ հինքն այնպէս են ճշմարտեալ, որ Կիլիկիոյ երկիրն, եւս առաւել Անարզաբոյ թեմն՝ լաւ եւ գովելի պտուղ եւ անուշահամ ձէթ ունի քան զայլ երկիր. եւ կայսերացն եւ մեծամեծաց անտի բերէին՝ վասն մարմնաւոր պիտոյից իւրեանց. եւս առաւել Կիւլիկեցիք եւ Ադէխացիք այսպէս առնէին սրբութեամբ զգործն, եւ այնու առաւելուլին ի գործն ազնուաբար քան զայլ գաւառսն։ Եւ զայս Յուլիանոս իմաստունն եւ բնութեանց գիտողն եգիտ եւ ուսոյց մարդկան։*

Այս չորս օրինակները բաւական կը համարինք լիովլ արդարացընելու՝ գրութեանս գրաբար մասանց վրայ ի վեր անդր (էջ 94) յայտնած կարծիքս, որոյ ի հաստատութիւն կարող են ծառայել նաեւ յետոյ ի մէջ բերուած խառն օրինակայ գրաբար մասունքն։

Անցնինք արդ զուտ ռամկօրէն օրինակաց ։

Ե. Արժան է զհացն (զցորեան) յայնպիսի աման պահել, որ արեւելից լոյսն եւ պարխրային հողմն ի ներքս մտանէ, եւ ունենայ շնչահան, որ ամէն ծուխն ելանէ ։ Եւ մօտ ի հորոնն՝ ախոռ, արտաքնոց եւ այլ ինչ գիշահոտ տուն մի թողուր. եւ առ սպիտակ հող եւ շաղախ արա, եւ մազ խառնեա ի ներքս եւ յարդի ծեղ, եւ լաւ կոխեա եւ նեխեցո քանի մի օր, եւ այնու ծեփեա ի ներքսէ. թէ քարուկիր առնես եւ թէ այլ ցեղ շէնք՝ դու զներսն եւ զդուրսն ծեփէ եւ թող որ չորանայ եւ սնանի աղէկ. եւ ապա ժողովել տուր զվայրի լեղի խիարկի տակն՝ որ յաւերական լինի՝ իւր ցօղունովն, եւ դիր ի ջուր եւ թրջեա երեք օր, եւ եռ անցո ի վերայ. եւ առ աւազ մանր եւ կրակաց մոխիր. եւ այն ջրովն շաղախեա նոսր եւ օծեա զմէջքետինն եւ զորմունքն՝ աղէկ, եւ լից զցորեանն ։ Եւ են ոմանք, որ զաւազն եւ զկրակաց մոխիրն՝ գրաստուց գօզով թրջեն. եւ այս աղէկ է, զի սպանանէ զոջիլն եւ զայլ կերլչսն ։ Եւ ոմանք ի յաւազի տեղ՝ զկղմինտրն լեսեն եւ դնեն, եւ այս լաւ է. եւ այլք առնուն զհօտին մոխիրն կամ զկաղնի փայտին, կամ զգշկուրն. աղա զորն եւ կամիս յայս երիցս. եւ երբ լնուս զամանն՝ ի վերայ ցորենին ցանեա աղէկ քանի կարես. խիստ պահէ զցորեանն ։

Զ. Գնա ի կուզերն եւ պատրաստութեամբ ըմբռնեա երկու մատամբդ մէկ պտուղ մի, եւ խլեա ի կոյլկապէն, այնպէս որ չպտղի պտուղն. եւ տես, թէ ընդ կապծակն ջուր գայ ի դուրս՝ գինեբուղխ է եւ շատ գինւոյ նշան, եւ թէ չելանէ ջուր՝ նա վատ է, եւ սակաւ գինի լինի ։ Եւ փորձեալ են ոմանք, որ երբ արտերն կամ այլ սերմանքն աղէկ լինին՝ նա գինին սակաւ լինի ։ Եւ այլ ոմանք փորձեալ են, որ երբ գարունն անձրեւային գայ՝ նա գինին շատ լինի. եւ թէ յայնժամ գայ անձրեւն որ աղոխն քան զ[illegible] մի լինի՝ նա խիստ օգտէ. եւ թէ յաւաջ որ հասանի՝ յոր ժամու գայ՝ օգտէ. եւ եթէ ի կթելոյն ժամն գայ անձրեւն՝ շատ գինի առնէ, սակայն նոսր լինի եւ շուտ քացախի ։

Է. Ա՛ռ նոր սերկեւիլ զաղւորն եւ զխիստ հասունն, եւ դիր ի տունն ի վայր, ԺԴ. օր, որ թոշմի. եւ ապա սրբեա զինքն ի բրդէն չու-

խայ կտորով, եւ շինեա չոր պախրէի կող դա-
նակք, եւ այնու ճեղքեա ի չորս. եւ հան զսիրտն.
եւ զքթերն կտրեա եւ դիր ի նոր ձիւթած կա-
րաս, եւ լից զկարասիդ երկու բաժինն կամ այլ
աւելի. եւ ա՛ռ յիստակ անուշահամ մեղր՝ ղուֆրն
քաղած եւ քամած ի մաղ, եւ լից զամանն մինչ
ի վեր, եւ ծեփեա զբերանն եւ թող մինչեւ ի
Թէմուղ ամիսն. եւ ապա բաց, եւ բեր թեղար մի
սպրկիկ. եւ որքան ի մեղրէդ եւ ի սերկեւիլէդ
ածես ի թեղարդ՝ նա դու նոյն ամանովն երկու
ու կէս ջուր ած աղբիւրի, որ զինքն սուրբ մարդ
առնու յաղբերէն, որ ո՛չ արեւ տեսանէ եւ ո՛չ
լուսին. վասն զի իւր յատուկն ի յայն է՝ որ
աւերէ զինքն. ապա ի չիքն յառաւօտուն ա՛ռ,
եւ ի թեղարն սուրբ մարդ ած՝ լուացած ձեռօք,
եւ զջուրն ընդ ինքեան տրորեա, որ ամէնն ջուր
կտրի. եւ ապա ի նոր ձիւթած մաղ ա՛ռ, ի կա-
ներ լից. եւ զբերանսն ձիւթեա աղէկ եւ կալ, եւ
ԻԱ. օր յարեւն դիր, որ արեւն զինքն եփէ. եւ
ապա խմեա պատուական եւ օգտակար. նոր իրք։

Ը. Տե՛ս, երբ սեւանայ եւ հասանի պտուղն կամ
կարմրի, եւ գիտենաս որ հասեալ է եւ քաղ-
ցրացեալ, քաղել տուր որպէս նշանք տուաք.
եւ մի՛ այլ աւելի քաղէր, քան զայն չաքն մէն՝
որ գիտենաս թէ ձէթ կարենաս հանել. եւ լից
ի վերայ խորէ յարեւն, որ թառամի. եւ յամէն
տերեւէ եւ ի փայտէ եւ ի կոթերոյ սրբեա
զինքն եւ յիստակեա, որ չլեղեցուցանէ զձէթն.
եւ յերիկուն դէմքն աղ ցանեա ի վերայ եւ ա-
ճռեա, որ միաւորի ընդ ինքն. եւ վաղն զինքն ի
մասարաքարն ի թեթեւն այնպէս աղա, որ
զկուտն ի յառաջին բերանն չլեսէ. զի այն է
աղէկ ձէթն՝ որ ի մսէն լինի, չլինի ի կտէն։ Եւ
զաղացածդ ի տաշտեր հան, եւ ճմլեա ի քթո-
ցանի, եւ այնու ի տրօսանքն քամեա մեղմ՝
քչիկ քչիկ, որ յիստակ ելանէ։ Եւ յառաջին
բերանն որ ելանէ՝ այն է լաւն. զայն յետ ա՛ռ.
եւ որ այլ ի յետ պղտոր ելանէ՝ այն ա՛յլ պա-
կաս է, եւ զայն ի յետ ա՛ռ։ Եւ երբ զայս երկու
բերանս առնուս, աղ մանր կամ նադրուն ի
ձէթն ած, զերդ կենայ յամանն, եւ ձիթենի
դալար վարոցկաւ մի խառնեա զինքն. նա պիտի
որ առնու զձիթին զամէն աղտն ու ի յատակն
նստի։ Դու ի մէկ այլ օրն զինքն յապիկած ամանս

շրջեա ի կամկէկ, այսպէս որ ատակն ի տեղն մնայ. եւ այս է պատուականն եւ լաւն։ Եւ զինքն ի հով եւ ի ցամաք տեղի պահեա, որ չկծուընայ։

Թ. Պարտ է գիտել, եւ զմեղուաց տունն այնպէս շինել, որ ի գարունն մինչ արեւն ցայթէ՝ նա յինքն դիպի ղորդ ընդդէմ. եւ այս վասն այնր է լաւ, որ ի ձմեռն ջեր լինի եւ յամառն հով։ Եւ իւր ջուրն այն է լաւ՝ որ առու լինի կարկաչան ի վերայ խճերոյ եւ յիստակ. զի մեղուաց կեանքն յիստակ ջուրն է, եւ զմեղրն այլ յիստակ առնէ։ Եւ պատեհ է որ աղուոր սալեր ընտրես եւ ի ջուրն դնես. այնպէս որ երբ դնես՝ նա ջրին երեսացն հաւասար լինի, որ անդ նստի մեղուն եւ զջուրն առնու։ Եւ թէ ի գնաց ջուր չլինի, ի ջրհորէ գռներ դիր, եւ ծովեր արա, եւ քանի մօտ լինի՝ այն է լաւ, որ չհալածին ի հեռուն։ Եւ խոտ մի կայ՝ զոր արապերէն հաշա ասեն, որ մեղուն զինքն խիստ սիրէ, եւ երբ զինքն ուտէ՝ շատ մեղր շինէ, եւ պարս աղէկ տայ։ Պարտ է յառաջեւնին[1] գարի ցանել, զի եւ զայն եւս սիրէ։ Եւ բուն ու աղէկ կոճակ որ իսկի կենայ՝ տախտակով շինածն է, փիճի կամ կաղնի. կանգուն ու կէս յերկայն, եւ երկու թիզ ի լայնքն։ Եւ ա՛ռ կու եւ կրակաց մոխիր, թրեա ընդ իրեար, եւ այնու ծեփեա, եւ բաց ի յիւր ծակէն որ ելումուտ թողուս՝ ի կոճակին քովքն հինգ վեց ծակ այլ թո՛ղ, որ հով մտանէ, եւ զքորքոսն ցամաքեցուցանէ եւ զսարդի ոստայնն աւիրէ։ Եւ գիտացիր որ մեղուն զիւր բնական արօտտեղն բնութեամբ սիրէ, եւ չկամենայ յայլ օտար տեղի գնալ քան յիւրն։

Եւ վստահած է, մեղուքն իւրեանց թագաւոր ունին։ Հայերս պարոմայր ասեմք։ Եւ երբ մեղու կամենաս տնկել, դու յամէն կոճակ թագ մի դիր, նա այն զամէն մեղուքն ժողով պահէ։ Եւ տես որ քան զմէկն ա՛յլ չդնես, թէ ոչ՝ ամէն մէկ[2] իւրն ջանայ շինել, եւ զկոճակն քակեն։ Եւ թագիտ նշանք այս է. խարտէշ լինի. եւ մէկուկէս մեծ քան զայլ մեղու. եւ որ զայս նշանքս ունենայ, լաւն այն է. եւ վատ թագ՝ այլագոյնք լինի եւ սեւագոյն, եւ մեծութիւն երկու հետ մեծ քան զայլ մեղու։

Եւ զձագն այսպէս արածեա. դիր ի տաշտ գինի եւ մեղր, խառնեա ընդ իրեար յառաջեւնին[1],

եւ յաւաՀոտ ճիւղք Հանդերձ ծաղկովն ի վերայ շարեա. որ երբ ձագն ի կեր գայ, ի վերայ նստի եւ Հանգիստ խմէ։ Եւ են ոմանք որ այլ աղէկ առնեն. ծեծեն զչամիչն եւ ի մուստառն խառնեն, եւ բաղարջիկս առնեն, եւ ի ներքս կոճակին դնեն, ձմեռն ցրտոյն եւ ամառն խիստ շողոյն. զի ի ցրտոյն եւ ի տօթոյն փախէ եւ չելանէ ի դուրս մեղուն։ Եւ երբ զինքն ի ներք յիւր տունն դարմանեա, եւ երբ գարնան առաջին ամսոյն տասն օրն ելանէ՝ նա պատեՀ է որ մուխ անես գշկրով, եւ զիւրեանք յարօտ Հանես. եւ երբ ելանեն մեղուքն ի կոճակէն յարօտ եւ դատարկի կոճակն՝ նա դու ճարտար սրբէ զկոճակն ի ցեցէ եւ ի սարդխոստայնէ եւ յաղբէ եւ յամէն աղտէ. եւ ճարտար դարձեալ ի տեղն դիր, որ երբ դառնան՝ նա (ուր) գտանեն զկոճակն, որ ի ներք մտանեն. եւ աղէկ մխռեցո, զի իւր կեանքն այն է։

Եւ ի կոճակն թէ շատ պան կենայ՝ դու թերեցո, եւ զչափն թող, զի շատ պանն Հիւանդացուցանէ զմեղուն։ Եւ ջանք դիր որ զամէն որձ մեղուն սպանանես այս խրատովս. ի յարեւմարքն ա՛ռ պաղ ջուր եւ ցանեա ի կոճակէն դուռն, զբերանն ի յետ ա՛ռ, եւ այնպէս արա՝ որ երբ զջուրն ցանես՝ նա ի ներքս երթան ի կոճակն, եւ վերստին զխուփն ընդդէմ դիր. եւ յառաւօտուն որ լուսանայ՝ դու գտանես զինչ որձ մեղու կենայ, ամէնն ի դուռն եկեալ ի ջուրն. դու զամէնն սպան։ Եւ այսորիկ ապացոյցն այս է, որ որձ մեղուն բնաւ յարօտ չելանէ, ամէնն ի կոճակն Հանգիստ կու կենան. եւ զինչ մարին կու գործէ՝ զայն կուտեն, եւ ամենեւին վզենկարար են, եւ ի մեղեր ուտելոյն կու ծարաւին. եւ մենակ յայն ցանած ջուրն դիմեն. դու սպան. զի թէ ոչ՝ զամէն մեղրն այնպէս սպառեն, եւ դու եւ այլ մեղուքն ունայն եւ դատարկ մնայք. եւ նոցա ուտելն է պատճառ, որ ոչ մնայ մեղր. եւ անգէտքն զտարին ապիգովեն։

1 Մտադրութեան արժանի է այս առաջեւնին բառին ծայրի մասնիկն, որ քանի մի տող յետոյ՝ երկրորդ անգամ մ'ալ կրկնուած է։ Այս նին, որ յարդի լեզուիս իբրեւ յք. երրորդ դէմքի ստացական կը գործածուի, ի ռամկականն նախնեաց՝ գէթ յառաջին դարս՝ պարզապէս որոշեալ յօդնակի է. զ. օ. բժշկնին, զմրդանին, ... բանջարնուն, ... ի պարտէզնին ... կը նշանակէ՝ բժիշկքն, զմրդան, ... բանջարացն, ... ի պարտէզսն, եւ ոչ թէ զանձրեւս ... նոցա։ Ըստաւծին ցոյցէ՝ երկու տեղն ալ նախընթաց բառին (մեղուն, ձագն) եզակի ըլլալն։

2 Տպուած է ոբնոմէկ, նոյնպէս է նաեւ ի ձեռագրին. փոխեցինք այնպէս՝ ինչպէս կը դնեն միւս երկու օրինակք։

Ժ. Շինեա տուն մեղուաց վեց կանգուն բարձրութիւնն, եւ լայնութիւնն նոյնպէս, եւ զորմունքն նոյնպէս սրբաշէն եւ ծեփած. եւ լինի դուռն մէկ եւ պատուհան չորս. եւ զդրան բարձրութիւնն այնչափ արա՝ որ երեսուն ամաց ընձիւղ մի կարես ի ներք ածել ի տունն. եւ ընձիւղն գէր եւ աղուոր պիտի՝ որ միս ունենայ. եւ ուժով կորիճք գահեն եւ բերեն ծանր պլատկերով, եւ ածեն ի տունն. եւ ընդ առաջն մեղմն ծեծեն զընձուղն, եւ ի հետ սերտեն զզարկերն այնչափ, որ միան մէն մանրի, եւ ի զարկուցն մռանի, եւ մանրին ոսկերքն եւ միան ի ներքս մորթոյն։ Բայց այնպէս ջանա, որ բնաւ արիւն չելանէ, եւ ոչ մորթին ծակոտի ի զարկերոյն։ Եւ երբ մռանի՝ նոր քթեթանի կալ սար եւ ձիւթ եռացուցած, եւ զինչ ծակ կայ ի յինքն՝ զամէնն պինտ խծկեա, զբերանն, զքիթն, զաչքն, զականջքն. եւ ապա ա՛ռ զխոտն որ կոչի արապերէն հուլու, եւ փռեա ի ներքեւն թանձր, եւ զինքն՝ զերդ կենայ անարատ ի մէջ տանն՝ ի վերայ խոտիդ դիր. բերանն ի վայր, որ փորն (°) դէպ յառաստաղն լինի. եւ հաւասար ելէք ի տանէն. եւ փակեա զդուռն եւ զպատուհանսն աղէկ եւ բեւեռ, եւ զինչ խսկի ի տունն ծերպ կենայ, որ խսկի օդ չկարէ մտանել ի տունն, զամէնն ծեփեա եւ աղէկ կալ, այն որ բնաւ օդ չմտանէ։ Եւ այսպէս թող երեք շաբաթ. եւ ապա բաց զպատուհանքն եւ զդուռն՝ որ հովայն մտանէ ի ներքս. եւ կրկին խծկեա եւ թող տասն օր. եւ բա՛ց եւ տես, գտանես զամէնն մեղուք կոյղ յիրերաց վերայ զերդ խաղող. եւ յընձղոյն զայլ իրք չգտանես, քան զեղջիւրան եւ զոսկերան եւ զմազն. ա՛յլ ամէն միան մեղու լինի դարձեալ։ Եւ երբ տեսանես որ մեղուքդ թեւս առնուն եւ թռչիլ կարեն, դու բաց զխծկած ընձըղոյն բերանն եւ զաչքն եւ զամէն ծակտին. նոյնպէս եւ զտան պատուհանսն, եւ թող որ թռչին։ Եւ սար կալ զհուլու խոտդ, եւ ծխեա եւ մուխ արա յորտեղ կամենաս տնկել ի մէկ այլ տունն. զի խիստ գայ անուշահոտդ եւ մեղուաց կեանքն ինքն է։

Կարծենք ոչ ո՛ք բանասէր կրնայ ուրանալ այս տակաւ օրինակաց վայելչութիւնն, մանաւանդ թէ չզմայլիլ անոնց պարզ գեղեցկութեան վրայ, որոց համար՝ կարծենք չափազանցութիւն չ՚ըլլար եթէ

ըսենք որ նմանօրինակ կտորներ յաճախ չեն գըտ-
նուիր ի բովանդակ ռամկական մատենագրութեան։
Զարմանքն աւելի եւս կը յաճախէ՝ եթէ զրուցենք
թէ անոնց նման բազմաթիւ օրինակներ սփռեալ
են բոլոր գրոցս ընթացից մէջ։

Տեսնենք ի վերջոյ քանի մի օրինակ երրորդ-
կարգէն, զոր գրաբարախառն ռամկօրէն կամ ռամ-
կախառն գրաբար կոչեցինք։

ԺԱ. Գիտելի է, զի չէ պարտ զառաջնոց իմաս-
տուն եւ փորձական արանց խրատուքն զանց առ-
նել եւ հակառակիլ բանից նոցա. քանզի գրեալ
են, թէ բակլայն զմարդն մոռացկոտ եւ անմիտ
առնէ. եւ աստի է յայտ, որ երբ զինքն շատ
ուտէ ոք՝ նա զբոլոր գիշերն մինչ ի լոյս յերա-
զանայ. նոյնպէս եւ ազգի ազգի քամիք ընծայէ
ի մարմինն։ Եւ ասացեալ են. եթէ ոք զտունկ
տնկէ եւ զբակլային խեճեպն ափչաք մի ի տակ-
ռիճս տնկին լնու՝ նա չորացուցանէ զտունկն։ Եւ
թէ հաւերուն ստէպ բակլայ տաս ուտել՝ ի ձու
ածելոյ կտրին։

ԺԲ. Պարտ է զտեղին լաւ ընտրել համոյն եւ
գունոյն եւ տեսակաւն, որպէս գրեալ եմք ի
տեղւոջ իւրում, եւ ապա բազմապատիկ վաս-
տակել եւ փորել եւ սրբել յօտարոտի տակէ
եւ ի բուսոց, եւ քարքաղ առնել եւ դուրել.
վասն զի յամառնային տօթն՝ շողանան քարինքն
եւ այրեն զտունկն, թէ փոքրքարուտ լինի եւ
աղուտ եւ կոկնուտ. նոյնպէս եւ ձմեռն պաղի
քարն եւ ահոկէ. զայս այն քարինքն առնեն, որք
վերեւ գետնին լինին։ Բայց այնոքիկ որ ներքեւն
լինին՝ զընդդէմն գործեն ի տակքն. եւ այսոքիկ
հովացուցանեն զտունկն եւ օգտեն, եւ ի պաղն
ջեռացուցանեն։ Եւ այս պատճառանօքս պարտ է
աղէկ փորել եւ զգետինն շրջել, եւ զայն քա-
րինքն որք յերեսն են՝ քաղել եւ հանել։ Եւ թէ
փոսեր կենայ՝ դուրել, եւ ապա տնկել այն նշա-
նօքն՝ զորս ի տեղիս իւրեանց գրեալ եմք. եւ
լաւ ակնբցել, եւ ակնուռիցն արի կենալ, որպէս
գրեալ եմք։

ԺԳ. Զխաղողին նշանսն դժուար է ճանաչել.
եւ վասն ոչ ճանաչելոյն՝ ոմանք զկիթն անժամ

առնեն, նա լինի գինին նոսր եւ վատոյժ, եւ ոչ դիմանայ: Եւ այլ ոմանք զկիթն յամեցուցանեն եւ զայգին աւելգատ առնեն ի պտղին դարմանելն. զի բազում աշխատութիւն կրէ տունկն ի դարմանելն զպտուղն, այնպէս՝ զերդ երբ մեծ որթն զկոճն ծծէ եւ ցամաքեցուցանէ, ոչ միայն զկաթն՝ այլ եւ զարիւնն եւ զոյժն եւս. նոյնպէս է եւ տունկն: Եւ ոչ թէ այս վզեանս միայն ի յամեցուցանելն է, այլ եւ ամենայն պատահարաց ներքեւ ի բաց է, կարկտին եւ այլոցն. եւ ամէն իրօք պիղծ է յամենալն ի կիթն: Եւ վասն այսորիկ իմաստունքն ոչ եթէ համտեսելովն միայն հաւանեցան ճանաչել, այլ եւ տեսութեամբ նշանացս՝ զորս գրեմք: Տես զխաղողն. երբ աղէկ հասանի՝ նշանն այս է, որ վեց օր չփոխի յիւր գունէն: Եւ այլ. հայեաց ի պտուղն, թէ կուտն ի մէջն սեւ երեւի՝ հասեալ է, կթեա: Եւ այլ. պտղեա զխաղողն եւ տես. թէ կուտն ի պտղին մնէն չզատի, այլ զերդ տուրտին կենայ փակած. չէ հասեալ. եւ թէ ոչ՝ որ կուտն մերկիկ մնայ՝ հասեալ է, կթեա: Եւ ո՞վ գիտէ՝ ի կոյզն ուրեք պտուղ խակ մնացեալ լինի, նա չէ պարտ վասն այսորիկ զկթելն յամեցուցանել, կթեա, եւ զայն ընտրեա եւ յետ հան. եւ արկ ի մրզրուն, եւ դիր պղնձով եռջուր, աղէկ պահ մի, որ հասուցանէ զինքն շող ջուրն. եւ ապա հան եւ կախեա նոյն կթոցովն, որ ցամաքի երկու օր, եւ ապա խառնեա յայլսն, աղէկ լինի. եւ թէ զինքն ի հետ քամես՝ այլ աղէկ լինի:

ԺԴ. Այլք որք զկարասն ուզեն ստէպ բանալ եւ յամէն վնասէ պահել յառնուլն՝ նա թող առնուն ծովու ջուր կամ մոխրաջուր, եւ լուանան աղէկ զկարասն եւ սպունգով մաքրեն զատակն եւ զգիշահոտութիւնն հանեն, եւ թէ չելանէ՝ շող ջրով եւ աղով թող լուանան. եւ ապա առցեն գարէալիւր եւ ձիւթ, եւ չորս բաժնին մէկն մոմ, եւ հալեսցեն ընդ իրեար եւ ձիւթեսցեն զկարասն եւ թողցեն որ հովանան. եւ ապա խունկ ծխեսցեն եւ վարդի ձիթով օծցեն եւ ծովու կամ աղջրով ցօղեսցեն, եւ թողցեն զի ցամաքեսցին. եւ ապա զգինին ի ներք լցցեն եւ սերտ ի բան տարցեն:

ԺԵ. Արժան է զամենայն ազգ իրս հոտել՝ զայգւոյ եւ զծառոց՝ ի Յունվարի երկու օրն

սկսանել, մինչեւ այգեաց տերեւքն երեւանան. եւ տես որ զհօտեղն ի յայգւոջ երբ յորէն երկու պահն ելեալ լինի՝ սկսիր, մինչ ի յինն պահն աւուր բանէ. եւ այլ մի հօտեր, մինչեւ ի մէկ-այլ օրն. եւ պատրաստ կաց զի ի յօրն յորում դժնդակ հողմն լինի՝ չհօտես, թէ ոչ՝ զամէնն աւիրէ. այլ ընտրեա զաւուրսն հօտելոյն, զի լիցի ջեր եւ պարզ, եւ առանց ցրտաբեր հողմոյ. եւ զհօտոցն սուր արա՝ որ չաւիրէ զտունկն։

Ինչ որ ի նախընթացին ըսած ենք յառաջ բերեալ գրաբար եւ ռամկօրէն օրինակաց վրայ զատ զատ՝ միեւնոյնն կարող ենք կրկնել նաեւ այս գրաբարէ եւ ռամկօրէնէ խառն օրինակաց մէջ բովանդակեալ նոյն երկու մասանց վրայ, եթէ առանձին առանձին առնուին՝ անկախ իրարմէ: Սակայն իրն տարբեր տեսակիտէ, այս ինքն՝ անոնց իրարու կցուելուն ու խառնուելուն կողմանէ նկատելով, կը ստիպուինք մեր նախընթաց դատաստանն ըստ իմիք եղանակաւորել:

Նախնեաց ռամկօրէնին սովորական է՝ հին լեզուին եւ նոր բարբառոյն տարրներն ու ձեւերն իրարու կցել ու խառնել: Այս է իւր յատկութեանց՝ մանաւանդ թէ արտօնութեանց կամ ազատութեանց մին, զոր այնչափ աւելի յաճախութեամբ ի կիր արկեալ կը գտնենք՝ որչափ աւելի հին է ռամկախօս գրութիւնն: Ինչպէս յառաջագոյն զրուցուածներէն ինքնին կ՚իմացուի, մին յառաւելութեանց Վաստակոց գրոցս է՝ որ ստէպ վարուած է սոյն ազատութեամբ: Բայց ինչպիսի եւ է ազատութիւն՝ պէտք է որ կանոնաւորութիւն եւ չափաւորութիւն պահէ. ապա թէ ոչ՝ զեղծման աստիճան հասած կը համարուի: Կայ յամենայնի որոշ չափ ու սահման, որմէ անդին ոչ ոք կարող է անցնիլ՝ առանց ստգտանաց ներքեւ իյնալու: Արդ մեզի կ՚երեւայ թէ գրոցս մէջ կան կտորներ, յորս այս նկատմամբ օրինաւոր չափն ըստ բաւականին պահուած չէ: Սակաւ մի յառաջ գրուած օրինակաց մէջ

ալ կը գտնուին այսպիսիք, մանաւանդ յետին երկուքին (ԺԴ.ին եւ ԺԵ.ին) մէջ. բայց աւելի անախորժ են հետեւեալքն։

Աղէքն ի ծառոց այնոքիկ են՝ որք....։ — Ջայլ աղբսն ցանեն ի վերայ այդոցիկ՝ բանջարի համար։ — Որ կարիցէ ստացանել։ — Ճիւղ մի ի ծառոց՝ յորում կայցեն նռունքն... բերքն վերեւ ղէնք ուլորեալ։ — Վասն այսորիկ նա աղէկ ղամէն աղքերն ի միասին տնկել՝ որ չիցեն հաւասարք։ — Այս պատճառանօքս ...  ... չէն լինի, զորս արժան է ուղղել՝ եթէ հնար ինչ իցէ։ — Ի մոտ... ... է վեր բոլոր գայցէ։ — Նոյնպէս եւ զմիրգսն՝ զորոց վերագոյն գրեցաք, յայս ամիսս պարտ է դնել ի ... ... համար։ — Զի երբ գան անձրեւքն՝ կակղացուսցեն եւ թարմացուսցեն զտեղիսն, որ յորժամ տնկես՝ աղէկ բռնէ։ — Առաւել եւս աղէկն է։ — Տարբեր կարգի կը վերաբերին՝ բայց նոյնչափ անախորժ են նաեւ Աղ...ով, ... ..., ..., ..., ..., ... է ... լերանց, եւ նմանիք. թէպէտ եւ անկողմնակալ ըլլայու համար՝ պէտք է խոստովանինք թէ շատ սուէպ չեն տեսնուիր։

Չկարենալով համոզուիլ թէ այս կերպ եւ նմանօրինակ անտեղութիւնք գտնուին այնպիսի գրութեան մէջ՝ որ վկայեալ է իբրեւ "Գործ առն հմտի եւ ոչ հետեւակի" կը կարծենք թէ իւր սկզբնական վիճակին մէջ հասած չէ ի մեր ձեռս։ Այս մեր կարծիքն կը հիմնենք մեզի ծանօթ երեք ձեռագիր օրինակաց իրարմէ տարբերութեան վրայ։ Տպագրութեան հրատարակիչն՝ ի ձեռին ունեցած նոյն երեք օրինակաց մասին տեղեկութիւն տալու աւթիւ՝ այսպէս կը գրէ. "Երկուք յօրինակաց մե-"րոց յոյժ նմանաբանք են եւ ի միոյ աղբերէ յա-"ռաջագայեալք. իսկ երրորդն որում հետեւեցաք՝ "ոչ սակաւ զանազանի ի նոցունց, եւ վերագոյն է "լեզուաւ եւ սայթ գրչութեամբ"։ Եւ խօսքն յառաջ տանելով՝ նոյն զանազանութիւնն հետեւեալ կերպիւ կը մեկնէ. "Յայտ է, կ'ըսէ, թէ գաղափա-"րող միւսոցն՝ առաւել եւս պարզել կամելով զեր-"բեմն ժամանակի աշխարհաբառն՝ ռամկացուցեալ

“ եւս է ըստ ոճոյ եւ հասկացման իւրոյ ժամանա-
“ կին ”: (Ի Յառաջաբանի, էջ ԺԶ. ԺԷ:)

Գտնենք քանի մի տարբերութիւն երկու կերպ ձեռագրաց:

| Գ. Ձեռագիր՝ որուն հետեւած է տպագիրն: | Ա. եւ Բ. Ձեռագիրք՝ որ աւելի ռամկացուցած են: |
| --- | --- |
| Գիշերոյն, գառին, տեսակաւ, գինեաւ, այնու, աչաց, մատակաց . . . | Գիշերին, գառան, տեսակով, գինով, այնիւ, աչից, մատակոց . . . |
| Տնկոց, ձիոց, . . . զնչանսն, զոլաքսն . . . | Տնկերոյ, ձիերոյ, . . . զնչաներն, զոլոքներն . . . |
| Զծունկսն, զոտսն, զաւաջինսն, զայլսն . . . | Զծունկքն, զոտքն, զաւաջինքն, զայլքն . . . |
| Գնեա, ծեծեա, խառնեա, ծածկեա, փորեա, կախեա . . . | Գնէ, ծեծէ, խառնէ, ծածկէ, փորէ, կախէ . . . |
| Օծ, խմցո . . . | Օծէ, օծնէ, խմցուր . . . |
| Ցամաքեցուցանել, նեխեցուցանել, եռացուցանել . . . | Ցամաքեցնել, նեխեցնել, եռացնել . . . |
| Փաթաթել, թաթախել, տախտակել, . . . տեսանել, . . . թերեհամած . . . | Փաթթել, թաթխել, տախտկել, . . . տեսնուլ, . . . թրեհմած . . . |
| Զիրեար, անձրեւաջուր, հաւու կիթ . . . | Զիրար, անձրեւջուր, հաւկիթ . . . |
| Սրունք, . . . անոյշ, շոյտ, . . . ոսկերք . . . յարդ . . . հեռի . . . | Սրոնք, . . . անուշ, շուտ, . . . ոսկորք, . . . յերդ, . . . հեռու . . . |
| Ծուխ, անծուխ, . . . մանր, . . . քարշել, . . . նապաստակի . . . | Մուխ, անմուխ, . . . մանտր, . . . քաշել, . . . լապստկի . . . |
| Սակայն, ստէպ, խողովակ, այնպէս որ, եւ, (մկբյ.) չքննէ . . . | Ապա, ճիճն, ճոռթան, հանց որ, տաք տաք, զէն չունի . . . |
| Տես ի յայգւոջ զտեղի շուք եւ շատաքեր ի մէջ տնկոց. | Տես ի յայգին շուք եւ շատ բերով ի տնկերոյ մէջ տեղի. |
| Պուտկին բերանն եւ կարասին հաւասար գան իրերաց: | Պուտկի բերանքն եւ կարսին հաւսար իրար գան: |

Վերջապէս կան Ա. եւ Բ. ձեռագրաց մէջ այնպիսի խօսքեր, որոց ի յետնագոյն ժամանակս մուծուած ըլլալն ինքնին յայտ է: Այսպէս կը դնեն. Եթէ վրայի կեճեղն հանգիստ չընէ՝ նա ի յերդ թաղէ: — Ի ծա-

ուէն վայր առած ժամանակդ: Որոց փոխանակ՝ Գ.ին մէջ այսպէս կը կարդացուի. Եթէ չլինի ի տալ զփուրն՝ ի յարդ թաղեա: — Երբ բրաթափեա:

Ասոնցմէ ի զատ՝ ուրեք ուրեք յաւելուածներ ունին, որոց հետքն իսկ չի տեսնուիր Գ. ձեռագրին մէջ: Օրինակ ըլլայ հետեւեալ խօսքերն. Առ սերկեւիլ, եւ թզենւոյ չոր տերեւով աղէկ չուանով վրան փաթթէ, որ զտերեւսն ի վրան բռնէ: — Գարէ յերդ լից եւ զինքն ի վերայ տէղծէլ արէ. ամբողջ մնայ: — Գարձեալ մեղուքն ձմեռն կ՚ելնեն կու ծրտեն ձընի երեսն դեղին դեղին, զսատկածնին ի դուրս լնուն, այնով գտնուն զմեղուն՝ երբ արեգակն որ ցայթէ: Երկու վերջին խօսքերէն՝ միայն յաջորդ մասունք կան Գ.ին մէջ. Գարէ յարդ լից, եւ ինքն ամբողջ մնայ: — Մեղուն զսատակածս իւր ի դուրս լնու ի փեթակէն:

Այս զանազանութիւնք, որ քաղեալ են միայն աստ անդ հրատարակեալ (Տես Բազմավէպ, 1862, էջ 93—95, եւ 1867, էջ 358, 359) սակաւաւոր գլուխներուն՝ Գ. ձեռագրին հետ բաղդատութենէն, եւ տպագրելոյն քանի մի ծանօթութիւններէն, (եւ ասոնք են միայն նոյն Ա. եւ Բ. ձեռագրաց մեզի ծանօթ մասունք,) բաւական են համոզուելու թէ մեծապէս փոխուած եւ այլայլած է սկզբնական հին թարգմանութիւնն այն երկու ձեռագրաց կամ զանոնք գաղափարելու համար առնուածին միջոցաւ: Թէ արդեօք նոյն Գ. ձեռագիրը գաղափարողին ի ձեռին ունեցածն անփոփոխ մնացած էր, այն ոչ միայն երկբայելի է, այլ նաեւ հաւանագոյն է՝ թէ այն եւս փոփոխութիւններ կրած էր, մինչեւ նոյն ժամանակ գաղափարողներն ալ այնպէս վարուած ըլլալով՝ ինչպէս տեսանք որ վարուած է միւս երկու ձեռագրաց օրինակն: Այսր յայտնի նշան է այն՝ որ միեւնոյն ռամկականութիւնք, որոց փոխանակ՝ հնագոյն եւ ընտրելագոյն բառեր ու ձեւեր կը գտնենք ի կիր արկեալ յԳ. ձեռագրին, բաւական յաճախ կը հանդիպին նաեւ ասոր մէջ. յայտնի է որ ի բաց առնլու է ի վերջ կոյս զանազանութեանց նշանակեալ այլան-

*գակ նորութիւնքն։ Եւ ոչ այսչափ միայն, այլ նաեւ ի տեղիս տեղիս կան յԳ. ձեռագրին ռամկականութիւնք, որոց փոխանակ՝ Ա.ին եւ Բ.ին մէջ հնակերպը կը գտնուի։*

*Զայս ամենայն նկատելով՝ կարծեմ թէ կարող ենք համարձակ հետեւցընել որ բովանդակ գրութիւնն՝ ի մեր ձեռս հասած երեք օրինակայ մէջ եւս՝ չէ հարազատ, եւ ոչ նոյն ըստ ամենայն հանգամանաց՝ գրութեան սկզբնական վիճակին հետ։ Բայց թէ ինչպիսի՛ էր այն սկզբնական վիճակն, չէ այնչափ դիւրաւ լուծուելու խնդիր, եւ զանազան ենթադրութիւնք կրնան մտածուիլ։*

*Նախ՝ կրնայ ենթադրուիլ որ սկզբնականն եղած ըլլայ այժմու վիճակին համեմատ կամ նման, այս ինքն՝ ըստ մասին գրաբար եւ ըստ մասին ռամկօրէն, ինքնին կ'իմացուի՝ երկուքն ալ իրարու խառնութեամբ։ Եթէ սկզբնական վիճակն այսպէս ենթադրենք, պիտի հետեւցընենք որ ընդօրինակողաց մուծած փոփոխութեամբքն եւ այլայլութեամբք՝ գրաբար մասանց ռամկական տարրքն աճած, եւ ռամկական մասունքն առաւել եւս ռամկացած ըլլան. որ շատ պարզ ու բնական է, եւ չկայ հիմնական պատճառ մերժելու։*

*Երկրորդ՝ կրնայ ենթադրուիլ որ ամբողջն՝ այժմու վիճակէն բոլորովին տարբեր եղած, այս ինքն՝ թարգմանչին ձեռքէն՝ սակաւ մի ռամկախառն գրաբար ելած ըլլայ գրութիւնն, եւ ապա հետզհետէ օրինակողաց փոփոխութեամբք այժմու վիճակն հասած։ Այս ենթադրութիւնս՝ տպագրութեան հրատարակողինն է, որ երեք ձեռագրաց տարբերութեան վրայ խօսելէն ետեւ, այսպէս կ'եզրակացընէ. “Յորմէ մարթ է կարծել թէ բուն “առաջին թարգմանութիւնն առաւել եւս քան “զհրատարակեալս այս հայախօս եւ գրաբառ էր, “ըստ որում է սկզբնաւորութիւն գրոցս„։ Ըստ մասին հաւանելով հմուտ գրչին կարծեաց, կը*

յաւելունք զատ կարծիք մ'ալ, որ մասամբ իւիք միայն կը տարբերի նոյնէն, եւ է հետեւեալն:

Երրորդ՝ չէ՞ կրնար արդեօք ենթադրուիլ որ սկզբնական (փոքր մի ռամկախառն) գրաբար թարգմանութիւնն՝ յետոյ գրագէտի մի ձեռօք (գրաբարախառն) ռամկօրէնի վերածեալ ըլլայ՝ գոնեայ ըստ միոյ մասին, եւ ըստ միւսոյ մասին՝ անփոփոխ մնացեալ: — Զայս կարծիս չէինք համարձակեր յառաջ բերել, եթէ Մխիթարայ Գօշի Դատաստանագրոց ռամկօրէն թարգմանութիւնն յերեւան ելած չըլլար: Բայց նոյն օրինակն առաջի աչաց ունենալով, կրնայ մարդ մտածել թէ արդեօք հնար չէ՞ որ այլ ոմն Սմբատ՝ գրոցս այն մասունքն, որք առաւելապէս կարեւոր են հասարակ ժողովրդեան, մշակաց եւ երկրագործաց, ի հին եւ յանհասկանալի բառից՝ ի հեշտալուր բառս նոցա փոխած ըլլայ, վասն դիւրաւ հասկանալի լինելոյ ընթերցողաց, որք զհինն չէին հասկանալ: Որովհետեւ սկզբնական հին գրութիւնն այնպէս ինչպէս էր դժուարաբառ՝ նոցա ոչ յօժարելի գոյր. որով մեծ ծառայութիւն ըրած կ'ըլլայ զայն յիւրեանց աշխարհական բառս դարձընողն[1]:

Ի հաստատութիւն ենթադրութեանս կարող ենք յառաջ բերել զայն, որ եթէ ոչ ամէն տեղ՝ գոնեայ ի բազում, մասնաւոր դիտումն կամ մտադրութիւն կը նշմարուի գրաբար թող տրուած եւ ռամկօրէնի դարձուած հատածոց ընտրութեան մէջ: Սովորաբար գրաբար են սակաւաւոր տեսական կամ գիտնական մասունք, որ առաւելապէս մեծ երկրատէրց, տնտեսագիտաց, վերատեսչաց կը վերաբերին, եւ այն՝ ոչ եթէ միայն գրոց սկիզբներն, ինչպէս կը տեսնենք հասարակօրէն յայլ եւս ռամկօրէն գիրս, այլ նաեւ մինչեւ վերջերն: Իսկ բազ-

---

[1] Տես Մխիթարայ Գօշի Դատաստանագրոց ի ձեռն Սմբատայ սպարապետի ռամկօրէն թարգմանութեան վրայ յառաջագոյն (էջ 35, 36) գրուածն, որ զմեզ ի յաջորդն յատկապէս պիտի զբաղեցընէ:

մաթիւ գործական կամ նիւթական մասունք, որ կարեւոր են նաեւ հասարակ մշակաց, երկրագործաց եւ գործաւորաց, ռամկօրէն են։ Այսպէս տեսական նիւթոց վրայ են յառաջ (էջ 96 եւ 97) դրուած չորս օրինակքն, որոց յետինն գրոց վերջերէն (էջ 175) առնուած է։ Ասկէ զատ՝ կը տեսնենք որ քանի մի տեղ բովանդակ Գլուխն գրաբար է՝ տեսական նիւթ ըլլալով, եւ միայն վերջին գործական մասն՝ ռամկօրէն. զ. օ. յառաջ բերեալ երկրորդ գրաբար օրինակն հետեւեալ կերպիւ կը վերջանայ. "Զբամ-
"բակն կշռեա, թաց ի ջուրն, հան յարեգակն, չո-
"րացո եւ կշռեա. թէ ծանր է՝ ցած է, թէ թե-
"թեւ է՝ լաւ է։ — Մորայ Նիլին ջուրն պղտոր է.
"առեալ լնուն ի կարասն, զլեղի նուշն ծեծեն՝ ի
"մէջն արկանեն, շուտ յիստակի։" Նոյնպէս այլ ամբողջ էջ մի երկայնութեամբ Գուռն (Գլուխն) Գ.
"Յաղագս թէ ո՛ր տեղւոյ օդն առողջ է եւ բարի" որ տեսական ինչ է, (սակաւ մի ռամկօրէնով խառն) դրաբար շարունակուելէն ետեւ, ի վերջոյ ռամկօրէնի կը դառնայ՝ ըլլալով գործական, այսպէս.
"Ջուան տեղն փորձեա. յերեկոյին փարչ մի ջուր
"դիր, յառաւօտուն տես. թէ փարչն թերի է՝ մի
"շիներ, թէ լի է՝ լաւ է, շինեա։" Այս ընտրութիւնն ըստ մասին կրնայ տեսնուիլ նաեւ խառն օրինակներէն ոմանց մէջ։

Կարծենք թէ այս վերջին ենթադրութեամբ դիւրաւ կը մեկնուի այն անսովոր երեւոյթն՝ զոր դրութեանս մինչեւ ռամկական մասանց մէջ իսկ կը տեսնենք, այս ինքն՝ յաճախութիւն այնչափ հնակերպ եւ գրաբարաձեւ բառից, այնպիսի սաէպ կիրառկութիւն զուտ գրաբար հոլովոց եւ ժամանակաց, (զ. օ. ղորոց գրեցաք, ... ղայֆեան, ղորդեան, ղերադրօթ, ... ընդ գրով արկեալ, ... ի դեղարջ խարամ, ... ցուցանելոց եմք, ... կալցի, գրեցաւ, զի կարասցէ, ու կարասցէ ... եղէ, գայցէ, մի լիցի ...) որ կամ ամենեւին չեն տեսնուիր եւ կամ շատ

ցանցառ կը հանդիպին այլ հին ռամկախօս գրոց մէջ անգամ։ — Ըստ մեզ՝ այս ընդ բոլոր գրուածն խիտ առ խիտ սփռեալ գրաբար տարրք եւ կազմակերպութիւնք, ինչպէս ցոյց են Թարգմանութեան մեծ հնութեան, նոյնպէս կրնան նկատուիլ իբրեւ նշան գրաբարութեան սկզբնական վիճակի գրոցս, զոր ըստ մասին ի ռամկօրէն բարբառ դարձընող գրագէտն՝ ռամկացընել պատշաճ չէ տեսեր, եւ օրինակողք դիպողութիւն չեն ունեցեր անոնց վրայ ալ իրենց ճարտարութեան ցոյցը տալու, բայց ի սակաւուց՝ զոր յառաջագոյն նշանակեցինք։ —

Զայս ամենայն կը գրենք իբրեւ լոկ տրամ-մանէ կամ պարզապէս հնաբանօր ենթադրութիւն. — եւ թէ ոք երեւակայութեան ծնունդ կոչել կամենայ, այնմ եւս չունինք ընդդիմութիւն։ — Մեր նպատակն է՝ բանասիրաց մտադրութիւնը զարթուցանել, որպէս զի հիմնական հետազօտութեամբք ջանան փարատել գրոցս վրայ պատած մթութիւնն եւ իրաց բուն վիճակն յերեւան հանել։

## 14.

## ՀԱՅ ԲԺՇԿԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԸՆԴՀԱՆՐԱՊԷՍ

Ռամկօրէն մատենագրութեան վրայ ընդհանուր տեսութիւն ընելով, ըսած ենք (էջ 48) թէ շատ առատ են բժշկական գրեանն, եւ քան զամենայն ճիւղս գրականութեան հարուստ է բժշկականութեան ճիւղն։ Նոյնպիսի գրոց այս յաճախութեան պատճառն ինքնին յայտ է. որովհետեւ ամէն տեղ եւ ամէն ժամանակ բազմաթիւ հետեւողներ կ'ունենան այն արուեստք եւ գիտութիւնք, որ աւելի օգտակար՝ նա թէ կարեւոր են ժողովըրդեան։ Եւ ի՞նչ կայ այնչափ կարեւոր՝ որչափ այն արուեստն ու գիտութիւնն, որ առողջութիւնը դարմանելու եւ պահպանելու կը ծառայէ, կեանքն ու առողջութիւնն ըլլալով մեծագոյնն երկրաւոր

բարեաց: Այսր բնական հետեւութիւնն է՝ կենաց եւ առողջութեան պահպանութեան ծառայող գրոց բազմութիւնն: — Իսկ ասոնց ռամկական բարբառով յօրինուելուն պատճառն եւս դիւրաւ կ՚իմացուի, եթէ միտ դրուի որ անոնց հեղինակքն (թարգմանիչք, հաւաքողք, համառօտողք, մեկնիչք,) բնականապէս արուեստին տեղեակք կամ բժիշկք՝ ուստի եւ սովորաբար յաշխարհական դասէն մարդիկ ըլլալու էին: Արդ՝ գիտենք թէ ի միջին դարս, մանաւանդ յետ ԺԲ. դարու, աշխարհականաց չէր այնչափ ծանօթ գրաբար լեզուն, զոր թէեւ հասկընային՝ չէին կարող դիւրաւ եւ ըստ օրինի գրել: Բաց աստի՝ նոյն հեղինակք (խմբագիրք) գլխաւորաբար աշխարհականաց համար կը գրէին, այս ինքն՝ այնպիսեաց համար, որ կամ գործականապէս բժշկական արուեստին կը զբաղէին եւ կամ հետամուտ էին տեսականապէս ուսանելու. ուստի թէեւ հեղինակք գրաբարագէտք ըլլային, ստիպեալ էին անոնց լաւ հասկըցած լեզուաւ գրել:

Բայց ե՞րբ սկիզբն եղաւ հայերէն բժշկական գրուածոց: — Ինքնին յայտ է թէ անդստին ի սկզբանէ գտնուած են յազգին այնպիսի անձինք, որ յատկապէս եւ իբր ի պաշտօնէ՝ բժշկութեան կը պարապէին. սակայն ոչ ուրեք կը գտնենք եւ ոչ իսկ հարեւանցի յիշատակութիւն կամ ակնարկութիւն մեր հնութեան այս մասին վրայ: Իսկ եթէ այն անյիշատակ ժամանակները թողլով՝ գրաւորական յիշատակօք ծանօթացեալ ժամանակաց անցանինք, դարձեալ յետ բազմադարեան լռութեան՝ հազիւ Թ. եւ Ժ. դարէն սկսեալ՝ քանի մի հայ բժշկաց անուանք կը գտնենք, առանց փոքր իսկ տեղեկութեան՝ թէ ունեցած կամ թողած են որպիսի եւ է գրութիւն: Այսպէս՝ միայն Ժ. դարուն վերջերէն եւ կամ ԺԱ.ին սկիզբներէն կը սկսինք ունենալ թեթեւ նշոյլ բժշկական հայ գրութեան

վրայ, եւ այն՝ ոչ եթէ ինքնագիր յօրինեալ գրութիւն է, այլ թարգմանութիւն յարաբերէնէ։

Կարող ենք ասել՝ թէ այս սկզբնաւորութեան համեմատ է հայ բժշկականութեան բովանդակ ընթացքն. որովհետեւ մինչեւ ցայժմ ի մեր ծանօթութիւն եկած եւ կամ ի ձեռս մեր հասած հայերէն բժշկական գրուածք՝ եթէ չեն ճշդիւ յարաբերէնէ թարգմանեալ, գոնեայ արաբական սկզբնագրոց հետեւողութեամբ յօրինեալ են, անոնցմէ քաղեալ կամ համառօտեալ։ Ուստի իրաւամբք կրնայ զրուցուիլ թէ հայ բժշկականութիւնն հիմնեալ է արաբականին վրայ, անոր ընդունած է իւր ծագումն, այնու աճած եւ յառաջացած։

Այսպէս անձուկ յարաբերութեան մէջ գտնուելով մեր ազգային բժշկականութիւնն արաբականին հետ, հարկ է որ գէթ համառօտ ծանօթութիւն տանք Արաբացւոց գրականութեան վրայ ընդհանրապէս եւ առանձինն բժշկական ճիւղին վրայ։

Նախնական բուն ազգային գրականութիւն Արաբացւոց մինչեւ Է. դար՝ մեր նպատակին համար կարեւորութիւն չունի։ Այն հին գրականութիւնն առաւելագոյն մասամբ կը բովանդակէ իրենց ժողովրդական երգերն ու բանաստեղծութիւններն. իսկ իրական նոր գրականութեան սկիզբն եղած է իրենց նուիրական մատենին (Կուրանին) հրատարակութեամբ, որ արաբական լեզուին ընտրելագոյն նախագաղափարը կը համարուի։ Նոյն ժամանակէն ետեւ միոյ դարու չափ, որ Արաբացւոց աշխարհակալութեանց գլխաւոր միջոցն է, պատերազմական աղմկին մէջ մեծ յառաջադիմութիւն չէր կրնար ընել իրենց գրականութիւնն։ Սակայն եւ այնպէս նոյն միջոցին ի հաղորդակցութիւն մտած ըլլալով մօտաւոր կրթեալ ազգաց եւ մինչեւ հեռաւորաց հետ, իրենց նոր գրականութեան հիմն դրուեցաւ, որ այնուհետեւ իբր թէ իւր ազգային յատուկ նկարագիրն ըստ մասին կորսյս, եւ օտար ազգաց՝ մանաւանդ Յունաց եւ Ասորւոց դպրութեան ազդեցութեամբ՝ համազգային կերպարանք առաւ։ Իրենց յաղթական զինուքն Ասիայի եւ Ափրիկէի յունախօս գաւառաց մէջ տարածուելով՝ Արաբացիք մասնակցեցան յունական ուսմանց եւ գիտութեանց, եւ դէպ յարեւելս սփռելով՝ միջամուխ

եղան պարսկական եւ հնդկական հրահանգութեանց։ Այսպէս երկու կողմանց ընտրելագոյն մատեանք գործի եւ միջնորդ եղան հիմնարկութեան եւ զարգացման արաբական նոր գրականութեան։

Չի կրնար մարդ ըստ բաւականին զարմանալ փութոյն եւ եռանդեան վրայ, որով թարգմանեցան եւ ընտանեցան հռչակաւոր ազգաց՝ առաւելապէս Յունաց ուսումնական գրեանն, — Պղատոնի, Արիստոտէլի ... փիլիսոփայական գրութիւններէն սկսեալ՝ մինչեւ Իպոկրատայ, Գաղենոսի ... բժշկական գրուածքն։ Թարգմանութեանց յաջորդեցին, ըստ մասին նաեւ զուգընթացան, կերպ կերպ մեկնութիւնք, ընդարձակ բացատրութիւնք, համառօտութիւնք, քաղուածոյք։ Բայց կրնայ ըսուիլ թէ անդստին ի սկզբանէ առանձին խնամք տարուեցաւ բժշկականութեան։ Այսպէս սկզբնական թարգմանութեանց մէջ կը գտնենք Գաղենոսի 16 Գրոց կոչուած հռչակաւոր մատեանն, զոր Աղեքսանդրիայի անուանի դպրոցին յոյն ուսուցիչք՝ նոյն բժշկապետին գրուածներէն քաղած եւ դասասացութեան յարմարցուցած էին յԸ. դարուն, Արաբացւոց այն կողմերն աշխարհակալելէն քիչ տարի յառաջ։ Գլխաւորաբար այս խմբագրութիւնն սկսան անմիջապէս ուսումնասիրել աշխարհակալ ազգին հետզհետէ բազմացող գիտունք, եւ զայս դրին հիմն իրենց բժշկական ուսմանց, զոր իրենց նորանոր մեկնութեամբքն եւ ինքնագիր երկասիրութեամբք ճոխացուցին եւ ընդարձակեցին։

Ինչպէս կը տեսնուի, Աղեքսանդրիա՝ գէթ առժամանակ մի՝ իբր թէ առաջին կեդրոնն եղաւ Արաբացւոց ուսումնականութեան եւ մանաւանդ բժշկական ուսմանց։ Բայց շատ չանցած՝ կը գտնենք մեծագոյն պայծառութեան հասած այլ եւս ուսումնարանք, որոց մէջ առաջին տեղին բռնեց Աբասեան Ամիրապետաց Պաղտատ մայրաքաղաքինն, ուրմէ ելան ի յաջորդ դարս հռչակաւոր բժիշկք, բուսաբանք, քիմիագէտք, դեղագործք. — թող զայլ նշանաւոր գիտունս, որ մեզի համար կարեւորութիւն չունին։

Արաբացւոց ուսումնական յառաջադիմութիւնն, առանձինն բժշկականութեան զարգացումն, մեծ ազդեցութիւն ըրաւ ոչ միայն շրջակայ՝ այլ նաեւ հեռաւոր ազգաց վրայ. զայս ոչ ոք կարող է ուրանալ։ Բայց զայն եւս պէտք չէ մոռանալ՝ թէ նաեւ զանազան օտարազգիք մեծապէս օգնած են իւրեանց գործակցութեամբ այս յառաջադիմութեան։ Թող զայն յոյն ուսումնականս եւ յատկապէս զյոյն բժիշկս, զոր այլեւայլ Ամիրապետք իրենց արքունիքն եւ ուսումնարանքն առած

էին, — կային ոչ սակաւ Ասորիք, Հրեայք, Պարսիկք, որ բուն Արաբացւոց չափ եւ թերեւս անոնցմէ աւելի միջամուխ եղան ի գործն եւ զարգացուցին։

Աստ համառօտ տեսութիւն մ՚ընենք այն նշանաւոր բժշկաց վրայ, որ ի մեր բժշկարանս շատ յաճախ կը յիշատակուին կամ ի վկայութիւն կը բերուին, որչափ հնար է՝ ժամանակագրական կարգաւ[1]։

1. Մասէրճուա՝[2] հնագոյն արաբական բժիշկն զոր մեր բժշկարանք կը յիշատակեն, հրեայ էր ազգաւ, բայց քաջածանօթ արաբերէն եւ ասորերէն լեզուաց։ Իւր կենաց ժամանակն՝ Արաբացւոց նոր գրականութեան սկզբնաւորելու միջոցին կ՚իյնայ, որով մեծապէս օժանդակած կը համարուի նոյն գրականութեան հիմնարկութեան։ Այս օժանդակութիւնն կամ գործակցութիւնն բրած է առաւելապէս ի մասին բժշկականութեան. որովհետեւ 683ին իւր ձեռօքն եղած է առաջին բժշկական գրուածոյն թարգմանութիւնն ասորերէնէ յարաբերէն, որ է՝ Ահարոնի ասորի երիցու բժշկական Քաղուածոյք (Pandectes)։ Ասկէ զատ՝ ունի երկու ինքնագիր աշխատութիւն։

2. Յովհաննէս (Եահեա կամ Եուհաննա) Մասուայէ որդին՝ յետնագոյն ժամանակաւ քան զՄասէրճուա՝ բայց բազմօք նշանաւոր քան զնա, ասորի քրիստոնեայ էր, ծնեալ 777ին կամ 780ին[3]։ Հայրն (Գէորգ

---

[1] Արաբական բժշկաց վրայ տրուած տեղեկութիւնք քաղեալ են գլխաւորաբար ի հետեւեալ գրոց։

Ասսեմանի, Արեւելեան Մատենադարան. Bibliotheca Orientalis, Գ. Հտրք (վերջինն երկու հատորի բաժանեալ), Հռոմ, 1719—1728։ — Ֆերդ. Վիւստէնֆէլտ, Պատմութիւն արաբական բժշկաց. Geschichte der arabischen Ärzte, Կէօթինկէն, 1840։ — Հէնր. Հեզէր, Դասագիրք պատմութեան բժշկականութեան. Lehrbuch der Geschichte der Medicin, Առաջին հատոր, Եէնա, 1875։ — Լուկ. Լըգլէր, Պատմութիւն արաբական բժշկականութեան. Histoire de la Médecine arabe, Բ. Հտրք, Փարիզ, 1876։

[2] Ի տեսութեանս զայն անուն միայն կը գործածենք հեղինակաց՝ որ մերայնոց սովորական են, աւելորդ համարելով յիշատակել զանազան տարբեր եւ մեծաւ մասամբ սխալաւոր գրութիւնքն՝ որ ոչ սակաւ ուրեք կը տեսնուին ի ձեռագիրս։

[3] Ի հայ բժշկարանս ընդհանրապէս կը կոչուի լոկ Մասուայէ որդին՝ առանց Յովհաննէս անուան. բայց հաւանական է որ բաւական ստէպ առանց յաւելուածոյ յիշատակեալ Յոհան, Եէհաննա, Էհանա, Հաննա... անուանք եւս նոյն անձն նշանակեն։

Մասուա) 30 տարի դեղագործութիւն ընելէն ետեւ՝ իւր ծննդեան (Ճոնտիսապուր) քաղաքն, ուր հռչակաւոր հին դպրոց եւ հիւանդանոց կար, Պաղտատ եկած եւ իբրեւ բժիշկ մեծ անուն հանած էր։ Յովհաննէս նոյն մայրաքաղաքին մէջ առանձին փութով բժշկականութիւն ուսաւ. եւ սկսաւ ոչ միայն հօրը պէս վարել բժշկութեան արուեստն, եւ կէս դարու չափ այլեւայլ Ամիրապետաց բժշկապետութիւն ըրաւ, այլ նաեւ Պաղտատի հռչակաւոր հիւանդանոցին վերակացու եղաւ։ Միանգամայն բժշկականութեան եւ տրամաբանութեան դասատուութիւն կ'ընէր. եւ իբրեւ ուսուցչապետ այնպէս համբաւ առացաւ, որ գիտունք եւս կը յաճախէին յունկնդրութիւն։ — Հարուն Էր-Րաշիտին հրամանաւ շատ գրքեր թարգմանեց, եւ Գլուխ թարգմանչաց տիտղոսն առաւ։ Շատ մ'ալ ինքնագիր երկասիրութիւններ ունի առաւելապէս բժշկութեան վրայ, յորոց իբր երեսուն յանուանէ կը յիշատակուին եւ մինչեւ ցարդ մնացած են. բայց կը կարծուի թէ մեծ մաս մ'ալ կորուսեալ ըլլայ։ — Մահուան տարին 857 կը դրուի։

3. Հոնէյն որդի Սահակայ, կամ Հուննա եւ Յունան՝ ինչպէս մեր բժշկարանք կը կոչեն, նախընթացէն աւելի հռչակաւոր է, եւ Թ. դարուն ամէնէն նշանաւոր արաբացի ուսումնականաց մին կը համարուի, որ մեծապէս գործակից եղած է իւր ազգին գրականութեան եւ ուսումնականութեան զարգացման։ Ծնեալ 809ին արաբացի քրիստոնեայ ընտանիքէ, ի հասակի երիտասարդութեան Պաղտատ գնաց եւ խնդրեց աշակերտիլ Մասուայի որդւոյն, որ զինքն անկարող կամ անյարմար համարելով՝ չուզեց ընդունիլ։ Ըստ ոմանց՝ ի սկզբան զինքն իբրեւ սպասաւոր (famulus) քովն առաւ, բայց յետոյ ուսումնատենչ երիտասարդին սաստիկ քննասիրութենէն ձանձրացած՝ արձակեց։ Զիարդ եւ իցէ, Հուննա ստիպեցաւ քանի մի տարի զանազան կողմեր շրջիլ ի խնդիր գիտութեանց, եւ յետոյ նորէն Պաղտատ դարձաւ՝ բաց ի գիտութեանց եւ առանձինն ի բժշկականութենէ՝ ասորերէն եւ յունարէն եւ արաբերէն լեզուաց քաջ հմտացած։ Իւր այս ուսումնական առաւելութեամբք ի սուղ ժամանակի այնչափ հռչակ հանեց, որ Ամիրապետն իւր բժշկապետն ըրաւ։ Այս չէ բաւական, զինքն յառաջագոյն իւր աշակերտութեան անարժան համարողն (Մասուայի որդին) արհամարհութիւնն զարմացման փոխելով, իրեն օգնական առաւ զանազան թարգմանութեանց համար։ Նոյն ինքն Ամիրապետն այլեւայլ գրոց թարգմանութիւնն անոր յանձնեց, զոր

խրոք ոսկեով կը կշռէր։ Հունէյնի իւր այս յատուկ թարգմանութիւններէն ի զատ՝ այլոց թարգմանածներն ալ կը քննէր եւ կ'ուղղէր։ Ինքնին եւս բազմաթիւ գրութիւններ յօրինած է, զոր ոմանք մինչեւ հարիւր կը հանեն։ Սովորաբար յանուանէ կը յիշատակուին իւն թարգմանութիւնք՝ ըստ մասին բժշկական՝ ըստ մասին փիլիսոփայական գրոց, եւ երեսուն ինքնագիր երկասիրութիւնք՝ իբր քսան բժշկական եւ տասն փիլիսոփայական գրոց։ Իւր բժշկական գրուածոց միոյն (հասարակօրէն կը կարծուի թէ ըլլայ Խնդիր+ կամ Հարցմունք+ Բժշկական+ գրոց) հրատարակութեան առթիւ տրուած է իրեն՝ Գլուխ բժշկաց Պաղտատայ անունն։ Մահն կը դրուի 871—877ին։

4. Սաբիթ կամ Թաբիթ Պէն Գուրրա (Աբուլ-Հասան —) որ ի բժշկարանս հասարակօրէն Սաբիթ Կուրրա կը կոչուի, բայց հաւանական է թէ ուրեք ուրեք՝ առանց յաւելուածոյ՝ Աբուլ Հասան անուամբ յիշատակեալն եւս ինքն ըլլայ, ծնած է ըստ ոմանց 826ին, ըստ այլոց՝ 836ին, ուսմունքն ի Պաղտատ ընելէն եւ քանի մի տարի բացակայ մնալէն ետեւ՝ նոյն մայրաքաղաքը դարձաւ, ուր եւ մեռաւ կամ 901ին եւ կամ 906ին։ Արաբերէնէ ի զատ՝ գիտէր ասորերէն եւ յունարէն, ըստ ոմանց նաեւ պարսկերէն. իսկ գիտութեանց մասին՝ այնչափ յառաջադէմ էր ի բժշկականութեան, յուսողութեան, յաստղաբաշխութեան եւ ընդհանրապէս ի փիլիսոփայութեան, որ իւր ժամանակին առաջին կարգի գիտնոց մէջ կը դասուի։ Նշանաւոր է իբրեւ գործական բժիշկ. մեծ համբաւ ունի նաեւ իբրեւ թարգմանիչ եւ իբրեւ մատենագիր։ Կ'ըսուի թէ 150ի չափ արաբերէն եւ 16ի չափ ասորերէն ինքնագիր երկասիրութիւնք ունենայ. որոց շատերուն անուանքն միջատմիօջէ կը յիշատակուին, եւ մեծաւ մասամբ բժշկութեան վերաբերեալ նիւթոց վրայ են։ Իսկ իւր ծանուցեալ թարգմանութիւնքն գրեթէ բոլոր փիլիսոփայական եւ այլ ուսումնական նիւթոց վրայ են։

5. Սահակ (Իսհակ) Հոնէյնի որդին, որ ի հայ բժշկարանս պարզապէս Սահակ կը կոչուի, հօրն առաջնորդութեամբ ուսմանց ընթացքն կատարելով, անոր կենդանութեան միջոցին օգնական եւ գործակից եղաւ ի թարգմանութիւնս, այնպէս որ առաջնոյն ընծայուած թարգմանութեանց ոմանք աւելի որդւոյն կը համարուին՝ քան թէ իւր։ Արաբացիք կը հաստատեն որ եթէ ոչ ի վեր քան զհայրն, գէթ անոր հաւասար էր ի թարգմա-

նութեան մասին, զոր եւ յետոյ շարունակեց։ Ունի նաեւ քանի մի ինքնագիր աշխատասիրութիւնք՝ բժշկականութեան վրայ, որք կ'երեւայ թէ հօրը գրուածոց չափ հռչակ հանած չեն։ Գործականապէս եւս բժշկական արուեստին կը զբաղէր, եւ մուտք ունէր միեւնոյն Ամիրապետաց մօտ՝ որոց բժշկապետութիւն ըրած էր իւր հայրն։ Ծննդեան տարին չի նշանակուիր. իսկ մահն կը դրուի 910ին կամ 911ին[1]։

6. Մոհամմէտ Իպն Զաքարիյա (Ապու Պէքիր —), զոր իւր ազգայինք հասարակօրէն Ռազէ կը կոչեն՝ ծննդեամբ Ռայ քաղաքէն ըլլալուն համար, իսկ մեր բժշկարանաց սովորականն է լոկ Զաքարիայի որդին, (ցանցառ միայն յաւելլով Մուհամմէտ անունն,) քան զամենայն արաբացի բժիշկս հռչակաւոր է եւ սովորաբար իբրեւ Արաբացւոց ամենամեծ բժիշկն կը նկատուի։ Ծննդեան տարին ճիշդ չգիտցուելով, կը համարուի թէ Թ. դարուն երկրորդ կիսուն աշխարհ եկած ըլլայ, ուստի եւ իւր գործունէութեան գլխաւոր միջոց կը դրուի Ժ. դարն, որովհետեւ հասակին երեսներորդ տարին անցնելէն ետեւ՝ հազիւ սկսած է բժշկական ուսմանց զբաղիլ։ Նոյն Ժ. դարուն առաջին կիսուն զինքն Ամիրապետին անձնական բժշկապետ, Պաղտատի հիւանդանոցին վերակացու, միանգամայն ուսումնարանին ուսուցչապետ կը գտնենք։ Այնչափ մեծ էր իւր անունն, որ յամենայն կողմանց ամբաւ բազմութիւն ուսանողաց եւ ուսումնականաց խուռն կը դիմէին իւր դասախօսութիւնքն լսելու։ Բայց ոչ այս դասաստացութիւնք եւ ոչ բժշկական արուեստին արտաքին զբաղմունքն արգելք կ'ըլլային իւր գրաւորական պարապմանց, որոց գիշեր ցերեկ այնպիսի փութով զհետ կ'ըլլար, որ կ'ըսուի թէ 200է աւելի գրուածք թողած է։ Թէպէտ այս թիւն ըստ ինքեան չափազանց կ'երեւայ. բայց կան մատենագիրք որ զանոնք մի առ մի կը թուեն՝ իւրաքանչիւրին անունն ի մէջ բերելով։ Իւր առաջին եւ ամէնէն ընդարձակ գրութիւնն է Էլ-Հաւի (Բովանդակիչ, Continens կամ Comprehensor), զոր կ'ըսուի թէ իւր մահուանէ ետեւ՝ աշակերտքն կարգաւորելով՝ 30 հատորի մէջ հրատարակած ըլլան։ Երկրորդն է Մանսուրի կոչեալ բժշկարանն, որ ի

---

[1] Կան նաեւ բաւական յաճախութեամբ Սահակ (Իսհակ) կոչուած այլ եւս արաբացի բժիշկք. եւ հնար է թէ ուրեք ուրեք անոնց մին կամ միւսն ըլլայ մերայնոց յիշատակածն։ Մենք Հոնէյնի որդին միայն կը յիշատակենք, որովհետեւ անուանակցաց մէջ նշանաւորագոյնն է։ — Տես նաեւ ի յաջորդսն, էջ 126, Ծան։

*տաան գիրս կը խօսի բժշկականութեան վրայ։ Ինչպէս ըսինք, այսպէս մի ըստ միոջէ կը թուուին Զաքարիայի որդւոյն գրութիւնքն, եւ կը հասնին մինչեւ 201։ Ինքնին յայտ է՝ թէ բազմագոյնք համառօտ պիտառութիւնք են. սակայն այս վերջնոց մէջ ալ կան՝ որ մեծ հռչակ հանած են. զ. օ. Ծաղէյ ախտէն վրայ գրածն եւ այլք ոչ սակաւք։ Իւր այս գրութիւնքն ոչ միայն իւր ազգայնոց մէջ մեծ ընդունելութիւն գտած են, այլ եւ արտաքոյ եւս տարածուած։ Եւրոպայի անուանի բժիշկք մինչեւ ԺԶ. դար անոնց քանի մի գլխաւորներն մեծ փութով կ'ուսումնասիրէին։ Իւր մահն 932ին (ըստ ոմանց 923ին) կը դրուի։*

7. Իպնի Սինա (Ապու 'Ալի —), զոր մերքն հասարակօրէն Սինայի որդին կ'անուանեն, թէեւ ուրեք ուրեք Ապու յԱլի կամ Ապու յԱլի Սինա ալ կը գտնուի, շատ բարձր դիրք կը բռնէ նաեւ առ Արաբացիս, մինչեւ ոմանք Զաքարիայի որդւոյն հաւասար, նա՝ թէ ի վեր քան զնա կը գնեն. բայց աւելի հռչակ հանած եւ ծանօթացած է առ Եւրոպացիս, որ ընդհանրապէս Աւիսեննա (Avicenna) անուն կու տան իրեն։ Ծնած է 980ին եւ մեռած 1036ին կամ 1037ին, ուստի եւ ոչ վաթսուն տարի ապրած. սակայն եւ այնպէս իւր հմտութեամբքն եւ փիլիսոփայական ու բժշկական գրուածովք այն աստիճան համբաւ ստացած է, որ ոչ միայն Արաբացիք՝ այլ նաեւ շատ օտարազգիք զինքն յետ Արիստոտելի աշխարհիս ամենամեծ փիլիսոփայն կը համարին։ Անդստին ի տղայութենէ արդէն կը տեսնուէր թէ ինչպիսի մեծ հանճարոյ տէր է. իսկ գիտութեանց փափաքն այնպէս սաստիկ էր՝ որ հազիւ քանի մի ժամ կու տար քնոյ։ Բոլոր ժամանակն ալ այնչափ փութով ուսմանց կը պարապէր, որ տասնուվեց տարւան հասակին՝ բաց յայլոց գիտութեանց՝ լիով ուսած էր զբժշկականութիւն, եւ տասն'ութը տարւան՝ բովանդակ ուսմանց ընթացքն աւարտեց։ Հազիւ քսանումէկ տարւան էր՝ երբ իւր առաջին գրութիւնն հրատարակեց, եւ այն ժամանակէն սկսեալ՝ հետզհետէ մինչեւ ցվերջն ամէն կերպ նիւթոց վրայ հարիւրէն աւելի գրուածք հանեց, յորս կան ընդարձակ եւ բազմահատոր մատեանք, բայց կան նաեւ միակ կամ քանի մի թերթիւ պիտառութիւնք։ Այս իւր գրութեանց մէջ շատ հռչակեալ է Կանոն կամ Հրամանագիրք (Préceptes) Բժշկականութեան անուանեալ մատեանն, որ դարերով ամէն կողմ կը գործածուէր իբրեւ հիմն բժշկական ուսմանց։ — Համառօտիւ ասել՝ թէ իբրեւ փիլիսոփայ եւ թէ իբրեւ բժիշկ այնպիսի

համարում կար իւր վրայ, որ կը կոչուէր Ռէէս (իշխան) եւ Շէյթ (տէր) եւ յաճախ եւս միաւորութեամբ երկուցն՝ Շէյք-իւր-Ռէիս, զոր անուն կը գտնենք նաեւ ի հին հայ բժշկարանիս՝ Շեխ ըռայիս։

Այս եօթն նշանաւոր բժիշկք են, որ ի հայ բժշկարանս առաւելապէս կը յիշատակուին կամ ի վկայութիւն կը բերուին։ Կան այն այլ եւս ոչ սակաւք՝ որ ուրեք ուրեք կը գործածուին, բայց ոչ այնչափ յաճախ, եւ չեն իսկ այնպէս հռչակաւոր ինչպէս ի մէջ բերեալ եօթանքն։ Յետոյ յառաջ պիտի բերենք Ամիրտոլվաթայ խօսքն, յորում մեր յիշատակածներէն աւելի՝ երեք արաբացի բժիշկ միայն կ՚անուանէ, որ են Յեսու, Ապուճարեհ (որ նաեւ Ապուճարէճ կը գրուի,) եւ Մասեհ¹։ Ասոնց առաջնոյն վրայ միայն հարկ կը համարինք խօսիլ, թող տալով միւս երկուքն՝ ինչպէս նաեւ այլ քանի մի բժիշկներն, զոր ինքն եւ կամ՝ այլք աւելի կամ պակաս կը յիշատակեն. գ. օ. Թանատուղ, Մատաի, Եուսուֆի Սահիր, եւայլն։

Յեսու— բժիշկն, որ անտարակոյս նոյն է այլոց Յոյսէ կամ Յեսուէ անուանածին հետ², մեզի համար այն պատճառաւ կարեւորութիւն ունի, որ ի հաղորդակցութեան գտնուած է Հայոց հետ։ Արդ այսու անուամբ տասուերկու եւ աւելի արաբական բժիշկ կը գտնենք՝ գրեթէ ամէնքն ալ քրիստոնեայ, որոց մին Հոնէինի († 877) աշակերտած է, երկրորդ մ՚ալ Սապիթ Կուրայի († 906)։ Այս երկուքն՝ անուանակցաց հնագոյնքն են. իսկ յետնագոյնք մինչեւ ցԺԴ. դար կը հասնին։ Թէ ո՞րն է մեր բժշկարանաց մէջ ի վկայութիւն կոչուածն, զայն չէ դիւրին որոշել. կամ թէ մի՞ն միայն է՝ եթէ զանազանք, ո՞վ կարող է ապահովութեամբ հաստատել։ Իսկ Հայոց հետ հաղորդակցութիւն ունեցողն հաւանական է որ ըլլայ վերոյիշեալ երկու հնագոյններէն սակաւ մի յետոյ ժամանակաւ Ապու Ալի Իսա Պէն Ջէրրա, որոյ մահն կը համարուի թէ եղած է ըստ ոմանց Ժ. դարուն սկիզբներն, եւ ըստ այլոց՝ նոյն դա-

---

¹ Մասեհ անուամբ երկու բժիշկ կայ. չենք գիտեր թէ մերայոց յիշատակածն ո՞րն է։ — Երկրորդին վրայ († 1000), որ Խորասանցի վերադիր կը կրէ, կ՚ըսուի թէ Սինայի որդւոյն բժշկականութեան ուսուցիչն եղած է։

² Հայ բժշկարանաց այս այլեւայլ անուանք կը համապատասխանեն առ Արաբացիս միշտ Իսա՝ Յիսուս անուան, զոր ինքեանք անփոփոխ կը պահեն. իսկ Ասորիք ոչ երբեք կը գործածեն նոյն նուիրական անունն հասարակ մարդու վրայ, այլ փոխանակ այնր կը դնեն Յեսու՝ Յեշով։

րուն կէսերը. որովհետեւ այս յետնոյն ժամանակն կը համաձայնի մեր բժշկարանաց յիշատակած դէպքին՝ զոր յետոյ (15) պիտի տեսնենք։ — Երեքն ալ բուական անուանի բժիշկ են, եւ գրուածներ ալ ունին։

Մեր բժշկարանաց մէջ քանի մի անգամ յիշատակեալ կը գտնենք այլ արաբական բժիշկ մի, որ առանց սեպհական անուան՝ կը կոչուի Ծեր Բժիշկն Պողոսոյ կամ լոկ Պողոսոյ։ Ինքն ալ՝ վերոյիշեալ Յեսուէ բժշկին պէս՝ ի հաղորդակցութեան գտնուած է Հայոց հետ, մանաւոր դեղ սահմանելով ծանօթ իշխանի մի։ Բայց բժշկարանաց խօսքն այնպէս անորոշ է, որ չէ հնար ապահովութեամբ իմանալ թէ արդեօք ասոնք դեղագիրն ի հեռուստ յղած են, թէ անձամբ եկած այն իշխանաց մօտ՝ որոց դեղ սահմանած կ'ըսուին։ Վասն զի չէ ինչ անսովոր՝ ազգաւ կամ լեզուաւ արաբացի բժշկաց ի Հայս գալն։ Իրօք ալ ի պատմութեան արաբական բժշկականութեան կը կարդանք քանի մի բժշկաց վրայ, թէ հայ թագաւորի կամ իշխանի բժշկապետութիւն ըրած եւ մեծ հարստութեան տէր եղած ըլլան։ Ի մէջ այլոց նշանաւոր է Գոսդա Պէն Լուգգա Պաալպէկցի յոյն բժիշկն, որ Ժ. դարուն առաջին կիսոյն արաբական անուանի բժշկաց եւ գիտնոց կարգը կը դասուի՝ իւր բազմաթիւ թարգմանութեանց եւ ինքնագիր երկասիրութեանց համար։ Արդ ասոր վրայ կը յիշատակեն թէ հայ իշխանի մի մօտն եկած, զանազան գրուածներ յօրինած եւ անդ մեռած ըլլայ 923ին։

Զարմանք է որ հայ բժշկարանաց մէջ՝ որչափ մեզի ծանօթ է՝ այսպիսեաց ամենեւին յիշատակութիւն չկայ, եւ որչափ գիտենք՝ Գոսդա Պէն Լուգգայի անունն առ մերայինս եւ ոչ մի անգամ կը հանդիպի, ոչ ոք անոր գրուածներէն վկայութիւն կը բերէ։

Դառնանք արդ հայ բժշկականութեան, որ ինչպէս տեսանք (էջ 114), հիմնեալ է արաբականին վրայ, եւ մինչեւ ցվերջն նոյն հիման վրայ հաստատեալ յառաջ կ'երթայ։ Այսպէս՝ մեր ամէն բժշկարանաց վրայ կրնայ առնուիլ ինչ որ Ամիրտովլաթ իւր ընդարձակ բժշկականութեան Յառաջաբանին մէջ՝ իւր նոյն երկասիրութեան վրայ կը գրէ. "Եւ այլ "իմացիր, կ'ըսէ, որ գիրքս՝ մեր խօսքն չէ, յառաջի "իմաստասիրաց եւ վերջին փիլիսոփայիցն եւ այս "ամենայն բժշկաց խօսքն է, որ է՝ Բագարատն,

"եւ Գեղիանոսն, եւ Արծիճանիսն, եւ Ֆլուսն, եւ
"Արպիսաւսն, եւ Ըռուֆաւսն, եւ Դեւճանիսն, եւ
"Մարճուէն, եւ Ցեսուն, եւ Մասուվային որդին,
"եւ Ապուճարեհն, եւ Մասեհն, եւ Մահամադ՝
"Զաքարիային որդին, եւ Սապիթ Կուրանն, եւ
"Հունան, եւ Իսաղն, եւ Սինային որդին, եւ այլ
"բազում ժողովուրդք՝ որ ի այս արուեստս շատ
"աշխատ եղեն։ Մեք սոցա գիրքն ընտրել ենք եւ
"գրել շատ աշխատանօք"։

Արդարեւ այս խօսքիս մէջ՝ յառաջ քան զԱրաբացիս յիշատակեալ են անուանի յոյն բժիշկք, եւ ամէն հայ բժշկարանք լի են ասոնց եւ այլ եւս յոյն բժշկաց վկայութեամբք, որ խառն ընդ արաբականացն ի մէջ կը բերուին։ Բայց թէեւ իսկ մտադրութիւն բաւական է իմանալու՝ թէ այդ յունական գրութիւնք ի ձեռն արաբական թարգմանութեանց, քաղուածոյից, մեկնութեանց, համառօտութեանց ծանօթացած էին մերայնոց։ Այլազգ ալ չէր կրնար ըլլալ. վասն զի ի միջին դարս շատ ցանցառ պիտի գտնուէին ի Հայս հելլենագէտ աշխարհականք։ Եւ արդէն յոյն բժշկաց անուանք յայնպիսի կերպարանս յառաջ կը բերուին միշտ, որ անմիջապէս կը տեսնուի թէ արապիկ կաղապարի վրայ ձուլեալ են։ Ապա թէ ոչ, ի՞նչպէս կրնային՝ առանց արաբերէնի միջամտութեան՝ յունական անուանք հայերէնի մէջ այն այլընդայլոյ ձեւերն առնուլ. ի՞նչպէս կրնար՝ օրինակի համար՝ հայ գրչի ներքեւ, Իպոկրատէս ըլլալ՝ Բուքրատ եւ մինչեւ Բուղրատ, Գաղենոս՝ Գեղիանոս եւ մինչեւ Ճալինոս, Արքիգենէս՝ Արծիճանիս եւ մինչեւ Արծիասոս, Պաւղոս (Եգինացի)՝ Ֆլուս, Որիբաս՝ Արպիսաւս, Ռուփոս՝ Ըռուֆաւս, Դիոգենէս՝ Դեւճանիս։ Ի հաստատութիւն կարծեացս կրնայ յառաջ բերուիլ նաեւ այն՝ որ գրեթէ բոլոր բժշկական նիւթոց, դեղոց, հիւանդութեանց անուանք, թէպէտ յոյն՝ թէպէտ արաբացի հեղինակաց բանիւք ի մէջ բերուին, մե-

ծագոյն մասամբ արաբական կամ արաբերէնի վրայ ձեւուած բառերով կ՚ելլեն մեր առջեւ[1]։

Պէտք չէ զարմանալ հայ բժշկականութեան այսպէս արաբականէն ծագման եւ անոր հետ այնչափ անձուկ կապակցեալ մնալուն վրայ. ընդ հակառակն՝ փոքր ինչ մտադրութիւն պարագայից տեղւոյն եւ ժամանակին՝ բաւական է տեսնելու թէ շատ բնական էր այդ։ Գիտենք թէ ի միջին դարս ժողովրդեան դիւրահաս լեզուաւ ուսումնական գրքեր չգտնուիլը (էջ 38), միանգամայն ազգային ուսումնարանաց պակասութիւնն ըստ ինքեան կը մղէին զազգային ուսումնատենչս դիմել այն տեղերն՝ ուր հնար էր իրենց գիտութեան փափաքն յագեցընել. եւ ո՞ւր աւելի կարող էին դիւրաւ եւ կատարելապէս այս նպատակին հասնիլ, եթէ ոչ՝ յարաբական հռչակաւոր ուսումնարանս, որոց համբաւն ի հեռաւորագոյն կողմանց իսկ շատերն անդ կը ձգէր։ Քաղաքական յարաբերութիւնք եւս մեծ գրգիռ էին ազգայնոցս առ այն։

Աւելի եւս բնական կ՚երեւայ արաբական բժշկականութեան այս ազդեցութիւնն մերայնոց վրայ, եթէ միտ դնենք որ ԺԱ. դարէն սկսեալ՝ միեւնոյն ազդեցութիւնն ունեցած է նաեւ եւրոպական ազգաց վրայ, որոց նշանաւոր գիտունք մինչեւ ԺԶ. դար մեծ փութով եւ հոգաբարձութեամբ կ՚ուսումնասիրէին Արաբացւոց բժշկական գրութիւնքն, զանոնք կը դասախօսէին յուսումնարանս, անոնց կը հետեւէին իրենց գրութեանց մէջ։ Միով բանիւ՝ բովանդակ ուսումնական աշխարհ զԱրաբացիս կը ճանչնար իբրեւ առաջին հեղինակութիւն ի բժշկականութեան։ Այսր յայտնի նշան է՝ բազմաթիւ բժշկական գրուածոց նոյն միջոցին թարգմանուիլն յարաբերէնէ ի լատիներէն, որ ինչպէս ծանօթ է՝ մինչեւ անցեալ դարուն վերջերն միակ ու-

[1] Տես նաեւ Պատմ. Հայ. Դպր. Հտ. Ա. էջ 654. եւ Բազմավէպ, 1881, էջ 35։

ուսմնական լեզու էր յամենայն եւրոպական համալսարանս։ Ի մէջ այլոց յիշատակութեան արժանի են Զաքարիայի որդւոյն եւ Աւիսեննայի գլխաւոր բժշկական գրուածոց լատին թարգմանութիւնքն, որ ամենայն ուրեք արտաքոյ կարգի ընդունելութիւն գտած էին[1]. եւ այժմ իսկ՝ որ յայնպիսի բարձրութիւն հասած է բժշկական գիտութիւն առ Եւրոպացիս, դարձեալ նոյն արաբական գրութիւնք բոլորովին ի միակողմն թողեալ չեն։ — Եւրոպական գիտունք կը խոստովանին թէ Սալեռնոյի համալսարանն, որ ի ԺԱ. դարու հիմնեալ է եւ իբրեւ արշալոյս կը նկատուի նորոյ բժշկականութեան յԵւրոպա, իւր սկզբնաւորութիւնն առած է յԱրաբացւոց։

Իրաց այս վիճակին մէջ՝ կարծենք թէ ոչ ոք կարող է մեղադրել մերազնեայ բժշկաց այսպէս Արաբացւոց հետեւիլն եւ զհայկական բժշկականութիւնն արաբականին վրայ ձեւելն։ Ցայսմ մասին եթէ կայ ցաւալի պարագայ, այն է՝ որ յընթացս այնչափ դարուց չէ գտնուած Հայ բժիշկ, որ թերեւս շատ տարիներ յարաբական ուսումնարանս դեգերելէն, հաւանաբար անոնց անուանի ուսուցչապետաց դասախօսութիւնքն լսելէն, հռչակաւոր գրուածքն ուսումնասիրելէն ետեւ, — ամենայն մասամբք ինքնակաց եւ անկախ բժշկական գրութիւն յերեւան հանած ըլլայ։ Գէթ այս ստոյգ է՝ որ այժմ մեզի ծանօթ չէ այսպիսի գրուած։

Ամիրտովլաթ առաջի մեր կը դնէ չափաւոր բազմութիւն մի Հայ բժշկաց, որոց համար կը հաստատէ թէ շատ գրքեր շինած էին։ „Աւէ իմաս-
„տունն Սողոմոն, կը գրէ իւր Բժշկական բառարա-

[1] Զաքարիայի որդւոյն Էլ-Հավէ մատեանն (ԺԳ. դարու) եւ Մանսուրէ անուանեալ գիրքն, ինչպէս նաեւ Սինայի որդւոյն Կանոնէ բժշկականութեան (ԺԲ. դարու) լատիններէն թարգմանուած են, նոյնպէս այլ եւս գրքեր եւ պիտառութիւններ։ Ասոնցմէ ոմանք շատ անգամ տպուած են. կ'ըսուի թէ Կանոնէ մինչեւ 30 տպագրութիւն ունեցած են։

"նին նախաշաւղին մէջ, թէ գիտութիւնն լոյս է, "եւ անգիտութիւնն խաւար, եւ ով որ զուսումն "ունի՝ զլոյսն ունի, եւ այս բժշկութեան արհեստս "ի գիտնա(կա)նութենէն եւ յուսմանէն մասն "է . . . ։ Իւ ի յայս բանիս առին առաջին բժշկա- "պետքն մեր՝ մեծն Մխիթար բժիշկն, եւ Ահարոն "բժիշկն, եւ որդի նորա Ստեփանոս բժիշկն եւ տոհմն "նոցա, Ճոշէն բժիշկն, եւ Սորգէս բժիշկն, եւ Յո- "կոբ բժիշկն, եւ Դէղին բժիշկն, եւ Սիմոոն "բժիշկն, եւ Վահրամ բժիշկն, որ շատ գրեանք "շինել էին վասն դեղերուն զօրութեանն եւ օգ- "տութեանն։ Կարճառօտ էին արել„։ Իւր աստ անուանածներէն դուրս՝ Թ. դարէն սկսեալ կը գտնենք այլ եւս հայ բժշկաց անուանք, ինչպէս ի սկզբան Հատածիս յիշատակեցինք, թէեւ չենք գիտեր թէ ունի՞ն ինչ ի գիր աւանդեալ։ Գիտենք նաեւ ի Հերացւոյն (էջ 54) թէ իրմէ յառաջ կային հայերէն բժշկական գրութիւնք, հայ բժշկաց ինքնագիր երկասիրութիւնք՝ եթէ թարգմանութիւնք, այն չէ յայտ։

Այս ամենայն ճշմարիտ է. սակայն իրականութեան եթէ նայինք, ոչ այլ ինչ կը գտնենք՝ բայց եթէ Հերացի բժշկապետին Ջերմանց մխիթարութիւնն[1], եւ — գրեթէ երեք դարու դատարկ

---

[1] Ամիրտովլաթայ յիշած բժիշկներէն՝ միայն Ստեփանոս բժիշկն քանի մի անգամ ի վկայութիւն կոչուած կը գտնենք ի բժշկարանս. միացեալոց անուանք չեն տեսնուիր մեզի ծանօթ գրոց մէջ։

Կը գտնուին արդարեւ ի բժշկարանս Հատածք Յոկոբայ անուամբ. սակայն անոնք հաւանագոյնս Ամիրտովլաթայ յիշած հայ բժշկին գրութիւնն չեն, այլ հնագոյն ժամանակաց համանուն արաբական բժշկի մի գրուածներէն թարգմանեալ։ Սոյն արաբական բժիշկն՝ որ Ապու Եուսուֆ Եաքուպ Էլ-Քէնտի կը կոչուի, Թ. դարու († 860) հռչակաւոր արաբացի ուսումնականաց մին է, եւ առհասարակ՝ Թէժչկոդէտ Իւ Ֆէլասոֆայ վերադիրը կը կրէ։ Արդ՝ վերյիշեալ Հատածներն աստ կը համարինք, եւ ոչ Ամիրտովլաթայ յիշատակած բժշկին. վասն զի այն Հատածոց վրայ ալ Յակոբ անուանէն անբաժին է միեւնոյն Թէժչկոդէտ Իւ Ֆէլասոֆայ վերադիրն. միանգամայն նոյն Հատածոց լեզուն (սակաւ

միջոցէ ետեւ — վերոյիշեալ Ամիրտովլաթայ բժշկարանն, եւ իրմէ մի դար կամ աւելի յետոյ Ասարայ Սեբաստացւոյ գրութիւնն, որ հայ բժշկի անուն կրեն[1]: Եւ ներուի մեզ ասել, այս երեք գրութիւնք

---

մի ռամկախառն գրաբար) շատ աւելի հնութեան կնիք ունի՝ քան զոր հնար է ակնունել միւս Յակոբ բժշկէն: — Կարծենք չենք սխալիր՝ եթէ յայժմ մասին մեզի համամիտ համարինք նաեւ մեր մեծարոյ Թղթակիցն, որ ի ձեռին ունենալով Յովհաննու Բժշկապետի Եւ Փիլիպպոսի Հատուածներն, զանոնք իբրեւ հայ բժշկի գործ չի նկատեր. ապա թէ ոչ՝ կը յիշատակէր ի կարգի աշխարհական մատենագրաց, ինչպէս յիշատակած է զՅովհաննէս բժշկապետ՝ թէեւ այս վերջինս գրուածք չունի: (Տես էջ 43, 44:)

Այսու առթիւ կ'ուզենք քանի մի բառ յաւելուլ նկատմամբ Սահակայ բժշկի: Ի Պատմութեան Հայ. Դպր. (Հտ. Ա. էջ 655) Մխիթարայ Հերացւոյ ի վկայութիւն կոչած յոյն եւ արաբացի բժշկաց մէջ՝ կը յիշատակուի նաեւ Սահակ՝ հոյլովն բժիշկ: Այս խօսքէն բնականապէս կը հետեւի թէ եղած է կանխագոյն քան զՀերացի՝ Սահակ անուամբ հայ բժիշկ, որոյ գրուածն նոյն բժշկապետն ի ձեռին ունենալով՝ ի կիր արկած եւ կարծիքներն ի մէջ բերած է: Արդ ըստ մեր տեսութեան՝ Մխիթարայ ի կիր արկածն եւ ի վկայութիւն կոչածն՝ ոչ եթէ հայ բժշկի գրութիւն է, այլ այն արաբացի բժշկին, որոյ մասին յառաջագոյն (էջ 118) տեղեկութիւն տուինք: Իսկ թէ նոյն արաբացի Սահակ բժիշկն է առ Հերացւոյն, եւ չկայ հայ բժիշկ նմին անուանակից՝ որ բժշկական գրութիւն թողած ըլլայ, անտի յայտ է՝ որ նաեւ Ամիրտովլաթ արաբացի Սահակ բժիշկ միայն կը ճանչնայ, զոր եւ ի կարգի արաբական բժշկաց կը դասէ անուանելով Իսող, ինչպէս սակաւ մի յառաջ (էջ 123) տեսանք: Ապա թէ ոչ՝ չէր կարող ասա մի ըստ միոջէ անուանած ազգային բժշկաց շարքէն դուրս թողուլ զայնպիսի բժիշկ՝ զոր ինքն Մխիթարէն շատ աւելի յաճախութեամբ ի վկայութիւն կը բերէ եւ որոյ ազգութիւնն ի հարկէ ծանօթ լինելու էր իրեն: — Դարձեալ Բուղմուհէր (1881, էջ 35) ի կարգի արաբական բժշկաց կը դասէ զՍահակ, թէեւ տարակուսի (հարցման) նշան յաւելլով առերի:

Առոր եւ նմանեաց վրայ կարող ենք առնուլ (փոխեալ զփոխելիս,) մեր մեծարոյ Թղթակցին գրածն ի պատասխանի հարցմանս նկատմամբ ազգայնութեան Փիլիպպոսի բժշկապետի, զոր քանի մի անգամ ի վկայութիւն կոչած է Մխիթար. "Փիլիպպոս, կ'ըսէ, փափագելի էր լինել հայ. "այլ կարծեմ հին բժիշկ է, հին քան զԳալիենոս եւ ի "սմանէ յիշատակեալ":

[1] Գիտենք թէ կայ՝ այս երկուքէն զատ եւ վերջնոյն քաղաքակից՝ երրորդ բժիշկ մ'ալ, այն է՝ Պունեաթ Սեբաստացի, որ ասոնց նման առանձինն բժշկարանի հեղինակ կը համարուի. բայց թէ իւր ամբողջ գրութիւնն

եւս՝ թէեւ համարինք որ ըստամանեայ անկախութիւն ունենան եւ ճիշդ թարգմանութիւն չըլլան, ինչպէս Գերմանաց մխիթարութեան մասին (էջ 72) տեսանք. սակայն չեն բոլորովին ինքնակաց հեղինակութիւնք: Իսկ այլ ամենայն բժշկական գրուածոց, որ նոյն երեքհարիւր տարուան միջոցէն, կամ անկէ կանխագոյն եւ յետնագոյն ժամանակներէն մեզի հասած են, անծանօթ են հեղինակք: Այս ամէն գրութիւնք՝ որչափ գիտենք կամ կարող ենք գուշակել՝ թարգմանութիւնք են կամ հաւաքմունք, քաղուածոյք եւ համառօտութիւնք, որոց ոմանց վրայ այնչափ ինչ միայն նշանակուած է՝ թէ այս կամ այն թագաւորին հրամանաւ թարգմանեալ, այս կամ այն իշխանին կամ բժշկին կիրարկութեան համար գաղափարեալ են. այլ ոչ երբեք հեղինակի անուն նշանակեալ կայ:

Չի կրնար ուրացուիլ թէ այս հանգամանք բժշկարանաց մերոց չեն այնչափ հաճոյական. բայց ասոր համար պիտի համարի՞նք արդեօք թէ բոլորովին աննշանակ են այն գրութիւնք, չունին ամենեւին կարեւորութիւն: Քա՛ւ լիցի: Արդարեւ ամէն մարդ կը տեսնէ՝ որ եթէ անանցմէ գէթ ոմանք այն անկախութիւնն ու ինքնակացութիւնն ունենային, որ կը բաղձացուէր եւ իրաւամբք կը սպասուէր, ի հարկէ շատ աւելի ծանրակշռութիւն կ՚ունենար հայ բժշկականութիւնն: Բայց նաեւ յայժմու վիճակիս՝ հայերէն բժշկարանք չեն անօգուտ եւ անպիտան. ընդ հակառակն մեծ ծառայութիւն կրնան մատուցանել մանաւանդ այն գիտնոց՝ որ մանաւորապէս զհետ են արաբական բժշկականութիւնն ուսումնասիրելու: Այսպիսի մասնագէտք մեծ օժանդակութիւն կը գտնեն ի մեր բժշկարանս, որ լի եւ գեղեալ ըլլալով արաբական հռչակաւոր բժիշկներէ

---

այժմ մնացած է՝ այն մեզի ծանօթ չէ. Հազիւ աստ անդ սակաւաւոր հատուածք կը գտնուին: Տես առանձինն Բազմավէպ, 1881, էջ 34:

առեալ վկայութեամբք, բազմօք կարող են օգնել զանազան նկատմամբք իրենց լուսաւորութիւն տալու, տարակուսական խնդիրներն լուծելու, արաբական սկզբնագիրներն կորուսեալ գրոց վրայ տեղեկանալու: Միով բանիւ՝ մեր բժշկարանք եթէ ծանօթանան, այնպէս օգտակար կրնան ըլլալ ի մասին բժշկականութեան, ինչպէս եղան ի դարուս՝ մեր միջին եւ վերջին ժամանակայ պատմագիրք նկատմամբ պատմութեան միջին եւ վերջին դարուց:

## 15.

## Դ. ՀՆԱԳՈՅՆ ԲԺՇԿԱՐԱՆՔ

Մեզի ծանօթացած բժշկարանաց մէջ՝ հնագոյնքն ըստ գրչութեան են այս երկուքն: Ա. Ս. Ղազարու մատենադարանին մագաղաթեայ բոլորգիր բժշկարանն, որ ի Թուին Հայոց ՉԽԳ. = 1294 գրուած է հրամանաւ Հեթմոյ արքայեղբօր՝ Կոռիկոսի տեառն, ինչպէս կը տեսնուի գրչագրին սկիզբն, մէջն ու վերջը գրուած երեք յիշատակարաններէն: (Տես Սիսուան, էջ 337:) Այս այն բժշկարանն է, որ թարգմանեալ կ'ըսուի յարաբերէնէ՝ Գագկայ (Առաքելոյ) ժամանակն, զոր եւ քանի մի անգամ յիշատակած ենք: (Տես առանձինն 10:) — Բ. Մեր մատենադարանին (Թ. 101, Ա.) բժշկարանն, նոյնպէս բոլորգիր՝ բայց թղթեայ, գրեալ ի Թուին Հայոց ՊՁԷ. = 1438, զոր օրինակել տուած է Յովհաննէս Հէքէմ՝ որդի Վարպետ Սկանտարի, (որ ինքնին բժիշկ էր, ինչպէս ձեռագրին մէջ կը նշանակուի տեղ մի ի լուսանցսն, ուր օտար գրչէ գրուած է «Աստուած ողորմի Սկանդարին հոգուն՝ հեքէմինն»:) — Երկու ձեռագիրք եւս ըստ բաւականին վայելուչ գրչութիւն են եւ չափաւորապէս ազատ ի սխալանաց: — (Ըստ Մայր ցուցակի Էջմիածնի, տպ. ի Տփղիս, 1863, ի մէջ 22 բժշկական գրուածոց մատենադարանին՝ կայ հնագոյն եւս բժշկարան, որ է եօթներորդն ի կարգին, բոլորգիր գրեալ բամբակեայ թղթի վրայ ի Թուին ՉԻԵ. = 1276, որ յիշատակարան եւս ունի: Ասոր վրայ առ այժմ այսչափ միայն:)

Բժշկականութեան վրայ մինչեւ ցմեզ հասած գրուածոյ մէջէն՝ առաջիկայ Հատուածիս նիւթ պիտի առնունք երկու առաջին ձեռագիրքն եւեթ, զոր ի վեր անդր ի մէջ բերինք: Վասն զի մեզի ծանօթ գրութիւններէն՝ ըստ մեր տեսութեան՝ այն երկուքն միայն կը վերաբերին այս ժամանակի միջոցին: — Բայց անոնց հետազօտութեան չսկսած՝ հարկ է որ համառօտիւ տեղեկութիւն տանք հայ բժշկարանաց կազմակերպութեան վրայ:

## ՀԱՄԱՌՕՏ ՏԵՍՈՒԹԻՒՆ
## ՀԱՅ ԲԺՇԿԱՐԱՆԱՑ ՎՐԱՅ ԸՆԴՀԱՆՐԱՊԷՍ

*Մեր անձամբ հետազօտած բժշկական գրոց եւ յայլոց առած տեղեկութեանցս նայելով, այս կերպ գրուածք այլ ամենայն գրութիւններէն տարբեր վիճակի մէջ կը գտնուին: — Ձեռագիր օրինակք որպիսի եւ է թէ գրաբար եւ թէ ռամկօրէն կամ ռամկախառն գրոց, յաճախ իրարմէ տարբերութիւն կ'ունենան ըստ առաւել կամ նուազ ճշդութեան, երբեմն մին ի մասունս ինչ պակասաւոր եւ միւսն անթերի կամ յաւելուածովք կ'ըլլայ. — բայց հասարակօրէն ըստ գլխաւոր մասանց եւ ըստ ամբողջութեան՝ միշտ յայտնի կ'երեւայ թէ միեւնոյն գրոց այլեւայլ օրինակք են:*

*Չէն այսպէս բժշկարանք. իւրաքանչիւր ձեռագիր սովորաբար այնչափ տարբեր է յայլոց, մինչեւ դժուարաւ կը գտնուին երկու օրինակք՝ որ ըստ ամենայն մասանց իրարու հետ նոյն ըլլան: Թող լեզուի եւ ոճոյ, կամ բառից եւ ասացուածոց տարբերութիւնքն, թող աստ անդ այլեւայլ բացատրութեանց եւ պարբերութեանց իսկ զեղչումն եւ կամ յաւելումն, (որ այս ամենայն անսովոր չէ յայլ եւս ռամկօրէն գիրս,) նաեւ նիւթոց կողմանէ կը գտնուի զանազանութիւն: Շատ անգամ միեւնոյն գործոյ իւրաքանչիւր օրինակն կ'ունենայ ինչ ինչ՝ որ յայլ օրինակս չի գտնուիր: Ամէն օրինակող հասարակօրէն իւր նախագաղափարին այս կամ այն մասն ըստ կամի ի բաց կը թողու, կամ ընդ հակառակն՝ իրեն պատշաճ երեւցածն յայլ գրոց առնլով՝ ի ներքս կը մուծանէ: Կրնայ նաեւ կարծուիլ թէ իւրաքանչիւր օրինակող առաջի իւր ունենալով այլեւայլ գրեան, անոնց ամէնէն՝ իւր յատուկ ընտրութեան համեմատ, կամ մանաւանդ ըստ առաջնորդութեան անձին (բժշկին) յորոյ ի պէտս կ'օրինակէ, մասն մասն կը հաւաքէ, հնոյն մէջ ի նորոյն՝ նորոյն մէջ ի հնոյն կը խառնէ: Միանգամայն իրեն առաջնորդող բժշկին կարծիքներն ու փորձառութիւններն ի տեղիս տեղիս կը մուծանէ: Այսպէս՝ իւրաքանչիւր ձեռագիր իբր թէ նոր բժշկարան կ'ըլլայ: Ասացելոցս ցոյցն կը տեսնենք ի յետագայքս[1]:*

[1] Թերեւս այս կերպիւ հաւաքելու կամ խմբագրելու գործողութիւնն իմացուի կոչել, կոչմող, կոչել փոխող բառերով՝ որ մեր ձեռագրին յիշատակարանաց մէջ գործածուած են: Ի սկզբան ձեռագրին կը կարդացուի. “Զաս- “կաւագիծ աշխատողս եւ զհաւաքող գրոցս զԱբրահամ “նուաստ աբեղայս աղաչեմ յիշել ի Տէր...„: Ի վախճանին

*Յառաջ կը բերենք արդ վերոյիշեալ երկու բժշկարանաց պարունակութիւնն՝ սկսելով երկրորդէն։ — Ձեռագրին սկիզբն՝ յետ ընդարձակ ցուցակի բովանդակ գործոյն (էջք* Ա.—ԺԹ.) *երեքլեզուեան բժշկական համառօտ բառարան կայ, որոյ վերնագիրն է՝* Անուանք դեղերոյ հայերէն եւ յարապկերէն եւ լատին բառով *(էջք* Ի.—ԽԶ.) *եւ կը բովանդակէ* 200 *բառք, որոց առաջին նշանակեալ են իւրաքանչիւրին բժշկական յատկութիւնքն եւս։ — Աստի կը սկսի բուն բժշկարանն, որ ի* ԺԹ. *Գլուխս (Հտծք* Ա.—ՄԺԸ., *էջք* 1—183) *կը զբաղի դեղագործութեամբ, մի ըստ միոջէ դնելով զանազան տեսակ դեղոց (*հաբերոյ, մածուխերոյ, շարապներոյ եւ ծալաղի, *եւլն) կազմութեան եւ կիրարկութեան կերպն եւ որ հիւանդութեանց գործածուին։ Վերջին* ԺԹ. *Գլուխն, որոյ վերնագիրն է՝* Յաղագս մորհամնոյ փոխեալ ի լատին գրոց, *կը բովանդակէ* 29 *Հտծ. բայց կան ի վերջ կոյս Գլխոյս քանի մի Հատուածք, որ նոյն Գլխոյն չեն վերաբերիր։ Այս վերջիններն կարճ Հատուածք են, միայն լաւշտակի (*ՄԺԳ.) *Հատուածն՝ շատ երկայն է (էջք* 172—181)։

*Ձեռագիրն աստի յառաջ կ՚երթայ՝ դնելով ի վեց Հատուածս (*ՄԺԹ.—ՄԻԴ., *էջք* 184—206) *բժշկականութեան զանազան գիտելիք, որ են՝* ՄԺԹ. Համառօտ խրատ ի բժշկական արուեստներոց. ՄԻ. Յաղագս երակ ճանաչելոյ. ՄԻԱ. Յաղագս նշանաց հիւանդին. ՄԻԲ. Պուհրանի աւուրք. ՄԻԳ. Յաղագս ջերմերոյ ճանաչելոյ. ՄԻԴ. Խրատք յաղագս ծառայելոյ հիւանդին։ — *Յաջորդ տասուիրեք Հտծոց մէջ (*ՄԻԵ.—ՄԼԷ., *էջք* 207—232) *կը խօսի* Յաղագս

---

գրուած է այսպէս. «Զվերջի կողմըս եւ զաշխատողս գրոցս
«զԱբրահամ բազմամեղս աղաչեմ յիշել ի Տէր...։ Ընդ նմին
«եւ զկողմել փոքրիկ զՅովհաննէս հէքիմս եւ զհայրն իւր
«զհանգուցեալն ի Քրիստոս՝ զՎարպետ Սկանտարն յիշես-
«ջիք...։ Կողմեցաւ ի Թուին Հայոց ՊՁԷ»։

9*

ափածման եւ բժշկութեան ամենայն ազգ պատուհասնե-րոյն, քաղելով Հերացւոյն ծանօթ գրութենէն, բայց առանց անունն յիշատակելու: — Զերմերէն կ'անցնի այլեւայլ ցաւոց եւ հիւանդութեանց, որոց իւրաքանչիւրին դեղը կը սահմանէ, եւ դեղոց կազ-մութեան կերպն կ'ուսուցանէ, (Հատք ՄԼԸ· — ՄԿԵ·, էջք 232 — 321,) որով այս մասին բովան-դակութիւնն եւս կ'ըլլայ գլխաւորաբար դեղագոր-ծական, թէեւ ոչ ցանցառ հիւանդութեանց նշան-ներն ալ նշանակուած են: — Ասկէ ետեւ կը գըտ-նուի ընդարձակ Հատն ՄԿԶ· (էջք 321 — 353) վերնագրով՝ Տառապէլ (տառապեալ) մարդոյ գիրք, որ ունի դեղօք մեծ բան այնէ ու առողջութեան տայ մի-նակ, սկսեալ ի գլխոյն մինչեւ յոտսն՝ ամէն զօրքեն դեղ տալ: Հետեւեալ երեք Հատքն եւս (ՄԿԷ· — ՄԿԹ·, էջք 354 — 370) նախընթացին շարունակութիւնն է: Իսկ հուսկ յետին Հատն (ՄՀ·, էջք 371 — 384) կը խօսի Յաղագս ալէց դեղերոյ եւ չիափնոյ: Այս է պարունակութիւն Բ· ձեռագրին:

Առաջին ձեռագրին վրայ կարող չենք այս-չափ մանրամասն տեղեկութիւն տալ, այլ այնչափ միայն՝ որչափ մեզի ծանօթ է: — Ինչպէս մեր մե-ծարոյ թղթակցին տուած ծանօթութենէն եւ յղած քանի մի Հատուածներէն կը տեսնուի, թէպէտ այս ձեռագիր շատ տեղ նոյն կամ նման է նախըն-թացին. սակայն բազմօք եւս աննման է եւ այլա-կարգ: Բաց յայնմանէ՝ որ երկուքին մէջ գտնուող միեւնոյն Հատք՝ ուրեք ուրեք իրարմէ կը տարբերին ըստ ոճոյն, ըստ ընդարձակութեան եւ համառօ-տութեան, — կայ ինչ ինչ ի նախընթացին՝ որ չի գտնուիր յայսմ, եւ կայ յայսմ շատ բան՝ որ կը պակասի ի մերն: Մերոյն սկիզբն դրուած Անուանք դեղերոյ եւ ցուցակ նիւթոց կը պակասին յօրինա-կին Ս· Ղազարու. բայց կայ ի գլուխն՝ թէպէտ օտար գրով այլ հին՝ մարդակազմութիւն համառօտ (11 էջք) գրաբար լեզուաւ, որ չի գտնուիր ի մերն: —

Բուն բժշկարանն կը սկսի մերոյն Մի. Հատէն, որոյ յաջորդ երեք չորս Հատքն եւս շարունակուելէն ետեւ, կու գայ մերոյն Ա.—ԺԹ. Գլխոց մէջ բովանդակեալ դեղագործութեան մասն. բայց կ'երեւայ թէ շատ աւելի համառօտ է, բաց յայլոց՝ չունենալով մերոյն ԺԹ. Գլուխն եւ ոչ լաւշտակի (ՄԺԳ.) Հատն։ — Ընդհակառակն՝ շատ աւելի ընդարձակ են քաղեալքն ի Ջերմանց մխիթարութենէն, ուր ի մերն հազիւ ԺԳ. Գլուխք միայն կան, եւ այն շատ համառօտեալ, — այնպէս որ Մխիթարայ ամբողջ մի Գլուխն ուրեք ուրեք քանի մի տողի վերածեալ կը տեսնուի, որով եւ Ջերմանց վրայ խօսող մասն ձեռագրիս՝ ընդ ամենայն 25 իջի մէջ ամփոփուած է. — յօրինակին Ս. Ղազարու Լ. Գլուխք են՝ ընդարձակագոյն, իջից թիւն ըլլալով մերոյն քառապատիկն։ — Անկէ ետեւ կու գան 91 Գլուխք կամ Հատք, որոց առաջինն ու. վերջինն, կ'ըսուի թէ նոյն է մերոյն յետին մասին (Հատք ՄԼԸ.—ՄՀ.) առաջնոյն եւ վերջնոյն հետ, իսկ մէջն այլայլած։

Բժշկարանացս այս երկու ամբողջական ձեռագիրներէն զատ, իբրեւ ըստմանեայ օրինակ կարող ենք համարել Ամիրտովլաթայ ընդարձակ բժշկականութեան (Ձեռ. Մտնդրնիս, Թ. 11. Ա.) վերջը գտնուող Դեղագործութիւնն կամ Աքրապատինն (էջ 261—376). յորում կան շատ Հատք վերոյիշեալ ձեռագրաց դեղագործութենէն։ Սոյն Հատոց ոմանք նման են Ա. ձեռագրին, ոմանք՝ Բ.ին, կան նաեւ այնպիսիք՝ որ ըստ մասին միոյն եւ ըստ մասին միւսոյն կը նմանին, եւ կամ ընդհակառակն երկուքէն ալ տարբեր են։ Մտադրութեան արժանի է այն պարագայն՝ որ ասոնց մէջ ուրեք ուրեք գրաբարաձեւ մնացած են այնպիսի բառք եւ կազմակերպութիւնք՝ որք ամբողջական ձեռագրաց միոյն կամ միւսոյն եւ շատ անգամ նաեւ երկուքին մէջ ռամկաձեւի դարձած են։ Զայս ամենայն նկատելով, կրնայ կարծուիլ թէ յիշեալ Հատք գաղափարուած են մեր ի ձեռին ունեցածներէն զատ եւ թերեւս հնագոյն ձեռագրէ, որ ընդհանրապէս խօսելով՝ անոնց չափ փոփոխութիւն չէր կրած, գոնեայ ըստ մասին ազմանց եւ ամփոփմանց,

որք այնպէս սովորական են անոնց մէջ, ինչպէս յետոյ պիտի տեսնենք, ուր՝ երրորդին մէջ այնպիսի չափազանցութեամբ չեն տեսնուիր[1]։

— Դարձեալ՝ ի հետազօտութիւն առնուած երկու բժշկարանաց հետ բատ խիտ կապակցութիւն ունի նոր ժամանակաց նօտրագիր բաւական մաքուր գրչութեամբ՝ պակասաւոր (28 էջ) ձեռագիր մի, որ կ'երեւայ թէ անցեալ դարուն վերջերն օրինակեալ ըլլայ հին ձեռագրէ, եւ է բժշկարանի մի սկիզբն։ Այս ձեռագիրն կը բովանդակէ մեր բժշկարանին ՄԺԹ. ՄԻ. եւ ՄԻԳ. Հատուածներն, որ նոյն կամ նման են վերոյիշեալ բժշկարանաց մէջիններուն, յետոյ Ս. Ղազարու բժշկարանին սկիզբը դրուած գրաբար մարդակազմութեան մի մասն, վերջապէս մարդակազմութեան քանի մի մասունքն ռամկօրէն։ — Մեծ նշանակութիւն չունին բատ ինքեան այս սակաւ պակասաւոր էջք։ Բայց հետաքրքրական է վերնագիրն՝ որ կարմրադեղով գրուած է ի գլուխն, ճիշդ միեւնոյն գրով ձեռագրին. եւ է այս՝ Մխիթարայ հրամանաւ սուրբ թագաւորին Յովհաննէսի։ Թէ այսու անուամբ պէտք է իմանալ զՍմբատ Յովհաննէս՝ զորդի եւ զյաջորդ Գագկայ (Ա.) այն յայտնի է. վասն զի ամենայն պատմագիրք մեր զնոյն թագաւոր կը կոչեն "Իմաստուն, Մեծիմաստ, Իմաստուն եւ հանճարեղ յոյժ"․ ուստի եւ հաւանական է թէ ինքն ալ հօրը պէս փոյթ տարած ըլլայ բժշկականութիւնն ծաղկեցընելու։ Բայց թէ ինչ յարաբերութիւն կայ իւր եւ այս պակասաւոր ձեռագրին մէջ, զայն ո՛չ մենք եւ ո՛չ հմտագոյնք քան զմեզ կարողացանք իմանալ։ Յուսանք որ յաջորդք մեզմէ աւելի միջոց ունենան այս հանելուկն իմանալու եւ գոհացուցիչ կերպիւ լուծելու։

---

[1] Դնենք աստ տարբերութեանց քանի մի գլխաւորներն.

| Հին Բժշկարանոյ մին կամ միւսն եւ կամ երկուքն ալ. | Ամիրտովլաթոյ յառաջ բերած հատուած. |
|---|---|
| Կաղըմբի, փորցվի, գլխացվութեան, ստամոքցաւ, աղցած, թանձրնայ, պակսի, ժողվէ... | Կաղամբի, փորցաւի, գլխացաւու, ստամոքացաւ, աղացած, թանձրանայ, պակասի, ժողովէ... |
| բատ կարեցն, ի բաղնեցն, թէ չգտնուս... | բատ կարեացն, ի բաղանեացն, թէ չգտանես... |
| զէտ, ինչուր, ինչուի, այտկից, այնէ... | զերդ, մինչ որ, մինչեւ, այտից, առնէ... |
| բատ ուժին, ի շուքն, տըվվի... | բատ ուժոյն, ի շքի, մարթի տալ... |
| ի բաղնիք տար, ի բաղնիք թող մտնէ... | ի բաղանիսած, թող ի բաղանիս մտանէ... |

Դտանանք արդ մեր երկու բժշկարանաց։

Առաջին (1294ին) բժշկարանին վաւերականութեան վրայ կրնայ խնդիր յառնել ըստ զանազան հայեցմանց, ինչպէս յառաջագոյն անցողակի ակնարկած ենք։

Ա. Թէ արդեօք այն ժամանակ թարգմանեալ է՝ որ կը նշանակուի ձեռագրին վրայ, կամ թէ ըսենք՝ ճիշդ է վերնագիրն զոր կրէ, այս ինքն՝ “Բժշկարան զոր փոխած է ի տաճիկ լեզուէ ի հայս “ի ժամանակս յաղթող թագաւորին Հայոց Գագ-“կայ„, որ սովորաբար կը համարուի թէ է Գագիկ Ա. Բագրատունի, որոյ թագաւորութեան ժամանակը կը տեւէ Ժ. դարուն վերջին տասնեակին սկզբէն՝ մինչեւ ԺԱ.ին երկրորդ տասնեկին վերջն (990—1020)։

Ըստ մեր տեսութեան՝ չկայ ամենեւին պատճառ տարակուսելու ասոր վրայ. նա թէ ամէն պարագայք նոյնն հաստատելու կը ծառայեն։ — Գիտենք թէ բաւական ժամանակէ ի վեր արաբական բժշկականութիւնն շատ ծաղկեալ վիճակի մէջ էր, եւ նոյն միջոցին որ թարգմանութիւնն եղած կ՚ըսուի՝ հասած էր իւր պայծառութեան գագաթն. Նշանաւոր արաբացի բժշկաց կամ արաբերէն յօրինեալ եւ թարգմանեալ բժշկական դրուածք արդէն ամէն կողմ տարածեալ էին։ Գիտենք դարձեալ թէ քանի մի դարէ ի վեր մերայինք դիւրութիւն եւ պատշաճութիւն ունէին արաբերէն սորվելու, եւ կային յազգին այնպիսի անձինք՝ որ կարող էին նոյն լեզուէն ի հայ թարգմանել որպիսի եւ է գրութիւն։ — Ի՞նչ աւելի բնական ուրեմն՝ որ արաբական ուսումնարանի մի մէջ բժշկութիւն ուսած Հայ ոմն վերոյիշեալ բժշկական գրութիւնն այն միջոցին յիւր լեզու փոխէ։

Բայց բժշկարանիս մէջ կայ այնպիսի դէպքի եւ անձանց յիշատակութիւն, որ ոչ հաւանական միայն՝ այլ նաեւ յայտնապէս ստոյգ կը ցուցնէ

թարգմանութեան ի նոյն ժամանակս կատարուիլն։ Թէ Ս. Ղազարու եւ թէ մեր ձեռագրին մէջ՝ ի մասին դեղագործութեան յառաջ կը բերուի այն դեպքն։ Աւասիկ մերոյն գրածն. (Հտծ) "ԽԲ. Մըապուխ թեթեւ եւ օգտակար, զոր գրեաց Ցէոոէ "(Ցոյէոէ) բժիշկն Գրիգորոյ՝ Վահրամայ որդւոյն„։ — Ինչպէս գրութեան եղանակէն դիւրին է գուշակել, այս խօսքը գրողը կ'ենթադրէ թէ յիշատակած երեք անձինք, գոնեայ երկրորդն եւ երրորդն, ծանօթ են ժամանակակցաց, եւ այնպէս նշանաւոր՝ որ աւելորդ կը համարի անոնց պարզ անուան վրայ այլ ինչ վերադիր կամ յայտարար յաւելուլ։ Արդ՝ այս երկու անձինք իրօք ժամանակակից են թարգմանութեան բժշկարանիս, եւ շատ իսկ նշանաւոր։ Գագիկ Ա.ին թագաւորութեան ժամանակներն, նաեւ անկէ յառաջ եւ յետոյ, տէրութեան մէջ բարձրաստիճան իշխան էր եւ մեծ համբաւ ունէր հօրեղբայր Գրիգորի Մագիստրոսի՝ Վահրամ Պահլաւունի սպարապետն, որ Մարմաշինու շքեղ վանքն ու եկեղեցին շինել տուած է, (986—1029,) ինչպէս կը ցուցընէ եկեղեցւոյն արտաքին որմոյն ընդարձակ արձանագիրն։ (Տես ի Շիրակ, էջ 148։) Այնչափ հռչակեալ էր այս իշխանն՝ որ կ'ըսուի թէ իւր համբաւն ընդ տիեզերս տարածեալ էր, իւր հրեշտակներն Քաղդէացւոց եւ Մարաց եւ Պարթեւաց կողմերը կ'երթային, եւ Յունաց ինքնակալք իսկ զինքն մեծապէս կը պատուէին։ (Այսպէս կը գրէ իւր եղբօրորդին՝ Գր. Մագիստ.։ (Տես ի Շիրակ, էջ 153։) Ունէր նա որդի մի Գրիգոր անուն, որ նոյնպէս չէր կրնար անծանօթ ըլլալ, զոր եւ իրօք կը յիշատակէ բաց յայլոց՝ Մաթ. Ուռհայեցի, գրելով ի պատմութեանն յամին 1045—46, թէ "Մեծ "սպարապետն Հայոց Վահրամ հանդերձ որդւովն "իւրով Գրիգորիւ սպանաւ ի մեծ պատերազմին ի "Դուինն քաղաքին„։ (Տպ. Երուսաղ. էջ 115։) — Ցէոոէ բժշկին վրայ արդէն (ի նախընթաց Հտծին,

էջ 121) տեղեկութիւն տուած ենք, եւ ըսած՝ թէ իւր մահն կը դրուի յոմանց ի սկիզբն ԺԱ. դարու (1008ին) եւ յոմանց յառաջին կիսուն (1040ին։)

Այս ամենայն յայտնի կը ցուցընէ թէ ճիշդ է թարգմանութեան ժամանակին նկատմամբ վերնագրին ծանուցածն, եթէ արդարեւ Յովհնող վերագրաւ կ՚իմանայ զԳագիկ Ա.։ Սակայն եւ այնպէս հնար է քանի մի տարի յետաձգել, դնելով թէ թարգմանութիւնն եղած ըլլայ ոչ թէ Գագիկ Ա.ին թագաւորութեան ատենն, այլ ի միջոցի գահակալութեան Գագայ Բ.ի (1042—1044), զոր արդեամբք՝ Հզօր, Քաջ եւ Անյաղթ ի պատերազմի կը կոչէ Մատթէոս Ուռհայեցի։ (Էջ 112 եւ 193։) Այսչափ յետաձգութիւն վնաս չի տար վերնագրին ճշդութեան. եւ հետեւաբար թէպէտ Գագիկ Ա.ին՝ թէպէտ Գագիկ Բ.ին ժամանակն համարուի թէ ի գլուխ ելած է թարգմանութիւնն, միշտ հաստատուն կը մնայ վաւերականութիւն բժշկարանիս։

Բ. Թէ արդեօք այժմու (1294 թուականաւ) բժշկարանս նոյն է անփոփոխ՝ գրոց սկզբնական թարգմանութեան հետ։ — Այս երկրորդ խնդիր՝ որոյ լուծումն կարեւորագոյն եւս է մեր բանասիրական նպատակին, երկու տեսակիւ կրնայ նկատուիլ, նախ՝ ըստ նիւթոյն, թէ արդեօք նոյն մնացած է առանց փոփոխութեան՝ եթէ յաւելուածներ եղած են. եւ երկրորդ՝ ըստ լեզուին, թէ արդեօք թարգմանութեան ժամանակէն մինչեւ գրչութեան ժամանակն լեզուն կամ ոճն փոփոխութիւն կրա՞ծ է՝ եթէ ոչ։

Առաջին հայեցմամբ խնդրոյն լուծումն շատ դիւրին է, մանաւանդ թէ ինքնին իսկ լուծեալ։ — Թող զայլ ամենայն փոփոխմունս՝ որ կրնան մուծեալ ըլլալ, կայ յայտնի ապացոյց թէ իրօք եղած է յաւելուած։ Բժշկարանիս մէջ կը գտնուի, ինչպէս սակաւ մի յառաջ յիշատակեցինք, Մխ. Հերացւոյ Ջերմանց մխիթարութենէն 100 էջի չափ, եւ

այն՝ գրեթէ բառ առ բառ։ Արդ՝ կամ պէտք է ենթադրենք թէ հերայի բժշկապետն, բժշկարանիս հայ թարգմանութիւնն առաջի աչաց ունենալով, անկէ առած (յայտնի խօսինք՝ գողցած) է նոյն մասն, եւ կամ յետոյ ընդօրինակողք (խմբագիրք) նոյն հատուածներն (ըստ սովորութեան զոր յառաջագոյն նշանակած ենք ի Համառօտ տեսութեան հայ բժշկարանաց վրայ,) մուծած են ի հին բժշկարանն։ Առաջին ենթադրութիւնն այնչափ անպատշաճ գործ կ'ըլլար եւ այնպէս անվայել Մխիթարայ պէս մատենագրի, որ ոչ ոք կարող է երեւակայել՝ թող թէ իբրեւ ստոյգ պաշտպանել։ Եւ ոչ այսչափ միայն, այլ նաեւ այն մասին լեզուն՝ աստ անդ եղած փոփոխութեամբք հանդերձ՝ նոյն է Մխիթարայ բովանդակ գրոց լեզուին հետ, եւ ըստ բաւականին տարբեր բժշկարանիս յատուկ մասանց լեզուէն. որով կը տեսնուի թէ յիշեալ հատք յետոյ մուծուած են։ — Դարձեալ կայ ի բժշկարանիս՝ ի վեր անդր յառաջ բերեալ դէպքին նման դէպք, որ ինքնին յայտ է թէ յետոյ ի ժամանակի ընդօրինակութեան յաւելցուած է։ Ի մասին դեղագործութեան, ի կարգի բանից գրոցն՝ նոյնագիր եւ ոչ եկամուտ ի լուսանցսն, կը կարդացուի հետեւեալն։ "Նշանք պատրաստութեան եւ մապխի, զոր "արար ծեր բժիշկն Պաղտատցին՝ ինձ Հեթմոյ Սե—— "փխոխո, վասն միջացվու, կոլնջի եւ այլոյ այսպի"սեաց", որոյ կից դրուած է դեղոյն կազմութեան կերպն։ Արդ՝ ինչպէս ի սկզբան Հտծիս ծանուցինք, այս բժշկարան գրուած է հրամանաւ Հեթմոյ արքայեղբօր՝ Կոռիկոսի տեառն, որոյ սեպհական տիտղոսն էր Սեւաստիոս. (տես Սիսուան, էջ 337, Յիշատակարան Գ.) եւ օրինակողն անոր բերնէն կը գրէ նոյն խօսքն։ Այս պատճառաւ մեր ձեռագրին մէջ, ուր միեւնոյն դեղագիրն՝ միեւնոյն կազմութեան կերպիւ կը գտնուի, այսչափ միայն կը գրէ. (Հտծ) "ԽԵ. Մապուխ պատրաստութեան զոր արար

"Ծեր բժիշկ Պաղտատցին, որ է օգտակար միջա-
"ցուի, կողընջոտի եւ այդպիսի ցաւոց": — Եւ ո՞վ կարող է երաշխաւորել թէ չկան այլ եւս այսպիսի եկամուտ Հտծք։

Աւելի դժուար է լուծումն խնդրոյն՝ երկրորդ-հայեցմամբ կամ ըստ մասին լեզուի, այս ինքն՝ իմանալ եւ որոշել թէ արդեօք անփոփոխ մնացա՞ծ է բժշկարանիս հին կամ սկզբնական մասանց լեզուն, եւ ա՞յնպէս է այժմ՝ ինչպէս եղած է թարգմանչին գրչէն։ — Չի կրնար ուրացուիլ թէ բաւական յայտնի նշանք կան հնութեան նաեւ յայժմու վիճակի գրութեան, այնպէս որ ասոնց նայելով՝ մարդ կը միտէ կարծել թէ նախնական ոճն ու լեզուն անփոփոխ մնացած է։ Բայց ասոր դիմաց՝ չեն պակաս նաեւ այնպիսի բառեր, ձեւեր, կազմակերպութիւններ, որ հին ռամկախօս գրուածոց մէջ կամ ամենեւին չեն գտնուիր եւ կամ շատ ցանցառ կը հանդիպին. միով բանիւ՝ այնչափ առատ են ամէն ռամկացուցմունք առհասարակ, որ պէտք կ'ըլլայ թողուլ նախընթաց կարծիքն, եւ ըսել թէ ԺԱ. դարէն մինչեւ ԺԳ.ին վերջն այլեւայլ ընդօրինակութեանց միջոցաւ բաւական փոփոխութիւն կրած է ոճ եւ լեզու թարգմանութեան բժշկարանիս։

Այս է միաբան կարծիք տեղեկագունից։ Միայն թէ փոփոխութեան չափուն եւ եղանակին նկատմամբ կայ մասնական զանազանութիւն կարծեաց։ Ոմանք կը համարին թէ թարգմանութիւնն սկզբնաբար եղած է գրաբար, եւ յաջորդ դարուց բժիշկք կամ խմբագիրք (չըսելու համար՝ ընդօրինակողք) ռամկօրէնի դարձուցած են։ Իսկ այլոց ոմանց կարծիքն այն է թէ նոյն իսկ սկզբնական թարգմանութիւնն ռամկօրէն էր, բայց ոչ յայժմու վիճակի, այլ հնագոյն եւ ընտրելագոյն ոճով, եւ հետզհետէ առաւել եւս ռամկացած է՝ յաջորդք ջանալով միշտ աւելի պարզել եւ դիւրահաս ընել իւրաքանչիւր ժամանակի հասարակ ժողովըր-

դեան[1]։ — Ցայսմ զանազանութեան կարծեաց, որոց երկուքին ալ թէ ի կողմն եւ թէ ի հակառակն կան պատճառք, մենք չենք համարձակիր որոշումն ընել. այլ խնդրոյս այս մասին լուծումն ապագայ ժամանակաց կը թողունք, յուսալով որ այլ եւս ձեռագրաց յերեւան ելլելովն՝ դիւրաւ եւս կը լուծուի քան այժմ։

Երկրորդ (1438ին) բժշկարանին վրայ առանձին խօսելու շատ բան չունինք. որովհետեւ առաջնոյն հետեւողութեամբ խմբագրեալ ըլլալով, ինչ որ անոր նկատմամբ զրուցեցինք՝ մասամբ իւիք ասոր վրայ ալ կրնայ առնուիլ։ — Ի նախընթացան տեսանք երկուքին ըստ Նէ–Րոյն իրարմէ տարբերութիւնքն, որք թէ ինչպէս կերպաւորած կամ մուտ գտած են, ամենայն ոք կարող է ինքնին իմանալ՝ եթէ միտ դնէ Համառօտ տեսութեանս հայ բժշկարանաց վրայ, զոր յայսմ բժշկարանիս լիով գործադրեալ կը գտնենք։

Նախընթացին վրայ եղած յաւելուածոց մէջ առանձին մտադրութեան արժանի է Ժ․Թ․ Գլուխն, որ ի լատին գրոց փոխած (թարգմանուած) մօրհամնոյն վրայ կը խօսի, որոյ եւ իւրաքանչիւր Հածոց սկիզբն նշանակուած է զատ ի զատ՝ ֆռանկն է կամ՝ ֆռանկն եւ կամ համառօտութեամբ՝ ֆռ.։ Քանի մի դեղոց սկիզբն ալ դրուած են անուանք եւրոպական բժշկաց որ դեղագրին խառնուրդն շինած են. այսպէս. (ՃԳԶ․) Մօրհամ Մայստռ Անսելմին, (ՃԳԷ․) Մօրհամ Մայստրը Դուպաւնին. եւ կամ եւրոպական անուանք դեղոց, զ. օ. (ՃԳ․) Նշանք բաւստաւլիկօնի[2], որ թարգմանի առաքելական, (ՃԳԱ․) Մօրհամ որ կոչի ոյնկանդա ֆուսք, (ՃԳԸ․)

---

[1] Տես նաեւ ինչ որ ի վեր անդր գրեցինք Ամիրտովլաթայ բժշկարանին մէջ գտնուող Հածոց նկատմամբ։

[2] Այս անուններն այնպէս թողուցած ենք ճշգիւ՝ ինչպէս են ի ձեռագրին, թէեւ ոմանք սխալ են կամ անիմանալի։

Մօրհամ՝ զօր Ֆռանկներն կոչեն սերաւն, (Մ.) Ընջաստն փաւրթն, (ՄԺԴ.) Նշանք տակի մի՝ որ Ֆռանկն սիկրամ կոչէ եւ Հայերէն արջտակ։ Դարձեալ չափուց կամ կշռոց անուանք ուրեք ուրեք եւրոպական են. այսպէս՝ ճիճր, ունց, եւայլն։ Կան այս գլխոյս մէջ եւ այլուր բուսական լատին կամ փռանգ բժշկական բառեր, գ. օ. բէճ կռէկ, բաււտամ, լատան խունկ կամ լատան, Կալընկալ (ռամկաբար՝ Խօլընջան), Խոտ մի կայ՝ որ Ֆռանկն պարկուա սաէ, Խոտ մի այլ կայ՝ որ Ֆռանկն պրպայն սաէ։ Քանի մի բժշկական անուանց առջեւ յաւելցուած են սովորական Հայ կամ արաբիկ բառեր. այսպէս. Կալպանում որ է չարհօտն, արմոնիակ որ է աւշակ, սառաբին որ է օփլէնէճ, աւբաւբոնաքում որ է ճառոշէր։ — Նշանակութեան արժանի է Ջանավազ ղօրհնով բացատրութիւնն, որ երկրորդ անգամ մ՚ալ գործածուած է իբրեւ գոյական՝ Սպրկին ջանավազ կամ սատամին։

Այս ամենայն, ինչպէս նաեւ երեքլեզուեան բառարանն, կը ցուցընէ թէ բժշկարանիս խմբագիրն կամ հաւաքողն՝ որ ի հարկէ բժիշկ ըլլալու է՝ ծանօթ եւրոպական լեզուաց, (անշուշտ ձեռագիրն կոչել տուող Յովհաննէս Հէքիմն կամ իր հայրն Վարպետ Սկանտարն,) ի ձեռին ունեցած է լատին կամ գաղղիերէն եւ կամ գուցէ իտալերէն բժշկարան, յորմէ ինչ ինչ քաղած եւ հին բժշկարանին վրայ յաւելուլ տուած է։ — Ի վեր անդր յիշատակեալ Ջանավազ բառն խորհել կու տայ՝ թէ հնար է որ խմբագիրն ի հաղորդակցութիւն մտած ըլլայ Ճենովացի ազգաւ բժշկի մի հետ. եւ արդէն յայտնի է թէ Ճենովայի հասարակապետութիւնն բժշկարանիս խմբագրուելէն շատ յառաջ արդէն ի պաշտօնական յարաբերութեան կը գտնուէր Ռուբինեան արքունեաց հետ։

Զիա՛րդ եւ իցէ, եւրոպական բժշկականութենէ առեալ այս յաւելուածովք մեծ ծանրա-

կշռութիւն կը ստանայ բժշկարանս. որովհետեւ մեզի ծանօթ բժշկարանաց մէջ ամէնէն հնագոյնն է՝ որ ի լատին կամ եւրոպական դեղագործութենէ առեալ Հտծներ բովանդակէ: — Կարծենք թէ այս մասին մէջ խառնուած այն քանի մի Հտծք, որոց համար զրուցեցինք թէ ի լատինէն գրոց փոխեալներուն չեն վերաբերիր, առանձինն լաշտակի Հտծն, Խըմբագրողին (կողմել տուողին) յատուկ գրութիւնքն են. ինչպէս յետոյ ի մէջ բերուելու օրինակէն կը տեսնուի:

Այն տարբերութիւնն որ կը գտնուի նիւթոյն կողմանէ երկու բժշկարանաց մէջ, ի մին՝ այս Հտծն, եւ ի միւսն՝ այն Հտծն աւելի կամ պակաս ըլլալով, նոյն տարբերութիւն կը տեսնուի նաեւ այն Հտծոց մէջ՝ զոր երկուքն ալ միապէս ունին: Ս. Ղազարու ձեռագրէն մեզի հաղորդուած Հտծներն մեր ձեռագրին նոյնանուն Հտծոց հետ բաղդատելով, կարող ենք հաստատել թէ անոնց եւ ոչ մին երկուքին մէջ ճշդիւ միեւնոյն չափով է: Ընդհանրապէս խօսելով՝ Հտծք հնագունին ընդարձակ են, նորն աստ անդ յապաւած կամ համառօտած ըլլալով. բայց ուրեք ուրեք նորն եւս ընդլայնած կամ ընդարձակած է:

Ինչպէս նիւթոյն՝ նոյնպէս նաեւ լեզուին կողմանէ չունինք շատ բան ծանուցանելու. այսչափ միայն կը զրուցենք՝ թէ նախընթացին մէջ դիտուածն ասոր մէջ ալ կը տեսնուի. այս ինքն թէ անոր գրչութենէն իբր դար ու կէս յետոյ խմբագրեալ ըլլալով, բնական է որ փոքր մի եւս յառաջ տարուած ըլլայ անոր մէջ հետզհետէ մուծուած եւ աճած ռամկականութիւնն: Այսպէս ի տեղիս տեղիս ստորնագոյն ռամկականութիւնք խառնեալ են, նախընթացին մէջ արդէն գտնուածներն յաճախագոյն եւս գործածուած, ուրեք ուրեք եւս գրաբարաձեւին փոխանակած է ռամկաձեւն. թէեւ ցանցառ չեն նաեւ այնպիսի դէպք՝ յորս հնագունին

ռամկօրէնն՝ նորագունին մէջ գրաբարի դարձած ըլլան։ Այնպէս որ ընդհանրապէս խօսելով՝ երկուքին մէջ լեզուին կամ ոճոյն կողմանէ շատ մեծ տարբերութիւն չի տեսնուիր։

Բժշկարանիս լեզուին եւ երկու ձեռագրաց իրարմէ տարբերութեան վրայ որոշ գաղափար տալու եւ ասոնց նկատմամբ նախընթաց իջից մէջ դրուած տեղեկութիւններն լիով իմացընելու համար՝ յառաջ կը բերենք քանի մի օրինակ այն հատածներէն՝ որ երկուքին մէջ ալ հաւասարապէս կը գտնուին։

Ա.

Ձեռագիր 1294էն։

Պարտ եւ արժան է զերակն ճանաչել զհիւանդին այսպիսի նշանօքս։ Եփ[1] զմարդոյն երակն բռնես մատներովդ ի վերայ, եւ ազէկ ի լոյս խաղայ ու դէպ ի վեր ի բազուկն երեւնայ, այսոր անուն յերկայն ասեն։ Ապա թէ չերեւնայ շատ դէպ ի վեր եւ ի բազկին մէջն երեւնայ, այսոր անուն լայն ասեն։ Ապա թէ մատինդ ներքեւ խիստ զարկնէ ու թվենայ թէ զմատնդ ի զատ կու հանէ, այսոր ահաւոր ասեն։ Ապա թէ մեղմն չլինի եւ շատ խաղայ մատինտ ներքեւ, այսոր սուր ասեն։ Ապա թէ երակն մատինդ ներքեւ պահ մի յերկայննայ ու պահ մի կարճնայ, այնոր յերկայն ասեն. ապա թէ երբ զմատներս ի վերայ դնես ու հայնց թվենայ թէ ի վէմ հասաւ, այսոր թոյլ ասեն։ Ապա թէ երկու ձեռացն երակն հաւասար լինին, այնոր զօրդ ասեն. ապա թէ

Ձեռագիր 1438էն։

Պարտ եւ արժան է զհիվընդին երակն ճանաչել այսպիսի նշանօքս, որ եփ զհիվնդին երակն բռնես մատներովդ, ու երակն աղէկ խաղայ եւ դէպ ի վեր ի բազուկն, այսոր անուն յերկայն ասեն։ Ապա եթէ լոկ ի բազկին մէջն երեւնայ, այսոր անուն լայն ասեն։ Ապա թէ զերակն բռնես՝ նա խիստ զարկնէ, որ թվենայ թէ զմատնտ ի յետ կու հրէ, այնոր անուն ահաւոր կու ասեն։ Ապա թէ սուր եւ շատ խաղայ մատինդ ներքեւ երակն, այնոր անուն սուր ասեն։ Ապա թէ երակն մատինդ ներքեւ պահ մի կարճ քշտէ ու պահ մի յերկայն, այնոր անուն փոփոխական ասեն։ Ապա թէ եփ զմատնդ ի վերայ երկին դնես՝ նա թվենայ թէ մատնդ ի քար հասաւ կամ ի յանշարժ իրք, այնոր անուն թոյլ ասեն։ Նոյնպէս եւ յորժամ երկու ձեռացն երակն հաւ-

մին քան զմին աւելի լինի կամ պակաս, այսոր փոխծոյ ասեն։

Եւ երակին երկու ժամ կայ ի մարդն։ Տղային երակն այլ ցեղ է եւ մանկանն այլ, եւ չլինի մէկ այս երկու հասակացս երակն։ Տղային երակն կարի յանգահ լինի ու գիճային ու վատուժ, եւ մանկանն երակն սուր լինի եւ չոր եւ ուժով։ Եւ ալեւոր մարդոյն երակն եւ ալէխառն մարդոյն չլինի մէկ. զի ալէխառն մարդոյն երակն զէգ մանկան լինի, եւ ալեւորին երակն զէգ տղային լինի։ Եւ գէր մարդոյն երակն վատուժ լինի, եւ աւաղ մարդոյն՝ ուժով։ Եւ գարունն ամենայն մարդոյ երակ ուժով լինի եւ լցած քան զայլ տարին. եւ ամառն երակն սուր լինի եւ ջերմ քան զայլ տարին. եւ աշունն պակասէ սրութիւնն քան զամառնն. եւ ձմեռն վատուժէ երակն ու փոքրնայ ու յերկար երեւնայ։ Եւ յղի կնոջ երակն ուժով երեւնայ քան որ չլինի յղի։ Եւ եփ ի քնոյ զարթչի մարդն, յայն ժամն երակն ուժով լինի քան եփ պահ մի յեմէ։ Ու եբ ի բաղնիք մտէ ու ելնէ՝ նա երակն ուժով լինի քան յառաջ որ մտեր, եւ կարող լինի ու սուր։ Ապա թէ յեմէ ի բաղնիքն, երակն վատուժէ ու բարկընայ, զի ի շատ յեմելն՝ տանի բաղնիքն զուժն զերկին եւ ահոկէ. բայց հետ ելնելոյն եփ պահ մի կենայ՝ այլվայր դառնայ ուժն եւ զօրանայ երակն։ Եւ եփ մարդն հաց ուտէ եւ պարպէ, (պարապի, զբաղի,) երակն ընդ վատուժն եւ ընդ ուժովն ի մէջ լինի. եւ գինին յերակին ուժն յաւելու եւ սրացնէ եւ շոյտցնէ երեւումն յերակն քան զհացն. եւ տաք կերակուրքն եւ տաք դեղերն՝ զերակն սրացընէ։ . . .

սար քշտեն, նա այնոր անուն հաւսար ասեն։ Եւ յորժամ մէկ ձեռացն երակն քան զմէկայլին ուժով լինի, այնոր անուն անհաւսար ասեն։

Պարտ է եւ զայս իմանալ որ տղային երակն գէճային լինի եւ վատուժ, եւ մանկանն կարի սուր լինի, եւ չոր։ Եւ ալեւորին դարձեալ վատուժ երեւնայ զէտ տղային. Նոյնպէս եւ գէր մարդոյն երակն այլ վատուժ լինի քան զտղին։ Եւ գարունն ամենայն մարդոյ երակ այլ ուժով երեւնայ, աւելի քան զայլ եղանակաց տարոյն։ Եւ յղի կնկանն երակն այլ ուժով լինի քան զայն որ չլինի յղի։ Են եւ այլ բազում պատճառք որ փոփոխեն զերակն, զէտ տաք կերակրերն եւ բաղնիքն եւ աշխատանքն եւ գինին եւ այլ այսպիսի իրքս։ . . .

1 Երկու ձեռագիրք եւս՝ այս այլընդայլոյ կերպիւ կը գրեն սովորաբար Էէֆ բառն, որ երբեմն կը հանդիպի նաեւ Էֆ գրուած, եւ ցանցառ կը գտնուի ուղիղ գրութեամբ։ — Թէ ռամկօրէն գրուածոց ձեռագիրք ի մասին ուղղագրութեան լի են անճշդութեամբք՝ այն անհնածանօթ է։ Այս անճշդութիւնք — չըսելու համար՝ վրիպական գրու-

թիւնք — եթէ մասամբ ինքը կը պատճառին յանհմտութենէ գրչաց, անտարակոյս է՝ որ առաւել եւս կը ծագին ժողովրդեան կամ ռամկին յատուկ արտաբերութենէն։

Մենք յայն դէպս միայն հետեւեցանք ձեռագրաց գրչութեան, յորս այնպիսի ժողովրդական արտաբերութեան հետք կը նշմարուէին, մանաւանդ երբ բառն ինքնին ռամկացեալ է։ Իսկ ուր այսպիսի պատճառ չկայ, բառին գրաբար ձեւն եւս անփոփոխ մնացած է, եւ ձեռագիրք իսկ երբեմն ուղիղ եւ երբեմն սխալ կը գրեն, լաւ համարեցանք չխոտորիլ բուն հին ուղղագրութենէն, որպէս զի ընթերցողաց աչքն այնպիսի այլանդակ գրութեանց չվարժի, եւ ոմանց օրինակ չըլլայ նոյններն ի կիր արկանելու։ Օրինակ ըլլան առաջնոց՝ հինգին, թէլնայ, փորձլութիւն, աչլի, կլեփին, այփ, դեղերփ, թուխա, եւ նմանիք. վերջնոց հիւանդ, ռակաւ, մանաւանդ ... ի վերայ, մնայ, ... կաթեցու, լուսւ, ... արիւն, աւլուր, ... որ յաճախ կը գտնուին նաեւ գրուած՝ հիվանդ, ռակավ, մանավանդ ... ի վերաօ, մնաօ, ... կաթեցոյ, լուսոյ կամ լսոյ ... արոյն, աւլոյր ...։

## Բ.

### Ձեռագիր 1294ին։

Ի ջերմ ցաւերն՝ յորժամ տեսանես զգոյնն զէդ աղէկ մարդոյ կամ որպէս իր սովորութիւն էր, այդ բարոյ նշան է։ Ապա թէ տեսանես որ քիթն դառնայ եւ բարկնայ, եւ աչքն խորճնայ, եւ ականջքն ապիտկէ եւ հովնայ, եւ քներոյն երակն ի ներք երթայ, եւ ճակտին կաշին պնդի, եւ երեսն աղճնայ եւ թխանայ եւ արճիճգոյնի կամ կանաչգոյնի, այսոք չեն բարոյ նշան. մահու է։ Ապա թէ մարդ լուծումն ունենայ եւ երեսն աղճնայ, չէ ահոկ՝ զի յայնոր լինի։ Եւ յորժամ հիւանդն ի քուն լինի, եւ աչքն ի բաց մնայ, մահու նշան է. եւ թէ տքուն լինի հիւանդն եւ աչքն ընդ այնոր խարանայ, չէ ահոկ։ Ապա թէ եբ առ հիւանդն մտես, տեսանես զհիւանդն ի մէկ կողման ի վերայ պառակ, եւ երբ զձեռնդ տանիս՝ վիզն եւ անձն թաց թաց, լաւ նշան է։ Եւ թէ մտես առ հիւանդն եւ զինք պորտ ի վեր տեսանես, եւ

### Ձեռագիր 1438ին։

Ի տաք ցաւերն՝ յորժամ հայիս ի հիւանդն, եւ իւր տեսն յառողջ մարդոյ ի յար լինի, այս բարոյ նշան է։ Ապա թէ տեսանես որ քիթն դառնայ եւ բարկնայ, եւ աջքն խորճնայ, եւ ականջքն ապիտկէ եւ հոճնայ, եւ քներոյն երակքն ի ներք երթայ, եւ ճակտին կաշին պնդի, եւ երեսն ցամքի եւ թխանայ, եւ կամ արճիճգոյն լինի եւ կամ կանաչգոյն լինի, այսոք մահու նշան է։ Եւ յորժամ հիւանդն ի քուն կենայ, եւ աչքն ի բաց կենայ. որ չէր իր սովորութիւն ի յառողջութեան ժամնհայնց լինել՝ նա եւս այս պեղծ նշան է։ Եւ յորժամ առ հիւանդն մտես, թէ տեսնուս զհիւանդն որ ի մէկ դեհի վերայ կենայ ի պառակ, եւ երբ զձեռդ տանիս ի վիզն եւ ի յայլ մարմինն՝ նա գէճ լինի թաց թաց, նա այս բարոյ նշան է։ Ապա թէ եփ մտես առ հիւանդն եւ զինք պորտ ի վեր տեսնուս, եւ

զոտքն եւ զձեռքն մեկնած, չէ լաւ նշան։ Ապա հետ այսոր թէ ի անարուցն ի վայր լինի ընկել, եւ դէպ ի յանոտքն խաղայ եւ յօժարի, այդ բնաւ գէշ նշան է։ Եւ թէ տեսնես զհիւանդն ի փորոյն վերայ պառակ, եւ չէր իր սովորութիւն, գէշ նշան է. գիտացիր որ խելքն խառնակել կամի եւ ընդ այլ խօսել, եւ ցաւն ի փորն է։ Եւ թէ հիւանդն պաչ առ պաչ ի նիստ լինի, չէ լաւ նշան. եւ թէ զակռայքն կրճտէ՝ նա ի մահ ի մօտ է։ Հիւանդին այն է լաւ՝ որ զէդ իր սովորութիւն էր՝ ի քուն գիշերն լինի եւ ոչ ցորեկն։ Ապա թէ ցորեկն ի քուն լինի եւ գիշերն արթուն, չէ աղէկ։ Բայց թէ յառաւօտէն ինչվի ճաշքն լինի ի քուն, այս պատեհ է։ Ապա գէշ այն է՝ որ ոչ ցորեկն լինի ի քուն՝ ոչ գիշերն. զի այս այնոր նշան է՝ որ ցաւն խիստ լինի, կամ խելքն անցնել կամի եւ ընդ այլ խօսել։

զոտվին եւ զձեռվին մեկն, այս պերճ նշան է։ Մանաւանդ՝ թէ տեսանես զհիւանդն՝ որ ի անարուցն ի վայր ընկնի, եւ դէպ ի յանոտքն յօժրնայ, եւ ոտքն պաղ լինի՝ նա չէ բարոյ նշան։ Ապա թէ տեսնուս զհիւանդն ի փորոյն ի վերայ ի պառակ, եւ չէ սովոր ի յառողջութիւնն հայնց պառկել, գիտացիր որ խելքն խառնակել կամի եւ ընդ այլ խօսել։ Եւ թէ հիւանդն պաչ առ պաչ ի նստուկ լինի յանկարծ՝ այս չէ բարոյ նշան։ Եւ յորժամ հիվընդին խելքն անցնի եւ խառնակել լինի, եւ զակռայքն կրճտէ՝ նա ի մահ ի մօտ է։ Եւ հիւանդ որ ընդ գիշերոյն քունն յօժրընայ, եւ ընդ ցորեկոյն արթնութիւնն՝ նա այս բարոյ նշան է։ Են եւ այլ բազում նշանք՝ որ երեւին ի հիվընդութիւն, հայնց որ բժշկապետքն յիշել են թէ ի հիվընդութիւնն կարէ հայնց ահաւոր նշաննի երեւնալ, որ թէ բժիշկն տխմար լինի՝ նա վախէ ի տեսայն։

Ցաչորդ երեք հտծք կան Ամիրտովլաթայ ձեռագրին մէջ ալ, որոց օրինակն եւս կը յաւելունք։

Գ.

Ձեռագիր 1438ին։

Հող սողոսի որ օկտէ գլխացաւի եւ աչաց, եւ զատամունսն ուժովցնէ։ Առ սողոսօխոսպէ, եւ լուա այս նշանօքս։ Առ զեղերդակն, եւ լուա սպրկիկ, ծեծէ եւ զջուրն քամէ. եւ առ զսո-

Ձեռագիր 1294ին։

Հող սողոսի որ օգտէ գլխոյ եւ աչից, եւ ատամունքի զօրացնելոյ։ Առ սողոսօխոսպ եւ լուա այսպէս. հան զեղերդակին ջուրն եւ լից ի հովան ի վերայ սողոսին, եւ հանեին կոթոսն պինդ զարկ,

պտուղն եւ դիր ի հովանն, եւ յայտ եղերդական ջրէտ ի վերայ լից, եւ հաւճին կոթռին պինդ զարկ, եւ ապա զայն ջուրն ի վայր քամէ։ Երեք հետ արա այտ նշանօքդ։ Եւ լուա զինք, եւ ապա քամէ զջուրն եւ զպտուղն չորցու։ Եւ առ ի յայտ սոպոխտ հինգ դրամ, եւ առ դեղին հոյխլո, եւ ֆոպոուլէ, ի կորզէն սրբած, յամէն մէկէ դրամ մէկ ու կէս, չոր վարդ երկու դրամ, մազտաքէ եւ ոնխոոն չորս չորս դանկ, զոֆրոն մէկ դանկ. զամէնտ աղա եւ մաղէ եւ յիրար խառնէ, եւ հիլիօնի ջրով շաղղէ, եւ եւ զայն ջուրն ի վայր ած, երեք հետ այդ ցեղ քամէ, եւ զպտուղն չորցո եւ առ յիրմէ դրամ հինգ, եւ դեղին եւ ֆոպոուլէ հոյխլոյք կտրված, դրամ մէկ ու կէս, դրամ մէկ ու կէս. չոր վարդ երկու դրամ, մազտաքէ եւ ոնխոոն չորս չորս դանկ, զոֆրոն դանկ մէկ. աղա, մաղէ, խառնէ, եւ հիլիօնի ջրով կամ տաք ջրով շաղղէ, հապեր արա ի սիսռան չաք, ի շքի չորցո, մեծ մարդոյն երկու դրամ, փոքրին մէկ, ի քուն լինելոյն ժամն, եւ տաք ջրով ի յամէն շաբաթ հետ մի տուր։

թէ չգտանես զայտ, դու տաք ջրով շաղղէ, եւ ի սիսռան չաք հապեր արա եւ ի շուքն չորցու։ Եւ եփ պիտենայ՝ տուր ժմուն, թէ մեծ մարդ լինի՝ երկու դրամ, եւ թէ փոքր մարդ՝ մէկ դրամ, ի քուն լինելոյ ժամն. եւ ի հետ տաք ջուր՝ որ զդեղտ ի վայր տանի. եւ ի յամէն շաբաթ հետ մի տուր զդեղտ։

## Ձեռագիր Աձրփուլւոնոյ։

Հող սոպոխի, օգտակար եւ պիտանի, որ օգտէ գլխացաւութեան եւ աչաց, եւ զստամոքն ուժովցնէ։ Առ սոպո սխոտոբոի եւ լուա այս նշանօքս։ Առ զեղերդակն եւ լուա սպրկիկ եւ ծեծէ եւ զջուրն քամէ. եւ առ զպտուղն եւ դիր ի հաւանն, եւ այդ եղերդական ջրէդ ի վերայ արկ, եւ հաւնին կոթոմն պինդ ի վայր զարկ։ Երեք հետ արա այդ նշանօքդ։ Եւ լուա զինք, եւ ապա քամէ զջուրն եւ զպտուղն չորցու։ Եւ առ ի յայդ սոպոխդ հինգ դրամ, եւ առ դեղին հոյխլո, եւ ֆոպոուլէ ի կորզէն սրբած, յամէն մէկէ դրամ մէկ ու կէս, չոր վարդ երկու դրամ, մազտաքէ եւ ոնխոոն չորս չորս դանկ, զոֆրոն մէկ դանկ. զամէնդ աղա եւ մաղէ եւ յիրար խառնէ, եւ հիլիօնի ջրով շաղղէ, եւ սիսռան չաք հապեր արա, եւ ի շքի չորցու։ Եւ երբ պիտենայ՝ տուր ժմուն, թէ մեծ մարդ լինի՝ երկու դրամ, եւ թէ փոքր մարդ լինի՝ մէկ դրամ, ի քուն լինելոյ ժամն, ի հետ տաք ջուր՝ որ զդեղդ ի վայր տանի. ի յամէն շաբաթ հաղ մի տուր զայդ դեղս։

Դ.

Ձեռագիր 1438ին։

Մորդուխ թեթեւ որպէս մրգաջուր, որ օկտէ գլխոյ՝ որ ի ջերմութենէ ցաւի, եւ թէ փորն կապ լինի՝ կակղցնէ։ Առ դամոյնչիր, եւ յունապ քսան քսան հատ, եւ խարտեշ չամիչ ի կոտէն հանած, քսան դրամ, չոր մանուշակ երեք դրամ, եւ չոր գինձ մէկ դրամ. ժողվէ զայս դեղերս, եւ դիր ի պուտուկ մի. եւ լից ի վերայ ջուր լիտր մէկ ու կէս, եւ օր մի ու գիշեր մի ի թրջոց պահէ. եւ ապա եփէ՝ որ մնայ կէս լիտր։ Եւ առ քսան դրամ Նմրհնդի եւ դիր ի քարեղէն մի, եւ լից զդեղդ ի վերայ տաք տաք, եւ աճռէ ինչուր տրորի, եւ կտաւով քամէ պինդ, եւ շաքար դիր ի վերայ քսան դրամ աղցած, եւ զմարդն պատրաստ կալ որպէս դեղի ըմպումն է, եւ ի կէս գիշեր եղկցօ ու տուր որ խմէ։ Լուծումն պակաս այնէ բայց շատ օկտէ։ Եւ երբ յետակի ի դեղէն, կերակուր տուր ոսպաւմ եւ քացխով փոշճէ, եւ ի ներս պակաս գինձ եւ նշի ձէթ լից, եւ այլ հաւէնք մի՛ լինուս ի ներս։ Եւ ապա զուգէ զայս, եւ դիր ի վերայ ճակտին։ Առ գարեալիւր, եւ տուղտ եւ հազրի ունդ միաչափ, աղա մանտր, եւ ապխտակ եւ քաղ քացխով շաղղէ, եւ թէ աֆիոն գտանուս՝ դանկ մի ի ներս խառնէ, եւ դանկ մի քաֆուր աղցած, եւ զայս դեղս

Ձեռագիր 1294ին։

Թեթեւ Մապուխ որպէս մրգաջուր, որ օգտէ գլխոյ՝ որ ի ջերմութենէ ցաւի, եւ թէ փորն կապ լինի՝ կակղցնէ։ Դամոյնչիր եւ յունապ քսան քսան հատ, եւ շէկ չամիչ ի կոտէն հանած քսան դրամ, մանուշակ չոր երեք դրամ, եւ չոր գինձ մէկ դրամ. ժողվէ զամէնս եւ ած ի պուտուկ, եւ լից ի վերայ ջուր լիտր մէկ ու կէս, օր մի եւ գիշեր մի ի թրջոց կալ. եւ եփէ՝ որ մնայ կէս լիտր։ Եւ առ Նորգըհնդի դրամ քսան, դիր ի պնակ մի եւ լից զդեղդ ի վերայ շող շող, եւ աճռէ՝ որ տրորի, եւ կտաւով քամէ պինդ, եւ լից ի վերայ շաքար քսան դրամ աղցած, եւ զմարդն պատրաստեցո ըստ դեղի, եւ ի կէս գիշեր եղկցօ եւ տուր որ խմէ։ Լուծումն պակաս այնէ, բայց շատ օգտէ։ Երբ յետակի ի դեղէն, կերակուր տուր ոսպաւմ եւ քացխով փոշչէր, եւ ի ներս պակաս գինձ եւ նշի ձէթ ած, եւ այլ ոչինչ։ Ճակտնոց։ Գարեալիւր եւ տուղտ եւ հազրի ունտ միաչափ՝ ապխտակ եւ քաղ քացխով շաղղէ, եւ աբիոն թէ գտանուս՝ դանկ մի ի ներս խառնէ, եւ դանկ մի քաֆուր աղցած, եւ զայս դեղս ընջագրով ի վերայ քներոյն դիր, քանի չորնայ՝ փոխէ ճիճն։ Եւ թէ մարդն ուժով լինի, եւ ջերմութիւնն՝ շատ, արիւն հան յաջոյ ձեռացն կէֆալէն. թէ

ջնջագրով ի վերայ քներոյն դիր. եւ քանի չորնայ՝ փոխէ ճիճն, եւ այլ դիր։ Ապա թէ մարդն ուժով լինի, եւ ջերմութիւնն շատ, զաջոյ ձեռինն զչէֆալն կտրել

արիւնն թանձր ու սեւ լինայ՝ յոլով հան զարիւնն, եւ թէ կարմիր՝ պակաս. զներքանքն հար մանուշկի ձիթով եւ խէտրի միջկով։

տուր, եւ արիւն հանել. եւ թէ արիւնն սեւ ու թանձր լինայ, դու յոլով թող, ապա թէ կարմիր լինի, պակաս թող. եւ զներքանքն հարուլ տուր մանուշկի ձիթով եւ խէտրի միջով։

Ձեռագիր Աբերողլանոյ։

Մոդոսխ թեթեւ որպէս մրգաջուր, որ օգտէ գլխոյ՝ որ ի ջերմութենէ ցաւի, եւ թէ փորն կապ լինի՝ կակղացնէ։ Առ դամոնչիր եւ յունապ քանի քանի հատ, եւ շէկ չամիչ ի կուտէն հանած քանի դրամ, եւ չոր մանիշակ երեք դրամ, եւ չոր գինձ մէկ դրամ։ Ծողվէ զայդ դեղերդ եւ արկ ի պտուկ մի, եւ արկ ի վերայ ջուր լիտր եւ կէս, եւ օր մի եւ գիշեր մի ի թրջման պահէ. եւ ապա եփէ՝ որ մնայ կէս լիտր։ Եւ առ քանի դրամ Բոլբոսեզի եւ դիր ի քարեղէն մի, եւ արկ զդեղդ տաք տաք ի վերայ, եւ անճէ մինչ որ տրորէ, եւ կտաւով պինտ քամէ եւ շաքար արկ ի վերայ քանի դրամ աղցած։ Եւ զմարդն պատրաստ արա որպէս դեղի ըմպելոյն է. եւ ի կէս գիշեր եղկցու եւ տուր որ խմէ։ Լուծումն պակաս առնէ, բայց շատ օգտէ։ Եւ երբ յիստկի ի դեղէն՝ կերակուր տուր ոսպաւմ, եւ քացխով դոնչէշ, եւ ի ներս պակաս գինձ եւ նշի ձէթ արկ, եւ այլ հոսէրն մի արկանես ի ներս։ Եւ ապա զուգէ զայս եւ դիր ի վերայ ճակտին։ Առ գարէ ալիւր եւ տուղտ եւ հազրի ունդ միաչափ, եւ աղա մանդր, եւ ապիտակ եւ քաջ քացխով շաղղէ, եւ թէ ափիոն գտանես՝ դանկ մի ի ներս խառնէ, եւ դանկ մի քափուր աղցած. եւ զայդ դեղերդ ջնջագրով ի վերայ քներոյն արկ. եւ քանի չորնայ՝ փոխէ ճիճն եւ այլ դիր։ Ապա եթէ մարդն ուժով լինի եւ ջերմութիւն՝ շատ, զաջոյ ձեռինն զչէֆալն կտրել տուր եւ արիւն հանել. եւ թէ արիւնն սեւ լինի եւ թանձր՝ յոլով թող, եւ թէ կարմիր լինի՝ պակաս թող, եւ զներքանքն հարուլ տուր մանիշկեղով եւ խէտրի միջով։

Ե.

Ձեռագիր 1438ին։

Սնֆուլի ձէթն օգտակար է ստամոքցվու, եւ լերդի ցաւու, յորժամ ի հովու-

Ձեռագիր 1294ին։

Նարդի ձէթն, որ է սնֆուլի ձէթն, օգտակար է ստամոքցվի եւ լերդացաւի՝

թենէ վատուժի, եւ կոլնջի եւ փորցվի, եւ թէ խմելոյ տաս, եւ թէ ընդ դրացէ օծնես, նոյնպէս եւ թէ ի հօռոմ դեղ լնուս՝ օգտէ, եւ որոյ ականջն ցաւի եւ կամ գլխոյն կէսն ի պաղութենէ, եւ օծնեն կամ յականջն կաթեցնեն՝ յոյժ օգտէ։ Առ խոստոպլ դորէլէ, սօլ, որ է կիպեռիոն... զամէնտ աղա խոշոր եւ ի նոր պուտուկ լից, եւ ի վերայ լից սպիտակ գինի հանչաք որ ծածկէ զդեղերտ. եւ ապա յամէնին վերայ երկու լիտր պաղտատցի շիրիկ ձէթ լից, որ է պաղտատի լիտրն հարիւր քսան դրամ, եւ դիր զպուտուկն ի վերայ հահանդ կրակի, եւ խառնէ շերեփովն եւ եփէ հանչաք որ ամէն գինին հատնի, եւ ապա ի վայր առ ի կրակէն եւ ձեռօքդ աճրէ զդեղերն, եւ պարզուտով քամէ եւ յաման լից։ Եւ ապա առ չոր կարմիր վարդ եւ զմուռ, եւ դալար մրտենոյ տերեւի ջուր, եւ աղա խոշոր զկարմիր վարդն եւ զմուռն, եւ խառնէ ի մրտենոյ ջուրն, եւ լից ի վերայ գինի քանի ծածկէ զդեղերն, եւ ապա լից ի վերայ զայն եփած ձէթն, եւ այլվայր ի վերայ կրակին դիր եւ եփէ յեղմն ինչվի գինին այլ հատնի եւ մրտենոյ ջուրն։ Ապա առ ի վայր ի կրակէն եւ աճրէ ձեռօքդ եւ քամէ, որպէս զառաջինն եւ յաման լից։ Եւ առ օընֆուլ եւ խորանֆուլ, ... աղա խոշոր եւ ի պուտուկ լից, եւ ի վերայ յիստակ ջուր՝

որ ի հովութենէ լինի, եւ կոլնջի եւ փորցվի, թէ խմելոյ տաս եւ թէ ընդ դրուց օծնես, նոյնպէս թէ ի տըկճոր դնես, եւ կնոջ որ որովայնն ցաւի՝ օգտէ որ յինք դնէ, եւ ականջցաւի թէ յականջն դնէ, եւ գլխցաւի եւ շոշոնկի՝ որ կէս գլխոյ ցաւի ի հովէ, թէ ի քիթն ածես՝ օգտէ։ Եւ զձէթն շինեա այսպէս։ Առ խոստոփլ դոպլէլէ եւ սօղ՝ որ է կիպերիս... աղա խոշոր, ի նոր պուտուկ լից, եւ ի վերայ՝ գինի որ ծածկի, եւ երկու լիտր շիրիկձէթ, եւ յեղմն եփէ խառնելով, որ գինին հատնի եւ ձէթն մնայ։ Եւ ձեռօք աճրէ խիստ, եւ ի պարզուտ քամէ։ Եւ առ չոր կարմիր վարդ եւ զմուռ եւ մրտենոյ տերեւի ջուր երեսուն երեսուն դրամ, աղա խոշոր եւ ի պտուկ լից, եւ ի վերայ՝ գինի որ եւ զայտ ծածկէ, եւ զայն եփած ձէթն այլ ի վերայ լից, եւ եփէ՝ որ եւ այտ գինիտ հատնի եւ ձէթն մնայ, եւ այլ աճրէ եւ քամէ։ Եւ առ անֆուլ եւ խորանֆուլ... աղա խոշոր, եւ ի վերայ՝ ջուր որ ծածկի, եւ եփէ յեղմն։ Ապա առ պալասենի ձէթ... եւ զայլ ձիթերտ եւ զառաջին ձէթն որ եփեցեր՝ ի մէկ տեղ խառնէ, ու յայն ամանն լից՝ ուր դեղերն կվեփին։ Եփէ՝ որ ջուրն հատնի եւ ձիթերն մնան, եւ ճիճն խառնէ, հովցո եւ քամէ։

որ ծածկէ զղեղերն, եւ յեղմն կրակով եռցո, եւ զայն եփած ձէթն ի ներս լից, եւ պալասանի ձէթ... ի հետ խառնէ, եւ եփէ խառնելով ի վերայ հաւհանդ կրակի՝ որ ջուրն հատնի, եւ առ ի կրակէն ի վայր, աճռէ եւ քամէ որպէս զառաջինն, եւ լից յաման եւ պահէ։

Չեռաքէր Ափրոդիտոյ։

Զէթ նարդի, որ է անֆուլի ձէթն, որ օգտէ ստամոքացաւի եւ լերդացաւի, (եւ) երբ ի հովութենէ լինի, եւ կոլնջի եւ փորացաւի, եւ թէ խմելու տաս եւ թէ ընդ դրոց օծանես, եւ թէ հոգնոյ դնես, եւ կնոջ որ որովայնն ցաւի՝ օգտէ, որ ինքն դնէ. եւ յականջացաւի որ ի յաջ յականջն ցաւի՝ արկանես, եւ գլխացաւի եւ շախոնխոյի՝ որ կէս գլխոյն ցաւի, երբ ի հովութենէ լինայ ցաւն՝ օգտէ երբ ի քիթն արկանես։ Եւ ձիթիդ զուգելոյն նշանքն այսպէս է։ Առ խոստղ դարչին եւ սօդ՝ որ է կիպերիոն...։ Զամէնն աղա ձարբ եւ ի նոր պղնձուկ արկ եւ գինի ած ի վերայ, այնչափ՝ որ զինքն ծածկէ. եւ ապա յիրենդ վերայ երկու լիտր շիրիկ ձէթ արկ, եւ մեղմն կրակով եփէ եւ ճիճն խառնէ, ինչվի յայն՝ որ գինին հատնի եւ ձէթն մնայ։ Եւ ապա ի վայր առ ի կրակէն եւ ձեռօքդ աճրաէ պինդ, եւ ապա պարզուտով քամէ եւ յաման արկ։ Եւ ապա ա՛ռ չոր կարմիր վարդ եւ զմուռ եւ դալար մրտենոյ տերեւի ջուր, յամէն մէկէ երեսուն դրամ, եւ աղա զայտեր ձարբ եւ ի պտուկն արկ, եւ գինի այնչափ (է) վերայ՝ որ զդեղերն ծածկէ, եւ զայն եփած ձէթն այլուայր ի վերայ արկ, մեղմն կրակով եփէ, ցուրվի յայն՝ որ եւ այդ գինիդ հատնի եւ ձէթն միայն մնայ. եւ այլուայր աճռէ ձեռօքդ եւ քամէ, եւ յաման արկ զձէթդ։ Եւ ապա առ անֆուլ եւ ղարանֆուլ... զայս դեղերս աղա ձարբ եւ ի պտուկն արկ, եւ ի վերայ՝ խստակ ջուր, այնչափ՝ որ զդեղերդ ծածկէ, եւ եղմն կրակով եփէ։ Եւ ապա առ պալասենի ձէթ... եւ զայլ ձիթերդ եւ զառաջին ձէթն որ եփեցիր՝ ի մէկ տեղ խառնէ, եւ ի յայն ամաննն արկ՝ որ դեղերն կու եփին, եւ այնչափ եփէ՝ որ (զ)ջուրն հատնի եւ ձիթերտ միայն մնայ, եւ ճիճն խառնէ։ Եւ ապա ի կրակէն ի վայր առ, եւ թող որ հովնայ, քամէ եւ յաման արկ եւ պահէ։

Ցաջորդ չորս հատածք յատուկ են 1438ին ձեռագրին, եւ 1294ին ձեռագրին մէջ չկան։

Զ. Եւ յառաջ գրենք զճուլաղին շինելն, զի ամենայն շորաղնոյն նիւթն եւ պատճառն այն

է։ Առ շաքար դրամ հարիւր, մանտրէ զշաքարն, եւ շաղղէ զինք երեք հաւու կթի սպիտակուցով. եւ լից ի վերայ պաղ ջուր դրամ երկու հարիւր, ու խառնէ՝ որ պղտորի, ու դիր ի վերայ կրակին՝ որ եփի յեղմն, ու եփ սկսնու յեռալ՝ նա դու առ դգալամն պաղ ջուր, ու ի շուրջ կաթեցո յայն տեղեստանն որ կու եռայ, ինչուր տեսնուս որ ամէն ւօ—ֆըն ժողվի ի մէկ տեղի։ Յայն ժամն քամէ՝ որ ելնէ ւօ—ֆըն, ու զծօ—լօղն այլ դիր ի վերայ կրակին, ու եփէ յեղմն, որ թանձրնայ հայնց՝ որ եփ ի դգալն առնուս ու վայթես՝ նա զէտ դերձան իջնու, որ չիջնու կաթ կաթ ի նօսրութենէն։ Բայց յորժամ կարմիր լինի շաքարն, դուն ի քամելոյն ժամն առ հաւկութի մի այլ սպիտակուց եւ լից յաման, ու հանապ մի ջուր ի վերայ, ու հար զինք ինչուր փրփրայ. ու եփ ծակ շերեփոմն հանես զւօ—ֆըն ձգես՝ նա դուն ի յայս սպիտակուցէս այլվայր ի յեռն ձգէ, որ ժողվէ զւօ—ֆըն. ու քանի շատ տարպա ձգես զհաւու կթին փրփուրն ի ներս՝ նա այլ սպիտակ այնէ զծօ—լօղն։ Եւ որ կամենայ սպիտակ ծօ—լօղ շինել, որպէս ի բժշկարանն է յիշած՝ նա առնու(ն) աղէկ վարդջուր դրամ քառասուն ու հինգ, ու ի յայսչաք ծօ—լօղս լնու, եւ ի յայն ժամն՝ որ ի կցել ի մօտ գայ՝ նա քչիկ մի այլ եփէ ի վերայ վարդջրին, որ զիր կատարեալ թանձրութիւնն առնու։

Է. Նշանք բաւստաւլիկօնի, որ թարգմանի առաքելական, եւ օգտէ կոտրծի, եւ թափած ու քամռած զօղվծի, յորժամ զէտ ծօ—դօր ի վերայ դնեն, եւ ստամոքի որ քթեթով ի վերայ փակցնեն՝ նա տանի զցաւն ու ուժվորցնէ զստամոքն, եւ օկտակար է յամէն ազգ ելունդ, եւ ի Բ—փոմ, եւ ի ջանջխնած տեղ, նոյնպէս եւ թէ գլխացվութիւն հանդիպի, որ ի քունքն դնեն՝ նա տանի զցաւն, եւ սպին ուր կենայ՝ նա ամրցնէ յորժամ ի վերայ դնեն։ Ֆռանկն է։ Առ սեւ ձիւթ նուկի մէկ, բէճ կրեկ նուկի մէկ, չարհստ թուղթ կէս... մոմ թուխտ մէկ... բայց ի ձմեռն կէս թուխտ պիտի զմոմն. քացախ նուկի կէս։ Լից զքացախն ի սպրկիկ պուտուկ պղընձէ, եւ ի խիժերոյն որ չէն ծեծելոյ՝ դուն ի ներս լից ու զմոմն, ու դիր ի կրակն որ հալի։ Եփ հալի՝ դու առ յիրմէ ու կաթեցո ի ջուրն. թէ զգոյնն

փոխէ, դու զլուած բէճ կրէկն ի ներս լից, ու առ մազտաքէ դրամ հինգ, հայ խունկ լուած դրամ եօթն, լից ի ներս ու խառնէ՝ որ միամորթի ընդ դեղերն. եւ երբ զգոյն սպիտակ փոխէ՝ դու եփէ այլ, ինչվի թընջգոյնի, եւ առ ի յետ ի կրակէն. ու դիր ի ներս դր՛դէն դրամ հինգ, ու աերտ խառնէ, եւ ապա քամէ զինք շող շող ի պաղ ջուր, ջանավաղ պղնձով մի, ու պինդ ոլէ զպղն-ձոտին, որ ուժն ու սպրկիկն ի վայր անցնի, ու խիժերոյն աքռն ու աղջըջութիւնն ի պղնձոտին մնայ: Եփ պաղի դեղն ի ջուրն ու պնդի, դու օծնէ զափտ կասլայի ձիթով, ու առ զդեղն յափտ ու աճըռէ՝ որ միամորթի, ու կաղպըրնի արա ու պահէ:

Ը. Մորհամ Մայստռ Անսելմին, որ է զօրաւոր եւ օգտակար ամենայն խոց(է) եւ զարկուց, որ ի գլուխն լինի, եւ քաշէ զաքռն ի խորու տեղաց: Փռ.: Առ դր՛դէն զբուն եւ զսպիտակն որ գտնուս, ու սպիտակ մոմ միաչափ յամէն մէկէ մասն մէկ. դիր ի վերայ հահանդ կրակի, որ հալին ու միաւո-րին ընդ իրար: Ապա վերո ի կրակէն, ու լից եռ ընդ եռ ի կարմիր կովու կաթն, եւ թէ աղջկնմօր կաթն լինի՝ այլ աղէկ է. եւ թող ի կաթն՝ որ պաղի: Ապա հան զդեղն ի կաթնէն ու դիր ի վերայ կրակին՝ որ հալի տարպայ մի այլ: Եւ ապա լից զինք ի սպիտակ բարկ քացախ ու թող որ պաղի, ու ապա առ ի յափիտ մէջն, ու բու-թաւմդ տրորէ զդեղն երկու պահ, ու յաման դիր ու պահէ. եւ քանի հնանայ այս դեղս՝ նա այլ զօրաւոր գործ այնէ: Եւ այս մորհմիս դեղդրելոյն նշանքն այս է, որ առնուս կտաւ կտոր մի խոցին չքօք ու շինես ի յինք ծակտի շատ, որ աքռ զոր քաշէ մորհամն՝ նա ընդ այն ծակտին ի դուրս ելնէ, ու մեկնէ զմորհամն ի վերայ այն ծակտած քթե-թին խիստ նօսր ու դիր ի վերայ խոցին: Եւ թէ վարքն յերկայն լինի, դու երկու կտոր արա զկտաւն, ու զմորհամն ի վերայ մեկնէ խիստ նօսր, ու դիր զմէկ կտաւն հետ խոցին բերնուցն յեր-կայնքն, ու զմէկայլ կտորն հետ մէկայլ դեհին, հայնց ի մօտ յիրար՝ որ թվենայ թէ ի կից գան:

Թ. Վասն լօշտկին բժշկութեան եւ վանց ցաւ-ուն որ Նըռնէջ ասեն, որ կենայ ու երեան ալլի ու ջղերն քաշվի: — Առնուն զլօշտակն, ծեծեն ու հանեն ի վերայ կտաւուն ու բաղդեն զչլնիքն ու

զմէջքն՝ նա օկտէ։ — Եթէ այն ցաւն լինի՝ որ լար միայ ձեռքն կամ ոտքն ու կամ զօդվածքն, դու այսպէս արա՝ որ վերոյ ենք գրել։ — Եւ թէ փորն ցաւի, դու առ զխոտիս տերեւն ու զծլերն, ու հան զջուրն ու տուր որ չաք մի խմէ։ . . .

Եւ շատ ենք զծլերոյն ջուրն կատրծի տվել, նա արմացք է օկտել։ — Եւ այլ տեսաք աչվռվս կնիկ մի՝ որ ձեռն խոց էր քաանուվեց տարի, եւ նեխել էր՝ հայնց որ ճաւաւճնին կտրել կամ(ե)ին. նա զայս խոտիս ջուրն ու սպիտակ գինի միաչափ յիրար խառնեցին եւ հինգ օր խմելոյ տվին հետ իրաց՝ նա ողջացաւ ձեռն։ Եւ կայ ազգ մի քար որ եփ կու ժաժէն՝ նա ձայն կու տայ զէտ խարխճուկ, ու այս քարս ի յազգ մի ձկան ըղուղ կու գտվի, նա առնուն յայն քարէն, ու կախեն յայն մարդոյն շլնին՝ որ ձեռն ու կամ այլ տեղ խոց լինի, եւ տան ի ձկնէն որ ուտէ. նա ողջանայ։ — Եւ թէ ձեռն գօսացել լինի ու կամ կկվել եւ ըղընգունքն ընգել, եւ թարխէ, նա առ ամբրաւ ու զլօշիտ տերեւն ու գինի ու ծեծէ ու խառնէ յիրար ու սպեղանի արա ու ի վերայ դիր, եւ հետ վարդի ձիթով օծնէ։

Եւ թէ ոք զայն ցաւն ունենայ, որ թվենայ թէ մրջմներ կենայ ու երթայ ներքեւ մորթոյն, ու կամ կոծծնի ունենայ մարդն, նա ի վերոյգրեալ ջրէս ով խմէ ու իր փայտովս խարէ զկոծիծն. քանի ով ունենայ՝ նա ողջանայ։ . . . Եւ թէ մարդոյն լինդքն ու կամ խամծեկն կենայ ու ուտվի, ու կամ թէ դաշտիկ լինի ի միջքն ու կենայ ու ուտվի՝ նա դու առ ի խոտիս ջրէն դրամ երեսուն ու հանչաք մի անխոռ ու հանչաք մի նուռանկէն, ու մրտի տակ՝ դրամ ութ, աղա ու միաւորէ ընդ իրար ու դիր ի վայր. ու թող որ չորնայ, ու այվայր փոխէ ու այդով ծառայէ։ . . .

Եւ տեսաք մարդ՝ որ լեզուն ու լինդքն ամէնն արիւնով էր, ու ակռայնին ամէնն ի վայր կու գայր. նա ես այս խոտիս ջրովս ու մեղրջրովս յիրար խառնեցի ու տվի՝ որ ի բերանն էառ, ու սպեղնլիք այրի ու ընդ դրացէ դրի ի վերայ՝ նա ողջացաւ այն որ զէտ մեռած էր։ . . .

Եւ թէ խոցք ունենայ ի վիզն եւ կամ աւելի միս, . . . թէ նեխած միս կենայ կամ դաշտիկ, դու առ զխոտս՝ որ ասեն իր փփուլէճ ու ի լօշիս տակէն միաչափ, ու ընդ իրար ծեծէ ու սպեղնլիք արա, ու ի վերայ դիր՝ նա օկտէ։ . . .

Հետեւեալ երեք Հատածքն եւս 1438ին ձեռագրէն են. բայց չենք գիտեր որ կը գտնուի՞ն Հնագոյն ձեռագրին մէջ՝ եթէ ոչ։

Ժ. Ցաղձգս ըոլոլոյի (ըողխոյին) որ գլխոյն կէսն ցաւի։ Իր նշանն է այսպէս՝ որ թէ ի տաքէ լինի ցաւն, նա պիտի կարմրէ մէկ երեսն՝ այն դիհն ուր ցաւն է. եւ յորժամ պաղ իրք հասնի ի յայն դիհն՝ նա իր դիւր թուենայ։ Ստածումն։ Ցառաջ երակ առ եւ արիւն բառ ուժոյն. կերակուր ոսպն տուր աղցած ու շինած լինի քացխով ու ըօֆրնով. եւ փողօղէր այլ ձգէ ի ներս, եւ շաքրով. եւ հաստացո ի վարդին ձէթն եւ ի վարդջուր՝ որ սակաւ քաֆուր լինի խառնած ի ներս. եւ երեք օր այսչափ դեղերովս պահէ։ ...Բայց թէ ի պաղէ լինի այս ցաւս՝ նա յերեսն կարմրութիւն չլինայ, եւ ոչ շողութիւն երեւնայ ի մարմինն, եւ յորժամ պաղ իրք հասնի յերեսն եւ կամ հողմն դիպի՝ նա դժար թուենայ իր։ Եւ զայս ցաւուս տէրն պարտ է պատրաստ պահել ի յամէն թթու եւ ի հով կերակրոց, եւ ի կթեղէն իրաց. եւ տալ պիտի զայս դեղս։ Առ սօղօ օխօռնէ աղցած եւ մաղած... եւ մազտաքէ եւ օշինդր աղցած եւ մաղած, յամէն մէկէ դրամ երեք. զամէնտ յիրար խառնէ, եւ քրէֆօի ջրով շաղղէ, եւ ի պղպղէ չաք հօպեր արա եւ ի շուքն չորցու։ Եւ ի նոյն ժամն տուր ի յայտ հօպերոյտ կշռով դրամ երեք, եւ ի վերայ շող ջուր խմցո. եւ ի քուն թող լինի՝ ինչուր գործ դնէ դեղն։ Եւ ի վաղվենէ այլվայր տուր շող ջուր որ խմէ եւ կենայ ինչվի ճաշքն. եւ ապա այլվայր խմցո զտաք ջուրն, եւ թող կենայ ինչվի ընդ երեկացքն։ Եւ ապա կերակուր տուր սիսռան ջուր, եւ ի վերայ կթխա մի գինի խմցո։ Եւ չինէ ծփելիք նոյն ցաւուս։ Առ օշինտր ու լից ի վերայ շատ ջուր, ու եփէ՝ որ ջրին կէսն մնայ, եւ այնով ծփէ զգլուխն. եւ յոր դիհ գլխոյն ցաւն կենայ՝ ընդ այն քթափողն ի վայր նշի ձէթ կաթեցո։

ԺԱ. Ցաղագս ակնջցվութեան։ Է որ ի տաքէ լինի, եւ իր նշաննին է՝ որ երեսն կարմրէ եւ երակքն ուռնան։ Ստածումն է։ Ի կէֆալն երակ առ. եւ ապա առ վարդի ձէթ դրամ տասն եւ քացախ դրամ քսան, յիրար խառնէ եւ ի վերայ կրակին դիր՝ որ յեղմն եփի, հայնց որ ամէն քացախն

հասնի, եւ վարդի ձէթն մէն միայ, եւ յամէն օր բամբկով յականջն կաթեցո յայտ ձիթեղ։ Եւ թէ այդով չաջողէ, ու տեսնուս որ տաքութիւնն ու ցաւն խիստ է, դու առ ափիոն աղցած կէս դրամ, եւ յայտ վարդի ձիթէտ հինգ դրամ, եւ յիրար խառնէ յամէն օր չաք մի, եւ բամբկով յականջն կաթեցո։

Բայց թէ ի հովութենէ ցաւի ականջն, նշանն այս է՝ որ ականջքն շաչէ, եւ յերեսն չկենայ կարմրութիւն եւ ոչ յերակքն արութիւն. եւ յորժամ հողմն դիպի յինք՝ նա դժար թվենայ։ Դեղ ղայս արա։ Առ օշինդր եւ բարձվենեկ եւ իրիցուկ եւ խնկղկզուկ. զամենս ի նեղվիզ փարչ մի դիր, եւ զբերանքն ծեփէ հայսով եւ դիր ի կրակն որ եփի. ու ծակէ ի հայսին մէջն եւ եփի ու մասուրայ դիր, ու զայն մասուրայն դէմ ականջին կալ, որ շոգին ընդ ականջն ի ներս երթայ, եւ քանի պաղէ այն ջուրն՝ նա բամբակ դիր ի մասուրային վերայ, եւ այլվայր շողցու՝ որ շոգին ելնէ. եւ երբ շողնայ՝ այլվայր ընդդէմ ականջին դիր, եւ յօրն Ժ. տարպա արա։

Եւ թէ յականջն քար լինի ընկել կամ այլ իրք, որ յայնոր ցաւի ականջն, դու զմարդն ի վերայ այն ականջին պառկցո, եւ զգլուխն խիստ ժաժէ. եւ ապա առ փշահանք եւ բեւեկնոյ խէժ եւ ի վերայ թաթխէ, եւ տար ընդ ականջն ի ներս՝ որ ի յինք հասնի, եւ ի դուրս քաշէ։ Եւ թէ այտով չողջանայ որ չելնէ՝ նա ցմխտակ լռած փչէ ի քիթն, եւ զգլուխն ի կախ կալ ի ցաւուն դիհնէն. եւ եփ փռնքտուք գայ՝ դու զբերանն ու զքիթն կալ, պիտի ընդ ականջն ելնէ։

Ապա թէ ջուր լինի մտել յականջքն, առ պօտ որ ի ջրեզերն լինի, եւ ձիթոտէ բամբակ, եւ ի պօտին մէկ ծայրն թաթխէ, եւ զպրտուին մէկայլ ծայրն յականջն դիր՝ որ ջուրն է մտել, ու զայն բամբակն բռնցո՝ որ այրի, նա զջուրն քաշէ։ Եւ թէ մէկ տարպայն չաջողնայ, դու շատ տարպայնի արա. նա անպատճառ պիտի զջուրն քաշէ։

ԺԲ. Յաղագս Նկրիս ցաւուն որ յոտքն լինի։ Նկրիսին նշանն այս է՝ որ թէ ի ձեռացն սկսի ցաւն եւ թէ յոտացն, նա յառաջ բոյթն սկսնու ու ցաւի, եւ այտոյցն որ լինի՝ նա կարմրգոյն լինի, եւ ցաւն սաստիկ լինի յոսկրն եւ յղեզն։ Ստածումն։ Թէ տաքութիւն երեւնայ յերակքն, եւ

մարդն կարիճ մարդ լինի, գուն ի սկզբն այս ցաւուս երակ առ ի յայն դէհն որ չուննայ ցաւ, եւ զինք օր մի անօթի պահէ, եւ ապա չինէ զայս գեղս եւ գիր ի վերայ։ Առ պղպղաքուն ... զամէնդ ապա ուրիշ ուրիշ ... յիրար խառնէ, եւ առ եօթն հաւուր կթի գեղնուց եւ լից յաման եւ զարկ գգալով աղէկ պահ մի. ապա լից ի ներս քչիկ մի քացախ եւ այլ զարկ. եւ ապա զաղցած գեղերս ի ներս (լէց) եւ զարկ՝ որ միաւորին ընդ իրար, եւ ի կտաւի վերայ մռկնէ, եւ զդեղիտ երկան օծնէ վարդի ձիթով, եւ ի վերայ այն տեղոյն գիր՝ ուր ցաւն կենայ. ու հանապազ զինք քացխով թաց պահէ որ չցամքի։

Եւ թէ ... ճանչէս որ ի մաղձէ լինի պատճառն վերայաասցեալ ցաւուս, գու այն դեղերովն լուծէ զինուութիւնն՝ որ զմաղձն հանէ, ու երակ մի առնուլ։ Ի սկիզբն այս հիւանդութեանս՝ որ ի մաղձէ լինի շարժել, զդեղն զոր ի յառաջն գրեցաք՝ որ ի վերայ ոտիցն պիտի չինել ու դնել, դու զայն չինէ ու ի վերայ ոտիցն գիր՝ որ զցաւն հահընդցնէ եւ ողջցնէ։ Նոյնպէս եւ նկրիս որ ի ոսկրոյէ կամ ի պլղամի պատճառէ լինի լել, դու լուծման դեղ տուր՝ որ զայն աղդ խէթն հանէ ի մարմնոյն զոր ճանչես որ յեւելցել է ի մարմինն եւ զցաւն չինել։ Եւ ապա զայս դեղերս չինէ եւ գիր ի վերայ ոտիցն՝ որ օգտակար է յամէն աղդ նկրիսնին եւ յատաց ցաւերն։ ...

Ի վերջոյ կը դնենք մի մի հատուած իւրաքանչիւր ձեռագրէն, որ առնուած են Միխիթարայ Հերացւոյ Ջերմանց միխիթարութենէն։

ԺԳ.

Ջերմանց գիրք.

Պատմութիւն եւ նախագիտութիւն վասն երեք ազգ հալեւմաշ ջերմանն։ — Զայս գիտասցիր եթէ քանի ազգ են եւ ընդ քանի ցեղ բաժանին, եւ զիւրեանց պատճառն եւ զտեղիքն, եթէ ուր եւ որպէս լինի։ Զայս ջերմս անուանէ հոռոմն էքտիկօ, զոր տաճիկն դըք, որ թարգմանի հալեւմաշ։ Իսկ զայս ջերմս

Ձեռագիր 1294։

Պատմութիւն նախագիտութեան հալեւմաշ ջերմերոյ՝ թէ քանի ազգք եւ ընդ քանի բաժանին. եւ զիւրեանց զպատճառն եւ զտեղեաւոյն, եւ թէ ուր եւ որպէս լինին։ — Զայս ջերմնս հոռոմն անուանէ հեքտիկօ եւ տաճիկն՝ դըք. որ թարգմանի հալումաշ եւ վասն այնր հաստատեցին

վասն այնոր անուանեցին այդ անուամբդ, որ հաստատի ի մարմնոյն ի չոր եւ ի պինտ յանդամունսն, որպէս յոսկերքն, եւ ի ջիլքն, եւ յայլն՝ ղոր այլ յառաջ ասացաք. եւ հալէ զծրագուն, մաշէ եւ հատցնէ զմիսն, վասն այդր պատճառանացդ անուանեցին զնա հալեւմաշ:

Արդ պատեհ է որ իմանայ բժիշկն զայս ջերմանս զպատճառն՝ որ ընծայեցնէ զինքն. զի զերդ զմիօրեայ ջերմանն զպատճառնին լինի: Բայց միօրեայ ջերմանն պատճառնին սակաւ լինին, եւ շուտով արձակին. բայց երբ այն պատճառնին յամէ առ ի մարդն եւ յերկարեն, նա մտանէ մէկ մի յայն պատճառնոյն խորու ի մարմինն, եւ ընծայէ զայս ջերմն՝ որ կոչի հալեւմաշ: Եւս առաւել պատճառ այս լինի՝ որպէս սուգն եւ հոգսն եւ մտավարժութիւնն, ահն եւ երկիւղն, ցանկութիւնն եւ ղիպն, տքնութիւնն եւ շատ կարդալն, եւ ցորեկին անօթի կենալն եւ պակաս կերակրիլն, եւ որ սոցին նման են, որ չորացնեն եւ տաքցնեն զմարմինն զերդ յերկարօրեայ ջերմերն, եւ յերկարօրեայ ելընդնիրն, եւ տաք հիւանդութեններն, որ յիշխան յանդամունսն լինի:

Այլ գիտացիր որ այս ջերմս երկու ազդ են. մէկն այրեցող տաքութիւն ունի եւ բարակ ջերմն. իսկ մէկայլն առանց տաքութեան լինի, զի բնական տաքութիւնն հատեալ լինի, զերդ ի յա-

այս անուամբս, որ հաստատի ի մարմնոյն չոր եւ պինտ անդամսն. զէդ յոսկերք եւ ի ջիլք եւ յայլն, զոր յառաջ ասացաք. հալէ զծրագուն, մաշէ եւ հատցնէ զմիսն. եւ վասն այնր անուանեցաւ հալումաշ ցաւ: Արդ պարտ է որ իմանայ բժիշկն զայս ջերմանս զպատճառն՝ որ ընծայեցնէ զինք. զի զէդ մէկ աւուր ջերման պատճռնին լինի. բայց մէկ աւուր ջերման պատճռնին սակաւ լինին եւ շուտով թողուն. ապա թէ այն պատճռնին յեմէ եւ յերկրէ առ մարդ, նա մտէ մէկ ի յայտ պաճռնոյտ ի խորու մարմինն, եւ ընծայէ զհալումաշ ջերմնս: Եւ այսոք լինին պաճառ. որպէս սուգ, հոգք, մտավարժք, տքնութիւն, շատ կարդալ, անօթի կենալ, քիչ ուտել, քիչ խմել, եւ այլ ամենայն ցեղ պատճռնի որ չորցնեն եւ տաքցնեն զմարմինն, որպէս յերկարօրեայ ջերմեր եւ յերկարօրեայ ելնդնի եւ յերկարօրեայ եւ տաք հիւանդութիւններ՝ որ յիշ(խ)ան անդամսն լինի: — Այլ գիտացիր որ այս ջերմերս երկու ազգ են. մէկն այրեցող տաքութիւն ունի եւ բարակ ջերմ, եւ մէկայլն առանց տաքութեան լինի. զի բնական տաքութիւնն հատել լինի ի մարմնոյն, որպէս յալեւորաց. եւ այս ցեղս այնոր լինի՝ որ յիր առաջքն խիստ չորութիւն լինի հանդիպել. հայնց որ զմարմինն բնիկ դարտկել լինի ամենայն

լեւորաց մարմինս: Եւ այս ցեղս լինի՝ յորժամ ի յիւր յառաջքն խիստչորութիւն լինի հանդիպել. հանց որ զմարմինն բնիկ դատել լինի ամենայն ցեղ լուծմամբ. զերդ փորուն լուծելն, եւ վերաբերութիւնն, եւ երակ առնուլն եւ ապիկիքս, եւ այլ դիմօք արիւնն՝ որ ի մարմնոյն ելանէ, քրտինքն ... եւ որ սոցին նման են, ամէնքն լուծումն են մարմնոյն եւ պակասումն գիճութեան:

ցեղ լուծմամբ. որպէս փորոյ լուծանել եւ վերաբերութիւն, եւ երակ առնուլն կամ ապիկիքն. եւ այլ դիմօք որ ի մարդոյն արիւն ելանէ, քրտինքն ... եւ դոցին նմանքն՝ լուծումն են մարմնոյ եւ պակասումն գիճութեան:

## ԺԴ.

Ջերմանց մեկն.

Երբ ժամն եւ ժամանակն պատեհ լինի եւ աղէկ, սկիզբն արա ստածելոյ այսպէս: Եւ թէ կարիք լինի զմարմինն սրբելոյ, սրբէ խէարշամպով եւ նարանջաղէնով եւ գարեջրով եւ քաղցր նռան ջրով. ապա թէ հետ աւուր մի կամ երկու՝ իշու կաթն տուր խմելու: Ապա թէ կարիք չէ զմարմինն սրբելոյ, դու սկիզբն իշու կաթն արա այս նշանօքս: Գիտացիր որ էշն ճերմակ լինի եւ առողջ, եւ ազատ յամենայն ցեղ հիւանդութենէ. եւ աւուրքն մատղաշ պիտի, եւ մօտ ի յօրերն լինի ծնած, եւ իւր կաթն իսպիտակ եւ հաւասար լինի. երբ ի վերայ եղնկանդ կաթեցնես, չիլինի նօսր՝ որ վաթի, եւ ոչ թանձր՝ որ չիսփռի: Եւ դարմանէ զէշն աղէկ խոտով՝ որ դալար լինի, եւ հովային բանջարներով, որպէս հազար եւ դդմի տերեւ եւ հէնդէպայ՝ խառնած ընդ դալար գինձն, եւ այլ պղպղատանի կոթ (յոր. խոֆ), եւ գարի

Բժշկարան 1438էն:

Իւր ստածումն այսպէս է. թէ կարիք լինի զմարմինն սրբելոյ, դու կակուղ դեղերով սրբէ, խիարշամբրով եւ նարանջինով, եւ քաղցր նռան ջրով եւ գարեջրով. բայց յետ այսոր սկիզբն արա խմցնելոյ զիշուն կաթն, այս նշանօքս: Գիտ սպիտակ էշ, որ լինի մատղաշ եւ առողջ, եւ լինի նորածին, եւ կաթինն գոյնն սպիտակ, եւ հաւասար ի նօսր եւ ի թանձր, եւ զայն էշն դարմանէ դալար խոտով եւ հովային բանջրով, զէտ հազար եւ դդմի տերեւ, եւ այլ այսպիսի, եւ զգարին լուա քաղցր ջրով, եւ ցամքցո եւ տուր ուտելոյ. եւ ապա առ ի յայտ իշուտ կաթնէն դրամ ԺԴ: ու տուր որ խմէ, եւ երբ սըրֆի ի ստամոքացն կաթն, դու ապա տուր կերակուր ի հով բանջրնոյն եւ յուտելեցն, զէդ թախթ եւ մաշ եւ սպանախ եւ ծիմել եւ հազար, զամէնտ նշի ձիթով եփած. եւ խմելոյ տուր մուղ

լուացած ցամաքեցուր եւ տապա կերցուր։ Ապա առնուր կաթնէն, ի յառաջին օրն տուր կէս լիտր, եւ հետէն յաւելցուր ի կաթն ըստ ուժոյն հիւանդին, եւ տուր զայդ ի յար, մինչեւ լուծանի եւ ոչ կապի։ Յետեւ այն՝ կերակուր տուր թաղթ եւ մաշ եւ վլիտօն՝ որ է ծմեր, դդում եւ հազար, զամէնն նշի. ձիթով տուր. եւ խմելոյ մուզ նուան ջուր նուան ջուր, եւ հետ կերակրի սակաւ ժամու, նստո զհիւանդն ի դաշտիշտն, եւ ծփէ զմարմինն եղկ ջրով, որ լինի յիստակ ջուր ու քաղցր, ու եփած լինի յայն ջուրն նոնօֆար ու մանուշակ, եւ հազրի տերեւ, ու սպիտակ գարի կեղեւած. եւ երբ հանես ի ջրէն՝ մարձէ զմարմինն նոնօֆրի ձիթով եւ քաղցր դդմի ձիթով։

տուր։ Եւ ապա հետ կերակրին սակաւ ժամ անցո, եւ յաւազան նստի՝ որ ջուրն քաղցր եւ յիստակ լինի եւ եղկ, եւ եփած լինի ի յինքն մանուշակ եւ դդմի տերեւ եւ հազարի տերեւ եւ սպիտակ գարի փերձկած։ Եւ երբ ելանէ յաւազանէն, օծանէ զմարմինն լիլուֆարի ձիթով եւ մանուշակի ձիթով եւ քաղցր դդմի ձիթով։

Յառաջ բերեալ օրինակներն ամէն կարդացող ինքնին կը տեսնէ թէ բժշկարանացս ոճն ու լեզուն՝ ըստ մասին իրօք աւելի ռամկական է քան այլ ամենայն ռամկախօս գրուածքն՝ զոր մինչեւ ցարդ մեր հետազօտութեանց ենթարկած ենք, եւ ըստ մասին՝ բազմօք առաւել ռամկականի կերպարանք ունի, մանաւանդ գրչութեան կողմանէ։

Իրական ռամկականութիւնը պատճառելու զուգընթացած են այն պարագայք, որոց համար Հետազօտութեանցս սկիզբներն (3 եւ 5) ըսած ենք թէ ամէն գրութեան լեզուին ու ոճոյն վրայ ազդեցութիւն կ'ընեն։ Արդեամբք իսկ նոյն տեղերն յիշատակեալ պարագայից՝ եթէ ոչ ամէնն՝ գոնեայ մեծ մասն ազդեցութիւն ունեցած է բժշկարանացս առաւել ռամկականութեան վրայ։ Յայտնապէս կը տեսնուի թէ տեղական եւ անձնական հանգամանք գրողին, — գրաւոր լեզուի հմտութեան նուազութիւնն, — գրուածոյն՝ ընթերցողաց, թերեւս նաեւ ժողովրդեան ստորին դասուց, դիւրահաս ընելու դիտումն, եւ ասոնց նման պարագայք մեծապէս

*օգնած են գրոցս լեզուն հետզհետէ առաւել քան զառաւել ռամկացընելու։*

*Բայց նոյն ռամկականութիւնն՝ ի վեր քան զամենայն յառաջ եկած կը կարծենք նիւթէն որով կը զբաղին։ Բժշկարանքս առաւելապէս կը խօսին դեղերը զուգելու կամ կազմելու (դեղագործութեան) վրայ։ Արդ՝ նոյն դեղոց պատրաստութեան, եւ շատ անգամ անոնց (մասնաւորաբար արտաքուստ գործածուելու դեղոց) կիրարկութեան վրայ գրելու առթիւ՝ հարկ եղած է այնպիսի գործողութիւններ մանրամասն ի մէջ բերել, որ բոլորովին տնային-տնտեսական են, եւ որոց համար ամէն ռամկական բարբառոց մէջ առձեռնպատրաստ կան ընտանեկան եւ ժողովրդական բառեր եւ ասութիւններ. իսկ գրաւոր լեզուաց մէջ հասարակօրէն դժուարին է անոնց նոյնանշան կամ համապատասխանող բացատրութիւններ գտնել։ Այսպէս է առանձինն մեր գրաբար լեզուին մէջ, որոյ կենդանութեան եւ ծաղկեալ ժամանակն՝ ոչ ոք ի մատենագրաց, — որչափ անոնց ցմեզ հասած գրուածներէն կարող ենք դատաստան առնել, — առիթ ունեցած է այնպիսի տնային գործառնութեանց վրայ այնչափ մանրամասնութեամբ գրելու։ Ուստի բժշկարանացս թարգմանիչք կամ խմբագիրք բնականապէս ստիպեալ էին ի կիր արկանել զայն զոր ի ձեռին ունէին, եւ չէին կարող խտրել ի մէջ գրաւորին եւ ռամկականին, բարձրագունին եւ ստորնագունին։*

*Այս են ըստ մեզ պատճառք առաւել ռամկականութեան բժշկարանացս՝ քան զնախընթաց ռամկախօս գրուածս։ — Իսկ այն՝ որ անոնց աւելի ռամկականութեան կերպարանք կու տայ՝ քան զոր իրօք եւ արդեամբք են, կարող ենք համարձակ հաստատել՝ թէ է այն խուռն բազմութիւն զեղչմանց, սղմանց, ամփոփմանց՝ թէ՛ ի բառս եւ թէ՛ ի կազմակերպութիւնս, որ ընդ բովանդակ գրու-*

*թիւնն սփռեալ են։ — Արդարեւ այս ռամկականութիւնք մեծապէս անհաճոյ կը հնչեն եւ շատ ստորին գաղափար կու տան բժշկարանացս լեզուին վրայ, այնու մանաւանդ՝ որ ոչ միայն չեն գտնուիր հնագոյն գրուածոց մէջ, այլ նաեւ ըստ մասին եւ ոչ իսկ յետնագունաց մէջ՝ գէթ այնչափ յաճախութեամբ։ Սակայն կարծենք որ այս՝ եթէ ներեալ է ասել՝ արտաքին թերութիւն գրութեանս չի վնասեր իւր ներքին առաւելութեանցն. որովհետեւ եթէ իրենց հնագոյն եւ ուղղագոյն ձեւոցն դարձընենք նոյն զեղչմունքն . . . որ անսովոր են առ հնագոյն ռամկագիրս, կ'ունենանք բաւական ընտիր եւ վայելուչ իսկ գրուածք, յորում հազիւ կը մնան այնպիսի ռամկական բառք եւ կազմակերպութիւնք, որ այնչափ յաճախեալ չեն յայլ հին ռամկօրէն գիրս։*

*Հատուածս կը փակենք ըսելով թէ նաեւ ի մասին լեզուի պատշաճ է զհնագոյն բժշկարանքս դասել ի կարգի գլխաւոր գրուածոց ռամկական մատենագրութեան։ Վասն զի թող ռամկօրէնի յատուկ՝ բայց գրաբարի հետեւողութեամբ կազմեալ գեղեցիկ ասացուածներն, թող ընտանեկան վայելուչ բացատրութիւններն, որք գրեթէ ամէն կողմ ի կիր արկեալ են, — ունին յաճախութեամբ իսկ այնպիսի տնային-տնտեսական բառեր, այնչափ ազգային հին ասութեանց կերպեր, որ անոնց մեծ մասն ի զուր կը խնդրէ մարդ յայլ ռամկօրէն գիրս։ Այս առաւելութեանց նայելով, ի հարկէ անտես առնել պէտք կ'ըլլայ նախընթաց եւ ժամանակակից գրուածներէն աւելի ռամկականութիւնն, որ ի նոսին կը դիտուի։*

# 16.

# Ե. ՍՄԲԱՏ ՍՊԱՐԱՊԵՏ

*Տարեգիրք եւ Օրինաց Մատեան:*

Գրաւոր աշխատասիրութեամբ ռամկօրէն մատենագրութիւնն ճոխացընելու գործակից եղող մատենագրաց մէջ նշանաւոր դիրք կը բռնէ Սմբատ սպարապետ, (ծնեալ 1208ին[1], վախճանեալ 1276ին,) մին ի հռչակաւոր հայորերոյն՝ որ պայծառացան ի ժամանակի իշխանութեան Ռուբինեանց: Գրութեանս բանասիրական նիւթն ու նպատակն չի ներեր խօսիլ հեղինակիս ցեղին բարձր ազնուականութեան եւ թագաւորական զարմին հետ ազգակցութեան վրայ, եւ ոչ յառաջ բերել դեսպանագիտական ասպարիզի մէջ հայրենեաց մատուցած ծառայութիւնքն կամ պատերազմի դաշտաց վրայ կատարած քաջագործութիւնքն՝ որովք եւ կնքեց իւր դիւցազնական կեանքն: Մեզի կը մնայ զՍմբատ նկատել պարզապէս իբրեւ ռամկախօս մատենագիր, որ գիտցած է այնպէս ճարտարութեամբ ի կիր արկանել իւր գրիչն՝ ինչպէս քաջութեամբ գործածած է իւր սուրն: —

[1] Տարեգրոցս թէ տպագրեալ օրինակաց եւ թէ մեր ձեռագրին մէջ կը կարդանք. "Ի թուին ՈԾԷ. (= 1208) ծնաւ Սմբատ Գունդստապլն՝ թարգմանող պատմութեանս„: Բայց Հ. Ղեւոնդ Վ. Ալիշան երկու տարի յառաջ, այս ինքն՝ ՈԾԵ. (= 1206) տարին դնել պատշաճագոյն կը կարծէ. "Արժան համարիմ, կ'ըսէ, ՈԾԵ. ընթեռնուլ զհայ թուա- "կանն՝ զոր տպագիրք եւ թարգմանիչք ընթեռնուն ՈԾԷ.„ (Բազմավէպ, 1876, էջ 320.) զնոյն այլ խօսքով կը հաստատէ ի գաղղիերէնն, ուր կը գրէ ի կարգին. Sempad ... naquit l'an 1206 (et non 1208) comme lui-même l'indique dans ses Annales, իսկ ի Ծան. 2 կը յաւելու. J'ai cru nécessaire de faire cette remarque; car ordinairement dans les éditions tant de l'original que des traductions des Annales de Sempad, on lit la date arménienne ՈԾԷ (657 = 1208) au lieu de ՈԾԵ (655 = 1206), que je préfère, et qu'exige la condition de l'histoire pour plusieurs raisons. (Անդ, էջ 292: Տես եւ Assises d'Antioche, Venise, 1876, Introduction, VIII.)

*Հեղինակիս գրաւորական գործունէութեան վրայ՝ մինչեւ անցեալ դարուն վերջերն՝ այնչափ միայն ծանօթ էր թէ ունի գրութիւն մի պատմական, որ այլ եւս նմանօրինակ գրուածոց պէս՝ կորուսեալ կը կարծուէր։ Հազիւ դարուս կէսերն իմացուեցաւ թէ կան ձեռագիր օրինակք մատենին, եւ սակաւ մի յետոյ՝ դարուս երկրորդ կիսոյն առաջին տասնեկին՝ երկու այլեւայլ տպագրութիւնք հրատարակուեցան՝ Սմբատ պատմագիր եւ Տարեգիրք Սմբատայ անուամբ։*

*Այս հրատարակութեանց վրայ քանի մի տարի անցնելէն ետեւ, յանկարծ յերեւան ելաւ այլ ընդարձակագոյն երկասիրութիւն Մատենագրիս, այն է՝ Օրինաց մատեան կամ Դատաստանագիրք, յորում կը բովանդակին Անսիզք (օրէնսդրութիւն) Անտիոքայ եւ Դատաստանագիրք Մխիթարայ Գոշի՝ Նոր խմբագրութեամբ։ Եւ թէպէտ հնար չէ լիուլի ապահովութեամբ որոշել թէ այս գրութեանց որն է հնագոյնն, սակայն եւ այնպէս մեր բանասիրական զննութիւնք կը պահանջեն որ հետազօտենք նախ՝ զՏարեգիրս, եւ ապա՝ զՕրինաց մատեանն իւր կրկին մասամբքն։*

## Ա· ՏԱՐԵԳԻՐՔ

Առաջին անգամ տպուած են Տարեգիրքս ի Մոսկուա յամի 1856, ի ձեռն Ոսկանայ Գէորգեան Յովհաննիսեանց, որ իւր Յառաջաբանին մէջ (էջ Ը· Թ·) այսչափ միայն տեղեկութիւն կու տայ՝ թէ “Տպագրութիւն մատենիս եղեւ ըստ միոյ եւեթ գրչագիր օրինակի՝ զոր “ունէի ի ձեռին„, առանց ծանուցանելու թէ որ ժամանակէ եւ ինչպիսի՛ է այն գրչագիր։ Միայն կ'ապահովցընէ թէ “Չհամարձակելով “առանց բաղդատութեան ընդ այլում օրինակի՝ ըստ մտի ինչ տանել “ուղղագրութիւն, ուր եդի պահել յամենայնի զհարազատութիւն “բնագրին„։ — Երկրորդ տպագրութիւնն եղած է ի Փարիզ, յամի 1859, ի ձեռն Շահնազարեանց Վարդապետի, որ հետեւեալ տեղեկութիւնը կու տայ իւր հրատարակութեան մասին. “Պր. Ոսկան Յովհաննիսեանցն խոստովանի ի Յառաջաբանի բերում՝ ունել զմի եւեթ օրինակ ի ձեռին ի հրատարակելն զիւր Սմբատ, որ եւ երեւեցաւ մեզ “օրինակեալ ի գաղափարէ եղելոյ ի մատենադարանի սրբոյ Էջմիածնի։ “Իսկ մեք, բաց յունելոյ զհնաւանդն այնորիկ՝ զոր օրինակեալ էաք “պատուապատշաճ խնամով յամի Տեառն 1840, յաթոռն սրբոյ Լուսաւորչին մերոյ, ստացաք ապա նաեւ զերկրորդ իմն օրինակ եւս ուղղագոյն գրչութեամբ քան զառաջինն, զոր ի լինելն մեր ի Կոստանդնուպոլիս յամի Տեառն 1852, համեմատեցաք ընդ երրորդ իմն օրինակի “պատուելի Գալուստ Վարժապետի Տէր Պօղոսեան Սամաթիացւոյ„։ (Յռջբն. էջ 6, 7։) — Կայ եւ ի մատենադարանի վանացս ձեռագիր

օրինակ մի, որոյ ի ճակատուն նշանակեալ է՝ թէ "Օրինակեցաւ ի "Ս. Էջմիածին՝ գրչութեամբ Գրիգորի դպրի Տէր Գրիգորեան ի 1840 ամի": Այս օրինակս անշուշտ գաղափարեալ պիտի ըլլայ վերոյիշեալ օրինակին վրայէն. սակայն եւ այնպէս ուրեք ուրեք կը տարբերի յերկուց եւս տպագրելոց: Մենք առաւելապէս հետեւեցանք տպագրութեան Փարիզու, որ ինչպէս ի վերոյգրելոց կը տեսնուի՝ աւելի խնամով տպուած է, բայց միշտ համեմատելով նաեւ ձեռագրին հետ, եւ միշտ այն ընթերցուածն ընտրեցինք՝ յոր երկու օրինակք միաբան են:

Չիք տարակոյս որ Տարեգիրքս՝ մին է ի գլխաւոր գրուածոց ռամկական մատենագրութեան: Բայց այն եւս աներկբայ է՝ թէ չի լնուր կատարելապէս այն ակնկալութիւնն՝ զոր պատմագրական եւ լեզուագիտական ուսմանց զբաղող ամէն գրագէտ կարող էր ունենալ այնպիսի ողջոյն պատմութենէ, որ յԺԳ. դարուն յօրինեալ է ռամկօրէն բարբառով: Արդեամբք իսկ՝ ո՞վ չէր յուսար թէ պիտի գտնէ ի Տարեգիրքս, եթէ ոչ նորանոր եւ անծանօթ դէպքեր՝ գէթ արդէն ծանուցեալ դիպաց վրայ հետաքրքրական մանրամասնութիւններ. ո՞վ չէր սպասեր թէ առատութեամբ իսկ պիտի տեսնէ ի նմին այն ամենայն ընտանեկան ձեւերն եւ ժողովրդական ասացուածներն՝ որոց կիրառութեան այնպէս յարմար է ռամկօրէն լեզուաւ գրեալ պատմութիւն մի: Եւ որչափո՛յք արդեօք այսպիսի յուսալից ակնկալութեամբք ի ձեռն առած են զՍմբատ պատմագիր: — Բայց կարծենք չենք սխալիր՝ եթէ համարինք որ ոչ ոք իւր ակնկալութեան համեմատ գտած է զգրութիւնն. նմին հակառակ՝ ամենայն ոք ստիպուած է խոստովանիլ թէ երկու նկատմամբ եւս վիպական կամ գոնեայ չափազանց է եղեր շինած գաղափարն, ունեցած յոյսերն:

Այսու չենք ուզեր ժխտել զգրաւորական արդիւնս պատմագիր Սպարապետիս. չենք ուրանար Տարեգրոցս երկու հայեցմամբ եւս ունեցած արժանիքն: Քա՛ւ լիցի: Այնչափ միայն կ'ուզենք իմացընել թէ իրականութիւնն չի համապատասխաներ լիով այնմ որ իրաւամբք կը սպասուէր: Մեկնենք մեր միտքն, միանգամայն տեսնենք պատճառքն՝ որչափ հնար է գուշակել:

Պատմական հայեցմամբ ըսուածն իմանալու համար՝ բաւական է միտ դնել թէ ինչ եղանակաւ յօրինեալ է Տարեգիրքս։ Ինչ որ նախընթաց ժամանակաց կը վերաբերի՝ Հեղինակն ի հարկէ պիտի քաղէր իրմէ յառաջուան պատմագիրներէն, եւ միայն իւր ժամանակակից դէպքերն կարող էր յանձնէ գրել։ Այսպէս ըրած է Սմբատ։ Իւր Տարեգիրքն՝ ի սկզբանէ, այս ինքն՝ ի Ն. Թուականէ, մինչեւ ՅՈԺԱ. գրեթէ ոչ այլ ինչ է, եթէ ոչ՝ համառօտ քաղուած պատմութեան Մատթէի Ուռհայեցւոյ, որ կը սկսի յամէ ՆԱ. եւ Գրիգորի երիցու շարունակութեամբ՝ կը վերջանայ նշանակեալ ՈԺԱ. տարին։ Ուստի այս բաժնին մէջ, որ Տարեգրոց մեծագոյն մասն կը կացուցանէ, (Տպգր. Փարիզ, էջ 21—99, ուր ամբողջն՝ առանց յաւելուածոյ շարունակողին՝ կը հանի 124 էջ,) նոր ինչ եւ անծանօթ չէր կրնար գտնուիլ։ Եւ եթէ ի գրութեան Սպարապետիս՝ նոյն երկուհարիւր տարւան պատմութեան մէջ՝ կան դէպք արտաքոյ պատմելոցն յՈւռհայեցւոյն, անոնք ալ՝ ինչպէս նաեւ ՈԺԱ. տարիէն մինչեւ Հեղինակիս ժամանակակից դէպքերն, առնուած են յայլոց պատմութեանց եւ գլխաւորաբար այս վերջին տարիներս երեւան ելլող Ռուբինեանց Պատմութենէն, որ թէեւ ինքնին քաղեալ է յայլոց եւ առաւելապէս ի նմին Ուռհայեցւոյն, բայց հարիւր տարիէ աւելի յառաջ կ'երթայ քան զնորայն եւ կը հասնի մինչեւ ՉԻԱ. (= 1272.) այս ինքն՝ մինչեւ այն միջոցն ուր կը դադրի նաեւ բուն գրութիւն Սմբատայ[1]։

---

[1] Տես Բազմավէպ, 1876, էջ 319։ Սոյն նորագիւտ եւ կարեւոր գրութեան վրայ այսպէս կը կարդանք ի Պատմութեան Հայ Դպր. “Ձեռուընիս հասած է բաց ի Մատ-“թէի Ուռհայեցւոյն գրուածքէն՝ ուրիշ ժամանակագրա-“կան եւ գրաբար լեզուաւ շարադրուած Ռուբինեանց ժա-“մանակագրութիւն մը, ընդարձակագոյն քան զՍմբատայն, “եւ յորմէ շատ տեղ փոխ առած կ'երեւի վերջինս, համա-“ռօտելով եւ իր ոճին վերածելով”։ (Հատ. Ա. էջ 749։)

Այս ամենայն առաջի աչաց ունենալով՝ ամէն մարդ ինքնին կը տեսնէ թէ կարի սակաւ ժամանակի, հազիւ 50—60 տարուան պատմութիւն կը մնայ՝ զոր կարող ենք նկատել իբրեւ Հեղինակիս անձնական գիտութեամբն ի գիր առեալ, որ եւ շատ համառօտ բովանդակութիւն է իւր ժամանակակից դիպաց՝ յորս ինքնին միջամուխ եւ գործակից եղած է եւ կամ ականատես գտնուած:

Ի մասին լեզուի ըսուելիքն ալ դիւրին է հետեւցընել պատմական հայեցմամբ ըսուածներէն: Գիտենք որ գրաբար էին պատմութիւնք՝ զոր ի ձեռին ունեցած եւ յորոց քաղած է Սմբատ իւր Տարեգիրքն: Արդ թէպէտ եւ դիտած է ռամկօրէն գրել, եւ այս պատճառաւ համարձակ գործածած է սատ անդ ռամկօրէնի ամէն կերպ յատուկ բառերն ու ձեւերն, ուրեք ուրեք եւս ժողովրդական բացատրութիւններ եւ կազմակերպութիւններ, որով եւ մարթ է ըստ իմիք ռամկօրէն կոչել Տարեգրոց նաեւ առաջին մեծագոյն մասն. սակայն աւելորդ համա-

---

— Աւելի մանրամասն տեղեկութիւն կը գտնենք գրոցս վրայ ի Սիսուան, որոյ հմուտ Մատենագիրն քանի մի օտարալեզու պատմագիրներ յիշատակելէն ետեւ՝ խօսքն այսպէս յառաջ կը տանի. “Ըղձալի էր յաւէտ եւ յազգայնոցս մերոց
“գտանել այսպիսի մանրապատում գրուածս: — Ըստ մասին լծին զայս իղձ՝ մատեանք երկու ի յետին ամքս հասեալք ի ձեռս իմ, եւ մին՝ մերձ յաւարտ տպագրութեան
“մատենիս: Առաջինն է նման Սմբատայն պատմութեան,
“յՈւռհայեցւոյն քաղուած արարեալ եւ շարայարելով
“զգործս Ռուբինեանց մինչեւ ցերկրորդն Լեւոն, նոր եւ
“կարեւոր գիպաց յիշատակօք, զոր յեռեալ եմ ի կարգի
“պատմութեանն Լեւոնի ի տեղագրութեան: Անյայտ մնաց
“անուն Հեղինակին. զի առաջին եւ վերջին թերթք մատենին գրելոյ ի վերջ կոյս ԺԳ. դարու կամ ի սկիզբն ԺԴ.ին,
“որպէս եւ մասն ի միջոյն անկեալ էին: Վասն որոյ ի կարգի
“բանիցս կոչեմ զսա Պոփին Կիլիկոյ կամ Արքունի պոփին
“եւ կամ սոսկ Պոփին ծէր: Անանուն մնայ եւ երկրորդին
“Հեղինակ. այլ միայն վկայէ զանձնէն լինել երէց Երեքխորան եկեղեցւոյ Սսոյ՝ ի կէս ԺԷ. դարու. եւ է ժամանակագրութիւն կամ տարեգրութիւն՝ օծով Ուռհայեցւոյն,
“քաղելով յայլեւայլ պատմչաց...: Ըստ այլեւայլ հեղինակացն՝ այլայլի եւ ոճ շարադրութեանն եւ յանգի ի ռամկականն...„: (Յառաջաբան, էջ ԺԱ:)

Հարիւր մարդով եւ եպիսկոպոսաւք։ Իսկ ի մտանելն նորա դղրդեցաւ քաղաքն ամենայն ի հանդիպուծն նորա. եւ մեծ փառաւք տարան զնա ի սուրբն Սոփի. եւ եկին առ նա թագաւորն եւ պատրիարքն։ Իսկ հրամայեաց իջուցանել զնա յողորմ տուն, եւ տալ ծախս յամէն աւուր ի պէտս նոցա։ Որ մի գնաց սուրբ հայրապետն առ թագաւորն։ Իսկ ելաւ թագաւորն ի յոտն նմա; եւ նստուցանէր զնա ի յաթոռ ոսկի։ Իսկ երբ ելաւ տէր Պետրոս, եառ զաթոռն տէր Եղիսէ. եւ ճորտերն չթողեին, եւ չկարացին առնուլ ի նմանէ։ Զոր ձորդա թագաւորն ցանէր Եղիսէ, եւ նա ասէ. Ով թագաւոր, աթոռ հայրապետական է, չէ պարտ նստել ի վերայ այլ մարդ։ Իսկ թագաւորն հրամայեաց թողուլ։ (Տես Ուռհայ. եջ 122—125։)

Գ. Զպյրացեալ (Պոռուէլն) յղեաց զօրս ի Բաղէշ, եւ նա բերել զմեծ բաբանն' զոր Ապահլ կայսրն վասն քաղաքին Հերայ էր շինեալ. եւ եդեալ անդ հնգետասան օղիւ' ահաւոր բարձրութեամբ. եւ յորժամ կանգնեցին, դողաց քաղաքն յահէ նորա։ Յայնժամ երեց մի Ֆրանգ ի քաղաքն փոքր բաբան մի եւ կանգնեաց ընդդէմ նորա. եւ յառաջին քարն եհար զնա ի խողակն եւ եբեկ. եւ զօրացան քաղաքացիքն։ Ապա յետ աւուրց (Բշնամէ) նորեցին զբաբանն, եւ սկսան հարկանել զպարիսպն մեծամեծ քարամբ. եւ զարհուրեցաւ քաղաքն։ Յայնժամ ձայնեաց պարոն Ապահլ ի քաղաքն' թէ ՈՀ ԻՇԽՆ Իս տայք զբաբանն, նա տամ ձեզ շատ ոսկի եւ արծաթ։ Իսկ եկն յառաջ Ֆռանկ մի եւ ասաց. Ես այրեմ զնա, եւ զարիւն իմ հեղում. զի ես չունիմ զոք որ լաց զիս։ Իսկ ետուն նմա ձի ողորմ եւ զէնս եւ սաղաւարտ. եւ հեծաւ եւ կապեաց յինքն ջոր երկք շիշ. եւ կապեաց թուղթ ի ծայր ռումբին եւ խնդրէր աղօթս յամենեսն. գնայր ի վերայ (Բշնամեացն). եւ նոքա կարծէին թէ Բղթատար է, եւ չխօսեցան ընդ նմա։ Իսկ ժամն կէս որ եւ շող, եւ ամենայն այր պատերազմին ննջէին ի խորանս իւրեանց։ Իսկ եհէն Ֆռանկն առ բաբանն, եւ նոքա կարծէին թէ ընդ մեծութիւն նորա հիանայր։ Իսկ եհան զձէն շիշն, եհարկ ի բաբանն. եւ լոյս շուրջ առեալ զնովաւ' հարկանէր զերկրորդն եւ զերրորդն, եւ վառեցաւ բաբանն բոլոր։ Իսկ Ֆռանկն դարձաւ ի փախչել.

եւ ամենայն բազմութիւն զօրացն է հետ, եւ անկաւ անվնաս ի քաղաքն, եւ ետուն նմա ինչս բազումս։ (Տես Ուռհայ. էջ 142—145։)

Դ. Ի սոյն ամի ի ձմեռն եկաւ խիստ ձիւն վաթսուն օր յամենայն տեղիս։ Գիշերն գայր՝ ցերեկն հալէր. եւ էր ջուրն կարմիր եւ լեղի։ Եւ յայս սաստիկ եղեւ սով վայրի անասնոց եւ թռչնոց, եւ չգտանէին կերակուր, եւ նեղեալք ի սովոյն՝ դիմեցին ամէնն ի մարդիկ եւ ի շէնս. եւ նոքա անխնայ կոտորէին զնոսա։ Իսկ ողորմածքն կերակրէին զնոսա ի տունս իւրեանց եւ արձակէին, եւ ամենայն մարդ ի գութ ողորմութեան շարժէր ի վերայ նոցա։ Եւ տէրն Նփրկերտոյ մեծ Ամիրայն Նարտօրն յամէն օր հրամայէր քառասուն քուրձ ցորեն եւ քառասուն գարի եւ քառասուն կորեկ, եւ շատ խոտ եւ յարդ ցրուէր ի վերայ դաշտաց, որ ուտէին թռչունք եւ անասունք։ (Տես Ուռհայ. էջ 156—158։)

Ե. Ի լուսանալ առաւօտին՝ ելին բնակիչք բերդին ամէն մարդ յիւր գործն. եւ յանկարծակի տեսան զօրն, եւ փախչէին դուրսէ ներս ի բերդն, եւ պարոն Թորոսն վարէր զնոսա. որ աչ ժամանեալ ի բերդն՝ զներքին դուռն փակեցին դէմ հետեւակացն, եւ զդրսոյինն չկարացին փակել։ Հետեւակն խլեց զդուռն, եւ հուր բորբոքեցին ի բերդն, եւ յոյժ բռնկեց։ Վախեցան բնակիչք բերդին, բացին զգաղտ դուռն եւ սկսան փախչել։ Պարոն Թորոս խիստ ուրախացաւ, եկաւ մտաւ ի բերդն. ապա սկսաւ քննել զգանձս նոցա, քանզի ամենայն գաւառին ոսկի եւ արծաթ անդ էր ժողովեալ։ Եւ հրամայեաց ցուցանել զտուն գանձուցն իւրեանց. եւ նոքա ոչ ցուցանէին։ Եւ սաստ չարչարել զնոսա, եւ մինն նեղեալ ի չարչարանացն՝ անկաւ ընդ բերդն ի վայր եւ մեռաւ։ Եւ սկսաւ զաւագ եղբայրն չարչարել. եւ նա լըրբենի երեսօք ասէ. Դու Հայ մարդ ես, եւ մեք Հոռոմ իշխանք. ի՞նչ պատասխան տաս մեր թագաւորին, որ կոտորես զՀոռոմ մարդ։ Յայնժամ բարկացաւ պարոն Թորոս եւ ասէ. Եւ դուք որ զայր հզօր եւ զօծեալ թագաւոր սպանիք, ի՞նչ պատասխան տայք Հայոց ազգիս։ Եւ էառ կռան մի ի ձեռն, գնաց ի վերայ լալախանն, եհար զնա ի գլուխն եւ սատակեաց։ (Տես Ուռհայ. էջ 398—400)։

Աւելորդ համարեցանք այս օրինակաց համապատասխանող հատճքն եւս ի մէջ բերել յՈւռհայեցւոյն։ Հետաքննինք կարող են անձամբ համեմատել ըստ իջից պատմութեանն, (տպգր. Երուսաղէմի, 1869,) որ նշանակեալ են ի վերջ իւրաքանչիւր օրինակաց։

Այս եղանակաւ շարունակուած է Տարեգիրքս մինչեւ ՌԺԱ. տարին։ Իսկ յաջորդ տարիներու դէպքերն ի հարկէ առեալ ըլլալու էին այլ աղբիւրներէ. եւ արդէն՝ ինչպէս նախընթաց մասին մէջ՝ յայտ եւս կը նշմարուէին հետք այլոց պատմագրաց։ Բայց արդ յերեւան ելլելով Ռուբինեանց պատմութիւնն, իմացուեցաւ բուն գլխաւոր աղբիւրն։ Եւ թէպէտ նոյնն ամբողջապէս ի ձեռին չունենալով՝ չենք կարող ի Սմբատայ յառաջ բերուելու օրինակաց համապատասխանող հատուածներն մի ըստ միոջէ դնել առերի, սակայն կը դնենք որչափ կարող եղանք հաւաքել ի Միսուանայ (էջ 461 — 506)։

Ձ.

| Սմբատ։ | Պատմ. Ռուբինեանց։ |
| --- | --- |
| Տղայ կաթողիկոսն Տէր Գրիգորիս յորժամ եղեւ կաթողիկոս՝ չհնազանդէր ամենեցուն զառաջինն. այլ ինքնիշխանութեամբ տանէր զհայրապետութիւնն։ Յայնժամ մախացեալ ընդ նա աւագ մարդիկն՝ գրեն առ Լեւոն թէ ոչ ունի սա իմաստութիւն վարել զհայրապետութիւնն որպէս արժանն է։ Եւ չարախօսեցին զնմանէ երեք չորս անգամ, մինչեւ շարժեցին զպարոն Լեւոն ի կամս իւրեանց։ Եւ նա առաքէ ի Հռոմկլայն զարքեպիսկոպոսն Սսոյ զՏէր Յովհաննէս առնել | Յորժամ եղեւ կաթողիկոս՝ ոչ տանէր զառաջին հնազանդութիւնն ամենեցուն, որպէս յորժամ ընդ դաստիարակաւ էր. այլ ինքնիշխանութեամբ տանէր զհայրապետութիւնն, որպէս տեսեալն էր ի քեռին իւր։ Յայնժամ մախացեալ ընդ նա աւագագոյն մարդիկն, առաքեն առ Լեւոն եւ ասեն. Ոչ ունի սա իմաստութիւն՝ վարել զհայրապետութիւնն՝ որպէս արժան է։ Եւ յօդեցին որպէս կամեցան զնմանէ։ Եւ զայս արարին մի անգամ եւ երկիցս եւ երիցս, մին- |

ըստ իմաստութեան իւրում: Եւ նա գնաց անդ եւ մտաւ առ կաթողիկոսն. եւ նա պատուով մեծարեաց զնա որպէս զհիւր: Իսկ նա ձեռն տալով սպասաւորացն, մինչ նստեալ էին ի սեղան ճաշոյն, ետ բռնել զդուռն բերդին. եւ տարածեցաւ աղմուկն: Իսկ կաթողիկոսն զարմացաւ եւ ասէ. Տէր Յովհաննէս, այս ի՞նչ էր է: Եւ նա ասէ. Բռնած ես: Յայնժամ անօրէնքն բռնեցին զնա եւ եդին ի ղընտոն եւ ամրացուցին: Իբրեւ ելաւ համբաւն ի դրսցին բերդն եւ ի ներքին շէնն, հասին ամէնն ի վերայ կլային ի յօգն հայրապետին իւրեանց. եւ երեք օր նստելով մարտեան, եւ ոչինչ կարացին առնել: Եւ առ Տէր Յովհաննէս զկաթողիկոսն, երեր առ պարոն Լեւոն. եւ տարին զնա ի բերդն Կոպիտառայ առ ժամանակ մի: Իսկ Հռոմկլայեցիքն աղէկիզեալք ընդ անիրաւ դատապարտութիւն տեառն իւրեանց, յղեն առ նա ի ծածուկ՝ զի թէ հնարեսցէ զելն իւր ի բերդէն, մատուսցեն նմա ձի, եւ տարեալ արասցեն զնա տէր բերդին եւ աթոռոյն իւրոյ: Եւ նա անկաւ ի բանս նոցա մանկաբար, կախուեցաւ կրտաւով ի գիշերի իջանել. եւ կտաւն պատառեցաւ, եւ անկաւ եւ մեռաւ:

չեւ շարժեցին զԼեւոն ի կամս իւրեանց: Եւ առաքէ ի բերդն Հռոմկլայն զարքեպիսկոպոսն զՏէր Յովհաննէս՝ առնել ըստ իմաստութեան իւրում. եւ նա գնացեալ անդ, եւ մտեալ առ կաթողիկոսն պատուով եւ մեծարեալ որպէս զհիւր եւ զազգային: Իսկ նա ձեռնտուութեամբ սպասաւորաց նորա՝ մինչդեռ էին նստեալ ի սեղանն ի ժամ ճաշոյն՝ ետ փակել զդրունս բերդին: Եւ տարածեցաւ աղմուկն, եւ հայրապետն զարհուրեցաւ. եւ ասէ ցՏէր Յովհաննէս. Զի՞նչ է այս զոր լսեմս: Եւ նա ասէ. Բռնած ես: Եւ կալեալ զնա եդին յարգելանի եւ ամրացուցին պահապանօք: Եւ իբրեւ տարածեցաւ համբաւն յարտաքին բերդն եւ ի ներքին շէնն, հասին ամենեքեան զինուք ի վերայ կլային առ ի յօգնութիւն հայրապետին իւրեանց. եւ զաւուրս երիս պատերազմեցան նետիւ, եւ ոչինչ կարացին առնել, եւ ապա խաղաղացան: Եւ առեալ Տէր Յովհաննէս զդատապարտեալ հայրապետն երեր առ Լեւոն. եւ եդին զնա ի պահեստի ի բերդն Կոպիտառա, ժամանակս ինչ կալ անդ: ... Որոյ անկեալ ի բանս նոցա մանկաբար եւ առեալ կտաւ՝ կախեցաւ ի գիշերի իջանել ի բերդէն եւ կտաւուն անկն բեկեալ՝ պատառեցաւ, եւ անկեալ ի խոնարհ՝ բարձաւ մեռեալ:

## Է.

**Սմբատ։**

Ի թուին ՌԿԵ. էառ թագաւորն Լեւոն զԱնտաք իմաստութեամբ, զի առաստ պարգեւօք խոստմամբ հաւանեցոյց զոմանս յիշխանացն. եւ նոքա բացին զդուռն գիշերն, յորում եմուտ շատ զօրօք։ Իսկ ոմանք մտին ի կլայն եւ ամրացան, եւ յետ աւուրց եկին ի հնազանդութիւն։

**Պատմ. Ռուբինեանց։**

Էառ թագաւորն Լեւոն զԱնտիոք արուեստիւ եւ իմաստութեամբ. քանզի... առատատուր պարգեւօք եւ խոստմամբ հաւանեցոյց զոմանս յիշխանացն, եւ նոքա բացին նմա զդրունսն ի գիշերի, յոր եմուտ բազում զօրութեամբ...։ Եւ որք ի կլայն էին՝ կացին աւուրս ինչ. եւ տուեալ զայն եւս՝ եկին ի հնազանդութիւն։

## Ը.

**Սմբատ։**

Ունէր ի մտի (Լեւոն) զչարիսն Լամբրոնեցւոց, զոր անցուցեալ էին ընդ Հայս Կիլիկեցւոց եւ ընդ ազգն Ռուբինեանց, ըստ որում երբեմն պարոն Օշին՝ հայր Հեթմոյ...։ Խորհէր իմաստութեամբ փետել զթեւս նոցա, եւ խօսէր ընդ Հեթում՝ որդի Օշնին, բանս ախորժս մտաց նորա, ասէ. Կամիմ առնել կապակցութիւն սիրոյ ընդ քեզ, տալ զեղբօր դուստրն իմ զՖիլիպ ի կնութիւն աւագ որդւոյն քոյ Օշնի։ Եւ պարոն Հեթում ընկալաւ զբանն եւ ուրախացաւ յոյժ։ Եւ ի քաղաքն Տարսուս պատրաստեցին զպէտս հարսանեացն, եւ եկին Հեթմանք ամենայն տամբ եւ զաւակովք ի Տարսուս։ Յայնժամ թագաւորն Լեւոն կալաւ զնոսա, եւ էառ զԼամբրոն առանց կռուոյ։ Եդ զՀեթումն ի բանտ ժամանակ մի, եւ ապա եհան,

**Պատմ. Ռուբինեանց։**

Խորհէր Լեւոն իմաստութեամբ փետ(տ)ել զթեւս նոցա...։ Խօսէր ընդ Հեթում բանս ախորժականս մտաց նորա։ Կամք են իմ (ասէ) առնել ընդ քեզ կապակցութիւն սիրոյ. եւ տալ զդուստր եղբօր իմոյ Ռուպինի՝ զՖիլիպն՝ ի կնութիւն որդւոյ քոյ երիցագունի՝ Օշնի։ Եւ Հեթում շնորհակալութեամբ ընկալաւ զբանն եւ ուրախացաւ։ Եւ ապա ի քաղաքն Տարսոն պատրաստեցին զպէտս հարսանեաց, եւ Հեթում եկն տամբ եւ զաւակօք եւ ամենայն աղխիւք ի Տարսոն։ Եւ թագաւորն Լեւոն կալաւ զնոսա. եւ առաքեալ էառ զԼամբրունն առանց մարտի։ (Ապա արձակեալ զնա) ի բանտէն, ետ նմա գեղորայս բազումս, եւ պատուով ընդունէր զնա, եւ նա ծառայէր նմա միամտութեամբ։

ետ նմա շատ գեղեր, եւ ընդունէր զնա սիրով. եւ նա ծառայէր նմա հնազանդութեամբ։

Թ.

| Սմբատ։ | Պատմ. Ռուբինեանց։ |
|---|---|
| Ի նոյն (ՈՃԲ) ամի ժողովեաց Թագաւորն Լեւոն շատ եպիսկոպոս, եւ Ներսէս կաթողիկոս զՏէր Յովհաննէս Սսոյ եպիսկոպոսն, որ էր այր իմաստուն եւ առատ եւ սեղանով արքայակերպ, խոնարհ սրտիւ եւ անպաճոյճ անձամբ, այլ ի հոգեւորս անփոյթ։ Զառաքինիս յոյժ սիրէր, եւ ոչ հրապարակէր զվնասս կարգաւորաց։ Շինասէր էր եւ տան յարդարիչ եւ պիտոյից պատրաստիչ յոյժ գովելի։ Քակեաց յեկեղեցական սպասուց բազում անօթս ոսկեղէնս....։ Այլ զբերդն շինութեամբ կարի ամրացոյց։ Եւ զամէն եկեալն առ ինքն գոհութեամբ դարձոյց։ | ...Էր այր խորագէտ եւ իմաստուն եւ առատաձեռն, սեղանով արքայակերպ, եւ խոնարհ սրտիւ եւ անպաճոյճ անձամբ, եւ ի հոգեւորսն անփոյթ։ Զառաքինիս յոյժ սիրէր, եւ ոչ տայր թոյլ հրապարակել զվնասս կարգաւորաց։ Շինասէր էր եւ տան յարդարիչ եւ պիտոյից պատրաստիչ. որ եւ զբերդն Հռոմկլայն քաջ ամրացոյց. (յորսակս) քակեաց յեկեղեցական սպասուցն՝ բազում անօթս ոսկեղէնս եւ արծաթեղէնս։ Եւ զամենեսեան զեկեալսն առ ինքն բարիօք դարձոյց։ |

Կ'ենթադրենք թէ այս կերպիւ նոյն Ռուբինեանց պատմութենէն քաղեալ ըլլան նաեւ յաջորդ երկու օրինակք։

Ժ. Յայնմ ժամանակի յաղթողն պարոն Թորոս կայր քաջութեամբ եւ պահէր զգաւառս լեռնակողմանց Տաւրոսի, որոց տիրէր զօրութեամբն Աստուծոյ, եւ անուանեցաւ Սեւաստոս Մասայ եւ Անաւարզայ եւ Վահկային։ Իսկ եղբայրն նորա պարոն Մլեհն էր այր չարաբարոյ. կամէր որ սպանէր զպարոն Թորոս, եւ յարեցոյց յինքն այլս ոմանս օգնականս իւրոյ չարութեան։ Եւ օր մի եկան երկուքն ի յորս ի մէջ Մասայ եւ Ատանոյ, եւ կամէր Մլեհն զչար խորհուրդն իւր անդ կատարել եւ սպանանել զեղբայրն։ Եւ պարոն Թորոս գիտաց, եւ կալաւ զպարոն Մլեհ եւ առաջի իշխանացն [illegible] [illegible] զնա. եւ ետ նմա շատ ոսկի եւ արծաթ, ձի եւ ջորի, եւ եհան զնա յերկրէն, եւ այլ չար չարար փոխարէն նմա։ Իսկ նա գնաց

առ սուլտանն Հալպայ Նուրատինն, եւ եմուտ ի ծառայութիւն նորա։ Եւ նա ետ նմա զկիւրոս եւ զգաւառն նորա։

Եառ պարոն Մլեհն օգնութիւն հեծելոյ ի Հալպայ թիւրքէն, եւ եմուտ յերկիր Կիլիկեցւոց, եւ տիրապետեաց իշխանութեան եղբօրն իւրոյ. եւ զիւր հակառակսն բռնեաց, եդ ի բանտ, եւ բռնելով զեպիսկոպոսունս՝ ատամնաթափ արար զնոսա։ Եւ լցաւ գանձիւք եւ ոսկւով եւ արծաթով ի զրկանաց անմեղացն։ Եւ էր այր գազանամիտ եւ չար եւ անողորմ. եւ ատէին զնա ամենեքեան եւ ցանկային փախչել ի նմանէ. բայց առ ժամն չգտանէին տեղի։

Իսկ յետ եօթն ամի տէրութեան պարոն Մլեհին, իշխանք նորա սպանին զնա ի Նորաշէն քաղաքն Սիս վասն չար բարուց նորա։ Եւ առաքեն ի Պապառօնն եւ բերեն զաւագ որդին Ստեփանէի զՌուբէն՝ դնել յաթոռն, զոր անդանդաղ առաքեաց քեռին իւր պարոն Թակուրան։ Եւ եկն Ռուբէն տիրեաց հայրենեաց իւրոց։ Էր նա բարեմիտ, առատ, տեսլեամբ գեղեցիկ, եւ ի զինուորութիւն արի եւ աջող ի նետելն։ Եւ սկսաւ տալ պարգեւս ամենեցուն առատապէս. եւ էառ զգանձն պարոն Մլեհին, սկսաւ սփռել ի պէտս եւ յանպէտս, եւ առատ սեղանով անուշացնէր զսիրտ իշխանացն։ Եւ օր մի արար պատիւ իշխանացն եւ շնորհակալութիւն ամենեցուն վասն երախտեացն զոր արարին նմա, եւ սպանին զհօրեղբայրն իւր եւ դրին զնա ի տեղ նորա։

ԺԱ. Յետ մահուան Պամունդ բրինձին շատ իշխանք եկին յԱնտոքոս ի ծառայութիւն թագաւորին Լեւոնի։ Եւ այսպիսի խոհեմ իշխանօք եւ քաջ զօրօք եւ առատ պարգեւօք եւ ընդարձակ սեղանով զամենեսին յօժար կազմէր ի կռիւ։ Ուր եւ դիպէր՝ քաջապէս վարէր զթշնամիսն։ Զի ամենայն ճանապարհ հեռաւոր յիշէին զանուն թագաւորին Լեւոնի, եւ անտես՝ դողային։ Եւ զորդիս Խլիճ Ասլանին որ էին տեարք Հոռոմոց, նեղեալ անձկացոյց յոյժ, առնլով ի նոցանէ բերդորայս՝ [illegible] զերկիր նոցա։ Եւ այս ցեղ քաջութեամբ կայր ի մէջ թշնամեացն իբրեւ զախոյեան անպարտելի. եւ սիրելի էր հեռաւորաց եւ մերձաւորաց։

Կարծենք որ մինչեւ ցայսր ի մէջ բերեալ օրինակներէն տեսնուեցաւ թէ անհիմն չէր ինչ որ Տարեգրոցս միոյ մասին վրայ գրեցինք եթէ պատմական եւ եթէ բանասիրական հայեցմամբ։ — Ընդհակառակն այսուհետեւ բերուելու օրինակներն կը սկսին մեծ ծանրակշռութիւն ունենալ, նախ՝ բանասիրական կամ լեզուի հայեցմամբ, վասն զի ճիշդ ռամկօրէն են ըստ ամենայն ընդարձակութեան բառին, եւ սակաւ մի յետոյ՝ պատմական հայեցմամբ եւս, որովհետեւ հեղինակիս ժամանակակից դէպքերուն վրայ կը խօսին, զորս իւր անձնական տեսութեամբն ի գիր կ'աւանդէ։

ԺԲ. Յետ մահուան Թագաւորին եւ սպանման պարոն Ատանայ՝ մեռաւ սուլտան Ազըտին. եւ նստաւ իւր եղբայրն Ալատին՝ այր իմաստուն եւ աստղաբաշխ։ Երբ զօրացաւ սա բազում զօրօք, էառ յԱտոմայ Թոռնէն ի կիռ Վարդէն զբերդն Կալոնոռոս, եւ զդուստրն նորա ի կնութիւն յօչ կամաց, եւ չհանգաւ ի հետն աղջիկն։ Իսկ պարոն Կոստանդին պայլն զի խելօք էր՝ իմաստութեամբ անցոյց զաւուրքն. եւ իւր Բոփողրոմն էառ ի վերայն հարկ՝ որ տայ ամէն տարի հեծել ի ծառայութիւն չորս հարիւր մարդ. եւ զինչ գտնոյր Ֆռանգցի օժտնի՝ նա քնքշեցնէր։

Եւ սուլտանին խորհելով թէ Կիլիկիա մօտեւոր է, առնում երբ ուզեմ, ապա թող երթամ յայլ դեհ ինձ երկիր բանամ, գնաց շատ զօրօք եւ էառ զԵզնկայն եւ կորոյս զայնոր սուլտանն. անտի՝ ի յԱրզրումն, եւ զայն այլ էառ։ Ապա ոլորեցաւ անտի, եւ երեկ էառ զՄելտինի եւ զԽարբերդ եւ զՉմշկածագքն եւ զԱմիթ եւ զԾովքն եւ մինչ Եփրատ կտրէ զամէնն մլքեց. հայնց որ ելաւ եկաւ Մօրայ սուլտանն՝ Անթափայ տիրոջն ի յօգն, ու չկարաց իրք առնել։

Ի սորա տէրութեանն ելաւ Թաթարին համբաւն ու ձայնն, որ կու գայր ու կառնոյր զվէրի Թուրքաստանն, զբերդերն ու քաղաքներն, եւ երեկ մինչ ի Խորազմն։ Եւ խանգարեաց զԽորազմ Շահն տարպայնի եւ փախոյց. որ գնացին անցան ընդ Ջահուն մեծ գետն եւ նստան ի վերայ գետափին. եւ լուծեց յիւրեանք զամէն երկու գետա-

մէջքն՝ որ է ընդ Ջահուն եւ ընդ Գեհոն ի մէջ։ Եւ ինքն Խորազմ Շահն կայր զէտ ջրած ի վերայ գետին, եւ կարծէր թէ զԽորասան եւ զինչ մեծ գետն կորէ յայս դեհս՝ փրկել։ Նա Չինկիզ խանն որ գլուխ էր Թաթարուն՝ կապեաց ի վերայ նաւերով կոնդորոյնի ու անցաւ ընդ Գեհոն, ու երեկ էառ զմեծ քաղաքն Սմրղանդ ի չորս օրն, եւ ի չորս տարին չկարաց աւերել. վասն զի Սմրղանդն ի թուրք լեզուն՝ Գէր քաղաք ասէ. յիրաւի որ գէր էր եւ մեծ։

ԺԳ. Պարոն Կոստանդին պայլն ժողովեաց զամէն եկեղեցականքն եւ զօրքն Հայոց եւ ասաց թէ Պարոնայք, դուք գիտէք թէ յինչ նեղութիւն գտի ղաշխարհս ու զմեր պարոնին յետմնացքն, ու Աստուծով ինչուի յայս բերի, ու մեր պարոնադուստրս կարգման եղաւ։ Ամէնդ ննողըրուեցէք որ մեզ պարոն բերեմք. զի ես ուզեմ որ իմ տանն եւ իմ որդւոցն անդորրութիւն առնեմ։ Նա ամէնն ննողըրուեցան շատ օրեր, եւ հայնց պատեհեցին՝ որ քան ի յայլ տեղաց՝ բերեն զԱնտաքոյ բրնձին որդին զՖիլիպն. զի ի մօտս է եւ լաւ կարէ օգնել մեզ ի մեր ամէն կարիք։

ԺԴ. Եւ յաւուրքս յայս շարժեցաւ դիւական բարկութիւն ի Թագուհին Զապէլ. եւ ուզեց երթալ տեսնուլ զիւր մայրն յՕսպիթլուն բերդն ի Սելեւկիա եւ գնաց։ Եւ խռովեցաւ ընդ Թագաւորն եւ ընդ ամէն Հայք։ Նա պարոն Կոստանդին ժողովեց հեծել, ու գնաց իջաւ առաջի Սելեւկիոյ։ Նա Օսպիթալն վանաց որ շատ կու ծախուորէր զինքն Սելեւկիա, ու կու վախէին ի յԱլատին սուլտանէն, նա ուզեց տալ զբերդն թագուհւոյն ու սէր ունենալ ընդ Հայք։ Եւ Ֆրէր Բերգրանն այն կերպովս ետ եւ ասէ. Զբերդս Լեւոն թագաւորն ետ մեզ. մեք չկարեմք ասել ընդ իւր դուստրն՝ թէ Ել ի բերդէս. ապա մեք կու ելնենք. դուք առէք զբերդն ու զինք։ Եւ այս ցեղ առին զՍելեւկիա ու զԹագուհին։

ԺԵ. Յայս աւուրքս մտաւ Թաթարն ի Հոռոմք, նա սուլտանին մայրն էառ զիւր դուստրն ու փախաւ ի Կիլիկիայս։ Եւ Թաթարն յղարկեց ի հետ ի Հեթում թագաւոր՝ թէ Տուր զփախըստականդ, թէ չէ՝ քո ամէն սէրն որ հետ մեզ դրիր՝ նա սուտ է։ Նա վախեցին որ Թաթարն

չլցուէր յերկիրս, տուին։ Նա ոխացաւ սուլտանն Քայ Խոսրով, ժողովեաց հեծել, մտաւ ընդ Պապառոնին լեառն ի վայր ու այրեաց զամէնն։ Եւ Թագաւորահայրն պարոն Կոստանդին ու Սմբատ գունդստապլն եկին մտան ի Տարսուս, եւ Թագաւորն իւր հեծելովն կայր յԱտանա։ Իջան (Ռչնտվէ+) ի դարոտն հետ գետին, գերեցին զամէն երկիրն եւ կեցան վեց օր, եւ ապա ել ածին որ ելնէին ընդ Կուկլկայ կապանն։ Թագաւորն հեծելովն ի հետ ել, եւ Թագաւորահայրն եւ Սմբատ գունդստապլն, եւ հասին ի տեղ մի՝ որ Մայծառ (...ծու) ասեն։ Նա դարձան անթիւ շատ ի յետ. մեք դիպաք ու Աստուծով խանգարեցաք եւ կոտորելով վարեցաք ինչվի Պուտանդէ։

Նա յետ այլ մէկ տարւոյ, ի թուին ՈՂԵ. արարին շատ ժողովք, ու եկին մտան ընդ Կոկլկայ կապանն երկուհարիւր եւ վաթսուն հազար մարդ, եւ բոլոր պատեցին զՏարսուս. Թագաւորահայրն եւ ես Սմբատ գունդստապլս մտաք ի Տարսուս։ Եւ եթէ զամէն նեղութիւն բաքնաց ու զկռիւ գրեալ էաք՝ նա կարի շատ լեալ էր. հայնց որ ի ջրմոին դէհն ու ի ջրելին աղէկ նետընկէց մի փլուցին զպարիսպն։ Շատք մեռան յերկուց կողմանց, բայց ի դրացէն՝ հարիւրապատիկ, զի ունէաք ընդ ներքս աղէկ Ֆռանկի չարխաւորք։

Եւ ապա եկն դեսպան ի Թաթարէն՝ որ թողէին ելանել. նա չէաք ի լսել, վասն զի զքաղաքն առած ունէին։ Նա վայդ՝ որ շատ է խնայել Աստուած ի քրիստոնեայքն՝ զնոյն եւ յայն ժամն. որ նստեալ էր սուլտանն Խիաթատինն ի բերդն Կալունոռոսն ու կը խմէր. լոկ ասաց՝ Քովս քովս, ու մեռաւ։ Նա ամիրայքն՝ որ ի վերայ Տարսուսու կային, երբ լսեցին՝ նա ի զրոյց մտան ընդ Թագաւորն, ու ուզեցին զՊրականա՝ որ սիրով ի տուն երթային. նա Թագաւորն երետ, որ ելան ու գնացին։ Եւ չէաք յիմացել զսուլտանին մահն։ Յետ երկու տարւոյ գողացաք զՊրականա։ Եւ ընդ կամքն Աստուծոյ մի ոք պարծիցի փախչել. զի որչափ ի վերայ մեր կացին՝ կաթ մի անձրեւ չեկաւ. երբ որ սէրն եղաւ՝ նա ի քսան օր գիշեր եւ ցերեկ չկտրեցաւ, եւ եղեւ ամէն աշխարհ մէկ ծով։ Յայն ժամն որ ելան՝ հարիւր հազար մարդ աւելի ոտով սպանին, եւ ջրախեղդ սատակեցան։ Շատ պիղծ էաք այրել իւրեանց՝ թէ չէաք երդուեալ։

Ինչպէս ի վեր անդր նշանակեցինք, Տարեգրոց միացեալ մասն՝ սկսեալ յամէ ՉԼԵ. = 22. ի գիր առնուած է յայլմէ, որ (ըստ Ալիշան Վ.ի) է՝ Պաղտին տէրն Նղրի՝ խնամեցեալն զարմին Սմբատայ։ (Տես Բազմավէպ, 1876, էջ 319։) Սոյն մասին մէջ՝ յառաջ բերուելու յարմար օրինակ չգտնուելով, օրինակացս շարքը կը փակենք հետեւեալ զրուցով՝ որ ի վերջ գրութեանն յաւելցուած է։

ՃՂ. Երիտասարդ մի կոյր, եօթն ամ էր՝ որ կոյր էր երկու աչօք։ Գնաց անկաւ առջեւ կուսին Աստուածածնին, եւ լայր զի բժշկեսցի։ Նա ընդ առաւօտն՝ յայտնի երեւեցաւ Աստուածածին, ու կոչէր զնա եւ ասէր. Գրիգոր Գրիգոր, է՞ր կուլաս. յորժամ կուրացար դու, է՞ր չեկիր առ իս՝ որ բժշկեալ էի զքեզ։ Եւ նա ասէ. Ոչ գիտէի զկարկ քո։ Եւ եդ սուրբ Կոյսն զձեռն, եւ ճեղքեաց զթարթիչքն, նոր պտուղ շինեաց, եւ կալեալ փոքր շիշ եւ դեղդիր՝ անցոյց զդեղդիրն յաչքն։ Եւ առ ժամայն բժշկեցաւ, եւ տեսաւ յայտնի զսուրբ Կոյսն ծիրանազգեստ, եւ երկու հրեշտակք առաջի։ Եւ ոմանք որ տեսեալ էին զնա յառաջն թուխակն, եւ այժմ խաժակն եղեւ, եւ ամենայն բնակիչք քաղաքին եւ գաւառին տեսան, եւ գոհութիւն տուին Աստուծոյ օրհնելոյն յաւիտեանս. ամէն։

* * *

Կը պատշաճէր որ աստ՝ ըստ սովորութեան՝ խօսինք գրութեանս ռամկօրէն մասին ոճոյն վրայ. բայց առ այժմ զանց առնելով՝ կը թողունք մինչեւ Հատածիս վերջն։ Բայց այս բաժինը չփակած՝ հարկ կը համարինք մեր տեսութիւնն յառաջ բերել այն խնդրոյն վրայ, զոր յառաջագոյն (էջ 72) յիշատակած ենք, թէ արդեօք Տարեգիրքս սկզբնաբար հայերէ՞ն գրուած է, եթէ նախ օտար լեզուաւ գրուելով՝ յետոյ հայերէնի դարձուած։

Տարեգրոցս յօրինուելուն կերպն, — քաղելով այլ գրաբար պատմութիւններէն եւ անոնց լեզուն առ սակաւ մի ռամկացնելով նոր գիրք յերեւան հանելն, — հաւանաբար առիթ տուած է Սմբատայ՝ թարգմանող կոչելու

*զանձն, որպէս թէ այլոց ի գրաւոր լեզու շարագրածն՝ ինք ի ռամկօրէն բարբառ յեղած ըլլայ։ Այս է բնական եւ պատշաճ մեկնութիւն Թուրգմանող բառին, որ եւ բազմաց ընդունելի եղած է։ (Տես յատկապէս Բազմավէպ, 1876, էջ 319։) Այսու առմամբ միայն հնար է ըստ իմիք Թուրգմանութիւն անուանել զՏարեգիրքն, բայց ոչ այնու մտօք՝ որով կ՚իմանայ Շահնազարեանց Վարդապետն, որ այսպէս կը գրէ.*

*«Պարոն Ոսկան՝ Թուրգմանող փարխո խո պատմու-«թեան[1] բանիւ՝ իմանայ թէ զպատմութիւնն (զՏարե-«գիրս) զորմէ բանս է, Սմբատ շարադրեաց հայերէն։ Թէ-«պէտ եւ երկրորդական առմամբ թարգմանութիւն բառն «ընծայէ զիմաստ շարադրութեան, այլ ընդէ՞ր խոտո-«րեցուցանել զայն աստանօր յիւրմէ բուն նշանակու-«թենէն եւ ոչ իմանալ՝ Սմբատայ զերկ իւր գրեալ նախ «յօտար բարբառ եւ ապա թարգմանեալ ի Հայ. որպէս եւ «Հեթմոյն։ Յայտնի է օտարասէր բարք մասին ինչ մե-«րոյ ազգի, որ զկապկութիւն նախապատիւ ազգային «իրաւանց եւ օրինաց դնէ, որ եւ մոռացեալ զերբոյ ազ-«գին զբարբառ՝ սիրէ վարիլ օտարոտւովն։ Կռուիկոս՝ Հայ-«րենիք Սմբատայ, կանգնեալ յափն Միջերկրականին «ծովու, էր մի ի գլխաւոր նաւահանգստաց ուր յաճա-«խէին նաւք խաչակրաց եւ առհասարակ արեւմտեան «վաճառականաց։ Տոհմն Սմբատայ գոլով իշխող ի «քաղաքին յայնմիկ, եւ խնամութեամբ խառնեալ ընդ «արեւմտեայ քրիստոնեայս, նոքէր գեորեան մատնել «զօտարին բարբառ խօր եւ վարիլ գաղղիականաւն կամ «այլով բարբառով, որոյ ցաւալի օրինակք արդ եւս տե-«սանին յիշխանաւորս ազգի մերոյ գաղթեալս ի միջի «քրիստոնէից Եւրոպիոյ։ Սմին իրի չէ ինչ անտեղի ամե-«նեւին ենթադրել թէ եւ Սմբատայն Տարեգիր+ այսպի-«սում հանդիպեալ վիճակի՝ շարադրեցաւ նախ լատիներէն «կամ գաղղիերէն, եւ ապա թարգմանեցաւ ի Հայս»։ (Յա-ռաջաբան, էջ 17. 18։)*

*Արդէն յառաջագոյն (էջ 72) յայտնած ենք թէ անտեղի կ՚երեւայ մեզի այս կարծիք, եւ թէ կը զարմա-*

---

[1] *Այսպէս կը կոչէ Սմբատ զանձն ի Տարեգիրսն (յամն ՈԽԷ.) գրելով Լեւոն Ա. Թագաւորին համար. «Որ իմա-«նայր թէ գոյ այր իմաստուն եւ գիտուն եւ աջող ի գործ «կամ ի զինուորութիւն կամ ի խօսս եւ ի պատասխանիս, «յղէր եւ կոչէր խոստմամբ եւ հանգուցանէր պարգեւօք, «յորոց մի եւս եմ Սմբատ սպարապետ Թուրգմանող փարխո «խո պատմութեանս»։ Յետոյ զնոյնն կը կրկնէ՝ ըսելով. «Ի «թուին ՈԾԷ. ծնաւ Սմբատ գունդստաբլն Թուրգմանող պատ-«մութեանս»։*

նանք որ ինչպէս կարող եղած է հմուտ Վարդապետն պաշտպան կալ նոյն կարծեաց, որոյ պատճառաբանութիւնն անհիմն կը գտնենք։

1. Սմբատ «կարէր, կ՚ըսէ, դիւրեաւ մոռանալ զազգային բարբառ իւր...» եւ ի հաստատութիւն ենթադրութեանն՝ կը յաւելու. «Որոյ ցուցալի օրինակք տըր եւս տեսանին յիշխանաւորս ազգի մերոյ կողմնակալս ի միջի քրիստոնէից Եւրոպիոյ»։ — Բայց կարծենք թէ ի վերջին ժամանակս ազգէն հեռու եւ օտար ազգաց մէջ գաղթեալ անձանց վիճակն չի կրնար օրինակ առնուիլ ԺԳ. դարու ազգին եւ արքունեաց մէջ ապրող իշխանի վիճակին։

2. Չենք կարող ըմբռնել թէ բարձրաստիճան պաշտօնեայ եւ հայկական բանակի սպարապետ մի, եթէ լինէր յայնմ մասնէ մերոյ ազգի, «որ մոռացեալ զիւրոյ ազգին զբարբառ՝ սիրէ վարել օտարոտւոմն» ինչ լեզուաւ կը խօսէր իւր հայ թագաւորին, իւր ստորակարգեալ հայ պաշտօնատեարց եւ հայ զօրականին հետ, որոց հետ բնականապէս ի հանապազօրեայ հաղորդակցութեան պէտք էր գտնուիլ, առաջնոյն հրամաններն ընդունիլ, վերջնոց՝ հրամաններ տալ, իւր կարգադրութիւնքն հաղորդել։

3. Եթէ իրօք մոռացեալ էր Սմբատ զհայերէն, ինչպէս կարող եղաւ հասկընալ այն հայ պատմագիրներն՝ յորոց քաղած է զՏարեգիրս, եւ անոնցմէ քաղածներն թարգմանել յայն օտար (լատիներէն կամ գաղղիերէն) լեզու՝ յոր շարադրեալ կը համարի նախ զնոյն գրութիւն։

4. Իսկ ինչ ըսելու կամ ինչպէս մեկնելու է պատճառաբանութեան վերջին հատածն՝ թէ «Չէ ինչ անտեղի ամենեւին ենթադրել թէ եւ Սմբատայն Տարեգիրք ... շարադրեցաւ նախ լատիներէն կամ գաղղիերէն եւ ապա Թարգմանեցաւ ի Հայս»։ Թէպէտ կրնայ այս Թարգմանեցաւ բառն այնպէս եւս իմացուիլ թէ շարադրեալն ի Սմբատայ՝ յետոյ թարգմանեալ ըլլայ. բայց անտարակոյս այսու մտօք գրած չէ Վարդապետն, որովհետեւ ինքնին իսկ ի սկզբան ըսած է՝ «Ս[illegible] ... գրեալ նախ... եւ ապա Թարգմանեալ»։ մանաւանդ որ յետոյ թարգմանեալ համարիլն բոլորովին հակառակ կ՚ելլէր Սպարապետին խօսքին՝ որ թարգմանող կը կոչէ զանձն։ Ապա ուրեմն ինք՝ որ յառաջ մոռցած էր իւր ազգային հայ լեզուն, յանկարծ հայախօս եւ հայերէնագէտ եղաւ. եւ նախ հայերէնէ ի լատին կամ ի գաղղիական լեզու փոխածն՝ այնպիսի նորանշան ճարտարութեամբ կարողացաւ ապա ի հայերէն վերածել, որ իւր այս թարգմանածն

նոյն գանուեցաւ հայ պատմագրաց սկզբնագրոց հետ։ Պիտի ըսուի թէ երկու թարգմանութեանց ժամանակին մէջ շատ տարիներ անցած ըլլալով, նոյն միջոցին կրցաւ ուսանիլ։ Բայց ամենայն ոք կը տեսնէ թէ Սմբատայ պէս հրապարակական անձ մի՝ իւր զինուորական եւ դեսպանագիտական բազմապատիկ զբաղմանց մէջ՝ չէր կարող պարապիլ յուսումն լեզուագիտութեան, եւ ի ժամանակի երիտասարդութեան չգիտցած լեզուն՝ սորվիլ ի հասակի ծերութեան։ — Մանաւանդ զի իւր բարձր պաշտամանց զբաղմունքէն ազատ ժամանակն լիով լեցընելու բաւական էին իւր այլ գրաւոր զբաղմունքն, գըլխաւորաբար օրինաց մատեանն, յոր կը պարապէր իւր կենաց վերջին տարիներն, ինչպէս յետոյ կը տեսնենք։ Եւ այս ընդարձակ մատեանն եւեթ բաւական է հիմն ի վեր տապալելու Շահնազարեան Վարդապետին կարծեաց խարխուլ շինուածքն։

5. Թողեալ զայլ ամենայն անտեղութիւնս՝ որ կրնային յառաջ բերուիլ, քանի մի խօսք ալ ըսենք Հեթմոյ վրայ, որոյ օրինակն կը յիշատակէ ի հաստատութիւն իւր կարծեաց։ — Մեզի կ'երեւայ թէ նաեւ յայսմ մասին սխալ ըմբռնում կայ։ Եթէ ուզուի որ Շահնազարեանց Վարդապետին պատճառաբանութիւնն զօրութիւն ունենայ, պէտք է ըսել թէ ինք կը համարի թէ Հեթում (արքայեղբայր՝ տէր Կոռիկոսի) գիրք մի շարադրած է գաղղիերէն կամ լատիներէն, եւ յետոյ ոմն յումեմնէ հայերէն թարգմանած։ Բայց իրն այլազգ է բոլորովին։ Նոյն իշխան-վանականին գաղղիերէն գրածն է Թաթարաց՝ բաւական ընդարձակ (72 էջք՝ մեծադիր ութածալ) պատմութիւն, որ չէր գիտցուիր թէ ի հին ժամանակս երբեք հայերէն թարգմանուած է եթէ ոչ։ Հազիւ ի կէս դարուս թարգմանուեցաւ ի ձեռն Հ. Մկրտիչ Վ. ի Աւգերեան, եւ տպուեցաւ ի Վենետիկ (1842)։ Իսկ իւր (Հեթմոյ) ռամկախառն գրաբար գրութիւնն է՝ Համառօտ (հազիւ 10 էջ) ժամանակագրութիւն Ռուբինեանց եւ Խաչակրաց, որ տպեալ է վերոյիշեալ Թաթարաց պատմութեան կից։ (Տես նաեւ Սիսուան, Յառաջաբան, էջ ԺԲ. եւ 337—339։)

* * *

Ի վերջոյ երկու խօսք ալ յաւելունք Տարեգրոցս վաւերականութեան վրայ, տեսնենք թէ ամբողջովին Սմբատայ գրչին արդիւնք են, կամ թէ բովանդակ դրութիւնն անաղարտ եւ անփոփոխ մնա-

ցած է: Այս խնդիրն լուսաւորելու փոքր նշոյլ կը մատակարարէ ի վեր անդր ի մէջ բերեալ Թ. օրինակն: Այն օրինակին վերջերն՝ ուր կ'ըսուի թէ
“ Քակեաց յեկեղեցական սպասուց բազում անօթս ոսկեղէնս„, խօսքն այսպէս կը շարունակուի. “ Զպա-
“ հարան սրբոցն յոսկւոյ եւ յարծաթոյ եւ յականց
“ զարդարած, զոր Տէր Ներսէսն յառաջ էր շինեալ,
“ եւ յետոյ Տէր Գրիգոր Ապիրատն փարթամացոյց.
“ եւ գրեաց ի վերայ զերկոցունց անուանսն: Զմեծ
“ խաչն ոսկեղէն զպարոն Վասլին քակեաց. եւ հա-
“ լեաց զձոյլ ոսկի սուրբ նշանն Տէր Գրիգորիսի. եւ
“ էառ ակունս եւ մարգարիտս շատ: Քակեաց զոս-
“ կիակազմ տուփ աւետարանին Տէր Գրիգորիսի,
“ որ էր ակամբ եւ մարգարտով: Քակեաց զօքսինտ
“ սիգմլատ նափորտն Տէր Ներսիսի, որ ձար ոսկւով
“ կարած էր, որ զէտ ձուլածոյն կանգնէր: Քա-
“ կեաց զոսկին եւ զքարինսն եւ զմարգարիտն ի գօ-
“ տւոյ սուրբ սեղանին, զոր շինեալ էր Տէր Գրիգոր:
“ Էառ զմեծ լուսակալն արծաթի զոր շինեալ էր
“ Տէր Գրիգորիս եւ կախեալ ի գմբէթ սրբոյն Գրի-
“ գորի. քակեաց զկամարսն Տէր Գրիգորի զոր շի-
“ նեալ էր ոսկւով եւ արծաթով եւ մարգարտով եւ
“ ակամբք: Այլ մի՛ վասն գրելոյս մեղ դնէք մեզ.
“ զի չէ թէ ի համբաւէ լուաք. այլ տեսաք եւ շօ-
“ շափեցաք ձեռօք ի քակելն, եւ լացաք ընդ այն
“ վայելչութեան անզարդ մնալն: Այլ զբերդն ...„:

Որովհետեւ այս մանրամասն ստորագրութեան հետքն անգամ չի գտնուիր ի Պատմութեան Ռուբինեանց, որոյ՝ այսմ համապատասխանող մասն առ երի դրած ենք, յորմէ եւ գրեթէ անփոփոխ առած է Սպարապետն, — ի հարկէ պէտք էր հետեւցընել թէ այս վերջինս իւր կողմանէ յաւելցուցած է այդ մանրամասնութիւնքն: Բայց ստորագրութեան յետին մասն՝ “Չէ թէ ի համբաւէ լուաք, այլ տեսաք եւ շօշափեցաք ձեռօք ի քակելն եւ լացաք„ չի ներեր այս հետեւութիւնն հանել. վասն

զի ըստ խորհրդածութեան Ալիշան Վարդապետի (Սիսուան, էջ 506, ծան. 2.) “Ցայնժամ սակաւամեայ տղայ էր նա (Սմբատ) եւ ոչ ի Հռոմկլայ„. ուստի չէր կարող ականատես վկայ ըլլալ պատմուածին՝ ինչպէս բնականաբար ենթադրել կուտայ՝ մանաւանդ թէ որոշակի կը ցուցընէ խօսքն։

Թէպէտ այսպէս հաւանաբար կարող ենք հաստատել թէ այդ յաւելուածն չէ Սմբատայ. բայց թէ ո՛վ եւ ե՛րբ յաւելցուցած է, զայն դժուարին է սահմանել, վասն զի անծանօթէն ըլլալու դժուարութիւնն ոչ միայն չի նուազիր՝ այլ մանաւանդ կը մեծնայ, Սմբատայ գրութեան վրայ յաւելուած ըլլալն՝ Սմբատէն յետնագոյն ըլլալով։ Այդ պատճառաւ նաեւ Ալիշան Վ. անորոշ կերպիւ կը գրուցէ՝ “Ու յանուն Սմբատայ գունդստապլի ֆրէյաւելուածով յանծանօթէն„։

Ապա ուրեմն օտար գրիչ ձեռն մխած է Տարեգրոցս այս Հատածին մէջ. եւ կարծենք որ անտեղի չ'ըլլար կասկածելն թէ այս դիպաց մէջ պատահածն՝ թերեւս յայլ եւս դէպս պատահած է։ Սակայն մակաբերութիւն կամ կասկած միայն է այս, որոյ ստուգութիւն կը կարօտի անդրագոյն եւ խորագոյն քննութեանց։

## Բ. ՕՐԻՆԱՑ ՄԱՏԵԱՆ

Սմբատայ այս նշանաւոր գրութեան՝ միայն երկու ձեռագրաց վրայ տեղեկութիւն ունինք։ Առաջինն՝ որ է գրչագիր բամբակեայ թղթի (ըստ ոմանց՝ մագաղաթի) վրայ գրուած, մաքուր եւ միօրինակ գրով, Ասորւոց (Հալէպի) կողմերը գտնուելով՝ ստացուածք էր ի Կոստանդնուպոլիս ազնուազարմ Մանուկ Էֆէնտիի Ալլահեան, իսկ այժմ կը գտնուի ի մատենադարանի Մխիթարեանց ի Ս. Ղազար։ Շատ հին կրնայ համարուիլ այս օրինակս, որովհետեւ գաղափարեալ է յամի ՉՁ = 1331, այն է՝ Հեղինակին մահուան († 1276) վրայ հազիւ 55 տարի անցնելէն ետեւ, ինչպէս կը տեսնուի ձեռագրին Յիշատակարանէն՝ որ է այս. “Փառք....։ Գրեցաւ Ասիզս Անտաքոյ եւ Դատաստանս
“եւ կանոնք ընդհանրական եկեղեցականաց եւ աշխարհայնոց եւ Փռանկացն եւ ամենայն ազգաց ի մի տեղ հաւաքեալ, վասն իրաւանց եւ
“դատաստանաց, ի Թուաբերութեանս Հայոց ՉՁ. ձեռամբ Սարգսի
“նուաստ եւ անարժան քահանայի եւ ոսկողի։ Որ եւ հրամայեաց ամե-
“նաբարի Թագաւորն Հայոց Լեւոն, որդի ի Քրիստոս հանգուցեալ
“Թագաւորին Հայոց Աւշնի, վասն գրոցս դատաստանաց՝ որ գրեցաւ ի
“յիշատակ Ձեալըյ յաւիտեան։„

Մեզի ծանօթ երկրորդ ձեռագիրն է Էջմիածնի մատենադարանին օրինակն, որոյ վրայ հետեւեալ տեղեկութիւնը կու տայ Բաս-

տամեանց Վահան Ծ. Վարդապետն. «Մայր Աթոռիս Մատենադա-
«րանում ես գտայ 1869 թուին մի ձեռագիր Դատաստանագիրք
«No. 491 աշխարհաբառ լեզուով, որը ընդօրինակած է, ինչպէս երե-
«ւում է յիշատակարանից, 1618 թուին Կարմիր վանքում Վարդան
«աբեղայի ձեռքով։ Ձեռագրի առաջին երեսի վրայ կայ այսպիսի վեր-
«նագիր. Օրէնէ յողլիող Խոգաարոց +րէփոնէէց՝ Կոսփոնդէխոնոսի,
«Թէոդոսի Խոգաարոց Հոռոմոց։ Ցետոյ սկսվում է յառաջաբանու-
«թիւնը օրէնքի եւ պատժի վերայ, երկու թերթի չափ, եւ ապա գա-
«լիս է մի նոր յառաջաբանութիւն կամ լաւ ասել՝ յիշատակարան հե-
«տեւեալ խօսքերով. Դաթաստանագէր։ Օրէնէ Խո խոնոն+ ըրդհոնըա
ւխոն Էլէըլջ ցոխոնոց Խո ոլըորհոխոնոց, Ֆըռոնկոց Խո ոմնոյն ողլոց,
ւէ մէ տէղ հոառոռէոլը ո։ (Ի Ցուցակի Դատաստանագրոց Մխիթարայ
Գոշի։ Տպգր. Վաղարշապատ, 1880, էջ 53։)

Մենք ի ձեռին ունեցած եւ գործածած ենք առաջին հին գրչ-
չագրէն դաղափարեալ եւ սկզբնագրին հետ զգուշութեամբ բաղդա-
տեալ օրինակն։ Իսկ երկրորդ ձեռագրէն քանի մի հատոյ օրինակն
առացած ենք։ — Ընթացս առիթ կ'ունենանք երկու ձեռագրաց տար-
բերութեան վրայ խօսելու։

Հինգհարիւր տարի մոռացութեան անդըն-
դին մէջ թաղեալ եւ գոյութիւնն անգամ անծա-
նօթ մնալէն ետեւ, յանկարծ յերեւան ելաւ Մա-
տեանս, որ կրնայ առանց չափազանցութեան նկա-
տուիլ իբրեւ մի ի պատուական գոհարաց ոչ միայն
ռամկօրէն՝ այլ նաեւ բովանդակ հայ գրականու-
թեան։ Այն գրուածն առաջին անգամ ծանօթա-
ցաւ ուսումնական աշխարհի՝ Արմաշու վանաց Ցու-
ցակագրոյն միջոցաւ (1870, Թ. 52) Տէր Ցովհան-
նէս Մկրեան Հօր տուած ընդարձակ տեղեկութե-
նէն, զոր այլ եւս լրագիրք հրատարակեցին. եւ ան-
միջապէս ամենուն մտադրութիւնը գրաւեց։

Երկու բաժին ունի այս գրութիւն։ Ի սկզբան
գրուած է Անտիոքայ Անտիոքայ, որ ձեռագրին երեք
մասանց մին կը լինու, եւ յետոյ Մխիթարայ Գոշի
Դատաստանագիրքը՝ ռամկօրէն թարգմանութեամբ,
կամ ճշդագոյն խօսելով՝ նոր խմբագրութեամբ ի
ռամկօրէն լեզու, որ ձեռագրին մնացեալ երկու
մասունքն կը բռնէ։ — Գրոյս այս երկու բաժինքն
հնար է իրարմէ անկախ երկու զատ գրութիւնք
համարիլ, որոց մէջ այլ կապակցութիւն չկայ, ե-
թէ ոչ՝ նիւթոյն նոյնութիւնն կամ մանաւանդ
նմանութիւնը, միեւնոյն անձի (Սմբատայ) գրչին
արդիւնքն ըլլալն եւ ի միակ ձեռագրի բովանդա-
կեալ գտնուիլն։ Այնպէս ալ կ'երեւայ թէ ինքնին

Հեղինակն եւս նկատած է իբրեւ երկու զատ զատ գրութիւն, որովհետեւ իւրաքանչիւրին առանձին Յառաջաբան եւ առանձին վերնագիր դրած է։

Զիա՛րդ եւ իցէ, թէպէտ ըստ Բովանդոլո-նեանն կամ ըստ Նէ-Նոյն միակ գրութիւն համարինք երկու բաժինքն, թէպէտ իրարմէ զանազանեալ, մեր բանասիրական հետազօտութիւնք կը պահանջեն որ առանձին առանձին առնունք ի քննութիւն. որովհետեւ ըստ բաւականին տարբերութիւն կայ երկուքին մէջ ըստ լեզուին։ Վասն զի թեթեւ իսկ ուշադրութեամբ կը տեսնուի թէ բովանդակ մատեանն՝ թէեւ յերկուս եւս բաժինս լիով ռամկական՝ ժամանակին սովորական լեզուին հետ նոյն չէ կատարելապէս, միշտ եւ յամենայնի համաձայն չըլլալով մինչեւ ցայժմ յառաջ բերեալ այլեւայլ գրոց լեզուին. եւ այս տարբերութիւն աւելի մեծ է Անսիզաց՝ քան Դատաստանագրոց մէջ, որ առաւել կը մերձենայ ժողովրդական լեզուին՝ քան զառաջին բաժինն։

Չուզելով փոխել երկու ձեռագրաց եւս պահած կարգն, կը խօսինք նախ Անտիոքայ Անսիզաց եւ ապա Դատաստանագրոց վրայ։ Մանաւանդ զի ամէն պարագայք կը ցուցընեն թէ Սպարապետն յառաջ քան զխմբագրութիւն Դատաստանագրոց՝ զոր ինք որոշակի 1265ին կատարած կը ծանուցանէ, ձեռնարկած է ի թարգմանութիւն Անսիզաց։

## 1. Անսիզք Անտիոքայ:

Չիք տարակոյս որ Հայ ազգն իւր բազմադարեան գոյութեան ժամանակին՝ ունեցած է օրինաց մատեան. վասն զի առանց գրաւոր օրինաց եւ ոչ իսկ փոքր քաղաքի սակաւաւոր բնակիչքն հնար է պատշաճապէս կառավարել՝ թող թէ զբիւրաւոր բազմութիւն ազգի։ Բայց դժբախտութեամբ ոչ միայն ցմեզ հասած չէ ազգային հին մատեան օրինաց, այլ եւ ոչ որոշ տեղեկութիւն կը գտնենք

ուրեք այս նիւթոյն վրայ: Գիտենք որ անդստին ի սկզբանէ քրիստոնէութեան կային Կանոնագիրք, որոց օրինակք ցայժմ ամէն կողմ կը գտնուին: Սակայն ասոնք կրօնական եւ եկեղեցական իրողութեանց վրայ են. իսկ քաղաքական եւ արտաքին գործառնութեանց վրայ հազիւ ԺԳ. դարէն ունինք Մխիթարայ Գոշի Դատաստանագիրքն, որ հաւաքումն է թէ՛ եկեղեցական եւ թէ՛ քաղաքական օրինաց:

Կ՚երեւայ թէ անդստին ի ժամանակէ հրատարակութեան մեծ ընդունելութիւն գտած եւ ի կիրարկութիւն մտած է այս Դատաստանագիրք, որ բնական ինչ է, եւ կը ցուցընէ ի միոյ կողմանէ զկարօտութիւնն որ կը զգացուէր այսպիսի գրութեան, եւ ի միւսմէն՝ նշան է հեղինակին վրայ եղած մեծ համարման: Սակայն եւ այնպէս նոյն Դատաստանագիրք բաւական չէր ամէն կարօտութիւն լնուլ, մասնաւորաբար ի Կիլիկիա, ուր Խաչակրաց արշաւանաց եւ ի շուրջանակի գաւառս հաստատեալ եւրոպական տէրութեանց ազդեցութեամբ՝ շատ ժամանակէ ի վեր այլեւայլ փոփոխութիւնք եւ նորանոր սովորութիւնք ու կարգադրութիւնք մուտ գտած էին: Մին ի գլխաւոր փոփոխութեանց կը ծագէր աւատականութեան (féodalité) վիճակէն, որ ինչպէս յայտնի է՝ Եւրոպիոյ գրեթէ ամէն տէրութեանց սովորական էր ի միջին դարս, զոր եւ Խաչակիր իշխանք մուծած էին յԱսիա իրենց նոր հաստատած տէրութեանց մէջ: Եւ որովհետեւ Ռուբինեան արքունիք եւ շատք ի Կիլիկեան բերդատեարց յանձուկ կապակցութեան կը գտնուէին՝ նա թէ խնամացեալ իսկ էին նոյն եկամուտ իշխանական տանց հետ, անոնց շատ կարգերն ու սովորութիւններն հետզհետէ մուծեալ էին կամ կը մուծուէին ի Հայ արքունիս եւ յիշխանական տունս:

Արդ մեր սպարապետ Մատենագիրն տեսնելով զկարօտութիւնն որ կար նոյն կարգադրու-

*թեանց համեմատ Օրինաց մատենի, ձեռնարկեց ի թարգմանութիւն Անսիզաց Անտիոքայ։ Այնու առաւել յորդորեցաւ յայդ գործ, որ իւր ընտանեաց՝ մանաւանդ թէ իւր անձնական մի խնդրոյն մէջ հարկ եղած էր նոյնպիսի օրէնսդրութեան դիմել եւ այնու լուծանել զխնդիրն։*

*Որպէս զի այն խնդիրն լաւ իմացուի, հարկ է որ Ռուբինեան հարստութեան առաջին թագաւորին՝ Լեւոնի մահուանէ* († 1219) *ետեւ Կիլիկիայի վիճակին վրայ համառօտ տեսութիւն մ'ընենք։ — Նոյն թագաւորն իրեն յաջորդ անուանած էր զիւր Զապէլ աղջիկն* (Ծն. 1215—6) *որ սահմանեալ էր ի կնութիւն Հունգարացւոց Անդրէաս թագաւորին որդւոյն, յանձնելով որ անմիջապէս նոյն արքայորդւոյն հետ պսակեն եւ իւր գահը նստեցընեն։ Եւ որովհետեւ երկուքին ևս դեռահասակ էին, պայլ կամ խնամակալ անուանած էր զԱտան իշխան եւ զԿոստանդին՝ Սմբատայ հայրն։ Բայց չի գիտցուիր ինչ պատճառաւ՝ նոյն ամուսնութիւնն ի դերեւ ելլելով, այն միջոցին շփոթութիւնք եւ երկպառակութիւնք ծագեցան, եւ յիշխանաց ոմանք՝ գահակալութեան եւ մասամբ իւիք ինքնագլխութեան հետամուտ եղան, որով հարկ եղաւ յառաջ քան զամենայն նոյն հակառակորդներն զինուք զսպել։ Սակաւ մի յետոյ Ատան իշխանն սպանուեցաւ, եւ յայնմհետէ միակ խնամակալ մնաց Կոստանդին, որ քաջութեամբ պատերազմելով՝ յաղթեց ամէն հակառակորդաց եւ խռովութիւնները դադրեցուց։ Այսպէս երկիրն ըստ բաւականին խաղաղելէն ետեւ, մեծամեծաց հաւանութեամբ զԶապէլ ամուսնացուց Անտիոքայ իշխանին Փիլիպպոս որդւոյն հետ եւ երկուքն ի միասին գահ հանեց* (1221)*։ Բայց ինք անկէ ետեւ ալ խնամակալութիւնն յառաջ կը վարէր, վասն զի թագուհին տակաւին դեռահասակ օրիորդ էր, իսկ թագաւորն դեռ չափահաս չէր։ Այս վերջինս քանի մի տարի գահակալելէն ետեւ՝ մեռնելով, խնամակալին հաւանութեամբ իշխանաց՝ Զապէլը հետ երկրորդ անգամ ամուսնացուց եւ թագաւոր պսակել տուաւ* (1226) *իւր կրտսեր որդւոց մին՝ զՀեթում ղեղբայր Սմբատայ սպարապետի՝ որ իւր երեց որդին էր՝ արդէն ամուսնացեալ։ (Ասոր՝ Թագաւորահայր անունն Կոստանդնի եւ Արքայեղբայր անունն Սմբատայ։) —*

*Լեւոնի մահուան յաջորդող անտէրընչութեան միջոցին պատերազմաց մէջ հակառակորդ իշխանաց կամ բերդատեարց ոմանք փախած կամ մեռած ըլլալով, Կոս-*

տանդին իբրեւ պատերազմական իրաւամբք տիրած էր անոնց քանի մի բերդերուն, յորս նշանաւորագոյնն էր Կոռիկոս։ Խաղաղութիւնն հաստատուելէն ետեւ՝ խնամապետն զիւր երեց որդին Սմբատ սպարապետութեան աստիճան բարձրացընելով, անոր անցուց զՊապեռոն՝ իւր ժառանգական բերդն, իսկ զԿոռիկոս տուաւ իւր կրտսերագոյն Օշին որդւոյն։ Սմբատ չհաւանեցաւ այս վերջին որոշման, վասն զի իւր անդրանկութեան իրաւանց վրայ հիմնեալ՝ կը կարծէր թէ իրեն կ'իյնայ նաեւ Կոռիկոսի տէրութիւնն։ Այսու՝ ծանր խնդիր եւ երկպառակութիւն ծագեցաւ հօրն եւ որդւոյն մէջ, զոր չկարելով այլազգ լուծել, հարկ համարեցան դիմել առ տեղեկագոյն օրէնսգէտս ժամանակին։ Խնդիրն առաջի դրին Յովհ. Իպլէն՝ Յոպպէի կոմսին, որ ոչ միայն քաջ հմուտ էր այսպիսեաց, ըլլալով յօրինիչ կամ հաւաքող Անսիզաց Երուսաղէմի, այլ եւ իբրեւ փեսայ Կոստանդնի եւ քեռայր Սմբատայ՝ երկուքին ալ սիրելի էր։ Նոյն կոմսն այլ եւս քաջ օրէնսգիտաց հետ խնդիրը քննելով, վճիռ տուաւ թէ Կոստանդին ազատ է իւր ուզած անձին թողուլ Կոռիկոսի բերդն՝ որ չէ իւր հայրենի ժառանգական ստացուած, այլ լոկ պատերազմական իրաւամբք իւր անձին յատկացեալ։ Այսպէս խաղաղութեամբ վերջացաւ խնդիրն, ինչպէս կը կարդացուի Երուսաղէմի Անսիզաց մէջ, ի Գլուխն ՃԽԻ.։ (Տես Assises d'Antioches, Venise, 1876, Appendice I. էջ 89։)

Ինչպէս ըսինք՝ այս դէպքն, թերեւս նաեւ այլ նման դէպքեր, յորդորեցին զՍմբատ ձեռնարկել ի թարգմանութիւն Անսիզայ։ Բայց կային կարեւորագոյն եւս շարժառիթք՝ յորոց ստիպեցաւ ի նոյն ձեռնարկութիւն, ինչպէս ինք գրութեան Յառաջաբանին մէջ յայտնապէս կը ծանուցանէ, տալով նաեւ այլ եւս տեղեկութիւններ, որոց համար նոյնն ամբողջապէս կը հաղորդենք ընթերցողացս[1]։

"Աստանօր սկիզբն առնեմք, կ'ըսէ, ողորմու-
"թեամբ եւ օգնականութեամբ մեծին Աստուծոյ ի
"գիր արկանել զսովորութիւնսն եւ զԱնսիզն զՊա-
"րոնութեան մայրաքաղաքին Անտիոքայ, զեր լի՛

---

[1] Սմբատայ այս Յառաջաբանը չի գտնուիր ի գրչագրին Էջմիածնի, ինչպէս կը ծանուցանէ Բաստամեանց Վ. իւր Յառաջաբանին մէջ, էջ 59։

“ճարտարուն եւ զպարոնայն սովորութիւնն եւ զի-
“րաւունսն՝ զոր ունին առ իրար. եւ են գլուխք ԺԷ
“ի ցանկք ածած: Զորս խնդրեցի ես Սմբատ ծա-
“ռայ Աստուծոյ եւ Գունդուստապլ Հայոց, եւ
“որդի Կոստանդեայ եւ եղբայր բարեպաշտ Թա-
“գաւորին Հայոց Հեթմոյ եւ տէր Պապառօնին,
“ի մեծազարմ իշխանաց իշխանէն եւ յարեան
“մերձաւորէն մերոյ ի Սիր Սիմուն յԱնտաքոյ
“Գունդուստապլէն: Եւ ինքն ունէր զօր ի Բրինձ
“Պըմընդին ժամանակն Սիր Փէր Տ՚ Րաւնդելին
“եւ Սիր Թումաս Մարաջախտն եւ այլ իմաստուն
“եւ գիտուն իշխանայքն Անտաքոյ էին գրով
“հաստատել: Եւ հանգուցեալն ի Քրիստոս Սիր
“Մանուէլ Գունդուստապլն իր հայրն էր առել ի
“նացմէ եւ իր որդւոյն Սիր Սիմունին պարգեւել.
“եւ ինք վասն իմ սիրոյս եւ հաւատոյս ինձ պար-
“գեւեաց. եւ ես աշխատեցայ եւ փոխեցի ի հայ
“լեզուս: Եւ արդ վասն զի սովորութեամբ այն
“Անսիզումն կու գնայր ազգս մեր եւ դարպասս
“Հայոց, եւ աղալումն ինչ կու գայր մեզ վասն
“տգիտութեան եւ վտանգութիւնք ոգոց, եւ
“պղերգանք ինչ վասն հարցանելոյ անոդ զմեծամեծ
“դատաստանսն, եւ ես ուժգին տենչմամբ եւ բա-
“զում աշխատութեամբ գտի զայս եւ հալծեցայ
“ի փոխելն. եւ երբ փոխեցի ես՝ յուղարկեցի դար-
“ձեալ ի յԱնտաքոյ դարպասն, որ դիմընդդիմեցին
“եւ հաստատեցին իրենց ձեռնագրերովն եւ վկայու-
“թեամբն ու ստոյգ է եւ ըղորդ բան բանի: Եւ
“արդ որ կամի ճշմարտութեամբ ուղղել զԱնսիզս
“եւ զիրաւունքս՝ նայ այս է ըղորդ Անսիզն Ան-
“տաքոյ: Եւ արդ որք օգտիք եւ կամ շահիք
“սովաւ, ինձ Սմբատայ մեղաց թողութիւն հայցե-
“ցէք. եւ որ վզենկիք՝ դուք չէք յինէ վզենկել,
“այլ ի յիրաւանցն. ես անդատապարտ եմ. եւ
“եթէ ոք վատ ասէ ի վզնկելոցն՝ նա Աստուծոյ
“իրաւանցն ասէ եւ ոչ ինձ: ”

*Յառաջաբանէս ետեւ Թարգմանիչն ի մէջ կը բերէ այն օրէնքներն ու կարգադրութիւններն, յորս միըստմիոջէ կը բացատրուին իրաւունք եւ պարտք, որովք փոխադարձաբար իրարու կը կապուին՝ ի մասին Հրապարակական կենաց՝ պարոնայք կամ աւատատեարք իրենց հպատակաց կամ աւատառուաց, եւ կամ ինչպէս նոյն ժամանակ կ'ըսուէր՝ լիճ* (lige) *ճորտերոյն հետ, եւ այս յետինք՝ իրենց վիճակակցաց հետ։ — Այս է գլխաւորաբար բովանդակութիւն առաջին ԺԻ Գլխոց, յորոց քանի մի օրինակ աստէն յառաջ կը բերենք։*

Ա.[1] *Յառաջ պարտ եւ արժան է գիտել եթէ ինչ կապակցութիւն կայ ընդ պարոնն եւ ընդ լիճ ճորտն։ Եւ արժան է գիտել որ մեծ հաւատարմութիւն կայ եւ կապակցութիւն, հայնց որ այլ մեծ չկարէ լինել։ Վասն զի կապվել է ճորտն լըճութեամբ ընդ իր պարոնն՝ ընդդէմ ամէն ազգ մարդոյ, որ մեռնել կարէ եւ ապրել յաւիտեան։ Եւ պարտի տալ հաւատարմութիւն իր պարոնին զեդ լիճ պարոնի. եւ իր պարոնն պարտի ընդունել զինք ըղորգ հաւատով եւ իրաւամբք զեդ լիճ ճորտ։ Եւ լիճ ճորտն չունի այնուհետեւ իշխանութիւն՝ որ այլ իր պարոնին հարկեցն կամ պարոնութեանն հակառակ լինի ուչինչ ազգ կերպով։ — Եւ աստ համառօտ զբազմախիտն լըմնցուցաք հատկնողացն։*

*Եւ հաւէրքն որ պարոնն զճորտն հրաւիրէ յընչիկ բան, կամ ի ծառութիւն, նա պիտի որ ճանչած ը——ըլի լեզուով ու խօսօք լինի։ Եւ երբ այնէ ըվ—ըն զհրաւէրքն, նա պարտ է որ իր նշանով օր ցուցնէ եւ պոման, զերդ է սովորութիւն եւ նմանաւոր։ Եւ լիճ ճորտն պարտի որ ի յայն օրն երթայ անսղալ. եւ կամ ցուցընէ ըղորդ զիր անձինն պատճառքն ը——ըին, կամ այլ յետոյ։ Զի թէ ընդունել լինի զհրաւէրքն, եւ չգայ ի յօրն, կամ չլինի ցուցուցել զըղորդ պատճառն զչգալոյն, նա պարոնն կամ պայլն պարոնին բերէ զինք առջեւն, եւ կենան հօն այլ լիճ ճորտեր, եւ հարցնէ ընդ ինք՝ թէ "Ի՞ր չեկիր յանուանեալ կոչն եւ ի պոմանն"։ Նա թէ ուրանայ լիճ ճորտն եւ ասէ՝ թէ "Չասաց ընդ իս ը———ըն", նա սովորութեամբ*

իրաւունք է որ երդնու լիճ ճորտն ի յայն հաւատն ու ի լճութիւնն՝ որ իր պարոնին պարտի, որ չէ չ———ն զինք ի յայն իրքն հրաւիրել. եւ ելաւ ի պարտուց, որ այլ չտայ դատապարտութիւն վասն այտոր. եւ ոչ ի վերայ լճին ի յայտ այլ շալակ կայ: Եւ թէ լիճն չկամենայ երդնուլ, նա ապա բերեն զչ———ն որ երդնու: Եւ երբ երդնու չ—վ—ն՝ նա փըչափեցաւ ի վերայն ու հերիք եղաւ. եւ կորսնէ վասն այնոր զապրանքն տարի մի ու օր մի. եւ հետ տարոյն եւ աւուրն, յորժամ գայ՝ մինակ առնու զիր ապրանքն:

Բայց երբ լիճ ճորտն վաթսուն տարոյ լինի՝ նա այլ ծառութիւն չպարտի, երթայ ի յիր տունն նստի:

Եւ չ———ն թէ լինի լիճ ու թէ ոչ, երբ երդնու՝ նա ընդունվի իր երդումն թէ հայնց որ լիճն չերդնու. ապա թէ լիճն երդնու՝ նա քիթ[2] է ապկիկ. որ թէ շատ վկայ բերեն կամ կեցութիւն ի վերայն, նա այլ չընդունվի բնաւ. եւ ոչ հետ երդմանն, երբ լինի, թէ շատ կեցութիւն բերեն թէ այն դեհն ու թէ այն որ երդնու՝ այլ չէ ընդունած:

1 Այս գրութենէն առնուած օրինակաց մէջ ալ՝ ի մասին ուղղագրութեան՝ այն սկզբան կը հետեւինք զոր յառաջագոյն (Թ. 6, էջ 116, Ծան. 1.) նշանակած ենք: Ըստ այնմ սկզբան՝ կը գրենք միշտ աղջիկ, թուղթ, աւագ..., թէեւ ի ձեռագրին ուրեք ուրեք կը գտնենք աղչիկ, թուխթ, աւաք..., որ ի տպագրին եւս անփոփոխ պահուած են, անշուշտ ժամանակին հնչումն ըստ կարի ճիշդ իմացընելու դիտմամբ:

2 Հարկ չէ ըսել թէ գրուածոյս լեզուին յատկութեանց մին է՝ օտար եւ մանաւանդ գաղղիական բառից կիրարկութիւնն: Թէպէտ չեն պակասիր նաեւ յունական եւ տաճկական բառեր (զ. օ. դիմոս, տիաթիկ... չաւուշ, տիվանպաշի...) բայց այսպիսիք կամ նմանք յաճախ պատահելով նաեւ այլ գրոց մէջ, այնչափ մեծ ապդեցութիւն չեն ըներ ընթերցողաց վրայ՝ որչափ գաղղիականքն, ինչպէս՝ quitte, double, mariage... Աւելորդ կը համարինք յունական եւ տաճկական բառերն իրենց յատուկ նշանագրովքն յաւելուլ. բայց ոչ այնպէս գաղղիականներն: Վասն զի թէեւ առանցմէ ոմանք ինքնին դիւրաւ կ՚իմացուին, ինչպէս աստ նշանակեալքն, սակայն կան նաեւ այնպիսիք որ կարող են դժուարութիւն պատճառել, զ. օ. սօյլէ, ճըլպէլ, փըչըփել, առանձինն իմն անոնք՝ որոց նոր ուղղագրութիւնը կամ արտաբերութիւնն հնէն կը տարբերի, ինչպէս ղօպէլ, տօդրել, եւ մանաւանդ անոնք՝ որ յարդի գաղղիերէնն բոլորովին խափանեալ են եւ չեն ի կիրառութեան, զ. օ. չըընճ, չըընճէ: Այս յետնոց նաեւ նշանակութիւնն կը դնենք: — Ցեղոյ առիթ կ՚ունենանք աստից վրայ խօսելու, որովհետեւ բաց յայլոց պատճառաց՝ յայսպիսեաց ծագած է այն ոչ փոքր տարբերութիւնն զոր վերագոյն նշանակեցինք թէ կայ սոյն գրուածոյն եւ մինչեւ ցայժմ յառաջ բերեալ այլ ռամկօրէն գրոց լեզուին մէջ:

Բ. Զլիճ ձիաւորացն զխնամութեանն զիրաւունքն գրեմք՝ որ առ իրար, թէ ի կոյս աղջկին լինի եւ թէ յայրի կնիկ: Եւ գիտել պարտ է,

որ թէ լինի տղայ ի մէջ իրենց եւ թէ չլինի, նա այնուհետեւ որ պսակվեցան՝ նա ընկերակիցք եղեն իրաց՝ ի յիրենց ամէն ինչքն, թէ հայրենիք է եւ թէ այլ իրք՝ զինչ ու լինի։ Եւ թէ այրկանն մահ հասնի՝ նա առնու կնիկն զիր այրկանն զամէն կումլին եւ զհառնէզին[1] զկէսն, անդարձ. եւ զապրնացն եւ զհայրենեստնոյն կէսն, յիր ամէն կենդանութիւնն՝ յիր ձեռքն եւ ի յիր համանքն. եւ տայ պարոնին զայն կիսոյն ծառութիւնն։ Եւ թէ տղայ կենայ տիկնոջն, նա պիտի որ ունենայ տիկինն զմէկայլ կէսն զապրնացն, վանց տղային։ Եւ թէ կնիկն մեռնի յառաջ քան զայրիկն, եւ տղայ չկենայ, նա դարձցընէ զինչ հետ կնկանն իրք առել լինայ, թէ նաղդ եւ թէ այլ ցեղ կումալ, զամէնն։ Ապա թէ տղայ լինի իսկի լել, հայնց որ լուկ ձայնն լինի լսուել, որ վկայեն աղէկ վկայք, նա չդառնայ այլ պռոյգն. եւ ոչ կարեն յայրկէն բնաւ իրք ուզել ի պռուդացն։ Եւ թէ այրն ու կինն տղայ ունենան, եւ զիրենց ինչքն կամ զհայրենեստանն՝ վասն իրիք կարեաց ծախել լինան եւ մնխել, կամ տվել, կամ այլոց գրել իրք ապրանք՝ որ ծառութենով լինի, նա քանի հայրն ու մայրն կենդանի կենայ, նա որդիքն չկարեն բնաւ ոչ ինչ ազգ ջալունջ[2] այնել յայն մնխած ապրանքն։ Ապա եփ ծնօղքն մեռնին՝ նա կարենան ջալընջել ի վերայ հայրենեցն, եւ բլայթել[3]. եւ ունին զբլայթելոյն համանքն ի դարպասէն, վանց այնոր որ հետ իրենց ծնընդեանն է լել այն հայրենեցն վատնումն։ Ապա թէ քան զտղայոցն ծնանելն առջեւ լինան վատնել, թէ ծախել թէ օժտել թէ ի դիմոս դրել, նա միացական է ունողացն ունել. որ բնաւ չունին այն որդիքն յայն իրքն ջալունջ, թէ հայնց որ պարոնութեանն համօք լինի։ Եւ թէ լիճն ունենայ ծառութենով ապրանք՝ նա յետ իր մահուն աւագ որդին ժառանկէ պապենի ապրանքն մէն, եւ զքուրվտին ինք կարգէ ի պատեհվոր տեղ, հայնց զետ վայլէ իր ազգին։ Եւ թէ գանձ կամ ինչք կամ հառնէզ, կամ այլ իրք զինչ եւ իցէ, նա կարէ հայրն տալ յում իր պիտի։

1 Harnais.
2 Chalonge, chalonger, հին գղ. = réclame, réclamer, պահանջել, բողոքել . . . ։
3 Plaider.

Գ. Եւ թէ ոք դատըստնի ի դարպասն եւ յուղարկէ ու կոչէ զինք, նա թէ ասէ թէ «Հիւանդ եմ», նա դարպասն պատեհ է որ առջի տալպայն ավտայ իր. եւ յուղարկէ հետ մի այլ, թէ «Արէկ, քո խօմին իրաւ արա». եւ նա այլ վայր ասէ՝ թէ «Հիւանդ եմ», նա պատեհ է որ յուղարկէ դարպասն երկու լիճ ճորտ, որ երթան տեսնուն զիր հիւանդութիւնն: Թէ գան ու ասեն որ «Հիւանդ է ըղորդ», ու վկայեն՝ իրենց հաւատովն, նա պատեհ է որ ավտան իր: Ապա թէ տեսնուն որ ցաւ չունենայ, ու ասեն. որ յիրենց ամէն ճանչելն իրք ցաւ չունի, նա դարպասն հրաւիրէ զինք երրորդ անգամ. եւ թէ այլ ասէ դեռ՝ թէ «Հիւանդ եմ», նա ղրկէ դարպասն երկու լիճ ճորտ այլ՝ որ երթան առ ինք, ու տանին բժիշկ մի որ երդուեցուած լինի ի խաչն եւ յաւետարանն, որ տեսնուն զինք. եւ ունենան լիճ ճորտերն հետ իրենց խաչ ու աւետարան. եւ գայ բժիշկն տեսնու, եւ ասէ այն երդմամբն՝ ու «Ցաւ ունի». նա ելաւ ի ժամն ի հարկէ, որ չկարէ զինք այլ ոք նեղել: Ապա թէ բժիշկն ասէ, որ չի ճանչել ի յինք իրք ցաւ եւ աչ տկարութիւն, նա ապա բերեն յառաջ այն լիճ ճորտերն զխաչն եւ զաւետարանն, եւ ասեն ընդ ինք՝ թէ «Քեզ պիտի, դու երդվիր զետ քրիստոնէ, որ ի քո մարմինդ հայնց ցաւ կայ՝ որ կու արգիլէ զքեզ որ չես ի կարել ի գալ իջնուլ ի դարպասն եւ իրաւունք տալ»: Եւ երբ երդնու՝ նա կարէ յեմել ի յիր տունն քանի իր պիտենայ: Բայց յառջի օրն որ ի յիր տանէն ի դուրս ելնէ, նա իր խէօմն կարէ դատըստնիլ, եւ բերէ զինք ի դարպասն ի յիրաւունք: Ապա թէ չերդնու, նա անհնար է թէ չգայ ի դարպասն եւ տայ իրաւունք իր խօմին, անպատճառ:

Դ. Եթէ ոք ձիաւոր առնու լիճ տիկին պսակով, եւ ունենայ տիկինն հայրենիք ընդ իր դեհաց. որ եւ թէ ունենայ տղայ ի մէջն ու թէ մեռել, ու թէ տիկինն այլ մեռնի, նա թէ կենայ տղայն եւ թէ մեռնի, նա ձիաւորն ունենայ զայն հայրենիքն ի յիր ամէն կենդանութիւնն, ընդդէմ իր տղայոցն ունենայ ու ընդդէմ տիկնոջն եւ ամէն ազգականացն: Եւ այս վանց անոր է, որ տղայ է լել ի մէջն. քաւել թէ ի յայլ այր-

կէ տիկնոջն այլ տղայ կենայ կտրիճ, ու առնու զիր հասակն, նա հետ տիկնոջն մահուն հայրենիքն ի յայն որդին դառնայ որ ըղորդ հայրենետէրն է։ Ապա թէ առջի այրկանն տղայքն աղջըկներ լինին, եւ հետի այրկանն կտրիճ լինի, նա զրձն ժառանգէ. ապա հայրն պարոն է, ունենայ զապրանքն ի յիր ամէն կենդանութիւնն. եւ հետ հօրն մահուն աւագ կտրիճն առնու զհայրենիքն։ Ապա թէ ամէնն լինան աղջկներ՝ առջի այրկանն եւ վերջնոյն. եւ մեռնի մայրն, նա բաժնէ դարպասն զայն հայրենիքն զինչ ի մօրն ի դեհաց կենայ՝ միապէս ի վերայ ամէն դստերացն, զինչ ի յառջի այրկէն եւ ի վերջնոյն։ Եւ զառջի այրկանն դստերացն բաժինն՝ դարպասն ի յիր ձեռքն ունենայ, նոյնպէս եւ զդստերքն, եւ կարգէ զիրենք. եւ զյետի դստերացն բաժինն՝ հայրն ունենայ յիր ամէն կենդանութիւնն, եւ ինք տեսանու զիր տղայքն։ Ապա թէ ով գիտէ որ յետի այրկանն դստերքն մեռնին, նա թէ ու կենայ հայրն կենդանի, նա մենակ դառնայ հայրենիքն ի յառջի այրկանն դստերքն, զի վերջի այրիկն ի հօն հասոյթք չունի։

Յառաջ բերուած այս չորս օրինակք առեալ են այն ԺԷ Գլուխներէն՝ զոր Թարգմանիչն կը յիշատակէ ի Յառաջաբանին։ Բայց գրութիւնն ունի երկրորդ մաս մ'ալ՝ զոր ինք ի Յառաջաբանին չի նշանակեր, եւ որ ի ԻԱ Գլուխս բաժանեալ՝ կը խօսի Քաղաքականաց եւ վաճառականաց վերաբերեալ նիւթոց վրայ։ — Սակայն նախընթաց մասին վերջն՝ իբրեւ անցք առ երկրորդն՝ այս երկտողն կը դնէ. "Կատարեցաւ լիճ ճորտերոյն Անսիզնին եւ "իրաւներն. եւ արդ գրեմք զքաղաքացեայն, եւ "սկիզբն առնեմք զայս եւս որ վասն խնամու"թեան"։

Աւասիկ քանի մի օրինակ սոյն երկրորդ մասէն։

Ի· Եւ թէ հայրն ու մայրն կամ ազգն կարգել լինին զիրենց կոյս աղջկինն եւ տվել պռոյգ կոմոյշ կամ հայրենիք, նա քանի տղայ չլինի բերել՝ նա չունի հրամանք որ տիաթիկ այնէ, ոչ շատ եւ ոչ քիչ. ապա երբ տղայ բերէ՝ նա կարէ

այնել՝ թէ այրիկն թողու. զի տղայոցն ամէնն այրկանն է. ապա թէ այրիկն կցել լինի, նա ինք է իր իրացն պարոնն. եւ ազգն ընաւ ելել են ի յիրացն ի ժառանգութենէն։ Եւ թէ այրիկն ուզենայ որ տիաթիկ այնէ, եւ կենայ կինն եւ տղայքն, նա ունի անսիզովս համանք որ կարէ այնել, ապա ի վերայ իր բաժնին. որ է իր բաժինն ի յամէն իրացն եւ ի հայրենեացն յերեք բաժնէն մէկն. զայն մէկ բաժինն կարէ տալ յում իր պիտի, եւ այնել զինչ իր պիտի. եւ երկու բաժինն այլ՝ մէկն կնկանն է, ու մէկն՝ տղայոցն։

Բայց թէ լինի որ այրիկն ու կնիկն հաշտին ընդ իրար, եւ այնեն տիաթիկ ընդ երկուքն, կամ թէ չայնեն գիր, ապա լուկ հաշտին ու հաւնին երկուքն վկայիւք, նա թէ տան, թէ ծախեն, թէ զինչ իսկի ուզեն՝ կարեն այնել զիրենց ամէն ազգք իրք եւ զհայրենեատանն. եւ հաստատուն մնայ ի յորդեացն եւ յազգականացն սեփհական անխզելի կապանօք. զի անսիզովն է տուած իրենց՝ որ այնել կարեն ծնօղքն զիրենց իրքն զինչ իրենց պիտի յամենին յոչ կամայ։ Եւ թէ տղայ իր կարգեն, նա զինչ իրենք իրենց կամօք իր տան՝ նա այն է իր մնացական, եւ ի յետ է զատած այնուհետեւ ի յիր եղբարցն եւ ի քուրվտոյն։

Զ. Եթէ այրն եւ եթէ կինն՝ որ ու լինի, եւ ունենան որդիք, եւ կամենան տիաթիկ այնել, ու տառապելցել լինան եւ անճարկել, եւ կամենան տալ կամ ծախել ի հայրենեացն, նա այլ չկարէ առնուլ ի հայրենեացն՝ քան յերեք բաժնէն զմէկ բաժինն, կարէ այնել զինչ իր պիտի. նոյնպէս եւ զկո—մոյլն յերեք բաժնէն զմէկն։ Եւ թէ տղայքն անհասակ եւ անկարգ լինին ի տունն. ապա թէ կարգած լինան ու առել լինան զիրենց բաժինն, նա ծնօղքն զիրենց զամէն իրքն կարեն ի յիրենց վերայ բաժնել եւ այնել զինչ իրենց պիտի։ Ապա թէ վասն աղքատութեան կարեաց կամենայ հայրն կամ մայրն ծախել զիր հայրենիքն կամ զմայրենիքն, նա երթայ ի դարպասն ու ասէ զիր կարիքն առջեւ ամենին, եւ ուզէ համանք ծախելոյ զիր հայրենիքն, կամ գրաւկնէ, եւ ի հուն ելնէ։ Նա թէ գան իր որդիքն յառաջ աղաչանօք կամ տրփընտելով[1],

եւ ասեն ի դարպասն, թէ «Հայր, կու աղաչենք զքեզ որ չծախես զմեր հայրենիքն, եւ մենք կու առնունք ի մեր վերայ՝ որ մենք ծառայենք զքեզ եւ տանք զքո պէտքն», նա պատեհ է որ հայրն լսէ, եւ որդիքն հայնց ծառայեն զինք՝ որ ուրախ լինի հայրն. ապա թէ ոչ՝ նա այն ի յիր համանքն է, ու կարէ հայրն ծախել զիր բաժինն, որ է յերեք բաժնէն մէկն, եւ ի հուն ելնեն. զի իր բաժինն ի յիր կամքն է։

1 Défendre.

**Է·** Եթէ ոք ապրանք կամ այլ իրք ի յիր ձեռք ունենայ, եւ սայզած[1] կենայ ի յինք ի վաղէ, եւ գայ մէկ մի այլ՝ առնու զինք ուժով եւ կահրայութեամբ, առանց դարպասուն, նա գայ զրկածն ու դատըստնի ի դարպասն եւ յերդուածքն, եւ ուժ այնօղն ի ժամն ի դարպասն կենայ, եւ չդիմախօսէ եւ ուրանայ որպէս արժանն է, ասելով՝ «Չէ, թէ Աստուած կամի», նա մշտնջենաւոր կորոյս զայն իրքն. եւ վասն այն ուժոյն տայ տուգանք ի դարպասն ԼԶ սօլ[2], որ է նոր դրամ ԽԴ։ Եւ այս է սայզայն[3] եւ իրաւունքն այնոցիկ՝ որ լսեն ի դարպասն, որ յիրենց վերայ ելնեն դատըստնին եւ հէլոյնաց խօսք ասեն, եւ իրենք լռեն, ու չելնեն ի յոտն ու դիմախօսութիւն այնեն, եւ ասեն՝ «Չէ, թէ Աստուած կամի», եւ զայլն, զէդ պատեհ է։ Ապա թէ դիմախօսէ եւ տփընդէ ու ասէ՝ «Չէ, թէ Աստուած կամի, ոչ ուժ եմ արել եւ ոչ կահրայութիւն», նա թէ գայ ի յառաջ մէկայլն եւ ասէ, «Հա՜յ, թէ Աստուած կամի. արել ես ու առանց դարպասու զրկել ես զիս, ու առել ես զիմ իրքն յիմ ձեռացս, ու խլել ես զայն իրքն ի յիսմէ, որ ինչվի յայն օրն կալել եմ, որ ուժով դու յիսմէ խլեցեր հիմայ»։ Նա երբ լսէ ուժ այնօղն զնարայ խօսքն, ու զայն որ կեցցումն կամենայ այնել ուժոյն, խոստանայ որ իր անձաւմն կեցցումն այնէ ընդդէմ իր. եւ այն որ ուժն իր լինի արած՝ բերէ յառաջ երկու վկայ, որ միաբերան այն ուժոյն վկայութիւն տան, ու ասեն որ այն իրքն հայնցեղ ի յայն մարդոյն ձեռն լինի կեցել, ու նա խլել է, ու երդմնցնէ զայն վկայքն դարպասն ի խաչն ու ի յաւետարանն՝ որ այն խլոցքն ըղորդ լինի լել, նա ի ժամն զայն խլոցքն պատեհ է որ դարձնեն

ի զրկածն, թէ ապրանք է թէ զինչ ու է. ու այն՝ որ զուժն լինի այրել՝ նա վճարէ ի դարպասն ԼՋ սօլ, որ է նոր դրամ ԽԴ: Եւ հետ այնոր ապա թէ զրկօղն իրաւունք ունենայ՝ նա կարէ դատըստնիլ ի դարպասն, եւ առնու զիր իրաւունքն դարպասովն: Եւ թէ իր խէօմն ասէ՝ որ “Չէ իրաւ„, նա ինք կեցցընէ վկայնով, թէ թուղթ չկենայ. եւ թէ օր ու համբերութիւն ուզէ՝ որ բերէ զիր վկայնին եւ զզէտքն. եւ պարոնն կամ դարպասն ուզէ զանվճերն զվկայիցն եւ զպխտուցն, նա պատեհ է որ տայ զանվճերն՝ որ գրվի ի դարպասն: Եւ զայս զրկօղն այնէ:

1 Saisir.
2 Sol, հին դղ. = sou.
3 Saisie.

Ը. Եթէ ոք կորանէ տաճիկ ձի կամ էէշ կամ ջորի, կամ այլ ազգ գրաստ, ցինչ ու լինի, եւ գտնու զինք հետ մարդոյ որ ունենայ, նա առնու ու բերէ զունօղն ի դարպասն, ու ասէ՝ թէ “Պարոնայք, իսայ գրաստս իմ է, ու կորուսի. լուկամ[1] փրթաւ, ու հիմայ գտայ զինքս հետ իսա մարդոյս. ու սար եմ որ կեցցընեմ անսիզովն երկրիս որ իրաւ կու ասեմ„: Նա թէ ասէ ունօղն գրաստուն՝ “Չէ, թէ Աստուած կամի, այլ իմ սնուցած է„, նա վասն այնոր չաւտայ դարպասն գտնօղին. ու թէ բերէ կորսնօղն վկայք որ երդնուն, որ զայն գրաստն ճանչեն՝ որ իր է ըղորդ, ու ասեն, թէ “Սար ենք՝ որ զինչ դարպասն պատեհ տեսնու՝ մենք այնենք„. նա դարպասուն անսիզն այս է, որ երբ երդնուն ու հաստատեն զվկայութիւնն վկայքն, նա երդնու գրաստուն ունօղն ի խաչն եւ յաւետարանն, որ ոչ ծախել է եւ ոչ օժտել զայն գրաստն. ոչ ինչ ազգ կերպով չէ զինք զատել ի յիրմէ, այլ ըղորդ կորուսել է զինք. ու երբ զայս այնէ, նա առնու զինք, երկրիս Անսիզովն եւ Անտաքոյ: Եւ գտնօղն որ զգրաստն առին յիրմէ, երթայ հետ այնոր գտնու զմարդն որ ծախել լինի զինք իր, եւ առնու ու ի դարպասն բերէ, նա դարպասն ի կահրա պատեհ է որ այնէ՝ որ զիր գինն ի յինք դարձնէ, ու երբ դարձնէ ու վճարէ զնա, նա պատեհ է որ ցուցընէ ի դարպասն, թէ ուստի եղաւ իր՝ այն գրաստն, կամ էր ծախեց զայլոց իրք: Նա թէ ցուցընէ մարդ որ ծախել լինի իր կամ օժտել, նա

ճանչէ դարպասն որ նա գող է եւ կամ գտել է ի փրթման՝ զայլոց իրք, ու առել ծախել. Նա ջաստէ[2] դարպասն զինք զէտ գող մարդ՝ անսիզովն: Ապա թէ ցուցընէ ծախօղ, նա զայն բռնեն, ինչուր նա ցուցընէ ով իր է ծախել: Եւ այնպէս երթան ինչուր զգողն գտնուն:

1 L'col կամ licou?
2 Chastier, հին գղ․ = châtier.

Թ. Եթէ ոք ձի ծախէ կամ ջորի կամ այլ ազգ գրաստ որ նման է սոցին, եւ տարոյն ու աւուրն ընդ ներքսէ հարուն այնէ, նա տան ի տէրն՝ որ է ծախօղն, ու զիր գինն առնու անողալ եւ անընդդիմախօս. որ ոչ վասն պոմնի եւ կամ թղթի չմնայ. զի յայտ տեղդ կու քակէ անսիզն զամէն ազգ պոման սովորութեամբն Անտիոքայ:

Եւ թէ ոք գնէ գրաստ՝ զինչ ու լինի, եւ տանի յիր տունն ու ալկէ, եւ ունենայ յիր տունն ինչվի վաղն, ու տան ջուր, նա իր է, այլ չդառնայ: Ապա քան զջուրն տալ յառաջ, թէ իր չթվենայ՝ նա կարէ դարձընել. ապա երբ տարպայ մի ջուր տայ, նա վասն ոչինչ ազգ պատճառի չկարէ ոք դարձընել, քաւել թէ հարուն այնէ մէն: Եւ թէ ոք ի մուղուփն գրաստ ծախէ կամ գնէ, նա այնուհետեւ գնօղին բախտ է. զի իրք որ ի մուղուփն ծախուի, նա (ԲԷ) կտոր մի միս է գնել ի վերայ տախտըկին, եւ այլ բնաւ վասն ոչինչ ազգ պատճառի չդառնայ:

Ժ. Եթէ ոք առուտուր կամ փոխ այնէ ընդ սէրէֆիկ, ու խուլուղու կամ խաբէութիւն լինի ի մէջն, եւ կենայ գրած ի սէրէֆկին տֆթարն փոխն ու պոմանն, ու սէրէֆիկն ճանչած ու վկայած ըղորդ մարդ լինի, փորձած հուլու, նա ի դարպասն երդնու սէրէֆիկն ի խաչն եւ յաւետարանն, որ իր գրածն որ կայ յիր տֆթարն՝ նա ըղորդ է, նա աւտան իր, ու առնուն զիրաւունքն: Ապա թէ խէսմն ունենայ երկու աղէկ վկայ որ իրքն որ խուլուղուն կենայ ու լինի ի վերայ՝ որ վկայեն ըղորդ, նա խսմին է իրաւունքն, եւ ոչ սէրէֆկին: Ապա թող առջեւ բերէ խէսմն զվկայքն քան որ սէրէֆիկն երդնու, նա լինի ընդունած վկայութիւնն. ապա թէ ոչ՝ երբ երդնու սէրէֆիկն՝ նա գնաց կտրեցաւ: Ու թէ չկենայ վկայք կամ յերեւան կեցցութիւն, նա երդումն է հաստատած

ու օֆֆիւօրն, թէ օէրէֆիկն ճանչած ըղորդ մարդ լինի։

Եւ թէ օէրէֆիկն ոսկի գնէ կամ արծաթ, ու աղալ ուրդի, նա իր է աղալն. զի ճանչելն իր գործ էր, ե՞ր աղալեց։ Ապա թէ օէրէֆիկն զաղալ (օղուլ՞) ծախէ, նա յորժամ որ իր դնողն ճանչնայ՝ նա կարէ դարձընել զիրքն ու զիր դեկանն առնու։

Եւ թէ ոք զիր իրքն խէչ օէրէֆկին թողու, եւ ինք որ զիր իրքն ի օէրէֆիկն լինի տվել՝ այլ մարդոյ իրք պարտէնայ, ու կամենայ յայն իրացն վճարել որ օէրէֆիկն ունենայ, ու աւղղէ զինք՝ ի օէրէֆիկն, ու նա առնու յիր վերայ որ վճարէ զինք. նա տէրն այլվայր զէտ արատաւոր մարդ ասէ՝ թէ "Մի տար", ու ջանայ ի օէրէֆկէն վճարվիլ զիրքն. նա ասէ օէրէֆիկն՝ թէ "Ահա վկայքս", ու կեցցընէ որ իր խօսօք վճարել լինի զիր պարտքն. նա ազատ է օէրէֆիկն, ու չտայ վասն այնոր ոչինչ վզեն։ Եւ թէ երբ աւղղէ կօմշին տէրն զայն մարդն որ իր պարտէնայ՝ ի օէրէֆիկն, ու օէրէֆիկն չվճարէ զինք, յիմեցնէ, ու կօմշին տէրն երթայ առնու զկօմշուն ի օէրէֆկէն, նա վասն այտոր չփրչի օէրէֆիկն որ չվճարէ զայն պարտուցն տէրն. զի երբ ոտին մի ի յինք աւղղուվեցաւ, ու նա զվճարն ի յիր վերայ էառ, նա պիտի որ ինք օէրէֆիկն վճարէ զնա. ու օէրէֆիկն գիտէ ու կօմշին տէրն, որ հետ աւղղելոյն՝ զդեկանն ի տէրն երետ օէրէֆիկն. ամ թէ երետ զկօմշուն ի տէրն ու թէ չերետ՝ ինք գիտէ. ապա զայն աւղղած մարդն օէրէֆիկն պիտի որ վճարէ մենակ անսղալ ու անպակաս ի յիր իրացն ու ինք երթայ վճարվի ի յայնոր՝ որ աղէկ մարդ եղաւ ու զկօմշուն երետ։

Ի վախճանի Անսիզաց կայ ի ձեռագրին յաջորդ համառօտ վերջաբանն. "Այս է Անսիզն Անտիոքայ քաղաքականացն, որ այնեն ըստ սովորութեան իւրեանց եւ որպէս յառաջ խոստացաք, վասն խնամութեներոյն եւ մարիաճնոյն Անտիոքայ քաղաքականացն":

## 2. *Դատաստանագիրք Մխիթարայ Գոշի:*

“Օրէնք եւ կանոնք ընդհանրական՝ եկեղե-
“ցականաց եւ աշխարհայնոց, Փռանկաց եւ ամե-
“նայն ազգաց, ի մի տեղ հաւաքեալ„: Այս է
վերնագիր Սմբատայ Օրինաց մատենին սոյն եր-
կրորդ բաժնին, որոյ Յառաջաբանն կը սկսի ՃԺԸ.
(Երանեալ են ամբիծք) սաղմոսին առաջին քանի
մի տներովն՝ իբր ի գովեստ օրինաց եւ իրաւանց եւ
արդարութեան, եւ ապա այսպէս կը շարունակէ.
“Եւ այլ շատ ի վերայ իրաւանց կու պնդէ մարգա-
“րէն: Առ որս ես Սմբատս անարժան եւ մեղաւոր
“ծառայս Աստուծոյ, որդի Կոստանդեայ Թագաւո-
“րահօր եւ եղբայր բարեպաշտ Թագաւորին Հայ-
“ոց Հեթմոյ, բազում աշխատեցայ ի սա ծերա-
“ցեալ մտօք, ի հին եւ յանհասկանալի բառից:
“Եւ ես բազում աշխատութեամբ փոխեցի զսա ի
“մեր հեշտալուր բառս, ի թուականութեանս
“Հայոց ՉԺԴ (= 1265) ի հայրապետութեան
“Տեառն Կոստանդեայ եւ ի թագաւորութեանն
“Հեթմոյ եւ որդւոյ սորա Լեւոնի: Առ որս աղա-
“չեմ զամենեսեան վասն սիրոյն Քրիստոսի՝ յիշել
“զմեզ եւ մեղաց թողութիւն խնդրել ի Քրիստո-
“սէ, զի եւ դուք յիշեալ լիջիք առաջի Քրիստոսի:
“Եւ արդ գրեցի զսա վասն հաստատութեան սրբոյ
“եկեղեցւոյ եւ վասն աշխարհի դատաւորաց եւ
“թագաւորաց. եւ զսիրտ բանիցն առեալ եդի հա-
“մառօտաբար: Եւ աղաչեմ անմեղադիր լինել. զի
“աւելի քան զկարն մեր էր ձեռնարկութիւնս: Եւ
“պարտ ու արժան համարեցաք վասն թագաւորացն
“գրել զիրաւունս. զի նոքա յԱստուծոյ են կար-
“գած եւ յԱստուծոյ տեղն ի յերկրի են„[1]:

---

Բաւական տարբեր է այս Յառաջաբանէն՝ Էջմիածնի ձեռագրինն, զոր թէպէտ ըստ մասին հաղորդած ենք (7) ընթերցողացս, բայց աստ ամբողջապէս յառաջ բերել պատշաճ կը համարինք, առնլով Բաստամեանց Վ.ին հրա-
“տարակածէն՝ որ է այս. “Հրամայէ աստուածահայրն Դաւ-

Գրութեանս մասին Սմբատայ ի կիր արկած փոխեցի (թարգմանեցի) բացատրութիւնն՝ ընդար-

---

"իթ՝ Երանեալ են անբիծք ի ճանապարհի . . . . (սաղմո-
"սից ութը տուն)։ Եւ այլ շատ ի վերայ իրաց կու պնդէ
"մարգարէն։ Առ որս ես Սմբատս՝ որ չեմ արժան եւ մե-
"ղաւոր ծառայս Աստուծոյ որդի Կոստանդեայ թագաւո-
"րահօր եւ եղբայր թագաւորի բարեպաշտին Հեթմոյ։ Բա-
"զում աշխատանօք աշխատեցայ ի Դատաստանագիրքս ծե-
"րացեալ մտօք եւ ձեռօք ի հին եւ ի դժուարաբառ եւ
"յանհասկանալի գրոց, վասն զի այլակերպած էր եւ հեռա-
"ցած ի հին հայ բառէն ի նորոյս՝ (տես 7 Ծան. 1) հանց որ
"իսկի չէին հասկանալ եւ ոչ յօգտել գայր։ Եւ բազում աշ-
"խատութեամբ փոխեցի զսա ի մեր հեշտալուր եւ ի սովո-
"րական բառս ի թուականութեանս Հայոց ՉԺԴ. (1265 թ.)
"ամին, ի հայրապետութեանն Կոստանդեայ եւ ի թագաւո-
"րութեանն բարեպաշտին Հեթմոյ եւ որդւոյ սորա։ Առ որս
"աղաչեմ զամենեսեան վասն սիրոյն Քրիստոսի որ մեղաց
"թողութիւն խնդրեցէք պարոնիս մերոյ Սմբատայ, զի սա
"ետ մեզ փոխել ի յիւր լուսաւորեալ գրոցն։ Եւ արդ գրեցի
"զսա վասն հաստատութեան սրբոյ եկեղեցւոյ եւ գոյանա-
"լոյ երկրի։ Եւ ապա վասն աշխարհական դատաստանաց
"եւ դատաւորաց. եւ համառօտաբար զսիրտ բանիցն։ Զորս
"աղաչեմ անմեղադիր լինել իմոյ նուաստութեանս, վասն
"զի ոչ էր իմ բան, եւ ձեռօք իմովք աշխատեցայ եւ փո-
"խեցի զսա ի դառն եւ ի չար ժամանակի։ Յառաջ պատեհ
"համարեցաք զվիճակեալ դատաւորացն գրել. բուն յա-
"ռաջ զթագաւորացն, վասն զի յԱստուծոյ կարգեցաւ
"թագաւորութիւնն եւ յԱստուծոյ տեղին է համարած։
"Եւ զնոցին դատաստանն եւ զիրաւունքն գրեցաք եւ ապա
"զկարգաւորաց եւ զաշխարհականաց, զայր եւ զկնոջ"։

Այս եւ Ս. Ղազարու ձեռագրին Յառաջաբանին տարբերութիւնն, ճշդագոյն եւս խօսելով՝ իւր ձեռագրոյն Յառաջաբանին խառնակութիւնն, յաջորդ տողից կը մեկնէ հմուտ Հրատարակիչն. "Ուշադրութեամբ կարդալով այն
"խօսքերը՝ մենք տեսնումենք որ՝ այստեղ կայ երկու մարդու
"յիշատակարան, Սմբատի եւ մի անյայտ անձի, որոյ մասը
"սկսվումէ խօսքերովս՝ Առ որս աղաչեմ, եւ այլն։ Այդ ան-
"յայտ անձն միայն ընդօրինակել է Սմբատի ձեռագրից,
"ինչպէս պէտք է եզրակացնել նորա խօսքերից՝ զի սա
"(Սմբատ) ետ մեզ փոխել (ընդօրինակել) ի յիւր լուսա-
"որեալ գրոցն, որովհետեւ փոքր ինչ առաջ ինքն Սմբատը
"պարզ ասում է թէ՝ բազում աշխատութեամբ փոխեցի
"(թարգմանեցի) զսա ի մեր հեշտալուր եւ ի սովորական
"բառս։ Նոյն անյայտ գրիչը արել է նաեւ ինչ ինչ փոփո-
"խութիւններ դատաստանագրքի յօդուածների դասաւո-
"րութեան մէջ, քան թէ ունեցել է Սմբատի ձեռագիրը,
"առաջ դնելով յունաց կայսրների օրէնքներից քաղուածք-
"ները եւ Անտիոքու օրէնքները եւ յետոյ Մխիթարի դա-
"տաստանագրքից թարգմանած կանոնները եւ յօդուած-

ձակադոյն եւս մեօք առնլու է քան զՆորֆմանին բառն՝ զոր գործածած է իւր անձին վրայ ի Տարեգիրսն: (Տես 12. եւ 16. Ա.) Եւ արդէն իւր Յառաջաբանին վերջն ինքնին այնպէս կը խօսի, որ կրնայ գուշակուիլ թէ Մխիթարայ սկզբնագիրն միշտ եւ յամենայնի անփոփոխ պահուած չէ: Արդեամբք իսկ հարեւանցի մտադրութիւն մ'ալ բաւական է տեսնելու՝ թէ գրաբար սկզբնագրին եւ ռամկօրէն խմբագրութեան մէջ ոչ սակաւ տարբերութիւնք կան, եւ այն՝ զանազան նկատմամբ: Մեր նպատակէն դուրս է՝ մի ըստ միոջէ նշանակել մեծանուն Վարդապետին եւ սպարապետ Խմբագրին աշխատութեանց ամէն կերպ տարբերութիւններն, որ մանաւանդ օրէնսդրութեան տեսակիտէն նայելով՝ մեծապէս արժանի են հիմնովին ուսումնասիրուելու: Հետազօտութեանցս սահմանէն շատ չհեռանալու համար, մենք տարբերութեանց այն կէտերն առաւելապէս ի քննութիւն կ'առնունք, որ ի մօտոյ կամ ի հեռուստ կապակցութիւն ունին մեր բանասիրական զննութեանց հետ. իսկ օրէնսդրական մասին վրայ այնչափ միայն կը խօսինք՝ որչափ առիթ կը հանդիպի:

Սովին հայեցմամբ՝ նշանակութեան արժանի կը համարինք հետեւեալքն:

Ա. Մխիթարայ Դատաստանագրոց կարգն կամ նիւթոց դասաւորութիւնը՝ փոխած է Սմբատ:

Դատաստանագրոց գրաբար սկիզբնագիրն, բաց ի Նախադրութենէն՝ որ Ժ. կամ ԺԱ. Գլուխ ունի, բաժնուած է յերկուս մասունս. (Ա.) Եկեղեցական կանոնք՝ ի ՃԻԴ Գլուխս, (Բ.) Աշխարհական օրէնք՝ ի ՃԼ Գլուխս: — Այսպէս է ի տպագրութեան Վաղարշապատու, որոյ հմուտ Հրատարակիչն կը ծանուցանէ թէ Էջմիածնի

---

“ներըս:„ (Տպ. Վաղարշապ. Յառաջաբան Դատաստանագրոց Մխիթարայ Գօշի, էջ 54, 55.) — Ջենք կարող աւելի տեղեկութիւն տալ առ այժմ այս նիւթոյն վրայ, չունենալով ի ձեռին Էջմիածնի ձեռագրին ամբողջ օրինակն: Թերեւս յետոյ առիթ կ'ունենանք նորէն խնդրոյս դառնալու:

բազմաթիւ օրինակներէն՝ իւր իբրեւ ամէնուն նախադաս՝ ընտրած (Թ. 492) ձեռագրին մէջ կան նաեւ երկու զատ մասունք, նախ՝ Քաղուածք ի Մովսիսական օրինաց, երկրորդ՝ Քաղուածք ի Յունական օրինաց։ (Յռջբն, էջ 116։) Մեր մատենադարանին (Թ. 115) բաւական հին՝ մագաղաթեայ բոլորգիր օրինակն, որ ըստ հաստատելոյ նոյն Հրատարակչին (Անդ, էջ 112) "ոչ միայն բառ առ բառ՝ այլ նաեւ կէտ առ կէտ„ նման է իւր ընտրած ձեռագրին[1], չունի այս երկու յետին մասունքն, միանգամայն երկու գլխաւոր մասանց կարգը փոխուած է, նախ (իբրեւ Ա. մասն) գրուած են աշխարհական օրէնք, եւ ապա (իբրեւ Բ. մասն) եկեղեցական կանոնք։ Բայց իւրաքանչիւր մասանց գլխակարգութիւնն՝ ուստի եւ նիւթոց դասաւորութիւնն, բաց ի սակաւ աննշանակ տարբերութեանց, երկուքին մէջ միեւնոյն են։ — Այս երկու ձեռագրաց իւրաքանչիւր մասն զատ զատ գլխահամար ունի, որով Նախադրութեան Ժ կամ ԺԱ Գլխոց հետ՝ ընդ ամենայն ՄԿԳ կամ ՄԿԴ կը հանի Գլխոց թիւն։ Բայց կան ձեռագիրք որ բոլոր գլխահամարներն՝ առանց մասանց զանազանութեան՝ միայար կը շարունակեն, բաց ի Նախադրութենէն։

Ընդհանրապէս խօսելով, փոյթ տարուած չէ նիւթոց պատշաճ եւ կանոնաւոր դասաւորութեան։ Արդարեւ չափաւորապէս ճշդիւ պահուած է երկու մասանց բաժանումն՝ յեկեղեցական կանոնս եւ յաշխարհական կամ քաղաքական օրէնս. բայց շատ խառնակ է նիւթոց դասաւորութիւնն, ինչպէս հարեւանցի ակնարկ մի ցուցակաց վրայ՝ բաւական է տեսնելու։ Սակայն այս անկարգ կամ խառնակ դասաւորութիւն ծագած կ՚երեւայ գէթ ըստ մասին այն աղբիւրներէն՝ յորոց քաղած է Հեղինակն, այնու կարգաւ առնլով՝ որով անոնց մէջ կը գտնուին[2]։ Դարձեալ նոյն խառնակութեան

[1] Ահաւասիկ իւր խօսքն. "Բաղդատելով իմ օրինա-
"կը Վիեննայի օրինակի հետ՝ ես զարմացած մնացի սոցա
"կատարեալ, ոչ միայն բառ առ բառ, այլ գրեթէ կէտ
"առ կէտ, նմանութեան վերայ։ Այս բաղդատութիւնը
"շատ ուրախացրեց ինձ, որովհետեւ նախ՝ առաւել եւս
"համոզուեցայ որ՝ Էջմիածնի օրինակների մէջ յիրաւի ըն-
"տրելագոյնն է իմ No. 492 օրինակը, եւ երկրորդ՝ ես նո-
"րանով լրացրի իմ օրինակի թերութիւնները՝ արտագրե-
"լով Նախադրութեան պակասորդը սկզբից Ա. Գլուխը եւ
"Բ.ի կէսը...։„

[2] Ինչպէս Հեղինակն ինքնին կը ծանուցանէ (Նախադր. Գլ. Ժ.) Դատաստանագրոց գլխաւոր աղբիւրներն եղած են Ս. Գիրք եւ Կանոնագիրք։ Արդ՝ շատ դիւրաւ կրնայ իմացուիլ՝ թէ ինչ մեծ ազդեցութիւն ըրած են այս

մեծնալուն օգնած են նաեւ ընդօրինակողք, իւրաքանչիւր ոք ըստ քմաց դասելով նիւթերն։ Տեսած ենք ձեռագիրներ՝ յորս շատ աւելի խառնակեալ են նիւթք, քան Բաստամեանց Վ.ին հրատարակածն։

Ընդ հակառակն կան ձեռագիրք՝ որ նիւթոց կարգաւորեալ դասաւորութեան մասին կարող ենք նախադաս համարիլ։ Նոյնպիսի կանոնաւոր կարգ բռնած է (անշուշտ հնագոյն եւ ընտիր օրինակէ առնլով) Նոր ձեռագիր մի մատենադարանիս (Թ. 18) օրինակեալ ի Կոստանդնուպոլիս յամի ՌՄԻԸ. = 1779։ Այս ձեռագրին մէջ (Նախադրութեան ԺԱ Գլուխներէն ետեւ) դրուած են անխառն եւ անշփոթ (Ա.) Զուտ եկեղեցական կանոնք՝ Գլ. Ա—ԾԵ. (Բ.) Պարզ աշխարհական օրէնք՝ քաղաքականք, պատժականք եւ առեւտրականք, Գլ. — ՃԼԵ. (Գ.) վերաբերեալք սպանութեանց եւ վնասուց երրորդի՝ — Գլ. — ՃՀԴ. (Դ.) Ամուսնացելոց վերաբերեալք՝ Գլ. — ՄԻԶ. (Ե.) Ծնողաց եւ զաւակաց եւ ժառանգութեանց . . . վրայ՝ — ՄԽԸ։

Տեսնենք արդ թէ ինչպիսի՛ է ի մասին այս դասաւորութեան՝ Սմբատայ ըրած փոփոխութիւնն։ — Բաստամեանց Վ. կը գրէ. "Դասաւորել է "(Սմբատ) յօդուածները աւելի յարմար կերպով՝

---

նուիրական մատեանք՝ նիւթոց դասաւորութեան վրայ։ Մարդ չէ կարող ըմբռնել թէ ինչպէս անընդհատ միմեանց կը յաջորդեն այնպիսի իրարու հետ կապակցութիւն չունեցող երեք հատածք կամ Գլուխք, ինչպիսի են հետեւեալքն. Մասն Բ. Գլ. ԿԸ. Ցաղագս դատաստանաց եթէ գտանիցի սպանեալ ի սահմանս գեղջ։ Գլ. ԿԹ. Ցաղագս դատաստանաց հարանց անդրանկացուցանելոյ զորդիս։ Գլ. Հ. Ցաղագս դատաստանաց անգէտ որդւոյ։ Այս խառն դասաւորութեան պատճառն անմիջապէս կ'իմացուի, եթէ միտ դրուի որ այն երեք օրէնք քաղեալ են Բ. Օրինաց ԻԱ. Գլխէն, յորում նոյնք զետեղեալ կը գտնուին միեւնոյն կարգաւ. առաջինն՝ 1—9, երկրորդն՝ 15—17, երրորդն՝ 18—21 համարներուն մէջ։ — Նոյնն իմանալու է նաեւ ի մասին Կանոնագրոց։ Յայտնի է թէ այս հաւաքմանց մէջ եկեղեցական կանոնք ժամանակագրական կարգաւ դասաւորեալ են՝ համեմատ իւրաքանչիւր վերնագրոց. այսպէս՝ Կանոնք առաքելականք, Երկրորդ առաքելականք ի ձեռն Կղեմայ, ...Կանոնք հարանց հետեւողաց, ...Կանոնք Նիկիայ Ս. Ժողովոյն, Կանոնք երկրորդ Նիկիականք, Կանոնք սրբոյն Գրիգորի առաքելոյ Հայոց, Կանոնք Կոստանդնուպոլսի ժողովոյն, ... միըստմիոջէ յառաջ բերուած են։ Արդ Մխիթար նոյն Կանոնագրքէն՝ իրեն պէտք եղածն ճիշդ այնպէս կ'առնու՝ ինչպէս անոր մէջ յաջորդաբար դասուած են։

*« քան դասաւորուած են (Մխ. Գօշի) բնագրին մէջ, « նմաններըը միասին խմբելով. օրինակ՝ հոգեւորա- « կաններ (եկեղեցականաց) կամ ժառանգութեան « վերաբերեալները միասին »: (Ցուցըն, էջ 56:) — Հաւանելով հանդերձ այս մասնական կարգաւորու- թեան կամ յարմար դասաւորութեան, կարծենք թէ սովին՝ երեւելապէս նուազած չէ (եթէ չըսենք թէ աճած է) ի ռամկօրէն խմբագրութեան Սպա- րապետիս՝ Մխիթարայ սկզբնագրին նիւթոց խառ- նակութիւնն:*

*Ի ցոյց ասացելոյս՝ դնենք Սմբատայ Խմբա- գրութեան առաջին երեսուն Գլխոց վերնագիրներն, որ կ'ըլլայ միանգամայն Ա. օրինակ գրութեանն:*

*Ա. Վասն վիճակաց թագաւորաց թէ որպէս վիճակի թագաւորութիւն յիւրեանց կեանքն եւ յետ մահու: — Բ. Վասն իշխանաց եւ այլոց որք ի թագաւորի ի հնազանդութիւն եւ ի ծա- ռութիւն լինի: — Գ. Վասն որ ոսկեհանք դըտ- նուն եթէ ի յիւր հողն եւ թէ յիշխանաց՝ որ ի հնազանդութիւն լինի թագաւորին: — Դ. Վասն որ յիւր աւերակք կամ ի տեղ ոսկի գտվի կամ արծաթ: — Ե. Վասն որ թէ երկու մարդ զիրար ծեծեն...: — Զ. Վասն որ զիր հօրն բանայ եւ մարդ ածէ ի ներքը...: — Է. Վասն որ զիր մշակն ի շատ հալծելոյն եւ ի ծանր վերցնելոյն մեռցնէ: — Ը. Վասն որ չլինի քահանայ եւ զինք քա- հանայ երեւցնէ: — Թ. Վասն որ զքահանայ ծե- ծէ եւ անարգէ: — Ժ. Վասն որ զԱստուծոյ իրաւունքն կաշառօք ծախէ: — ԺԱ. Վասն հար- կու որ առաջնորդքն առնուն ի ժողովրդոցն: — ԺԲ. Վասն մկրտութեան եւ ձեռնադրութեան: — ԺԳ. Վասն որ մարդ յեկեղեցւոյ ձեթէ կամ ի մոմէ յիր տունն տանի: — ԺԴ. Վասն որ թէ եպիսկոպոս մտնէ ի հայրապետէ: — ԺԵ. Վասն թերահաւատոց վկայութեան: — ԺԶ. Վասն եպիսկոպոսաց թէ ունենան հայրենէտրութիւն՝ թէ ոչ: — ԺԷ. Վասն եպիսկոպոսաց որ չմեր- ձենան յաշխարհական գործ: — ԺԸ. Վասն ծա- ռայից ժառանգութեանց եւ կարգի: — ԺԹ. Վասն որ մտնէ ի թագաւորէ եւ կամ յիշխանէ եւ անարժան իրք ասէ: — Ի. Վասն վարդապե-*

տաց սահմանի: — ԻԱ. Վասն եպիսկոպոսաց թէ որպէս պարտին իրաց հնազանդիլ: — ԻԲ. Վասն թէ եպիսկոպոս որպէս զոք դատէ կամ ձգէ ի կարգէ: — ԻԳ. Վասն եպիսկոպոսաց եւ իրենց թեմերուն: — ԻԴ. Վասն որ ժողովուրդն խռուխայ այնեն ի վերայ եպիսկոպոսին: — ԻԵ. Վասն մայր եկեղեցեացն եւ իրենց ժողովրդեանն: — ԻԶ. Վասն որ թէ ոք ընդ թերահաւատ խնամութիւն այնէ: — ԻԷ. Վասն որ չկարէ եպիսկոպոս յայլ թեմէ իրք առնուլ: — ԻԸ. Վասն քահանայից որք չկարեն իրք սպաննել: — ԻԹ. Վասն վարդապետի որ զաշակերտն յուսցնելն քշտէ որ մեռնի: — Լ. Վասն հպարտութեան եւ ամբարտաւանութեան քահանայից:

Բ. Ի ռամկօրէն խմբագրութեան բազմօք համառօտած է Սմբատ զգրաբար սկզբնագիրն:

1. Բոլորովին դուրս թողուցած է Մխիթարայ Նախադրութիւնն, որ Դատաստանագրոց իբր վեցերորդ մասն է, անշուշտ աւելորդ համարելով այն ընթերցողաց՝ որոց համար կը դիտէր գլխաւորաբար գրաբար գրութիւնն ռամկօրէնի փոխել: Հազիւ թէ յընթացս գործոյն աստ անդ կը նշմարուին հետք իմաստից ինչ նոյն Նախադրութեան, յորում հեղինակն երկարօրէն կը խօսի իւր աշխատասիրութեան առթին եւ կազմութեան կերպին վրայ, դատաւորաց, վկայից, երդմանց . . . վրայ: — Դարձեալ զեղչած է բուն օրինաց կարգէն այլեւայլ Գլուխներ, զոր հնար է թէ կարեւոր համարած չէ:

2. Վերագոյն (Ա. Ծան. 1) տեսանք թէ Մխիթարայ գլխաւոր աղբիւրներէն մին եղած է Ս. Գիրքն: Հեղինակը նոյն Ս. Գրոց խօսքերն՝ անոնցմէ կազմած օրինաց իւրաքանչիւրին սկիզբը բառ առ բառ կ՚օրինակէ, թէեւ շատ երկայն ըլլան, եւ յետոյ համառօտիւ կը յաւելու կարճ մեկնութիւն կամ խորհրդածութիւն մի: — Սմբատ գրեթէ ամէն տեղ վկայութիւններն ի բաց թողլով, Մխիթարայ ինքնագիր յաւելուածն եւեթ կ՚առնու, ի հարկին՝ համառօտիւ ընդելուզելով

Գրոց խօսքն, կամ նոյնիմաստ քանի մի տող յաւելլով։ Երբեմն եւս ինքնին նոր օրէնք կը շինէ նոյն կամ նման իմաստով։ Այսու շատ կը համառօտի սկզբնագիրն։ — Ահաւասիկ քանի մի օրինակ։

Բ.

1. ԿԶ. Վասն որ ոք եկեղեցւոյ կամ դարպասոյ իրաւանց ոչ հնազանդի։ — Եթէ ոք դատաստանի եկեղեցւոյ օրինաց եւ կամ դարպասու, որ նամուսով արարած լինի ու կտրած՝ անհնազանդ լինի, նա զայս Աստուած է հրամայել ընդ Մովսէս՝ որ մեռնի անազալ։

2. ՃԺԶ. Վասն որ սպաննէ մարդ ի լեռն կամ ի դաշտ։ — Եթէ մարդ սպանուի ի տեղի ուրեք ի լեռն կամ ի դաշտ, նա պատեհ է որ տեղոյն յառաջ մարդիկն գան, եւ ժողվեն զայլ շինութեանն աղէկ մարդիկն, ու չափեն թէ ի յոր շէն ի մօտ է սպաննածն։ Եւ առժամայն ի յայն տեղոյն յոր ի մօտ լինի՝ գնեն պատանք եւ մոմ, ու տան թաղումն այնել՝ թէ քրիստոնէ լինի։ Եւ թէ տէր չյայտնի սպանծին՝ նա չկայ այլ տուգանք. ապա թէ տէր գայ՝ նա զարեան գինքն այն վճարէ որ ի մօտ լինի։

3. ՃԲ. Վասն ոսկւոյ կամ արծաթոյ կամ անասնոյ կորուսած զինչ որ լինի։ — Եթէ ոսկի կամ արծաթ կամ անասուն՝ զինչ ու լինի իրք որ մարդ կորուսել լինի, ու տէրն վկայ բերէ կամ երդնու որ իր է ու կորուսել է զիրքն, նա իրաւունք է որ մենակ առնու զիրքն։ Եւ թէ ունողն իրացն ուրանայ ու ասէ՝ թէ «Չէ, իմ է», հանչաք մի՝ որ տէրն իրացն ի հարկ ընկնի որ երթայ վկայ բերէ, եւ վկայնով եւ դարպասով կեցցնէ՝ որ իր է իրքն. նա պատեհ է որ զայն ունողն որպէս գզող դատեն՝ որ սուտ ուրացաւ, եւ հանչաք չորս ի դարպասն տուգանք առնուլ յիրմէ։

Տեսնենք թէ ինչպէս են Դատաստանագրոց սկզբնագրին մէջ այս երեք Գլուխք։

1 Մխիթար, Գլ. Խ. Յաղագս դատաստանաց արհամարհողաց պետականաց եւ եկեղեցականաց, նախ ի մէջ կը բերէ Ս. Գրոց խօսքն (Բ. Օր. ԺԷ. 8—12) եւ յետոյ կը գրէ. "Տես՝ զի զարհամարհողս քահանայից "եւ դատաւորաց զոյգ եդոյց, զի մի է զօրութիւն օրինաց եւ դատաստանի, եւ պարտաւորութիւն նոցա՝ մահ է. զի չանսալ նոցա ոչ այլ "ինչ է, եթէ ոչ՝ անհնազանդութիւն Աստուծոյ, եւ որեանն՝ յայտ է "դատաստան։"

2 Նոյնպէս եւ յայսմ՝ Գլ. * ԿԸ. Եթէ գտանիցի սպանեալ ի

տաճարին պաշտաց, նոյն Բ. Օր. ԽԱ. Գլխէն, ըստ ոմանց՝ 1—9, ըստ այլոց 1—3 համարներն ի մէջ բերելէն ետեւ, իր կողմանէ կը յաւելու. « Ցայտմանէ յայտ է՝ ոչ տուգանս լինել այդպիսի սպանման եւ ոչ դա- « տաստան արեան, այլ քաւութեան՝ պատարագաւ անդ եւ աստ ա- « պաշխարութիւն: Այդոցիկ հետեւելի է դատաւորաց՝ որքան անյայտ « է. իսկ յայտ եկեալն՝ տուգանք հաղորդիցն, եւ արեան դատաստան « սպանողին »:

3 Տես Դատաստանագիրք, ուր Մխիթար ի Գլ. * Ծ. Ցլէս դատարանց ողջերթէց... եւ գտանելոյ ղեկավարելոյ ինչ, ճշդիւ յառաջ կը բերէ Ս. Գրոց (Ղեւտ. Զ. 1—7) խօսքն, եւ կը վերջացընէ ընդհանուր խորհրդածութեամբ, զոր յետոյ ըստ մասին կը տեսնենք առթիւ ԻԲ. օրինակին, ի Ծանօթութեան:

* Աստղանիշ թուահամարները Դատաստանագրոց Բ. Մասին- ները կը ցուցընեն. Ա. Մասինները նոյն նշանը չունին:

3. Սմբատայ համառօտելու ամէնէն սովորական կերպն է՝ սկզբնագիրն ըստ կարի զեղչելով կարճառօտիւք ռամկօրէնի դարձընել: Այսպէս կը վարի՝ սակաւ բացառութեամբ՝ ի բովանդակ գրութեան: — Այս համառօտելու միտութիւնն իրեն առիթ կու տայ՝ ի մի ձուլելու եւ կամ ի միակ Գլուխ միաւորելու Մխիթարայ երկու երեք Գլուխները, հասարակօրէն զայնպիսիս որ անընդմէջ իրարու կը յաջորդեն եւ նոյն կամ նման նիւթոց վրայ են[1]: Սակայն այսպէս զեղչեալ եւ համառօտեալ Հատածոց մէջ՝ ի տեղիս տեղիս նաեւ կարեւոր մանրամասնութիւնք դուրս ձգուած կը գտնուին: (Տես առանձինն՝ Ե. Օրինակն, յորում խմբագիրն առանց յիշատակելու սկզբնագրին պէս՝ թէ արդեօք կա՞յ յանցանք եւ ինչպիսի՞, լոկ հատակին վրայ կը խօսի:)

Հետեւեալ օրինակաց երկու առաջինքն՝ Մխիթարայ մի մի Գլխոց համառօտ խմբագրութիւնք են, իսկ երեք յետինքն՝ երկու կամ երեք Գլխոց ի մի ամփոփումն:

[1] Բայց կան ուրեք ուրեք ի մի ամփոփեալ նաեւ այնպիսի Գլուխք, որոց նիւթերն իրարու հետ կամ ամենեւին կապակցութիւն չունին, կամ ի հեռուստ միայն: Այսպէս վերագոյն Բ. օրինակին 1. բաժնին՝ կը կցէ Մխիթարայ ԽԱ. Գլուխն, Ցլէս դատարանց հասից ի ծովակերպէնէ տա- հարնայից, եւ 2. բաժնին՝ Հեղինակին * Դ. Գլուխն, Ցլէս դատարանց ողանո—բեկան մանկանց: Տես նաեւ յետոյ զօրինակն Ը.:

Գ.

**Մխիթար:**

ԻԹ. Յաղագս դատոյ եպիսկոպոսաց ամբաստանելոց: — Եպիսկոպոս ամբաստանեալ առաջի հաւատարմաց ոմանց կամ հաւատացելոց, կարդալ զնա հարկաւոր է եպիսկոպոսաց: Եթէ եկեալ խոստովանեսցի. յանդիմանեալ զնա՝ սահմանեսցի պատուհասն: Ապա թէ կարդացեալ զնա՝ ոչ լուաւ, կոչեսցի երկրորդ անգամ յառաքելոց առ նա երկուց եպիսկոպոսաց: Ապա թէ եւ այսպէս ոչ լուաւ, կոչեսցի երրորդ անգամ դարձեալ յերկուց եպիսկոպոսաց առաքելոց առ նա: Ապա թէ եւ այնպէս արհամարհեալ ոչ եկեսցէ ի ժողովն, վճիռն հատցի այնպիսւոյն որ ինչ արժանն թուեսցի, որպէս զի մի շահել ինչ թուեսցի ի փախուցելոյն: — Այդ ճշմարիտ իրաւունք են ամբաստանելոց առնել ըստ այդմ: Իսկ վճիռն այնպէս ընտրին, զի զպատճառն ստուգագոյն գիտելով հատցի:

**Սմբատ:**

ԺԴ. Վասն որ թէ եպիսկոպոս մռտէ ի հայրապետն: — Եթէ եպիսկոպոս մռտէ ի հայրապետն, թէ յետոյ զղջանայ ու գայ յուղղութիւն, նա չկորսնէ վասն այնոր ինք: Ապա թէ ոչ՝ նա յուղարկեն առ ինք երկու եպիսկոպոս, եւ կոչեն զինք երկու ու երեք հետ. եւ թէ յանդգնի ու չգայ ի ժողովն, նա իմանան զիր խօսքն եւ զպատճառն, եւ ի յայնոր վերայ իրաւունք տան, եւ սազայ՝ ի շատն եւ ի քիչն: Զնոյնս այնէ եպիսկոպոսն եկեղեցականի՝ որ ապստամբէ յիրմէ:

Դ.

ՂԸ. Վասն այնոց որ անընդմահ լինին: — Հարցանեն ընդ օրէնքս վասն անընդմահու՝ թէ լինի՞ իրենց թաղումն կամ պատարագ: Նա կու հրամայէ թէ աղէկ բարակ հետաքրքիր պիտի լինել. զի անընդմահն ազգեր են: Են որ ի խելք են ու իրենց կամաւ կու մեռնին, եւ այնոք բնաւ ո՛չ թաղման են արժանի եւ ո՛չ պատարագի: Եւ են որ ի յիրենց խելացն ի դուրք են վասն ցաւոցն, նա զայնոց կարգն պատեհ է որ կատարեն[1]:

1 Տես Մխիթար, Գլ. ՀԴ. Յաղագս [illegible] որ ի [illegible] [illegible] երբեմն:

Ե.

**Մխիթար:**

*Ե. Յաղագս դատաստանաց մանկանց՝ երբ է խաղս

**Սմբատ:**

ՃԻԷ. Վասն որ տղայ ըն– տղայ սպանէ կամ խոցնէ: —

զմիմեանս խեղեցեն կամ բեկեցեն կամ խլեցեն ի զուարճութեանց: — Յորժամ մանկունք ի խաղս զմիմեանս փախուցեն, թէ պատահմամբ իցէ եւ թէ ցասմամբ՝ այդպիսիկ քննեալ լիցին. նմանապէս եւ ի սպանութիւնս, եւ ամքն նման սպանութեանն: Եւ ի զգայութիւնս համեմատեալ տուգանքն լիցի, եւ

Եթէ փաւէ տղայ զտղայ կամ խոցնէ՝ նա նոյնպէս ի հասակն հային ու ի խոցն, եւ զդեղգինն յայնոր վերայ դնեն: — Նոյնպէս եւ թէ ի լոկնալն զիրար խեղդեն ի մխելն՝ նա պատեհ է որ ի հասակն հային եւ ի յայնոր չարքն. նոյնպէս եւ դատն է որպէս գրեցաք:

զխափանածոյն եւ զբժշկութեանն տուգանեսցի: Զայդ ըստ մանկանցն իրաւամբք տեսաք դատաստան: — * Զ. Յաղագս դատաստանաց՝ երբ ի ջուրս զմիմեանս ընկեցեն մանկունք: — Ի ջուրս լողալով մանկունք (երբ) զմիմեանս հեղձուցանիցեն, տեսանելով քննեսցեն՝ եթէ պարզամտաբար ի խաղս, եւ թէ ցասուցեալ քինու, կամ իւրովի դիմեալ ի խորս եւ անկար ի բերել արտաքս այլոց: Այդպիսիկ քննեալ՝ համեմատեսցի ընդ սպանութեան ամքն, եւ այնպէս վճիռն տացի իրաւամբք:

## Զ.

ՃԽԲ. Վասն չար ազգ մարդկանց ազատաց եւ հեծելուորաց: — Կու հրամայէ օրէնքս որ մարդկային ազգս շատ ազգեր են, եւ են որ աղատք են ու հեծելուորք, եւ են որ չեն եւ յայլ ազգ գործերն: (Ապա) այն մարդն որ յիր գործոյն պատեհն մեռնի՝ նա անպարտ են տէրքն, բաւհրան՝ այն տէրն որ զամէնն պնդել լինայ եւ արիացուցել զիր գործաւորքն եւ զհնազանդքն: — Ապա թէ տէրն յայն բանն յուղարկէ զմարդն որ չլինայ իր գործ, եւ չլինայ յինք կրթած, ու փխասի, նա այն պարտական է եւ մահապարտ: Եւ թէ ոք անհոգցնէ զմահխաբոյն եւ յուղարկէ զմարդ, ու մեռնի, նոյնպէս մահապարտ է[1]:

1 Այս Գլուխ համառօտութիւն է Դատաստանագրոց հետեւեալ երկու Գլուխներուն: * ՃԺԱ. Յաղագս դատաստանաց զմարդ ի ճանապարհ եւ յայլ գործ առաքողաց եւ ընկեցելոյ սպանմանն: * ՃԺԲ. Յաղագս դատաստանաց երբ զոք որ չիցէ իւր՝ ի գործ առաքէ:

## Է.

ԺԱ. Վասն հարկաց որ առաջնորդին տանին ի ժողովրդոյն: — Հրամայէ առաքելական օրէնքս՝ որ եպիսկոպոսն յԱստուծոյ տեղն խնամք տանի ժողովրդեանն, եւ զայնչաք սահմանաց հարկն առ-

նու՝ ի սուրբ եկեղեցւոյն եւ ի յայլ եկեղեցականացն ի պէտքն, եւ վասն շլատութեան չյաւելցընէ զառն եւ ոչ զեկեղեցականացն իրաւունքն։ Վասն զի ամէն եկեղեցական հայոց է հաստատած ի յիր ապրանքն ի սուրբ եկեղեցւոյն ծառութիւնն, զէդ հեծելուորքն վասն թրի՝ յիրենցն։ Եւ զայս ի Ֆռանկաց եկեղեցականքն տես ու վ՛ուսիր, որ ջանուննի անուանին, որ եփ զուգուի եւ կարգի ջանուն յեկեղեցին, այլ չկարէ պակսեցնել եպիսկոպոսն յիր ապրնացն մազ մի առանց իրաւանց։ — Եւ թէ բերէ ժամանակն՝ որ աղքատանայ եկեղեցին վասն յերեւան պատճառանաց կամ յեպիսկոպոսէ կամ յայլ եկեղեցականացն. եւ այլք որ ունենան եւ հարուստ լինին՝ նա զիրենց իրքն խնայեն ի յայն կարիքն, նա զէդ մարդասպան ձգեն զինք եւ դատեն, ու հաւնաւվրեն ու դնեն յեկեղեցւոյն կարիքն։ — Եւ թէ յայս ժառանգաւորաց եկեղեցւոյս ընդ ընկեր կարգաւոր կամ ընդ աշխարհական կռիւ այնէ ու փայտով քշտէ՝ հայոց որ մենակ մեռնի, նա առնուն զկարգն եւ ի դարպասն տան զինք՝ որ զէդ սպաննող դատեն։ Ապա թէ չմեռնի ի ժամն ու ի հետ օրերոյ մեռնի՝ նա զզարքն փնդռեն ու տեսնուն, եւ թէ ի սպաննողէն լինայ՝ նա որպէս վերոյ գրեցաք՝ է տուժանքն։ Եւ թէ ի կարծիք լինի՝ նա տուժանքն այնոր ապաշխարութեամբ լինի զինչ եպիսկոպոսն դնէ[1]։

[1] Այս Գլուխ՝ որ խմբագրողին յաւելուածովքն հանդերձ՝ համառօտ բովանդակութիւն է Մխիթարայ երեք այլեւայլ Գլխոց, — ԻԴ. Յղգս դատաստանաց եպիսկոպոսին եկեղեցականացն իւրոց. ԻԵ. Յղգս դատաստանաց եպիսկոպոսաց եւ տանուտերց որ զկէս ժառանգաւորաց ու տայցեն. ԻԶ. Յղգս դատաստանաց ժառանգաւորաց ի կոյսն հարկանողաց. — իսկ վերջին բաժնիւն ցոյց է վերագոյն (էջ 209 ծան.) անյարիր նիւթոյ իրարու հետ կցուելուն վրայ ըսուածին։

Դատաւորութեան եւ համառօտութեան մասին Սմբատայ ի Դատաստանագիրս մուծած փոփոխութիւնքն, զոր մինչեւ ցայսր քննեցինք, արտաքին կամ նիւթական ինչ էին։ Աւելի կարեւորութիւն ունին հետեւեալ փոփոխութիւնք։

Գ. Անշուշտ ամէն մտադիր ընթերցող ինքնին դիտած է, որ գէթ յոմանս վերագոյն ի մէջ բերեալ օրինակաց՝ սպարապետ խմբագիրն ինչպէս մեծ ազատութեամբ վարուած է գրաբար սկզբնա-

գիրն ի ռամկօրէն փոխած ժամանակ. այնպէս որ ուրեք ուրեք երկու գրութեանց մէջ ըստ գլխաւոր եւ էական մասանց եւեթ նոյնութիւն իմաստի մնացած է։ — Այս տեսակիտէն մտադրութեան արժանի են յաջորդ օրինակք։

## Ը.

### Մխիթար։

*Թ. Յաղագս դատաստանաց քննութեանց եւ նոցունց վճռոց։ — Ի գինարբուս վնաս ինչ եղեալ, ըստ հոգեւոր մեր օրինաց՝ մի լիցի յաղագս այնորիկ ինչ ներել, զի նախարբեցութիւնն դատի։ Եւ թէ անդ զմիմեանս ի մարտնչելն բեկանիցեն եւ կամ խեղիցեն, հաւասարի դատ լիցի, եւ բժշկութեան եւ խափանածոյն տուգանեսցի։ Եւ թէ մահ գործի, տեսցի պատահումն. թէ մախանօք եւ կամ վրիպմամբ եւ կամ այլօք այսպիսիւք իցէ, յերկուցն շարժեալ եղեւ՝ թէ միոյ առաւելեաց։ Եւ այնպէս վճիռն հատցի եւ գին արեանն տուգանեսցի։ Եւ գինարբուացն կցորդութիւնն դատիցի հաւասարի, եւ նոցայն ընդ նմին լիցի տուգանան։ Եւ թէ ի զգայութեանցն ինչ վնասիցի, ըստ այնմ եւ դատն լիցի, բայց զի ըստ օրինացն մահու իսկ են արժանի, այլ զի խրատ ի ձեռս առցեն եւ ըստ աւետարանին ապրիցին։ Զայդ պատշաճ վարկանիմք դատաստան։ Եւ զայդ նախախնամաբար գործիցեն. զի թէ չիցէ երկիւղ նոյն գործոյ չարի, մի լիցի խրատ, այլ միայն տուգանք եւ ապաշխարութիւն։

### Սմբատ։

ԾԼ. Յաղագս որ հարբենան եւ խռովայ ու վնաս այնեն։ — Հրամայէ օրէնքս որ զայն ցեղն երկու ազգ պիտի դատել, մէկ վասն արբեցութեանն, որ ինք մարդ էր, ու հանչաք խմեց՝ որ խռովեց ու զայն վնասն արար, եւ այլ ի հետ՝ վասն վնասուն զոր գործեց, եւ զինչ վնասն այժենայ։ Թէ մահ է՝ նա յիմեան զպատճառն, եւ զմախանքն թէ յումնէ էր։ Թէ հայնց՝ որ յայնոր է պատճառն որ սպանվաւ, նա զարեան գինքըն տան. եւ թէ սպաննողն է լել պատճառ, նա զէտ սպաննող զինք դատեն, որպէս գրել ենք ի շատ տեղ։ Եւ թէ խոց լինի մահու, նա քշտողն տայ զդեղգինն, եւ զինք ի զընդանն պահեն ըստ վարկուցն եւ զայն խափանն՝ որ յիր բանէն կեցաւ։ Հրամայէ օրէնքս որ թէ զայնոր ձեռքն կտրեն՝ որ քաւէ զպանութիւնն զոր արար, նա ի դատաւորին կամքն է, թէ վասն իր հոգոյն խղճայ եւ խրատէ մէն։

## Թ.

### Մխիթար:

*ՃԺԹ. Յաղագս դարմանողաց բժշկաց: — Բազումք ի բժշկաց բազում վնասս գործեն դեղօք կամ ի փորձել զդեղս յայլս եւ կամ չարակամութեամբ սպանանեն դեղօք եւ կամ վասն անգիտութեան զվնասակարսն տան ի դեղոց, կամ անվարժ գոլով՝ զցաւսն ոչ գիտեն ճանաչել, եւ յաղագս այնորիկ մահ գործեն հիւանդաց. կամ հեղգանան յաղագս ըստ կամաց զվարձն ոչ տալոյ եւ այնպէս վնասեն, կամ նախանձելով ընդ աշակերտս ոչ ուղիղ ուսուցանեն, եւ նոքա անգիտանալով՝ բազում առնեն վնաս, եւ թէ այլ ինչ ախտս ցաւոց մուծին, եթէ ինքեանք. եթէ աշակերտօքն: Զայսոսիկ զամենեսեան կամաւորս գիտեմք: Իսկ ակամայք՝ զոր ի հիւանդին տեսողացն հեղգութենէ լինցի վնասն կամ ի հիւանդին, կամ զի ըստ հրամանի նորա զհիւանդն ոչ դարմանեցին, կամ ի մեծ ինչ հարկէ ոչ եղեւ հնար գալ բժշկի առ հիւանդն, եւ յաղագս այնորիկ մահ եղեւ, կամ գիտութեամբ դեղ տուեալ կենաց՝ մահու եղեւ պատճառք: Սոյնպէս հատանելն եւ խարելն այդոքիւք դատիցին: Արդ՝ կամաւորացն արեան լիցի դատաստան, եթէ յայտ վնասն գայցէ. ապա թէ

### Սմբատ:

ՃԾԱ. Վասն բժշկութեան է սպանման մարդկան: — Մեծ բան է բժշկութիւնն ի ստածումն մարդկան, եւ շատ սպաննութեներ կու լինի ընդ խալատ, եւ է որ կամօք, եւ է որ չգիտէ եւ չճանչէ զցաւն ու այնով սպաննէ, կամ որ ընդ ընկերն մախայ եւ այնով, կամ որ զաշկերտն խակ բաժնեն ու համանք տան: Եւ այսպիսի պատճռնիս շատ են, որ շատ ազգ ցաւեր խառնեն. եւ այսպիսիքս ամէնն կամաւոր սպաննումն են համարած ի յիրաւունքս: Եւ է որ ի հիւընդին դեհէ լինի պատճառքն, որ կամ լինի ի հիւընդին յանլսրրդութենէ, կամ ի յուտելոյ կամ ի բացուելոյ եւ կամ այլ ի յայսպիսեացս, կամ ի ծառութրացն յանարիութենէ: Եւ դեռ կարէ լինել որ հայնց մեծ հարկ հանդիպի բժշկին՝ որ ողալէ ու չկարէ գալ առ հիւանդն, կամ որ վասն աղէկի դեղ տայ՝ նա պեղծ բերէ: Նոյնպէս եւ թէ խոցի լինի՝ ճեղքել կամ կտրել կամ խարել, յայս ամէնիս վերայ փնդռել պիտի եւ ճշմարտել, որ թէ կամաւ լինի ողալն եւ կամ վասն պզման, նա զէդ մահապարտ զինք սպաննեն. ապա թէ ի յոչ կամայ լինի՝ որ ինք խոստովանի, նա այն ապաշխարութիւն քաշէ. եւ

խոստովանութեամբ ծանիցի կամաւորի ապաշխարութիւն լիցի: Իսկ ակամային անպարտ յերկաքանչիւրսն լիցի: Իսկ ի կամաւորէ եւ յակամայէ եղեալ վնասն մի լիցի անպարտ յերկաքանչիւրսն:

թէ ի դարպաս ընկնի, եւ կեցցնվի որ ի կամայէ (է) եւ յոչ կամայն միջակ լինի ողալն, նա տուգանօք եւ զընդանով դատեն զինք՝ ըստ արժանեացն, որ այլքն խրատուին:

Ժ.

Մխիթար:

ՂԸ. Յաղագս դատաստանաց քահանայից եւ մնից ժողովրդեանն: — Ժողովրդականք մի հրապուրեսցին ի նոցանէ (ի քահանայից) ի բաժանումն սրբոյ եկեղեցւոյ, զի պատճառ խռովութեան բերէ: Այլ զպտուղս եւ զմուտս ժողովրդականքն միաբանութեամբ ի սուրբ եկեղեցին հասուսցեն ամենայն յօժարութեամբ անխափան. եւ մի ըստ դատուց բաժին արասցեն եւ երգոց, որ եղեւ վնաս: Եւ քահանայիցն առեալ ի սրբոյ եկեղեցւոյն՝ բաժանեսցեն կարգաւորաբար որպէս եւ օրէն է: Գլխաւոր քահանայիցն՝ երկու մասունք եւ կէս մասին, եւ այլ քահանայքն՝ մէն երկու մասունս, սարկաւագունքն՝ մի մի մասն, դպիրքն՝ կէս կէս մասն, այրի կանայքն՝ թէ իցեն պարկեշտք՝ մի մասն, առանց ամենայն հակառակութեան: Ապա թէ իցէ ոք որ հակառակիցի եւ առնիցէ խռովութիւն, այնպիսին դադարեալ լիցի յիւր կարգէն, եւ ընկերքն իւր մի իշխեսցեն ընդ այնպիսումն հաղորդել, եւ ոչ ժո-

Սմբատ:

ԼԱ. Վասն որ չհանի ժողովուրդն յերէցն: — Եւ ժողովուրդն չէ իրաւունք որ ընտրեն՝ թէ ինա երէցն լաւ է քան զիւայ կամ այլ անոյշձայն, եւ զմէկն թողուն ու ի մէկայլն հակեն, ու խոլովոյի պատճառ լինին եւ մեղաց: Այլ զամէնն մէկ Աստուծոյ սպասաւորք համարին, եւ զիրենց ըղորդ իրաւունքն զամէն իրք ի յիր ժամն տան: Եւ երբ նաքա առնուն՝ նա զան եկեղեցականքն յեկեղեցին ի մէկ տեղ ու բաժնեն. եւ գլխաւոր քահանայիցն տան երկու բաժին եւ կէս, եւ այլ քահանայիցն՝ ամէն մէկի երկու մասն, եւ աւագ սարկաւագին՝ մէկ բաժին, եւ դպրին՝ կէս բաժին, եւ (յ)այրի իրիցկինն՝ որ իր այրիկն յեկեղեցւոյն սպասաւորութիւնն լինի(ն) մեռել եւ ինքն ի ...ութենէ սպրկիկ լինի, նա յիրիցուն տեղն՝ մասն մի բաժին նարա տան, առանց ամէն խոլովոյի: Ապա թէ ոք յանդգնի եւ խոլովոյ շարժէ, նա կու հրամայէ օրէնքս որ ձգեն զինք ի

զօվրդականքն առ քահանայս ունել զնոսա: դուրք յեկեղեցւոյն, եւ կորանէ առ եպիսկոպոսն զկարգքն ինչուր ապաշխարութեամբ ուղղի:

## ԺԱ.

ՃԼԵ. Վասն վարդապետի որ վարձ չառնու վասն գրոյ: — Հրամայէ օրէնքս որ վարդապետ բնաւ վարձ չառնու վասն գրոյ, կամ այլ գիտութեան եկեղեցւոյ ուսմանց իսկի չէ պատեհ վարձ առնուլ եւ ապա ուսցնել: Հրամայէ զորբերն եւ զաղքատքն ստածել եւ խնամել եւ անուշցնել ի գործն, որ շատք դիմեն ու գան ի յուսումն. եւ տայ եպիսկոպոսն ու կարող վաներոյն հայրապետերն այնոց կերակուր եւ հանդերձ. եւ թէ կարող լինին տէրքն՝ նա զհանդերձն մէն տան, եւ այլ պէտքն ի վաներոյն լինի: Եւ թէ ուսցնողն լինի աղքատ՝ նա թէ (աշակերտն) իր կամաւ զվարդապետն քնքշցնէ ու կամ իրք տայ, նա այն հերիք է հոգեւոր սերմանողացն՝ որ զմարմնաւոր հունձքն ժողովեն: Ու թէ չայնեն զայս աշակերտքն՝ նա (Եկ) վասն այնոր կու անհանգստեն զիրենք վարդապետերն եւ թէ դատաւորնին՝ թէ Զմեր իրկունքն առին ու զմեզ չօգտեցուցին, նա հրամայէ որ ինչուի յետի փողն ի յետ տայ, նա եւ ըստ արժանեացն դատիլ: Եւ այս բաւական է լսողացդ[1]:

1 Տես Մխիթար, ՃԺԲ. Յաղագս դպրոցին մանկանց ուսուցողաց:

## ԺԲ.

ՃԺԲ. Վասն տոկոսոյ եւ գրաւոյ եւ փոխերոյ եւ մուրհակաց: — Պարտ է գիտել որ զգրաւոյն սահմանն եւ զվաճառացն ի քաղաք եւ ի դուրս պարոնութիւնն սահմանէ զիրաւունք, զչափ եւ զկշիռ եւ զամենայն այսպիսիքս, եւ տուկ ի վերայ ու մուրհակաւ, որ սաստելով ըղորդ պահեն: Եւ զայնոք որ ծեծնօք չըղորդին հետ երեք տարպային՝ նա ի պարոնն կամ յերեսփոխանն բերեն, որ ի վերայ մեղանացն խրատել տայ կամ խոռել կամ մեռցնել: Բայց որ զկշիռն կամ զչափն աւերեն, նա այս է՝ որ չորեքկին վճարեն, եւ խրատեն զիրենք ի տռայն՝ որ այլքն վախեն: Եւ զայնոք որ դրամ քշտեն կամ դրամ հարթեն՝ անզեղջ է պարոնութիւնն, զձեռքն կտրէ ի պակասն:

Եւ ուր վաճառ լինի՝ նա զկապալն առնուլ պատեհ է եւ բաժ. բայց ուր ծախ չլինի՝ նա չէ իրաւունք բաժ առնուլ, քաւել թէ ահուտ ճանպահ լինի, որ վասն պահելոյն իրենց իրաւունք առնուն ի վաճառկներոյն, թէ ոչ՝ նա կապլնին թագաւորացն տվօքն պատեհ է որ երթայ։ Բայց կու հրամայէ օրէնքս՝ որ այն ծախողն որ զանգէտն խաբէ ու իր սուղ իրք ծախէ, նա զինք զէդ գող ու անհաւատ դատեն, որպէս գրել ենք վասն գողերոյն։

Եւ զհացի ու զգինոյ եւ զհնդանաց նեհն պատեհ է՝ որ թագաւորն ժողովէ զիր գաւառապետքն եւ զիշխանքն ի յամէն աշուն, երբ տարոյն մուտքն մտէ, որ քննեն եւ տնդուղումն այնեն ի մուտքն եւ ի տարին, եւ ի կաննուխն նեհ դնեն ծախուն զպատեհւորն, եւ ի հետ մ՚ի հետ ի վերայ չքաւորութեան տարոյն եւ լիութեանն, որ ոչ ծախողքն զրկին եւ ոչ գնողքն, եւ հովուի աշխարհք։ Վասն զի նեհն (Է) որ կու կեցնէ զամէնն, եւ թագաւորացն է շալակն, եւ Աստուած յիրենցմէ խնդրէ զամէնն։ Զայս Մովսէս կու հրամայէ։ Բայց մեծ իշխանքն եւ փոքունքն եւ իմաստուն բնակիչք աշխարհի պարտին յորդորել զթագաւորն եւ իրենք զիրար ի յայս ուղիղ սահմանիս պահելն, զի այսով հաշտի Աստուած ընդ աշխարհ եւ այլ շատ տայ զբարին[1]։ ...

Եւ վաճառին սահմանն այս է որ երկուքին կամօք լինի՝ վկայիւք. թէ հայրն ծախէ հայրենիք՝ նա պատեհ է որ որդոցն կամօք լինի իրենց ելնելն ի ժառանգութենէն, նոյնպէս եւ թէ որդիքն ծախեն՝ նա հօրն եւ հօրեղբարցն ու քուրվտոյն կամօքն։ Զի թէ կամօք չլինի՝ նա թէ հազար թուղթ ու ձեռնգիր լինի տուած, նա ըզորդ ժառանգութիւնն չխածփրի. եւ յորժամ գայ ի դատաստան՝ նա առնու անսղալ։ Նոյնպէս եւ թէ որդի առանց հօրն եւ եղբարցն կամ քուրվտոյն կամացն եւ աւդրէին ծախէ. ապա որ կամօք եւ աւդրելով ու ձեռնգրով ծախէ՝ նա հաստատուն է եւ անդարձ։ Բայց խիստ հաստատունն այն է՝ որ դատաւորին ձեռնգրովն լինի։ Բայց թէ վասն աղքատութեան մարդ ընդ մարդ հաշիւ այնէ պոմնով, եւ տայ՝ թէ կալ զխսայ հայրենիքս ու տուր ինձ զխսայ չաք դեկանս ինչուի հանչաք մի ժամ, նա ի յայն սահմանեալ ժամն կամ ի յոր ժամ ուզենայ, դառնայ ի յինք իր պոմնաւն եւ

վկայիւքն, եւ կամ դառնայ ու կամ ազգ մի հաշտին ընդ իրար։ Բայց ձեռնգիրն հաստատէ զբանն պարոնին եւ եպիսկոպոսին ձեռնգիրն ու խաչն եւ վկայիցն[2]։

1 Տես Մխիթար, ՃԻԳ. Ցղէ դատաստանաց վաճառաց։
2 Տես Անդ, ՃԷ. Ցղէ դատաստանաց համօրէն վաճառաց հաստատութեան։

Դ. Աւելի ծանրակշիռ են այն փոփոխութիւնքն՝ որովք Սմբատ, է զի առաւել եւ է զի նուազ, կը շեղի Մխիթարայ գրութենէն, ոչ միայն ըստ իմաստին՝ փոխելով կամ եղանակաւորելով, այլ նաեւ օրէնսդրական հայեցմամբ՝ յաւելլով կամ զեղչելով, Վարդապետէն տարբեր կարծիք՝ մինչեւ երբեմն անոր հակառակ որոշումն կամ վճիռ տալով։ — Այս փոփոխութիւնք՝ գոնեայ ըստ մասին՝ հետեւանք են ի Կիլիկիա մուտ գտած սովորութեանց, ինչպէս յիմանս ի յաջորդ օրինակաց ակնյայտնի իսկ կը տեսնուի։

ԺԳ.

ՃԺԳ. Վասն կտակներոյ հաստատուն լինելոյ։ — Եթէ կամի ոք գրել զհաստատուն կտակն նա այս է։ Մինչդեռ հիւանդն աղէկ ունենայ զիր խելքն՝ նա կոչէ զիր ծանօթիքն եւ զնոտրիկոսն, կամ թէ ի գեղ լինայ՝ նա զգեղջին երէցն, եւ երեք վկայիւք գրել տայ զիր ինչքն, ու սահմանէ իր հոգւոյն եւ իւր յետմնացացն ըստ իր կամացն, նա ընդունելի է[1]։ . . .

1 Մխիթար ի Գլ. ՂԹ. Ցղէ դատաստանաց կտակաց, այսպէս կը գրէ. «. . . Զկնի երից աւուրց հիւանդութեան՝ կոչեսցէ հիւանդացեալն «զքահանայն եւ զժառանգաւորս եկեղեցւոյն, եւ երեք վկայիւք արասցէ «զկտակն, եւ զամենայն ինչ զոտան իւր եւ զհոգւոյ եւ զթաղման իւրոյ «խօսեսցի ըստ հաճոյից իւրոց։ Եւ թէ ի նմին աւուր պատահի մեռանել, հաստատուն լիցի կտակն՝ թէ չիցէ թափեալ ի մտաց . . . ։ Բայց «հաստատուն կտակ յառողջութեանն է, թէպէտ եւ ասացեալդ անխոտելի է. զի այն կամաւոր՝ իսկ այս խառն տեսանի։ . . .» — Կ'երեւայ որ Մխիթարայ եւ Սմբատայ գրութեան տարբերութիւնն ըստ օրէնսդրութեան՝ յառաջ եկած է ի Կիլիկիա մուտ գտած սովորութիւններէն։ Միեւնոյն պատճառէն կը ծագին նաեւ ԺԵ. ԺԶ. եւ ԺԷ. օրինակաց մէջ պատահող տարբերութիւնք, յորս ակնյայտնի իսկ կը տեսնուի տեղւոյն եւ ժամանակին ազդեցութիւնն օրինաց փոփոխութեան վրայ։

ԺԴ.

ՃԻԱ. Վասն որ մարդ իրք տայ ի պահ՝ նա կորնչի։ — Եթէ ոք ի մարդ իրք տայ ի պահ ու կորնուի,

*նա տեսնուլ պիտի թէ կայ իր գողցած իրք ի հետ, եւ երդմամբ փնդռեն։ Դա թէ զիրն այլ լինան տարել ի հետ՝ նա երկուքն զգողն թող փնդռեն ինչուր գտնուն։ Ապա թէ իրն մէն լինի գողցած՝ նա այտի կապկած է. տան համբերութիւն՝ որ զգողն փնդռէ, ու թէ չգտուի՝ նա ի յերդումն է եւ ի կիսավճարն, կամ զինչ ցեղ լաւ դատաւորն յերկուքէն եւ ի վկայիցն ու ի դրացներոյն, եւ զիրաւունքն ըղորդ ու անաչառ այնէ*[1]։

1 Տես Մխիթար, *ՄԳ. Ցղէս դատաւորն առանդկէց, կամ Լեւոն որ էրէ տան ղահ է մարդ, եւ յօրսաւանէ յամ գողանալ տայ։

## ԺԵ.

Ճ. Լեւոն Ֆրանկնելոյ ղուէ։ — *Եթէ ոք քեզ իրք պարտենայ, դու մի մտեր զինք իր տանն ընդ ներքսէ գրաւկնել, վասն զի օրէնքս ղայնպիսի այնելիքն հաւնաւվրումն է համարել, քաւէլ թէ դարպսուն հրամանաւ, եւ դեռ թէ ու մարդ այլ ուզես ի հետդ՝ նա պատեհ է։ Ապա ի դուրս կարես գրաւկնել զինչ ցեղ ուզես։ Բայց ամենեւին լուծք եզանց չէ պատեհ գրաւկնել, վասն զի գոյացութեան եւ ապրնաց պատճառ է. նոյնպէս ոչ ձի եւ ոչ ուլէհ, զի կռուոյ եւ ծառութեան ի պէտք է ի պարոնութեանն ի կարիքն։ Եւ այլ իրուիտ ի քո համանքդ է ամէնն։ Ի քո լաւն է՝ թէ մեր խրատուս լսես*[1]։

1 Տես Մխիթար, *ՁԲ. Ցղէս Դատաւորն ղարբասաց եւ նորին գերասաց։

## ԺԶ.

Հ. Յաղագս իշխանաց եւ յխատորաց, որ է Հայս աղօտ կոչեն, յերենց Վերայ դատաստան . . . (*Իշխանք՝ զթագաւորին դրած իշխանն*) *չկարեն ձգել, քաւէլ թէ թագաւորովն. նոյնպէս եւ թէ նախնի լինի՝ նա իր ընկերօքն դատեն զինք։ Եւ այն որ իշխանաց իշխան լինի՝ զիշխանայքն դատէ իշխանաց իշխանօքն։ Նոյնպէս եւ զազատքն՝ որ են ի մերս ձիաւորքն եւ լիճ ճորտերն, նա իրմընցնով զիրենք դատեն իշխանաց իշխանքն, զթագաւորին ճորտերն՝ թագաւորին հրամանաւ, եւ այլքն՝ ամէն մէկ զիրն դատեն յիրենց դարպասն իրենց ճորտերովն ըստ իւրաքանչիւր կերպի։ Եւ զայլ ցած հեծելուորքն՝ այլ ցածքն որ ազատ կոչին, իրաւնեն։ Բայց զխրատելոյն կամ զմեռցնելոյն առանց թագաւորին կամ իշխանաց իշխանին չէ արժան այ-*

նել. զի չկայ ամենեւին հրամանք յօրինաց՝ որ այլ մարդ իշխէ աւերել կամ խոռել զմեղկանն՝ քաւել թագաւորն կամ իշխանաց իշխանն. ապա զընդանել ու տուգնել եւ հանել վարել յիրենց տեղոյ կարեն այնել: Եւ զայլ ցած շինական հեծելուորքն՝ ամէն մէկ զիրն կարէ դատել: Նոյնպէս ու զխրատելն եւ զվարելն գրել ենք: Ապա առանց պարոնին յայրենեթփել չկարեն[1]:

1 Տես Մխիթար, ՃԺԴ. Յաղագս դատաւորաց տեղապահելոյ....:

## ԺԷ.

| Մխիթար: | Սմբատ: |
| --- | --- |
| *Ա. Յաղագս դատաւորաց թագաւորաց եւ որդւոց ընդ յետ մահուն նոցա: — Եթէ պատահիցի որդիս լինել նմա (թագաւորի) եւ դստերս, զոյգ եւ արդար զվիճակ թագաւորութեանն բաժանիցէ: Զի թէպէտ զանդրանիկն իդէպ է թագաւորեցուցանել, այլ զյառաջադէմն յաթոռ նստուցէ թագաւոր: Եւ որքան եղբարք իցեն նորա՝ որդւոց նորա ոչ է իրաւացի առնուլ թագաւորութիւն. եւ ի հատանել եղբարց՝ ապա նստցին որդիք: Եւ եթէ դուստր իցէ նորա, նահապետութեան տուն կարգեսցէ հանդերձ արամբն, կէս եղբօր մասն առցէ: Եւ թէ մահուամբ բարձցին թագաւորք, եւ որդւոյ իցէ որդի եւ դստերն. որդւոյ որդին առցէ զաթոռն եւ ոչ դստերն: Եւ որքան յորդւոցն իցէ, ի ծննդոց դստերն մի՛ առցէ. ապա թէ առցէ՝ յօտարս համարեսցի: | Ա. Վասն թագաւորաց եւ որդւոց նոցին: — Եթէ կենայ թագաւորին կտրճեր ու աղջկներ, նա իրաւունք է որ կտրճերն հաւասար ժառանգեն զթագաւորութիւնն. վասն այնոր որ չէ պատեհ որ յորդւոց թագաւորին ի ցածութիւն ընկնին: Եւ թէպէտ ու նմանաւոր է որ զանդրանիկն կացուցանեն յաթոռ ինքնակալութեանն, բայց վասն օգտութեան աշխարհաց՝ իրաւունք է որ աղէկ տեսնու հայրն՝ իւր ամէն գաւառօքն եւ գաւառապետացն տեսովն եւ սուրբ եկեղեցւոյն տեսովն, որ յոր հաճին յորդիքն եւ գիտենան որ բարի բարուք լինի եւ աստուածասէր եւ երկիղով եւ ըռատակն, նա զայն կացուցանեն յաթոռ ինքնակալութեան հօրն, որ հովուէ զեղբարքն եւ զերկիրն: Եւ զդստերքն՝ իրաւունք է որ ի նահապետութեան տուն կարգեն, որ է թագաւոր կամ բրինձ կամ մարգիզ կամ այնպիսիք: Եւ պատեհ է որ յիր հայրենի երկրէն զէտ եղբօր մի կէս բաժին տան իր աժեօք ընդ պռոյգն: Եւ թէ որդիքն մեռել լինին թագաւորին, նա որդոցն որդիքն ժառան- |

գեն զԹագաւորութիւնն, եւ ոչ զատերայն. զի քանի որձ զաւուն ժառանգքն բաւեն՝ նա իգացն խափանած է յօրինաց. զի զէդ օտար է համարած իգացն ժառանգն յԱստուծոյ Մովսէսի բերանովն:

## ԺԲ.

ԽՋ. Վասն հողագրոյ չառնելոյ: — Չկայ հրաման յօրինաց բնաւ հողագրամ առնուլ ի մեռելի Թաղումն: Եւ պարտ է գրել Թէ ուստի ընկաւ սահմանս այս: Գիտացիք որ յանհաւատ յերիցնոյ, որ զհող գերեզմանացն այլ կու ծախեն, հայնց որ ի կապալ այլ են հանել եպիսկոպոսացն Թուլութեամբն, որ չեն զայնոք զէդ սատանայապաշտք ի յայրել: Եւ այդ մեն չէ, հապա զհաղորդն եւ զպատարագն այլ կու ծախեն. զոր կու հրամայէ օրէնքս զայնպիսիքն հրով այրել կամ քարկոծել զէդ անհաւատ, զի ծուռ եւ անիրաւ սահման դրին: Եւ չէ իրաւունք որ այլ տայ մեռելն՝ քան զիր հալաւն ու զպառիկելիքն: Եւ այդ նոր դիր է. ու անգէտ ժողովուրդն հաւնել են տգիտութեամբ. եւ այսոր մեղքն ի յառաջնորդաց վիզն է: Թող աղէկ գիտենան որ կու համբերեն, զի չկայ ամենեւին հրամանք որ իրեց ի յայլ իրիցու ծխի մահ երԹայ, քաւել Թէ տեղոյն երէցն մեծրէ[1]:

1 Տես Մխիթար, ՃԺԸ. Յաղագս դատաստանաց անուանելոց հողագրամոց: Սմբատ յայսմ Հատուածի սկզբնագրին ասացուածքը մեծապէս խըռտացուցած է:

## ԺԹ.

### Մխիթար:

* ՃԴ. Յաղագս դատաստանաց եկեղեցականաց ի կանոնաց: — Ոմանք ազատք եւ հեծեալք՝ որ ի գեղօրեայս հասանեն, որոց բնաւ ի վանսն տեղի լինի, ի գեղ չիջանեն. այլ ոմանք կանամբք եւ նաժշտօք ի վանսն իջանեն, եւ այնպէս կոխեն զկանոն հարցն: Եւ գուսանօք եւ վարձակօք ի սրբութեան եւ ի պաշտամանց ի տունն ընթրիս ուտեն, որ սոսկալի է քրիստոնէից լսել՝ Թող

### Սմբատ:

ԽԵ. Վասն որ Թագաւորք եւ իշխանք ի վանք եկեղեցեանք առնուն: — Սահման է օրինացն՝ որ Թէ Թագաւոր եւ Թէ իշխան ու Թէ հեծելուոր՝ որ ի ճանպահ կենայ ու վանք պատահի՝ նա ի հոն իջնու, չիջնու ի գեղ, եւ վանքն տայ զպէտքն: Նա կու պնդէ օրէնքս՝ որ երբ ի վանքն իջնուն, նա Թէ կին կենայ ի հետ՝ չելնէ ի շուրջ գայ ի վանքն, հապա հարկօք ի ծածուկ կենան: Եւ

թէ տեսանել: Արդ՝ զվերագրեալ կանոնադ ի լսելիս այնպիսեացն խօսիցեն վանաց երիցունքն: Եթէ լինին լուռ եւ ի չինի օթին, բարի է. ապա թէ ի նմին անհաւանութեան կացցեն, այնպիսիքն նոյնպէս ի մեր օրհնութենէն հեռի եղիցին եւ զվրէժխնդրութիւն ի սրբոցն ընկալցին: Զի վանքդ անուն՝ հանգստարան սրբոց են եւ օթեւանք եպիսկոպոսաց եւ քահանայից եւ աբեղայից եւ աղքատաց:

այրիկ մարդն չխմէ որ հարբենայ, եւ ոչ գուսան երգոց կամ ավջի ° ձայն իշխէ հանել բնաւ, եւ կուսան աբեղայի մեղաց պատճառ լինի եւ իր անթողլի մեղք շահի: Ապա զէդ ի վանք կենան ու հանգչին եւ ելնեն գնան[1]:

1 Սմբատ աստ շատ կը մեղմէ Մխիթարայ օրէնքն, եւ օրինաւոր ցուցընելով անոր ապօրինաւոր համարածն, միայն անկարգութիւնները կ'արգիլու:

Ի·

ՃԼԲ· Վասն յուղ կոմայ սպաննութեան: — Հրամայէ օրէնքս՝ որ թէ ոք կենայ ու երթայ իր ճանփովն, եւ այլք կենան ու պահեն զճանպահն՝ որ սպանութիւն այնեն կամ գողութիւն, ու այն հուլու գնացողն աջող լինայ ու զնոքա սպաննէ, նա չէ արեան պարտական, այլ գովելոյ եւ օժտելոյ է արժան: Բայց վասն եկեղեցոյն հնազանդութեան պարտի մեղայ առել խոստովանհօրն եւ թողութիւն առնուլ՝ թէ քրիստոնէ լինի. բայց կարք[1] չքաշէ եւ ոչ տուգանք ի դարպսէ վասն սպաննութեանն: Եւ թէ քահանայ լինի հօրամոյն սպաննողն, նա վասն այնոր՝ թէ ինք առջընդրեց ու եսպան զայն որ զինք կամէր սպաննել ու զայլք, նա չկորսնէ զիրիցութիւնն. ապա եպիսկոպոսին մեղայ առէ վասն հնազանդութեան եւ խաչ ու թողութիւն առնու եւ զիւր քահանայութիւնն այնէ: Եւ եպիսկոպոսունք պարտին հնազանդել օրինացս եւ արձակել զնոսա[2]:

1 Կարգ բառը շատ յաճախ քով գրուած է ի ձեռագրին՝ մանաւանդ երբ այսպէս ղափծ նշանակութեամբ ի կիր արկեալ է:

2 Սկզբնագիրն այս է. Գլ. ԽԴ. Յաղագս դատաստանաց ակամայ սպանողաց: — "Եթէ ոք անմեղ գնասցէ ուղեւոր, եւ ոչ զոք "ունէր յառաջ թշնամի պատահեալ. այլ թէ որ ամենեցուն գողն եւ "աւազակն նմա գիպեսցի, եւ սպանցէ սա զնոսա, մի իբրեւ սպանող զատեսցի ի սուրբ եկեղեցւոյ: Բայց վասն ահագին սեղանոյն սրբեսցէ "զանձն աւուրս սակաւս, զմտաւ ածեալ՝ թէ ընդէ՞ր իսկ եւ ակամայք "գիպեցան. թէպէտ եւ յԱստուծոյ իցէ մատնութիւնն:"

Աստ կը դադրի Մխիթարայ օրէնքն՝ զոր ճշգիւ առած է ի կանոնագրոց, ուստի ի ռամկօրէն խմբագրութեան քահանայից նկատմամբ դրուածը՝ Սմբատայ յաւելուածն է: Այս յետինս շատ աւելի

*ազատութիւն կը շնորհէ յայսմ մասին քան զՄխիթար, որ ի վերջ կանոնիս այսչափ ինչ միայն կը յաւելու՝ թէ "Կարծեցուցանէ եւ յաղագս "քահանայից՝ վասն առելոյն Աստուծոյն սեղանոյն, այլ հասարակ ամենեցուն "է: Բայց այս դատաստանս՝ եկեղեցւոյ դատաւորաց եւ ոչ արտաքնոց է "դատել, զիւրաքանչիւրոցն օգուտ ըստ իւրն"։*

*Մխիթար յետոյ անգամ մ'ալ նոյնին խստութեամբ կը խօսի նոյն նիւթոյն վրայ: Տես Գլ. ՀԹ. եւ Սմբատ նոյն տեղը գրեթէ անոր հետ կը միաբանի ի Գլ. ԻԸ. Վասն քահանայից որք չկարեն էրք ատեաննել.*

*Ե. Վերջապէս քանի մի նոր Հանգք յաւելցուցած է, ըստ մասին՝ Հեղինակին շատ համառօտ գրութեան դիմաց, ըստ մասին՝ ընդարձակ Գլուխ յօրինելով անոր ատ անդ յիշատակածէն:*

## ԻԱ.

*ճՀ. Վասն որ անասուն մտնէ յայգի կամ յածուք:*

*— Եթէ անասունք մտեն ի յայգի կամ յածուք կամ ի յարդ կամ ի կալ կամ յայլ վնաս զինչ ու լինի, նա պահրէի ու գեհին պատ պիտի որ արգիլէ զիրենք եւ զամէն ազգ գրաստ: Բայց խոզի պատ չկայ՝ որ կարէ արգիլել զինք: Եւ զայլ անասնոցն վնասն տեսնուլ պիտի եւ զպահրանն: Նոյնպէս եւ զարծողն եւ զվճար վնասուն եւ զսպաննելն եւ զգանելն անասնոցն ի վերայ այնոր այնէ՝ որ արծողն վճարէ: Բայց թէ արծող չկենայ դրած՝ լաւ կ փրթուցած լինայ ու այնէ վնաս, նա անասնոյն տէրն վճարէ զվզենն եւ զդարպասուն հնկակն:*

*Եւ ի հօտ դարպասուն պիտի արիանալ՝ զի զվզենն իր բաժինն ունի, ու շինականքն շուրտ կու հաշտին ընդ իրար. մէկզմէկի ուտեն ու անասունքն գիրնան, ու վզենն պարոնին կու լինի, եւ հաւքցողնոյն տեսուչ պատեհ է որ լինի: Նոյնպէս եւ թէ սպաննութիւն անասնոցն տայ այնել, նա հաւքցողին տեսուչ պատեհ է որ լինի: Նոյնպէս եւ քշտելն ու կոտրելն կամ վճարն վնասուն, որ պարոնն զիր հնգակն առնու ի վճարէն: Զի թէ պաւիկոս առանց դարպասու իշխէ հաշտիլ ընդ վնասարարն՝ նա գող է ու տուգանք պարտի:... Ու թէ ղարք այնէ կամ խոց որ ողջնալ կարէ, նա զոր խափան կենայ անասունն՝ նա ինք վճարէ, եւ թէ անբժշկելի լինի զարկքն եւ ուտելոյ անսուն լինայ՝ նա ղգինն տայ ու զանասունն ի յինք առնու:...*

*Բայց են այլք՝ որ ոչ արտ եւ այլ իրք բնաւ չունին եւ (եւ՞)ութեամբ կու ապրին. այնոց վնասն*

այլ ցեղ է, նոյնպէս եւ տուգանքն: Զի ամէն աշխարհս անսնոյ մէն չկարեն ապրիլ՝ զէդ զԹուրքմանն, ու այտ իրք է որ ապականէ զերկիրն: Նա պիտի զհայնցեղն ծեծնօք ու տուգնօք պահել՝ որ զանսուանքն հայնց պահեն, որ վնաս չայնեն, կամ Թող երԹան յանչէնն՝ որպէս սահմանած է իրենց: Բայց ի վերայ ամենայնի գիտացիք որ խոզի պատ չկայ՝ որ կարէ զինք արգելել, խոզարած պիտի դնել կամ զմօտակայ շինուԹիւնն քակել, զոր տեսնուն պատեհ, եւ կամ սպաննել զէդ գաղտառ շուն:

Բայց եւ յաղագս երմկերոյ գրել պարտ է եւ գոմշնոյ եւ խաշանց: Եւ գիտել պարտ է որ այս երեք իրքս՝ որ ի պարոնացն եւ Թագաւորացն ի խնամքն եւ ի պահն կենայ, առաւել քան զշէն գեղերն, զի շէնն այնոց անշինուԹեամբն պահուի, եւ գոյանայ այս երկու իրօքս, որ չտան Թոյլ՝ որ ոք յիւրաքանչիւր ամայն իշխէ գեղ շինել կամ նեղցնել ի վերայ ամայիցն: Վասն զի ոչ ձիոյ երմակ եւ ոչ այլ ինչ չկարեն գոյանալ բնաւ. ու երբ ձիանն ու խաշինքն չլինին՝ նա ոչ սննօրնին չկարեն գոյանալ բնաւ եւ ոչ արձակ մնալ եւ ոչ պահուիլ, եւ ոչ երկիր առանց խաշանց ի գործ երԹայ: Եւ զայս իրաւամբք գրեմք, որ Թէ զայն գեղերոյն՝ որ ի յամայիցն լինի շինած, զարտեր կամ զայլ իրք երմակն կամ խաշինքն ուտեն, նա բնաւ չկայ վճար յիրաւանցս[1]:

1 Այս գլուխն կարող ենք բոլորովին յատուկ համարել Սմբատայ, որովհետեւ ի սկզբնագրին հազիւ քանի մի տեղ նման նիւԹոց վրայ խօսք կը գտնուի: Տես Դատաստանագիրք, Գլ. *ՃԺԷ. Յաղ. դատաստանաց ծառայող զինուորաց եւ հանել նոցա ի ծառայ եւ կամ ոչ: * ԽԱ. Յաղ. դատաստանաց զանդաս կերողաց:

## ԻԲ.

ՃԿ. Վասն դատաստանաց եւ կանոնաց: — Կանոնքն եւ դատաստանք այսպէս բաժնին ի միմեանց, որ կանոնքն է բերդ, եւ երբ մեղանչականն իր բերնովն սաէ զիր մեղանքն՝ նա ապաշխարուԹեամբ քաւել տան, եւ որպէս ի բերդ մտաւ ու փրկեցաւ ի մահուանէ[1]: Բայց դատաստանն բնաւ չունի քաւուԹիւն եւ ոչ խղճալ մեղանչականին: Եւ մեղանչելն կամաւ՝ չէ այլ ինչ քան Թէ արհամարհանք Աստուծոյ օրինացն, եւ զդատաւորացն ու զիրաւանցն ահն մոռնալ ու ի յետ ձգել ի մտացն: Եւ այնով սաէ իր ընկերոջն, ու խլէ եւ յափշտակէ ու վնասէ. եւ ապա անտի ծնանի

այլ մեծ չարն, տուրտվութիւնքն եւ սուտ երդմունքն եւ այլ բազում չարիք։ (Այդ) թէ զղջայ ու ի յեկեղեցյին գիմէ եւ ի կանոնքն՝ նա տան անուշութեամբ դարձնել զզրկանքն ու քաւել զմեղքն։ Ապա թէ ոչ, որ ի դատաստան ընկնի՝ նա տայ իրաւունքն դարձնել զուժն եւ ըմպել զբաժակն՝ զոր ինք ընկերին խմցոյց, հայնց ցասմամբ որպէս այն ուժն այժենայ՝ զոր այրել լինայ, նա իրաւունքն նոյն չափովն տայ իր։ . . .

1 Մխիթար՝ ի Գլ. * Ծ. Ցղէս դատարանց պահանջեսցի . . . Եկեղեցւոյ զկարգաւոր ինչ, այսչափ միայն գրէ. «Կանոնք եւ դատաստանք «այնու բաժանին ի միմեանց, զի զծածուկ եղեալ յանցանս՝ որոց եւ պէտք «իցեն տուգանի, հրամայէ առնել ողորմութիւնս. իսկ դատաստան «թէեւ տուգանէ, ոչ բառնայ զապաշխարութիւն»։ Տես Բ. Օրինակին 3 բաժնին Ծանօթութիւնն։

## ԻԳ.

ԼԳ. Վասն ժողովոյն եկեղեցւոյ։ — Հարկ է փոքր ի շատէ յաղագս վանականաց գրել, եւ զայս արժան է զյերկարն ի սրբոյն Սահակայ գրենացն ուսանել։ Բայց վա՜յ որ զայն լուծեալ են վասն նախանձու չարութեան, եւ ի մեծ ատելութիւն մտեալ առ իրար աբեղայքն եւ աշխարհի երիցնին, եւ վասն այնոր սալլեցուցանեն զդատաստանս։ Զի երբ ի սրբոյն ի սահմանէն չեն ի պատկառել, նա ի մերոյս ո՞րպէս։ Ով ուզէ որ ուսնի, նա թող անտի ուսնի, զի մենք ի յայս կանոնքս չհամարձակեցաք այլ ինչ գրել։

Բայց ինձ Սմբատայ ծառայի Քրիստոսի յոյժ հարկ եղեւ յայս տեղիս գտնուլ զսրբոյն Սահակայ նախնոյն մերոյ զգրեալ սահմանն, եւ անտի ճշմարտեցի զուղղութիւն սահմանիս. եւ զայս անտի գրեցաք համառօտ։ Բուն յառաջ հրամայեալ է սուրբն Սահակ՝ որ յամէն տարի հայրապետքն ժողովք այնեն ի մայրաքաղաքն, եւ ուղղեն զհաւատոյ եւ զեկեղեցւոյն կարգած բաներն եւ հանեն զծուռն։ Եւ եպիսկոպոսունքն զհետ այնոր ամէն մէկ ի յիր վիճակեալ քաղաքն եւ ի թեմն փնդռէ եւ ըղորգէ եւ փիրիսկոպոսերն յամէն ժամ ամէն մէկ զիր վիճակն։ Եւ յետ այսոր զարծաթսիրութիւն եւ ղկաշառն բառնան, որ բնաւ չքանի յեկեղեցական(*), եւ չխնայեն զդեկանն ու զեկեղեցին աղջաղջ պահեն։ Եւ զամենայն աշխարհի բան թողուն եւ զեկեղեցի եւ զուսումն սիրեն, որ իրենց օգտել կարեն եւ այլոց, եւ կենան երկեղած յԱստուծոյ, եւ զամէնն ի բարին յորդորեն եւ զչարն լռեցնեն . . .։

Եւ զայս գլխաւորք եկեղեցւոյն ի կահրայ տան այնել, եւ զծոյլն երեք հետ խրատելով յանդիմանեն, եւ այլ ի հետ գաւազանաւ ջարդեն եւ տուգանօք: Եւ զժամուց իրքն լաւղառիաաով տալ՝ որ զդեկանն գրեն եւ զժամն վճարեն: Եւ զկնքադրամն եւ զայլ մտերոյն բաժինքն սիրով եւ անխալապայ՝ որպէս գրել ենք՝ առնու ամէն մէկ զիր բաժինն սալար: Եւ զտուրք պատարագն սիրով առանց նախանձու այնեն, որպէս գրեալ է: Եւ որ վասն իրիք երկրային բանից յայսոր իրք պակսեցնէ՝ նա սաստիկ պատուհաս կրէ, եւ ի կարգէն ընկնի՝ մինչեւ ապաշխարութեամբ քաւէ եւ հաշտի ընդ Տէրն եւ ընդ վարդապետն . . . :

Եւ հօս շատ յերկար եւ մեծ է տարել զբանս, եւ զծանդր շալակն ի վերայ եպիսկոպոսացն է դրել, որ թէ իսկի պակսէ՝ նա զամէնին վճարն Աստուած յիրենցմէ վճարուի, եւ ի հայրապետէն՝ թէ զեպիսկոպոսն չըզօրդէ: Նոյնպէս եւ զվարս ժողովրդեանն՝ որ յորդորէ զամէն զիրենք եւ անուշցնէ անուշ պաշտելով եւ ամենայն ազգ հնարիւք յիւրենց հոգւոյն փրկութիւնն, եւ ի տօներն յերկար եւ պինդ քարոզութեամբ գիտուն վարդապետաց կշտացնէ զիրենք . . . : Եւ չէ պարտ կարծել թէ փոքր գնով ենք գնած. Քրիստոսի արեանն գինն եմք, եւ թէ թողուն մեր հովիւքն որ գայլ զմեզ տանի՝ նա Քրիստոս առնու զիր վճարն: Բայց եւ մեզ աշխարհական հօտիս պարտ է մերոց հովուացն հնազանդ լինել իբրեւ Աստուծոյ, հայնց որ ասեն հովիւքն առջեւ ահեղ ատենին Քրիստոսի՝ թէ Ահաւասիկ ես եւ մանկունք իմ զոր ետ ինձ Աստուած: Եւ այս հանչաք կարճած է[1]:

[1] Փոխանակ այս երկայն հատածոյն՝ զոր եւ մասամբ իսկ կըրճատած ենք, յաջորդ քանի մի տողերը կը գտնենք ի Դատաստանագիրս: Ճ. « Ցդէս դպրոց վանաց ժողովրդեան եւ եկեղեցեաց: — Կամ եղեւ ինձ « եւ յաղագս այսոցիկ տակաւ ինչ գրել զի ոչ փոքր ինչ հակառակու« թիւն ի մեր իսկ լինի յաշխարհս յաղագս այսոցիկ աշխարհական քա« հանայից եւ վանաց: Սակայն ընդ մտօ ածի եւ յաղագս կանոնաց մե« ծին Սահակայ՝ թէ որքան գեղեցիկ եւ ըստ կարգի բաժանէ զվանաց « եւ զեկեղեցւոյ որ յաշխարհի զհասս եւ զտօնս, եւ այժմ չփոթեալ « եւ ապականեալ է այն ամենայն, վասն այսորիկ լռեցաք յայսոցիկ դա« տաստանաց. զի թէ ի սրբոյն ոչ պատկառեն ի բանից, զիա՞րդ եւ ի « մերոցս: Եւ թէ վասն սորին դատաստանի կամի ոք զի ուղղեսցէ, այնո« քիւք արժան է վարիլ, եւ ոչ այլազգ. զի թէեւ կայր կարծիս այժմու « գրեցելովքս դատել, ոչ էր ի դէպ մեզ յանդգնիլ, թող թէ բնաւին ոչ « է կարծիս: Ըստ այսմ կարծեմ եւ յամենայն ի մեր աշխատութիւնս »:

Այսչափ է սոյն նիւթոյն վրայ Մխիթարայ բոլոր գրածն: Իսկ Սմբատ բաւական չհամարելով՝ զվերոյեդեալ հատածն, շատ աւելի ընդարձակագոյն հատած մ'ալ կը յաւելու, որ է ԼԴ. Վասն սահմանի

զոր սուրբ Սահակ ի գրել։ — Վանկրայն ստեղծանն է։ Եւ թէպէտ նոյն աստուածարեալ Հայրապետին կանոններն համառօտելով յառաջ կը բերէ, սակայն եւ այնպէս ցաւ կը յայտնէ աւելի գրել չկարենալուն համար։ "Եւ ի յայս տեղս, կ'ըսէ, չկարցի ես (գրել) զինչ սուրբն Սահակ գրել էր աստ ի հին եւ ի նոր կտակարանացն, ու պնդել եւ "խրատել. զի թէ զայն ամենայն գրել էի՝ նա կարի շատ էր լինել"։ — Կան այլեւս Հատուածք նոյնպիսի նիւթոց վրայ։

* * *

Սմբատայ գրուածոց լեզուին կամ ոճոյն վրայ մանրամասն խօսելու հարկ չկայ։ Բաւական է յիշել մեր հետազօտութեանց նիւթ առնուած այլեւայլ գրոց լեզուին վրայ մինչեւ ցայժմ եղած դիտողութիւնքն. եւ անոնց միոյն միոյն նկատմամբ ասացեալքն մերձեցընել հեղինակիս այլեւայլ գրոց. յորս ռամկօրէն բարբառոյն գրեթէ ամէն տեսակ ոճերը կը գտնուին։ Ուստի զանց առնելով ընդարձակ զննութիւններն, համառօտիւ կը նշանակենք լոկ՝ թէ նոյն գրոց իւրաքանչիւրին ոճն կամ լեզուն ընդհանրապէս որ տեսակին կը վերաբերի։

Արդէն յառաջագոյն (16. Ա.) տեսած ենք թէ Տարեգրոց առաջին ընդարձակագոյն մասն՝ թէ՛ եւ ըստ մեր տեսութեան (4) ռամկախօս, ըստ իմիք աւելի ռամկախառն գրաբար կրնայ համարուիլ. իսկ յետին կարճ մասն՝ ընթիր եւ փոյթեղ ռամկօրէն է. ուշ ուրեք հետք ունենալով ատորին ռամկականութեան։ — Խմբագրութիւն Դատաստանագրոց՝ ծայրէ ի ծայր ռամկօրէն է՝ սովորական կամ ժողովրդական լեզուաւ, կամ թէ ըսենք՝ առաւելապէս ստորին ռամկական բարբառով, բայց լի ընտիր ասացուածովք եւ ընտանի սիրուն բացատրութեամբք։ Երբեմն եւս ի կիր արկեալ են՝ մանաւանդ ի յատուկ դատաստանականս՝ անսովոր առմունք բառից, մինչեւ եւրոպական, յունական, արաբական բառք, որով տեղ տեղ գրեթէ Անսիզաց Անտիոքայ դիմը կ'առնու, որ այլ ռամկագրաց սովորական լեզուէն բաւական տարբեր է։ Բայց այս լեզուին վրայ ի յառաջորդն առիթ կ'ունենանք առանձինն խօսելու։

* * *

Յառաջագոյն (էջ 201—203, ի Ծանօթ.) տեսանք թէ Օրինաց մատենին Յառաջաբանին մէջ Էջմիածնի ձեռագիրն յաւելուածներ ունի՝ անծանօթ գրչէ մուծեալ, որոց էական մասն է հետեւեալ խօսքն՝ թէ "Սա (Պարոնս մեր Սմբատ) ետ մեզ փոխել ի յիւր լուսաւոր գրոցն . . . ձեռօք իմովք աշխատեցայ եւ փոխեցի„ ։ Տեսանք նաեւ թէ Բաստամեանց Վ. կը համարի որ նոյն փոխել բառն՝ պարզապէս ընդօրինակել կը նշանակէ. վասն զի անծանօթ գրիչն լոկ ընդօրինակելէն զատ ոչ այլ ինչ ըրած է, եթէ ոչ՝ ի սկզբան ձեռագրին, Սպարապետին յատուկ աշխատասիրութենէն յառաջ, այս ինչ կամ այն օրէնքներն օրինակել[1]։ — Հմուտ Հրատարակիչն Դատաստանագրոց Մխիթարայ Գոշի չէր կարող այլազգ գրել, չունենալով ի ձեռին Ս. Ղազարու ձեռագրին օրինակն, զոր իւր ձեռագրին հետ համեմատելով միայն՝ հնար էր տեսնել թէ ինչ միտք պէտք է առնուլ փոխել բառն։ Ի սկզբան անդ մենք ալ միեւնոյն անկարողութեան մէջ կը գտնուէինք. վասն զի այն ժամանակ հազիւ քանի մի տող ունէինք իւր ձեռագրէն, յորոց թէեւ նուազ նշոյլ մի կը նշմարուէր, բայց ոչ բաւական՝ որոշ գաղափար կազմելու։ Սակայն այժմ որ ձեռք բերած ենք առատագոյն մասն մ'օրինակին, յուսանք աւելի գոհացուցիչ եղանակաւ մեկնել կամ լուծել զխնդիրն։

Յառաջ քան զամենայն կարեւոր է գէթ հարեւանցի տեղեկութիւն ունենալ երկու ձեռա-

---

[1] Թէպէտ եւ Բաստամեանց Վ. կը գրէ, ինչպէս ի վեր անդր նշանակեալ Ծանօթութեան մէջ (էջ 202) տեսանք, թէ Անծանօթ գրիչն ըրած է նաեւ ինչ ինչ փոփոխութիւններ Դատաստանագրոց յօդուածներուն. բայց ամենեւին մանրամասնութեանց չիջնար։ Իսկ մենք դիտած ենք որ Էջմիածնի ձեռագրէն մեր ունեցած ընդօրինակեալ 20 յօդուածոց ամէնուն թուահամարներն ճշդիւ կը համապատասխանեն Ս. Ղազարու ձեռագրին թուահամարներուն։

գրած վրայ։ — Կանխագոյն (էջ 184) նշանակած ենք՝ թէ Ս. Ղազարու մագաղաթեայ ձեռագիրն օրինակուած է 1331ին, իսկ Էջմիածնին՝ 1618ին։ Այս իբր երեք դարու անջրպետութեան միջոցն ենթադրել կու տայ՝ թէ երկուքին մէջ մեծ տարբերութիւն գտնուի, եւ հնագոյնն բազմօք ընտրելագոյն եւ ուղղագոյն ըլլայ՝ քան զնորագոյնն։ Բայց այնպէս չէ։ Որչափ հնար է դատաստան ընել Էջմիածնի ձեռագրին փոքր մասէն՝ որոյ ընդօրինակութիւնն ի մեր ձեռս հասած է, երկուքն ալ գրեթէ միեւնոյն աստիճանի են, ոչ բոլորովին ազատ յամենայն վրիպանաց եւ ի թեթեւ թերութեանց, եւ ոչ արտաքոյ կարգի վրիպանօք լի։ Երկուքն ալ ունին իրենց առաւելութիւնքն ու պակասութիւնքն. ուրեք ուրեք միոյն՝ այլուր միւսոյն ընթերցուածն ուղղագոյն եւ ճշգագոյն կ՚երեւայ. տեղ տեղ հնագունին՝ երբեմն եւս նորագունին մէջ կը հանդիպին աւելորդ կամ պակաս բառեր եւ համառօտ խօսքեր։ Միով բանիւ՝ վեր ի վերոյ հայեցմամբ այնպէս կ՚երեւայ թէ մտադրութեան արժանի բան չգտնուի, յորմէ կարենայ մարդ ծանրակշիռ հետեւութիւն հանել։

Սակայն այս մանր մանր եւ ըստ ինքեան աննշանակ համարուելու տարբերութիւնքն ուշադիր քննութեան ենթարկելով, կը գտնենք թէ կան անոնց մէջ այնպիսիներ, զոր եթէ ի միասին ամփոփենք եւ յօրինաւոր կարգաւ դասաւորենք, կը տեսնենք թէ չեն ըստ պատահման եղած եւ կամ առ անմտագրութեան ի ներքս սպրդած տարբերութիւնք, այլ որոշ դիտմամբ եւ յատուկ նպատակաւ գործադրուած իրական փոփոխմունք։ Ասոնց միեւնոյն կարգի եւ միեւնոյն ուղղութեամբ կատարուած ըլլալն, կամ թէ ըսենք՝ սիսթէմաթիքն, յերեւան կը հանէ զնպատակ փոփոխութեան։ — Ասացեալներս ստուգութիւնն ակներեւ կը տեսնուի հետեւեալ պատկերիս մէջ։

*Պատկեր տարբերութեանց երկուց ձեռագրաց:*

| Ձեռագիր Ս. Ղազարու: | Ձեռագիր Էջմիածնի: |
|---|---|
| Իր, զիր, յիրմէ, իրենց, զիրենց, զիրենք, յիրենցմէ. | Իւր, զիւր, յիւրմէ, իւրեանց, զիւրեանց, զիւրեանք, ի նոցանէ. |
| Անսուն, ապրնաց, ծեծնաց, քաշնաց, ի քաղքէն, երդվծնոյն. | Անսասուն, ապրանաց, ծեծանաց, քաշանաց, ի քաղաքէն, երդուածնոյն. |
| Պատեհւոր, սաղուարտ, ձեռնգիր. | Պատեհաւոր, սաղաւարտ, ձեռնագիր. |
| Բաժնել, ելնել, մեռնիլ, յիշնալ, վայլել, ունենալ, չունենալ. | Բաժանել, ելանել, մեռանիլ, իմանալ, վայելել, ունենալ, չունենալ. |
| Անցնել, անցնող. | Անուցանել, անուցող. |
| Համել, համանք. | Հրամայել, հրաման. |
| Ծառութիւն. | Ծառայութիւն. |
| Իրաց, յիրացմէ. | Իրերաց, ի միմեանց. |
| Ինք, ի յինք, զինք, յետի, վերջի, առջի. | Ինքն, յինքն, զինքն, յետին, վերջին, առաջին. |
| Ի մէջն, յիրենց մէջն, ի վերայն ընկնի. | Ի մէջ, յիւրեանց միջի(ն), յառնէ ի վերայ. |
| Լինայ, լինան, այնել. | Լինի, լինին, առնել. |
| Մէկայլն, ի յոր ժամ. | Միւսն, յորժամ. |
| Վանց, վանց անոր. | Վասն, վասն այն. |
| Ինչուի տարի մի, ինչուի հանչաք մի ժամ, ինչուր զիրենց հասակն առնուն. | Մինչ ի տարի մի, մինչեւ ի յայսչափ ժամ, մինչ որ ի կատարեալ հասակ հասանեն. |
| Ու, նա ու, զինչ ցեղ ու. | Եւ, նաեւ, զինչ ցեղ եւ. |
| Վասն որ չլսեցիր. | Զի չլսեցիր. |
| Այլվայր գայ. | Ապա գայ կրկին. |
| Աղբայր. | Եղբայր. |
| Սպանվաւ, բաժնուին. | Սպան(ն)աւ, բաժանին. |
| Կապոյտին, ծառանց, սահմնուց. | Կապուտին, ծառոց, սահմանաց. |
| Նաքա, նացա, յումնէ՞. | Նոքա, նոցա, յումմէ՞. |
| Զիսա իրքս, զինա հայրենիքս. | Զայս իրքս, զայս հայրենիքս. |
| *Եթէ քեզ ոք իրք պարտենայ. | Եթէ քեզ ոք պարտք պարտի. |
| *Զինչ իր պիտենայ. | Զինչ իւր պիտի. |
| *Երկու ազգ պիտի դատել. | Երկու ազգ պարտ է դատել. |

| | |
|---|---|
| *Զիր զարկքն, զիր գաւառապետքն. | Զիւր զարկսն, զիւր գաւառապետսն. |
| *Գողերոյն, գեղերոյ, ի դրացներոյն, քոյրուբոյն կորձերոյն, աղջիկներ, աղջիկներոյն. | Գողոցն, գեղօրէից, ի դրացեաց, քերցն, քուերց, կորիճ տղայքն, աղջիկ, աղջկան. |
| *Իր ամէն ընչիցն. | Ամենայն իրաց իւրոց. |
| *Զինչ ուզէ[1]: | Զինչ կամենայ: |

Պատկերիս վրայ լոկ ակնարկ մի բաւական է իմանալու՝ թէ ինչ է անծանօթ գրչին փոխել հրամայուածն եւ իրօք "աշխատելով փոխածն": Ո՞չ ապաքէն ակնյայտնի կը ցուցընէ Պատկերս՝ թէ ըստ ձեռագրին Ս. Ղազարու Սմբատայ գրութեան (Անսիզաց եւ Դատաստանագրոց) մէջ գործածուած ատորէն կամ ծաղկագրական յատկութիւնք, յետ եկողմակերպութիւնք՝ փոխուած են ի ձեռագրին Էջմիածնի անոնց յատկանշական համազօր գրաւոր տառկերէնին: Եւ որովհետեւ որչափ յուզենք եւ քննենք՝ այսպէս մակերպութեամբ եւ որոշ ուղղութեամբ փոխելու ոչ այլ ինչ կը գտնենք, իրաւամբք կարող ենք հետեւցընել՝ թէ այս եւ միայն այս կրնայ ըլլալ Սմբատայ փոխել տուածն, այս՝ անծանօթ գրչին "Աշխարհեցոյ եւ փոխեցի" ըսածն:

Այսու մեկնութեամբ ոչ միայն կը լուծուի առաջարկեալ խնդիրս, այլ նաեւ եղած փոփոխմունք մեծ ծանրակշռութիւն կը ստանան բանասիրական հայեցմամբ: Սակայն միանգամայն իրաւացի հետաքրքրութիւն կ'ունենայ ամէն բանասէր իմանալու՝ թէ ուստի կամ ինչպիսի պատճառէ գրդեալ՝ ուզած է Սպարապետն իւր գրութեան մէջ այս փոփոխութիւնքն ընել տալ: Բայց որովհետեւ ոչ ուրեք տեղեկութիւն կամ թելթեւ իսկ ակնար-

---

[1] Բառերու մասին ի կարգին նշանակուածներէն զատ՝ այլ փոփոխութիւն չենք գտներ, եթէ ոչ՝ գեկան բառն մի անգամ ի գրոց դարձած, ծնդեալ բառն՝ մի անգամ հաւցնել եղած, եւ երկու անգամ՝ որոնել: Վերջապէս հնագոյն օրինակին՝ "Ըղորդ ժառանգութիւնն չխոտորի" ըսածն՝ ի նորագոյնն կ'ըսէ՝ "Ըղորդ ժառանգութիւնն չհատանի":

կութիւն կը գտնենք յայսմ մասին, չենք կարող մեր կողմանէ ենթադրական շարժառիթներ գտնելու աշխատիլ։ Նոյնն ըսելու է նաեւ մեր անծանօթ գրչին անձնաւորութեան վրայ, թէ ով էր կամ գոնեայ որ դասուն կը պատկանէր, եկեղեցական էր արդեօք՝ թէ աշխարհական։ Իւր ի կիր արկած "Պարոնս Տէր" բացատրութենէն այսչափ միայն հնար է հետեւցընել՝ թէ հաւանաբար Սմբատայ պաշտօնատեարց թուէն էր եւ կամ անոր պարոնութեան հպատակներէն։

Դառնալով մեր նիւթոյն, կարող ենք հաստատել՝ թէ այս վերջինս ըստ մասին եւեթ կատարած է իւր Պարոնին իրեն յանձնած պաշտօնն։ Ի տեղիս տեղիս այնչափ ճշդութեամբ փոխած չէ սորին ռամկականութիւնքն, մինչեւ՝ քանի մի տեղ անփոփոխ թողած է այլուր փոխածներն իսկ։ — Ընդ հակառակն երբեմն անընտրողութեամբ գրաբարաձեւ դարձուցած է այնպիսի ռամկականքն՝ զոր սորին ռամկականութենէ ազատ ընտիր ռամկօրէն գրուածոց մէջ իսկ յաճախ ի կիր արկեալ կը գտնենք։ Այս յետնոյ կարգէն են Պատկերին վերջերն սատղանիշ նշանակեալքն։ — Չենք խօսիր այն փոփոխմանց վրայ՝ որովք ուղիղ եւ կանոնաւոր ձեւոց փոխանակած են սխալւորքն, ենթադրելով որ ոչ թէ անծանօթ գրչին՝ այլ յետնագոյն ընդօրինակողաց գործն են։ Այսպիսի են, օրինակի համար, Ս. Ղազարու ձեռագրին՝ ոյրիկն, երբ, խրատոտս, Աստուծոյ երկիւղէն, որդոց, դատերոց, վկայէօք, հաստըբ, … որ ի ձեռագրին Էջմիածնի եղած են՝ էրիկն, յերբ, խրատոյս, Աստուծոյ երկիւղին, որդէց, դատերց, վկայեօք, հաստըբ, եւայլն։

## 17.

## Զ. ՀԻՆ ՌԱՄԿԱԳԻՐ ԵԿԵՂԵՑԱԿԱՆՔ

Մինչեւ ցարդ յառաջ բերեալ ռամկօրէն գրութիւնք մեծագոյն մասամբ աշխարհականաց աշխատասիրութիւնք էին։ Նոյն գրուածոց ոմանք արդէն իրենց յատուկ հեղինակաց անունը կը կրեն. իսկ մատենագրի կամ թարգմանչի որոշ անուն չունեցողներուն նիւթն ինքնին կը ցուցընէ թէ հաւանաբար աշխարհական դասուն վերաբերեալ անձանց գործ են։ Այսպէս գրեթէ ստոյգ կարող ենք համարիլ թէ բժշկական արուեստի հետամուտ անձանց՝ հետեւաբար աշխարհականաց գրութիւն են բժշկարանք։ Ըստ մեզ խնդրական կը մնայ միայն Վաստակոց գրոց թարգմանչին վիճակն. որովհետեւ գրչին գրաբարի հմտութիւնն իրաւամբք ենթադրել կու տայ՝ թէ եկեղեցական անձ մըն է, գրեթէ անհնար ըլլալով կարծել՝ թէ նոյն ժամանակներն այնպիսի լեզուաւ գրող աշխարհական գտնուէր։ — Զիարդ եւ իցէ, այսչափս կրնանք հաստատել՝ թէ Շնորհալիէն մինչեւ մի դար յետոյ եկեղեցականի մի բուն ռամկօրէն գրութիւն ցմեզ հասած չէ. հազիւ քանի մի մանր ռամկախառն գրութիւնք կան նոյն ժամանակի միջոցէն։

Բայց ԺԳ. դարուն երկրորդ կիսէն ետեւ՝ յերեւան կ՚ելլեն նաեւ եկեղեցական մատենագիրք, որ մասնակցած են ռամկական գրութեանց, թէեւ ոմանք, ինչպէս յառաջներն (8) յիշատակած ենք, իբր ակամայ եւ ի պարագայից ստիպեալ։ Մէջ բերենք նշանակութեան արժանի երեք մատենագիր։

### Ա. ՎԱՐԴԱՆ Վ. ԱՐԵՒԵԼՑԻ ԿԱՄ ՄԵԾՆ

Մեծանուն Վանական Վ.ին աշակերտ եւ աշակերտակից Կիրակոսի Գանձակեցւոյ, այս Վարդան Վ. († 1271) որ իւր այլ անուանակիցներէն

զանազանելու համար, սովորաբար Արեւելցի կամ Մեծ կըկոչուի[1], բաւական ընդարձակ գրաւոր գործունէութիւն ունեցած է, եւ ազգային եկեղեցական գործառնութեանց միջամուխ գտնուած։ Այսպէս թէ՛ իւր ժամանակակցաց եւ թէ՛ յետնագունից առջեւ մեծ համբաւ ստացած է։ Առաւելապէս ծանօթ է Կիլիկիա անցուցած ժամանակն, ուր սիրալիր եւ պատուաւոր ընդունելութիւն գտնելով Կոստանդին Ա. (1220—1268) կաթողիկոսէն, որ զինքն հինգ տարի իբրեւ խորհրդական առ իւր պահեց, այն միջոցին գումարեալ Սսոյ ժողովոյն մէջ (1243) բազմաթիւ եպիսկոպոսաց, անուանի Վարդապետաց եւ Վանահարց աթոռակից եղած է։ Յետայնոյն Կաթողիկոսին առանձինն կոնդակաւն ժողովոյն որոշումներն արեւելեան կողմերը (ի Մեծ Հայս) տարաւ, եւ շատ եպիսկոպոսաց ու վանականաց հաւանութիւնն առնլով, նորէն Կիլիկիա դարձաւ եւ ժամանակ մի եւս մնաց Մխիթարայ հետ։

Կիլիկիա գտնուած միջոցին, Վարդան իւր հմտութեամբքն եւ առաւելութեամբք սիրելի եղաւ նաեւ Հեթում Ա. Թագաւորին եւ Զապէլ Թագուհւոյն, որ զինքն իրենց բարեկամութեամբն ու ընտանութեամբը պատուեցին։ Ասոնց եւ մանաւանդ Թագաւորին ուսումնատենչ բնաւորութիւնն առիթ տուաւ, որ իւր բազմաթիւ գրութեանց սովորական գրաբար լեզուէն հեռանալով, Հեթմոյ կողմանէ իրեն եղած զանազան խնդրոց լուծումն ռամկօրէն կամ գէթ ռամկախառն բարբառով գրեց։

Աւասիկ քանի մի օրինակ։

Ա. Հրամանն պատկառեցուցիչ՝ զոր պատուիրեցէք գրել զանուանս Խնկարկու կանանցն գերեզմանապատիւ, Յոհան Ոսկիաբանն եւ Կիւ-

---

[1] Մինչեւ նորագոյն ժամանակներն շատք Բարձրբերդցի կը կոչէին, համարելով թէ Բարձրբերդ ծնած է։ Տես Պատմ. Վարդանայ Վ.ի, Վենետ. 1862. Յառաջբն. էջ Բ։

րեղ Աղեքսանդրացի՝ չորք են յասել . . . ։ Բայց տեղեկացաք յայլ գրոց՝ թէ Աստուածածինն չէ ի հաշիւ եւ ի համար Իւղաբերիցն, եւ չէ եկեալ ի գերեզմանն. զի չթողոյր զնա Յովհաննէս վասն երկիւղի Հրէիցն, եւ իրաւ է։

Բ. Յորժամ եդին զՅովհաննէս ի բանդի, գիտաց զկատարած իւր, եւ զաշակերտսն կամեցաւ առ Յիսուս առաքել, ասելով՝ թէ Նա է Քրիստոս Աստուած. եւ նոքա չհաւանէին եւ չգնային։ Ապա հնարք իմացաւ՝ թէ առաքեմ ի հարց թէ Դո՞ւ ես Քրիստոսն, զի ինքեանք երթան յիւրմէ լսեն եւ նշանք տեսանեն եւ հաւատան։ Երբ գնացին, գիտէր Տէրն թէ յի՞նչ առաքեալ են. արար սքանչելիք նոցա առաջի, զբազումս բժշկեաց եւ ասաց. Գնացէք պատմեցէք Յովհաննու զոր լուայք եւ տեսէք։ . . . Զի Յովհաննու սքանչելիք չառնելոյն պատճառն այն էր՝ որ զնա չկարծէին թէ Քրիստոսն է։ Եւ երբ տեսին աշակերտքն զայն՝ որ յիւրեանց վարդապետն չէին տեսեալ, հաւատացին, եւ զկնի մահուանն Յովհաննու եկին առ Տէրն, եւ ոչ մեկնեցան։

Գ. Այժմ հանց արա, իմ Պարոն, սակաւ մի աշխատեա. քո սակաւ աշխատիլն՝ առաւել է քան զայլոց շատն . . . ։ Եւ զոգի իմ տառապեալ եւ տկար յիշեսցես, որ զքեզ սիրէ առաւել քան զասել։ Վասն որոյ զայս աշխատութիւն տկար մարմնով կատարեցի, սիրով ձեր զօրացեալ եւ օժանդակեալ։ Եւ յիշեա զոր ի ձեռն Թորոսի հրամայեցիք վասն Եղաբերից կանանցն գրել ձեզ եւ ի խորհուրդ պատարագին, եւ ապա երեսօք յԱնդուլն հրամայեցիք որ գրէաք ձեզ ժղլանք ի մեկնութենէն քերականին։ Եւ ես այլ աւելի սիրով (կամեցայ) գրել ձեզ ձեռամբ լուծմունս յԱւետարանէն եւ յԱրարածոցն։ Ուստի տեսէք թէ շատ էք ի հարցանել եւ սիրէք սրտիւ. է որ հանգուցանէ զձեր միտքդ, եւ է որ պատճառ լինի ձեզ բանաւորութեան՝ զայս հարցանելոյ եւ զստոյգն գտանել։ Բայց աղաչեմ զպարզմիտ մարդ . . . մի՛ հարցանել, որ չամաչեն։ Զի ես նախահոգութեամբ գրեցի, եւ թէ առժամայն զիս հարցանեն, եւ ես գտանիմ տկարացեալ. վասն որոյ մի՛ մեղադիր լինիր ժմուն չգտանողացն զտեսութիւն բանին։ Եւ ես գիտեմ որ այս չէ թագաւորական իրք, այլ

ոսկեզիր պիտեր եւ ճարտար գրչի։ Եւ շատ պատճառ ունէի՝ որ խափանէր զիս յայս ձեռնարկութենէս . . . ։ Թէ կամիս, դիւրին է տալ փոխել յաղէկն, որ հեշտ կարդայք, եւ թող Գրիգորեան փոխէ, որ բան չկորնչի։ Բայց իմ կամ է՝ որ իմ մատանց սատարն մնայ առ ձեզ. ո գիտէ թէ աւելի շնոհւոր լինի ձեզ վասն յուսոյն իմոյ որ առ Տէր եւ սիրոյն որ առ ձեզ։ Զի (հ)այնց ճառ եւ պատմութիւն չէ՝ որ շատ աշխատանք տանին, եւ ապա բան գտանեն։ Թէ թուղթ մի կարդաս ժմուն կամ երկուք, գտանես յոլով խորհուրդս։ Եւ Աստուծով՝ տղայահասակ, եւ մտօք եւ աչօք զօրաւոր էք. եւ ի մի անգամ կարդալն սակաւ ինչ աշխատիք, եւ յայլն անհոգ լինիք։ Եւ զի արքայ եւ արքայուհի ի միում մարմնի տեսանի, եւ հասարակ է հոգեւորն եւ մարմնաւորն, թէ Աստուծով իրք մի օգուտ լինի ի գրելոցդ կամ մխիթարութիւն, երկուցդ լիցի։ Եւ զակնդ բազմագոյն եւ պայծառ՝ որ պսակէ զձեզ յաւիտեան, թող թագուհի պահէ, եւ ի պիտոյ ժամս առնոյք ի նմանէ։

Այս լեզուաւ են մեծագոյն մասամբ Վարդանայ լուծմունքն զոր ի խնդրոյ Հեթմոյ գրած է, մանաւանդ թէ կան բոլորովին գրաբար հատուածք. որով կրնայ ցուցուիլ թէ ի մէջ բերեալ Գ. օրինակն ամենէն աւելի ռամկականութիւն ունեցողն է։ Բայց իւր գրուածոց նշանաւորագունին մէջ, այն է՝ Տիեզերական պատմութիւն (տպ. Մոսկուա, 1861) կամ Հաւաքումն պատմութեանց (տպ. Վենետիկ, 1862) որ գրեթէ ամբողջ գրաբար է, կայ ընդարձակ հատած մի, յորում ռամկօրէն բարբառով ի գիր կ՚աւանդէ իւր առ Թաթարաց Հուլաւու խանն երթալն ու տեսակցութիւնն։ Եւ է այս։

Դ. Ի յեօթնհարիւր երեքտասան թուին կոչեաց զմեզ մեծն Հուլաւու Էլղանն։ Եւ տեսաք զմեծն զայն ի մեծի աւուրս ամսամտի եւ տարեմտի իւրեանց։ Եւ էր նոցա աւուրք ուրախութեան իբր լուսին մի. յորս խորհէին այլ ղանքն՝ ազգայինքն Չանկրզղանի՝ առ մեծն եկեալ, զոր ինչ պատշաճ տեսանէին. ամենեքեան նոր զգեցեալ՝ յամէն աւուր որիշ գու-

նով փոփոխս։ Եւ ի տեսանելն զմեզ ծունր ոչ եառուն կրկնել եւ ոչ չոքել ըստ իւրեանց սովորութեանն։ Գինի եառուն օրհնել եւ ի մեր ձեռաց առնուլ։ Եւ խօսք զոր ինչ հրամայեաց՝ առաջին այս է. Կոչել եմ զքեզ՝ որ տեսանես զիս եւ ճանաչես, եւ ի սրտաց աղօթես վասն իմ։ Իսկ մեք տուաք պատասխանի, եւ նստուցին զմեզ, եւ գինի եառուն. եւ շարական պաշտեցին եղբարքն որ ընդ մեզ, եւ Վրացիք զիւրեանց պաշտօնն, եւ Ասորիք եւ Հոռոմք զիւրեանցսն։ Զի յայնմ աւուր տեսին զեկեալսն յամենայն կողմանց, մինչ ասել Իլղանին, թէ Ես զքեզ միայն եմ կոչեալ. ինչ է այս նշանս, որ ոչ յառաջ եւ ոչ յետեւ մի աւուրբ յամենայն կողմանց եկին ընդ քեզ, տեսանել եւ օրհնել զիս։ Եւ յառաջեաց հրամայեաց ինքն. Թուի թէ նշան է, որ Աստուծոյ սիրտն լաւ է ինձ։ Ասացաք. Զմեզ այլ կալաւ զարմանք, եւ պատճառ՝ զոր դուք հրամայեցիք։ Ապա հրամայեաց, թէ Ծածուկ բան ունիմ առ քեզ։

Եւ յաւուր միում արար անապատ յոյժ, եւ հեռի կացուցեալ զամենայն բանակն, եւ երկու արամբ միայն խօսեցաւ ընդ մեզ յերկար, յիւր ծննդենէ հետէ եւ ի մօրէ՝ որ քրիստոնեայ էր, ՝ասէ. Եւ թէպէտ դայեակ սնուցանէ զտղայն, երբ ի հասակ գայ՝ զիւր մայրն սիրէ։ Չենք օտար ի սիրոյ քրիստոնէից. զոր ինչ ունիս ասելոյ՝ ասա։ Եւ բռնեալ էր զիմ ձեռքս։ Եւ մեք ասացաք զինչ Աստուած երետ ասել բան, թէ Որչափ ի վեր ես դու քան զայլ մարդիկ, մօտ ես յԱստուած. Աստուծոյ աթոռն արդար դատաստանաւ է հաստատ։ Ամէն ազգի տուեալ է Աստուած տէրութիւն աշխարհի. մինչ ի ձեզ՝ աշխարհաւեր են լեալ, եւ աղքատաց անողորմ ծանր շալակ են դրել. Նոքա յոգոց են հանել, եւ լացեալ առաջի Աստուծոյ. Աստուած առեալ է զիշխանութիւնն եւ յայլ ազգ տուեալ։ Թէ դուք աշխարհաշէն լինիք եւ աղքատաց ողորմած, ի ձեզանէ չառնու Աստուած, զոր տուեալ է՝ թողու առ ձեզ, եւ զոր տալ կամի՝ զայն այլ տայ։ Ի քո դրանս հանց մարդ կացո՝ որ յԱստուծոյ երկնչի եւ զձեզ սիրէ. որ զլալով եկած տառապեալն՝ որ աղերս չունի եւ կաշառք՝ ուրախ ի տուն յուղարկէ եւ քեզ յիշեցնէ։ Եւ զաշխարհս տեսանել տուր հանց մարդոյ

որ յատակ տեսանէ, կուրանայ ոչ՝ կաշառօք, եւ քեզ սաէ զիրաւն: Եւ յայս կարգիս շատ խօսեցաք:

Հրամայեաց թէ ի սրտումս գրի զքո խօսքդ: Ո՞նց է որ զամէն զայն ասացեր որ յիմ սիրտս կայր՝ որ ինձ դիւր թուեաց. Աստուած խօսեցեալ է ընդ քեզ, երեւեալ է քեզ: Ասացաք թէ Չէ. մեք մեղաւոր մարդ ենք, ապա զաստուածախօս մարդկանց գիրքն կարդացել ենք, եւ սիրտ թագաւորաց ի ձեռին Աստուծոյ են: Աստուած յայտնեալ է քեզ առանց գրոց: Ապա ասացաք, թէ Առաջի Աստուծոյ խօսք մի եմ յասել, որ Աստուած լսէ եւ ապա դու՝ որ սուտ չկայ ի ներս: Հրամայեաց թէ Ասա: Ասացի՝ թէ Զինչ քրիստոնեայ եւ ուր—————ն կայ ընդ ծով եւ ընդ ցամաք, ամենու սիրտ հետ քեզ լաւ է եւ քեզ աղօթք են առնում: Հրամայեաց՝ թէ Հաւատալ եմ որ հանց է. ապա յԱստուծոյ ճանապարհն չեն ուր—————նքն, ինձ ի՞նչ. աղօթք առնեն, եւ թէ առնեն՝ Աստուած ե՞րբ լսէ. Գ—ղ—մ ուր—————նն զԱստուած յերկնից յերկիրս բերէ՞. չբերէ: Ասացէք որ յԱստուծոյ ճանապարհն կենան եւ աղօթք առնեն. մեր եղբարքն հետ մեզ վասն այն են ի կռուիլ, որ մեք քրիստոնեասէր ենք եւ քրիստոնէութիւն կայ ի մեր տանս:

Ապա սաէ ցմեզ. Ոչխարենի է՞ր ես զգեցեալ եւ ոչ ոսկի: Եւ իմացեալ թէ մեք մեծ մարդ եւ աստիճանի տէր չենք, լուր աբեղայ մի եմք. եւ հրամայեաց՝ թէ Մեծացուցանեմ զքեզ ոսկի զգեստիւ, եւ շատ ոսկի տամ: Եւ մեք սաեմք. Ոսկին մեզ եւ հողն մի է. մեք այլ մեծ ուզենք, որ վայել է քո մեծութեանդ, ողորմութիւն ի վերայ աշխարհի: Եւ հրամայեաց՝ թէ Մ—շ—մ քթեթ կարեմ, խիստ գէշ, եւ խիստ փոքր իրք, լուր այնչափ որ խունկ գնես եկեղեցւոյն. թէ չէ, երկիր ի՞նչ սաեն՝ թէ Էլղանն զնա ո՞նց տեսաւ: Եւ զայդ զոր ասացեր՝ առնեմ, եւ մարդիկ յղարկեմ՝ որ տեսանեն զաշխարհ:

Իսկ երբ հրաման ուզեցաք գնալոյ, այլ կոչեաց զմեզ եւ խօսեցաւ. եւ ունէր ի ձեռքն բ—լէշ մի, եւ երկու հանդերձ էր տուել կարել: Յիշեցուցաք թէ, Է՛լղան, այդ դրամդ հատանի եւ հանդերձդ մաշի, մեք անհատանելի եւ անմաշելի խնդրեցաք պարգեւք: Եւ հրամայեաց՝ թէ Առաջի օրն զքո խօսքդ լմնեցի. ու—լէխ եմ տուել գրել. կարդալ տուր եւ զինչ

քո սրտիդ պիտի աւելի՝ զայն այլ գրել տուր։ Եւ ի Սախալթու եւ ի Շահաբատինն եմ յանձնել զերկիրդ եւ զքեզ, որ զինչ ասես՝ առնեն։ Եւ մեք շնորհ կալաք եւ ելաք։

Ասոնք են ռամկօրէն կամ ռամկախառն գրութիւնք Վարդանայ Վ.ի։ — Կան այս այլ եւս նոյնպիսի գրուածք՝ զոր ոմանք իրեն կը համարին, մանաւանդ Առակք. բայց՝ ինչպէս ի յաջորդն կը տեսնենք, հաւանական կ'երեւայ թէ անոնք այլոյ անուանակցի գործ ըլլան։ Հատուածիս Բ. բաժնին մէջ առիթ կ'ունենանք խօսելու՝ ըստ մասին ռամկօրէն եւ ըստ մասին ռամկախառն պատմութեան մի վրայ, զոր ի Նոր ժամանակս ոմանք այս Վարդապետին կ'ընծայեն[1]։

## Բ. ՄԱՂԱՔԻԱ ԱԲԵՂԱՑ

*Պատմութիւն ազգին Նետողաց՝ Թաթարաց։*

Հեղինակիս անձին վրայ չունինք մասնաւոր տեղեկութիւն. այնպէս զի թերեւս անունն իսկ անծանօթ մնար՝ եթէ իբրեւ յիշատակարան ցմեզ չհասնէր իւր այս գրութիւնն։ Այսու հանդերձ՝ նոյն գրուածքն ո՛չ իւր ծննդեան եւ կենաց ժամանակին, եւ ո՛չ իւր բնակութեան տեղւոյն եւ գործունէութեան հանգամանաց վրայ որոշ ծանօթութիւն կու տայ։ Այսչափ միայն կ'իմանանք իւր մեզի թողած պատմութենէն՝ թէ նոյնն ի վերջ կոյս ԺԳ. դարու գրեալ է, եւ մի երկու տեղ յիշատակածէն կը տեսնենք թէ հուշակաւոր Վանական Վ.ին աշակերտած է[2]։

---

[1] Յիշատակութեան անգամ արժանի չենք համարիր՝ անզգուշութեամբ կամ տգիտութեամբ՝ Վարդանայ տրուած այլ գրութիւն կամ Նամակ մի, որ յայտնապէս հակառակ է է նոյն Վարդապետին կարծեաց եւ զգածմանց։ (Տես Պտմ. Հայոց, Չամչ. Վ.ի, Հտ. Գ. էջ 231, 232 եւ 344։ — Պտմ. Հայ. Դպր. Ա. էջ 730, 731. եւ Պտմ. Վարդանայ, Վենետ. Յառաջաբան, էջ Ժ։)

[2] Տեղ մի կը գրէ. "Յայսմ ի նեղ եւ ի դառն ժա- "մանակիս փայլէր իբրեւ զարեգակն սուրբհոգի Վարդա-

Այս Թաթարաց պատմութիւնն՝ թէեւ համառօտ է, բայց թէ՛ լեզուագիտական եւ թէ՛ պատմական տեսակէտէն բաւական կարեւորութիւն ունի: Լեզուն ըստ մասին գրաբար է՝ շատ տեղ ռամկախառն, եւ ըստ մասին՝ գրաբարախառն ռամկօրէն: Ոչինչ նուազ ծանրակշիռ եւ հետաքրքրական է նաեւ պատմաբանական հայեցմամբ, որովհետեւ ոչ միայն Թաթարաց ազգին վրայ ընդհանրապէս տեղեկութիւն կու տայ՝ մանաւանդ անոնց ի Հայս ունեցած աղէտալի գործունէութեան մասին, այլ նաեւ իրեն ժամանակակից ազգային պատմութեան քանի մի դիպաց նկատմամբ մեզի այլեւայլ մանրամանութիւններ կը հաղորդէ, որք մասամբ իւիք այլ պատմագրաց մէջ չեն գտնուիր:

Թէպէտ շատ ժամանակէ ի վեր ծանօթ էր այս Պատմութիւն, եւ ամէն ազգային պատմագիրք անցեալ եւ այս դարու իբրեւ մի ի գլխաւոր աղբերաց կը գործածէին ԺԳ. դարու դիպաց. սակայն հազիւ քանի տարի յառաջ երկու տեղ հրատարակուեցաւ:

Երկու տպագրութեանց մին լոյս տեսած է ի Պետերբուրգ խնամով Պր. Ք(երովբէ)ի Պ(ատկանեան) յամին 1870, միակ ձեռագրի վրայէն. իսկ երկրորդը՝ միեւնոյն 1870 տարին[1] յԵրուսաղէմ, “Հանեալ, ինչպէս կը “կարդացուի ի ճակատուն, ի ձեռագիր օրինակաց Թան-“գարանի սրբոց Յակոբեանց„: Ընդհանրապէս խօսե-

---

“պետն ձեր Վանական„: (Տպ. Երուս. էջ 22:) Աւելի բացայայտ կը խօսի ուրիշ տեղ մը. “Ընդ աւուրսն ընդ այնո-“սիկ, կ՚ըսէ, փոխեցաւ ի Քրիստոս աւագ եւ փառաւոր “Վարդապետն ձեր Վանականն, եւ սուգ մեծ եԹող մեզ, “եւ ոչ Թէ միայն ձեզ աշակերտելոց նմա, այլ եւ ամենայն “աշխարհիս„: (Անդ. էջ 33:)

[1] Կ'երեւայ թէ նոյն 1870 թուականն սխալմամբ գրուած է: Ի Պատմ. Հայ. Դպր. (Հտ. Բ.) որ 1878ին տպուած է, միայն Պետերբուրգի տպագրութիւնը կը յիշատակուի (էջ 153): Նոյնպէս ի Հայկական մատենագիտութեան, որ 1883ին տպուած է, նոյն տպագրութիւնն եւեթ յիշատակուած է (էջ 395), թէեւ ո՛չ Պրոսէի գաղղիերէն թարգմանութիւնն (1851) եւ ո՛չ Պատկանեանի ռուսերէն թարգմանութիւնն (1871) անյիշատակ մնացած է:

լով, այս երկրորդ տպագրութեան օրինակն ուղղագոյն է քան զառաջնոյն։

Աւթիւ այս տպագրութեան Երուսաղէմի՝ չենք կարող ծածկել զարմանքն որ ունեցանք, տեսնելով թէ հակառակ բազմադարեան աւանդութեան՝ որոյ ստուգութեան վրայ ամենեւին պատճառ չկայ կասկածելու, փոխանակ Մաղաքեայ Աբեղայի՝ թէ ի Ճակատուն եւ թէ ի Ցառաջաբանին՝ այլ ոք իբրեւ հեղինակ գրուած է Պատմութեանս, այն է՝ Վարդան պատմիչ։ Աւասիկ Ցառաջաբանին խօսքն. "...Գրեալ է Վարդանայ "պատմչի՝ յաշակերտացն Վանականայ Վարդապետի ի "ԺԳ. դարու, ի 1247, եւ ընդօրինակեալ ի 1272։ Եւ "օրինակն զոր ունիմք ի ձեռս՝ ձեռագիր է Նորին Գրի-"գորի երիցու Ականց անապատի ի Կիլիկիա։ Օրինակս "չունի առանձին յիշատակարան զգրողէն. սակայն ի լու-"սանցս օրինակին ուրեք ուրեք տեսանի գրեալ նովին ձե-"ռագրով. Ողորմեա, Տէր, Վարդանայ ծառայիս... Եւ "լեզու եւ ընթացք պատմութեանն իսկ վկայեն զանորին "լինել հեղինակութիւն։..."

Ըստ մեր տեսութեան՝ ամենեւին հիմն չունի այս անուանափոխութիւն հեղինակի գրութեանս, նա թէ ամէն պարագայք կը ցուցընեն որ բոլորովին վրիպական է։ Գոնեայ այսչափս յայտնի է թէ Վարդան Արեւելցի կամ Մեծ, զոր անշուշտ կ՚իմանայ Հրատարակիչն՝ Պօփ-Դն վերադրաւ, չի կրնար ըլլալ մատենագիր Պատմութեան Թաթարաց։ — Նախ յայտնի սխալ է առելն՝ թէ նոյն պատմութիւն գրեալ է 1247ին, վասն զի բովանդակութիւնը կը հասնի մինչեւ Լեւոնի Գ.ի թագաւորութեան (1271—1289) ժամանակներն։ Արդ որովհետեւ ի վերջ գրոցն (տպ. Երուս. էջ 70, եւ Պետերբ. էջ 54) կայ յաջորդ ծանօթութիւնն՝ թէ "Կատարեցաւ "պատմութիւն Տաթարիս գործելոց ԽԴ (քառասուն եւ "չորք) ամաց". եթէ գնենք զնոյն սկսեալ իբր յամին 1230, որ ժամանակներն իրօք սկիզբն եղած է Թաթարաց ի Հայս յարձակման, — կը հետեւի որ վերջացած է իբր 1274ին, Լեւոնի Գ.ի Դ. տարին։ Եւ արդէն վերջնոյս թագաւորութեան երրորդ տարւոյն դէպքերն իսկ մանրամասն կը պատմուին։

Դարձեալ Վարդան Արեւելցի մեռած է յամի 1271, ինչպէս հաւանական կ՚երեւայ՝ ի վանս Հաղբատայ եւ կամ Անդրէի (ի ձորն Կայենոյ՝ Հայոց եւ Վրաց սահմանին մօտ), որ իւր սովորական բնակութեան տեղն էր Կիլիկիայէն երկրորդ անգամ դառնալէն ետեւ. ուր զի Թաթարաց պատմութեան Երուսաղէմի ձեռագիրն կ՚ըսուի օրինակեալ՝ ըստ Ցառաջաբանին՝ յամի 1272ին

(ինչպէս վերագոյն տեսանք), իսկ ըստ Յիշատակարա-նին¹ յամի 1271 յԱկանց անապատի (ի Կիլիկիա)։

Ի հաստատութիւն ասացելոցս՝ բերենք ի մէջ Թաթարաց պատմութեան երկու հատածներն, յորոց ակներեւ կը տեսնուի թէ Վարդան Արեւելցի չի կրնար հեղինակ ըլլալ յիշեալ գրոց։

«Յայսմ ի նեղ եւ ի դառն ժամանակիս», կը գրէ Մաղաքիա Աբեղայ, «փայլէր իբրեւ զարեգակն «սուրբհոգի Վարդապետն մեր Վանական յերկիրն ա-«րեւելեան, ...անհաս գիտութեամբ ամէնիմաստ Հո-«գւոյն սրբոյ, զոր եւ բազում երկամբք եւ աշխատու-«թեամբ ձրի բաշխէր զկերակուրն հոգեւոր, այսինքն «զբան վարդապետութեան Հոգւոյն, նմանեալ երկնաւոր «Վարդապետին Քրիստոսի հեզութեամբ եւ խոնարհու-«թեամբ։ ...Նոյնպէս եւ զովելի ողջերթն Տէր Վար-«դան եւ Կիւրակոս, Առաքելոյն եւ Յովսէփ խաչանման «բաժանեալ զաշխարհն արեւելից լուսաւորեցին կենա-«րար վարդապետութեամբ Հոգւոյն սրբոյ։ ...»

Դարձեալ կը գրէ. «Ի թուականին Հայոց Ձի. «(= 1271—72) փոխեցան ի Քրիստոս փառաւոր Վար-«դապետքն Հայոց Վարդան եւ Կիրակոս, որո(ց) սուրբ «աղօթքն նոցա ի վերայ մեր եւ ամենայն աշխարհի»։

Այս հատածոց առաջինն կը գտնուի յերկուս եւս տպագրութիւնս, յԵրուսաղեմայն՝ յէջն 22, ի Պե-տերբուրգեանն՝ յէջն 12։ Իսկ երկրորդն՝ միայն ի Պե-տերբուրգեանն՝ յէջն 52. բայց չկայ յԵրուսաղեմայն յորում գտնուելու էր յէջն 68։

Վերագոյն ասացելոց վրայ պէտք է յաւելուլ նաեւ զտարբերութիւնն որ կայ երկու հեղինակաց լե-զուին մէջ։ Վարդանայ գրաբարն՝ առանց լինելոյ առաջին կարգի ընտիր լեզու, ըստ բաւականին կոկ ու կանո-նաւոր է. իսկ Մաղաքեայն՝ խառնակ է եւ աղճատ։ Իրենց ռամկօրէնին վրայ կը խօսինք ի վերջ Հատածիս։

Այս ամենայն նկատելով, միանգամայն մտ դնե-լով Երուսաղէմի տպագրութեան Յառաջաբանին այն խօսքին՝ թէ «Օրինակս չունի առանձին յիշատակարան «Տէրողջն» այս ինքն՝ «Հեղինակին». ուստի եւ Վարդանայ Մեծի ընծայուելուն գլխաւոր պատճառն այն է՝ որ «Ի

¹ Աւասիկ նոյն Յիշատակարանն. «Յամի Ձի. թուա-«կանութեանս Հայոց (1271) գրեցաւ աշխարհապատումս «այս հրամանաւ սուրբ եւ փառաւորեալ Հօր Ստեփաննոսի «Ականց անապատիս, այլ եւ կամակցութեամբ փակակալի «սուրբ անապատիս Վարդանոյ եւ ամենայն եղբայրութեանս «քահանայից եւ կրօնաւորաց, ձեռամբ տառապեալ գրչի «Գրիգորոյ սպասաւորի բանին։» (Տպ. Երուս. էջ 71։)

ա՛յուսանցս օրինակին ուրեք ուրեք տեսանի գրեալ նովին և ձեռագրով՝ Ողորմեա, Տէր, Վարդանայ ծառայի քոյ. — մենք պարտաւորեցանք հաստատուն պահել դարական ազգային աւանդութիւնն, եւ թողուլ անփոփոխ Մաղաքեայ Աբեղայի անունն։

Տեսանենք արդ իւր գրութիւնն։

Ա. Մեծ գլխաւորն (Տաթարաց) Խուլն այն՝ որ ամբարտաւանեալ նման եւ եղբայր Աստուծոյ ասէր զինքն, անկաւ նա ի ցաւ նկրդոյ. եւ այն ցաւին պատճառաւ անպատմելի խեղճ եւ ողորմ բան գործեցաւ։ Զի գնացին անհաւատ Ջհուդ մի բժիշկ գտան, եւ բերին առ Խուլն. եւ յորժամ ետես զցաւ նորա անօրէն եւ սուտ բժիշկն այն, ասաց դեղ ցաւին՝ զչէկ տղայի փորն կենդանւոյն ճեղքել, եւ դնել զոտն ի փոր տղայոյն։ Եւ նոյն ժամայն հանեալ հեծեալ յերկիրն, յանկարծակի մտանէին ի գեղանն քրիստոնէից եւ առնուին զտղայսն ի փողոցէն. եւ գայլու պէս փախուցանէին. եւ ծնողք մանկանցն ղկնի գնային ճիչ եւ աղաղակ բարձեալ դառն եւ ողորմ արտասուօք, եւ ոչ կարէին թափել. այլ յետս դարձեալ գնային ողորմելի սրտով ի տունս իւրեանց. եւ թէ բռնադատեալ խլէին զմանկունսն, յայն ժամն նետաձիգ լինէին ի ծնողս մանկանցն։ Եւ այսպէս ողորմելի բանս եղեւ ի ձեռն անօրէն Ջհուդին. մինչ զի յերեսուն տղայն հասաւ թուով, որ ճեղքէին զփորն, եւ ոչ լաւացաւ։ Այլ իբրեւ գիտաց անօրէն Խուլն թէ այնչափ խեղճս գործեաց եւ ոչինչ օգտեցաւ, ապա յետոյ բարկացեալ վասն խղճի տղայոցն, հրամայեաց բերել զՋհուդ հէքիմն, եւ իւրեան առաջի ճեղքել զփորն եւ ընկենուլ շանց. եւ առ ժամայն արարին զհրամայեալսն։ Բայց ինքն Խուլն յետոյ այլ սատակեցաւ չար մահուամբ, եւ նստաւ ի տեղի Խուլին՝ Միղան անուն որդին իւր։

Բ. Յետ այսորիկ արարին (Տաթարք) ժողով մեծ հին եւ նոր հեծելոց, եւ անթիւ բազմութեամբ գնացին ի վերայ Պ. քաղաքի. եւ յորժամ հասին ի տեղին, առժամայն առին զքաղաքն մեծ եւ անուանի. եւ յորժամ առին, յանխնայ կոտորեցին եւ գերեցին զբազումս։ Ըմբռնեցին եւ զտէրն Պ.այ իւր ամենայն գանձիւքն, եւ բերին առաջի Հուլաւունին գիրացած

եւ սնքացած։ Եւ յորժամ ետես Հուլաւունն հրամայեաց՝ թէ Դո՞ւ ես տէրն Պ. այ։ Եւ նա ասաց՝ թէ Ես եմ։ Եւ ապա հրամայեաց դնել ի բանտի զերեք օր անհաց եւ անջուր։ Եւ յետ երեք աւուրն հրամայեաց բերել առաջի իւր, եւ եհարց Հուլաւունն՝ թէ Ի՞նչ ցեղ կաս։ Եւ նա ցասմամբ պատասխանի արար, իբր թէ վախեցնելով զՀուլաւունն, ասէ. Ա՞յդ է ձեր մարդկութիւնն, որ ես երեք օր յանօթի կենամ։ Եւ ապա հրամայեաց Հուլաւունն փողող մի կարմիր ոսկի բերել եւ դնել առաջի։ Եւ յորժամ բերին, ասաց (տէրն Պ. այ) Այս ի՞նչ է։ Ասաց Հուլաւունն՝ թէ Ոսկի է. կեր, որ քաղցդ եւ ծարաւդ անցանի եւ կշտանաս։ Ասաց (տէրն Պ. այ) թէ Ոսկւով ոչ ապրի մարդն. այլ հացով եւ մսով եւ գինւով։ Ասաց Հուլաւունն. Երբ գիտես զայդ, որ մարդն չոր ոսկւով չապրի, այլ հացով եւ մսով եւ գինւով. դու այդչափ ոսկի ե՞ր չուղարկեցիր ինձ ընդդէմ, որ ես չէի եկեալ ու զքո քաղաքս աւերեալ ու զքեզ կալեալ. ու դու քեզ անհոգ նստեալ էիր՝ կերեալ եւ խմեալ։ Եւ ապա հրամայեաց Հուլաւուն զօրացն ոտիւք տալ եւ այնպէս սպանանել (գնա)։

Գ. Ընդ աւուրս ընդ այսոսիկ եկն այր մի ի Մանկու Ղանէն՝ Մուղալ ազգաւ, եւ էր այրն այն յոյժ ահագին տեսողացն, երկայն հասակաւ թիկնեղ, շլնին զերդ զգոմիշու, ձեռներն անձոռնի իբրեւ զարջու, եւ ամէն օրին ուտէր ոչխար մի։ Եւ ունէր ի Մանկու Ղանէն ի հետ գիր եւ անգին կապայ մի, եւ գրեալ էր ի գիրն այսպէս. Այս անուն բահադուր երեկ առ իմ եղբայր Հուլաւու Ղանդ. թէ լինի ոք բահադուր որ զդա ձգէ, զայդ կապայդ նմա հագո. ապա թէ իմ բահադուրդ զքոյնն ձգէ, յայն ժամն զկապայդ դմա հագո. եւ մեծ Խլչւով յիս յղարկեա։

Յայնժամ Հուլաւու Ղանն կոչեաց զամենայն գլխաւորս զօրաց իւրոց. եւ հրամայեաց՝ թէ Գտէ՞ք մարդ Տաթար կամ Հայ կամ Վրացի, որ զդա ձգէ։ Եւ որոնեցին եւ Տաթար ոչ գտին. զի ով տեսանէր զայրն զայն՝ ամենայնն վախէին յահագին հասակէն եւ ի տեսոյ նորա։ Իսկ Հայոց եւ Վրաց իշխանքն ասացին՝ թէ Մեք գիտեմք մարդ. որ միթէ ի նմանէ լինի ճար։ Եւ հրամայեաց Ղանն փութով բերել։ Եւ ասացին՝ թէ

Չէ ի տեղս, այլ կայ ի տուն իւր։ Եւ հրամայեաց առժամայն ելչեաց շուտով հասուցանել. բայց ոչ ձիով, այլ ոտլով։ Եւ էր այրն այն զոր առաքին Հայոց եւ Վրաց իշխանքն, յաղագէն ի Բարձր Արծրունեաց՝ թոռն Ամիր Քրդին, Սագուն անուն։ Իսկ յորժամ ետես Հուլաւու Ղանն զՍագունն եւ զկորովի եւ զերկայն հասակ նորա, յոյժ ուրախացաւ, եւ հրամայեաց ինն օր երկու բոխտոյին կալ ի միասին, եւ ամէն օրէն ուտեցայց ոչխար մի եւ տիկ մի գինի։ Եւ յորժամ վճարեցաւ ինն օրն այն, ապա հրամայեաց ժողովել ամենայն գլխաւորացն առաջի իւր, եւ կոչեալ զերկու բոխտոյն, հրամայեաց բռնել զմիմեանս. եւ յորժամ ըմբռնեցին զմիմեանս՝ էր աւուրն երեք ժամ. եւ յերեք ժամէ աւուրն մինչեւ ցվեց ժամն զիրեարս կային առեալ երկուսն եւ ոչ կարէին միմեանց յաղթել։ Եւ ապա Սագունն զօրացեալ անուամբն Աստուծոյ՝ յանկարծակի ուժգին բախմամբ զգետնեաց զբոխտոյ Մանկու Ղանին առաջի Հուլաւու Ղանին։ Եւ մեծացաւ Սագունն առաջի Ղանին. եւ նման նմա ոչ գտաւ յամենայն երկիր հարկեօք եւ մեծութեամբ եւ ուժով ի ժամանակս Տաթարին։

Դ. Յորժամ Տաթարն զՊաղտատ էառ, յայն ժամն էին երկու ծառայք Սուլտանին Մսրայ ի Պաղտատ. անուն միոյն Փնտուխտար, եւ միոյն Սղուր։ Իսկ յորժամ իմացան թէ էառ Տաթարն զՊաղտատ, առեալ երկու ձի փախեան՝ դէմ եդեալ գնալ ի Մսր։ Իսկ Տաթարն տեսեալ զփախուստն նոցա, գնացին ի վերայ նոցա ձիաթողք։ Իսկ Փնտուխտարն էր մօրուօք եւ ունէր մշլոմ ձի. եւ Սղուրն էր տղայ եւ ձին՝ աղէկ։ Երբ իմացան թէ հասանել կամի Տաթարն եւ զերկուսն ըմբռնել, Սղուրն իջեալ ի տաճիկ ձիոյն՝ ետ ի Փնտուխտարն, եւ ինքն ելաւ ի վատ ձին. եւ ասաց Փնտուխտարին՝ թէ Դու ել ի յաղէկ ձիդ եւ փախիր. ես տղայ եմ, թէ զիս բռնեն՝ սպանեն ոչ, այլ տանին ծառայ. յայն ժամն զինչ ի քեզ ճար լինի՝ զիս գնեա։ Եւ առժամայն հասան Տաթարնին եւ ըմբռնեցին զՍղուրն եւ տարան ծառայ. եւ զՓնտուխտարն ոչ կարացին ըմբռնել, զի ձին աղնիւ էր. փախեաւ եւ գնաց ի Մսր։ Եւ ի գնալն նորա ի Մսր՝ մեռաւ Սուլտանն Մսրայ. եւ եդին զՓնտուխտարն Սուլտան Մսրայ։

Զայս լուեալ Հայոց թագաւորին՝ ծառայ առէր նմա, եւ ոչ առնէր սէր. այլ կայր ընդդէմ նմա անսէր եւ անհնազանդ. գիտելով զպարոն հայրն իւր կենդանի, եւ կամ զիւր իշխանսն միամիտ։ Եւ գիտացեալ Սուլտանին զմիտս թագաւորին Հայոց, յուղարկեաց բազում հեծեալս ի վերայ աշխարհիս Հայոց։ Իսկ թագաւորն Հայոց ժողովեաց զզօրս իւր եւ ետ ի ձեռս թագաժառանգ որդւոց իւրոց Պարոն Լեւոնի եւ Թորոսին. եւ ինքն գնաց սակաւ մի զօրօք առ Տաթարն։ Ապա լսեաց զբեկումն զօրացն երկմտից, որ ետուն զթագաժառանգ որդիսն իւր ի ձեռս, եւ ինքեանք փախեան յամուրս իւրեանց. զի զգեղեցիկ որդի թագաւորին զՊարոն Թորոս ի պատերազմին սրախողխող արարին (ՌՇՂԶ+) յիւրում երիվարին, եւ զՊարոն Լեւոն ըմբռնեալ տարան ծառայ ի Մսր։ Եւ տեսեալ Սուլտանն՝ ուրախացաւ. բայց ընդ պարոն Թորոսի սպանումն յոյժ տրտմեցաւ, եւ յոյժ բարկացաւ սպանողացն։ Յետ այսորիկ խօսեցաւ Սուլտանն ընդ Լեւոնի. ապա յետոյ յոյժ մեծարանօք պատուեալ եւ սիրեալ եւ ասացեալ բանս մխիթարականս չվախել ոչ ինչ, այլ կալ ուրախութեամբ աւուրս ինչ, եւ ապա դարձուցանել զնա առ հայրն իւր թագաւորն Հայոց։

Ե. Բարեպաշտ թագաւորն Հեթում առ ոչինչ համարեալ զայս ամենայն անցս աղետից, առ իւր ունելով զայլ մանր ուստերսն եւ զդստերսն՝ մխիթարէր ի նոցանէ սուտ մխիթարութեամբ վասն շահելոյ զբարս իշխանացն եւ գիտենալոյ զխորամանկ միտսն նոցա սիրով։ Զի որ գրէր գիր յիշխանացն վասն պակասութեան որդւոցն, եւ սեւօք կապէր եւ առ թագաւորն առաքէր. թագաւորն գրէր պատասխանի եւ կարմիր կապեալ ի թուղթն՝ այնպէս առաքէր։ Եւ զայս՝ լեզուն եւ ձեռքն միայն գործէին եւ շարժէին. բայց զսիրտն ինքն եւ Աստուած միայն գիտէին, թէ որպիսի կրակով լցեալ էր. զի ոչ տեսանէր զայնպիսի գեղեցկապատկեր եւ զծաղկալից որդին իւր առաջի իւր, ոչ երեկոյ եւ ոչ ի վաղիւն եւ ոչ ի ժամ ճաշուն յուտել եւ յըմպել. եւ ընդ միտ ածեալ զանմխիթար աղէտս գեղեցիկ որդւոցն, այրէր անհնարին կրակով եւ գալարէր աղիքն յաղագս սիրոյ որդւոցն՝ որ ոչ տե-

տանէր. եւ թաւալէր ընդ երկիր անմխիթար ագով, բայց գաղտ եւ ի ծածուկ, զի մի գիտասցեն նախանձոտ իշխանքն։ Եւ համբեր տուեալ կրակով լցեալ սրտին՝ եկաց ծածկելով զտրտմութիւն իւր. ապա հրամայեաց կոչել զամենայն իշխանսն զոր ի հեռի եւ զոր ի մօտ, վասն պատճառի ջուր օրհնելոյ ի քաղաքն Մսիս։ Եւ ժողովեցան ամենայն իշխանքն որք կային ընդ թագաւորութեամբ նորա՝ ի քաղաքն Մսիս։ Եւ յորժամ գիտաց թագաւորն զգալուստ ամենայն իշխանացն, ապա հրամայեաց գալ առաջի իւր եւ նստել. եւ յորժամ ամէնն եկին եւ նստան, հրամայեաց սպասաւորացն թագաւորն. Թէ այլ են պակաս՝ կոչեցէք։ Եւ նոքա ասացին. Սուրբ թագաւոր, ամէնն այս են, որ քեզ առաջի կան։ Եւ թագաւորն ստիպէր կոչել զպակաս իշխանսն եւ զպարոնայսն. իսկ սպասաւորք թագաւորին ոչ կարէին իմանալ զմիտս թագաւորին։ Ապա իշխանքն ասացին ցթագաւորն՝ թէ Զոր դուք հրամայեալ էք եւ կոչեալ, ամէնն աստ է եւ չէ ոք պակաս։ Իսկ թագաւորն զայրագին սրտիւ հայեցեալ յայսկոյս եւ յայնկոյս, եւ ապա հրամայեաց կիսաձայն եւ արտասուալից աչօք՝ թէ Երբ ամէնն աստ են, ապա ո՞ւր են Լեւոն եւ Թորոսն։ Յայն ժամն սկսան իշխանքն անմխիթար եւ ծանր ագով ծեծել զիւրեանց գլուխս եւ վայ եւ եղուկ տալ, յիշելով զգեղեցիկ որդիս թագաւորին իւրեանց, եւ այնպիսի աղի եւ ողորմ արտասուօք լային ոչ միայն իշխանքն, այլ եւ քահանայք եւ վարդապետք եկեղեցւոյ, եւ ոչ ոք կայր ի մէջ նոցա որ մխիթարէր զնոսա, այլ կային տարակուսեալ ի ծանր սուգն բեկեալ սրտիւք. Իսկ մեծախելք եւ մեծահոգի թագաւորն Հեթում, ինքն յինքեան կանգնեաց զբեկեալ զտրտմեալ սիրտն իւր, եւ ապա խօսեցաւ բանս մխիթարականս ի սիրտս իշխանացն եւ քահանայիցն եւ վարդապետացն։

Զ. Կոչեաց զիշխանսն առաջի իւր թագաւորն (Հեթում) եւ եհարց զնոսա. Թէ որով հնարիւք կարէ հոգալ վասն ազատելոյ Լեւոնի որդւոյ իւրոյ։ Իսկ իշխանքն յանդէտս եղեալ մեղադրեցին թագաւորին եւ ասացին՝ թէ Չիհն ի՞նչ գտանէ մեզ, որ դու վասն Չիհայ դքո որդիքն կորուսեր, եւ զմեզ նոցա խղճին տիրա-

ցուցեր։ Այն յաւ չէ՞ր՝ թէ այն մին գեօղն մեր չէր լեալ, քան մեք ամէն աշխարհի զրոյց եւ ծաղր եղաք։ Իսկ թագաւորն հրամայեաց իշխանացն լսել յանօգուտ խօսիցն, եւ լսել ի նմանէ զոր ինչ գրեալ էին Հայոց իշխանքն (որ կային ի գուռն Ապաղայ ղանին՝ առ նա՝ թէ) Լաւ է քեզ այդ՝ որ քո մին որդին վասն քրիստոնէից մեռաւ եւ մինն ծառայ գնաց. եւ (+ո չորչոմ+ին) յամօթ եղան, որ ի յայս դուռս կան, քան քո թագաւորութիւնդ ամէնն անցած եւ երկիրդ ընդ մին աւերած եւ քրիստոնեայքդ կոտորած։ Վասն զի (չորչոմ+գ) յամենայն ժամ ասեն ընդ Ղանս՝ թէ Հայոց թագաւորն եւ Մորայ Սուլտանն մի են եւ մին խօսօք, եւ մեք Հայոց իշխանքս երդուեալ եմք Ղանին առաջի՝ թէ Սուտ են, մի աւատար դոցա։ Նւ այժմ զայդ լսեցին եւ յամօթ եղեն, ու Ղանին սիրտն լաւացաւ ի հետ քեզ միահետ։ Ապա թէ լեալ եր՝ որ խաբեալ էիր եւ լուր մին դատարկ տուն եր տուեալ, թող թէ չէն գիւղ՝ որպէս նա ուզէր յայն ժամն, քո թագաւորութիւնդ ամէն անցեալ եր, եւ մեք յամօթ եղեալ։ Իսկ յորժամ զայս ամենայն լսեցին իշխանքն ի թագաւորէն, հիացան ամէնն եւ մեղայ ասացին թագաւորին։

Յետ այսորիկ հարցեալ խրատ զիշխանսն, առաքեաց դեսպանս առ Սուլտանն Մորայ՝ իմանալ վասն որդւոյն իւրոյ Լեւոնի. թէ ինչ է կամքն Սուլտանին. ինչ տայ եւ գնէ զորդին։ Իսկ Սուլտանն Մորայ փնդուխտարն յոյժ աղէկասիրտ եր եւ խոնարհամիտ, զթագաւորորդին Լեւոն խիստ աղէկ եր տուել պահել կենօք եւ ամենայն իրօք։ Եւ յորժամ լսաւ զդեսպանացն գնալն՝ ուրախացաւ եւ ասաց, թէ Պիտի որ զԼեւոնս տանիք յիւր հայրն եւ յիւր թագաւորութիւնն։ Իմ սիրելի ընկեր կայ առ Տաթարն ծառայ, որ ձեր ձեռօք ի վեր է ի գալ. եթէ զնա ուզէք ի Տաթարէն, ձեզ չխնայեն. զնա բերէք, Սղուր է անունն, եւ զԼեւոն տարէք։ Զայս լսեալ թագաւորն Հայոց ի դեսպանացն, իսկոյն ղուգեաց բազում գանձս եւ պատուական ինչս, եւ գնաց յարեւելք առ Աբաղայ Ղանն. եւ առաց զխնդիրք Սուլտանին վասն Սղուր ծառային, եւ ոչ կարաց թափել առ ժամն. բայց եկն եւ առաքեաց զեղբօրորդին իւր, եւ ըստ յաջողելոյն Աստուծոյ՝ գնաց եւ եբեր զՍղուր ծառայն յեր-

կիրս։ Եւ յորժամ տարքեաց Թագաւորն առ Սուլտանն՝ Թէ Բերաք զՍղուրն, յոյժ ուրախացեալ եւ բազում ընծայիւք առժամայն առաքեաց զլեւոն. եւ որքա զՍղուրն յուղարկեցին բազում ընծայիւք։

Գ. ԳՐԻԳՈՐ Է. ԱՆԱՒԱՐԶԵՑԻ

*Թուղթ առ Թագաւորն Հեթում Բ.:*

Ականաւոր հայրապետաց մէջ՝ որ յընթացս չորս (ԺԲ. եւ ԺԵ.) դարուց նստան ի կաթողիկոսական աթոռն Կիլիկիոյ, նախ ի Հռոմկլայ (1110—) եւ ապա ի Սիս (1294—) եւ իրենց բարեմասնութեամբքն ու մեծաջան գործունէութեամբ՝ պատիւ եղան Հայաստանեայց եկեղեցւոյ, մին ի նշանաւորաց է՝ Գրիգոր Է. Անաւարզեցի (1293—1306)։ Հայրապետիս անունն արդէն յառաջագոյն հռչակեալ էր, երբ տակաւին լոկ եպիսկոպոս էր Անաւարզայ. բայց շատ աւելի մեծցաւ համբաւն՝ երբ ազգին բարձրագոյն եկեղեցական գահն ելաւ, որով իւր գործունէութեան շրջանն ընդարձակեցաւ։ Այս պատճառաւ ամէն իմաստուն եւ բարեսէր անձինք՝ որ ազգին կրօնական խաղաղութեան եւ ընդ այլ եկեղեցիս միաբանութեան սէր ու բաղձանք ունէին, զինք լիաբերան կը գովեն[1]։

[1] Այսպէս՝ ի մէջ այլոց՝ Յովհ. Եզնկացի, որ Մեծին Վարդանայ Վ.ի աշակերտած էր անոր կենաց վերջին տարիներն, եւ զանձն կը կոչէ "Աշակերտ հոգելից եւ սուրբ Վարդապետին Վարդանայ", Հայրապետիս առաքինութեանց եւ չքնաղ առաւելութեանց վրայ մեծ գովեստիւ կը խօսի։ (Տես Յուշիկք, Հտ. Բ. էջ 473, 474, 476, եւ Սիսուան, էջ 241։) Այսպէս նաեւ Օշին արքայազն իշխանն առ նա գրած տաղաչափեալ նամակին մէջ՝ զինքն Այր Աստուածոյ, Պարծանք էմ է Քրիստոս, Գլուխ պատկառելի կոչելէն զատ, իբրեւ գուշակ այն բարձրաստիճան պատուոյն յոր պիտի ելլէր, ծանրագին մատանի մի կը յղէ՝ հետեւեալ տողիւք.

"Մատանիս այս շնորհաւոր ձեզ ի հրաւէր՝ հասցէ ի Տէր,
"Ի գուշակ այս պետութեան լինել Հայոց հովիւ եւ տէր.
"Ոսկիդ որ ման առեալ՝ զծողովուրդ քո ցուցանէր,
"Եւ ակնդ պատուական ըզմաքրութիւնդ արտայայտէր"։

Տես ի Սիսուան, էջ 193, 194։ Տես եւ էջ 241, 242, ուր կընշանակուին Հայրապետիս այլեւայլ գրութիւնքն, առանձինն շարականքն՝ յորոց եւ ինչ ինչ մէջ կը բերուի։

Նոյն խաղաղութեան ու միաբանութեան սիրոյն վառեալ՝ իւր բոլոր գահակալութեան ժամանակն, ոչ գործով միայն՝ այլ նաեւ գրով իւր նախորդաց շատերուն պէս, նա թէ անոնցմէ աւելի, աշխատեցաւ կրօնական ներքին երկպառակութիւններն ու ինչ ինչ ծիսական խնդիրները կարգի դնելու։ Իւր այս ճգանց եւ գրաւոր աշխատասիրութեանց պսակն եղաւ այն ընդարձակ Հոգելից Թուղթն՝ որ գրեց իւր արդիւնաշատ կենաց վերջերն առ Հեթում Բ. Թագաւորն, այն միջոցին՝ երբ նոյն վեհապետն վերջին անգամ թագէն հրաժարելով, իւր Թորոս եղբօրն Լեւոն որդին գահն հանած, եւ ինք Յովհաննէս անուամբ կրօնաւորած էր, եւ Թագաւորահայր տիտղոսը կը կրէր։

Կը դնենք աստ նոյն Թուղթն, որ թէեւ շատ գրաբարախառն՝ ընտիր օրինակ է ռամկօրէն լեզուի։ Բայց որովհետեւ շատ ընդարձակ է, աստ անդ համառօտած ենք՝ իւրաքանչիւր տեղն յապաւումները նշանակելով։ Կրնայ գուշակուիլ անոնց նիւթն եթէ միտ դրուի որոշմանց ժողովոյն, որ Հայրապետիս մահուան յաջորդ տարին (1307) ըստ բաղձանաց նորա գումարեցաւ ի Սիս։ (Տես ի Պատմ. Հայոց Չամչ. Վ. ի, Հտ. Գ. էջ 308—311. եւ Պատմ. կաթող. վարդապ. ի Հայս, էջ 273—281։)

Գրիգոր ծառայ Քրիստոսի Յիսուսի Աստուածոյ մերոյ, եւ ողորմութեամբ նորին կաթուղիկոս ամենայն Հայոց, մերոյ եւ սրբոյ եկեղեցւոյս յոյժ պարծանաց, հոգեւոր եւ անդրանիկ որդւոյդ, ճշմարիտ քրիստոսասիրիդ, տեառն մերոյ Թագաւորահօրդ Հեթմոյ, աւագ Պարոնիդ ամենայն Հայոց։ — Յուսամք եւ մաղթեմք Աստուածով լինել եւ մնալ ձեզ միշտ ամբողջ եւ անվրդով եւ անփորձ։

Յիշումն լիցի ձեզ՝ որ երեկ ձեր երէցդ Ստեփաննոս, եւ եբեր զձեր պատուելի թուղթս, յորս յիշէիք երբ եկիք առ մեզ հերուի տարին ի Սիս, նա մեք խօսեցաք՝ թէ Ջանա եւ օգնէ մեզ։ . . . — Ապա յորժամ երեկ ձեր երէցս, եւ սկիզբն

արարի որ ժողվէի ի հայ գրոցն զվկայութիւնս որովք զիրն հաստատէի եւ գրէի ձեզ։ Եւ պատրաստեցայ՝ որ չգային խօ—մոր մարդիկք, եւ լինէր աղմուկ՝ երբ ձեր իրաւունքն չկենար հետ մեր եւ ձերոցն ամենեւին։ Եւ մեր ամէն Նաւֆով ընկերօքն մնացաք՝ մինչեւ ամէնքս ի մի տեղի գալով, գրոց քննութեամբ զիրաւն հաստատեացուք։ . . . Արդ կու աղաչեմք զձեզ վասն Աստուծոյ՝ որ ձեզ հոգք առնէք եւ ժողովէք պատեհւոր ժողով։ . . .

Յիշեցուցանեմ ձեզ, Պարոն, մի մեղադրեր թէ կու նեղեցուցանեմ զձեզ յերկարելովս. զի զմեծ իրքն որպէս փոքր չէ պարտ առնել, զի այն մեծ մեղք է եւ յիմարութիւն եւ անվայելուչ, որպէս երկայն մարդոյ կարճ հանդերձ։ Զայս զոր կու առնեմք հիմայ՝ մեծ իրք է եւ հաւատոց եւ հասարակաց, որ պիտի յամենայն մարդ հասնի՝ յայր եւ ի կին, եւ խառվէ զամենայն մարդ, եւ գայթակղեցուցանէ զայնոսիկ՝ որ չգիտենան թէ ուղի՞ղ է՝ թէ ծուռ։ . . . Արդ աղաչեմք զձեզ՝ որ ոչ իմանայք թէ զբանս վասն ձեր կու երկարեմ, այլ վասն այլոց՝ որ տղայ են եւ ակար։ . . .

Եւ արդ, ո՛վ իմ Պարոն, մի մեղադրեր՝ որ ձեզ բարի բան կու անձնեմք։ Զի թէպէտ ի յերկրի մերում յետ Աստուծոյ տէր էք, ապա երբ զաշխարհիս փառքն թողէք եւ կրօնաւոր եղէք՝ ի մեր բաժինս եղէք, այլ զի՞նչ բան մանաւանդ պիտի առնէք՝ քան զոր Աստուծոյ Որդին արար՝ զհաշտեցուցիչ երկրի եւ եկեղեցւոյ լինելն, եւ խաղաղարար լինելովն՝ իբրեւ զՈրդին Աստուծոյ լինել եւ երանելի կոչիլ։ Արդ աղաչեմ զձեզ, որ թէ ձեր կամք լինայ եւ հրամանք, եւ դուք Նդողէք եւ իրաւունք տեսնուք, ձէնէք զեպիսկոպոսերն եւ զվարդապետս եւ զԱկներոյն հայրերն, որ տանին ցուցանեն զայս գիրս յիւրեանց վաներն՝ պարկեշտ, կատարեալ եւ խելօք մարդկացն, զի ով ուզէ՝ առնէ, եւ ով չուզէ՝ թող կենայ մինչ ի ժողովն։ Թէ իրք գտնուն եւ կամ գիտենան որ անդ՝ առեն ընդ մեզ, եւ մեզ երախտիք է. որ չլսեն յետոյ եւ բամբասեն զմեզ։ Զի ոչ եթէ սուտ եմք, կամ յամէն աշխարհս իրք կայ՝ որ կու կարծեմք ի գիտութենէ կամ ի սուրբ Գրոց. ապա պարկեշտ կու սկսնումք, մինչեւ ժողովով հաւանութեամբ եւ տրամաբ(ակ)անութեամբ լինի իրաւունք ըստ կանոնաց։

*Ո՛ իմ Պարոն, կու ասէ Գիրքն. Մի փոխեր զսահմանս զոր եդին հարքն քո։ Եւ դարձեալ. Որ քակէ զցանգ հայրենի՝ հարցէ զնա օձ։ Եւ եթէ այդ այդպէս կու լինի, պատճառն ի վերայ սրբոցն է, որ զիւրեանց բովանդակ հարցն զ՚ի սկզբանէ սկսեալ կռապաշտութեան ցանգն քակեցին։ Բայց նոքա չէին նոցա հարք. զի նոցա որդիք զԱդամայ մարմինն զհին մարդն մեռեալ յաւազանն մերկացան, եւ զՔրիստոս զգեցան։ Վասն որոյ ասացեալ է՝ թէ Մի կոչէք ձեզ հայր ի յերկրի, զի մի է ձեր հայր որ յերկինս է։ Ապա եւ մեր հարքն՝ Աստուծոյ պատկերքն եւ սուրբքն են, եւ ցանգ եւ սահմանք՝ նոցա օրէնքն են եւ կանոնքն։*

*Որ զայս գիրս կու պահէ եւ խաղաղացուցանէ՝ չէ զեկեղեցիս աւերել եւ ի խռովութիւն ձգել։ Եւ մեք զայս որ գրեմք՝ չեմք զհայրենի ցանգն քակել, այլ զԱստուծոյ գրոցն սահմանն եւ զսուրբ հարցն զցանգն կու պահեմք եւ հաստատեմք։ . . .*

---

Երեք ռամկագիր եկեղեցականքս, որովհետեւ գրաբարագէտք էին եւ հին լեզուաւ գրելու վարժ, բնական էր որ իրենց ռամկօրէն գրութիւնքն ալ բազմօք գրաբարախառն գտնուէին։ Ուստի թէեւ իրենց եւ ռամկագիր աշխարհականաց գրութեանց մէջ յայսմ մասին տարբերութիւն տեսնուի, այնչափ մեծ մտադրութիւն չի շարժեր։ Բայց կայ երկու դասուց գրութեանց մէջ այլ տարբերութիւն ուշադրութեան արժանի, զոր պատշաճ կը համարինք սակաւուք բացատրել։

Աշխարհական մատենագրաց ռամկօրէն գրութիւնք առաւել կամ նուազ խառն են ստորին կամ ժողովրդական ռամկականութեամբ, այս ինքն՝ բառերն ու կազմակերպութիւններն այնպէս ի գիր առնուած են՝ ինչպէս իրենց ժամանակին ու տեղւոյն հասարակ ժողովուրդն ու ռամիկը կը գործածէր։ Իբրեւ գլխաւոր գաղափար այս ժողովրդական լեզուի կամ մանաւանդ արտաբերութեան՝ տեսանք մասնաւորաբար զհնագոյն բժշկարանս. դիտեցինք եւս թէ նոյն եղանակաւ գրուած է նաեւ Օրինաց

մատեանն Սմբատայ, եւ միայն իւր Տարեգիրքն ազատ է ի ստորին ռամկականութենէ, որոյ պատճառն դիւրաւ կ'իմացուի՝ եթէ միտ դրուի սոյն վերջին գրուածոյն յօրինուելու կերպին։ Ի գրութիւնս Մխիթարայ Հերացւոյ իսկ, որ հմուտ էր գրաբարի, ոչ ցանցառ կը հանդիպին այսպիսի ռամկականութիւնք. բայց հնար է թէ գէթ մի մասն ընդօրինակողաց գործ ըլլայ։ — Այսպէս կարող ենք ասել թէ ռամկագիր աշխարհականաց առանձինն յատկանիշն է՝ ստորին կամ ժողովրդական ռամկականութիւն։

Ընդ հակառակն վերիվերոյ մտադրութիւն իսկ բաւական է տեսնելու՝ թէ այս նկատմամբ բոլորովին տարբեր ընթացք բռնուած է յօրինակս զոր երեք հնագոյն ռամկագիր եկեղեցականաց գրութիւններէն ի մէջ բերինք։ Ասոնց մէջ հազիւ աստ անդ կը հանդիպին հետք ստորին ռամկականութեան, որ եւ այն հաւանաբար կրնայ ընդօրինակողներէն մուծեալ կարծուիլ։ Ընդհանրապէս թէ՛ բառից եւ թէ՛ կազմակերպութեանց հին ձեւերն անփոփոխ պահուած են։ Կարծես թէ եկեղեցական մատենագիրքս խնամով զգուշացած են ժողովրդական այլանդակութիւններէն, ջանալով այնչափ ինչ միայն առնուլ ի ռամկօրէնէ՝ որչափ կարեւոր կը համարէին իրենց գրութիւնն ժողովրդեան դիւրահաս ըլլալու։ Միաբան են այս աշխարհական ռամկագրաց հետ ի կիրարկութեան վայելուչ եւ ընտանեկան բացատրութեանց ժողովրդեան, որով ընտիր օրինակ են ռամկօրէն բարբառոյ, բայց ազատ ի ստորին ռամկականութենէ։

Ի վերջոյ համառօտ տեղեկութիւն մի կը յաւելունք առանձինն Վարդանայ ռամկօրէն լեզուին վրայ։ — Ամենածանօթ է թէ Նախնեաց ռամկօրէնն որով կը զբաղինք՝ առաւելապէս յատուկ է Կիլիկիոյ։ Արդարեւ նոյն լեզուին հետքերն ու նմանութիւնները կը գտնենք նաեւ յարձանագիրս այլոց գաւառաց, եւ ի մատենագիրս իսկ Հայոց մեծաց, յորոց ոմանք իրենց ռամկա-

խառն գրոց մէջ բուն Կիլիկեցւոց նման կը գրեն, մանաւանդ թէ բազմօք կը նոյնանան անոնց հետ։ Բաւական է յիշատակել եւեթ զՅովհ. Մամիկոնեան (3, վերջին Ծան.) եւ առաւել եւս զՄատթ. Ուռհայեցի (4)։ Սակայն եւ այնպէս միշտ կը նշմարուի տարբերութիւն ի մէջ ռամկօրէնի բնիկ Կիլիկեցւոց եւ այլոց գաւառաց։ Ունին առաջինք շատ բացատրութիւններ եւ կազմակերպութիւններ՝ որ չեն գտնուիր ի վերջինսն, եւ ընդհակառակն այս յետնոց սովորական են բառք եւ կազմակերպութիւնք՝ որ չեն այնչափ յաճախեալ յառաջինսն։ Արդէն այժմու տարբերութիւնք գաւառականաց երկուց կողմանց՝ մեծ ապացոյց են ասացելոցս։

Գիտենք դարձեալ թէ ի Մեծ Հայոց է Վարդան. ուստի թէպէտ շատ տարիներ Կիլիկիա կենալով՝ նա թէ յաբքունիս յաճախելով՝ վարժ էր նաեւ գաւառին յատուկ բարբառոյն. սակայն եւ այնպէս իւր ռամկօրէն գրուածքն յիրս ինչ կը տարբերին այլ ռամկագրաց գրութիւններէն, եւ առ սակաւ մի նշմարել կու տան իւր բնիկ հայրենեաց գաւառականին հետքն։

Բերենք քանի մի օրինակ։ Յայտնի է որ Կիլիկիոյ բարբառոյն մէջ շատ ցանցառ կը հանդիպի ում վերջաւորութիւնն թէ ի գոյականս եւ թէ ի դերբայս։ (Տես 12, Օրինակ Է. Ծան. 3։) Արդ նոյն ձեւն սակաւ տողերու մէջ երկու անգամ կը գործածէ Վարդան. "ի սրտումս դրի զքո խօսքդ"։ Աւելի նշանակական է միւսն. "Քեզ աղօթք են տանում". որոյ հետ կապեալ են նաեւ հետեւեալքն։ Իւր գրութիւններէն բերուած քանի մի օրինակաց մէջ կը կարդանք. "Զօրք են յաւել։ Թէ շատ կայ է հարցանել։ Խօսք մի եմ յաւել։ (Ի) համատաւլ եմ։ Հետ մեզ վասն այն են է կռուել"։ Իւր պատմութեան այլ սակաւատող ռամկօրէնին մէջ կը գտնենք. "Հայոց կանթեղն կ է վառել"։ Արդ՝ Աղօթք են առնում՝ դրուած է փխկ. Կիլիկեանին՝ Աղօթք կու առնեն, Զօրք են յաւել՝ ... փխկ. Զօրք կու աւեն ... բացատրութեանց. իսկ այս կերպ բացատրութեան՝ որ այնչափ սովորական է առ բուն Կիլիկեցիս՝ Կայ ու ..., կենայ ու ..., կու ... ձեւերով, ոչ երբեք կը հանդիպի Վարդանայ մեզի ծանօթ ռամկօրէն գրուածոց մէջ։ Ընդհակառակն իւր ի կիր արկած, եմ է ... ել, որ ի մատենագիրս Հայոց մեծաց շատ հին ժամանակներէ սկսեալ՝ կը գտնուի. "Ցոյնք են է տուլ. (Ց. Մաղէլ.) Այժմու մարդիկ խոցած են յաւել. (Վանակ. Վ.) այսպէս ի հասարակախօսն սովորական չէ առ Կիլիկեցիս։ Բաց ի շատ սակաւ օրինակաց՝ որ հազիւ երբեմն կը հանդիպին յայլ գիրս, երկու օրինակ կը գտնենք առ Մխիթարայ բժշկապետի. "Խասիաթ՝ զիւրական եւ

սզաւանձին գործն է է ատել։ Մաղձն է յօյժել լինել»։ Բայց թերեւս վայս եւ զայլ նմանս՝ թէեւ գտնուին, զոր չենք յիշեր, հնար է առնուլ ի ցոյց հաստատութեան կարծեացս, նայելով Մխիթարայ հայրենի գաւառին՝ որ էր Հէր եւ Զարեւանդ գաւառ Հայոց Մեծաց[1]։ — Աւելի մտադրութեան արժանի է այն պարագայն՝ որ սոյն բացատրութեան կերպն՝ նաեւ առ բուն Կիլիկեցիս ի Խօսառոջանն բաւական տեղ կը գտնուի. զ. օ. «Չէ է հրաման տալ, կամ՝ Չէ է հրամայել օրէնքս։ Վասն ընտանեացն իմ չէմ յիշել։ Չէ նա է հաճեցնել զտէրն։ Չէն է խօսել ի հուն ելնել։ Է՞ր չէ է փնտռել զիրքն։ Չէաք է լսել։ Չէաք է հասնել։ Չլինի է տալո»։ Պատճառն յայտնի է. որովհետեւ ի բացասականին չէր հնար ի կիր արկանել հաստատականին խօս մասնիկն։ (Տես եւ Քնն. Քեր. էջ 87. եւ Հանդէս Ամս. 1888, էջ 168։)

Այս տարբերութիւն ի սովորական լեզուէ բնիկ Կիլիկեցւոց՝ հազիւ ուրեք կը նշմարուի ի գրութեան Մաղաքեայ Աբեղայի, որ թէեւ հաւանաբար իւր երիտասարդութեան ժամանակն ի Մեծ Հայս անցուցած է՝ իբրեւ աշակերտ Վանական Վ.ի, կ'երեւայ թէ յետոյ շատ տարիներ Կիլիկիա բնակելովն՝ տեղւոյն բարբառոյն քաջ տեղեկացած էր, ուստի եւ իւր լեզուն գրեթէ կը նոյնանայ այլ բնիկ Կիլիկեցւոց լեզուին հետ։ Այսպէս՝ մի անգամ եւեթ կը տեսնուի իւր բովանդակ Պատմութեան մէջ. «Չեր ձեռօք ի վեր ի է տալո»։ Իսկ խօս մասնիկն, յորմէ զգուշացած կ'երեւայ, երկու անգամ միայն կը հանդիպի. «Ամէն օր խօս առեն ընդ Ղանսն» (ըստ տպ. Պետերբ. որ ըստ տպ. Երուս. է՝ «Յամենայն ժամ առեն ընդ Ղանսն», ինչպէս տեսանք ի Զ. օրինակին։) Բայց երկրորդ անգամ գործածածն՝ «Զմեզ այլ խօս ծեծենն», հաւասարապէս կը գտնուի երկու տպագրութեանց մէջ ալ։

---

[1] Կ'երեւայ թէ այս ձեւն կամ ասութեան կերպն շատ սովորական եւ ի հանապազօրեայ կիրարկութեան էր Հայոց մեծաց ռամկօրէնին մէջ. այնպէս որ ուրեք ուրեք մինչեւ ի գրաբար գրութիւնս իսկ կը սպրդէր։ Այսպէս Գրիգոր Նարեկացի ի Մեկնութեան Երգոց երգոյն, — որ թէեւ բազմօք պարզագոյն է քան զիւր Աղօթամատոյց գիրքն, բայց զուտ գրաբար՝ հազիւ աստ անդ մանր մունր ռամկականութիւնք հանդիպելով, — սկիզբներն քանի մի իջից մէջ, երեք անգամ նոյն ձեւն ի կիր արկած է. «Ի համառօտն եմ է փոխել» (Տպագր. Վենետ. 1827, էջ 396 եւ 404) «Գիտես եթէ զհամառօտն եմ յօժարել»։ (Անդ, էջ 406։)

# 18.

## Է. ԴԻՒԱՆԱԿԱՆ-ԱՏԵՆԱԿԱՆ ԳՐՈՒԹԻՒՆՔ

Ռուբինեան տէրութիւնն որ իւր երեքդարեան տեւողութեան ժամանակ մերձաւոր եւ հեռաւոր ազգաց եւ տէրութեանց հետ գրեթէ անընդհատ քաղաքական եւ առեւտրական անձուկ յարաբերութեան մէջ կը գտնուէր, ի հարկէ բազմաթիւ դիւանական կամ պաշտօնական գրութիւններ (հրովարտակներ, հրամանագրեր, ներքին եւ արտաքին արտօնագրեր, դեսպանական նամակներ, դաշանց թղթեր) ունենալու էր։ Արդեամբք իսկ մնացած են ցայժմ ոչ սակաւ այսպիսի պաշտօնական յիշատակագիրք (documents), զոր ըստ կարի ժողոված եւ հրատարակած է Վիկտոր Լանկլուա յառանձին մատենի[1]։ Այս հաւաքածոյին մէջ յառաջ բերեալ գրութիւնք մեծագոյն մասամբ յայլեւայլ եւրոպական լեզուս են, կան նաեւ քանի մի արաբականք, իսկ հայերէն՝ հազիւ չորս գրութիւն մէջ կը բերուի։

Բնական է կարծել թէ ի Ռուբինեան արքունեաց առ օտարազգիս ուղղեալ պաշտօնական գրուածքն ըստ մասին այս վերջնոց սեպհական լեզուաւն եւ կամ անոնց ծանօթ լեզուաւ մ'եղած են. սակայն աներկբայ է՝ թէ գոնեայ ցմեզ հասածներէն շատ աւելի էին նաեւ հայերէն գրուածներն, որ անցմամբ ժամանակի կորսուած են։ Այս ողբալի կորուստը դիւրաւ կրնայ մեկնուիլ՝ եթէ միտ դրուի անոնց գրուած ժամանակէն ի վեր պատահած քաղաքական վրդովմանց, պատերազմաց, աւարառութեանց, հրդեհից, եւայլն. որով անհետ եղած են

---

[1] Le trésor des Chartes d'Arménie, ou Cartulaire de la Chancellerie royale des Roupéniens. Par Victor Langlois, Venise, Typographie arménienne de Saint-Lazare, 1863.

յարքունի դիւանին ըստ հասարակաց սովորութեան պահեալ օրինակներն ալ: Նոյնպիսի կամ նման դիպաց եւ պատահարաց զոհ եղած կարող ենք համարիլ նաեւ Ռուբինեան թագաւորութեան միջոցին՝ յԱսիա հաստատեալ եւրոպական տէրութեանց դիւաններուն ժողովածոյքն: — Բայց ինչպէս այլ սովորական գրութիւնք եւ մատեանք որ անդիւտ կորուսեալ կը համարուէին՝ հետզհետէ կը գըտնուին, յուսանք թէ ժամանակաւ յերեւան ելլեն նաեւ ոմանք հայերէն պաշտօնական գրուածոց:

Խօսքն ամփոփելով այն սակաւաւորաց որ ի մեր ձեռս հասած են, յայտնի է թէ բանասիրական նկատմամբ այնու առաւել կարեւորութիւն ունին՝ որ գրեթէ ամէնուն սկզբնագրերը պահուած են, որով կատարեալ ապահովութիւն կ'ունենանք անոնց ճիշդ վաւերականութեան վրայ, այսինքն՝ թէ ամենեւին փոփոխութիւն կրած չէ անոնց ոճն կամ լեզուն, ուստի եւ որոշակի կ'իմանանք այն ժամանակաց ժողովրդական լեզուն եւ մանաւանդ արտաբերութիւնն: Ուր ընդ հակառակն՝ այլ ամենայն ժամանակակից գրութիւնք հետզհետէ շատ անգամ գաղափարեալ ըլլալով, — եւ ինչպէս ուրեք ուրեք նշանակեցինք, ընդօրինակողք սովորաբար ըստ կամի փոփոխութիւններ մուծանելով, — ոչ երբեք կարող ենք կատարեալ ապահովութիւն ունենալ այս վերջնոց վաւերականութեանն ըստ ամենայն հայեցմանց:

Մեզի ծանօթ դիւանական գրութիւնք հետեւեալքն են:

Ա. Հնագոյնն ժամանակաւ, որ Լանկլուայի հաւաքածոյին մէջ չի գտնուիր, որովհետեւ այն մատենին հրատարակմանէն իբր տասը տարի յետոյ յերեւան ելած է, դաշնագիր մի է, զոր տուած է Պարոն Կոստանդին՝ Տէրն Սարուանդիքարին՝ առ կարգապետն Տեւտոնեան ասպետաց (Մայստրն Ոսքիթլուն Ալամանացն Ֆրէր Իանն) ի թուին ՉԻ. (= 1271): Դաշնագրոյս բաւական մաքուր բոլորգիր մագաղաթեայ սկզբնագիրը կը պահուի

վենետկոյ հրապարակական դիւանին մէջ, զոր Հ. Ալիշան Վ. հրատարակած է նախ ի Բազմավէպի 1873 տարւոյն (էջ 108—112) գաղղիերէն թարգմանութեամբ, յաւելլով ի վերայ նախաշաւիղ եւ շատ ծանօթութիւններ ի նոյն լեզու, եւ յետոյ ի Սիսուան (էջ 210) լոկ հայերէն բնագիրն, հանդերձ պատմական տեղեկութեամբք։ Երկու հրատարակմանց հետ կայ նաեւ նմանահանութիւնն։ — Եւ այս է ամբողջ բնագիրն։

Գիտացնեմ ձեզ ամէնեցուն որ զայս թուխթս հասկնայք, որ ես Կոստընդին ծառայ Աստուծոյ եւ որդի Պարոն Ճաւֆրէ եւ տէր Սարվանդիքարին, զոր եկաք ի Սեւ պրծին ուսն՝ ուր խաչն կայր ու տանձին, մենք ու ամէնայմէծ Մոյսոփրն Ռոբէրդուն Ալամնացն Փրէր Իանն, ու ի վերոյանվանել ուսս ուր խաչն կայր ու տանձին՝ նայ շինել էին զիրէնց տունն վանց իրենց բայժուն, նայ մենք չէաք ի հաւնել. կու լինէր շատ զրոյց ի մեր մէջն վ՛ի յիրէնցն. նայ էկաք մէնք ու վերոյանվանել մայստռն ի վերոյանվանել տեղին ի Սեւ պրծին ուսն, ուր խաչն կայր ու տանձին. ու հայնց հաւնեցաք մենք ու Մոյսոփրն ու իրեն ([illegible] ոչ) շինեն զիրէնց տունն ի Սեւ պուրծն, թէ իրէնց պիտի ընդ նեկսէ ի Պործն, թէ իրէնց պիտի ընդ դրացէ խէչ Պրծին, ու առնուն զիրէնց բայժն ի ճանբէն, զինչ ցեղ ինչֆի յայս աւր էն առել՝ որ զթուխթս գրեցաք. ու ի յայն տնվոյն տեղն որ շինել էին որ մէնք չէաք ի հաւնել խէչ տանձոյն ու խէչ խաչին ի յուսն, նայ ա՛յլ չշինեն ի հաւն տուն, ո՛չ իւրէնք, ո՛չ իւրէնց քոմմանդրերն որ գան։

Եւ տվաք զմեր թուխթս եւ զձեռնգիրս ամէնայմէծ Մոյսոփրին եւ իրէնց տանն որ լինի հաստատուն յավիտեան։

Գրեցաւ ի մէծի թվականութիւնս Հայոց ՉԻ. վկայութեամբ մէծազգի իշխանին մեր աղբաւրն Պարոն Սմբատայ եւ մէծահարկի ձիավորացն՝ Սիր Կոստանցին ու Սիր Ըռնաղտին ու Սիր Գոյներին։ Գրեցավ ի փոքր ի թվիս յամսենն յունիսի՝ աւր էր ԺԵ. թկն. ԺԴ։

Ի ԿՈՍՏԱՆԴԻՆԷ

Բ. Նախընթաց դաշնագրէն քանի մի տարի ետեւ (ՉԼԷ. = 1288) Լեւոն Գ. առեւտրական արտօնագիր մի տուած է Գենուացւոց, որոյ սկզբնագիր մագաղաթեայ բոլորգիր օրինակը կը պահուի Գուրինի դիւանին մէջ։

Այս արտօնագիրն ի հաւաքածոյին Լանկլուայի՝ առաջին հայ բնագիրն է (Թիւ ԻԷ.) որ գաղղիերէն թարգմանութեամբ եւ օտար ու դժուարիմաց բառերու մեկնութեամբ կը հրատարակուի (էջ 154—158)։ Թող զկանխագոյն հրատարակեալսն ի Սէն-Մարդէնէ եւ ի Փափազեանց, հրատարակուած է նաեւ ի Սիսուան (էջ 387) նմանահանութեամբ՝ իբր Ցաւելուած, — Գրեթէ ամբողջ յառաջ կը բերենք այս յիշատակագիրն, աստ անդ մաքսի վերաբերեալ մանրամասնութիւնքն եւեթ ըստ մասին գուրս թողլով։

Այս մեր թագաւորական բարձր հրամանք է եւ հաստատութեան օֆէլ, Լեւոնի ճշմարիտ ծառայի Աստուծոյ եւ նորին շնորհօք եւ ողորմութեամբ թագաւորի ամենայն Հայոց, զոր պարգեւեցաք աստուածայհաստատ ֆոռին ճնվիզացն, ի խնդրոյ պատուելի եւ իմաստուն իշխանին մեծապատուեալ վէֆոյրին ճնուվիզացն ֆոռին ծովու այս դեհիս եւ մեր թագաւորութեանս կատարել եւ հաւատարիմ սիրելոյն սիր Պէնէթ Զաքարէին։ Վասն ճնուվէզ վաճըռկներոյն, որ լինի իրենց սահմանն այսպէս. յառաջ որ մեր քաղքնոյն որ ի մեր ձեռք կան՝ նա բաժերն ու իրաւներն լինի որպէս Այսասուն է, զարդել ի յայն տեղեատընոյն՝ որ ի օֆէլն գրած կայ, եւ զինչ իսկի իրք ծախեն ի շուկայն ոտմոռով ու ի տունն ծախեն՝ նա քանց զոտմոռչէքն այլ իրք չտան. եւ գինի թէ ղըրշեով ծախեն ու թէ փարչով, նոյնպէս ու ձէթ թէ ղըրշեով ու թէ ճոռոտով՝ որ անկիշեռ ծախվի՝ նա իրաւունք չտան քանց ոտմոռչէքն ի ղըրշն նոր դրամ մէկ։ Եւ ի ծառայքն որ կու գնեն ու ի յերկրէս հանեն՝ նա իրաւունք կու տան, նա չտան իրաւունք։ . . . Եւ ի ցորենն եւ ի գարին որ ծովով կու բերեն՝ նա կու առնուն յիրմնցէ ի հարիւրն չորք ու զոտմոռչէքն, նա զայն որ ի հարիւրն չորք կու տային՝ նա չտան, այլա զոտմոռչէքն տան։ . . . Եւ զինչ հաւ ու հաւու կիթ գնեն ու հանեն՝ նա չտան իրաւունք։ Եւ զայն ոտրէչէքն որ կու առնէին յիրմնցէ ի գետըբերընին, յամէն օտրի նոր երկուք՝ նա չառնուն յիրմնցէ. նոյնպէս եւ գրաստ զինչ գնեն՝ քան զոտմոռչէքն այլ իրք չտան։ Եւ երկաթ յոր տեղ ու գնեն՝ նա չտան քանց ի հարիւրն մէկ. եւ ի նաւերոյն անցն որ կու անցնին՝ նա տան դաւատիկ յամէն բեռն նոր դրամ կէս։

Եւ ճնվզի իրք որ գողնվի՝ նա զինչ ազգ որ ու լինի գողն ու գտվի իրքն, նա երեքակն չառնուն յիրմնցէ: Եւ վանց վաճռկըներոյն, որ եփ կու գան՝ նա զիրենց անդէկնին կու բանան ու զիրենց իրքն ի գիր կու առնուն, նա չբանան զիրենց անդկնին ու ոչ մատնէհրեն ու ոչ գրեն զիրենց իրքն: Եւ վանց ճնուվէզ վաճռկըներոյն, որ չլինին ճանչած ճնուվէզ ճնուվիզի որդի՝ նա գտանցն իր աղէկ մարդկօքն այնէ կեցցութիւն որ ճնուվէզ լինի ու ճնվիզի որդի, ու յղարկէ վիր մարդն ու վփայտն ի թաժտուննն՝ նա մենակ խալըռեն զինք, ու գրեն ի մեր տիւանն զգտանցին անուննն ու զվկայիցն: Եւ զոր կու արգիլէին զվաճռկներոյն կոմոլն ինչվի կու երթային ի Տարս ու թաժտանէն թուխթ բերէր ի ծնապանն, նա չարգիլեն: Իսկ թէ ճնուվէզ մեռնի անորթոնիքէ՝ նա մեր գործաւորքն յիր իրքն ձեռնամուխ չլինին. ապա զիրքն գոմսին առնու ու այնէ զինչ սահմանն է:

Եւ յապուր որ տան ընդ Այաս ու ընդ Կուկլակ՝ նա այսպէս լիննայ, որ տան ի պէխօզն ի յըղտայբեռն նոր դրամ քանուհինգ, եւ ի պէխօզն կտաւն՝ յըղտայբեռն նոր դրամ քանուհինգ . . . ի ջորէբեռն՝ նոր դրամ տասնեւինն, եւ ի յիշբեռն՝ նոր դրամ տասնուվեց. եւ ի պղպեղն ու ի ղընֆղէլն ու պողպոյն՝ ի յըղտաբեռն՝ նոր դրամ քսան: Եւ զինչ իսկի փռանկ կտաւ ելնէ համտ ու բարակ, ու զինչ իսկ(է) քթան ելնէ համտ ու բարակ, նա տայ ի յըղտաբեռն նոր դրամ քսան: Եւ այս իրվիս որ յըղտայբեռն կու տայ նոր դրամ քսան՝ նա տայ ի ջորեբեռն նոր դրամ տասնուհինգ եւ յիշբեռն՝ նոր դրամ տասնուերկուք: . . .

Եւ արդ յայտնէ եւ առ յապայ չունի ոք իշխանութիւն ի մեր թագաւորութեանս ամենայն հնազանդացն, ոչ ի մեծայմեծացն եւ ոչ ի փոքունցն, մեր թագաւորական բարձր հրամանացս հակառակ կալ, կամ աստուածայպահ գոմսին ճնուվիզացն ուժ կամ նեղութիւն առնել կամ այլ աւելի հարկ կամ իրաւունս պահընջել. այլ այնպէս մնասցէ հաստատուն՝ որպէս հրամայել ենք: Վասն որոյ պարգեւեցաք զմեր թագաւորական բարձր հրամանքս եւ զպատուելի սիգիլս: Եւ վասն առաւել հաստատութեան՝ ձեռնայգրեցաք մերով սովորական բարձր ձեռնագրովս:

Ի թուականիս Հայոց Չ(Ճ)ԼԷ (ՉԼԷ = 1288) եւ ի փոքր թուակ. երկուքն, յամս. Դեկտ. ի ԻԳ:

Հաստատուն է կամօքն Աստուծոյ։

Գրեցաւ արգահատութեամբ Հեթում Չանց-լերին, նուաստ ծառայի Աստուծոյ եւ սուրբ արքայիս շնորհողի այսմ պարգեւիս։

Եւ ճնուվէզ որ լինի յերկիրս բնակութեամբ իր կենալն, ու տանայ հայրենիք որ լինի ի կնկան դեհաց կամ ի մեր թագաւորութենէս տուրք, ու մեռնի անտիւթիչ ու անժառանգ, նա իր ինչքն զարդ ի հայրենեատներոյն՝ դառնայ ի կոմսին ձեռք, եւ հայրենիքն դառնայ ի պարոնութեանն ի ձեռքն։

## ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ

Գ. Լանկլուայի հաւաքածոյին մէջ՝ ի թիւն ԼԴ. եւ ԼԷ. (էջ 178 եւ 185) կը հրատարակուին երկու համառօտ արտօնագիրք շնորհեալք Մոնփէլիէի վաճառականաց, առաջինն՝ Օշին թագաւորէն (ՉԿԳ. = 1314), իսկ երկրորդն՝ Լեւոն Ե. թագաւորէն (ՉՀ. = 1321) իւր անչափահասութեան միջոցին, ուստի եւ կը կրէ իւր երկու խնամակալեաց (պայլից) ձեռնագիրն որք յանուն թագաւորին կը ստորագրեն։ Այս երկու բոլորգիր թղթեայ յիշատակագիրք կը պահուին Մոնփէլիէի քաղաքային դիւանին մէջ, եւ կանխագոյն քան զԼանկլուա հրատարակած է Տիւլօրիէ՝ իւր Հետազօտութիւնք ի վերայ ժամանակագրութեան Հայոց[1] մատենին մէջ (էջ 189) նախաշաւղով եւ ժամանակագրական ծանօթութեամբք՝ գաղղիերէն թարգմանութեամբ հանդերձ։ — Ի Սիսուան (էջ 368) կան միայն ծանօթութիւնք ինչ այս արտօնագրոց մասին։ — Մենք երկրորդն միայն յառաջ կը բերենք։

*Առաջին էջ (recto):* Ի թագաւորական բարձր հրամանաց. Գիտացիր, Պարոն Պետրոս պռ(օք–ւօիմո)ս, որ Մունբուզլերցի վաճառականքն բերին առ մեզ զայն համանքն՝ որ մեր ի Քրիստոս հանգուցեալ հայրն է պարգեւել իրենց, որ տեսայք՝ որ իրենք զոր կան ի յԱյաս ու զոր այլ գան ի հետ ու ի հետ ի մեր աստուածապահ աշխարհքս ի յԱյաս ի վաճառականութիւն, նա ի գնելն ու ի ծախելն ի յԱյասոյ բաժտուընն ի յամէն հարիւր երկուք մէն տան մեզ իրաւունք. ու կու համենք քեզ որ զիրենք ի վրայ այն համնացն տաս պահել որ մեր հայրն է պարգեւել իրենց։ Եղիր քեզ համանք։

---

[1] Recherches sur la Chronologie arménienne. Par M. Edouard Dulaurier, Paris, 1859.

ԺԶ. ի Մարտն, ի Թվ. Դ. ի մեծ Թվ. ՉՀ։
Իջցնէ ի օէնէւ զանիս գրերս։
Մենք Հեթում Ղոմղլույն ու Հեթում օէնէ-չէուլս հասկըցուցաք զայսոր բանն Թագվորին։

ՀԵԹՈՒՄ ՀԵԹՈՒՄ

*Երկրորդ էջ (verso):* Ի Պետրոս . . . ուենց պ(ոօտօէմօ)սէս։ Գիտացիք Պարոն Կոստանց, Այսոյ բաժտանն գլխաւոր, որ առնոյք Թագվորին ձեռնգրազ բարձր համանք, որ պոյլերն ի մէկայլ դեհն ձեռնգրել (էն), ու տուր իջցնել ի բաժտանս ի Թաթերն ու այնել որպէս համած է ի մէկայլ դեհն։

Դ. Հուսկ վերջին յիշատակագիրն զոր ունինք՝ է նոյն Լեւոն Ե. Թագաւորին առ Սիկիլիացիս տուած արտօնագիրն (ՉՁ. = 1332) որոյ մագաղաթեայ գաղափարը կը պահուի Սիկիլիոյ Մեսինա քաղաքին դիւանին մէջ։ Նախ հրատարակուած է ի Բազմավէպի 1847ին (էջ 92—94) հանդերձ նախաշաւղով եւ բառերու մեկնութեամբ. երկրորդ անգամ ի հաւաքածոյին Լանկլուայի (Թիւ ԼԹ.) ըստ սովորութեան՝ գաղղիերէն Թարգմանութեամբ... (էջ 186—190), վերջապէս ի Սիսուան էջ (363—365) նախընթաց համառօտ տեղեկութեամբ եւ հին լատին Թարգմանութեամբ։ — Այս գրութիւնն համառօտելով ի մէջ կը բերենք

. . . Թէ շալապայ ընի ի մեր յերկիրս հետ երկու Ածիլիացն, կամ որ մէկն հայ մարդ ընի, կամ ընդ այլ ազգ կամ արիւն, էնոր իրաւունքն եւ դատաստանն ի մեր դարպասն ընի։ Եւ Թէ Ածիլան պակասութիւն անէ ի մեր երկիրս՝ ժողովըրդեան եւ կամ Նոխոտոն, Թէ Բոտոշճէօ ընի մեր եւ կամ բնակիչ երկրիս, որ երթայ զէն կրածն ի դարպասն ու գանկտի եւ յայտնէ զիւր զէնն զոր իրն արած ընին, նա դարպասն կոչէ ի Ածիլիանցն զով գտնու ի մեր երկիրս, որ կենայ ու Ածիլիանոմն հաստատէ զպակասութիւնն զոր արել ընին այն մարդուն, յայնժամ Ածիլիան(օն) պարտին որ գրէն Թուղթ ու յղըրկեն ի Ածիլիան Թէ այս անուն մարդ ի Ֆըլոն տեղ այս անուն մարդոյ ի Հայոց զէն արար, ու պակասութիւնն այսչափ իրք։ Ապա տան տարի մի համբերութիւնն, կամ ըղըրկեն զէնն զոր արած ընի, կամ զէնին անողն՝ որ գայ վճարէ զոր արած ընի։ Ու Թէ զէնին անողն մեռեալ ընի՝ նա յինչիցն առնուն

ոլորկեն զենն զինչ արած լնին։ Ու թէ յերբ յիմաց լնի իրանց Սծիլիանց ի Սծիլն՝ մինչ ի տարին չըլըրկեն զենն կամ անօղն, ինչ Սծիլացիք կան յերկիրս բռնուին, որ վճարեն զենն զոր արելն են Սծիլանքն մեր բնակչացն, զոր կեցնվլի ի դարպաս։

Եւ իրենք (ո՞է)րեցեալ բնակիչքն Սծիլիանքն, որք են Սծիլիան Սծիլիանի որդիք, որք են եւ որք գալոց են, բռնած լնին պահել ընդդէմ մեզ հաւատարմութիւն եւ յետ մեր ժառանգաւորացն, յիմայ եւ յայսկից ի յետ ըղորդ եւ անարատ սէր եւ հաւատարմութիւն իւրեանց ամենայն կարողութեամբն ի ծով եւ ի ցամաք, մեզ եւ մեր յերկիրս ամէն ժողովրդեան յոր տեղ որ գտնվլին ... առանց ամէն ազգ խաբէութեան։ Ցայսմ հետէ չունի ոք իշխանութիւն ի թագաւորութեանս մերոյ ամենայն հնազանդեցելոցն ի մեծամեծաց մինչ ի փոքունս՝ մերոյ թագաւորական բարձր հրամանիս հակառակ եւ կամ ընդդիմակաց կալ, կամ փառաւոր եւ սիրեցեալ բնակչացն Սծիլանոցն ուժ եւ կամ նեղութիւն առնել, կամ իրմէնցնէ աւելի հարկ կամ իրաւունք պահանջել։ Այլ մնասցէ հաստատուն ամենայն մի ըստ միոջէ որպէս վերոյ ենք շնորհել առանց հակառակելոյ ումեքէ։

Վասն որոյ պարգեւեցաք իւրեանցն զմեր բարձր ղ+եղս եւ շնորհաւոր Բրվլէճս։ Եւ յաղագս առաւել հաստատութեան ձեռնագրեցաք մերով թագաւորական բարձր ձեռնագրեաւս եւ կնքեցաք արքունական ոսկի փ—լովս ի փառս անեղին Աստուծոյ. ամէն։...

Այսչափ միայն են, ինչպէս ցուցեցինք, ի մեր ծանօթութիւն հասած դիւանական գրութիւնք։ — Ըստ ինքեան կը պատշաճէր ասոնց կից դնել նաեւ Սմբատայ Օրինաց մատեանն, ոչ այն պատճառաւ միայն՝ որ նիւթն ատենական է եւ հեղինակն արքունեաց կը վերաբերի, այլ առաւել եւս անոր համար՝ որ բուն դիւանականաց ոճովն ու լեզուաւ գրուած է։ Բայց չուզելով միեւնոյն անձին այլեւայլ գրութիւնքն իրարմէ բաժնել, կանխագոյն (էջ 186 ... եւ 201—232) յառաջ բերինք։ Սակայն գրութեանցս լեզուին քննութեան մէջ կը փակենք նաեւ այս մատեանս իւր երկու մասամբքն, մանաւանդ թէ առաւել քան զնախընթացսն այս վերջնովս պիտի զբաղինք, որովհետեւ անոնցմէ աւելի նիւթ կը մատակարարէ մեզի։

Մինչեւ ցայսր ի մէջ բերեալ օրինակաց վրայ կը յաւելունք համառօտ քաղուած մի ի ժամանակագրու-թենէ Հեթմոյ՝ Կոռիկոսի Տեառն[1], որ թէեւ ըստ նիւ-թոյն չի միաբանիր դիւանականաց եւ ատենականաց հետ, բայց ըստ լեզուին եւ ոճոյն անոնց նման է։

Ի թուականին Հայոց ՇԻԵ. Գագիկ թագաւ-որն Հայոց սպանաւ յորդւոցն Մանտալէի։ Յետ որոյ Ռուբէն ազգական նորա երթեալ բնակեցաւ ի սահմանս Կոսխտառոյ։ — ՇԽԶ. Եւ որդի նորա Կոստանդին էառ զՎահկայն, եւ սա տի-րեաց ի վերայ ազգին Հայոց։ Եղեւ առաջին քռուազատն (croisade) Ֆռանկաց՝ գալ յԵրուսաղէմ. եւ էր թիւ մարգեզութեանն Քրիստոսի ՌՂԹ։ Ի նոյն ամին քռուազատն էառ զՆիկիա քաղաքն ի Յունաց։ — ՇԽԸ. Տուքն Կօտուֆրէ տիրեաց Երուսաղէմի։ — ՇՂԵ. Եղեւ երկրորդ քռուազատն Ֆռանկաց։ Կոնռատ էմբրէօրն Ալամանաց, եւ Լոյզն ռէ տը Ֆռանսն։ — ՇՂԶ. Ըմբրէօրն եւ ռէ տը Ֆռանսն պաշարեցին զԴամասկոս, եւ ոչ կարացին առնուլ։ — ՈԺԳ. Մլեհ եղբայրն Թո-րոսի սպանաւ ի Սիս, եւ իշխանայք նորա բե.րեալ զՌուբէն զորդին Ստեփանէի՝ եդին պարոն Հայոց։ — ՈԺԷ. Ամառին թագաւորն Երու-սաղէմի խանկրեց (զԴիմիաթն)։ — ՈԺԸ. Պլինար խլվեցաւ ի Քրիստոնէից։ — ՈԼԵ. Պալտին փոքրն մեռաւ. եւ եկաց ութերորդ թագաւոր մայր նորա Սիպիլա թագուհին։ — ՈԼԹ. Կայսրն Ալամանաց Ֆրտիկ խեղդեցաւ ի գետն Սելեւկիոյ։ Իւ Ֆիլիպ ռէ տը Ֆրանսն եւ ռէ Ջառլ թա-գաւոր Անկլիզաց անցին յայսկոյս ծովու։ Սկիզբն եղեւ կարգաւորութեան ալաման ֆրէրացն։ — ՈԾԳ. Գոնտն տը Ֆլանդր եւ տուքն Վնիժոյ առին զԿոստանդինուպոլիս ի Յունաց։ — ՈԾԷ. Պեմունդ բրէնսն Անտիոքայ խանկրեց զեւր ձի-աւորքն եւ զԱնտաքոյ կոմսն որ մտել էին ի վերայ նորա։ — ՈԾԹ. Պսակվեցաւ ռէ Ջու-անն ընդ թագուհին Երուսաղէմի Մարինն։ — ՈԿԳ. Ֆիլիպ ռէ տը Ֆրանսն խանկրեց զԸմբրէօրն Ալամանաց զՕտոն, եւ Լոյզ որդի ռէ տը Ֆրան-սին խանկրեց զԱնկլիզաց թագաւորն զռէ Ջու-անն։ — ՈԿԶ. Եկն թագաւոր Ունկռաց ի յայս կոյս ծովու, եւ շինեցաւ Ղաստէլ Բլըինն բերդ

[1] Տես էջ 138 եւ 182. 5։

Դուքսլեց: — ՈԿԹ. Պարոն Վահրամ մարաջախտն Հայոց եւ այլ իշխանայքն կամեցան պարոնացնել զՌոբէն Բրէնյն. եւ պայլն Հայոց Կոստանդին կոտորեաց զնոսա մերձ ի Սիս: — ՈՀԷ. Ըմբրուր Փտրիկն եկն յայսկոյս եւ շինեաց զՃափն: — ՉԺ. Պալիալողն էառ զԿոստանդինուպոլիս ի Ֆռանկնոյն: — ՉԽԱ. Եսուն ի Սուլտանն տուրտվութեամբ զԾագն: — ՉԽԲ. Ճնվեզացն երկոտասան խուլէ կռվեցան յԱյաս ընդ երեսուն եւ երկու խուլէ եւ ընդ Դարիթ Վենեցիանացն:

Անտարակոյս ամէն ընթերցող միտ դրած է մեծ տարբերութեանն, որ կայ՝ ի մասին ոճոյ՝ ի մէջ դիւանական-ատենական գրուածոցս եւ այլ ռամկական գրութեանց զոր մինչեւ ցարդ ի քննութիւն առած ենք: — Այս տարբերութիւն ոճոյ երկու կերպ (դիւանական-ատենական եւ սովորական) գրուածոց՝ ըստ ինքեան բնական է եւ գոգցես ընդհանուր. գրեթէ ամէն լեզուաց մէջ նոյն երկու կերպ գրութեանց ոճերն աւելի կամ պակաս իրարմէ կը տարբերին: Ո՞չ ապաքէն նոյն զանազանութիւն կը տեսնուի նաեւ մեր գրաբար դասական գրոց մէջ: Այս պատճառաւ կրնայ զրուցուիլ թէ ռամկօրէն դիւանական-ատենական գրութեանց մէջ աւելի աչք զարնողն չէ այնչափ բուն տարբերութիւնն ըստ ինքեան, որչափ այն պարագայն՝ որ նոյն տարբերութիւնն հակառակ ուղղութեամբ է քան զոր կը տեսնենք ի գրաբարն: Ամէն բանասէր գիտէ թէ ի գրաբար գիրս՝ դիւանական ոճն բազմօք բարձրագոյն եւ ճոխագոյն է քան զսովորական գրուածոցն, ուր ընդ հակառակն դիւանական-ատենական գրութեանցս ոճն երեւելապէս ստորնագոյն եւ աւելի գռեհիկ է քան զգրաւոր ռամկօրէնն ժամանակին:

Գլխաւորաբար երկու կէտի վրայ է տարբերութիւնն: Նախ ընդհանրապէս շատ ստորին եւ ժողովրդական ոճով գրուած են դիւանականք. այնպէս որ մանաւանդ օտարներու սովորութեան գոյացած ժողովա-

տեղի հնար է կոչել, կամ ճշդագոյն խօսելով՝ ժողովրդական արտաբերութեան ճշգրիտ հայելի։ Եւ չենք գիտեր թէ յայսմ մասին դիւանականա՞ց՝ եթէ հին բժշկարանաց պէտք է տալ զգլխաւորութիւն։ — Սոյն առաջին կէտին հետ զուգընթաց՝ կայ երկրորդ կէտ մ'ալ, այն է՝ ամէն կերպ լեզուներէ առնուած օտար բառերու շեղջակոյտ մի, որ հայ ականջաց ծանր կու գան եւ անախորժ կը հնչեն, եւ որոց բազմութիւնն ու յաճախ կիրարկութիւնն արդարեւ անօրինակ է ի բովանդակ ռամկական գրականութեան։ — Առաջին կէտին վրայ վաղագոյն քանի մի անգամ բաւական խօսած ըլլալով, (տես մանաւանդ էջ 160—162 եւ էջ 228—232,) աստ մեր քննութիւնը կ'ամփոփենք երկրորդ կէտին վրայ, այն է՝ օտար բառերու կիրարկութիւնն։

Բանասիրական տեսակէտէ նայելով՝ մեծապէս անհաճոյ է չափազանց յաճախութիւն օտար բառից ի սոյն գրութիւնս, եւ վերիվերոյ հայեցմամբ՝ ճաշակի պակասութեան կամ նորասիրութեան եւեթ արդիւնք կը կարծուի։ Բայց իրն ամէն պարագայիւքն որ նկատուի՝ կը տեսնուի թէ այնպէս չէ· այլ բնական հետեւութիւն է քաղաքական եւ ուսումնական վիճակի ազգին եւ հանգամանաց ժամանակին։ Այսմ դիւրաւ կը համոզի ամենայն ոք՝ երբ միտ դնէ թէ սահմանակցութիւն այլալեզու ժողովրդոց, քաղաքական յարաբերութիւն օտար ազգաց հետ, վերին իշխանութիւն օտարազգի տէրութեան, ինչպիսի՛ մեծ ազդեցութիւն կ'ունենան ազգի մի լեզուին վրայ, եւ թէ դարական տեւողութիւն այս հանգամանաց՝ որչափ օտարամուտ բառից պատճառ կու տայ։

Քննենք եւ մեկնենք։

Արաբերէն բառից նկատմամբ վերոյիշեալ պարագայից ունեցած ազդեցութիւնն ակներեւ տեսանք յամենայն ռամկօրէն գիրս, որոց հետազօտութեան մինչեւ ցայժմ զբաղեցանք։ Նոյն հետազօտութեանց վրայ հիմ-

նեալ՝ կարող ենք հաստատել թէ արաբական տարրն ի սկզբանէ իբրեւ լրացուցիչ ըմբռնուած էր ռամկօրէն բարբառոյն։ — Տակաւին բուն ռամկական գրուածոց չձեռնարկուած՝ ռամկախառն գրոց եւ արձանագրութեանց մէջ մեր առջեւ կ՚ելլեն նոյն լեզուի բառեր։ Մատթէոս Ուռհայեցի՝ ԺԲ. դարուն առաջին կիսուն՝ իւր ռամկախառն պատմութեան մէջ ոչ սակաւ այնպիսի բառեր մուծած է, այսպէս եւ այլք եւս՝ թէեւ նուազ չափով։ Ի ռամկախառն արձանագիրս միեւնոյն ժամանակաց, — սակաւ մի կանխագոյն կամ յետնագոյն, — չեն պակսիր նոյն լեզուաւ բառեր, յորոց սմանք մեծագոյն հնութեան կնիքը կը կրեն Այսպիսի են քանի մի փողոցաց անուանք, զ. օ. Ծռաղուշուկ, Սուսամփողոց, Նուլուֆունոց . . . որ զանազան արձանագրութեանց մէջ կրկին կրկին կը տեսնուին, եւ հաւանական է թէ արձանագրութիւններէն շատ յառաջ գրուած էին։ Եւ ոչ այսչափ միայն, այլ միեւնոյն միջոցներուն այնպիսի գրաբար գրութեանց մէջ՝ որ ըստ բաւականին ազատ են ի ռամկականութենէ, կը հանդիպին ուրեք ուրեք արաբական բառեր

Այս ամենայն անհերքելի ապացոյց է՝ թէ նոյնպիսի բառեր դարերէ վեր մուտ գտած եւ սովորական էին յազգին, եւ ժողովուրդն իբրեւ զբուն հայկականս անխտիր կը գործածէր, թերեւս շատք եւ ոչ իսկ գաղափար ունենալով անոնց օտարութեան վրայ։ — Իրաց այս վիճակին մէջ՝ արաբական տարրն հետզհետէ այնչափ ընտանի եւ բնական եղած էր, որ գրագէտք անգամ սկսան ամենեւին առանց զանազանութեան ի կիր արկանել, նա թէ շատ տեղ արաբերէն բառերն իբրեւ հայերէն ի մէջ բերել։ Այսպէս ի բժշկարանս եւ ի հաւաքածոյս բժշկական անուանց՝ հազիւ մի եւ երկու գրի փոփոխմամբ եւ կամ հայկական հնչմամբ ի կիր արկեալքն իբր բուն հայերէն բառեր յառաջ կը բերուին, եւ անոնց դիմաց կամ առերի կը դրուին իբր արաբերէն միեւնոյն արաբականքն փոքր մի տարբեր գրութեամբ կամ արտաբերութեամբ։

Արաբականաց մասին գրեալքս՝ թէթեւ եղանակաւորմամբ պէտք է իմանալ նաեւ Բոբոռբէրէն եւ փանճ-ճէրէն բառից վրայ, որք գրեթէ առաջնոց պէս մուտ գտնելով ի ժողովրդեան, սկսան յաճախել նաեւ ի գրութիւնս։ Ասոնք թէեւ արաբականներէն քանի մի դար յետոյ մուծեալ են ի Հայս, բայց կարծես թէ աւելի խորարմատ հաստատեցան, այնպէս որ ոչ միայն անոնց չափ՝ այլ անոնցմէ աւելի բնական համարուեցան։ Մարդ զարմանօք կը տեսնէ ի հին գիրս իսկ այս

*վերջնոց կիրարկութիւնն։ Բաւական է միայն յիշատակել գլխաւորապէս ԺԲ. դարէն, եւ զօրաւորապէս ԺԳ. դարէն։*

*Խօսքն Եւրոպական նոր լեզուաց բառերուն դարձընելով, կարծենք չենք սխալիր եթէ հաստատենք որ սոնք ալ, թէեւ ըստ ինքեան անսովոր, նախընթացից նման՝ բնականապէս ի կիրարկութիւն մտած են։ — Ծանօթ է որ Կիլիկիոյ սահմանակից կամ ի մօտաւոր կողմանս հաստատեալ տէրութեանց հետ Ռուբինեան արքունիք՝ իրենց իշխանութեան սկզբէն՝ ի սերտ յարաբերութեան կը գտնուէին եւ խնամութեամբ իսկ կապեալ էին։ — Հայոց թագաւորաց վերին իշխանութեան ներքեւ այլեւայլ ազնուական ցեղերէ Եւրոպացիք կը տիրէին Կիլիկիոյ այս կամ այն բերդին մէջ. եւ այսու ի հարկէ հանապազօրեայ հաղորդակցութիւն կ'ունենային արքունեաց եւ բնիկ ազգային բերդատեարց հետ։ — Սակաւ մի յառաջ հիմնեալ ասպետական կարգերն՝ ինչպէս ի Պաղեստին եւ յայլ մօտաւոր կողմանս՝ նոյնպէս ի Կիլիկիա հետզհետէ տներ կը հաստատէին, կալուածներ կը ստանային, եւ յայլեւայլ դէպս Ռուբինեանց ծառայութիւններ կ'ընէին։ — Իտալացի եւ Գաղղիացի վաճառականք Կիլիկիոյ հետ առեւտրական հաղորդակցութեան մտնելէն զատ՝ ոչ սակաւք իրենց բնակութիւնն իսկ այն կողմերը հաստատած էին։*

*Եւրոպացւոց այսչափ յաճախութեան եւ ազգայնոց ու այս օտարականաց մէջ այսպիսի մտերմութեան միջոցին՝ շատ բնական էր սոնցմէ ոչ սակաւուց յարքունիս եւ յիշխանական ապարանս ելեւմուտն, միանգամայն յայլեւայլ քաղաքական եւ զինուորական պաշտամունս միջամտութիւնն։ Նոյնչափ բնական էր նաեւ՝ որ այս հանապազօրեայ հաղորդակցութեան մէջ զանազան փոփոխմունք դիպէին, ինչպէս կը տեսնենք թէ իրօք դիպած են։ Գլխաւորաբար երկու նիւթոց մասին նշանաւոր փոփոխմունք կը յիշատակուին, որ են՝ զգեստուց հին ձեւոյն եւ զանազան ազգային սովորութեանց թող տրուելով՝ անոնց տեղ եւրոպական ձեւով զգեստուց եւ նոր սովորութեանց մուծուիլն, եւ փոխանակ հին անուանց պաշտամանց տէրութեան եւ աստիճանաց ազնուականութեան՝ նոր եւրոպական անուանց մուտ գտնելն* 1։

*[1] Ի մէջ այլոց՝ Ներսէս Լամբրոնացի, իւր առ Լեւոն թագաւոր 1195ին գրած նամակին մէջ, իրարու հետ կցեալ յառաջ կը բերէ ինչ ինչ որ աստ յիշատակեալ երկու նիւթոց կը վերաբերին։ Ահաւասիկ իւր խօսքն. "Որպէս հրա- "մայեցէք դուք մեզ՝ մեր առաջին հարցն շաւղաց ընթացա-*

Բայց յայսմ միայն ամփոփեալ չէր կրնար մնալ լեզուի վերաբերեալ փոփոխումն եւ կամ եւրոպական բառից հայերէնի մէջ խառնուրդն։ Օտարականաց եւ ազգայնոց մէջ հաղորդակցութիւնն օրըստօրէ աճելով, եւ ընտանեկան կենաց ու առեւտրական գործոց կապակցութիւնն հետզհետէ ընդարձակուելով, երկու կողմանք եւս կը ստիպուէին փոքր ի շատէ սորվիլ եւ գործածել իրենց օտարազգի կենակցաց եւ գործակցաց լեզուն։ Ուստի ի հարկէ ենթադրելու ենք թէ կային ի նոյն ժամանակս եւրոպական լեզու գիտցող ու խօսող ազգայինք, եւ հայերէնի տեղեակ Եւրոպացիք[1]։ Իսկ թէ այս հանգամանք ո՛րչափ օգնելու էին եւրոպական բառից հայերէնի մէջ մուտ գտնելուն, ա՛յն՝ ինքնին յայտ է։

Ի մասին յունարէն բառից՝ ինքնին յայտ է թէ անոնց խառնուրդն շատ աւելի բնական էր քան զնոր եւրոպական լեզուացն։ Վասն զի ինչպէս ի նախնի դարս

---

“կիցս լինել, լեք (լերուք) եւ դուք ձերոյն։ Մի՛ կայք բացագլուխ ըստ Լատինացւոց իշխանացն եւ թագաւորացն, զոր Հայք մաղասկաթացն ասեն ձեւ. այլ դիք շարփուշ որպէս ձեր նախնիքն։ Աճեցուցէք զհերս եւ զմօրուս, որպէս ձեր հարքն։ Զգեցիք գուլայ լայն եւ թաւ, եւ մի՛ փիլոն եւ զսպեալ պատմուճանս։ Հեծէք ի սախտեալ երիվարս ճուշանով, եւ ոչ յանսախտս լատինս լեհլով։ Տուք պատիւ անուանց ամիրայ եւ հեճուպ եւ մարզպան եւ սպայսալար եւ պայլխս, եւ մի՛ սիր (եւ պրոքսիմոս), գունդստապլ եւ մարաջախտ եւ (ձիաւոր եւ) լեճ (լիճ), որ Լատինացւոց է օրէն։ Արդ փոխեցէք դուք զայս լատինացի ձեւս եւ զանուանս ի Պարսից եւ ի Հայոցն ձեւս եւ անուանս ըստ ձեր հարցն, եւ բարեզարդեցէք զձեր արքունիսդ առաջնոցն սովորութեամբն, եւ մեք հաւանիմք Զօրոյգետացեացն եւ փոխեմք զմերս”։ (Տպ. Վենետ. 1838, էջ 234, 235։) — Թէպէտ ի թղթիս հազիւ երեք չորս եւրոպական նոր լեզուաց բառք յառաջ բերուած են. բայց յայտնի է թէ նոյն միջոցին շատ աւելի էին ի կիրարկութեան գտնուած նման բառերն։ Եւ արդէն ինքնին իւր կանխագոյն (1190) մի գրութեան մէջ նոյնչափ եւ աւելի նոյնպիսի պաշտամանց անուններ կը յիշատակէ նոյն Ն. Լամբրոնացի։ (Տես Սիսուան, էջ 472—475։)

[1] Ի մասին ազգայնոց՝ տես մանաւանդ էջ 140, 141։ Իսկ նկատմամբ հայերէնագէտ Եւրոպացւոց որոշ յիշատակութիւն թողած է մեզ Քեսնոյ Հայ արքեպիսկոպոսն Բարսեղ († 1145)։ Այս Հայրապետս՝ որ Գերմանիկոյ (Մարաշի) եւ Քեսուայ իշխանին, Պաղտին (Baudouin) կոմսին, հայր խոստովանութեան էր, անոր վրայ խօսած դամբանականին մէջ կ'ըսէ՝ թէ “Անսայթաքելի լեզուաւ ի հայերէն լեզու խօսէր”։ (Տես Գր. Երէց, ի շարուն. Մատթ. Ուռհ. էջ 475։ Տես նաեւ Վարդան Տպ. [Վենետ. էջ 125] որ զնոյն իշխան Հայասէր կը կոչէ՝ թէեւ անուանց մասին կը սխալի։)

հայ գրականութեան՝ քրիստոնէական կրօնի պատճառաւ շատ հելլենական բառեր մուտ գտած էին ի գրաբար գիրս, նոյնպէս ի միջին դարս ռամկօրէնին մէջ յունական բառեր մուծուելու էին. մանաւանդ զի ի հին ժամանակս երկու ազգաց մէջ եղած յարաբերութիւնք տակաւին կը շարունակուէին, եւ շատ անգամ թէ եկեղեցականաց եւ թէ իշխանականաց կողմանէ երթեւեկք եւ թղթակցութիւնք, գրաւոր եւ բանաւոր վիճմունք տեղի կ'ունենային։ — Հաւանական է որ նաեւ Եւրոպացւոց միջոցաւ յունարէն բառեր մուծուած ըլլան։

Ինչպէս ամէն նիւթոց մէջ՝ մի անգամ սկիզբ ըլլալէն ետեւ՝ հարկաւ կը հետեւի անոնց հետզհետէ յաճախելն ու բազմանալը, նոյնպէս պատահեցաւ նաեւ ի մասին օտար բառից, մանաւանդ այնպիսեաց՝ որ քաղաքականութեան եւ հրապարակական կենաց կը վերաբերին։ Անտարակոյս այս ամենայն բառերն իսկզբան անդ ընկերութեան բարձրագոյն դասուց մէջ կը գործածուէին. բայց շատ չանցած՝ յարքունականաց եւ ի պաշտօնատեարց կ'անցնէին նաեւ ստորնագոյն դասուց, քաղաքացեաց եւ ժողովրդեան, եւ առ սակաւ սակաւ սովորական կ'ըլլային բովանդակ ազգին։ Եւ որովհետեւ ռամկօրէն գրութիւնք ոչ այլ ինչ են՝ բայց եթէ արձագանգ ժողովրդական լեզուի, հարկ էր որ տակաւ նոյն բառերն մուծուէին նաեւ ի ռամկական գիրս։

Յայս հանգամանս կը գտնուէր լեզուն՝ երբ ձեռնարկուեցաւ դիւանական-ատենական գրութեանց, որք ի մեր ձեռս հասածներուն նայելով՝ հազիւ ԺԳ. դարուն երկրորդ կէսը կ'ելլեն։ Այս վերջնոց գրիչներն չէին կարող ամենայն ինչ կերպարանափոխ ընելով՝ իբր թէ նոր լեզու հնարել, չէին կարող շատ տարիներէ՝ թերեւս քանի մի դարէ վեր ի կիրարկութեան գտնուող օտար բառերը թողուլ եւ անոնց փոխանակ՝ հայերէն բառեր մուծանել. հարկ էր որ գրէին՝ յարքունիս, ի դիւանս եւ յատեանս գործածուած լեզուաւ, որ կ'ենթադրենք թէ նոյն գրուածոց մէջ իրենց ի կիր արկածէն շատ տարբեր չէր։ Այսչափ միայն հաւանական կ'երեւայ թէ ինքեանք եւս աճեցուցած են օտար բառերու բազմութիւնն, եւ այն՝ ստիպեալ ի պարագայից, զոր համառօտիւ նշանակենք աստէն, որչափ հնար է մակաբերել հինգ վեց դար յետոյ։

Ի դիւանական եւ առաւել եւս յատենական գրուածս կան ոչ սակաւ այնպիսի գաղափարք, զոր ճշդիւ բացատրելու համար դիւրին չէր ազգային բառեր գտնել ո՛չ հին գրաբարին եւ ո՛չ նոր ռամկօրէնին մէջ։ Սակայն կարծենք թէ հնար էր աւելի զգուշութեամբ վարուելով, արդէն սովորական եղածներուն վրայ՝ ամենակարեւորն եւեթ յաւելուլ, եւ ոչ թէ ամենածանօթ իսկ Հայերէն բառերուն նախադասել օտար բառերն եւ կամ անոնց հաւասարապատիւ ընել, նաեւ յայնպիսիս որ ամենեւին երկդիմութիւն չէին կարող պատճառել։ — Իրօք ալ, ի՞նչ պէտք կար, շատերու մէջէն սակաւուր օրինակ բերելու համար, կիրարկութեան եւրոպական կամ գաղղիերէնախառն բառից՝ փըֆընտել, չօօփել, մօրխօճ, րէ, փօօտլը, փտլել... յունականաց՝ փէօլիէհ, անփէօլիէհ, նօմօս, նօմիկօս, լօղօթէտօս... արաբականաց եւ նմանեաց՝ խըքմ, բօլըֆօլ, հօքմէլ, շօրէհ, ֆօօլան... երբ անոնց տեղ առձեռնպատրաստ կային՝ արգելուլ (արգիլել), պատժել, ամուսնութիւն, թագաւոր, կրկին, կրկնել, ... կտակ (անդարձ), անկտակ, օրէնք, օրինական կամ օրէնսգէտ, հաշիւ... հակառակորդ կամ ոսոխ, կաշառ, զրկել կամ անիրաւիլ, քառորդ, այս անուն կամ այս ինչ..., որ չէին կարող առիթ տալ երկդիմութեան, զոր եւ ինքեանք բաւական ստէպ նոյնանշան օտար բառերուն հետ խառն կը գործածեն[1]։ —

---

[1] Ցապացոյց ասացելոցս՝ բաւական կը համարինք իբրեւ օրինակ ի մէջ բերել փօօտլը բառն։ Սմբատ ի ռամկօրէն խմբագրութեան Դատաստանագրոց շատ տեղ առանձինն նոյն գաղղիերէն բառն, եւ երբեմն նոյնպէս առանձինն անոր նոյնանշան կըլէն Հայերէն բառն ի կիր արկած է. որով կը ցուցընէ թէ զայն ազգային բացատրութիւնն այնչափ անծանօթ կամ երկդիմութիւն պատճառող չէր համարեր։ Ուստի անըմբռնելի կ'երեւայ գրութեան վերջերը տեսնուած հետեւեալ խօսքն՝ թէ "Վճարն կըլէն լինի, որ է փօօտլը". որպէս թէ հարկ ըլլար Հայերէն բառն գաղղիերէնով մեկնել Հայոց։

Գրուածոցս արեւելեան եւ արեւմտեան բառերուն կուտակուԹեան եԹէ կապուի մարդ, կարող է կասկածիլ Թէ այլ ամենայն հանգամանօք եւս օտարուԹեանց արատէն ազատ չըլլան, եւ բովանդակն օտար ու անբնական ասուԹեամբք եւ դարձուածովք լի խառնակուԹիւն մ'ըլլայ։ Բայց քանի մ'էջից ընԹերցումը բաւական է համոզուելու Թէ այս կասկածն անհիմն է բոլորովին։ Արդեամբք իսկ բառերէն ի զատ՝ ամենեւին օտարուԹեան նշան չի տեսնուիր անոնց մէջ. ոչ՛ ուրեք կը նշմարուի կոյր եւ անբնական հետեւողուԹիւն օտար լեզուայ։

Եւ ոչ այսչափ միայն, այլ նաեւ բառագիտական մասն բոլորովին խոտան չէ։ Օտար բառից չեղջակուտին մէջ՝ կան դիւանական եւ տեխնական նիւԹոց վերաբերեալ շատ ազգային բառեր։ Չենք կարող որոշակի հաստատել Թէ նոյն գրուածոց հեղինակնե՞րն արդեօք մուծած են լեզուին մէջ՝ եԹէ յընԹացս ժամանակաց արդէն մուծուած եւ սովորական եղած էին նոյն բառերն։ Այսչափս միայն կրնանք զրուցել Թէ անոնց մեծագոյն մասն այլ գրուածոց մէջ չենք տեսեր։ Յիշեալ բառերն կամ բոլորովին նորակերտ են, կամ հին բառեր են նոր առմամբ։ Օրինակ ըլլան առաջնոց՝ դատաստանիլ, պատճառուորիլ, ծախուորիլ, իրաւնել, ստեղրել, գանգատաւոր, անհասակ, եւլն. իսկ վերջիններուն՝ դարպաս (դատաստանարան), դարպսեցիք, ժաժուն (շարժուն) եւ գնայուն իրք, համբերուԹիւն (յապաղումն), անհաւատ (անհաւատարիմ, նենգաւոր), անհաւատուԹիւն, մայրենիք (մայրենի ստացուածք), կեց(ց)ընել (ապացուցանել, հաստատել), կեց(ց)ուԹիւն, եւլն։ Կան նմանապէս սովորական բառեր, որ յայլ գիրս չեն գտնուիր։



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն. 1. Պիչոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գողէր. Իրաւունք Հայոց: 1890: 8° Երես՝ 85+59: Փր. 1.25

Բ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ, Ազգաբանութիւն ազնուական զարմին Տիւզեանց: 1890: 8° Երես՝ 50 (պատկերազարդ:) Փր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յակովբոս, Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: 8° Երես՝ ԺԱ+159: Փր. 1.25

Դ. Դեմետրիոս Տանի Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: 8° Երես՝ 79: Փր. —.85

Ե. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի: 1892: 8° Երես՝ Դ+272: Փր. 3.—

Զ. Ալպէր Տըմլէ եւ Գ. Փերոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: 8° Երես՝ 82: Փր. 1.—

Է. Մառ Նիկ., Անանունային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ոնուփրիոս Անոփեան: 1892: 8° Երես՝ 89: Փր. 1.25

Ը. Գարրիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Ժ+51: Փր. 1.—

Թ. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտ. Ա. 1794—1860: 1893: 8° Երես՝ 232 (Լուսանկարով): Փր. 2.50

տեղի հնար է կոչել, կամ ճշդագոյն խօսելով՝ ժողովրդական արտաբերութեան ճշգրիտ հայելի։ Եւ չենք գիտեր թէ յայսմ մասին դիւանականաց՝ եթէ հին բժշկարանաց պէտք է տալ գլխաւորութիւն։ — Սոյն առաջին կէտին հետ զուգընթաց՝ կայ երկրորդ կէտ մ'ալ, այն է՝ ամէն կերպ լեզուներէ առնուած օտար բառերու շեղջակոյտ մի, որ հայ ականջաց ծանր կու գան եւ անախորժ կը հնչեն, եւ որոց բազմութիւնն ու յաճախ կիրարկութիւնն արդարեւ անօրինակ է ի բովանդակ ռամկական գրականութեան։ — Առաջին կէտին վրայ վաղագոյն քանի մի անգամ բաւական խօսած ըլլալով, (տես մանաւանդ էջ 160—162 եւ էջ 228—232,) աստ մեր քննութիւնը կ'ամփոփենք երկրորդ կէտին վրայ, այն է՝ օտար բառերու կիրարկութիւնն։

Բանասիրական տեսակէտէ նայելով՝ մեծապէս անհաճոյ է չափազանց յաճախութիւն օտար բառից ի սոյն գրութիւնս, եւ վերիվերոյ հայեցմամբ՝ ճաշակի պակասութեան կամ նորասիրութեան եւեթ արդիւնք կը կարծուի։ Բայց իրն ամէն պարագայիւքն որ նկատուի՝ կը տեսնուի թէ այնպէս չէ. այլ բնական հետեւութիւն է քաղաքական եւ ուսումնական վիճակի ազգին եւ հանգամանաց ժամանակին։ Այսմ դիւրաւ կը համոզի ամենայն ոք՝ երբ միտ դնէ թէ սահմանակցութիւն այլալեզու ժողովրդոց, քաղաքական յարաբերութիւն օտար ազգաց հետ, վերին իշխանութիւն օտարազգի տէրութեան, ինչպիսի՜ մեծ ազդեցութիւն կ'ունենան ազգի մի լեզուին վրայ, եւ թէ դարական տեւողութիւն այս հանգամանաց՝ որչափ օտարամուտ բառից պատճառ կու տայ։

Քննենք եւ մեկնենք։

**Արաբերէն** բառից նկատմամբ վերոյիշեալ պարագայից ունեցած ազդեցութիւնն ակներեւ տեսանք յամենայն ռամկօրէն գիրս, որոց հետազօտութեան մինչեւ ցայժմ զբաղեցանք։ Նոյն հետազօտութեանց վրայ հիմ-

*նեալ՝ կարող ենք հաստատել թէ արաբական տարրն ի սկզբանէ իբրեւ լրացուցիչ ըմբռնուած էր ռամկօրէն բարբառոյն։ — Տակաւին բուն ռամկական գրուածոց չձեռնարկուած՝ ռամկախառն գրոց եւ արձանագրութեանց մէջ մեր առջեւ կ'ելլեն նոյն լեզուի բառեր։ Մատթէոս Ուռհայեցի՝ ԺԲ. դարուն առաջին կիսուն՝ իւր ռամկախառն պատմութեան մէջ ոչ սակաւ այնպիսի բառեր մուծած է, այսպէս եւ այլք եւս՝ թէ եւ նուազ չափով։ Ի ռամկախառն արձանագիրս միեւնոյն ժամանակաց, — սակաւ մի կանխագոյն կամ յետնագոյն, — չեն պակսիր նոյն լեզուաւ բառեր, յորոց ոմանք մեծագոյն հնութեան կնիքը կը կրեն Այսպիսի են քանի մի փողոցաց անուանք, զ. օ. Ծռաւղուքալ, Սուռանփողոց, Նուլնուփնոց . . . որ զանազան արձանագրութեանց մէջ կրկին կրկին կը տեսնուին, եւ հաւանական է թէ արձանագրութիւններէն շատ յառաջ դրուած էին։ Եւ ոչ այսչափ միայն, այլ միեւնոյն միջոցներուն այնպիսի գրաբար գրութեանց մէջ՝ որ ըստ բաւականին ազատ են ի ռամկականութենէ, կը հանդիպին ուրեք ուրեք արաբական բառեր*

*Այս ամենայն անհերքելի ապացոյց է՝ թէ նոյնպիսի բառեր դարերէ վեր մուտ գտած եւ սովորական էին յազգին, եւ ժողովուրդն իբրեւ զբուն հայկականս անխտիր կը գործածէր, թերեւս շատք եւ ոչ իսկ գաղափար ունենալով անոնց օտարութեան վրայ։ — Իրաց այս վիճակին մէջ՝ արաբական տարրն հետզհետէ այնչափ ընտանի եւ բնական եղած էր, որ գրագէտք անգամ սկսան ամենեւին առանց զանազանութեան ի կիր արկանել, նա թէ շատ տեղ արաբերէն բառերն իբրեւ հայերէն ի մէջ բերել։ Այսպէս ի բժշկարանս եւ ի հաւաքածոյս բժշկական անուանց՝ հազիւ մի եւ երկու գրի փոփոխմամբ եւ կամ հայկական հնչմամբ ի կիր արկեալքն իբր բուն հայերէն բառեր յառաջ կը բերուին, եւ անոնց դիմաց կամ առերի կը դրուին իբր արաբերէն միեւնոյն արաբականքն փոքր մի տարբեր գրութեամբ կամ արտաբերութեամբ։*

*Արաբականաց մասին գրեալքս՝ թեթեւ եղանակաւորմամբ պէտք է իմանալ նաեւ Եաեուբերէն եւ փանձերէն բառից վրայ, որք գրեթէ առաջնոց պէս մուտ գտնելով ի ժողովրդեան, սկսան յաճախել նաեւ ի գրութիւնս։ Ասոնք թէեւ արաբականներէն քանի մի դար յետոյ մուծեալ են ի Հայս, բայց կարծես թէ աւելի խորարմատ հաստատեցան, այնպէս որ ոչ միայն անոնց չափ՝ այլ անոնցմէ աւելի բնական համարուեցան։ Մարդ զարմանօք կը տեսնէ ի հին գիրս իսկ այս*

վերջնոց կիրարկութիւնն։ Բաւական է միայն յիշատակել՝ գլխաւոր ԺԲ. դարէն, եւ գրեթէ ամբողջ ԺԳ. դարէն։

Խօսքն եւրոպական նոր ընդունուած բառերուն դարձընելով, կարծենք չենք սխալիր եթէ հաստատենք որ ասոնք ալ, թէեւ ըստ ինքեան անսովոր, նախընթացից նման՝ բնականապէս ի կիրարկութիւն մտած են։ — Ծանօթ է որ Կիլիկիոյ սահմանակից կամ ի մօտաւոր կողմանս հաստատեալ տէրութեանց հետ Ռուբինեան արքունիք՝ իրենց իշխանութեան սկզբէն՝ ի սերտ յարաբերութեան կը գտնուէին եւ խնամութեամբ իսկ կապեալ էին։ — Հայոց Թագաւորաց վերին իշխանութեան ներքեւ այլեւայլ ազնուական ցեղերէ Եւրոպացիք կը տիրէին Կիլիկիոյ այս կամ այն բերդին մէջ. եւ այսու ի հարկէ հանապազօրեայ հաղորդակցութիւն կ՚ունենային արքունեաց եւ բնիկ ազգային բերդատեարց հետ։ — Սակաւ մի յառաջ հիմնեալ ասպետական կարգերն՝ ինչպէս ի Պաղեստին եւ յայլ մօտաւոր կողմանս՝ նոյնպէս ի Կիլիկիա հետզհետէ տներ կը հաստատէին, կալուածներ կը ստանային, եւ յայլեւայլ դէպս Ռուբինեանց ծառայութիւններ կ՚ընէին։ — Իտալացի եւ գաղղիացի վաճառականք Կիլիկիոյ հետ առեւտրական հաղորդակցութեան մտնելէն զատ՝ ոչ սակաւք իրենց բնակութիւնն իսկ այն կողմերը հաստատած էին։

Եւրոպացւոց այսչափ յաճախութեան եւ ազգայնոց ու այս օտարականաց մէջ այսպիսի մտերմութեան միջոցին՝ շատ բնական էր ասոնցմէ ոչ սակաւուց յարքունիս եւ յիշխանական ապարանս ելեւմուտն, միանգամայն յայլեւայլ քաղաքական եւ զինուորական պաշտամունս միջամտութիւնն։ Նոյնչափ բնական էր նաեւ՝ որ այս հանապազօրեայ հաղորդակցութեան մէջ զանազան փոփոխմունք դիպէին, ինչպէս կը տեսնենք թէ իրօք դիպած են։ Գլխաւորաբար երկու նիւթոց մասին նշանաւոր փոփոխմունք կը յիշատակուին, որ են՝ զգեստուց հին ձեւոյն եւ զանազան ազգային սովորութեանց թող տրուելով՝ անոնց տեղ եւրոպական ձեւով զգեստուց եւ նոր սովորութեանց մուծուիլն, եւ փոխանակ հին անուանց պաշտամանց տէրութեան եւ աստիճանաց ազնուականութեան՝ նոր եւրոպական անուանց մուտ գտնելն [1]։

[1] Ի մէջ այլոց՝ Ներսէս Լամբրոնացի, իւր առ Լեւոն Թագաւոր 1195ին գրած նամակին մէջ, իրարու հետ կցեալ յառաջ կը բերէ ինչ ինչ որ աստ յիշատակեալ երկու նիւթոց կը վերաբերին։ Ահաւասիկ իւր խօսքն. "Որպէս հրա- "մայեցէք դու մեզ՝ մեր առաջին հարցն շաւղաց ընթացա-

Բայց յայսմ միայն ամփոփեալ չէր կրնար մնալ լեզուի վերաբերեալ փոփոխումն եւ կամ եւրոպական բառից հայերէնի մէջ խառնուրդն։ Օտարականաց եւ ազգայնոց մէջ հաղորդակցութիւնն օրըստօրէ աճելով, եւ ընտանեկան կենաց ու առեւտրական գործոց կապակցութիւնն հետզհետէ ընդարձակուելով, երկու կողմանք եւս կը ստիպուէին փոքր ի շատէ սորվիլ եւ գործածել իրենց օտարազգի կենակցաց եւ գործակցաց լեզուն։ Ուստի ի հարկէ ենթադրելու ենք թէ կային ի նոյն ժամանակս եւրոպական լեզու գիտցող ու խօսող ազգայինք, եւ հայերէնի տեղեակ Եւրոպացիք[1]։ Իսկ թէ այս հանգամանք ո՛րչափ օգնելու էին եւրոպական բառից հայերէնի մէջ մուտ գտնելուն, այն՝ ինքնին յայտ է։

Ի մասին յունարէն բառից՝ ինքնին յայտ է թէ անոնց խառնուրդն շատ աւելի բնական էր քան վնոր եւրոպական լեզուաց։ Վասն զի ինչպէս ի նախնի դարս

---

“կիցս լինել, լեք (լերուք) եւ դուք ձերոյն։ Մի՛ կայք բա-
“ցագլուխ ըստ Լատինացւոց իշխանացն եւ թագաւորացն,
“զոր Հայք մաղասկաթացն ասեն ձեւ. այլ դիք շարփուշ
“որպէս ձեր նախնիքն։ Աճեցուցէք զհերս եւ զմորուս, որ-
“պէս ձեր հարքն։ Զգեցիք գուռայ լայն եւ թաւ, եւ մի՛
“փիլոն եւ զսպեալ պատմուճանս։ Հեծէք ի սախտեալ ե-
“րիվարս ճուշանով, եւ ոչ յանսախտս լատինս լեհլով։ Տուք
“պատիւ անուանց ամիրայ եւ հեճուպ եւ մարզպան եւ սպայ-
“սալար եւ պայպիսխ, եւ մի՛ սիր (եւ պրոքսիմոս), գուն-
“դուստապլ եւ մարաջախտ եւ (ձիաւոր եւ) լեճ (լէժ), որ Լա-
“տինացւոց է օրէն։ Արդ փոխեցէք դուք զայս լատինացի
“ձեւս եւ զանուանսն ի Պարսիցն եւ ի Հայոցն ձեւս եւ
“անուանս ըստ ձեր հարցն, եւ բարեզարդեցէք զձեր ար-
“քունիսդ առաջնոցն սովորութեամբն, եւ մեք հաւանիմք
“Զորոյգետացեացն եւ փոխեմք զմերս„։ (Տպ. Վենետ. 1838, էջ 234, 235։) — Թէպէտ ի թղթիս հաղիւ երեք չորս եւրոպական նոր լեզուաց բառք յառաջ բերուած են. բայց յայտնի է թէ նոյն միջոցին շատ աւելի էին ի կիրարկութեան գտնուած նման բառերն։ Եւ արդէն ինքնին իւր կանխագոյն (1190) մի գրութեան մէջ նոյնչափ եւ աւելի նոյնպիսի պաշտամանց անուններ կը յիշատակէ նոյն Ն. Լամբրոնացի։ (Տես Սիսուան, էջ 472—475։)

[1] Ի մասին ազգայնոց՝ տես մանաւանդ էջ 140, 141։ Իսկ նկատմամբ հայերէնագէտ Եւրոպացւոց որոշ յիշատակութիւն թողած է մեզ Քեսնոյ Հայ արքեպիսկոպոսն Բարսեղ († 1145)։ Այս Հայրապետս՝ որ Գերմանիկոյ (Մարաշի) եւ Քեսուայ իշխանին, Պաղտին (Baudouin) կոմսին, հայր խոստովանութեան էր, անոր վրայ խօսած դամբանականին մէջ կ'ըսէ՝ թէ “Անսայթաքելի լեզուաւ ի հայերէն լեզու խօսէր„։ (Տես Գր. Երէց, ի շարուն. Մատթ. Ուռհ. էջ 475։ Տես նաեւ Վարդան Տպ. [Վենետ. էջ 125] որ զնոյն իշխան հայասէր կը կոչէ՝ թէեւ անուանց մասին կը սխալի։)

հայ գրականութեան՝ քրիստոնէական կրօնի պատճառաւ շատ հելլենական բառեր մուտ գտած էին ի գրաբար գիրս, նոյնպէս ի միջին դարս ռամկօրէնին մէջ յունական բառեր մուծուելու էին. մանաւանդ զի ի հին ժամանակս երկու ազգաց մէջ եղած յարաբերութիւնք տակաւին կը շարունակուէին, եւ շատ անգամ թէ եկեղեցականաց եւ թէ իշխանականաց կողմանէ երթեւեկք եւ թղթակցութիւնք, գրաւոր եւ բանաւոր վիճմունք տեղի կ'ունենային։ — Հաւանական է որ նաեւ Եւրոպացւոց միջոցաւ յունարէն բառեր մուծուած ըլլան։

Ինչպէս ամէն նիւթոց մէջ՝ մի անգամ սկիզբ ըլլալէն ետեւ՝ հարկաւ կը հետեւի անոնց հետզհետէ յաճախելն ու բազմանալը, նոյնպէս պատահեցաւ նաեւ ի մասին օտար բառից, մանաւանդ այնպիսեաց՝ որ քաղաքականութեան եւ հրապարակական կենաց կը վերաբերին։ Անտարակոյս այս ամենայն բառերն իսկզբան անդ ընկերութեան բարձրագոյն դասուց մէջ կը գործածուէին. բայց շատ չանցած՝ յարքունականաց եւ ի պաշտօնատեարց կ'անցնէին նաեւ ստորնագոյն դասուց, քաղաքացեաց եւ ժողովրդեան, եւ առ սակաւ սակաւ սովորական կ'ըլլային բովանդակ ազգին։ Եւ որովհետեւ ռամկօրէն գրութիւնք ոչ այլ ինչ են՝ բայց եթէ արձագանգ ժողովրդական լեզուի, հարկ էր որ· տակաւ նոյն բառերն մուծուէին նաեւ ի ռամկական գիրս։

Յայս հանգամանս կը գտնուէր լեզուն՝ երբ ձեռնարկուեցաւ դիւանական-ատենական գրութեանց, որք ի մեր ձեռս հասածներուն նայելով՝ հազիւ ԺԳ. դարուն երկրորդ կէսը կ'ելլեն։ Այս վերջնոց գրիչներն չէին կարող ամենայն ինչ կերպարանափոխ ընելով՝ իբր թէ նոր լեզու հնարել, չէին կարող շատ տարիներէ՝ թերեւս քանի մի դարէ վեր ի կիրարկութեան գտնուող օտար բառերը թողուլ եւ անոնց փոխանակ՝ հայերէն բառեր մուծանել. հարկ էր որ գրէին՝ յարքունիս, ի դիւանս եւ յատեանս գործածուած լեզուաւ, որ կ'ենթադրենք թէ նոյն գրուածոց մէջ իրենց ի կիր արկածէն շատ տարբեր չէր։ Այսչափ միայն հաւանական կ'երեւայ թէ ինքեանք եւս աճեցուցած են օտար բառերու բազմութիւնն, եւ այն՝ ստիպեալ ի պարագայից, զոր համառօտիւ նշանակենք աստէն, որչափ հնար է մակաբերել հինգ վեց դար յետոյ։

Ի դիւանական եւ առաւել եւս յատենական գրուածս կան ոչ սակաւ այնպիսի գաղափարք, զոր ճշգիւ բացատրելու համար դիւրին չէր ազգային բառեր գտնել ոչ հին գրաբարին եւ ոչ նոր ռամկօրէնին մէջ։ Սակայն կարծենք թէ հնար էր աւելի զգուշութեամբ վարուելով, արդէն սովորական եղածներուն վրայ՝ ամենակարեւորն եւեթ յաւելուլ, եւ ոչ թէ ամենածանօթ իսկ հայերէն բառերուն նախադասել օտար բառերն եւ կամ անոնց հաւասարապատիւ ընել, նաեւ յայնպիսիս որ ամենեւին երկդիմութիւն չէին կարող պատճառել։ — Իրօք ալ, ինչ պէտք կար, շատերու մէջէն սակաւաւոր օրինակ բերելու համար, կիրարկութեան եւրոպական կամ գաղղիերէնախառն բառից՝ տըֆընտել, ջաստել, մարքիզ, րէ, փօսդլ, փըլէլ... յունականաց՝ դէֆթերի, ամդէֆթերի, նոմոս, նոմիկոս, լօղօթէթէս... արաբականաց եւ նմանեաց՝ հուքմ, բուրհան, հուքմել, շէրէք, ֆէրման... երբ անոնց տեղ առձեռնպատրաստ կային՝ արգելուլ (արգիլել), պատժել, ամուսնութիւն, թագաւոր, կրկին, կրկնել, ... կտակ (անդարձ), անկտակ, օրէնք, օրինական կամ օրէնսգէտ, հաշիւ... հակառակորդ կամ ոսոխ, կաշառ, զրկել կամ անիրաւիլ, քառորդ, այս անուն կամ այս ինչ..., որ չէին կարող առիթ տալ երկդիմութեան, զոր եւ ինքեանք բաւական անգամ նոյնանշան օտար բառերուն հետ խառն կը գործածեն[1]։ —

---

[1] Յապացոյց ասացելոցս՝ բաւական կը համարինք իբրեւ օրինակ ի մէջ բերել փօսդլ բառն։ Սմբատ ի ռամկօրէն խմբագրութեան Դատաստանագրոց շատ տեղ առանձինն նոյն գաղղիերէն բառն, եւ երբեմն նոյնպէս առանձինն անոր նոյնանշան չըլլին հայերէն բառն ի կիր արկած է. որով կը ցուցընէ թէ զայն ազգային բացատրութիւնն այնչափ անծանօթ կամ երկդիմութիւն պատճառող չէր համարեր։ Ուստի անըմբռնելի կ՚երեւայ գրութեան վերջերը տեսնուած հետեւեալ խօսքն՝ թէ "Վճարն չըլլին լինի, որ է փօսդլ". որպէս թէ հարկ ըլլար հայերէն բառն գաղղիերէնով մեկնել Հայոց։

Գրուածոցս արեւելեան եւ արեւմտեան բառերուն կուտակութեան եթէ կապուի մարդ, կարող է կասկածիլ թէ այլ ամենայն հանգամանօք եւս օտարութեանց արատէն ազատ չըլլան, եւ բովանդակն օտար ու անբնական ասութեամբք եւ դարձուածովք լի խառնակութիւն մ'ըլլայ։ Բայց քանի մ'իջից ընթերցումը բաւական է համոզուելու թէ այս կասկածն անհիմն է բոլորովին։ Արդեամբք իսկ բառերէն ի զատ՝ ամենեւին օտարութեան նշան չի տեսնուիր անոնց մէջ. ոչ՝ ուրեք կը նշմարուի կոյր եւ անբնական հետեւողութիւն օտար լեզուաց։

Եւ ոչ այսչափ միայն, այլ նաեւ բառագիտական մասն բոլորովին խոտան չէ։ Օտար բառից շեղջակուտին մէջ՝ կան դիւանական եւ տոհմական նիւթոց վերաբերեալ շատ ազգային բառեր։ Չենք կարող որոշակի հաստատել թէ նոյն գրուածոց հեղինակնե՞րն արդեօք մուծած են լեզուին մէջ՝ եթէ յընթացս ժամանակաց արդէն մուծուած եւ սովորական եղած էին նոյն բառերն։ Այսչափս միայն կրնանք զրուցել թէ անոնց մեծագոյն մասն այլ գրուածոց մէջ չենք տեսներ։ Ցիշեալ բառերն կամ բոլորովին նորակերտ են, կամ հին բառեր են նոր առմամբ։ Օրինակ ըլլան առաջնոց՝ դատաստանիլ, պատճառուորիլ, ծախուորիլ, իրաւնել, ստեղրել, գանգտաւոր, անհասակ, եւլն. իսկ վերջիններուն՝ դարպաս (դատաստանարան), դարպսեցիք, ժաժուն (շարժուն) եւ գնայուն իրք, համբերութիւն (յապաղումն), անհաւատ (անհաւատարիմ, նենգաւոր), անհաւատութիւն, մայրենիք (մայրենի ստացուածք), կեց(ց)ընել (ապացուցանել, հաստատել), կեց(ց)ութիւն, եւլն։ Կան նմանապէս սովորական բառեր, որ յայլ գիրս չեն գտնուիր։



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն. 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գողէր. Իրաւունք Հայոց: 1890: 8° Երես՝ 85+59: Փր. 1.25

Բ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ, Ազգաբանութիւն ազնուական զարմին Տիւզեանց: 1890: 8° Երես՝ 50 (պատկերազարդ:) Փր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յակովբոս, Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: 8° Երես՝ ԺԱ+159: Փր. 1.25

Դ. Դեմետրիոս Տանի Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: 8° Երես՝ 79: Փր. —.85

Ե. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի: 1892: 8° Երես՝ Դ+272: Փր. 3.—

Զ. Ալպերդ Տըրվըլէ եւ Գ. Փիսոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: 8° Երես՝ 82: Փր. 1.—

Է. Մառ Նիկ., Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ոնոփրիոս Անոփեան: 1892: 8° Երես՝ 89: Փր. 1.25

Ը. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Ժ+51: Փր. 1.—

Թ. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտ. Ա. 1794—1860: 1893: 8° Երես՝ 232 (Լուսանկարով): Փր. 2.50

Ժ. Կոնիբիր Ֆր. Կ., Քննութիւնք զրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Ց. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Է+92: Ֆր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: 1893: 8° Երես՝ Ժ+533 (1 զրնկատիպ.): Ֆր. 4.50

ԺԲ. Խաչաթեան Գր., Զենոբ Գլակ, Համեմատական ուսումնասիրութիւն: 1893: 8° Երես՝ 78: Ֆր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փարսադան, Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: 1894: 8° Երես՝ 103 (6 տախտակ՝ 55 պատկերով): Ֆր. 2.—

ԺԴ. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտ. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Ց. Վ. Տաշեան: 1894: 8° Երես՝ ԺԱ+43: Ֆր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Ց. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա. Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ. Փրոքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ. Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: 8° Երես՝ 9+145: Ֆր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք: Հտ. Ա. Ա—Զ: 1895: 3° Երես՝ ԺԲ+294: Ֆր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ի մի ամփոփուած եւ թարգմանուած հանդերձ ծանօթութեամբք: 1895: 8° Երես՝ 202: Ֆր. 2.50

ԺԸ. Տիռրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: 8° Երես՝ 192: Ֆր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Կերլա Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: 8° Երես՝ Թ+352: Ֆր. 3.60

Ի. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Վարդապետութիւն առաքելոց անվաւերական կանոնաց մատեանը, Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ կանոնք Թադդէի: 1896: 8° Երես՝ Թ+442: Ֆր. 6.—

ԻԱ. Տօմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հետազօտութիւն: Մասն Առաջին՝ Պատմական տեղեկութիւնք Սասնոյ վրայ: Թրգմ. Հ. Բ. Գ.: 1896: 8° Է+62: Ֆր. 1.--

ԻԲ. Կարրիէր Ա., Աբգարու զրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ. Թրգմ. Հ. Գաբրիէլ Վ. Մէնէվիշեան. 1897. 8° էջ ԺԶ.+107: Ֆր. 1.50

ԻԳ. Յովնանեան Հ. Ղ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ, Մասն Ա. Ռամկօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897, 8° էջ Ը+272: Ֆր. 4.—

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

ԼԳ.

# ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՔ

# ՆԱԽՆԵԱՑ ՌԱՄԿՕՐԷՆԻ ՎՐԱՅ

---

ՄԱՍՆ Ա. — ՏԵՏՐ Բ.



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1897.

# ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՔ

# ՆԱԽՆԵԱՑ ՌԱՄԿՕՐԷՆԻ ՎՐԱՅ

## ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ ԵՒ ՔԱՂՈՒԱԾՔՆԵՐ


ԳՐԵՑ

Հ. ՂԵՒՈՆԴ Վ. ՅՈՎՆԱՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ.


---

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

## ՌԱՄԿՕՐԷՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՏԵՏՐ Բ.

*Առակք, Ամիրտովլաթ Ամասիացի, Ախրապատին, Ասար Սեբաստացի եւ Նորագոյն բժշկական գրութիւնք:*




ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1897.

# ԱԶԴ

Հետազօտութեանցս Առաջին Մասին առաջին Տետրը քիչ ժամանակ յառաջ հրատարակուեցաւ՝ մեծարգոյ Հեղինակին մահուանէն քանի մ'օր ետքը, (տպ. Վիեննա, 1897, էջք 1—272։) Երկրորդ Տետրս շարունակութիւն է "Ռամկօրէն Մատենագրութեան„ կամ Առաջին Մասին Հետազօտութեանց. երկու Տետրները միասին մէկ ամբողջ կը կազմեն, որով նաեւ երկուքին իջաթիւք շարունակեալ են։ Տետրս կը սկսի ըստ այսմ 273 իջով։ Մինչեւ էջ 480 տպագրութիւնն եղած էր Հեղինակին կենդանութեան ատեն եւ անոր խնամովք։ Մնացեալը տպագրուեցաւ այնպէս՝ ինչպէս գտնուեցաւ պատրաստուած Հեղինակին թղթոց մէջ։

Անշուշտ կիսատ եւ թերակատար է այս վերջին կտորը, մանաւանդ "Նորագոյն Բժշկական Գրութիւնք„ հատածին "Այլեւայլք„ բաժինը։ Չուզեցինք որեւէ յաւելուած ընել գործքին վրայ՝ այս թերին լրացնելու համար. վասն զի պակասածն աննշան է։ Հեղինակն այնչափ երկար խօսած է ամէն կարգի Բժշկարանաց վրայ, որ քանի մը քաղուածոյ եւ կարեւորութենէ զուրկ մանր գրութեանց մասին լռելը վնաս չի բերեր գործքին կատարելութեան։ Աւելցընենք որ նաեւ Բունիաթայ, Ապուսայիդայ եւ Նորագունից լեզուի մասին հատածք՝ թէեւ Հեղինակին թղթոց մէջ ա՛յնչափ եւ ա՛յնպէս կը գտնուէին, ինչպէս տպագրուած են հոս, վերջնական խմբագրութեամբ չեն տակաւին, ուստի՝ հա-

մեմնատելով Հետազօտութեանցս միւս մասերուն՝ նոյնպէս թերակատար: Հեղինակին սովորութիւնն էր ամէն մէկ Հատած չորս հինգ անգամ գրել ու փոփոխել, մինչեւ որ վերջնական կերպարանք առնուր եւ արդիւնքը զոհ ընէր զՀեղինակն, պարագայ մ'որ յաճախ հազիւ շարուածքը քանի մ'անգամ սրբագրելէն եւ կրկին փոխելէն ետքը կը հանդիպէր: Այս ի գիտութիւն Հետազօտութեանցս գործածողներուն, եւ միանգամայն ցուցնելու՝ թէ որչափ խղճամիտ խնամովք աշխատած է Հեղինակն իւր գործքն՝ որոշեալ ծրագրին ու սահմանին մէջ՝ ըստ կարգի կատարեալ ընելու:

Երկու Տետրները կը բովանդակեն գրեթէ ամբողջ “Ռամկօրէն Մատենագրութիւնը„: Գրեթէ կ'ըսենք. վասն զի՝ ինչպէս Բանասիրաց անծանօթ չի կրնար մնալ, երկու մեծ Հատածք կը պակսին այս Տետրներուս մէջ, այսինքն Տաղաչափականք եւ Ռուսուռմեականք. երկու նիւթեր՝ որոնք ռամկօրէն գրականութեան գլխաւոր ճիւղերէն են, մանաւանդ առաջինը: Հեղինակը մտադիր էր ի սկզբան ասոնք ալ առնուլ երկրորդ Տետրիս մէջ: Բայց Տաղաչափութեանց Հատածին չափազանց ընդարձակուելովն՝ այլազգ տրամադրած էր, զայն առանձին գրքուկով ի լոյս հանելով՝ Հետազօտութեանցս իբր Գ. Տետր.: Ռամկօրէն Տաղաչափութեան Հատածն ալ լիակատար գրած էր, եւ արդէն տպագրութեան սկսած թէ “Հանդիսի„ մէջ խորագրովս՝ “Միջինդարեան ազգային Տաղաչափութիւն ռամկախառն„ (տես “Հանդէս„, 1895, էջ 305—10. անդ, 1896, էջ 52—55, 115—19) եւ թէ առանձին գրքուկով, որմէ երկու թերթք տպուած էին եւ երրորդը տպագրութեան պատրաստ էր՝ մինչեւ Հեղինակին մահը: Ձեռագիրը լիակատար եւ պատրաստ ըլլալով՝ այժմ ընդ մամլով այս մասն ալ շուտով լոյս կը տեսնէ: Պակաս կը մնայ միայն մէկ Հատած՝ Ռուսուռմեական գրուածոց մասին, որուն մէջ

պիտի հետազօտուէին սա նիւթերն, ինչպէս թղթի մը վրայ նշանակուած կը գտնենք. "1. Չիաղարմանութիւն. 2. Քիմիաքանութիւն. 3. Վասն Ականց պատուականաց. 4. Թուաբանական Առածք. 5. Վասն չափուց եւ կշռոց. 6. Աստղալապ. 7. Տոմարագիտականք. 8. Երաժշտական, Ախտարք, Վեցհազարեակ, եւն. 9. Արուեստ Երաժշտութեան:" Այս հարեւանցի նախագիծն ինքնին կը ցուցընէ թէ հետազօտութեանցս էական եւ հետաքրքրական հատածներէն մին էր պակասծը: Հեղինակին թղթոց մէջ քանի մը մանր մունր տեղեկութիւնք գրուած կան ասոնց ոմանց վրայ, բայց ո՛չ իբրեւ ամբողջական գրութիւն, նաեւ յիշելոց այս կամ այն բաժնին: Նկատելով նիւթին ստուգիւ կարեւոր եւ հետաքրքրական ըլլալը, բաղձալի է որ լրացուի այս թերին եւ դրուի գոնէ իբրեւ յաւելուած Տաղաչափականաց Տետրին վերջը:

Ընդ մամլով եղող յիշեալ Գ. Տետրով բոլորովին պիտի լրանայ "Ռամկօրէն Մատենագրութիւնն": Սակայն Հեղինակին ծրագիրն աւելի մեծ էր: Ինչպէս Տետրակներուս ճակատն ու ներածութիւնը, նոյնպէս ամէն էջի վերը տպուած բաժանմունք կը ցուցընեն որ այս ամէնը "Մասն Ա." միայն է հետազօտութեանցս: Ասոնց պիտի յաջորդէր Մասն Բ., թէեւ ո՛չ առաջնոյն չափ ստուար, գոնէ ամբողջին համար նոյնչափ եւ աւելի եւս կարեւոր: Առաջինը՝ Մատենագրութեան պատմութիւն է. երկրորդը՝ պիտի ըլլար լեզուի հետազօտութիւն, կամ Քերականութիւն Լեզուաց Ռամկօրէնի: Այս բուն կարեւոր մասն է, որուն թերի մնացած ըլլալը ցաւալի է: Ատաղձ առ նոյն պատրաստած է արդէն Հեղինակն՝ առաջին մասին մէջ յիշուած բոլոր գրութիւններէն քաղելով: Նոյն քաղուածքներն դասաւորուած ալ է՝ բազմաթիւ տետրներու մէջ բաժնելով նիւթերն ու օրինակներն՝ ըստ քերա-

կանական կարգի: Նաեւ կերպապէս յօրինել ձեռնարկած է. եւ վերջնականապէս աշխատսիրուած կը գտնենք Բ. Մասին ալ սկիզբէն բաւական քան՝ ընդհանուր տեսութիւն, բառակազմութիւն ռամկօրէնի եւ Հոլովմունք: Հասնելով գրեթէ մինչեւ Բայ, կը դադրի աշխատութիւնը. թողլով մնացեալը շարունակելու եւ լրացնելու քերականագէտ ճարտար ձեռքերու: Եւ կը բաղձայինք որ չպակսէր այսպիսի ձեռք մը՝ անգործ պատաղձը գործելու եւ կերպաւորելու: Ասով ոչ միայն հանգուցեալ Հեղինակին ձեռնարկութիւնը լիակատար աւարտած կ՚ըլլայ, այլ բուն հայ բանասիրութեան մեծ ծառայութիւն մը մատուցուած: Ռամկօրէն մատենագրութիւնն ու լեզուն անհրաժեշտ միջին օղակն է գրաբարին ու արդի լեզուին եւ բացարձակապէս կարեւոր հայ լեզուի պատմութեան համար հնէն ցնոր: Ռամկօրէնի լաւ Քերականութիւնն հարկաւոր կամուրջն պիտի ըլլայ Գրաբարի եւ Արդի լեզուի Քերականութեան: Ցուսանք որ թէ առաջնոյն եւ թէ մանաւանդ վերջնոյն հիմը ձգող Քերականը կանգնէ նաեւ երկուքն իրարու խառնող Միջինը:

ՀՐԱՏԱՐԱԿԻՉԸ

# ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՔ
# ՆԱԽՆԵԱՑ ԹԱՄԿՕՐԷՆԻ ՎՐԱՅ

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ
## ԹԱՄԿՕՐԷՆ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ
## ՏԵՏՐ Բ.

### 19.*
### Ը․ ԱՌԱԿՔ

Թամկօրէն Առակաց՝ որչափ գիտենք՝ չորս տպագրինք կան, որոց երեքն հրատարակեալ են Աղուեսագիրք անուամբ, իսկ չորրորդն՝ Հատընտիր Առակ Վարդանայ Վ․ի վերնագրով։ Հնագոյն տպագրութիւն Աղուեսագրոց՝ Ամստերդամինն է, զոր 1668ին հրատարակած է Ոսկան Վ․, երկրորդն՝ Մարսիլեայինն, որ տպուած է 1683ին "Սրբագրու-

* Հետազօտութեանցս Երկրորդ Տետրակը պարզ շարունակութիւն ըլլալով առաջնոյն, հոս կը շարունակուին Երկասիրութեանցս ոչ միայն իջաթիւքն (Տետր Ա, էջ 1-272), այլ նաեւ ամէն ուրիշ Բաժանմունքն: Առաջին Տետրին մէջ կը պարունակուին Նախաշաւիղն եւ Բաժանմունք Ա—Է (Ա. Ներսէս Շնորհալի, Բ. Մխիթար Հերացի, Գ. Փոնիոս Անատոլիոս, Դ. Հնագոյն Բժշկարանք, Ե. Սմբատ Սպարապետ, Զ. Հին ռամկագիրք Եկեղեցականք, Է. Դիւանականք) այս ամբողջը դարձեալ բաժնուած 1—18 Հատածներու: Ըստ այսմ Բ Տետրս կը սկսի Ը. Բաժանմամբ եւ 19 Հատածով:

ՀՐՏՐ.

թեամբ եւ չարաչարդութեամբ Մատթէոսի Վանանդեցւոյ. երրորդն կ'ըսուի տպուած 1698ին յէջմիածին (ըստ Հայկ. Մատենագիտ. էջ 24,) զոր ոմանք Կոստ. եւ կամ Լվովոյ տպուած կ'ըսեն: (Տես Բազմավ. 1881, էջ 192, եւ 1882, էջ 308:) Ունինք ի ձեռին երկու առաջինները, որ 164ական Առակ կը բովանդակեն, եւ յար եւ նման են միմեանց: Իսկ երրորդն չենք տեսած: — Հատընտիր Առակք կոչուածն՝ 45 Առակաց ժողովածոյ է, զոր 1825ին գաղղիերէն թարգմանութեամբ հանդերձ հրատարակած է Սէն-Մարգէն, քաղելով Փարիզի ազգային մատենադարանին Թ. 135 ձեռագրէն, որ օրինակեալ է յամին 1615, եւ 168 Առակ կը պարունակէ:

Ձեռագիր Առակք հասարակօրէն ամփոփեալ կ'ըլլան ի ժողովածոյ գիրս՝ որ Ոսկեփորիկ կը կոչուին եւ կը գտնուին առատութեամբ ամէն մատենադարանաց մէջ: Մեր մատենադարանին Ոսկեփորիկներէն վեցն ունին այնպիսի Առակներ, ոմանք մեծ բազմութեամբ՝ մինչեւ 340: Այս ձեռագրաց մէջ ուշադրութեան արժանի է Թ. 132 Ոսկեփորիկն որ փոքրագիր թանձր հատոր է բոլորգիր՝ 644 թերթով: Ըստ յիշատակարանին օրինակեալ է "Երուսաղէմ ի վանս սուրբ Աստուածածնի մերձ առ-դրունս Բեթղահեմի ի թուին ՋԻԲ.[1] = 1473: Բայց ի սոյն գլխաւոր յիշատակարանէն, որ ի վերջ կայ ձեռագրին (յէջն 623) կը գտնուի միեւնոյն գրչութեամբ, եւ յորում օրինակողն Աւետիք եպիսկոպոս կը կոչէ զանձն, կան երկու այլ համառօտ յիշատակարանք. առաջինն սկիզբները (յէջն 216) ճիշդ Առակներն սկսելէն յառաջ, յորում օրինակողն ինք զինքն Որոտակեց քահանայ կ'անուանէ. իսկ երկրորդն (զոր թերեւս իբրեւ վերնագիր նկատելու է) կը գտնուի (յէջն 420) Առակաց վերջին կողմերն, երկուքն ալ միօրինակ գրչութեամբ: — Այս ձեռագրին մէջ կան 170էն աւելի Առակք[2], որոց իբր կէսն Աղուեսագրոց մէջիններէն է՝ բայց տարբեր դասաւորութեամբ, եւ խառն այնպիսեաց հետ՝ որ նոյն հաւաքածոյին մէջ չեն գտնուիր:

Ամէն ազգաց մէջ ժողովրդական գրուածոց գլխաւոր եւ ճոխագոյն նիւթերէն մին է՝ ռամկաց դասը զուարճացընելով կրթելու նպատակաւ յօրինեալ բարոյական վէպք, որ սովորաբար ի բերան ժողովրդեան պտտելէն եւ նորանոր կերպարանք առնելէն ետեւ՝ ի գիր առնուած կ'ըլլան: Բայց կը գտնուին նաեւ այնպիսիներ՝ որ առանց այսպիսի շրջանաց՝ պարզապէս իբրեւ բանաստեղծի մի երեւակայութեան ծնունդ յերեւան կ'ելլեն: — Մեր մա-

---

[1] "Ի Հայոց թուականին ի ՋԻԲ. [illegible]" կ'ըսէ յիշատակարանն:

[2] Ձեռագրին միջերէն (109երորդ Առակէն, կէսէն) երեք թուղթ ինկած ըլլալով, չենք կրնար Առակաց թիւը ճշդիւ իմանալ:

*տենագրութեան մէջ եւս առատութեամբ իսկ կը տեսնուին այս կերպ մանր վէպք, որ թէպէտ այլեւայլ տեսակքեն, եւ ըստ զանազանութեան նիւթոյն՝ զատ զատ անուամբք իրարմէ զանազանուելու էին. սակայն առ մեզ սովորական եղած է առհասարակ ամէնուն ալ անխտիր Առակ կոչումը տալ։ Ուստի եւ մեր ժողովածոյից մէջ նոյն ընդհանուր կոչման ներքեւ խառն կը գտնենք բուն Առակներ* (Fables, Apologues), *իրական եւ առասպելեալ վէպեր* (Historiettes, Nouvelles), *սրբազան եւ արտաքին զրոյցներ* (Légendes) *եւ այլ նմաններ։*

*Ոչ հետաքրքրական միայն՝ այլ նաեւ բանասիրական հայեցմամբ մեծապէս կարեւոր էր իմանալ թէ երբ սկիզբն եղած է Առակաց ռամկօրէն լեզուաւ ի գիր առնուելուն, եւ ով է առաջին մատենագիրն որ իւր գրիչը նուիրած է այն տեսակ գրութեան. դարձեալ՝ թէ որո՞նք եղած են հետազհետէ անոնց թիւն աւելցընողները։ Բայց այս նկատմամբ չունինք որոշ եւ հիմնական տեղեկութիւն. միայն կայ ուրեք յիշատակեալ իբրեւ հեղինակ Առակաց՝ Վարդան անուամբ վարդապետ ոմն, որ հաւանաբար ի գիր առած է սակաւաւոր Առակներ՝ ի բերանոյ ժողովրդեան լամծներէն, որք տակաւ աճելով եւ բազմանալով՝ այժմու հաւաքածոյից մէջ մինչեւ ի մեր ձեռս հասած են։*

*Թէպէտ վերին տողերէն ինքնին կ՚իմացուի՝ թէ մեր խօսքն աստ ռամկօրէն կամ ռամկախառն Առակաց վրայ է միայն, սակայն եւ այնպէս ամէն թիւրիմացութեան յառաջն առնլու համար՝ կ՚ըսենք թէ որոշ եւ հիմնական տեղեկութեան պակասութեան մասին գրուածն՝ գրաբար Առակաց վրայ ալ չի տարածիր։ Այս յետինքս արդէն ուղղակի չեն վերաբերիր մեզի, այլ անուղղակի եւ այնչափ միայն՝ որ ասոնցմէ ոչ սակաւք իրենց գրաբար լեզուաւն խառնեալ կը գտնուին ռամկօրէն եւ ռամկախառն Առակաց հետ, եւ այն՝ գոգցես յամենայն հաւաքածոյս։ Ապա թէ ոչ՝ նոյն գրաբար Առակաց հեղինակք որոշ եւ յայտնի են։ Այսպէս ունինք ԺԲ. դարէն՝ Մխիթարայ Գոշի* 190 *Առակներն։ — Ունինք նաեւ*

յանուն Ողոմպիանու քանի մի Առակք, որոց գոնեայ հնգետասան առաջինքն ի հին ժամանակս թարգմանեալ են՝ Մխիթար Գոշէն դարերով յառաջ, եւ իրենց յատուկ վայելչութեամբն անփոփոխ պահեալ։ — Ըսինք հնգետասան առաջինքն, իմանալով ի տպագիրսն (Վենետ. 1842 եւ 1854) Ա. — ԺԵ. թուագրեալքն, որք ի ձեռագիր հաւաքածոյս ինչ եւս նոյն կարգաւ կը գտնուին, եւ որոց ընտիր լեզուն անժխտելի ապացոյց է անոնց թարգմանութեան մեծ հնութեան։ Իսկ ի տպագիրսն եւ ի ձեռագիրս ինչ անոնց յաջորդող ութ (ԺԶ. — ԻԳ.) Առակք նոյն հնութիւնը չունին, ըլլալով ոչ միայն ստորին լեզուաւ, այլ նաեւ ռամկախառն[1]։ Յոմանս ի հաւաքածոյից՝ թէ Մխիթարայ Գոշի եւ թէ Ողոմպիանու գրաբար Առակք (ինչպէս ի վեր անդր նշանակեցինք) աստ անդ սփռեալ կը գտնուին, ռամկօրէն Առակաց հետ խառնեալ, սովորաբար սկզբնագրերն անփոփոխ մնացած։

Մեր յատուկ նիւթոյն դառնալով, կ՚ըսենք թէ Առակաց ոչ միայն ամբողջ գումարութիւնն՝ այլ նաեւ մեծագոյն մի մասն չէ եւ չի կրնար ըլլալ միակ անձի եւ միեւնոյն ժամանակի գործ. որով եւ այժմու ամէն թէ տպագիր եւ թէ ձեռագիր հաւաքածոյից բովանդակութիւնն կ՚ըլլայ ըստ մեզ՝ յայլեւայլ անձանց եւ ի զանազան ժամանակս գրուած Առակներու խառն ի խուռն գումարութիւն։

Այս մեր տեսութիւնը կը հիմնենք այն զանազանութեան վրայ՝ որ կը դիտուի մեզի ծանօթ

[1] Մեր Թ. 56. Ա. Ոսկեփորիկն՝ Ողոմպիանու վերնագրաւ՝ հնագոյն հնգետասան վաւերականքն եւ ութ անվաւերականքն կարգաւ յառաջ բերելէն ետեւ, առանց զանազանութեան կամ բաժանման՝ կը շարունակէ մինչեւ յիսուն։ Ընդհակառակն Թ. 101. Բ. Ոսկեփորիկն՝ թէեւ Ողոմպիանու վերնագրէն յառաջ քանի մի Առակ կը դնէ, եւ նոյն վերնագրին ներքեւ բուն հնգետասանքն կարգաւ դնելէն ետեւ՝ քանի մի այլ Առակ կը յաւելու, բայց թէ նախընթացքն եւ թէ հետեւորդք՝ այլ ձեռագրաց նոյն հեղինակին ընծայած ութ Առակներէն տարբեր են։ (Տես նաեւ Նորայր, Հայկական Բառաքնն. էջ 51. եւ Մատենագ. Հայկակ. Թարգմ. էջ 648։) — Չենք խօսիր Ս. Եպիփանու անուամբ քանի մի հաւաքածոյից մէջ՝ իբրեւ առանձինն գրութիւն տեսնուող 66 գրաբար Առակաց վրայ. վասն զի անոնցմէ հազիւ մին կամ երկուքը կը նշմարուին ռամկօրէն Առակներու հաւաքածոյից մէջ։

*ամէն հաւաքածոյից մէջ՝ ըստ ամենայն հայեցմանց։ Չկայ եւ ոչ մին որ միւսոյն նման ըլլայ ըստ թուոյ՝ ըստ դասաւորութեան եւ ըստ նիւթոյ Առակաց. միայն մէջ միւսներէն կրկնապատիկ եւ եռապատիկ աւելի Առակք կը գտնուին. — առաջին հաւաքածոյին սկիզբները դրուածն՝ երկրորդն մէջերը կը դասէ, երրորդն՝ վերջերը. — յընդարձակագոյն հաւաքածոյին մէջ իսկ երբեմն կը պակսին այնպիսի Առակք՝ զոր կ'ունենայ համառօտագոյնն. — միեւնոյն Առակն մին կ'երկնցընէ՝ միւսն կը կարճեցընէ։*

*Քան զայս նիւթական զանազանութիւն՝ աւելի ծանրակշռութիւն ունի տարբերութիւնն ոճոյ, որ երկու հայեցմամբ կրնայ նկատուիլ։ — Նախ՝ միեւնոյն հաւաքածոյին այլեւայլ Առակաց մէջ։ Այսպէս յամենայն հաւաքածոյս կը հանդիպին իրարմէ տարբեր ոճով Առակներ. բոլորին մէջ զուտ կամ սակաւ մի ռամկախառն գրաբարէն սկսեալ՝ մինչեւ յետին դարուց ռամկօրէնն, ամէնն ունին երեւեցուցիչներ, որ առանց յօրինաւոր կարգաւորութեան՝ խառն ի խուռն իրարու կը յաջորդեն։ — Երկրորդ՝ նոյնպիսի տարբերութիւն բաւական յաճախ կը տեսնուի՝ յայլեւայլ հաւաքածոյս միանգամայն գտնուող միեւնոյն Առակաց մէջ, որ ի միումն զատ ոճով յառաջ բերուած կ'ըլլայ՝ քան ի միւսում*[1]։

*Կարծենք այս ամենայն յայտնի ապացոյց է Առակացս այլեւայլ անձանց գրութիւն ըլլալուն.*

---

[1] *Այսմ հակառակ չի կրնար համարուիլ Աղուեսագրոց երկու տպագրութեանց (անշուշտ նաեւ երրորդին) իրարու հետ նոյնութիւնն, որովհետեւ կամ երկուքն ալ միեւնոյն ձեռագրին վրայէն տպուած են եւ կամ մանաւանդ երկրորդն՝ առաջնոյն վրայէն։ — Յայտնի է թէ Ոսկանայ տպարանն Ամսդերտամէն՝* 1670*ին Լիվոռնոյ, եւ* 1673*ին Մարսիլիա փոխագրուած էր։ (Տես Պատմ. Հայ. դպր. Հտ. Բ. էջ* 302 *եւ* 306 . . .։) — *Չենք կարող աստէն ծածկել մեր կասկածն զոր ունինք Աղուեսագրոց Առակներուն ճշգիւ ըստ ձեռագրին տպուած ըլլալուն վրայ։ Վասն զի ամենածանօթ է թէ յայսմ մասին Ոսկան այնչափ երկիւղածութեամբ չի վարուիր։*

*որովհետեւ անոնցմէ շատ տարբեր՝ մանաւանդ թէ անոնց հակառակ հանգամանաց մէջ կը գտնենք այն Առակներն՝ որ միակ եւ որոշ անձէ մի գրուած են։ Յիշատակենք միայն Մխիթարայ Գոշի Առակներն։ Ունինք ի ձեռին երեք տպագիր եւ երկու ձեռագիր օրինակներ՝ յորս ամէնն ալ իրարու հետ նոյն են բոլորովին ըստ թուոյն, ըստ դասաւորութեան, ըստ նիւթոյն, ըստ լեզուին եւ ըստ չափոյն։ Արդ՝ ինչպէս ասոնց իրարու հետ ճիշդ նոյն ըլլալէն կը հետեւցընենք՝ թէ միեւնոյն գրչի գործ են, նոյնպէս ռամկօրէն Առակներուն իրարմէ տարբեր ըլլալէն ի հարկէ պէտք է հետեւցընել՝ թէ զանազան գրչաց գործք են։ Առաջինք՝ իբրեւ առանձնական ստացուած՝ սրբազան կը համարուին եւ ոչ ոք կը համարձակի ձեռնամուխ լինել. իսկ վերջինք իբրեւ անտէրունչ ինչք կամ իբրեւ հասարակաց ստացուած նկատուելով, ամենայն ոք կը համարի իրաւունք ունենալ ըստ հաճոյից փոխելու, աճեցընելու, նուազեցընելու։*

*Տեսնենք քանի մի օրինակներ։*

*Ա. Այրի կին մի ունէր տղայ մի, եւ սկսաւ տղայն գողանալ միրգ եւ բանջար։ Եւ մայրն առեալ ճաշակէր, եւ ոչ խրատէր զտղայն ի կամս Աստուծոյ։ Եւ նա եւս աճեցոյց զգողութիւնն, բերէր անասունս եւ անօթս, եւ այր եղեալ՝ եղեւ աւազակապետ ի լերինս եւ բազում չարիս առնէր։ Եւ կալեալ տարան զնա ի կախել։ Եւ ասէ. Բերէք զմայր իմ, զի համբուրեցից զնա. եւ յորժամ բերին՝ խածեալ եհատ զքիթ մօրն։ Եւ ասէ թագաւորն. Ո՛ չար, ընդէ՞ր հատեր զքիթ մօր քոյ։ Եւ նա ասէ. Զի ոչ խրատեաց զիս ի տղայութեան ի կամս Աստուծոյ, որ չէի յայս վիշտս անկեալ. յիրաւի արարի զայն։ Եւ թագաւորն հրամայեաց զնա արձակել եւ զմայրն կախել։*

*Բ. Գայլն եգիտ էշ մի գէր, եւ կամեցաւ ուտել զնա։ Ասէ էշն ընդ գայլն. Աղաչեմ զքեզ՝ վասն Աստուծոյ հան զայս խոցս յոտից իմոց, եւ ապա կեր զիս, զի Աստուած ետ զիս ի ձեռս քո։*

քանզի բեւեռ չար հասաւ ի յոտս իմ եւ տանջէ զիս։ Անցեալ գայլն յետեւ իշուն, զի հանցէ զբեւեռն. եւ էշն ամենայն զօրութեամբն կից եհար եւ էղարկ զբերան գայլուն եւ կոտրեաց զկզակն, եւ ինքն փախեաւ։ Գայլն նստեալ լայր եւ արտասուէր՝ թէ Արժանի եմ ես այս չարիս՝ որ եկն իմ անձինս վերայ. զի ես մսագործ էի, զիս բայտար ո՞վ արար։

Գ. Մրջիմն անկաւ ի ջուրն եւ կամէր խեղդուիլ Գայ աղաւնին եւ ձգէ զթեւն ի՝ վերայ ջրին եւ հանէ զմրջիմն։ Եւ ահա ի նոյն ժամն հաւորսն ձգեաց զգործին եւ կամեցաւ որսալ զաղաւնին։ Գայ մտանէ մրջիմն յերանս նորա եւ էխած. եւ ի կսկծոյն ի վեր վազեաց (հա—ուրան) մորմոքեալ։ Եւ շարժեցաւ եղէգն եւ վարմն. եւ աղաւնին թռեաւ եւ ապրեցաւ ի մահուանէ։ — Մահու չափ աղէկութիւն արա եւ ջանք այն մարդոյն՝ որ քեզ լաւութիւն է արարեալ։

Դ.

Ասի յառակաց թէ թագաւոր մի կայր՝ որ ունէր իւրն սիրելի զօձ մի, որ յամէն օր կարմիր դեկան մի բերէր թագաւորին։ Եւ եղեւ որդի մի թագաւորին նոր ծնեալ. իսկ թագաւորն զմանուկն սնուցանէր ի վերայ բարձացն, եւ առեալ զօձն արկանէր զպարանոցաւ մանկանն։ Եւ այնպէս սովորեալ օձն եւ մանուկն՝ խաղային ի միասին, եւ այսպէս ժամանակս ինչ սիրով խաղային առ իրեարս։ Իսկ յորժամ մեծացաւ մանուկն, կապեալ սուր ընդ մէջ իւր՝ յաւուր միում ի խաղալն իւրեանց՝ հանեալ մանկանն զսուրն եհար զտուտն օձին եւ ընկեց յերկիր։ Ցայնժամ զայրացեալ օձին՝ եհար զնա, եւ ինքն փախեաւ։ Մեռաւ որդի թագաւորին։ Իսկ յետ սգոյն եւ մխիթարութեան, առաքեաց թագաւորն որ գտանեն զօձն, եւ աղաչէին զնա գալ ի տեղի բնակու-

Օձն բնակէր ի տուն թագաւորին, եւ որդի թագաւորին խաղայր ընդ նմա։ Եհար տղայն զտուտն օձին, եւ օձն եհար զնա եւ փախեաւ։ Մեռաւ որդի թագաւորին։ Իսկ յետ սգոյն եւ մխիթարութեանն՝ առաքեաց թագաւորն որ գտան զօձն, եւ աղաչէին զնա գալ ի տեղի բնակութեանն իւրոյ։ Եւ ասէ. Ո՛վ բարի թագաւոր, անդէպ է ինձ գալ առ քեզ. զի քանի որ հայիս դու ի գերեզման որդոյ քոյ, եւ քանի հայիմ ես ի տուտս իմ, ոչ սրբի մախանքն ի սրտից (Վերոյ). ապա այս բարի է՝ որ հեռացայ ի քէն։

*թեան իւրոյ։ Եւ ասէ օձն. Ո՛վ բարի թագաւոր, անդէպ է ինձ գալ առ քեզ. զի քանի որ հայիս դու ի գերեզման որդւոյ քո, եւ քանի որ հայիմ ես ի տուտնս իմ, ոչ սրբի մախանքն ի սրտից մերոց։ Այպա այս բարի է՝ որ հեռացայ ի քէն։*

*Ե· Պաղտատու խալիֆային բաղում զօրօք գայր ի քաղաքն մտանել. ետես ծեր մի՝ զի արմաւենի տնկէր։ Ասէ թագաւորն՝ թէ Ծե՛ր դու, ընդէ՞ր աշխատիս, որ ի քառասուն տարին ապա թէ պտուղ կու տայ. դու այսօր կաս եւ վաղն մեռանիս։ Ասաց ծերն. Ո՛վ բարի թագաւոր, մի այլ տնկեաց, եւ ես կերայ. ես այլ կու տնկեմ, զի մէկ այլ ուտէ։ Իսկ թագաւորն հազար ոսկի երետ նմա այս բանիս համար։ Եւ յորժամ էառ ծերն, յոյժ գոհացաւ զԱստուծոյ։ Ասէ թագաւորն. Ընդէ՞ր գոհացար դու։ Ասաց ծերն՝ թէ Ո՛վ թագաւոր, ամէն մարդոյ ծառ քառասուն տարին ապա պտուղ կու տայ. իսկ իմ ծառս մէկ օրն պտուղ ետուր. վասն այն գոհացայ։ Եւ հազար ոսկի այլ երետ այսմ բանիս. եւ նա դարձեալ գոհացաւ։ Ասէ թագաւորն. Ընդէ՞ր դարձեալ գոհացար։ Ասաց՝ թէ Ո՛վ բարի թագաւոր, ամէն մարդոյ ծառ տարին անգամ մի պտուղ կու տայ. ապա իմ ծառս մէկ օրն երկու անգամ պտուղ ետուր. ընդէ՞ր ոչ գոհացայց։ Եւ թագաւորն յոյժ սիրեաց զնա, եւ տարեալ կացոյց զնա վերակացու տանն իւրոյ, զի խրատեսցէ զմանկունս թագաւորին։*

*Զ· Եհարց թագաւոր մի ցիմաստասէր իւր եւ ասէ՝ թէ Ցի՞նչ իրք վստահանալ պարտ է մարդոյ։ Ասէ իմաստասէրն. Ամենայն իրաց վստահ լեր՝ զատ ի մարդոյ։ Ասէ թագաւորն՝ թէ Ո՞րպէս։ Ասէ իմաստասէրն. Ի ճանապարհի մի վերայ ջրհոր մի կայր ցամաք, եւ ի յայն ջրհոր կայր մայմուն մի եւ վագր մի եւ օձ մի. եւ յետոյ անկաւ մարդ մի այլ՝ որ արուեստիւն ոսկերիչ էր։ Եւ եղեւ ժամանակ զի էանց ընդ այն ճանապարհն բարի եւ առաքինի մարդ մի, եւ ետես զնոսա անկեալ ի հորն։ Ասէ ի միտս իւր՝ թէ Առնեմ բարութիւն եւ հանեմ զնոսա ի հորոյն։ Ձգեաց պարան, եւ ելաւ մայմունն եւ յետ նորա վագրն եւ ապա օձն։ Եւ հանել կամէր զմարդն։ Ասեն գազանքն՝ թէ Մի հաներ զդա, զի վատ մարդ է, եւ քո բարեացդ չար կու հատուցանէ։*

Եւ նա ոչ լուաւ նոցա, եւ եհան զայն մարդն, Ցայնժամ ասացին՝ թէ Մեր բնակութիւնս այս անուն քաղաք է. յորժամ դու գաս այն քաղաքն՝ նա զքո աղէկութիւնդ վճարեմք։ Եւ ոսկերիչն այլ ասաց՝ թէ Ես այլ ի յայն քաղաքն եմ. յորժամ գաս՝ զքո աղէկութիւնդ վճարեմ։

Եւ յետ ժամանակի դէպ եղեւ այն բարի մարդոյն երթալ ի յայն քաղաքն։ Հանդիպեցաւ նմա կապիկն եւ ասէ. Բարի՛ եկիր, ապրեցուցիչ իմ. եւ տարաւ զնա յօթեւանս իւր, եւ եբեր միրգս գեղեցիկս եւ եդ առաջի նորա։ Եւ վագրն ետես զմարդն, եւ նա եւս ասէ նմա այսպէս. եւ գնացեալ եբեր թագաւորի դարպասէն ոսկի եւ ակունք եւ ետուր օժիտ մարդոյն։ Ասէ մարդն ի միտս իւր. Ի գազանացս այսչափ աղէկութիւն տեսայ, ապա մարդն որչափ աղէկութիւն պիտի առնէ։ Արդ երթայց առ ոսկերիչն այն, տամ զոսկին եւ զակունքն ի նա, որ վաճառէ որպէս եւ գիտէ։ Եւ գնացեալ եցոյց նմա զամենայն. եւ նա տեսեալ՝ ասէ ի միտս իւր. Երթամ եւ պատմեմ թագաւորին, եւ առնում պարգեւս ի նմանէ։ Եւ եդեալ առաջի նորա սեղան եւ ասէ ցնա. Դու կեր եւ արբ եւ ուրախ լեր ի տուն իմ. եւ ես երթամ հոգամ զքո բանն։ Գնացեալ առ թագաւորն եւ ասէ. Գտի զքո ոսկին եւ զակունս գողացեալս։ Եւ առաքեաց զօրական եւ բերին զայն բարի մարդն, եւ հրամայեաց տանջել զնա եւ յետոյ սպանանել։ Եւ յորժամ տանջիւր, ասէ ի միտս իւր. Եթէ լսեր էի գազանացն եւ ոչ հանեալ էի զայս մարդս, ոչ էի մատնեալ։ Ետես վագրն զաղէտ մարդոյն, զի տանջեն զնա։ Ասէ օձն՝ թէ Մի հոգար. առ այս ինչ տերեւ ի քեզ. եւ ես երթամ խայթեմ զդուստր թագաւորին. եւ դու ասա՝ թէ Ես կարող եմ բժշկել զդուստր թագաւորին, եւ տար դիր զտերեւն ի վերայ վիրին եւ տուր սակաւ մի ուտել, եւ դիւրաւ բժշկի։ Եւ արար այնպէս. եւ ազատեցին զաղջիկն. եւ թագաւորն ազատեաց զայն բարի մարդն եւ ետ նմա զդուստր իւր։ Եւ պատմեաց (մարդն) թագաւորին զեղեալս ստուգապէս։ Եւ հրաման ետ թագաւորն կանչեցուցանել ի քաղաքն՝ թէ Ով որ աղէկութեանն վատութիւն առնէ՝ նա այսպիսի պարտ է լինել. եւ հրամայեաց չարաչար սպանանել զոսկերիչն։

Է. Այր մի ելանէր ի դժուար դար մի վեր ի տօթ ժամանակի. յոյժ աշխատեցաւ եւ սկսաւ բամբասել զԱդամ եւ զԵւա՝ թէ Ե՞ր անկայք ի դրախտէն անհամբերութեամբ ձերով: Եւ երեւեալ հրեշտակին՝ ասաց. Թէ տանիմ զքեզ ի դրախտն՝ դու համբերե՞ս: Եւ ասաց՝ թէ Ե՛րբ լինի այդ: Եւ յանկարծակի քուն ի վերայն անկաւ. եւ տեսեալ զինքն ի դրախտին՝ յոյժ ուրախացաւ: Եւ ետես զի մարդիք զողջայ ծառերն ի վայր տային. եւ չհամբերեալ՝ ասաց թէ Այդ ի՛նչ աներկիւղ մարդիք էք, որ զչորն եւ զգօսացած թողեալ էք, եւ ողջայ եւ զմատղաշ ծառերն ի վայր կու տայք: Եւ բացեալ զաչսն՝ ետես զինքն ի դարն ի վեր եւ զաղն ի շալակն Զօռուլով, եւ սկսաւ լալ: Դարձեալ ետես զհրեշտակն եւ ասաց. Ա՛յլ չխօսիմ: Եւ տեսեալ զինքն ի դրախտին, եւ տեսանէր զմարդիկ՝ զի զփուշ եւ զճիւղս ծառոց շալակ դնէին, եւ չէին կարել շալկել՝ նա կու շատցնէին: Եւ չհամբերեաց, եւ ասաց. Ո՛վ անմիտք, թեթեւացուցէք, որ կարէք շալկել: Եւ դարձեալ հրեշտակն տարեալ զինքն ի դրախտն, եւ տեսեալ վէմ մի մեծ, եւ երկոտասան լուծք լծեալ ի նմա, եւ ամէն մէկ յիւր դիմացն քարշէր. եւ վէմն չէր շարժիլ: Եւ չհամբերեաց եւ ասաց. Ո՛վ անմիտք, ամէնքդ ի մէկ դիմաց լծեցէք, զի խախտել կարիցէ: Եւ բացեալ զաչսն՝ ետես զինքն ի դարն ի վեր, եւ զաղն ի շալակն:

Ը. Ասի յառակաց թէ այրի ոմն ունէր տասն այծ, եւ ունէր որդեակ մի: Որդին այն ամէն աւուր տանէր արածէր զայծերն զայնօսիկ եւ բերէր: Իսկ մայրն կթէր զայծերն, եւ ամէն օր շերեփ մի ջուր լնուր ի կաթն եւ ի խառն[1] տայր: Եւ ասէ որդին ցմայրն՝ թէ Մա՛յր, է՞ր կու առնես զայդ վնաս բանդ, որ զջուրն ի կաթն կու լնուս եւ ի խառն[1] կու տաս: Ասէ մայրն՝ թէ Ո՛րդի, մեր կաթն քիչ է, այնոր համար կու առնեմ թէ քիչ մի աւելի լինի մեր կաթն, որ մեզ ձմերանս թացան լինի: Իսկ յաւուր միում, մինչդեռ արածէր մանուկն զայծերն՝ փոքր մի ամպ ծնաւ երկինքն եւ եկ անձրեւ, եւ ել հեղեղ եւ տարաւ զայծերն ելից ի գետն: Իսկ մանուկն եկն յարեւու առ մայրն դատարկ եւ միայն փայտն ի ձեռքն: Ասէ մայրն. Ո՛րդի, ո՞ւր է այծերն եւ

զհա՛րդ յարեւու եկիր այսօր։ Ասէ որդին. Մա՛յր իմ, այն շերեփ ջուրն որ ի կաթն խառնէիր եւ ի խաբ[1] կու տայիր՝ նա ժողովեցաւ եւ հեղեղ դարձաւ, եւ եկ զմեր այծերն տարաւ ի գետն ելից։

1. Այս բառն՝ ուրեք ուրեք խաղ եւ խաֆ ալ գրուած է։

Թ. Թագաւոր մի կայր եւ մէկ որդի ունէր. եւ հրամանք արար նոյեղնոյն, թէ Ամէն նոյեղ մէկ օր զիմ որդին ի պատիւ տարէք. եւ նոքա տանէին։ Եւ օր մի մէկ նոյեղն ի պատիւ տարաւ. եւ յերիկունն եբեր ի դուռն եմոյծ եւ գնաց։ Եւ որդի Թագաւորին խիստ գինով էր, եւ ի բազիա[1] ելաւ, եւ գինին ի վերայն շրջեցաւ, եւ անկաւ ի կտուրն ի վայր եւ մեռաւ. եւ ի մէկայլ օրն գտին մեռեալ։ Եւ Թագաւորն հրամ արար՝ թէ Զինչ յիմ իշխանութիւնս այգի կայ, զամէնն քակեցէք եւ զկարասնին կոտորեցէք. զի կորստեան պատճառ որդւոյն իմոյ գինին եղեւ։ Եւ այրի կին մի մէկ որդի ունէր. զհւր հնձանն փլոյց ի վերայ կարսին եւ զգինին պահեաց. եւ յամէն վաղուենէ եւ յերիկուն ի վերայ հացին՝ մէկ երկու բաժ կու տայր որ խմէր որդին։ Եւ գիշեր մի ի դուրս ելաւ, եւ զԹագաւորին զառիւծն սպաննեց։ Եւ Թագաւորն վաղիւն կանչեցոյց՝ թէ Զիմ առիւծն ով սպաներ է՝ թող գայ, որ իւրն աղէկ առնեմ։ Երեկ այրի կինն եւ որդին։ Հարցաւ Թագաւորն՝ թէ Ի՞նչ ցեղ կարացիր զառիւծն սպանանել։ Եւ ասաց մայրն՝ թէ Գինով եմ սնուցեր։ Եւ հրամանք եհան Թագաւորն՝ թէ Այգի տնկեցէք. ապա զգինին հանց խմեցէք, որ զառիւծն սպանանէք. չլինի թէ յղփանաց խմէք՝ որ մեռանիք իբրեւ զիմ որդի։

1. Այսպէս մեր երկու ձեռագրոց մէջ. իսկ ի Բազմ. 1870. էջ 263, բաղէ, որ կը մեկնուի՝ խաղալու, պարելու։

Ժ. Հրեշտակն ասաց ընդ ջաղացպան մի՝ թէ Ապաշխարէ տասնուհինգ տարի, որ արդարանաս, ապա զհոգիդ առնում։ Եւ ասէ ջաղացպանն. Այսպէս առնեմ։ Եւ գնաց ի տունն, եւ ասէ. Տասնուհինգ տարին շատ է. զտասն տարին ուտեմ եւ խմեմ, հինգ տարին ապաշխարեմ։ — Եւ ասէ. Զչորս տարին ուտեմ եւ խմեմ, եւ մէկ տարին ապաշխարեմ։ — Եւ ասէ. Զտասնումէկ ամիսն ուտեմ, եւ զմէկ ամիսն ապաշխարեմ։ — Եւ ասէ. Զքսանուհինգ օրն ուտեմ, եւ զհինգ օրն ապաշխարեմ. Աստուած ողորմած է։ Եւ ելաւ հինգ օրն եւ ելաւ տասնուհինգ տարին. եւ ոչ ապաշխա-

րեաց։ Եւ ասէ ջաղացպանն. Զոր հրեշտակն ասաց՝ ես ոչ արարի. եւ այժմ գայ եւ գտանէ զիս, եւ մեռանիմ մեղօք, եւ ամօթով լինիմ։ Եւ ասէ. փախչիմ երթամ յԱրապկերուն աշխարհն եւ լինիմ ըղտապան, եւ գայ հրեշտակն եւ զիս ոչ ճանաչէ։ Եւ ջաղացպանն կապեաց զմազն ցից ի վեր, եւ եդիր կարմիր գդակ մի ի գլուխն, եւ զերեսն մրով սեւեց, եւ երթայր ի ճանապարհ։ Եւ հրեշտակն մարդակերպ երեւեցաւ եւ ասէ. Բարի գաս, եղբայր։ Եւ նա ասէ. Աշբախուլ. յարապկերէն ասէր՝ թէ Ի՞նչ կուզես (ի՞նչ կասես)։ Եւ հրեշտակն թոյլ ետ, որ գնաց սակաւիկ մի։ Եւ հրեղէն հրեշտակակերպ երեւեցաւ, եւ հրեղէն սուրն ի ձեռն. եւ ջաղացպանն զարհուրեցաւ եւ դողաց ոսկերքն ամենայն, եւ կարկեցաւ եւ այլ ոչ կարէր գնալ։ Եւ ասէ հրեշտակն ընդ ջաղացպանն. Ես քեզ ասացի՝ թէ Ապաշխարէ տասնուհինգ տարի, որ արդարանաս եւ սրբիս ի մեղաց, եւ սպիտակ երեսօք գաս յարքայութիւն։ Չեկիր սպիտակ երեսօք յարքայութիւն, այժմ եկ սեւ երեսօք ի դժոխքն։

ԺԱ. Այր ոմն հազար խոզ էած ի մին տեղի եւ պարիսպ էած շուրջ, եւ իշանով կորեկ եւ գարի բերէին եւ բտէին զխոզքն։ Նա իշուանն ի բանէն երբ գային, եւ քուռկնին երթային մօտ ի խոզերն՝ թէ ուտենք ի կորեկէն կամ ի գարոյն, եւ պահապանքն ոչ թողուին, այլ ի կառափն հարկանէին։ Եւ յորժամ իշանն գային՝ նա քուռկնին գանկատէին՝ թէ Խոզերուն անխնայ կուտան թէ կերէք, եւ մեք սովալլուկ կու լինիմք։ Եւ ասեն իշանին ընդ քուռկնին՝ թէ Համբերեցէք. այն խոզերն որ կուտեն՝ նա պիտի վճարեն զամենն զինչ կերեալ են։ Եւ անցաւ աւուրք ինչ. եւ ահա եկն թագաւորն, նստաւ ի վերայ պարսպին, եւ հրամայեաց որ զամէն խոզերն կապէին եւ ընդ մէջ կտրէին։ Եւ սկսան կապել եւ կտրել ընդ մէջ։ Եւ սկսան խոզքն բողոք արկանել եւ ճիչ բառնալ, եւ ճչէին առաւել քան զայլ կենդանի։ Եւ ասեն քուռկնին ընդ իշանին՝ թէ Այն ի՞նչ ձայն է։ Եւ ասեն՝ թէ Կու վճարուին ի խոզերոյն զոր կերեալ են։ Եւ տեսեալ քուռկնոյն զտանջանսն, եւ կանչեցին եւ անկան ի յոտս իշանոյն եւ ասեն՝ թէ Վասն Աստուծոյ տեսէք՝ թէ գարեհատ ի կճղակմիջերս չլինի կպեր

կամ կորեկհատ ի կտնակնիս։ Եւ ասեն մայրերն ընդ քուռակնին՝ թէ Մի՛ վախէք. ով կերեալ է՝ նա պիտի վճարէ. դուք մի՛ հոգայք։

ԺԲ. Մկներն ասացին ընդ իրար՝ թէ Այդ ե՞ր է, որ մեք ոչ «ւլեհ ունիմք եւ ոչ եղջիւր, եւ կատուն զմեզ դիւրաւ կալնու։ Եւ մկունքն սրեցին փայտ եւ կապեցին ի գլխընին, որ թէ կատուն գայ՝ նա մեք կռուիմք, որ ոչ առնու զմեզ։ Եւ ահա եկն կատուն, եւ մկունքն փախեան եւ ընդ ծակն ի ներս մտան։ Եւ այն որ զփայտն եղջիւր էին կապեալ, ոչ կարացին մտանել ընդ ծակն, այլ կատուն կալաւ զնոսա եւ կերաւ։

ԺԳ. Աբրահամ յորժամ տղայ էր՝ նա հայր նորա կուռք շինէր։ Յաւուր միում բարձեալ էր Աբրահամ զկուռքն պարկով ի վերայ իշոյ եւ կու տանէր ի ծախ. եւ էշն ընկաւ ի շաղխին մէջ, եւ կուռքն ամենայն ջարդեցան եւ շաղախ եղեն։ Եւ Աբրահամ խիստ բարկացաւ եւ վախեց ի հօրէն եւ ասաց կռոցն. Վա՜յ ու եղուկ ի վերայ ձեր. ի՞նչ աստուած էք դուք, որ չպահեցիք զձեզ ի յայսմ շաղախէս։ Ո՞րպէս պատասխանի տվից հօրս, կամ որպիսի՞ օգնականութիւն գտից ի ձէնջ։ Բարկացաւ յոյժ եւ զամէնն ջարդեաց եւ ի շաղախն ընկղմեաց, եւ ասաց. Այսոր էք արժանի, որ ի շաղխիդ մէջն պառկիք։ Եւ գնաց ի տուն իշովն սրտնեղ եւ դառնացեալ յոյժ։ Եւ տեսեալ հօրն՝ Թարայի՝ զորդին սրտնեղ եւ դառնացեալ յոյժ, ասաց Աբրահամու. Ի՞նչ սրտնեղ ես։ Պատասխանի ետ հօրն եւ ասէ. Գնացի՝ ի մէկ շաղխիմն հանդիպեցայ ի ճամբանն, եւ էշն իմ ոչ կարաց անցանել. ընկաւ էշն շաղախի մէջն եւ մեր չաստուածքն կոտորեցան. եւ ես սրտնեղեցայ եւ բարկացայ յոյժ, եւ ասացի ցնոսա՝ թէ Ձեր զօրութիւն այս է։ Քարեր առի ի ձեռս եւ զամէնն ջարդեցի, եւ դատարկ եկի ի տուն։ Եւ ասէ ցհայրն. Այդ մեր աստուածոցն զօրութիւն ի՞նչ է՝ որ զմէկ էշն չպահեց, որ ի շաղխին անցել էր ու ինքն չէր կոտրել, երբ որ ինքն զինքն չկարաց պահել, ապա մեզ ի՞նչ պիտի օգնէ։ Ասաց հայրն. Որդի, դու ուղիղ կացիր։

ԺԴ. Այգի կայր իւրեանց։ Ասաց հայրն Աբրահամու. Ո՛րդի, գնա զայգին պահէ, որ ճայեկներն չուտեն։ Գնաց Աբրահամ ի այգին, եւ

*ետեւ որ խիստ վրայն թափել էր ճայեկներն եւ կուտէին զխաղողն։ Զայն եած Աբրահամ եւ ասաց. Ճայեկներ, իմ հայր Աստուած կու շինէ. եթէ նա է ստեղծել զձեզ, նոցա զօրութեամբ հրամանք կանեմ ձեզ, որ այլ չուտէք զմեր խաղողն։ Ապա թէ այլ Աստուած կայ՝ որ զմեզ ստեղծել է եւ զձեզ, որ զերկինք եւ զերկիր ստեղծել է, նա է ճշմարիտ Աստուած երկնի եւ երկրի. Նորա զօրութեամբ թռչիք եւ երթայք։ Ասել բանին՝ վերացան ճայեկներն, նա Աբրահամ հիացաւ, եւ ի վեր ամբարձ զաչս իւր եւ ասաց. Թագաւոր երկնի եւ երկրի, դու ես ճշմարիտ Աստուած։ Մինչեւ զխաղողն կթեցին, այլ ոչ ճայեկմն չնստաւ եւ ոչ անցաւ ի այն այգոյն վերայ. մինչեւ մեծ զարմանալեօք կու զարմանային եւ հիանային այլ եգեպաննին ի յայն տեղն։ Հաւատաց Աբրահամ ճշմարիտ հաւատով զԱստուած։*

Այնպէս կը համարինք որ այս օրինակօք լիովլ արդարացած ըլլայ մեր տեսութիւնն՝ թէ Առակացս ոչ միայն ամբողջ գումարութիւնն՝ այլ նաեւ մեծագոյն մի մասն չէ եւ չի կրնար ըլլալ միակ անձի գործ։ Վասն զի շատ դժուար է որ միեւնոյն հեղինակն միեւնոյն պարագայից մէջ այնչափ տարբեր տարբեր ոճերով գրէ՝ որչափ իրարմէ տարբեր ոճով են սոյն օրինակք։ Ինչպէս ամենայն ոք կը տեսնէ, առանցմէ մին (Ա.) գրեթէ զուտ գրաբար է. անկէ ետեւ եկողներէն՝ ոմանք (Բ.—Զ.) սակաւ մի ռամկախառն գրաբար են. յաջորդներէն՝ չորսն (Է.—Ժ.) աւելի ռամկախառն՝ մանաւանդ թէ գրաբարախառն ռամկօրէն. իսկ վերջիններն (ԺԱ.—ԺԴ.) բոլորովին ռամկօրէն, այնչափ միայն գրաբար բովանդակելով՝ որչափ գոգցես ամէն ռամկական գրութիւն սովորաբար կը բովանդակէ։

Սակայն եւ այնպէս՝ որովհետեւ կայ շատ տարածեալ կարծիք թէ Վարդան Վ. Արեւելցի է անոնց հեղինակն, զոր ուրեք ուրեք հաւաքածոյից յիշատակարանք կամ վերնագիրք եւս կը հաստատեն, աւելորդ չենք համարիր նոյն խնդիրն հետազօտել։

Երեք այսպիսի յիշատակարանք կամ վերնագիրք ծանօթ են մեզի, եւ հարկաւ անոնց վրայ սահմանաւորուելու են հետազօտութիւնքս։

Առաջին Յիշատակարանն կամ վերնագիրն է մեր Թ. 132 Ոսկեփորիկին մէջ գտնուածն։ Յայսմ ձեռագրի, ինչպէս տեսանք Հանդիս սկզբնական տեղեկութեան մէջ (էջ 274), առաջին եւ վերջին յիշատակարանէն զատ կայ (յէջն 420) միջին կամ երկրորդ մ'ալ 141ᵈ Առակին կից ի մարմնի ձեռագրին, եւ է այս. «Գիրք առակաց Սողոմոնի (՞՞) ասացեալ սուրբ Վարդապետին Վարդանայ, ի պէտս հոգւոյ եւ մարմնոյ, զոր ծուլամիտս գրեցի մեղաւորս Վարդան ի Զորս միանձանց առ հոգեւոր որդ(ւո)յ իմ »։ — Թէ այս համառօտ ծանօթութեան մէջ իբրեւ հեղինակ Առակաց նոյն հաւաքածոյին նկատուած Վարդան Վ. ոչ այլ ոք է՝ բայց եթէ Այգեկցի կամ Մեծ վերադիրներով իմացուածն, կը տեսնուի անոր տրուած սուրբ վերադրէն, որ առանձինն իմն իրեն յատկացեալ է[1]։ (Տես ի վերջ կոյս Հանդիս։)

Երկրորդ վերնագրին վրայ խօսեցանք նախընթացին ծանօթութեան մէջ։

---

[1] Յայտնի կ'երեւայ թէ այս յիշատակարան չէ յաւելուած բուն մեր ձեռագրին օրինակողներուն (Ռըստակէս քահանային կամ Աւետիք եպիսկոպոսին,) այլ անփոփոխ պահուած եւ ճշդիւ օրինակուած է անոնց սկզբնագիր օրինակին մէջ գտնուածն։ — Այս ինքնին յայտնի է. բայց չէ այնչափ դիւրին իմանալ՝ թէ արդեօք նոյն տեղեկութիւնն իբրեւ յիշատակարան առնուելու է նախընթաց 141 (146ᵒ) Առակաց, թէ իբրեւ վերնագիր յաջորդ 30 Առակաց։ Եթէ իւրաքանչիւր մասին պարունակութեան նայինք, պէտք է ըսել թէ նախընթացներուն յիշատակարանն է. — որովհետեւ ասոնց մէջ կը գտնուին Սէն-Մարդէնի հրատարակածներուն կէսէն աւելին, ուր՝ յաջորդ Առակաց մէջ հազիւ քանի մի հատ կան անոնցմէ։ Սակայն բոլորովին անհաւանական չէ նաեւ յաջորդ Առակաց վերնագիր ըլլալն. վասն զի միեւնոյն տեղեկութիւնն՝ այլ Ոսկեփորիկի մէջ (Թ. 45) իբրեւ վերնագիր դրուած է 30 Առակաց. եւ է այս. "Գիրք Առակաց ասացեալ սուրբ Վարդապետին Վարդանայ ի պէտս հոգւոյ եւ մարմնոյ, զոր ծուլամիտս գրեցի մեղաւորս Ներսէս Բաղէշցի »։ — Ի վերջոյ կը յաւելունք՝ թէ վերնագրին եւ Առակաց թուոյն նոյնութենէն պէտք չէ հետեւցընել որ Թ. 232 եւ Թ. 45 Ոսկեփորիկներուն Առակներն իրարու հետ նոյն են։ Երկուքին մէջ հազիւ 10 միեւնոյն Առակք կան, եւ այն՝ զատ դասաւորութեամբ. մնացեալքն՝ իրարմէ տարբեր Առակք են. մանաւանդ որ երկուքին թուոյն միօրինակութիւնն իսկ առանց նշանակութեան կը մնայ, այնու՝ որ Թ. 45 Ոսկեփորիկին Առակաց ոմանք՝ թուաբանական Առածք են, որ Թ. 132 Ոսկեփորիկին մէջ չեն տեսնուիր։

Երրորդն է յիշատակարան Փարիզի ազգային մատենադարանին այն ձեռագրին, որոյ պարունակած 168 Առակներէն 45ն հրատարակած է Սէն-Մարդէն։ Նոյն հրատարակիչն այս նկատմամբ հետեւեալ տեղեկութիւնը կու տայ։ “Այս հրատարակման համար մեր գործածած “ձեռագիրն օրինակողը չի տարակուսիր սոյն (168) “Առակաց՝ Վարդանայ հռչակաւոր Վ.ի գրութիւնն “ըլլալուն վրայ, եւ իւր համոզումն շատ փառաւոր “խօսքերով (en termes très-magnifiques) կը յայտնէ իւր “ընդօրինակութեան վերջը դրած ծանօթութեան (յի-“շատակարանին) մէջ„։ (Յառաջաբան, էջ X.) — Սէն-Մարդէն եւս “Հռչակաւոր Վ.„ ըսելով՝ զՄեծն Վարդան կ'իմանայ. վասն զի թէպէտ եւ զինքն իւր ժամանակուան սովորական կարծեաց համեմատ՝ Բարձրբերդ ծնած կը դնէ, ուստի եւ Բարձրբերդցի մականունը կու տայ, բայց զով իմացածն յայտնապէս կը ցուցընէ՝ մահն 1271ին դնելով։ (Անդ, էջ IX.)

Այս յիշատակարանաց եթէ հաւատք ընծայենք, Վարդան Վ. Արեւելցի կ'ըլլայ հեղինակ բազմաթիւ Առակաց։ Բայց կարծեմ չենք սխալիր՝ եթէ համարինք որ ոչ ոք մեծ ծանրակշռութիւն կու տայ այս վկայութեանց, երբ միտ դնէ թէ Առակացս ոչ միոյ անձին՝ այլ զանազանից գործ ըլլալուն մասին վերագոյն յառաջ բերեալ ամէն ապացոյցք ամբողջապէս կը ճշմարտին նաեւ սոյն երկու հաւաքածոյից վրայ։ Մանաւանդ զի նոյն իսկ Թ. 132 եւ 45 ձեռագրաց յիշատակարանք կամ վերնագիրք յայտնապէս կը խոստովանին թէ սոյն երկու հաւաքածոյք եւս՝ այլ հաւաքածոյից նման եղանակաւ յերեւան ելած են, այնու զի յերկոսին եւս կ'ըսուի “ժողովեալ գրեցի„. որ բացատրութենէն կ'իմացուի թէ աստ անդ ի ձեռագիրս գտնուած Առակներն ի մի ամփոփած են։ Այսպէս ըրած է անշուշտ նաեւ Փարիզի ձեռագրին օրինակողն. որով ոչ միայն ըստ թուոյ Առակաց իրարմէ կը տարբերին, այլ նաեւ ըստ ընթերցուածոյն, ինչպէս կը տեսնուի յաջորդ օրինակներէն, որ Վարդանայ ընծայուած երկու գաղափարներէ առնուած են, եւ սակայն ամենայն նկատմամբ իրարմէ տարբեր են։

ԺԵ.

Ագռաւն ժողովեաց զձագս իւր եւ խրատեաց զնոսա սաելով. Որդեակք իմ, մի՛ լրբիք, պատրաստք եղերուք ի մարդկանէ, եւս առաւել ի յայն ժամ՝ որ խոնարհին ի քար առնելն։ Եւ ասեն ձագքն նորա. Ո՛վ մայր մեր, զինչ արասցուք թէ յառաջագոյն մարդն առեալ լինի զքարն ի ձեռն իւր։ Ասէ մայրն. Այժմ գիտացի որ ապրելոց էք դուք։ Ըստ Սէն-Մօրդէնի։

Ագռաւն ժողովեաց զձագերն իւր եւ ասէ՝ թէ Պատրաստ կացէք ի մարդկանէ։ Խրատէր թէ Մի՛ լրբիք՝ յորժամ խոնարհին քար առնուլ։ Ասեն ձագերն. Ո՛վ մայր մեր, մենք զի՞նչ արասցուք՝ թէ յառաջագոյն լինի առեալ զքարն մարդն ի ձեռս իւր։ Եւ ասէ մայրն. Այժմ գիտեմ որ ապրելոց էք։ Ըստ 132 Յիստոֆրէնի։

ԺԶ.

Կատուն փիլոն էած ի վերայն եւ եղեւ կարգաւոր եւ պատուիրեաց մկանցն եւ ասէ՝ թէ Պիղծ է արիւնահեղն, եւ ես այլ արիւն ոչ հեղում, զի կարգաւոր։ Եւ ասեն մկունքն. Թէ զբոլոր կարգն Անտոնի տեսանեմք ի վերայ քո եւ զաբբայ Մարկոսի՝ նա մեք քեզ ոչ հաւատամք եւ կեղծաւոր բարուց քոց։ Եւ կատուն յետ այնորիկ եղեւ գէրբն եւ անկաւ ի յալիւրտուն։ Գան մկունքն եւ ասեն. Ո՛վ դու չար, քո հաւատովդ դու գէրբն ես։ Եւ յետ այսորիկ եղեւ մեռեալ յանցս մկանցն։ Գան մկունքն եւ ասեն. Ո նենգաւոր, թէ պարկ լինի մորթ քո՝ ոչ հաւատամք քեզ թէ թողուս դու զսովորական չարութիւնդ քո։ — Ցուցանէ առակս թէ զոր փորձեալ ես որ չէ բարքն անարատ, այլ նենգաւոր եւ չար է, թէպէտ եւ կեղծաւորի բարի գործել, բայց դու մի՛ հաւատար նմա, զի ոչ կարէ թողուլ զսովորական բարս։ Ըստ Սէն-Մօրդէնի։

Կատուն հագաւ փիլոն եւ եղեւ կրօնաւոր, եւ ասաց մկանցն՝ թէ Այլ չհեղում արիւն, զի եկի ի կարգ ապաշխարութեան։ Ասեն մկունք՝ թէ Քեզ ոչ հաւատամք, կեղծաւոր, թէ զԱնտոնի կարգն ի վերայ քո տեսանեմք։ Յետ այսորիկ գնաց ի ջաղացն անկաւ՝ թէ Գէրբ եմ։ Գային մկունքն եւ ասեն. Ո՛վ դու չար, ոչ հաւատամք որ դու գէրբ ես։ Յետ այսորիկ կատուն եղեւ սուտ մեռեալ եւ պառկեցաւ յանցս մկանցն։ Գային մկունքն եւ ասեն. Ո՛վ դու չար նենգաւոր, թէեւ պարկ լինի մորթդ քո, ոչ հաւատամք, ոչ թողուս զսովորական չարութիւն քո։ — Ցուցանէ թէ մարդ չար չթողու զիւր սովորական բնութիւնն։ Ըստ 132 Յիստոֆրէնի։

## ԺԷ․

Ճիճիկքն գան առ մեղուքն եւ առ մրջիմն ի ժամանակս ձմերան եւ ասեն. Տուք մեզ կերակուր, զի մեռանիմք ի սովոյ։ Եւ նոքա ասեն. Դուք զի՞նչ գործէ(է)ք յամարան։ Եւ նոքա ասեն՝ թէ Ի վարսաւոր ծառս հանգչէաք, եւ անուշ երգով զճանապարհորդս ուղարկէաք։ Եւ նոքա ասեն. Ապա յիրաւի սատակիք ի սովոյ. եւ չէ պարտ առնել ձեզ ողորմութիւն։ — Ցուցանէ առակս՝ թէ յիմար կուսանքն խնդրեն, եւ իմաստունքն ոչ տան. զի ժամանակն ոչ է ողորմելոյ, այլ իրաւունք առնելոյ։ Ապա պարտ է յայս կեանքն ժողովել՝ որ է ամառն, իմաստութեամբ եւ աշխատութեամբ զհոգեւոր կերակուր, զի մի՛ դատաստանին օրն սովամահ ի դժոխս արկանեն զմեզ։ Ըստ Սէն-Մորդէնի։

Ճիճին առ մրջիւն գնաց եւ ասէ. Տուր ինձ կերակուր, զի մեռան(եմ) ի սովու։ Եւ ասէ մրջիմն՝ թէ Ի՞նչ գործ կու առնէիր՝ որ կերակուր ոչ ունիս։ Եւ ասէ ճիճին՝ թէ Ի վարսաւոր ծառս նստէի եւ քաղցրաձայն երգէի, զճանապարհորդս զուարճացուցանէի։ Եւ ասէ մրջիմն. Յիրաւի մեռանիս ի սովոյն, զի կերակուր ոչ վաստակեցար քեզ. այլ ձայն վայրապար ածէիր սուտ եւ ոչ շահեցար։ Եւ ոչ ետ մրջիմն կերակուր, եւ ճիճին մաշէր ի սովու։ — Ցուցանէ թէ ճիճին մեղաւորքն են, եւ մրջիմն՝ արդարքն, որ եւ յաւուրն դատաստանին երթայ մեղաւորն եւ խնդրէ կերակուր եւ հանգիստ, եւ ոչ տայ արդարն։ . . . Որպէս ասէ Սողոմոն՝ թէ Ո՛վ վատ, գնա առ մրջիմն, եւ տես զի կերակուր վաստակի։ Ըստ 132 Յեռակերէն։

## ԺԸ․

Առիւծն հիւանդացաւ, եւ եկեալ բժշկացն եւ ասեն. Այս ցաւոյս դեղն այն է՝ որ եփեն զսիրտ եւ զականջ իշոյն, եւ զջուրն տան որ խմէ առիւծն եւ ողջանայ։ Կոչեցին զաղուէսն եւ ասեն. Արա հնար եւ բեր էշ մի։ Ասէ. Այո, իմ եղբարք. էշ մի կայ յայս անուն հովիտ՝ սաստիկ գէր։ Գնայ աղուէսն եւ ասէ ցէշն. Ո՛վ բարի եղբայր, երանի՜ է քեզ,

Առիւծն հիւանդացաւ եւ յուղարկեաց բժշկաց խընդիր, թերեւս դեղ ասեն ցաւոցն։ Եւ եկեալ բժշկապետացն եւ ասեն ընդ առիւծն՝ թէ Քո ցաւոյդ այլ դեղ չկայ՝ քան որ զիշուն ականջն կտրեն եւ զսիրտն հանեն եւ տան՝ որ ուտես եւ աղէկնաս։ Ասէ առիւծն ընդ աղուէսն՝ եթէ Կարե՞ս էշ մի գտանել եւ բերել։ Եւ ասէ աղուէսն. Խիստ

զի գտի զքո աւագ եղբայրն, եւ ցանկայ տեսանել զքեզ, եւ է նա թագաւոր, եւ դու ընդ նմա թագաւորես: Եւ հաւատաց էշն, եւ եկն ի համբուրել զառիւծն. եւ կամէր առիւծն խեղդել զէշն, եւ էշն փախեաւ: Եւ հասեալ նմա աղուէսն եւ ասէ. Ընդէ՞ր փախչիս: Եւ ասէ էշն. Ցուեցոյց ի համբուրելն՝ զփողս իմ: Եւ ասէ աղուէսն. Այն ի սաստիկ սիրոյն է. ապա թէ դու զնա համբուրես՝ ուրախ լինիս: Եւ դարձաւ էշն ի համբուրել զառիւծն. եւ (առիւծն) կալեալ զփողոյ նորա՝ մեռոյց զէշն, եւ գնաց ի հանգչել: Եւ աղուէսն հանեալ զսիրտն եւ զականջն եւ կերաւ. եւ ասէր. Թէ դեղ է՝ նա լաւ է ինձ քան առիւծուն: Եւ գնաց առ բժիշկ(+)ն եւ առիւծն, եւ ասէ՝ թէ Մեծ զարմանք է, զի էշն այն ոչ սիրտ ունի եւ ոչ ականջ: Եւ եկին տեսին զի ոչ ունէր, զարմացան: Եւ ասէ աղուէսն. Մի զարմանայք, զի եթէ դա սիրտ ունէր կամ ականջ, յերբ լուաւ զքո գոռալն եւ զերծաւ ի ձեռաց քոց՝ նա չէր կրկին յետս դարձեալ, եւ անկանել ի ձեռս քո եւ մեռանել: Եւ իրաւացոյց զբանն: Ըստ Սէն-Մարդէնի:

շուտով կատարեմ զհրամանս քո. քանզի ունիմ ինձ եղբայր՝ էշ մի, եւ է խիստ սաստիկ գէր: Եւ գնաց աղուէսն առ էշն եւ ասէ. Ո՛ բարի եւ հեզ էշ, այժմ գիտացիր՝ զի մեծ փառաց կամիմ հասուցանել զքեզ: Քանզի առիւծն՝ որ է թագաւոր գազանաց, հիւանդացեալ է եւ մօտ ի մահ է, եւ ուզէ որ տեսանէ զքեզ եւ զթագաւորութիւնն ի քեզ տայ: Եւ հաւատաց էշն խաբողական բանիցն եւ եկն առ առիւծն: Եւ կամէր համբուրել զառիւծն. եւ առիւծն զբերանն եբաց եւ կամէր խեղդել զէշն, եւ իշուն փրթեալ փախեաւ: Եւ հասեալ աղուէսն իշուն՝ ասէ. Ա՛յ անմիտ, ընդէ՞ր փախեար: Եւ ասէ էշն. Ի համբուրելն կսկծեցոյց զիս: Եւ ասէ աղուէսն. Այն ի սաստիկ սիրոյն էր. դարձիր եւ մի փախչիր: Եւ եկն էշն առ առիւծն. եւ առիւծն կալեալ զփողք իշուն, խեղդեաց, եւ աղուեսուն հանեալ զսիրտ իշուն եւ զականջն կտրեալ կերաւ. եւ ասէ. Թէ դեղ է՝ նա լաւ է ինձ քան առիւծուն: Եւ գնաց աղուէսն առ բժշկապետսն եւ առ առիւծն եւ ասէ՝ եթէ Եկէք, զարմացք եւ հիացման իրք տեսէք, զի էշն այն ոչ ականջ ունէր եւ ոչ սիրտ: Եւ եկեալ տեսին: Եւ ասէ աղուէսն ցբժիշկսն՝ թէ Ընդէր զարմանայք եթէ սիրտ եւ ականջ չունի: Եթէ դա սիրտ եւ ականջ էր ունեցել, որ երբ յառաջն առ առիւծն երեկ եւ զմռնչոյն լսել էր՝ նա կրկնակի չէր դարձեալ: Եւ արդարացուցին զբանս աղուեսուն: Ըստ 132 Ձեռագրին:

## ԺԹ.

Գայլագռաւն քաղցեաւ մերձ ի մահ, եւ գնաց գողացաւ մի պանիր ի հողագործէ միոյ. եւ առեալ գայ նստի ի վերայ բարձրագոյն վիմի միոյ, զի կերիցէ զնա։ Եւ ահա կայր յոտս վիմին աղուէս մի, եւ ետես զագռաւն եւ զպանիրն ի բերան նորա. սկսաւ գովել զագռաւն եւ ասել՝ թէ Փառք Աստուծոյ կենդանւոյ՝ ուստի՞ գայ արեգակս այս որ գեղեցիկ է, եւ է նման լուսնոյ՝ անձն սուրբ, եւ փետուրք նորա փայլեն որպէս զաստեղս. եւ թէ գիտէի զձայն սորա որ զօրաւոր էր՝ ես թագաւոր օծէի զդա տիեզերաց։ Եւ ագռաւն խելօքն գնաց, եւ հպարտացաւ ի սուտ գովութիւնն, մոռացաւ զպանիրն եւ ասէ ընդ միտս իւր՝ թէ Այսպէս գեղեցիկ եմ ես, եւ ձայնս իմ՝ զօրաւոր։ Եւ տարածեալ զթեւս իւր եւ բարձր մի ձայնեաց, եւ զերծաւ պանիրն ի բերանոյն եւ անկաւ առաջի աղուեսուն։ Ասէ աղուէսն ընդ ագռաւն՝ թէ Ձայնդ աղէկ է այն, զամենայն տեղիք յաւել ունիս թագաւորութեան. այս խելք բնաւ ոչ ունիս դու. որ մի չերտ պանիր ոչ կարացեր պահել՝ դու զիա՞րդ կարես պահել զթագաւորութիւն։ — Ցուցանէ առակս թէ զամենայն կերպ թագաւորութեան ետ մեզ Աստուած, եւ հաւանեալ սուտ եւ խաբող բանից սատանայի՝ հպարտանամք եւ անկանիմք ի սուրբ մեծութենէն։ Ըստ Սէն-Մորդէնի։

Ագռաւ մի պանիր ունէր ի բերանն եւ նստէր ի բարձրաւանդակ տեղւոջ։ Իսկ աղուէսն գործ առնէր ի նմանէ հանել զպանիրն։ Եւ մատուցեալ մօտ անդր եւ զակն ի նա հարեալ՝ երանի տայր բնութեանն։ Զի սեւաթոյր գունով եւ գիշերոյ մանուկ, եւ վայելէ քեզ ծաղկել ի գունոյդ. այլ եւ զօրութիւնդ քո ի քեզ՝ որչափ ոչ յայլում, բայց եւ իմաստութիւն։ Եւ ոչինչ եւս արգել ունէր զթագաւորութիւն. զարծուով զանց արարեալ ամենեւին, եւ թագաւոր հաւուց՝ եթէ ձայն գոյր, եւ ոչ ամենեւին կարօտ գտեալ էիր յիրիք։ Գրգռեցաւ ի գովութենէն ագռաւն, եւ զմեծաձայնութիւն ցուցանել կամեցեալ, եբաց զբերանն եւ գոչեաց յոյժ մեծ։ Եւ պանիրն ի վայր անկեալ՝ որս լինէր աղուեսուն։ Եւ նա առլցեալ կերակրովն. Ձայն քո ի քեզ, ասէ, կարի քաջ, ո՛վ ագռաւ. բայց ի մտաց պակաս ես։ — Զայս առասպելս գիտելով, մի երբեք պատրիցիս ի սուտակապաս գովութենէ։ Ըստ 132 ձեռագրին, ուր՝ բաց ի քանի մի մանր փոփոխութեանց բառական ճշդութեամբ յառաջ կը բերուի Ողոմպիանու այս գեղեցիկ Առակն, ինչպէս որ կը գտնուի այլ ձեռագիր եւ տպագիր օրինակաց մէջ, որոց համեմատ ճշդեցինք տարբերութիւնները։

*Կարծենք թէ այն մեծ զանազանութիւնն որ կայ այս քանի մի օրինակներուն իրարմէ այնչափ տարբեր երկու ընթերցուածոց մէջ, որ յանուն Վարդանայ Արեւելցւոյ մեր առջեւ կը դրուին, բաւական է համոզուելու թէ չեն արդիւնք իւր գրչին։ — Բայց նոյն Վարդապետին՝ Առակացս Հեղինակ չըլլալուն՝ կան այլ եւս զօրաւոր ապացոյցք որ իւր անձին յատուկ են։ — Այլուր առթիւ (տես էջ* 253—255) *դիտեցինք որ նոյն Վարդապետին ռամկօրէն կամ ռամկախառն գրուածոց լեզուն ըստ բաւականին տարբեր է այլ եւս նոյնպիսի գրութիւններէն։ Իսկ իւր անուամբ զարդարեալ Հաւաքածոյից Առակներն ամենեւին տարբերութիւն չունին յայլոց. ասոնց մէջ ոչ երբեք կը տեսնուի իւր այնչափ յաճախ ի կիր արկած՝ էմ է ...էլ ձեւն, փոխանակ կու ձեւոյն՝ որ ստէպ կը հանդիպի Առակացս մէջ, ինչպէս նաեւ իրեն անսովոր նա մասնիկն։*

*Վերջապէս կայ այնպիսի պատճառ, որ այնչափ ծանրակշիռ է՝ մինչեւ թէպէտ ոչ այլ ինչ գտնուէր ի ցոյց վրիպականութեան կարծեաց երեք յիշատակարանաց (վերնագրոց), այն միայն բաւական էր զնոյն կարծիս բացէ ի բաց մերժելու։ Կը գտնուին ի Հաւաքածոյս այնպիսի Առակք, (ամէնն ալ ի ձեռագրին Թ.* 132, *եւ ոմանք Սէն-Մարգէնի ընտրածներուն մէջ,) որ պատիւ չեն բերեր իրենց հեղինակին, այլ ընդ հակառակն նախատինք կը պատճառեն, ուստի եւ անարժան են գրագէտ եւ գիտուն ծանրակեաց եկեղեցականի։ Եւ արդարեւ ով կրնայ երեւակայել իսկ թէ Վարդանայ Արեւելցւոյն պէս հռչակաւոր եւ յարգելի Վարդապետ, որ բովանդակ ազգին՝ նա թէ թագաւորաց եւ կաթողիկոսաց առջեւ այնպէս մեծարոյ էր, հեղինակ ըլլայ այնչափ անհամ եւ անիմաստ՝ մինչեւ նաեւ ցած ու գռեհիկ Առակաց, եւ յանձն առնու իւր գրիչն աղտեղել այնպիսի անպատշաճ բա-*

*ցատրութեամբք եւ սխալ սկզբամբք, մինչեւ ոչ ներեալ միայն՝ այլ նաեւ գովելի եւ աստուածահաճոյ ցուցընել զստախօսութիւն[1]։*

*Դժուարին չէ իմանալ թէ ուստի՛ ծագած է եւ այնչափ տարածուած այս անհիմն եւ վրիպական կարծիք թէ Վարդան Վ. Արեւելցին է հեղինակ Առակացս։ Հատածիս սկիզբներն (էջ 275) ըսինք թէ «Կայ ուրեք յիշատակեալ՝ իբրեւ հեղինակ Առակաց՝ Վարդան ոմն Վարդապետ, որ հաւանաբար ի գիր առած է չափաւոր թուով Առակներ»։ Արդ ապահովութեամբ կարող ենք հաստատել թէ այս անուան նոյնութիւնն եղած է պատճառ սխալմանս. որովհետեւ սոյն Վարդապետն՝ իրական հեղինակ Առակաց ինչ՝ այնչափ ծանօթ չըլլալով յետնոց, բնականապէս անոր ամենածանօթ անուանակցին յատկացուցած են նորին զանազան գրութիւնքն, բուն անոր Առակաց հետ խառնելով նաեւ հետզհետէ յաւելեալքն։*

*Այսնկատմամբ բաւական կը համարինք յառաջ բերել Պատմութեան Վարդանայ Հրատարակչին խօսքն, որ — յետ գրելոյ թէ կան այլ եւս Վարդան անուն Վարդապետք, յորոց զՊատմիչն զանազանելու համար, զինքն Մեծ կոչած են, եւ կը մեծարեն այլ եւս պատուաւոր վերադիրներով, որոց յետինն եւ ամէնէն նշանաւորն է՝ ա—րք,*

---

[1] *Ըստ մասին մեզի կարծեկից է նաեւ Սէն-Մարդէն, որ իւր ձեռագրին Առակաց նիւթական թերութիւնքն յիշատակելէն ետեւ, կը գրէ. «Այնչափ յարմար չեն (Առակքս) անոր (Վարդանայ) մատենագրական համբաւուն յաւելլու»։ Եւ յետոյ կ՚ըսէ. «Թերեւս այս է պատճառն՝ որ տարակոյս ծագած է իւր անոնց հեղինակն ըլլալուն վրայ»։ (Յառաջաբան, էջ X.) — Նոյն միտք՝ բայց աւելի որոշ՝ կը գրէ նաեւ Բազմավէպ. (1881, էջ 192.) «Մեր դպրութեան մէջ, կ՚ըսէ, ծանօթ է Աղուէսագիրքն՝ Վարդան Վ.է մը յօրինուած կամ հաւաքուած, զոր ոմանք կարծեն անուանի Պատմիչ Վարդան ԺԳ. դարու. բայց հաւանօրէն ուրիշ մ՚է յաջորդ դարուն»։ Եւ ամենայն իրաւամբք կը յաւելու. «Բայց շատ տեղ առասպելանման պատմութեանց ետեւ քրիստոնէական խրատքն անյարմար եւ բռնազբօս են, եւ կերպով մը անվայել»։*

— յաջորդ տողերը կը գրէ. “Բայց այս ամենայն
“կոչմունք պատուականք չեղեն բաւական առ ան-
“խառն պահել զգործս եւ զգրուածս նորին ընդ
“այլոցն. եւ յոլովից յարանուանց փառաւորք պի-
“տանի եւ անպէտ՝ միոյս այսմ վերընծայեցան։ Եւ
“ոչ միայն յիրս եւ ի գիրս, այլ ինձ թուի եւ ի
“հայրենեացն կոչումն սխալեալ, որոց Բարձրբերդ-
“ցի զսա ասեն. քանզի ոչ ոք ի նախնեաց անուի
“կոչէ զնա այսպէս. այլ մանաւանդ բանք նոցին
“ցուցանեն յարեւելից մեծաց Հայոց լինել զնա,
“եւ ամս ինչ պանդխտութեամբ կեցեալ ի Հռոմ-
“կլայ եւ ոչ ի Բարձրբերդ. զայլ ոմն Վարդան
“Բարձրբերդցի ցուցանելով ժամանակակից նորին
“կրսեր, որպէս յիշէ մատենագիր ոմն յամի 1286,
“որ է իբր վեշտասան ամաւ յետոյ քան զմահ մե-
“ծիս այսորիկ Վարդանայ։ Իսկ զմիւսն զայն զկրսեր՝
“Երկրորդ Վարդան կոչէ Ղազար Ջահկեցի կա-
“թուղիկոս, եւ նմա ընծայէ զհամառօտ մեկնու-
“թիւն չորից աւետարանաց, զԱռակսն, զհամառօտ
“աշխարհագրութիւնն, զՄեկնութիւն քերականի.
“որոց յետինքդ կարծին երրորդի ուրումն կրսերա-
գունի Վարդանայ գործք„։ (Տպ. Վենետ. 1862, Յա-
ռաջաբան, էջ Ա. Բ։ Տես նաեւ Միսուան, էջ 149։)

Չունինք այլ ինչ յաւելուլ աստ, բայց զայն միայն՝ որ թէպէտ Մեծ կոչուի Վարդան Վ. հեղինակ Առակաց՝ թէպէտ փոքր, թէպէտ առաջինն ըլլայ՝ թէպէտ երկրորդն կամ երրորդն, — միշտ ըստ ամենայն մասանց հաստատուն կը մնան վերագոյն գրեալքս նկատմամբ գումարութեան Առակացս միակ գրչի գործ չըլլալուն։

## 20.

## Թ. ՄԵՐ ԱՌԱԿԱՑ ԱԿՆԱՂԲԻՒՐՆ

Նախընթաց Հատածին մէջ՝ միայն լեզուաբանական տեսակէտէն խօսեցանք մեր Առակներուն վրայ. նկատեցինք զանոնք իբրեւ զմի ի գլխաւոր մասանց ռամկօրէն գրականութեան, հետազօտեցինք անոնց գրութեան ժամանակն, հեղինակն ու լեզուն: Կը մնայ դիտել այժմ զանոնք բանաստեղծական կամ մատենագիտական տեսակէտէն, քննել թէ ունի՞ն արդեօք կապակցութիւն այլոց ազգաց Առակներուն հետ, ո՞րն է անոնց ակնաղբիւրն, որ ազգի կամ լեզուի միջոցաւ մուտք ունեցած են առ մեզ:

Ըստ այժմու հաւանական կարծեաց՝ Առակագրութեան սկիզբն եղած կը համարուի առ Հնդիկս, որոց հոգեփոխական դրութեան շատ համաձայն է՝ զանբան անասունս խօսել ու գործել տալ իբրեւ բանաւոր մարդիկ: Արդեամբք իսկ կայ սկզբնաբար սանսկրիտ լեզուաւ գրուած մեծ բազմութիւն Առակաց, որ հետզհետէ անցած են նաեւ օտար ազգերու, որով եւ հասարակաց կամ համազգային ստացուած եղած են: Այս հնդկական Առակք ամփոփեալ են ի բազմաթիւ հաւաքածոյս, որոց ամէնէն աւելի տարածեալն եւ ամենածանօթն է՝ Պանչատանտրա Առակք կամ Գալիլա ու Տիմնա կոչուածն:

Առակաց հիւսուած մըն է յիշեալ մատեանն, որոյ այլեւայլ մասունքն կամ Գլուխք՝ ըստ ինքեան իրարմէ անկախ՝ այնու միայն կը կապուին, որ Հնդիկ թագաւորի մը՝ այս ինչ կամ այն բարոյական-քաղաքագիտական հարցման կամ խնդրոյն՝ պատասխան ու լուծում կու տայ իւր փիլիսոփայն, իւր սկզբունքն հաստատելով նիւթոյն համեմատ Առակօք: Գլխաւոր Առակացս մեծագոյն մասին մէջ ընդելուզեալ են աւելի կամ նուազ թուով երկրորդական Առակք: — Մատենիս՝ Պանչատանտրա Առակք կոչուելուն պատճառն այն է՝ որ նոյն անուամբ նշանակուած է Առակները թագաւորին պատմողն: Իսկ Գալիլա ու Տիմնա կոչման առիթ տուած է այն՝ որ հաւաքածոյին Ա. Գլխոյն մէջ գլխաւոր

դերը կատարողներն երկու շնագայլք են, որոց միոյն անունն է Գալիլա, երկրորդին՝ Տիմնա: Այս վերջին վերնագիրն ի սկզբան նոյն Ա. Գլխոյն միայն յատկացած էր. բայց յետոյ ամբողջ հաւաքածոյին վերնագիր եղաւ:

Թէ երբ լոյս տեսած է ի Հնդիկս այս գործ՝ այն ծանօթ չէ, թէպէտ եւ կրնայ ենթադրուիլ՝ թէ շատ հին ժամանակի գրութիւն է: Հնագոյն հաստատուն տեղեկութիւնն որ ունինք՝ հազիւ Քրիստոսի թուականութեան Զ. դարուն կէսերը կը հասնի: Նոյն միջոցին անոր համբաւն ի մօտաւոր կողմանս աստ անդ տարածուելով, Պարսից Խոսրով Նուշիրվան թագաւորն (531—579) Պերզոյի անուն բժիշկն Հնդկաստան յղեց, որպէս զի օրինակ մի առանայ եւ պահլաւերէնի թարգմանէ, որ ինչպէս յայտնի է՝ Պարսից հին գրաւոր լեզուն է: Ճշդիւ չի գիտցուիր թէ որ տարին ի գլուխ ելած է այս պահլաւիկ թարգմանութիւնն. սակայն ի հարկէ եղած պիտի ըլլայ 570էն յառաջ, որովհետեւ յիշեալ տարին ասորերէնի թարգմանուեցաւ՝ — ոչ եթէ սանսկրիտ սկզբնագրէն՝ այլ — նոյն պահլաւիկ թարգմանութեան վրայէն: Միեւնոյն պահլաւերէնին վրայէն՝ իբր երկու դար յետոյ (750ին) եղաւ արաբերէն թարգմանութիւնն ի ձեռն Աբտուլլահ Իպն-ալ-Մուգաֆայի, որ սկզբնագրին վրայ շատ յաւելուածներ ըրած է:

Երկու յետին թարգմանութիւնքս, այն է՝ (հին) ասորերէնն եւ արաբերէնն, մեծ ծանրակշռութիւն ստացան, այնու՝ որ սանսկրիտ սկզբնագիրն, իբրեւ միակ մատեան յամբողջութեան իւրում եւ սկզբնական կարգաւն, անհետ կորուսեալ է[1], բայց չի գիտցուիր՝ թէ պահլաւիկ թարգմանութիւնը կատարուելէն որչափ ժամանակ յետոյ: Եւ որովհետեւ պահլաւերէն թարգմանութիւնն եւս, անոր վրայէն ասորերէն եւ արաբերէն

---

[1] Թէպէտ այսպէս անհետացած է գրոցս ամբողջական սանսկրիտ սկզբնագիրն, սակայն այլեւայլ մասունքն պահեալ են ի զանազան գիրս, գլխաւորաբար Փանչաթանթրա = Հինգ-մատեան կոչուած գրութեան մէջ, որոյ գերմաներէն թարգմանութիւնն հմտական ներածութեամբ (1859) հրատարակած է Պէնֆէյ (տես յետոյ, Ա.) լիուլի տեղեկութիւն տալով նաեւ Գալիլա ու Տիմնա գրոց վրայ: — Նոյն հրատարակութեան մէջ այնպէս կը նկատուին այս երկու գիրք (Գալիլա ու Տիմնա եւ Փանչաթանթրա), որպէս թէ միեւնոյն գրութիւնն ըլլային, այնչափ իրարու հետ խառնեալ եւ ի մի ձուլեալ կը տեսնուին յընթացս բովանդակ ներածութեան: Իսկ ներածութիւնն այնպէս ընդարձակ է, որ երկհատոր մատենին ամբողջ Ա. Հատորը կը լեցնէ, ունելով ԽԲ. եւ 611 էջ. ուր Բ. Հատորն՝ որ բուն Փանչաթանթրայն է, հազիւ 363 էջ է, եւ ի վերջն ունի 113 էջ ծանօթութիւն:

թարգմանութիւնք ի գլուխ ելլելէն ետեւ՝ բուն սանսկրիտ սկզբնագրին պէս՝ կորուսեալ է, վերոյիշեալ (հին) ասորերէն եւ արաբերէն թարգմանութիւնք իբրեւ երկրորդական բնագիր կը նկատուին։

Այն երկու թարգմանութեանց մէջէն՝ հմուտք նախապատուութիւնն ասորերէնին կու տան, թէ արաբերէնէն հնագոյն ըլլալուն եւ թէ անկէ ճշգագոյն եւ նմանագոյն բուն սանսկրիտ սկզբնագրին։ Սակայն եւ այնպէս կը տեսնենք թէ ի միջին դարս եղած այլ թարգմանութիւնք, զ. օ. յունարէնն (իբր 1080ին), պարսկերէնն (իբր 1120ին), եբրայեցերէնն (ԺԳ. դարու), հին սպանիարէնն (1251ին), բոլորն ալ արաբերէնի վրայէն եղած են։ Այս ալ չէ բաւական, նոյն իսկ Ասորիք արաբերէնի վրայէն երկրորդ անգամ թարգմանեցին իրենց լեզուին (իբր ԺԱ. դարուն)։ Պահլաւերէնի վրայէն եղածն՝ ասորերէն հին թարգմանութիւն կամ խմբագրութիւն կը կոչուի, արաբերէնի վրայէն եղածն՝ ասորերէն նոր թարգմանութիւն կամ խմբագրութիւն։

Ա. Ասորերէն հին թարգմանութիւնն — անշուշտ ի միջին դարս Արաբացւոց ստացած քաղաքական եւ կրօնական մեծ ազդեցութեամբ — ի մոռացութիւն ինկաւ։ Թէպէտ եւ գոյութիւնն յայլեւայլ վաղեմի տեղեկութեանց ծանօթ էր գիտնոց, բայց մինչեւ վերջին ժամանակներն ոչ ոք յեւրոպական արեւելագիտաց կարող եղած էր տեղեկութիւն իսկ ստանալ. ուստի եւ հաւանական կը կարծուէր թէ այն եւս՝ սանսկրիտ սկզբնագրին եւ պահլաւ թարգմանութեան պէս՝ կորուսեալ է։ Հազիւ վերջին տարիներս գտնուեցաւ Մերտինի ասորի վանաց մէջ փոշեթաթախ ձեռագիր մի նոյն ասորերէն թարգմանութեան, որմէ գաղափարեալ օրինակ մի բերուեցաւ յԵւրոպա։ Կուստաւ Պիքքէլ ուսուցչապետն հոգաց ասորերէնէ ի գերմաներէն թարգմանութիւնն, եւ երկլեզու մատեանն հրատարակեցաւ (1876) շատ ընդարձակ ներածութեամբ Պենֆէյ ուսուցչապետի, որոյ ջանիւքն յերեւան ելած էր յիշեալ ձեռագիրն։

Բ. Արաբական թարգմանութիւնն արդէն շատ ժամանակէ վեր ծանօթ ըլլալով, եւ զանազան մատենադարանաց մէջ գտնուելով անոր ձեռագիրներն, բնական էր որ նաեւ գտնուէին հրատարակութիւնք։ Թող քանի մի նախընթացներն, դարուս սկիզբներն (1816) Սիլվէսդր տը Սասի հրատարակեց սկզբնագիրը, գրոց ծագման եւ յարեւելս նոյն արաբերէնին վրայէն եղած այլեւայլ թարգմանութեանց մասին տեղեկութեամբք. (Mémoire historique, Notes critiques եւն։) Բայց այս հրատարակութեան վրայ նուաստ համարում կը յայտնեն արեւե-

լազէտք՝ ձեռագիրը սխալաւոր եւ պակասաւոր գտնելով։ — Բաց յարաբական տպագրութեանց որ արեւելք հրատարակեալ են, եղած են յընթացս դարուս ոչ սակաւ հրատարակութիւնք ի զանազան եւրոպական լեզուս, ըստ այլեւայլ ձեռագրաց, որք հասարակօրէն շատ տեղ իրարմէ կը տարբերին։ Այս պատճառաւ մեծ կարեւորութիւն կու տան հմուտք Կուիտի իտալացի արեւելագիտին՝ նոյն արաբական թարգմանութեան վրայ Ուսումնասիրութիւնք (Studii) անուամբ հրատարակած (1873) հմտական գրութեան, յորում իւր տեսած արաբական 4—5 ձեռագրաց տարբերութիւնները մի ըստ միոջէ կը նշանակէ։

Գ. Երկրորդ կամ Նոր ասորի խմբագրութիւնն եւս, որ ինչպէս տեսանք՝ արաբերէն թարգմանութեան վրայէն եղած է, ունի իւր եւրոպական հրատարակութիւնքն։ Թող զայլս, հին ասորական թարգմանութեան հրատարակուելէն քանի մի տարի ետեւ՝ Վ. Ռայթ, Քեմպրիճի համալսարանին մէջ արաբերէնի ուսուցչապետն, նոյն Նոր ասորի խմբագրութեան բնագիրն հրատարակեց (1884)։ Հետեւեալ (1885) տարին հրատարակեցաւ նոյնին անգղիերէն թարգմանութիւնն ի ձեռն Ց. Գ. Քէյթ-Ֆալգոների, բաւական ընդարձակ ներածութեամբ եւ բազմաթիւ ծանօթութեամբք։

Որովհետեւ այս Նոր ասորի խմբագրութիւնն արաբական խմբագրութեան վրայէն եղած է, կ՚ենթադրուի թէ այնմ համաձայն գտնուի, ինչպէս արդեամբք ալ այնպէս է ըստ էական մասանց։ Բայց շատ տեղ անկէ կը տարբերի, ոչ միայն այնու՝ որ ընդհանրապէս աւելի ընդարձակ է քան զայն, այլ նաեւ այնու՝ որ յերկրորդականս ստէպ ստէպ այլազգ մանրամասնութիւններ եւ խօսակցութիւններ ի մէջ կը բերէ։ Այս տարբերութիւնք կրնան ծագիլ թէ անգղիերէն թարգմանութեան ծառայած ասորերէն օրինակէն, եւ թէ Սալիի հրատարակած արաբերէն օրինակէն, որ շատ տեղ կը խոտորի այլ արաբական օրինակներէն։

Դատաստանք արդ մեր Առակաց։

Հետաքրքրական՝ մանաւանդ թէ օգտակար իսկ էր՝ մեր Առակներն մի ըստ միոջէ ուսումնասիրելով, յուզել իւրաքանչիւրին ծագումն, զատել բուն ազգայիններն յօտարաց, եւ այս վերջնոց՝ ո՛ր ազգէն կամ լեզուէն մեզի անցնիլն իմանալ։ Բայց այս՝ երկայն եւ խորին հետազօտութեանց կարօտ

է, եւ մեր այժմու նպատակէն շատ հեռու կը տանէր զմեզ: Ուստի առանց մանրամասնութեանց մտնելու, այսչափ միայն կը զրուցենք՝ թէ մեր հաւաքածոյից մէջ կան այնպիսի Առակք՝ որ յայտնապէս հայկական նկարագիր կը կրեն, եւ հաւանաբար հայ հեղինակի մտաց ծնունդ են եւ կամ ազգային ժողովրդական ծագումն ունին: Բայց կան բազմագոյնք եւս, որ իբրեւ համազգային ստացուած՝ այլեւայլ ազգաց մօտ եւ զանազան լեզուաւ կը գտնուին. եւ ընդհանրապէս խօսելով՝ դիւրին չէ որոշակի սահմանել թէ ո՛ր ազգի կամ լեզուի միջոցաւ մեզի անցած են: Մանաւանդ զի կան բաւական յաճախութեամբ իսկ յունական ծագումն ունեցողներ, մինչեւ նաեւ եւրոպական նոր ազգաց նմանողութեամբ յօրինեալներ, որոց իւրաքանչիւրին ինչպէս կամ ո՛ր ազգի ձեռօք առ մեզ մուտ գտնելն իմանալու՝ առ այժմ բաւական միջոց չունինք[1]:

Սակայն միտ դնելով ի միջին դարս Արաբացւոց եւ Ասորւոց հետ ազգայնոցս ունեցած յարաբերութեան, եւ արաբիկ ու ասորի դրականութեան միջամուխ լինելուն, տեսնելով միանգամայն թէ նոյն երկու լեզուներէն որչափ գրութիւնք ի ռամկօրէն բարբառ փոխեալ կամ անոնց հետեւողութեամբ յերեւան ելեալ են, — հնար էր ինքնին հետեւցընել՝ թէ բուն ազգային ծագումն չունեցող

---

[1] Թող եսովպեան Առակներն, կը գտնուին ի մեր հաւաքածոյս՝ առաւելապէս Փոքր վէպեր եւ բարոյական զրոյցներ, որ յունական հին պատմութեանց վրայ հիմնեալ են, թէեւ միշտ ըստ արեւելեան գաղափարաց փոխուած եւ արեւելեան գունով նկարուած, հեթանոսականքն ալ ըստ քրիստոնէական կաղապարի ձուլուած: Միայն քանի մի յայտնագոյններն ու գլխաւորները նշանակելու համար, կը յիշատակենք. Ա. Դամոկլէսի սրոյն, (տես Ոսկեփ. 51, ճհէ.) Բ. Դամոնի եւ Փիթիասի դիւցազնական բարեկամութեան, (տես անդ, ճծէ. եւ Ոսկեփ. 132, ճլ.) Գ. Դիոնեսիոսի կենաց համար աղօթող պառաւուն, (տես Ոսկեփ. 51, ճժզ.) եւ առանձինն՝ Դ. Փորթուկալի Ս. Եղիսաբէթ թագուհւոյն եւ իւր բարեպաշտ մանկլաւիկին, (տես անդ, ճիդ. եւ Աղուեսագ. լա.) Առակներն:

Առակաց գոնեայ մի մասն արաբական կամ ասո-րական է, եւ կամ թէ այն երկու լեզուաց միոյն միջոցաւ մեզի անցած։ Արդէն աստ անդ այս դիտողութիւնն ըրողներ եղած են, մինչեւ կարծող գտնուած է՝ թէ "կայ նաեւ Հայ խմբագրութիւն Գալիլա ու Տիմնա գրոց[1]„։ Եւ թէպէտ այս կարծիք չէ ստոյգ. սակայն եւ այնպէս ունի հիմն ինչ։ Վասն զի ի մեր հաւաքածոյս ոչ միայն այնպիսի Առակաց կամ վիպաց կը հանդիպինք, յորս կը նշմարուին հետք Առակաց նոյն հռչակեալ գրոց, եւ կամ որք անոնց նմանողութեամբ յօրինեալ կ'երեւան, այլ նաեւ կան Առակք՝ որ թէեւ չեն բառական թարգ-

---

[1] Այս սխալ կամ անճիշդ կարծիքն ունեցած եւ հրատարակած է Կրեսսէ (Grässe, ի գիրսն Trésor de livres rares, V. S. Bidpay,) որ կը գրէ. "Il existe aussi une rédaction arménienne du livre de Calila et Dimna, que nous connaissons d'une traduction française: L'abrégé géographique de Moïse de Choren, avec un recueil de fables, connu chez les anciens sous le titre du Livre de renard (Marseille, 1676)„.

Նոյն վկայութիւնն ի մէջ կը բերէ Յ. Գ. Քէյթ-Ֆալքոներ ի Յառաջաբանի անգղիական թարգմանութեան ասորերէն նոր խմբագրութեան Գալիլա ու Տիմնա գրոց (էջ ԶԴ. ԶԵ։ — Տես ի վեր անդր, էջ 299 Գ.), եւ ինքն յայսմ մասին հետեւեալ տեղեկութիւնը կու տայ։ "Ամենեւին ցոյց չկայ գոյութեան հայերէն թարգմանութեան գրոցս։ Իսկ հեղինակին (Կրեսսէի) յիշատակած գրութիւնն՝ աշխատասիրութիւն է Վարդան անուն Հայ հեղինակի մի, որ իրեն սեպհականած է Գալիլա ու Տիմնա գրոց ոչ սակաւ Առակները։ Սակայն իւր գրութիւնն չի կրնար նոյն գրոց թարգմանութիւն կոչուիլ։ Մտադրութիւն ըրած է Վարդանայ գրութեան՝ Էմիլիոյ Թեզա ուսուցչապետն՝ La Cultura պարբերականին մէջ, 1882, Թիւ Ժ. ի Հռոմ„։ — Յետոյ առիթ կ'ունենանք իտալացի Ուսուցչապետին վրայ խօսելու։ — Անգղիացի թարգմանիչն ի ծանօթութեան կը յայտնէ թէ իւր տուած տեղեկութիւնը պարտական է բարեյօժարութեան Հ. Ղ. Վ.ի Ալիշանի՝ ի Մխիթարեանց Ս. Ղազարու ի Վենետիկ, եւ Հ. Յ. Վ.ի Թումայեանի՝ ի Մխիթարեանց Վիեննայ։ — Կրեսսէի "Հայերէն խմբագրութիւն ... Հաւաքածոյի Առակաց„ ըսածն՝ կարծենք ոչ այլ ինչ է, եթէ ոչ՝ հայերէն Աշխարհացոյց Մարսիլիայի 1683ին տպագրութիւնն։ Իսկ գաղղիերէն թարգմանութիւն նոյն գրութեան՝ Սէն-Մարտէնի 1825ին ի Փարիզ հրատարակած ըստմանենայ Հաւաքածոյն միայն ծանօթ է մեզի։ (Տես էջ 274 ...։)

*մանութիւն, սակայն անոնց համառօտ խմբագրութիւնքն են։*

*Մենք այս վերջիններէն երեքն սատէն ի հետազօտութիւն պիտի առնունք, այլում առթի կամ մանաւանդ այլոց հմտագունից թողլով հիմնովին խօսիլ այս նիւթոյն վրայ։*

*Սոյն երեք Առակք են.*

*Ա. Ճանապարհորդն ու Ոսկերիչն։*
*Բ. Կապիկն ու Կրիայն։*
*Գ. Առիւծն, Աղուէսն ու Էշն։*

### Ա. Առակ։

### ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՆ ՈՒ ՈՍԿԵՐԻՉՆ

*Այս Առակ՝ որ առ մեզ շատ ցանցառ է, եւ հազիւ մեր հաւաքածոյից միոյն մէջ (Ոսկեփ. Թ. 51, Առակ Հ.) տեսած ենք, զոր եւ հրատարակած ենք (յէջն 280, Առակ Ջ.) չի գտնուիր ի հին ասորի խմբագրութեան Պէրոֆոյէ Առակաց, այլ միայն արաբերէն եւ նոր ասորի խմբագրութեանց մէջ։ Բայց կայ Փանչաթանթրայէ մէջ, ուստի եւ ակըզբնական ծագումն հնդկական է։*

*Սոյն Առակին հայ խմբագրութեան նկատմամբ մեծապէս արժանի է մտադրութեան այն պարագայն, որ այս՝ որչափ դիտած ենք՝ միակ Առակն է մեր հաւաքածոյից մէջ, որ հնդիկ Առակաց սովորական ձեւովը կը սկսի։ "Եհարց թագաւոր մի ցիմաստասէր իւր եւ ասէ՝ թէ Ցի՞նչ իրք վստահանալ պարտ է մարդոյ։ — Ասէ իմաստասէրն. Ամենայն իրաց վստահ լեր՝ զատ ի մարդոյ։ — Ասէ թագաւորն՝ թէ Ո՞րպէս։ — Ասէ իմաստասէրն. Ի ճանապարհի մի վերայ...„։*

*Առակին առաջին կէսն, — այն է՝ ճանապարհորդին ի ջրհորն ինկած անասուններն ու ոսկերիչն ազատելուն, անոնց իրենը ըրած երախտագիտութեան խոստման, նոյնպէս յետոյ կապկին հանդիպելուն*

դէպքերն, — առանց բառ առ բառ նոյն ըլլալու, քանի մի փոքր բացառութեամբք՝ Հայերէնին հետ նոյնիմաստ է օտար խմբագրութեանց մէջ։ Բայց երկրորդ կէսն՝ սկսեալ վագրին պատահելէն, շատ տարբեր է ի նոյն օտար խմբագրութիւնս։ Ահաւասիկ նոր ասորի խմբագրութեան պատմածն, — որոյ հետ ըստ մասին կը միաբանի նաեւ արաբերէնն, եւ ըստ մասին անկէ կը տարբերի։

..."Կապկէն բաժնուելէն ետեւ՝ (ճանապարհորդն) զվագրը տեսաւ, որ զինքն ուրախութեամբ ընդունելով՝ ըսաւ. Օրհնեալ է գալուստդ։ Ես ստացուած չունիմ. բայց սակաւ մի ինծի սպասէ, եւ կը ջանամ քեզի պարտական եղածս հատուցանել։ Այս ըսաւ, եւ գնաց Թագաւորին աղջիկն սպաննեց, առաւ անոր գոհարեղէններն եւ ճանապարհորդին բերաւ՝ ըսելով. Առ զայս եւ կարօտութիւնքդ լեցու։ Իսկ ճանապարհորդը չիմացաւ թէ ուստի կը բերէ։

"Նոյն միջոցին այս վերջինս ինք իրեն կը խորհէր. Եթէ ասոնք որ անխօս անասուն են՝ իրենց պարտքն այսպէս լաւ կատարեցին, ապա որչափ եւս առաւել պիտի կատարէ բանաւոր էակ մի։ Ելլեմ ոսկերչին երթամ, այս գոհարեղէններն իրեն յանձնեմ՝ որ ծախէ. զնոյն մի մասն աղքատաց տամ եւ սակաւ ինչ ինք առնու, սակաւ մաս մ'ալ ես ինծի պահեմ աղքատութեանս օգնելու։ Այս խորհրդով ոսկերչին տունը գնաց, որ զինքն ուրախութեամբ ընդունեցաւ՝ մանաւանդ երբ հետն ունեցած ոսկեղէնները տեսաւ։ Եւ ճանչնալով որ Թագաւորին աղջկանն են, առաւ Թագաւորական պալատը տարաւ, եւ դռնապանին ըսաւ՝ Թէ Թագաւորին զրուցելու կարեւոր խօսք մ'ունիմ։ Դռնապանն աճապարեց Թագաւորին գնաց՝ իրն իմացուց եւ զինք ներս մտցուց։ Ոսկերիչը Թագաւորին առջեւ դրաւ ոսկեղէններն ու ըսաւ. Աղջիկդ մեռցընող եւ ոսկեղէններն առնող մարդն իմ տունս է։ Անմիջապէս բռնուեցաւ ճանապարհորդն, եւ Թագաւորին առջեւն հանուեցաւ, որ վճիռ կտրեց թէ զինք ձաղկեն, քաղքին չորս կողմը պտըտցընեն՝ առջեւէն քարոզ կարդալով՝ թէ Այս մարդն է Թագաւորին աղջիկն սպաննողն, եւ յետոյ խաչեն։ Երբ այս հրամանք կատարուելով, ճանապարհորդն ի խաչ հանուեցաւ, սկսաւ լալ եւ ինք իրեն կ'ըսէր. Եթէ անասնոց խորհրդոյն անսայի՝ այս չարիք գլուխս չէին ի գար։

«Օձն իւր բարերարին ձայնը լսելով՝ երբ ծակէն դուրս ելաւ եւ զինք խաչէն կախուած տեսաւ, շատ տրտմեցաւ. հնարք մտածեց զանիկայ ազատելու, եւ մեղմով սողոսկելով՝ գնաց Թագաւորին որդին խածաւ։ Թագաւորն այս դէպքն որ լսեց՝ կանչել տուաւ դիւթերն ու թովիչներն, որք թէպէտ իրենց դիւթական արուեստներն ի գործ դրին. սակայն օգուտ չկրցան ընել մանաւանդ թէ արքայորդւոյն վիճակն աւելի վատթարացաւ։ Նոյն միջոցին յերազի յայտնուեցաւ արքայորդւոյն, որ եթէ այն ճանապարհորդը չգայ իւր ձեռքը վիրացդ վրայ դնէ, բժշկուելիք չունիս. որովհետեւ յանիրաւի մահուան դատապարտուած է։ Թագաւորն այս լսելով՝ հրամայեց որ խաչէն վար առնուն եւ իրեն բերեն։ Երբ առջեւն ելաւ, Կը բաղձամ, ըսաւ Թագաւորն, որ ինծի պատմես քու հանգամանքդ, անձինդ վրայ տեղեկութիւն տաս, եւ յայտնես թէ ինչու այս քաղաքս եկած ես։ Ճանապարհորդն իւր պատմութիւնն սկզբէն մինչեւ վերջը պատմեց։ Ասոր վրայ Թագաւորն ըսաւ. Բժշկէ որդիս օձի խածուածէն, որպէս զի զրուցածներդ հաստատուին։ Ճանապարհորդն ինչ ընելիքը չգիտնալով, աչուըններն երկինք վերցուց եւ ըսաւ. Տէր Աստուած, եթէ ճշմարիտ են ըսածներս, եւ ամենեւին սուտ չկայ անոնց մէջ, բժշկութիւն շնորհէ արքայորդւոյն, եւ այսու իմացուր Թագաւորին եւ ներկայ եղողներուն՝ որ խօսածս ճշմարտութիւն է։ Եւ անմիջապէս արքայորդին բժշկուեցաւ, այնպէս որ Թագաւորն եւ ամէն մօտաւորք զարմացան մնացին։ Այն ժամանակ ըստ հրամանի Թագաւորին՝ ամէնքը մեծ պատիւներ ըրին ճանապարհորդին եւ պարգեւներ տուին։ Իսկ ի մասին ոսկերչին՝ հրամայեց Թագաւորն որ զինք սաստիկ ծաղկեն եւ յետոյ խաչեն։ Վասն զի, ըսաւ, ուր անխօս անասունք իրենց պարտականութեան հատուցումն ըրին, ինք որ բանաւոր մարդ է՝ ապերախտութիւն եւ խարդախութիւն գործեց»։

Վերոյիշատակեալ միւս երկու Առակք մեզի ծանօթ երեք խմբագրութեանց մէջ ալ կը գտնուին, եւ երկուքն ի միասին իբրեւ միակ Առակ յառաջ կը բերուին։ Առաջինն եւ գլխաւորն է՝ Կողկէն ու Կըէ-ոյէն Առակն, եւ յայնմ ագուցեալ է երկրորդն, որ է՝ Առիւծուն, Աղուէսուն ու Իշուն Առակն։ — Այս երեք օտար խմբագրութիւնք, թէպէտ ըստ էական մասանց իրարու հետ միաբան են, բայց ըստ երկրոր-

դական պարագայից ու մանրամասնութեանց եւ խօսակցութեանց ոչ սակաւ կը տարբերին ի միմեանց։ — Յիշեալ խմբագրութիւնք շատ ընդարձակ ըլլալով, բաւական կը համարինք անոնց համառօտ բովանդակութիւնն եւեթ ի մէջ բերել, ի մի ամփոփելով զամենայն, եւ միայն քանի մի գլխաւոր տարբերութիւնքը նշանակելով։ Եւ որովհետեւ նոյն օտար խմբագրութեանց ի միասին յառաջ բերած երկու Առակներն՝ մեր ձեռագրաց մէջ իբրեւ իրարմէ անկախ Առակք պահուած են, մենք ալ կը բաժնենք, սկսելով գլխաւորէն, որ կը գտնուի յՈսկեփ. 51. Առ. ՄԼԴ. եւ յԱշուեստգ. Առ. ԽԱ։

Բ. Առակ։

ԿԱՊԻԿՆ ՈՒ ԿՐԻԱՅՆ (ԸՍՏ ՀԱՅ ԽՄԲԱԳՐ.)

Ասի յառակաց՝ թէ Ապուպքն արար թագաւորութիւն վաթսուն տարի։ Յորժամ ծերացաւ՝ հանին զնա, եւ բերին զայլ մանկագոյն եւ եդին իւրեանց թագաւոր։ Եւ նա երթայր լալով ի յեզր ծովուն։ Եւ աստ պատահեցաւ նմա ծառ մի թզենի լի պտղով. եւ ելեալ ի ծառն բնակեցաւ, եւ ուտէր ի ծառոյն եւ գոհանայր զԱստուծոյ։ Եկեալ առ նա մեծ կրիայ մի՝ սովորեցաւ, եւ գայր յոստս ծառոյն, եւ ապուպքն ձգէր ի ծառոյն զթուզ, եւ նա ուտէր եւ գոհանայր զնմանէ։ Եւ յետ բազում ժամանակաց ասէր կրիայն ընդ ապուպքն. Արեկ՝ որ տանիմ զքեզ ի կղզին առ ազգն իմ, որ պատուեն զքեզ եւ քո աղէկին աղէկ առնեմ, զի գոհացեալ եմ զքէն առ ազգն իմ։ Եւ ապուպքն հաւատաց նմա վասն երախտեացն զոր արարեալ էր ընդ նմա. էջ ի ծառէն եւ նստաւ ի վերայ թիկանց կրիային, եւ սկսաւ գնալ ի ծովն ի ներս։ Եւ իբրեւ հեռացան ի ցամաքէն, ասէ կրիայն. Գիտացիր, եղբայր իմ սիրելի կապիկ, զի կին իմ հիւանդ է, եւ ասացին բժիշկքն՝ թէ զկապկի սիրտն եւ զերիկամունսն եփեսցեն, ու զջուրն առէք որ խմէ, որ առողջանայ։ Զքեզ այնոր համար կու տանիմ։

Կապիկն իբրեւ լուաւ՝ կանչեց իւր ամէն զօրութեամբն եւ ասէ. Հազար վայ զիս եւ շատ աւաղ է՝ որ չկայ ի հետս։ Դարձիր, եղբայր, դարձիր, որ արենտէր չլինիմ, որ առնում զսիրտն իմ եւ

զերիկամունսն իմ. զի մեր սովորութիւն է, որ ի ծառն կախեմք՝ յորժամ ի ճանապարհ երթամք. եւ շատոց առողջութիւն եղեալ է Աստուծով։ Եւ կրիայն հաւատաց ապուշնային, դարձաւ եւ գնաց ի ծառի տակն, եւ ապուշնոյն վազեց եւ ի ծառն ելաւ։ Եւ կրիայն ասէ. Փութա եւ եկ ճարտար, որ ժամանեմք հիւանդին։ — Ասէ կապիկն. Թէ ես այլ հաւատամ քեզ եւ իջնում ի ծառէս, քան զէշն անմիտ լինիմ՝ որ զերծաւ ի բերանոյ առիւծոյն եւ անկաւ դարձեալ ի [illegible]ն կամաւ, եւ սատակեցաւ։ — Եւ ասէ կրիայն. Դատիս յԱստուծոյ, զի սուտ ասացեր։ — Եւ կապիկն ասէ. Դու դատիս յԱստուծոյ, որ ինձ զստութիւն ուսուցեր։ Եւ ասէ. Վարձք է՝ որ ստով ապրեցայ ես, որպէս կաքաւն եւ չիտն՝ որք խաբեցին եւ ապրեցան[1]։

[1] Ակնարկութիւն երկու Առակաց, որ շատ սովորական են ի հաւաքածոյս։ Տես յԱզգուեսագ. Առ. ՃԴ. եւ ՃԵ։

## Ըստ օտար խմբագրութեանց։

Ովկիանոսի կղզեաց միոյն վրայ երկիր մի կար, կապկաշատ, որոյ չորքձեռնի բնակիչքն իրենց յատուկ թագաւորն ունէին։ Դէպ եղեւ՝ որ ժամանակին թագաւորն ծերութեան եւ հիւանդոտութեան պատճառաւ՝ չկարենալով այլ եւս յառաջ վարել այս կապկական տէրութեան կառավարութիւնն, իրեն յաջորդ ունեցաւ երիտասարդ կապիկ մի։ Գահակորոյս արքայ-կապիկն սկսաւ կամաց կամաց իւր արքունիքէն հեռանալ, եւ այնչափ յառաջ գնաց՝ մինչեւ լճի մի եզերքն (ծովեզրն) հասաւ, ուր թզենւոյ մի վրայ բնակութիւնն հաստատեց եւ թուզ ուտելով կ'ապրէր։ Անգամ մի փրցուցած թուզն ըստ պատահման ջուրն իյնալով, կրիայ մի վրայ հասաւ եւ առաւ կերաւ։ Եւ որովհետեւ թզոյն ջուրն ինկած ժամանակ հանած ձայնն շատ ախորժական հնչած էր կապկին ականջն, սկսաւ հետզհետէ փրցընել եւ վար նետել։ Իսկ կրիայն կարծելով թէ յատուկ իրեն համար կը նետէ, սրտին մէջ երախտագիտութեան եւ բարեկամութեան զգածմունք ծնաւ։ Այսպէս երկու դրացեաց մէջ կապակցութիւն մտաւ, որ սակաւ սակաւ անձուկ մտերմութեան դարձաւ, այնչափ՝ մինչեւ ա՛լ կապիկն չէր յիշեր իւր կորուսած գահն, եւ ոչ կրիայն իւր ընտանիքն. եւ այնուհետեւ երկայն ժամանակ խաղաղ եւ հաճոյական կեանք կ'անցընէին։

Այսպէս՝ մանր մանր տարբերութեամբք երեք օտար խմբագրութիւնք։ — Բայց աստ կը սկսին

իրարմէ տարբեր աւանդել։ — Հին ասորի խմբագրութիւնը կ'ըսէ.

...«Կրիային էգն իւր էրկանն այնչափ երկարժամանակեայ բացակայութիւնը տեսնելով, մեծ տխրութեան մէջ ինկաւ, եւ բարեկամուհեացն ըսաւ. Նայեցէք՝ որչափ ժամանակ է՝ որ ամուսինս զիս թողուց գնաց, եւ ամենեւին լուր չի տար. վախնամ՝ գլուխն արկած մ'եկած է։ — Բարեկամուհեաց մին պատասխանեց. Մի տխրիր, սիրելի. ես լսեցի որ էրիկդ ողջ առողջ ծովեզրը կը նստի կապկի մի հետ, նոյն տեղը կ'ուտէ կը խմէ եւ հանգիստ է։ Ինչո՞ւ հոգ կ'ընես՝ երբ ինք զքեզ թող է տուեր եւ ալ զքեզ չի հոգար։ — Ասոր վրայ էգն ընկողմնեցաւ, բոլոր օրը սգոյ ու լալու հետ եղաւ եւ մեծ տխրութեան մէջ մնաց։ — Սակաւ ժամանակ յետոյ իւր այրիկն ինք իրեն ըսաւ. Որչափ ատեն է՝ քանի որ տնէս բաժնուած եմ։ Այս զրուցեց, եւ ելաւ տունը դարձաւ»։

Նոր ասորի խմբագրութիւնն իրը տարբեր կը պատմէ։ Իգին տխրութիւնն ու բարեկամուհեաց միոյն խօսքն նախընթացին նման վիպելէն ետեւ, մանրամասն կը պատմէ՝ թէ ինչպէս նոյն բարեկամուհիք դաւաճանութեան ծրագիր մի յօրինեցին ոչ միայն զկրիայն կապկէն հեռացընելու, այլ նաեւ զկապիկը մեռցընելու։ Ըստ այսմ ծրագրի՝ կրիային էգն նստաւ անմիջապէս իւր ամուսնոյն նամակ գրեց՝ թէ ծանր ու վտանգաւոր հիւանդութեան բռնուած եմ. եւ էրկանը կ'աղաչէր որ շուտով տուն դառնայ՝ քանի որ ինք մեռած չէ։ Կրիայն այս նամակը կարդաց կապկին, որ զինքն յորդորեց անդանդաղ երթալու, որպէս զի ըստ խորհրդոյ բժըշկաց՝ դեղ ու դարման գտնէ կինն առողջացընելու։ Ուստի նոյն նամակին զօրութեամբն եւ կապկին յորդորմամբն եղած կը դնէ կրիային ի ճանապարհ ելլելն եւ ընտանեացը դառնալն, ուր՝ հին ասորերէնն, ինչպէս տեսանք, առանց բարեկամին գիտութեան եղած կը պատմէ ճանապարհորդութիւնն։

Սասիի արաբական խմբագրութիւնն՝ շատ համառօտ կ'անցնի այս մասն։ Էգ կրիայն, կ'ըսէ, իւր ամուսնոյն երկայն բացակայութեան վրայ հոգի

մէջ ինկաւ, եւ քանքատելով դրացուհւոյն ըսաւ. Վախնամ գլուխը դժբախտութիւն մ'եկած է։ Դրացուհին զինքն հանդարտեցուց, պատասխանելով. Երիկդ ծովեզերաց մօտ ծանօթացած է կապկի մի հետ, որ իւր ուտելիքն ու խմելիքը կը հոգայ։ — Սակաւ մի յետոյ արու կրիայն ելաւ տունը գնաց։

Ասկէ ետեւ երկու ասորի խմբագրութիւնք միաբան կը վիպեն կրիային իւր տունն հասած ժամանակն՝ կնոջն, անոր բարեկամուհեաց եւ իւր մէջ պատահածներն, եւ յառաջ կը բերեն եղած խօսակցութիւններն։ Սրտաշարժ եղանակաւ կը նկարագրեն կրիային վարանքն՝ երբ իմացաւ թէ կնոջն հիւանդութեան միակ դարմանն է կապկի սիրտ, եւ թէ չկայ այլ ճար զայն հոգալու՝ բայց միայն իւր բարեկամ կապիկը զոհել։ Մի կողմէն ամուսնական սէրն եւ ի միւս կողմանէ բարեկամութեան եւ երախտագիտութեան զգածմունքն իրարու դէմ ի կռիւ ելած՝ զինք կը չարչարէին եւ թող չէին ի տար որոշման մի գալ։ Վերջապէս յաղթող եղաւ գութն ամուսնական եւ անձնական շահն. ուստի յուղէ անկաւ՝ որոշելով որ իւր բարեկամ կապիկն հետն առած ետ դառնայ։

Այս տեղ Նոր ասորի խմբագրութիւնն շեղելով ի հնոյն՝ կը պատմէ կրիային շինած ծրագիրն, որ միտքը դրաւ զկապիկն համոզել հետն երթալու, զինք իւր ընտանեաց բնակարանին մօտերը տանիլ ու անսուաղ թողուլ՝ մինչեւ մեռնի, եւ յետոյ կուրծքը բանալ, սիրտն առնուլ կնոջը տանիլ։ Այս վախճանաւ տնէն ելած ժամանակ հետը դանակ մ'առաւ։ — Այս կտորն յաւելուած է Նոր ասորի խմբագրութեան, որ արաբերէնին մէջ չկայ։

Կրիային այս ճանապարհորդութենէն դարձած ժամանակ՝ իւր եւ կապկին մէջ եղած խօսակցութիւնն իրարմէ տարբեր յառաջ կը բերեն այլեւայլ խմբագրութիւնք։ — Նոյն օտար խմբագրութիւնք եւս հայերէնին հետ յայնմ կը միաբանին, որ կա-

պիկն՝ կրիային խաբէական ու կեղծաւորական խօսիցն հաւատալով, յանձն առաւ հետն երթալ։ Ուստի ցամաքեց վրան ելաւ, եւ կրիայն սկսաւ զինք դէպ իւր ընտանեաց բնակարանը տանիլ։

Առակին մնացեալ մասն՝ թէեւ օտար խմբագրութեանց, մանաւանդ երկու ասորականաց մէջ, Հայերէնէն շատ աւելի երկայն է, սակայն ըստ իմաստին մեծ տարբերութիւն չի տեսնուիր։ Միայն կապիկն՝ զինք ճարտարութեամբ ետ դարձընել տալէն, եւ թզենւոյն վրայ ելլելով՝ ապահովնալէն ետեւ, երբ կրիայն զինք կը փութացընէր նորէն ետ դառնալու, ըստ օտար խմբագրութեանց՝ իշուն կրկին անգամ խաբուելուն Առակը պատմեց, ուր՝ ի Հայերէնին լոկ ակնարկութիւն կայ նոյն Առակին։

Յօտար խմբագրութիւնս՝ իբրեւ նախընթացին ամբողջացուցիչ մասն՝ յառաջ բերեալ երկրորդական Առակն, ինչպէս յիշատակեցինք, իբրեւ ինքնակաց Առակ կը գտնուի մեր հաւաքածոյից ոչ սակաւուց մէջ։ Եւ ունի իսկ երկու ընթերցուած, որ ըստ իմաստին նման՝ սակայն մին համառօտագոյն է քան զմիւսն՝ որ սովորականն է։ Այս Առակին երկու ընթերցուածքն ալ արդէն հրատարակած ենք ի նախընթաց հատածին, էջ 290։

### Ըստ օտար խմբագրութեանց։

Ըստ սովորութեան շատ աւելի ընդարձակ է այս Առակն ալ յօտարալեզու խմբագրութիւնս, որ ոչ սակաւ կը տարբերին իրարմէ։ Բայց որովհետեւ յէական մասունս կը նոյնանան, ի մի ամփոփեալ կը դնենք անոնց համառօտութիւնն։

Անտառաբնակ առիւծ մի թեփախտի հանդիպելով՝ այնչափ տկարացած էր, որ ալ չէր կարող որսի ելլել։ Նոյն տեղն աղուէս (շնագայլ) մի եւս կար, որ չորքոտանեաց թագաւորին ծառայութիւն կ'ընէր, եւ ասոր փոխարէն՝ առիւծուն կերածին մնացորդներովը կը կերակրուէր։ Խորամանկ անասունը տիրոջն հարցուց՝ թէ զինքն այսպիսի տկարութեան հասցընող հիւանդու-

*թեան դեղ չի՞ գտնուիր արդեօք։ — Լսեր եմ, պատասխանեց առիւծն, որ հիւանդութեանս այլ դեղ ու դարման չկայ, եթէ ոչ՝ իշու մի սիրտն ու ականջներն ուտել։ — Աղուէսն ըսաւ. Դժուարին չէ էշ մի գտնել։ Մօտ տեղերս լիճ մի կայ, ուր Թափիչ մի իշով կու գայ զգեստեղէններ կը սպիտակցընէ։ Երբ իշուն վրայէն բեռը վար կ'առնու, կը թողու որ ազատութեամբ այսդին այնդին երթայ ճարակի։ Արդ սոյն էշը կարող եմ քեզի բերել, որ սիրտն ու ականջներն առնուս ուտես։ — Առիւծն հաւանեցաւ որ իրն հոգայ։*

*Աղուէսն ելաւ գնաց. եւ ընդ էշը տեսնելն՝ հարցուց թէ ինչո՞ւ այնպէս հիւծեալ ես. կռնակի վէրքերդ ալ ուստի՞ են։ — Այն անիծեալ Թափիչը, պատասխանեց էշն, ուտելիքս չի հոգար. բարկացած ատեն ալ չարաչար կը զարնէ։ — Աղուէսն ըսաւ. Եթէ կ'ուզես՝ զքեզ այնպիսի տեղ տանիմ, ուր ոչ միայն առատ խոտ ու ջուր կը գտնուի, այլ նաեւ մատակ էշ մ'ալ կայ, որուն հետ կրնաս ապրիլ՝ զաւակներ ունենալ եւ օրերդ զուարթութեամբ անցընել։ — Ուրախութեամբ հաւանեցաւ էշն այս առաջարկութեան. եւ աղուէսը զինքն առաւ առիւծուն բնակած անտառը տարաւ։ Գազանն իւր որսը տեսնելով՝ վրան վազեց ու կռնակէն բռնեց. բայց տկարութեան պատճառաւ չկրցաւ անոր փախուստը խափանել։ Աղուէսն ասոր վրայ զարմանք որ ցուցուց, առիւծն երկդիմի ու խուսափողական խօսքերով զինք լռեցուց, եւ յանձնեց որ երթայ զէշը նորէն բերէ։*

*Հնազանդեցաւ աղուէսն ու գնաց։ Եւ իշոյն՝ բարկութեամբ ու տրտնջմամբ իրեն դէմ խօսածը խարդախ կերպով հերքելով, համոզեց թէ առաջին անգամ տեսածն՝ այն իւր ըսած մատակ էշն էր։ Այնչափ ըրաւ՝ որ էշն յանձն առաւ երկրորդ անգամ հետն երթալ։ Առիւծը դարձեալ վրան յարձակեցաւ, եւ նախընթաց անգամէն աւելի յաջողութիւն գտնելով, գետին զարկաւ ու սպաննեց։ Յետոյ աղուեսուն հրամայեց որ իշուն մօտ կենայ, մինչեւ ինք երթայ լուացուի ու արիւնը վրայէն մաքրէ։ Առիւծն որ հեռացաւ, աղուէսն իշուն սիրտն ու ականջները կերաւ, մտածելով որ իւր տէրն կենդանւոյն անսիրտ ու անականջ ըլլալն իբրեւ չարագուշակ բան կը համարի եւ ալ չ'ուզեր մնացած մասերէն ուտել, որով ինք երկայն ժամանակ առատ ուտելիք կ'ունենայ։ — Ուստի երբ առիւծն ետ դարձաւ եւ զարմանօք հարցուց՝ թէ Ո՞ւր են իշուն սիրտն ու ականջները, նենգաւորը պատասխանեց. Ինչո՞ւ ասոր վրայ խօսք կ'ընես, իմ Պարոն։ Չե՞ս կարող ինքնին մտածել՝ որ եթէ սիրտ ու ականջ ունենար, մի անգամ փախչելէն ետեւ՝ երկրորդ անգամ չէր ի գար։*

«Նախընթաց էջերուն մէջ տեսանք որ մեր Առակներէն ոմանք հնդկական ծագումն ունին, եւ առնուած են գլխաւորաբար Գալիլա ու Տիմնա եւ Փանչաթանթրա կոչեալ սանսկրիտ մատեաններէն։ Կը մնայ արդ հետազօտել թէ ինչպէս եւ ո՛ր ճանապարհաւ մուտ գտած են առ մեզ։

Բայց նախ քանի մի կէտք կան նկատելու։

Ա. Առակաց ամէն խմբագրութիւնք առհասարակ՝ առաւել կամ նուազ չափով՝ իրարմէ կը տարբերին։ — Գալիլա ու Տիմնա գրոց նոյն յատկութեան վրայ այսպէս կը խօսի Սասի. «Չի կրնար գաղափար ունեցուիլ այն արտաքոյ կարգի տարբերութեանց՝ որ կը գտնուին այս գրոց արաբական խմբագրութեան այլեւայլ ձեռագրաց մէջ։ Այնչափ եւ այնպիսի են տարբերութիւնքս, որ մարդ կարծէ թէ զատ զատ թարգմանութիւնք եղած են։ Սակայն ես կը համարիմ թէ իրօք միակ թարգմանութիւն կայ, բայց մեծամեծ փոփոխմանց ներքեւ ինկած է՝ ընդօրինակողաց եւ ընթերցողաց, որք զգրութիւնն գեղեցկացընել դիտած են՝ պատմութիւններն ընդարձակելով, միջադէպքերը բազմացընելով, նորանոր Առակներ... մուծանելով։ Ոմանք ալ զայն ամենայն զեղչած են՝ որ իրենց անյարմար երեւցած է կամ անվայելուչ։ Միով բանիւ՝ իւրաքանչիւր ոք կերպարանափոխ ըրած է եւ իւր ախորժակին կամ ոգւոյ իւր ժամանակին յարմարցուցած»։ (Mém. histor. էջ 14.)

Գաղղիացի արեւելագիտին այս դիտողութիւնը կրնայ առնուիլ նաեւ նոյն գրոց այլ թարգմանութեանց՝ մինչեւ Փանչաթանթրայի սանսկրիտ սկզբնագրոց վրայ ալ, որոց մէջ շատ ցանցառ կը գտնուին երկու ձեռագիրք որ իրարմէ տարբերութիւններ չունենան։

Բ. Առակաց խմբագրութեան այս տարբերութիւնք՝ թէեւ մի կողմէն մեծ դժուարութիւն եւ երկայն աշխատութիւն կը պատճառեն մատենագիտաց. սակայն մեծապէս կը նպաստեն այլեւայլ խմբագրութեանց իրարու յարաբերութիւնն յերեւան հանելու, եւ իմանալու՝ թէ այս ինչ Առակն ո՛ր խմբագրութենէն առնուած է։ Եւ արդէն այսպիսի դիտողութեանց եւ մակաբերութեանց շատ յարմար է յօրինուած օտար խմբագրութեանց։ Ասոնք ընդհանրապէս խօսելով՝ լայն եւ ընդարձակ են. դէպքերուն մանր մանր պարագայքն ի մէջ կը բերեն, շատ անգամ միջադէպքեր կամ երկրորդական Առակներ կը մուծանեն, հասարակօրէն գաւառաց եւ քաղաքաց, թագաւորաց եւ իշխանաց ... անուն-

ները կը յիշատակեն, Առակաց մէջ երկրորդական դեր մ՚ունեցող անձանց եւ անասնոց բերանն անգամ սովորաբար երկայնաձիգ խօսակցութիւններ կը դնեն։

Արդ՝ որովհետեւ գլխաւորաբար ի սոյնպիսիս իրարմէ կը տարբերին այլեւայլ խմբագրութիւնք, ասոնց նոյնութեան կամ տարբերութեան միտ դնելով՝ կրնայ դիւրաւ իմացուիլ կամ մակաբերուիլ խմբագրութեանց առ միմեանս յարաբերութիւնն, որով եւ որոշուիլ թէ ո՛ր հնագոյն խմբագրութենէ առեալ կամ թարգմանեալ է այս ինչ կամ այն Առակն։

Գ. Կան նաեւ այլ պատճառք՝ որոց հետեւանք կրնայ համարուիլ զանազան խմբագրութեանց մէջ տեսնուած տարբերութիւններուն մի մասն։ Պէնֆէյ եւ այլ հմուտ մասնագէտք կը հաստատեն թէ Առակք՝ գրաւոր թարգմանութեամբ ի հեռաւոր գաւառս չտարուած, արդէն բերանացի աւանդութեամբ անցած կ՚ըլլան թէ միեւնոյն գաւառներն եւ թէ այլ կողմեր, ճանապարհորդաց՝ մանաւանդ վաճառականաց միջոցաւ, զանազան ազգերէ մարդկան՝ պատերազմական արշաւանաց եւ դեսպանական ուղեւորութեանց ժամանակ՝ իրարու հետ տեսակցութեամբ եւ այլ նման առիթներով։ Նոյն բերանացի հաղորդակցութիւնը շատ անգամ տեղի կ՚ունենայ նաեւ գրաւորին յերեւան ելլելէն ետեւ։

Արդ՝ այսպիսի բերանացի հաղորդակցութենէ կրնան ծագած համարուիլ այն Առակք մանաւանդ, որ այնչափ համառօտ են՝ մինչեւ հնար է ենթադրել թէ լածին յիշատակն ի միտ պահելու նպատակաւ եւեթ թղթի անցուցած է գրողն։ Հաւանական է որ այսպիսի ծագումն ունենան գլխաւորաբար այն Առակք, որոց մասունքն իրարու հետ բաւական կապ չունին, եւ Առակի հատակոտորոց կը նմանին աւելի՝ քան կարգաւորեալ Առակի։ Ի մասին այսպիսեաց հնար է եւս կարծել թէ զանոնք լսողն կամ լաւ իմացած չէ եւ կամ քանի մի մասունքն մոռցեր է, եւ ըմբռնածին կամ յիշածին համեմատ՝ անյարիր եւ թերակատար Առակներ է գրեր։

Դ. Խօսքն հայերէն Առակաց մասնաւորելով, յառաջագոյն բերուած օրինակներէն գիտենք որ ասոնց յօրինուածն շատ տարբեր է վերագոյն ի մասին յօրինուածոյ օտար խմբագրութեանց ըսուածէն։ Մեր Առակաց խմբագրութիւնն հասարակօրէն կարճ եւ համառօտ է. դէպքերուն էական մասերը միայն եւ ամենակարեւորները կը յիշատակուին՝ առանց մանր պարագայից իջնալու. հազիւ քանի մի Առակաց մէջ կը տեսնուին միջադէպք, երկրորդական Առակք՝ ոչ եր-

բեք. յատուկ անուանք ցանցառ կը հանդիպին, եւ այն՝ գաւառի եւ քաղաքի միայն. էական խօսակցութիւնք եւեթ մէջ կը բերուին՝ սովորաբար շատ համառօտեալ, երբեմն եւս լոկ ակնարկութեամբ։

Մեր Առակաց յայս հանգամանս գտնուելովն՝ զրկեալ ենք այն մեծ օգնութենէն՝ զոր օտար խմբագրութեանց յօրինուածոյն կերպը կը մատակարարէ մասնագիտաց։ — Սակայն եթէ ի բաց հանենք սակաւաւոր Առակաց մէջ տեսնուած թերութիւններն, որ աւելի ընդօրինակողաց անհմտութեան եւ անմտադրութեան արդիւնք են՝ քան խմբագրաց, չենք գտներ այնպիսի նշաններ՝ յորոց հնար ըլլայ հետեւցընել թէ բերանացի աւանդութենէ առնուած են։ Ասոր բաւական ապացոյց են մինչեւ ցարդ յառաջ բերեալ օրինակք. բայց դնենք աստ համառօտ Առակ մ'ալ, որ յիւրում համառօտութեան ունի զամենայն հանգամանս կարգաւորեալ գրաւոր Առակի։

Կաթիլ մի մեղրի պատճառած չարն։

Այր ոմն ունէր խանութ եւ մեղր ծախէր, եւ կաթեց կաթ մի մեղր ի գետինն, եւ պիծակ մի նստաւ ի մեղրն, եւ կատու մի[1] վազեաց եւ էառ զպիծակն. եւ շուն մի վազեաց եւ էառ զկատուն, եւ եզարկ կատուին տէրն եւ եսպան զշունն։ Եւ գիւղ մի կայր յայն գեղին դրացնութիւնն, նա այն շունն ի յայն գեղէն էր, եւ իմացաւ շանն տէրն թէ սպան խանութպանն զշունն, եկն եզարկ եւ սպան զխանութպանն։ Եւ պատերազմեցան երկու գեղն ընդ իրար եւ սպանին զմիմեանս, մինչեւ ոչ մնաց մարդ ոչ ի յայն գեղն եւ ոչ ի յայն. եւ ամենայն մեռան վասն մէկ կաթ մեղրին։ Ոսկեփ. 132. Առ. ՃԻԲ։

[1] Աւելի անըստգիւտ կ'ըլլար խմբագրութիւնն, եթէ ըսէր՝ կատու խանութպանին։

Թէպէտ հնար չէ զայս Առակ նկատել իբրեւ գլուխ գործոյ առակագրութեան. բայց իւր պարզութեամբն ու համառօտութեամբ հանդերձ՝ ազատ է այն թերութիւններէն որ կը տեսնուին նոյնին երկու օտար խմբագրութեանց մէջ, որոց աւասիկ ճիշդ թարգմանութիւնն ըստ Պենֆէյի։ (Փոնչոյ. Ա. էջ 190, 191։)

1. "Որսորդ մի մեղրի խորիսխ կը գտնէ եւ կ'ուզէ ծախել։ Կաթիլ մի գետինը կը կաթի, վրան մեղու մի կը նստի. յետոյ կու գայ կին մի՝ որ կը զրուցէ թէ այն մեղրի խորիսխն իւր գեղէն առնուած է, եւ կ'ուզէ ինք առնուլ տանիլ։ Որսորդն ընդդէմ կը դառնայ, մանրա-

վաճառն ալ միջամուխ կ՚ըլլայ ի կռիւն՝ որ ընդհանուր կռուոյ կը փոխուի երկու գեղին մէջ»։

2. «Որսորդը կ՚ուզէ զմեղրը ծախել, կաթիլ մի գետինը կը կաթի։ Մանրավաճառին կատուն կը լափէ կը լմնցընէ (զմեղրն °´). որսորդին շունն զկատուն կը մեռցընէ, մանրավաճառն՝ զշունն։ Ասոր վրայ որսորդն իւր բարեկամներն օգնութեան կը կանչէ, մանրավաճառն ալ՝ իրեններն. եւ այնչափ կը կռուին՝ մինչեւ ամէնն ալ կը մեռնին, կաթիլ մի մեղրի համար»։

Առակիս հայերէնին այնպէս կոկ ու անթերի՝ իսկ երկու օտարացն մանաւանդ առաջնոյն այնչափ անյարիր ու թերակատար ըլլալէն, — մինչեւ հազիւ երկուքն ի մի ձուլելով եւ մին միւսով ամբողջացընելով՝ հնար է կարգաւորեալ Առակ կազմել, — այս հետեւանքը կրնայ հանուիլ՝ որ վերջինները բերանացի պատմուած Առակի վրայէն շինուած են, իսկ հայերէնը՝ գրաւոր բնագրի վրայէն։ — Արդ թէպէտ մեր Առակաց մեծի մասին համառօտութեան ու պարզութեան նայելով, կրնայ կասկածուիլ թէ ի լրոյ գրուած ըլլան. սակայն եթէ անոնց ամէն հանգամանաց միտ դրուի, աւելի պատշաճ կ՚երեւայ ենթադրել թէ գրաւոր խմբագրութեան հետեւողութեամբ յօրինեալ են։ Այսչափ միայն կրնայ հաւանական համարուիլ, որ թերեւս այս ոք կամ այն ի խմբագրաց, քանի մի Առակ կարդալու ժամանակ՝ կարեւոր մասունքն եւեթ նշանակեր է, յետոյ կոկելու եւ յարդարելու միտօք. բայց ապա չկարենալով, այն անյարդ ծրագիրն սկզբնական վիճակաւը մնացեր եւ ի հաւաքածոյս մուծուեր է։

Անցնինք արդ ի հետազօտութիւն խնդրոյս՝ թէ ո՛ր խմբագրութենէն եւ կամ մանաւանդ ո՛ր լեզուէն առեալ են մեր հաւաքածոյից Առակք։

Ա. Թէ արդեօք հնա՞ր է որ մեր Առակագիրքս սանսկրիտ սկզբնագրերէ առած ըլլան իրենց Առակներն, — այս խնդրոյս կարող ենք՝ կարծեմ՝ համարձակ պատասխան տալ՝ թէ Ոչ։ Կիրարկութիւն սանսկրիտ սկզբնագրոց ի խմբագրութիւն մեր Առակաց՝ հնարաւոր չ՚երեւար, որովհետեւ ոչ փոքր նշան կը տեսնենք սանսկրիտերէնի ի բովանդակ Հայ հաւաքածոյս, եւ ոչ ուրեք թեթեւ ակնարկութիւն կը գտնենք մեր ռամկագիր հեղինակաց սանսկրիտ լեզուի տեղեկութիւն ունենալուն։ Իսկ յատկապէս ի մասին Գուճըլա ու Ցիմմա գրոց՝ բաւական է յիշել

միայն՝ որ պահլաւ թարգմանութեան (Զ. դարուն մէջ) ի գլուխ ելլելէն ետեւ, անհետ կորսուեալ է նոյն մատենին սանսկրիտ սկզբնագիրն։

Բ. Ապա ուրեմն հարկ էր որ դիմէինք յայլեւայլ թարգմանութիւնս։ Եւ բնականապէս մեր ուշադրութիւնն յառաջ քան զամենայն՝ դառնալու էր Գալիլա ու Տիմնա գրոց պահլաւ թարգմանութեան։ Բայց զայն եւս միակողմն թողլու կը ստիպուէինք, գիտնալով թէ այն ալ սանսկրիտ սկզբնագրին բախտին հանդիպած է։ Ուստի մեր խնդրոյն լուծումը գտնելու համար՝ պէտք էր որ կապուէինք նոյն պահլաւերէնի վրայէն եղած թարգմանութեանց, որոնցմէ՝ ինչպէս գիտենք՝ հին ասորականն եւ արաբականն ուղղակի առնուած են. իսկ մնացեալքն, այն է՝ նոր ասորականն, յունականն, պարսկականն, եբրայականն եւ այլք, արաբականին միջոցաւ։

Արդ՝ ուշի ուշով կարդալով նոյն խմբագրութիւններէն ոմանց եւրոպական թարգմանութիւնն, մասնաւորապէս հետազօտելով անոնց վրայ մանրամասն տեղեկութիւն տուող Ուսումնասիրութիւնքն՝ մանաւանդ Պենֆէյինն, այս համոզումն ստացանք որ մեր մտադրութիւնն ամփոփելու ենք հին ասորականին, արաբականին եւ նոր ասորականին վրայ։ Վասն զի տեսանք որ մեր Առակք չեն կրնար — ի բաց առեալ զնոր ասորականն, — արաբերէնի վրայէն եղած այլ թարգմանութեանց եւ ոչ միոյն հետեւողութեամբ խմբագրուած ըլլալ։ Ստոյգ է՝ սոյնք ալ, եթէ դուրս հանենք զպարսկերէնն, պարզ եւ անզարդ են արաբերէնին պէս, եւ ոմանք՝ ըստ բաւականին համառօտ. բայց սոյնք իրենց պարզութեամբն ու համառօտութեամբն ալ՝ մեր Առակներէն շատ տարբեր ոճով խմբագրեալ են։

Գ. Շատ հաւանական եւ գրեթէ ստոյգ կրնայ համարուիլ թէ ազգային Առակագրացս անծանօթ էր Հին տորէ խմբագրութիւնն, որ ինչպէս տեսած ենք՝ գոգցես ի սկզբանէ ի մոռացութիւն անկեալ

էր, եւ այնպէս ալ մնաց մինչեւ մեր օրերն՝ որպէս թէ կորուսեալ։ Ապա ուրեմն չէին կարող զայն ի ձեռին ունենալ եւ ի կիր արկանել մեր ռամկագիր հեղինակք, որ հազիւ ԺԸԳ. կամ ի ԺԴ. դարու, աւելի՝ անազգանագոյն քան կանխագոյն, կրնան խմբագրած ըլլալ հայերէն Առակներն։ — Այս հանգամանաց նայելով, մեծ ծանրակշռութիւն չի կրնար ունենալ մեզի համար սոյն աստի խմբգր. սակայն որովհետեւ՝ սանսկրիտ սկզբնագրին եւ պահլաւ թարգմանութեան անհետալուն պատճառաւ՝ իբրեւ հնագոյն բնագիր կը նկատուի եւ արաբերէնին կը նախադասուի, — միշտ աչաց առջեւ ունեցանք նոյն խմբագրութիւնն, եւ ուրեք ուրեք կարեւոր երեւցածը նշանակեցինք։

Դ. Բայց առաւելագոյն հետաքօտութեան նիւթ ըրինք տըռքերէն եւ նոր տառէ խմբագրութիւնքն. վասն զի այս երկուքն ոչ միայն առաւել քան զայլսն դիւրամատոյց եւ առձեռնպատրաստ կրնային ըլլալ մերայոց, այլ նաեւ ի հարկէ աստնց գէթ մին ունենալու էին ի ձեռին; այն Առակներն առնլու համար՝ որ չեն գտնուիր ի հին տառէ խմբագրութեան, այլ կան այս երկուքին մէջ։ Այսպիսեաց մին է Ճանապարհորդին եւ Ոսկերչին Առակն, զոր արդէն տեսանք։ Աստ կը յաւելունք երկրորդ մ'ալ, որ չի գտնուիր եւ ոչ իսկ կրնար գտնուիլ հին տառէսյն մէջ, որովհետեւ առնուած է սկզբնաբար արաբերէն լեզուաւ գրեալ Պերզոէի կենսագրութենէն։

Վէօղ ֆողըց ըլըր ճարփարը–Բեամբ կը բռնէ տանտէրն։

> Երկու գող գնացին ի մեծատան մի երդիք եւ կամէին գողանալ զգանձս նորա, եւ էր լուսնկայ, եւ իմացաւ այրն՝ որ գողքն ի յերդիքն եկին։ Եւ (ցած ձայնով) ասէ ընդ կինն որ բարձրաձայն հարցանէ ընդ ինք՝ թէ զայնչափ գանձն ուստի է ժողովել։ Այսոր վերայ[1]) ասէ կինն ընդ այրն՝ թէ (Զ)այս ամէն գանձս եւ (զ)դրամս եւ (զ)կարասիս ուստի՞ անկաւ ի քեզ։ — Եւ ասէ

այրն՝ թէ Գողութիւն արարի։ — Եւ ասէ կինն. Ո՞րպէս։ — Եւ նա ասէ. Երթայի ի գողութիւն գիշերն ի մեծատանց երդիքն, եւ էր լուսնկայ զերդ հիմայ, եւ շող լուսնկին ի յերդիքն ի վայր էր ցայթել զինչ հիմայ։ Իս թանէի ի շողն եւ իջանէի եւ ասէի զայս բանս՝ Շող շող, նշուլ նշուլ, եւ զլուսնկին շողն բռնէի եւ ի վայր իջնուի ի տունն, եւ ասէի բաներ, որ զինչ գեղեցիկ ջուամող կայր ի տունն՝ նա ամենայն ինձ երեւենայր, եւ առնէի եւ ի շողն կապէի, եւ ասէի զայս բանս՝ Շող շող, նշուլ նշուլ, եւ զշողն գրկէի՝ նա զիս եւ զջուամողն ի վեր տանէր եւ հանէր զիս ի տանիսն։ Եւ այսպէս զամենայն շահեալ եմ։ — Եւ լսեցին գողքն զբանս զայս եւ ուրախացան, եւ ուսուցին խաբողական բանիցն, եւ գրկ(եց)ին զշողն՝ որ ի վայր իջնուին. եւ անկան եւ անխեւլացան, եւ այրն անկաւ ի վերայ նոցա եւ սպան զնոսա։ Ռօհէֆ. 132. Ար. ՃԺԶ։

[1] Ձեռագրիս մէջ կը պակսի փակագծեալ մասն, զոր անշուշտ անմտադրութեամբ դուրս թողած է ընդօրինակողն։

Ե. Մինչեւ ցայս վայր ի մէջ բերեալ դիտողութիւններէն դիւրին է հետեւցընել՝ թէ այն երեք Առակք զոր մեր հետազօտութեանց նիւթ ըրինք, թերեւս եւ այլ ոչ սակաւք, որ անոնց պէս հնդկական կամ օտար ծագումն ունին, Հաւանաքար արաբերէնի հետեւողութեամբ յօրինեալ են։ Եւ այն եւս հաւանական կ'երեւայ որ ասորւոյ կամ անընդմիջաբար արաբերէնէ առեալ են, եւ ոչ եթէ նոր տօրէ կամ որպիսի եւ իցէ այլ մեղէ ծանօթ խմբագրութեան միջոցաւ։ Աւասիկ կարծեացս հիմունքն։

1. Ցառաջագոյն ի մէջ բերեալ Գ. Առակին մէջ տեսանք թէ որչափ կը տարբերի հայերէնն՝ — մանաւանդ աղուեսուն զէշն համոզելու համար ըրած խօսակցութեան մասին — երեք օտար (հին ու նոր ասորի եւ արաբ.) խմբագրութիւններէն։ Արդ՝ Կուիտի իրեն ծանօթ արաբերէն ձեռագրաց միոյն ընթերցուածն յառաջ կը բերէ, որ ըստ ամենայնի մասանց համաձայն է հայերէն ընթերցուածոյն։ Աստ ճշդիւ կը թարգմանենք իտալացի մասնագիտին հատուածն։ "Աղուէսն՝ որպէս զի զէշն համոզէ իրեն

"հետ երթալու, կը զրուցէ թէ զինք խոտաշատ եւ
"առատաջուր տեղ մի պիտի տանի, ուր կայ տախծ
"մի՝ որ կը ճաղշյա զէնք փեանել եւ իրեն հետ ըլլալ:
"(Che desidera vederlo ed essere con lui.) Իսկ
"զինք երկրորդ անգամ տանելու համար կը զրուցէ
"թէ առիծուն իւր վրայ նետուելն, զոր եշը կը հա-
"մարէր թէ զինք մեռցընելու համար ըրած էր, մի-
"այն է մեծ սէրոյն էր (era solo pel grande affetto)
"եւն„[1]: (Studii, եջ 61.)

Հայերէնին եւ (Կուիտիի) արաբերէն ընթեր-ցուածոյն, այլ խմբագրութեանց սովորական ըն-թերցուածէն շեղելով, այսչափ իրարու նմանիլը՝ կարծենք մեծ ցոյց է հայերէնին ուղղակի արաբե-րէնէ առնուած ըլլալուն, — վասն զի չի գտնուիր ոչ-արաբերէն խմբագրութիւն՝ որ վերոյիշեալ արա-բերէնին նմանի[2]. եւ անկարելի է որ հայ խմբագիրն ինչ-ինչ յանչնէ մուծած ըլլայ այս փոփոխութիւնն: Եւ արդարեւ ի՞նչպէս կարելի է որ երկու խմբա-գիրք, առանց հաստարակաց աղբիւր մ'ունենալու, ինչ-ինչ՝ էրարձէ անչախ, էրկու անգամ, ղաք ղաք խօսէ մէջ, այնպէսէ փոփոխութիւն մուծանէն՝ որ ոչ ըստ իմաս-տէն միայն՝ այլ նաեւ ըստ ճառէյն, էրարու հետ ճշդէ-նոյնանան:

2. Մեր հաւաքածոյից մէջ կը գտնուին Ա-ռակներ, որոց նիւթն իսկ եւ այլ հանգամանք կը ցուցընեն թէ արաբական ծագումն ունին, եւ կամ եթէ սկզբնաբար հնդկական էին՝ արաբական կա-ղապարի մէջ ձուլեալ են: Այսպիսեաց մին է՝ Պաղ-տատու խալքեօյէն եւ արմանէնէ տնկող ծէրայն վէպն, որոյ վրայ կը յաւելունք հետեւեալ Առակն ալ:

[1] Տես զՀայերէնն՝ եջ 291:

[2] Թէ ոչ-արաբերէն խմբագրութեանց մէջ չի գտուիր Հայերէնին նման ընթերցուած, այս կը ցուցուի յոյն, պար-սիկ եւ նոր ասորի խմբագրութեանց օրինակաւ, յորոց մի-այն հնար էր մեր ռամկագիր հեղինակաց առնուլ: Տես Հան-դէս ամսօր. 1891, եջ 298:

Առակ անասնոց լեզուն հասկցող մարդուն:

Այր մի սովորեալ յամենայն աւուր որքան ապրեցաւ՝ հաց մի տանէր եւ ի ծովն ձգէր, որ ձկներքն ուտէին: Եւ յորժամ հանդերձեալ էր մեռանել՝ պատուիրեաց որդւոյ իւրում եւ ասէ՝ թէ Ես յիմ կենդանութիւնն յամէն օր հաց մի արկանէի ձկներեցն ի ծովն. ի միտ առ, եւ դու նոյնպէս արա, որ ի քեզ դէմ գայ: Եւ մեռաւ այրն: Իսկ որդին նմանապէս յանձն էառ եւ առնէր զպատուէր հօրն բազում ժամանակս: Եւ յաւուր միում կացեալ յեզր ջրոյն՝ մինչ եկն ձկներէն ուտել զհացն, ասէ. Այսչափ ժամանակս իմ հայրն զայսպիսի լաւութիւնս ձեզ արար եւ ես կու առնեմ. դուք ինձ փոխարէն է՞ր չէք առնել: Յայնժամ ասէ ձկնէկն այն. Եկ առ իս եւ տարայց զքեզ առ հայրն իմ, զի քեզ զփոխարէնն հատուսցէ: Եւ ի գնալն պատուիրէր որդի ձկներոյն առ նա եւ ասէ. Թէ հայրն իմ բազում ոսկի եւ արծաթ եւ ակունս պատուականս տացէ քեզ, դու մի առնուր, այլ ասա՝ թէ Ի քեզանէ զայն կու խնդրեմ որ զճկոյթդ ի բերանս քարշես: Եւ գնացեալ առ հայր ձկներոյն՝ զնոյն խնդրեաց: Իսկ նա խռովեալ՝ ասէ. Դժուարինս խնդրեցեր, որդեակ: Ապա գիտացիր, թէ մարդոյ ասես՝ պիտի մեռանիս: Եւ ասէ այրն՝ թէ Յամենայն զօրութենէ պահեմ, եւ չասեմ մարդոյ: Իսկ նորա արկեալ զճկոյթն ի բերանն նորա՝ արձակեաց զնա ի տուն իւր: Եւ ելեալ այրն ի ծովէն՝ փոշմանեցաւ թէ Զի՞նչ գործեցի, որ յայն ամենայն ոսկոյն եւ յարծաթոյն եւ ի պատուական ականցն չառի, թողի եւ դատարկ եկի: Եւ այնպէս տրտմեալ գնաց նստաւ ի քարատակ մի, եւ ոչ կամէր գնալ ի տուն իւր:

Յայնժամ եկին երկու ճնճղուկ նստան ի վերայ քարին, եւ ասեն ընդ միմեանս՝ թէ Ի՞նչ խեղճ է այս մարդս, որ եօթն կարաս ոսկի կայ յայս քարատակս թաղած, եւ նա չգիտէ որ հանէ եւ տանի իւր ապրանք առնէ: Իսկ նորա լըւեալ՝ հասկացաւ զլեզուս նոցա, եւ եկեալ ի դիշերի գաղտ եհան զոսկին, եւ սկսաւ փարթամանալ եւ տունս մեծամեծս շինել, եւ ջորիս եւ ձիս եւ լուծս եզանց եւ գեհս ոչխարաց եւ այլ որ ինչ վայել է աշխարհի:

Եւ յաւուր միում ասէ եզ մի յեզանցն՝ թէ Ի՞նչ առնեմ, զի անխնայ կու լծեն զիս եւ չեն

ողորմիլ։ Ասէ էշն որ մերձ էր առ եզն՝ թէ Վազն սուտ հիւանդ անկիր. եւ յորժամ տեսանեն՝ խղճան եւ չտանին լծեն։ Եւ զայս լուեալ այրն՝ ծիծաղեցաւ, եւ ասէ ցմշակն. Վազն զայս անուն էշ ի տեղի հիւանդ եզինն տար լծէ։ Իսկ նա այնպէս արարեալ՝ մինչեւ յերեկուն լծեաց զէշն։ Եւ յորժամ եկն ի տուն՝ ասէ էշն ցհիւանդ եզն՝ թէ Ողորմելի եզնակ, խորհեցան ի յարտն՝ թէ Այն եզն որ հիւանդացաւ՝ վաղիւն մորթենք, որ չնիհարանայ։ Լուր. վաղիւն առողջացիր եւ գնա լուծ քաշէ, որ չզենեն։ Եւ զայս լուեալ առն՝ դարձեալ ծիծաղեցաւ։

Յայնժամ ասէ ցնա կինն. Ո՛վ այր դու, մեք աղքատ մարդիկք էաք, եւ յանկարծակի հարըստացար. եւ ժամ ժամ կու կենաս դու ընդ քեղ կու ծիծաղիս։ Ինձ է՞ր չես ասել թէ ուստի՞ է այս ամէնս, եւ յի՞նչ կու ծիծաղիս։ Ասէ այրն. Ո՛վ կին դու, թէ ասեմ՝ կու մեռանիմ. այնոր համար չեմ ի ասել։ Իսկ կնոջն յանդգնեալ ասէ. Ճար չկայ, պիտի որ ասես։ Եւ նա ոչ կամէր։ Եւ բազում բռնադատեալ կնոջն, անճարեալ ասէ. Ո՛վ կին դու, հաւատա ինձ որ առանց ամէն տարակուսանաց կու մեռնիմ թէ կու ասեմ։ Ապա ի լուռ կաց մինչ(ե՛ւ) գիշերպաշտօն եւ մատաղ առնեմ եւ հաղորդիմ, եւ ապա ասեմ եւ մեռնիմ։ Եւ մինչդեռ յայսմ խորհրդեանն էին, շանլակոտիկ մի լի տրտմութեամբ նստէր ի գետնամէջն, եւ իսկոյն գայր աքաղաղն խնդալով ի դուռն ի ներս, եւ քան երեսուն մարի հաւ յառջեւն եւ յետեւն։ Յայնժամ ասէ շանլակոտիկն յաքաղաղն՝ թէ Ո՛վ անաղուհաց աքաղաղ, զի՞ է քեզ այդ ամէն ձայն ածելդ եւ ուրախանալդ, զի վաղիւն տէր մեր զիւր խորհուրդն կնոջն կու ասէ եւ մեռանի։ — Ասէ աքաղաղն՝ թէ Ես որ նորա ծառայ եմ՝ նա երեսուն կնիկ յիմ հրամանքս կայ եւ պահեմ, նա մէկ կնիկ յիւր հրամանքն չի կարել պահել. Թող գնայ մեռանի։ — Ասէ շանլակոտիկն. Ի՞նչ անէ։ — Ասէ աքաղաղն. Թող առնու երեք չորս փայտ դալար, մտանէ ի կողերն եւ այնչափ ծեծէ, որ ի վերան սպիտակ տեղ չմնայ. եւ ասէ թէ Ո՛վ անհարկի, քան թէ ես մեռանիմ, գէմ այն լաւ է որ դու երթաս. եւ հանէ վարէ ի դուռն ի դուրս՝ թէ Գնա ի քո բանն, ես երթամ կին մի այլ առնում։ Եւ զայս լուեալ առն այնորիկ ի յաքաղաղէն եւ ի լակոտէն՝ ծիծաղեցաւ դարձեալ։

Նա յորժամ եղեւ պաշտօն եւ կերան զմատաղն, եհան արտաքս զընտանիսն ամենայն, եւ առեալ գալար փայտ՝ սկսաւ ջարդել զոսկերս կնոջն, եւ ապա արձակեաց եւ վարեաց՝ թէ քան ես մեռանիմ՝ նա լաւ այն է որ դու երթաս, եւ ես երթամ միւս եւս կին առնում: Իսկ նա անկեալ յոտս նորա ասէր՝ թէ Աստուծոյ սէրն ի քեզ բարեխօս, մի՛ ասեր, եւ ամէն օր զիս այսպէս ծեծէ. լուր ի դուրս մի՛ աներ: Եւ այնպէս զերծեալ այրն ապրեցաւ ի մահուանէ: Լոփ Ոսկեփ. 132. Առ. ՃԿԶ. համեմատութեամբ Ոսկեփ. 45. Առ. Թ. եւ Ոսկեփ. 51. Առ. ԿԸ[1]:

[1] Այս վերջինս՝ թէեւ նախընթաց երկուքին հետ նոյն բառ ընթերցուածոյն՝ բառ լեզուին աւելի ռամկացուցած է: — Նոյն Առակն՝ համառօտագոյն եւ բաւական տարբեր ընթերցուածով՝ կայ յԱղուէսագ. Առ. ՃԼԶ. եւ յՈսկեփ. 51. երկրորդ անգամ՝ Առ. ՑԻԳ: Մտադրութեան արժանի է այս համառօտագոյն ընթերցուածոյն սկիզբները գրուած առածն՝ թէ Աղէկութիւն արա, ի ծովն ձգէ, եւ վասն մի՛ մեար:

— Սրուանձտեանց Գերապ. Գ. եպիսկոպոսին Համով-Հոտով հաւաքածոյին Հէքեաթներէն (Վէպերէն) միոյն մէջ կը գտնենք Առակիս սկզբնաւորութիւնն՝ համառօտիւ (Տիգրանակերտի գաւառական լեզուաւ) եւ այլ Վիպի մէջ շարունակութիւնն ու վերջն՝ ընդարձակ:

Սկզբնաւորութիւնն՝ Դ. Վէպին մէջն է, այսպէս. «Կէղնայ չէղնայ Մամ մի ու տղայ մի, ուրանց տունէլ ծովուն մօտ: Էս Մամէ ըմէն կընուխ հաց մի կը թարլէ ծովէ: Ատեն կանցնի կը մեռնի Մամէ, տղէն թամբէհ կէնէ, քի Տղաս, քաննի սաղ ես, էմման կընուխ հաց մի թարլէ ծովէ: Տղան ըմէն օր թայինէ կի տար ծովուն: Օր մի....» (Էջ 163—166:) Շարունակութիւնն մեր Առակէն տարբեր է:

Իսկ շարունակութիւն եւ վերջ Առակիս կը գտնուին ԺԶ. Վիպին մէջ, որոյ նիւթն է՝ Սըմօն անուամբ քաջ հովուի մի Օձից արքայորդւոյն ընտանիքն մեծ վտանգէ մ'ազատելն, որոյ համար Օձից թագաւորն զինք կը վարձատրէ: "(Օձից) թագաւորն ու նախարարներն արդշուն կու տան թէ (Սըմօն) իր ուզածին չափ գոհար ու ոսկի թող առնէ. եւ եթէ իր սրտի մէջ հասրաթ մի ունի՝ կատարենք: Սըմօն իր քովէն կախած հովուական տուրիկը կը լեցնէ ոսկին ու գոհարը. կը դառնայ դիլաք մի կընէ. Ես կուզեմ որ, կ'ըսէ, ամէն անասնոց, սողնոց եւ թռչնոց լեզուն հասկնամ: — Թող եղնի, կ'ըսէ թագաւորն. բայց եթէ դու մարդու մը պատմես այս տեսածներդ եւ անասուններէն լսածներդ, պիտի մեռնիս... Սըմօն կը տանի տունը, կը թափէ կնկան առջեւ իր բերած հարստութիւնը: Կնիկը միշտ կը հարցունէ՝ թէ Ո՞ւր տեղէն է այս, ո՞ւր տեղէն չէ: — Վ,այելէ՛, ու մի հարցուներ, կըսէ Սըմօն: Իր տան շանն ու հաւերուն մօտիկ կընէ, որ տան մէջ եղածներուն վրայ կը խօսին, ու Սըմօն երբեմն կը խնդայ, երբեմն կը նեղանայ: Կնիկը կը դիտէ քանի քանի անգամ այս բանս, ու շատ կաղաչէ, կուլայ, կը խռովի՝ թէ Ի՞նչ է, պատճառն ըսէ: Օր մի խօսք կուտայ Սըմօն իր կնկան՝ որ մէկէլ օր իրիկուն պատմէ: Շունը կը լսէ: Այդ իրիկուն աքլոր իր առջեւ ձգած հաւերը, չըխկ չըխկ, քըդ քըդ ընելով դունէն ներս կը մտնէ: Շունը կըսէ աքլորին. Ի՞նչ չըխկ չըխկ, ինչ տըք տըք. մեր տէր խօսք տուաւ իր կնկան, որ ամէն բան պատմէ վաղ իրիկուան. ինք պիտի մեռնի, ու պիտի գան զքեզ մորթեն, զիս սպանանեն, մեր տիրոջ տունն կողոպտեն, քարուքանդ աւրեն: — Կ'աւրի՞, որ մ'առաջ թող աւրի, կ'ըսէ աքլոր. ես քառսուն հաւ կնիկ ունիմ, ամէնքն էլ ինծի հնազանդ կը պահեմ. թող մեր տէր քիչ երես տար կնկան, ո՛չ կնիկն չար կը լինէր, ո՛չ ինքն կը մեռնէր, ո՛չ մեզ փնաս կը հանէր: — Սըմօն այս խօսքէն կը խրատուի, կելնէ քաշէ կաղնի վարոց քըքէհան, կը հանի կու տայ կնկայ ջանը»: (Էջ 205—208:)

Մեր Առակն հաւանաբար բուն արաբական է. վասն զի մեր տեսած հնդիկ Առակներու հաւաքածոյից մէջ՝ ի հեռուստ անգամ այնմ նման Առակի չենք հանդիպեր։ Ընդհակառակն՝ երկու միջադէպքերն — այն են՝ Իշխն եւ Էշոն պէտքն ու խոստակցութիւնն, եւ Շան ու ատաղձագործին՝ կնոջ հեռաքրքրութեան բժշկական դարմանումն հանդերձ — յառաջ բերուած կը գտնենք Հիթոփադէշ գէշէրէ ամենածանօթ արաբական գրոց մէջ։ Սոյն գիրքն այնպէս ծանօթ է Պենֆէյի, որ հնդկական Առակներուն եւ սոր մէջիններուն ամենափոքր նմանութիւնն՝ մինչեւ միակ բացատրութիւնն անգամ անյիշատակ չի թողուր։ Արդեամբք իսկ նոյն Հիթոփադէշ գէշէրներէն առած՝ յառաջ կը բերէ Իշխն ու Էշոն միջադէպքն, իբրեւ նման այն Առակին՝ յորում այծն խրատ տալով իշուն որ լռանոտութենէ բռնուած ձեւանայ, որպէս զի աշխատութենէ ազատի, նոյն խրատին հետեւութեամբ կեանքը կորուսած էր։ Նոյնպիսի հեռաւոր նմանութիւնն իբրեւ մտադրութեան արժանի մէջ բերողն՝ սուգի զանց չէր ըներ մեր Առակն ալ յիշատակել՝ եթէ հնդկական ըլլար։

Արդ՝ կարծեմ ոչ ոք կարող է համարիլ թէ այս արաբական Առակք եւ այլ նմանիք ուղղակի արաբերէնէ թարգմանեալ չեն։ Մանաւանդ թէ ամէն մարդ ինքնին կը տեսնէ թէ մեր ռամկագիր հեղինակք, որ այնչափ տեղեակ էին նոյն լեզուին, չէին թողուր անոնց սկզբնագիրն եւ այլ լեզուներէ առնուր։ Իսկ եթէ յայսմ մասին տակաւին տարակուսող կայ, յուսամք որ յաջորդաւն այն տարակոյս եւս փարատի։

3. Հայերէն Առակ մի կայ, որոյ ծագումն թէպէտ արաբական ըլլայ՝ թէպէտ հնդկական, այնպիսի հանգամանօք եւ մանաւանդ այնպիսի լեզուաւ մեր առջեւ կ՚ելլէ, որ արաբերէնի վրայէն թարգմանեալ կամ խմբագրեալ լինելն ամենեւին տարակուսի ներքեւ չ՚իյնար։

Պատշաճ կը համարինք սակաւ մի ընդարձակ տեղեկութիւն տալ Առակիս վրայ: — Առաջին անգամ՝ Բան. Վառն Խաճող Ադուեառուն Եւ Չօրառնեան նորա վերնագրով հրատարակեց զայն Բազմավէպ 1881 տարւոյն (էջ 193—198) առնլով ի ԺԷ. դարուն գրեալ ձեռագրէ: Այնչափ ծանրակշռութիւն տրուեցաւ այս հրատարակութեան, մինչեւ Հայերէնագէտ իտալացի ոմն, երբեմն Բիզայի՝ իսկ այժմ Բատուայի համալսարանին անուանի ուսուցչապետներէն, Էմիլիոյ Թեզա, հետեւեալ տարին՝ նախաշաւղով եւ ծանօթութեամբք իտալերէն հրատարակեց անոր համառօտութիւնն La Cultura (1882, Թ. Ժ.) բանասիրական պարբերականին մէջ: (Տես Բազմավ. 1882, էջ 308—310: Տես նաեւ վերագոյն, էջ 301, Ծանօթ.)

Իրաւացի է այս Առակին մտադրութիւն պատճառելն. որովհետեւ չկայ ի մեր հաւաքածոյս այսմ նման ընդարձակ Առակ՝ այնչափ մանրամասն նկարագրովք եւ խօսակցութեամբք լի, եւ այնպէս գեղեցիկ լեզուաւ եւ ընտանի սացուածովք: Թող զայն՝ որ շատ հազուագիւտ եւ միակ օրինակ կը կարծուէր[1], որոյ համար հրատարակիչք փափագ կը յայտնեն այլ օրինակի մ'ալ գտնուելուն: Այս փափագն արդեամբք իսկ կատարուեցաւ: Ի վերջին ժամանակս մեր ձեռքն անցնող Ոսկեփորիկի մի մէջ (Թ. 125 Ա) կը գտնուի նոյն Առակն ի կարգի այլ սակաւաւոր Առակաց: Թէպէտ հազիւ յանցեալ դարու ընդօրինակեալ կ'երեւայ այս մեր ձեռագիրն, եւ մեծապէս սխալագիր է. թէպէտ շատ տեղ կը համառօտէ զԱռակն, որով դուրս կը մնան ոչ սակաւ գեղեցիկ կտորներ, ոտանաւորներն ըստ

[1] Կ'երեւայ թէ ի նախընթաց դարս այնչափ դոյզնագիւտ կամ անծանօթ չէր Առակս, որովհետեւ մինչեւ մեր ժամանակներն ի գաւառս ինչ ժողովրդեան մէջ սովորական է առածն՝ թէ "Ի՞նչ ընեմ դմակն, որ մէջն է դանակն". որոյ ծագումն անշուշտ այս Առակէն եղած է:

մասին կը զեղչէ՝ ըստ մասին կը կիսատէ, ընդօրինակողաց-գովելի սովորութեան համեմատ՝ աւելի կը ռամկացընէ. — բայց սոնց փոխարէն՝ ուրեք ուրեք աւելի հնաձեւ է քան զտպագրեալն, մանաւանդ թէ աստ անդ նոյն հնագոյն եւ ընտրելագոյն օրինակին խառնակ կամ սխալաւոր ընթերցուածը կ'ուղղէ։ Բաց աստի՝ կ'ամբողջացընէ Առակին վերջին մասն, որ Բողմովկոյ ձեռագրին մէջ կրճատուած կամ համառօտուած կ'երեւայ։

Հարեւանցի մտադրութիւն մ'ալ բաւական է տեսնելու թէ Բողմովկոյ ձեռագրին յառաջ բերած վերջաւորութիւնը (զոր ի 21. Ծանօթ. կը հաղորդենք) չի համապատասխաներ Առակիս նախընթաց մասին ընդարձակ ու մանրամասն նկարագրութեանց եւ խօսակցութեանց։ Որչափ կրնայ գուշակուիլ՝ օրինակողն ուզելով միեւնոյն իջին մէջ ընդօրինակութիւնն աւարտել, համառօտ բովանդակութիւն մի դրեր է փոխանակ սկզբնագրին ընդարձակ վերջաւորութեան, զոր պահած է մեր օրինակն։ Դիտողութեանս հաւանականութեան ի ցոյց՝ կը դնենք աստ Առակիս համառօտեալ եւ քրիստոնէական կաղապարի մէջ ձուլեալ խմբագրութիւնն, որ թէեւ անհամեմատ կարճ է այն Առակէն, սակայն վերջաւորութիւնն համեմատութեամբ ընդարձակագոյն է քան զայն՝ որ մեր առջեւ կը դնէ հնագոյն ձեռագիրն։ Աւասիկ նոյն հակիրճ խմբագրութիւնն։

## Աղուէսն եւ Գայլ։

Աղուէսն եգիտ զպանիր յորոգայթն. երթայ առ գայլն եւ ասէ. Ո՛վ եղբայր, եկ առ զպանիրն եւ կեր, զի այսօր ուրբաթ է, եւ ես ի պաք եմ։ Եւ գնաց գայլն առնուլ զպանիրն, եւ անկաւ որոգայթն ի վիզն գայլուն, եւ պանիրն ի դուրս թռաւ եւ անկաւ առաջի աղուեսուն. էառ (աղուէսն) եւ սկսաւ ուտել։ Ասէ գայլն. Ե՛ղբայր, գէմ այսօր ուրբաթ է. մի՛ ուտեր, որ չբարկանայ քեզ Աստուած։ — Ասէ աղուէսն. Որոգայթդ ի պարանոց քո անկաւ, եւ այդ է բարկութիւնն Աստուծոյ։ — Եւ սկսաւ գայլն ցնցտել յայսկոյս յայնկոյս։ Եւ ասէ աղուէսն ցգայլն. Ես այլ շատ ցնցեցի՝ երբ ըմբռնեցայ։ — Եւ ասէ գայլն. Վա՜յ ինձ, զի նեղիմ չարաչար։ — Ասէ աղուէսն. Ո՛վ եղբայր, դեռ չես վայ, մին-

չեւ գայ տէր որոգայթիդ: Ոսկէ. 132. Առ. Լ: Տես եւ Ոսկէ. 51. Առ. ՄԿԱ. Սէն-Մարտէն, Առ. ԺԷ. Աւգուստ. Առ. ԿԸ:

Մեր ձեռագրին զեղչումներն ու համառօտութիւններն այնչափ շատ են, որ վերջին մասին յաւելուածոյն իսկ՝ հազիւ տպագրելոյն չորսին երեքը կը կայուցանէ: Սակայն եւ այնպէս տակաւին շատ երկայն ըլլալով, ի տեղիս տեղիս սակաւ մի եւս համառօտեցինք, դուրս հանելով մանաւանդ կրկնութիւնները, խառնակ կտորներն եւ արաբական դժուարըիմաց ու սխալագիր բացատրութիւններն: — Ընդհանրապէս մեր ձեռագիրն անփոփոխ պահած ենք, ուղղելով միայն յայտնի գրչասխալներն, ինչպէս են՝ էխօտ, մոռէլցեր, Նախուռն, փանփուրոշ, է ձէնձ կամ է ձէնձն եւ նմաններն, զոր ըրինք՝ խէօտ, մոռցէլէր, խանուռն, փանփէրոշ, է ձէձ կամ է ձէձն...: Քանի մի տեղ ալ՝ փոխանակ մերոյն ընթերցուածին՝ դրինք տպագրելոյն ուղղագոյն կամ ընտրելագոյն ընթերցուածն, զոր մի ըստ միոջէ նշանակեցինք, ինչպէս նաեւ նշանակեցինք տպագրելոյն այն բառերն ու խօսքերն՝ որոց ուղիղ ընթերցուածը պահած է մեր ձեռագիրն:

Առակ աղուեսուն եւ գայլոյ:

Կայր տանուտէր մարդ մի ի.քաղաքն, որ կոչի անունն նորա Պարսա[1], եւ ունէր վայելուչ այգի մի եւ ազգի ազգի մրգեր ի ներս. եւ խիստ վայելուչ եւ պատուական էր այն այգին: Եւ էր այն ժամանակին փսասակար աղուէս մի, եւ այն աղուեսուն թոռներուն էր՝ որ հետ Նոյի 'տապանն մտան. եւ անէին զիւր անունն Ապլահասան: Եւ գիտէր այն աղուէսն շատ իմաստնասիրութեներ, եւ զգիրն յոյժ կարդացեր էր, ապա մոռացել էր: Կարդացել էր շատ գրուի[2], եւ ուսեալ էր ի Հունդուստան զհամարողականն եւ զպլեոմերն եւ զհօքմութեններն. զամէնն ուսել.էր, ապա մոռացել էր: Եւ ի լեառն ի ժուռ կու դար սոված եւ քաղցած:

Եւ օր մի երեկ ի դաշտն[3] իջաւ, ի յայն տանտիրոջն ի յայգին մտաւ, եւ տեսաւ զայն սիրուն այգին լի մրգով, եւ շուրջ կու գայր ի յայգուն մէջն. եւ ի բազում մրգերուն՝ ոչ գիտէր թէ զո՞րն ուտէր: Ապա կերաւ շատ խաղող եւ շատ միրգ, ուսկից իւր պխտաց: Եւ գնաց ի յայգուն մէջն ի մուռ կու գար: Եւ տեսաւ արձակ տեղ մի՝ որ չաման էր ցանած, եւ ի չամանին մէջն դմակ մի էր դրած, եւ ակնատն ի ներքեւն էր լարած: Ասէ աղուէսն. Ահա գտայ զիմ առողջութեան դեղն, առաւել հիմի՝ որ շատ խաղող եմ կերել, նա այս դմակս ինծի խիստ աղէկ է, որ հանէ զգիշութիւնս յինէն: Եւ կամէր քարշէր զդմակն: Եւ այլվայ ինքն զինքն ի յետ քաշեց եւ ասաց. Չէ աղէկ զինչ ես կ'առնեմ, որ չլինիմ առակ զինչ զԱդամ, որ վասն մէկ ուտելուն՝ զրկեցաւ ի շատ բարուն: Եւ ասէ. Թէ[4] ինքս որոգայթ չէր՝ նա դմակն ի չամանին մէջն ի՞նչ ուզէ: Չամանն ի չոփ(փ)ոխնուն խանութն լինայ, եւ դմակն՝ ի մսագործին: Չամանն ու դմակն ի՞նչ ազգական են իրերաց: Այս դմակէս վախել պիտի: Ապա յետ ելաւ եւ մտաւ ի ծառնոցին մէջն, եւ ուտէր զմիրգն, զորն ուտէր եւ զորն ոտօքն տորորէր եւ ցրուէր:

Ապա յանկարծակի երեկ այգուն տէրն, տեսաւ զմիրգն վաթած եւ զխաղողն ճապղած: Գնաց այլ գէր եւ մեծ դմակ մի եբեր[5], ու այն դմակին տեղն եդիր, եւ զակնատն ի ներքեւն լարեց, եւ ասաց. Կարեմ ափել[6] զվնասակարն իմ: Եւ ինքն գնաց: — Եկաւ աղուէսն ու տեսաւ զայն մեծ դմակն եւ կու թալնայր ի դէմն. ասաց՝ թէ Թող ուտեմ ես իւրմէն. ինձ խիստ աղէկ է: Լեղի մրգերուն ուտելուն եւ խաղողին՝ սիրտս պշգաց եւ փորս կու խոստէ: Կամէր վազէր ի դմակն. եւ այլվայ ինքն զինքն ի յետ քաշեց. եւ ասաց՝ թէ իմ սիրտս կ'ուզէ ի յայս դմակէս. եւ ի՞նչ պատեհ է որ հետ իմ սրտիս երթամ, որ չկորսընցնէ իմ սիրտս զիս: Զի այն մարդն՝ որ հետ իւր սրտին երթայ՝ շուտով կորսնուի. եւ այն մարդն՝ որ զիր սիրտն (յ)իւր հրամանքն պահէ՝ նա շահի զայս կեանքս եւ զայն: Եւ չէ պատեհ որ ես հետ իմ սրտիս երթամ, այլ պատրաստ կենալն աղէկ է. քան(դ)ի որ պատրաստ կենայ՝ պատրաստութիւն գտանէ: Եւ այլվայ գնաց, սկսաւ (է) խաղողին ուտելն եւ ի մրգին. ուտէր

եւ վաթէր, հետ ուտէր եւ հետ յիշէր զդմակն եւ հառաչէր:

Եւ մէկայլ օրն[7] գնաց մօտ ի դմակն եւ ասաց՝ թէ իմ սիրտս[8] ինձ դադար չի տար, եւ հոգիս կ'ելնէ: Եղն իւրմէն ի վայր կու կաթկըթէ. թող ուտեմ ես իւրմէն: Չի թէ Մարդ զգլուխն ի կշեռքն չդնէ[9], զանձ չի գտնուր, եւ վաճառականքն զիւրեանց գլուխն մահու կու դնեն, եւ ապա ի ծով կու մտնեն: Ով ըռհմոն չի քաշէ՝ նա շահ չի գտնուր, եւ եթէ ի փշէն վախենայ՝ վարդ չեն ի քաղել. զի փուշ (յ)ամբրաւն այլ կայ: Թող ուտեմ. անո՜յշ ինձ[10]: Գիշերն քուն չունիմ իր սիրուն, հանդստութիւնս հատեր է: Գիշեր եւ ցորեկ յառջեւս կայ իւր տեսն: — Եւ այլվայ մտավարժեցաւ ինքն ընդ ինքն, եւ ասէ՝ թէ Իրք չէ զինչ ես կ'անեմ, որ չընկնիմ ի որոգայթ, եւ յետեւ ափսոսալն ինձ չի օգտել: Պիտէր ինձ հանց մարդ մի՝ որ գայր զայն դմակն ժաժցնէր, որ ես տեսնուի թէ ինչ կայ ի ներքեւն: Ի՞նչ անեմ, ի՞նչ է իմ ճարս. չեմ իշխեր ուտել, եւ չեմ կարեր իր սիրուն կենար:

Բազում աւուրք մտավարժեցաւ, եւ ասաց՝ թէ Ո՞ւր գտնում մարդ, որ գայ զայն դմակն շրջէ, որ ես իմանամ թէ ի ներքեւն ինչ կայ: Այս բանիս տղլահ մարդ պիտի: Եւ ապա մտավարժեցաւ, Նոփղէր եւ հնարք գտաւ, եւ ասաց՝ թէ Ի կարճ մարդիկքն քիչ տղլահ մարդ կայ, եւ ի երկայն մարդիկքն շատ տղլահ մարդիկ կայ: Թող երթամ ի շուրջ գամ ի յաշխարհս, մաղեմ եւ ծուեմ եւ ի վեր ձգեմ, մինթէ գտնում երկայն մարդ: — Եւ գնաց բազում աւուրք ի շուրջ եկաւ. եւ յանկարծակի գտաւ ի լեառն երկայն կապուտ գայլ մի սոված եւ քաղցած: — Եւ ասաց աղուէսն. Բարեւ քեզ, գա՛յլ Ապուչախտայ՝ գայլերուն գլխաւոր. Օրս բարով, աչուիդ կաւով, Աստուած քեզ խռով: Ի՞նչ աղէկ ես: — Ի՞նչ ցեղ կաս[11]: — Ասէ գայլն. Մէրհապա, Ապլահասան աղուէս. ուստի՞ գաս: — Ասէ աղուէսն. Ո՜ Ապուչախտա՝ գայլերուն գլխաւոր, քո բարի արեւդ[12], որ ես մեծ մարդու զաւակ եմ: Իմ հայրն Խոճէյին գրեր էր՝ երբ վախճանեցաւ այն ողորմած-հոգին, եւ ասաց՝ թէ Հետ խելօքնուն ի ժուռ գալ պիտիս: Եւ շատ ի ժուռ եկի, եւ քո բարի անունդ եմ լսեր եւ ի քեզ[13] եմ եկեր, եւ զերդ զքեզ խելօք եւ իմաստուն չեմ տեսեր:

Ու պիտի որ ի քո խելացդ[14] եւ շնորհացդ յիս հասնի։

Եւ ապա գայլն շփացաւ ինք ընդ ինքն, եւ ասէ. Ապլահասան աղուէս, խելօք պտըռէիր եւ ի ժուռ գայիր։ Եկիր գտար, եւ աղէկ գտար։ Հազա՜ր բարի եկիր։ — Իմ մեծ հայրն խիստ ու- ժով մանուկ էր, հանց որ ի մէկ զարկն զերկու պախրէն կ՚առնոյր[15]. եւ խիստ բարի էր այն ո- ղորմած-հոգին։ Ես ի նորա թոռներուն եմ։ — Ասէ աղուէսն՝ թէ Լսեր եմ, իմ Պարոն, ու գիտեմ։ Ասա զձեր բօրան՝ թէ ինչպէս բօրս ու- նիք։ — Ասէ գայլն. Մեր բօրայն որ ունինք՝ այս է. վաղուեննէն՝ երբ ի քնուս ի վեր կ՚ելլեմք՝ նա մեք ի դուռն կու նայինք որ զհետն կու տես- նումք, եւ հետ հետին կ՚երթամք. զառն կամ ոչխար՝ զինչ որ հանդիպի՝ նա կ՚առնումք։ Այդ է մեր բօրայն զոր ունինք։ — Ասէ աղուէսն. Ա՜ֆսուս ի քո վերայ[16] եւ ի քո բօրայիդ վերայ։ Քո բօ- րայն քեզ շնահաւոր, որ զքեզ խայթէ կոր, քո ճամբան մոլոր եւ ձեռքդ չոր[17]։ Ի՞նչ աղուոր բօրս ունիս։

Ասէ գայլն. Դո՞ւ ես մեծ՝ թէ քո հայրն։ — Ասէ աղուէսն. Այդ հով հարցունք է։ Քո խօսքդ ի յայն մարդուն կու նմանի, որ մէկ մի՝ շուկան նստեր էր եւ չամիչ կ՚ուտէր, նա մարդ մի այլ եկաւ ասաց՝ թէ Չե՞ս ամաչեր, որ ի մէջ շուկայիդ չամիչ կ՚ուտես[18]. Աստուծոյ չե՞ս ի վա- խել, որ ի խելօք մարդիկն խօսք կ՚ասես։ — Ասէ գայլն՝ թէ Իմ զլուցս եւ քոյն զիրար չառին։ Ես զգլուխն զլուց տամ, եւ դու զոտիցն ինձ պատասխան կու տաս։ Ջերդ զայն որ կ՚ասեն՝ թէ Մէկ մի ի սանդուխն ի վայր ընկաւ, եւ էշն զպորտն ձգեց. եւ մէկ մի հերիսայ կ՚ուտէր, նա մարդ մի այլ եկաւ ասաց՝ թէ Հերիք ուտես, փորս ցաւի։ Թէ չէ, ապա իմ գլուխս կու ցաւի ի քո շատ ասելն։

Ասէ աղուէսն գայլուն՝ թէ Հրամայէ հետ ծառայիս եկոյ, որ աղուհաց ուտենք, ի մեր տունն։ — Ասէ գայլն ընդ աղուէսն. Ա՛պլահա- սան, զայդ խօսակարգութիւնդ ուստի՞ ուսար։ — Ասէ աղուէսն. Այն իմ ողորմած-հոգի հօրն է[19]։ — Ասէ գայլն. Ա՜ֆսուս յիւր վերայ՝ թէ ա- ղուոր է ուսուցեր զքեզ։ — Ասէ աղուէսն. Ան- սասան կեցիր, իմ Պարոն։ Հրամայէ ի տոն արի։ Օրս կէսօր է ու հացի ժամ է։ Պարտ է զՊա-

րոնութիւնդ ի պատիւ տանիլ: — Ասէ գայլն. Շէ՛ն կեցիր, իմ Պարոն[20]:

Ապա[21] գայլն ի ոտն ելաւ, սկսաւ ի գնալ. եւ գնայր աղուէսն ի յառջեւ գայլուն: Եւ գնացին մտան ի յայն վայելուչ այգին. եւ տարաւ աղուէսն զգայլն մօտ ի դմակն: Եւ գնաց էառ աղուէսն բարշ մի ջուր եւ կանգնեցաւ: — Ասէ գայլն. Ապլահասա՛ն աղուէս, հրամէ նիստ ի վայր, որ ուտեմք զայս դմակ: — Ասէ աղուէսն. Երբ զերդ զքեզ պարոնայքն ի հաց պատիւ ձենեմք՝ նա մեք ի վայր չենք նստիր: Հրամէ եւ կեր, իմ Պարոն: Աստուած մարսրկան այնէ քեզ. հազար աղուէս քո չարին պատրածն: — Ապա նստաւ գայլն մօտ ի դմակն. եւ ակնատն յանկարծակի ճաթրւտեց եւ ի գայլուն վիզն անկաւ, եւ դմակն ետղոնն անկաւ, եւ ակնատն զգայլուն վիզն յիրար էած, որ աչուին ի դուրս եկաւ:

Ասէ աղուէսն. Աղօ՛ն ֆուճոյ, ընկար ի ծով խորու, եւ հասար մեծ ցնորու. երեկ քեզ չար նորվնորու, Աստուած զքեզ ձեռաց թողու: Ասկից ի վեր կատակ վերու, որ չհանխս շատ շմորու: — Ասէ գայլն. Նուլո՛ն ի քո վերայ, Ապլահասան. ի հետ սիրելոյ հանց բան այնես: Ապա ի քո պէս բ....դոյն հանց վայելէ, որ քո անուշ խօսերովդ բերիր զիս որոգայթ ձգեցիր:

Ապա գնաց աղուէսն, էառ հող ի ձեռքն եւ գլուխն կու լնոյր առջեւ գայլուն, եւ սուտ ափսոսար եւ զանձն ինքն պատառէր եւ սուտ կուլայր: — Ասէ գայլն. Զիս բերիր որոգայթ ձգեցիր. եւ սուտ այլ կու լաս եւ զիս կու տնազես: — Ասէ աղուէսն. Գիտեմ, զէդ սիրելոյ կու լամ եւ կ'ափսոսամ, նա քեզ տնազ թուի: Դու հանց հաշուէ: Եւ դարձեալ ասէ. Ես քեզ ի՞նչ արի. քո մեղքդ զքեզ բռնեց եւ գառներուն մօրն լացն, որ հանչաք իրք էիր կերեր, որ այս որոգայթս ի քո գլուխդ եկաւ: — Ասէ գայլն. Ոչ. մի՛ տնազեր եւ մի՛ ափսոսար:

Ապա էառ աղուէսն զդմակն ի դիմաց գայլուն եւ նստաւ ի ուտել. եւ ասէ պատառ ի բերանն. Ում Աստուած պատրաստել է: — Ասէ գայլն. Ապլահասա՛ն աղուէս, ես քեզ ի՞նչ եմ արել. թէ գառն կամ ոչխար եմ կերել՝ նա զայն Աստուած մեզ կերակուր է պատրաստել: Զիս արձակէ ի յայս կապէս: — Ասէ աղուէսն. Հօրղո մի ասել մարդակ: Ասացեր են իմաստունքն. Թէ

երկու ճանապարհ կենայ առջեւդ, մէկն կարճ եւ մէկն երկայն, առաջ զկարճ ճանապարհն գնա, եւ ապա՝ զերկայնն: Իմ ճանապարհս մօտ ի յայս դմակս խիստ կարճ է, ու պիտի որ ուտեմ զինքն: Որսն հոլոլ է, եւ ինքս մարսըկան ու դեղ կենաց է, եւ խիստ անուշ է: — Ասէ գայլն. Ապլահաաան, անխեղճ մի լինիր: Զիս արձակէ ի յայս կապէս. ես քեզ իրք չեմ այներ: — Ասէ աղուէսն. Հօրըս մի հաջել: Ասցին խելօքնին՝ թէ Մարդ ի հացին ուտելն շատ չի պիտի որ զրուցէ:

Եւ սկսաւ աղուէսն՝ էառ առջեւ գայլունն զդմակն ի ուտելն, եւ դէմն գայլուն երեսն կու հայէր: Եւ երբ կերաւ՝ ոտն ելաւ աղուէսն ու կու սրբէր զբերանն եւ կու լիզէր: Եւ ասէ ընդ գայլն. Ի՛նչ բան ուզես՝ ասա. ես կ՚երթամ: — Ասէ գայլն. Ա՛պլահաաան, Աստուծոյ չէ՞ս ի վախել. զիս մէն ի ո՞ւր կու ձգես կ՚երթաս: — Ասէ աղուէսն ընդ գայլն. Է՛ գայլ, գիտես թէ դու մէն պիտի կենաս: Այս մէկ պահս արարածքս ի վերայ քո ժողովին. հանչաք մարդիք՝ սրերով, թրերով, բրերով պլըկելով, իսկի չտան զքեզ մէկ պահ մէն կենալ: Այդ ընկնիլդ որ դու ընկար՝ ոչ ոտօք կու խոլուիս, ոչ ձեռօք: Հոգ մի քաշել, քո մեղքդ զքեզ բռնեց:

[1] Այսպէս երկու օրինակին մէջ ալ. պիտի ըլլայ՝ Պասրա: — [2] Տպգր. գրէ—: — [3] Տպգր. է գողտն: — [4] Թէ յաւելինք տպգրէն, զոր մերն չունէր: — [5] Մերն՝ գնաց մեծ դման մ՚այլ էբեր. գրինք ըստ տպգրին: — [6] Տպգր. ափլէլ: — [7] Մերն՝ էս մէկ օր այլ. գրինք ըստ տպագրին: — [8] Տպգր. էմ արդէս: — [9] Տպգր. է գէլ[illegible]: — [10] Անոյշ խնձ. չունի մերն: — [11] Մերն՝ Ա[illegible]... Աստուած [illegible] խօսք: Ի՞նչ էղ [illegible]: Տպգր. Հօրս ... Աստուած [illegible] (= սուրբ. ումկ. = քեզ) [illegible]: Ի՞նչ [illegible]: Երկուքն իրարմով ուղղեցինք եւ լրացուցինք: — [12] Տպգր. [illegible]: — [13] Մերն [illegible]. — [14] Մերն՝ է [illegible]: — [15] Տպգր. [illegible]: — [16] Մերն՝ [illegible] է [illegible]: — [17] Տպգր. որ [illegible]: — [18] Տպգր. է [illegible]: — [19] Մերն՝ [illegible]: — [20] Շէն [illegible]... չունի մերն: — [21] Տպագրեալն՝ աղուեսուն ու գայլուն միասին ճանապարհորդելն ու այգին մտնելն, — զոր մեր օրինակն քանի մի տողով կը դնէ, — գեղեցիկ ստորագրելէն ետեւ, հետեւեալ համառօտ հատածով կ՚աւարտէ բովանդակ Առակն: «Եւ փախեց գայլն ի դմակն, եւ յորժամ հասաւ գայլն ի դմակն՝ նա շարժեցաւ ականատն եւ անկաւ ի պարանոց գայլուն, եւ թռաւ դմակն, եւ ականատն ի զատ անկաւ: Եւ աղուէսն դիզացաւ եւ ասէ. Մինթէ յերա՞զս իցէ այս: Եւ ոչ կարէր համբերել ի դմակին սիրուն: Եւ փախեց եւ էառ զդմակն եւ կ՚ուտէր ի դիմաց գայլուն. հետ կ՚ուտէր եւ հետ կու մըրնձկտար: Եւ ականատն նեղէր զգայլն, եւ յայսկոյս եւ յայնկոյս ցանէր զականատն: Եւ կերաւ աղուէսն զդմակն, եւ ելեալ երթայր ի լեառն ի վեր: — Ասէ գայլն. Ապլահաաան աղուէս, զիս անտէր թողիր, եւ յո՞ւր կ՚երթաս: — Ասէ աղուէսն. Անտէր ես եմ, որ ի լեառն ի վեր կ՚երթամ: Հիմի քեզի տէր շատ կու գայ:

"Եւ եկաւ այգոյն տէրն, եւ տեսաւ զգայլն ի յականատն: Եւ ժողովեցան բազում մարդիկ. եւ քարիւ եւ փայտիւ եւ սրով սպանեցին զգայլն: Եւ քերթեցին եւ զմորթին հանին. եւ զլեշն շունքն տարին քարշելով եւ գէշ գէշ պատառելով: Եւ զմորթին արին մուշտակ":

4. Հնար է որ մեր Առակաց ուղղակի արաբերէնէ, եւ ոչ այլ թարգմանութեանց միջոցաւ առ մեզ անցնելուն հակառակ՝ այս ընդդիմութիւնն հանուի, որ արաբերէնէ թարգմանեալ եւ նոյն լեզուի հետեւողութեամբ յօրինեալ գրուածոց մէջ յաճախութեամբ արաբերէն բառեր կը գտնուին. ուր մեր Առակաց մէջ՝ — եթէ դուրս հանենք զվերջինն, — այնպիսի բառից յաճախութիւն չի տեսնուիր:

Հարկ չկայ երկայն պատճառաբանութեամբ ցուցընելու ջանալ թէ գրութեան մի մէջ յաճախութիւն արաբական բառից՝ միշտ նշան չէ արաբերէնէ թարգմանեալ կամ արաբերէնի հետեւողութեամբ յօրինեալ լինելուն, եւ ոչ նուազութիւն նոյնպիսի բառից՝ նշան է հակառակին: — Կիրարկութիւն որպիսի եւ իցէ օտար բառից, ընդհանրապէս խօսելով՝ աւելի գրութեան նիւթէն կամ մատենագրին կամքէն ու վարժութենէն կախում կ'ունենայ: Աւասիկ Սմբատ սպարապետ իւր Անսիզքն գաղղիերէնէ թարգմանած է, իսկ Դատաստանագիրքն՝ Մխիթարայ Գոշի գրաբար դատաստանագրոց վրայէն խմբագրած. կը տեսնենք սակայն որ այս երկու գրութեանց մէջ ալ՝ առաւել կամ նուազ յաճախութեամբ՝ խառնեալ են եւրոպական, արաբական եւ տաճկական իսկ բառեր: Իսկ Պղնձէ քաղաք կոչուած առասպելախառն վիպասանութիւնն, որ արաբերէնէ թարգմանեալ է, — ինչպէս որոշակի գրուած է ի վերնագրին "Պատմութիւն Պղնձէ քաղաքին, զոր թարգմանեալ է Առաքել վարդապետն ի տաճիկ լեզուէ[1] ի Հայոց լեզուս" — հազիւ քանի

[1] Այսպէս՝ մեր ձեռագիր օրինակին մէջ. Ոսկեփ. 68: — Յայտնի է որ տաճիկ բառն՝ որոյ հին դասական նշանակութիւնն է արաբացի, նաեւ ի միջին դարս եւ ի գրեանն ռամկագիր հեղինակաց միեւնոյն նշանակութիւնը պահած էր: Ի մէջ այլոց՝ մեր տեսած հնագոյն բժշկարանն Մոնդրնին

մի արաբերէն բառեր ունի, որ սովորական են գրեթէ ամենայն գրուածոց ժամանակին: Հետեւեալ օրինակք, որոց նման է բովանդակ գրուածոյն լեզուն, յայտնապէս կը ցուցընէ կարծեացս ստուգութիւնն:

## Պընջէ թաղթ[1]:

Ա. Կայր ի Պաղտատ խալիֆա մի, որում անուն էր Աբդըլմէլիք: Օր մի ի Դիւան իջաւ, եւ ժողովեաց զիւր մեծամեծքն, եւ եհարց վասն Սողոմոնի արքային՝ եթէ որպէս առնէր հրաման ի վերայ դիւացն: Յառաջ եկեալ ամիրայ մի եւ ասաց. Հզօր եւ մեծ խալիֆայ, տեսի այր մի որդի մեծ վաճառականի, որ ասաց՝ թէ Ես գնացի ի Սելեւկիայ կղզին: Ի ծովն մոլորեցաք քառասուն օր: Յայնժամ ելաք ի լեառ մի բարձր, որ ամենեւին ոչ ճանաչէաք զտեղին. տեսաք մարդիք սեւադէմք, եւ բարեւ տուին եւ տարան ի տունս իւրեանց: Կացաք անդ երեք օր: Ի ծովն յորս գնացին, տարան եւ զմեզ ի հետ. արկին զգործիսն ի ջուրն եւ բազում ձկունք բռնեցին: Եւ ի հետ ձկանցն բերին կուժ մի արճիճով մատնեհարած Սողոմոնի մատնահարովն, եւ բացին զկուժն: Ելաւ ի կժէն որպէս մուխ, բարձրացաւ

Ս. Ղազարու (օրինակեալ յամի ՉԽԳ. = 1294) ունի հետեւեալ վերնագիրն. "Բժշկարան զոր փոխած է ի տաճիկ լեզուէ ի հայս...": — Իսկ Առաքել Վ. որ իբրեւ թարգմանիչ Պընջէ թաղթին կը նշանակուի ի վերնագրի ձեռագրիս, հաւանաբար Անեցին է, որ յարաբերէնէ թարգմանած է նաեւ Ղրաբադին: Վասն զի թէեւ ի նախաշաւղին զինքն լոկ Առաքել վարդապետ կ'անուանէ թարգմանիչն — "Թուականութեան թորգոմեան ՈՀԱ. (= 1222) էր, ես անարժանս Առաքել վարդապետս թարքմանեցի ի յարապ լեզուէ ի Հայոց բառ". — սակայն կայ յառաջագոյն համառօտ խառնակ յիշատակարան մի, յորում նոյն թարգմանիչն կը կոչուի... "Ցաբեղանյանեցի՝ որ անուամբ Առաքելասեն... շիրակվանեցի ի յԸնի քաղաքի մաւտն": — Երազահանն ալ կը գտնուի վերոյիշեալ Ռոկեփորիկին մէջ:

[1] Ի մէջ բերեալ հատածովքս ուզեցինք միանգամայն հարեւանցի՝ այլ ամբողջական գաղափար մի տալ այս առասպելեալ գրութեան վրայ. ուստի ընտրեցինք սկիզբն, մէջերէն երկու գլխաւոր կտորներ, կտոր մ'ալ վերջերէն: — Ընդհանրապէս մեր ձեռագրին հետեւեցանք, բայց շատ տեղ զեղչելով. միանգամայն տպագրեալ օրինակաց վրայէն սատ անդ ուղղեցինք, եւ մի երկու անգամ ձեռագրիս փոխանակեցինք անոնց ընտրելագոյն ընթերցուածն:

յօդս եւ եղեւ ի կերպարանս գիշատեսիլ մարդոյ. աղաղակեաց եւ ասէ. Սողոմոն, Սողոմոն, մեղայ, այլ չգործեմք զոր ինչ գործեցաք։

Յայնժամ ասէ խալիֆայն. Ոչ հանգչի սիրտ իմ մինչեւ տեսանեմ զայն կժերուն։ Եւ ապա հրամայեաց խալիֆայն Դալիպին՝ որդոյն Սալեհայ՝ թէ Գնա առ Ամիրմուսէն՝ յարեւելից տէրն, որ եւ երթայք երկուստ ի շուրջ գայք՝ մինչեւ գտանէք ի յայն կժերուն, եւ ինձ հաստատուն զրոյց տաք՝ թէ ինչ կայ ի ծովու կամ ի ցամաքի։ Եւ գնաց Դալիպն առ Ամիրմուսէն։ Ելաւ Ամիրմուսէն շատ հեծելով եւ գնաց ի Մսրայ սուլտանն, (որ) շատ հարկիք արար նոցա. եւ անտի ելեալ գնացին շատ հեծելօք յաշխարհն կանանցոյ թագաւորին։ Կարդաց կին թագաւորն զհրաման խալիֆային, եւ կոչեաց զինչ ի յիւր աշխարհն հին մարդ կայր եւ շատաշուրջ վաճառական։ Եւ գտան ալեւոր մարդ մի, որ գիտէր զծով եւ զցամաք, եւ զանբնակ աշխարհն տեսեալ էր։ Յայնժամ ասաց թագաւորն. Ծեր սիրելի, գիտե՞ս զայն տեղն՝ որ Սողոմոն բարկացաւ դիւացն եւ ի պղնծէ կուժն եած, արճիճով մատնեհարեաց եւ ի ծովն ձգեաց։ — Ասաց ալեւորն. Գիտեմ զայն տեղն։ — Ասաց թագաւորն. Պիտի որ տանիս զխալիֆայի ամիրայքն ի յայն տեղն։ — Ասաց ալեւորն. Հրամանք քո եղիցի, եւ Աստուած զքարին առաջնորդէ։ Բայց ճանապարհն մոխոնիրս է եւ հեռի. քառասուն օր անջուր պիտի գնալ. երեք տարին գնան եւ գան։ Շատ զարմանք կայ ի ճանապարհին։ Յայնժամ ասաց թագաւորն ընդ Ամիրմուսէն՝ թէ Զայդ գիտուն ծերդ՝ որ ի յաշխարհի այլ ոչ կայ, ի քո հրամանքն եմ տուեալ։ Ծունտր եած արքային, եւ ղուլոնեաց զծերն։

Բ. Ապա զուգեցան եւ սազեցան ճանապարհի, եւ գնացին երկու հազար ձիաւորով։ Շատ օր ի շէն երկիր ի ներս գնացին, եւ հասին ի յանմարդաբնակ երկիրն. եւ լմնցաւ տարի մի։ Եւ գնացին երեք օր եւ տեսան բարձր բլուր մի, եւ ի մէջ բլրին տեսան սիւն մի քար, եւ ի յայն սեան ծայրն կայր կենդանի մի մարդաձեւ, թաղած էր յայն քարէ սիւնն մինչեւ ի մէջքն. եւ ունէր երկու թեւ մեծամեծ, ձեռն որպէս առիւծու էր, մազն՝ որպէս ձիու ձար, 'եւ կերպարանքն որպէս

թուխ սաթ էր։ Եւ եհարց ալեւորն. Ո՞վ ես դու, եւ կամ ո՞վ եդիր զքեզ ի յայս չարչարանքդ։ — Ասաց այն դեւն՝ թէ Ես յանմարմին քաջացն եմ, եւ աստ կամ ի չարչարանս հրամանաւ Սողոմոնի։ — Ասաց ամիրայն. Վասն է՞ր եդիր զքեզ ի յայտ չարչարանքդ։

Ասաց քաջն. Կայր թագաւոր մի, ինձ քուրոջ որդի էր եւ ունէր երկու կուռք, եւ ես սպասաւորէի կռոցն։ Մեր թագաւորին բազում հեծելք կայր, եւ ոչ ոք կարէր զդէմ ունել նմա, եւ բազում քաջք ի նորա հրամանքն էին։ Եւ Սողոմոն ի հետ մեր թագաւորին ի մարտ էր։ Եւ ունէր թագաւորն դուստր մի անօրինակ զարմանալի պատկերաց տէր։ Առաքեաց Սողոմոն դեսպանք առ թագաւորն մեր եւ ասաց. Տուր զդուստրն քո ի կնութիւն ինձ, եւ կոտորեա զկուռքդ քո, հաւատա յԱստուածն իմ որ արար զերկինս եւ զերկիր։ Թէ զայդ առնես՝ եղբայր լինիս ինձ. ապա թէ ոչ առնես՝ պատրաստեա զքեզ ի պատերազմ. գամ տամ զմահ քեզ բաժին։ — Լսեց մեր թագաւորն եւ բարկացաւ. կոչեաց զիւր զօրքն եւ եհարց՝ թէ Զի՞նչ տամք պատասխանի Սողոմոնի։ — Ասացին մեծամեծքն՝ թէ Ի մարմնաւորացն քան զքեզ ոչ կայ մեծ. դու մեծ ես քան զՍողոմոն։ Բայց դու մուտ առաջի չաստուածոցն, մատո զոհս. թէ հրամայեն չաստուածքն մեր՝ նա կու կռուինք ընդ Սողոմոնի առաջի քո։ — Յայնժամ արար թագաւորն զոհս մեծս. մատեաւ առաջի կռոցն, աղաչեաց՝ թէ Օգնեցէք ինձ. Սողոմոն գալ կամի ի վերայ մեր եւ հարկանել զմեզ։

Յայնժամ ես անբախտ էի եւ տխմար եւ շփացած ի յիմ մանկութիւնս, որ ոչ ճանաչէի զՍողոմոն որդի Դաւթի։ Ես հարցի զկուռքն վասն այս բանիս։ Պատասխանի տուի՝ թէ Մի վախէք ի Սողոմոնէ արքայէն. ես կարող եմ առնուլ զհոգին Սողոմոնի, եւ տամ ձեզ յաղթութիւն։ — Լսեց թագաւորն եւ յոյժ ուրախ եղեւ եւ հպարտացաւ, եւ զՍողոմոնի էլչին ծեծեց եւ շատ յիշոցներ ետ Սողոմոնի։ Եւ գնաց Սողոմոնի դեսպանն։ Եւ Սողոմոն ժողովեաց զօրք բազում՝ մարմնաւոր եւ անմարմին, եւ ուսուց նոցա թէ որպէս կռուին։ Սազեաց զինքն ի դուր դաշտ մի, եւ իմ թագաւորն ի դուր լեառ մի։ Եւ ապա սկսանք կռուիլ։ Եւ հրամայեաց Սողո-

մոն գազանացն՝ թէ Յառաջ քան զամենայն զգրաստնին լափեցէք. օձիցն եւ վիշապացն հրամայեաց՝ թէ Ոտներուն մէջն անկէք եւ պաշարեցէք: Դրին կռիւ երեք օր եւ երեք գիշեր: Ես պարծեցած էի՝ թէ զՍողոմոնի վզկէրն զԱմիրաթն բերեմ առաջի իմ պարոնին: Կանչեցի եւ խառնեցայ իւրեանց մէջն, եւ ասացի՝ թէ Ա՛յլ մարդ ոչ ուզեմ՝ բայց զքեզ, Ամիրաթ. առ իս արեկ, որ տեսանեմք զիրար: Երբ խառնեցաք ամէնս յիրար, թռչունքն չտային մեզ աչք բանալ, գազանք եւ սողունքն լափէին զմեզ: Նա ապա գիպաք ես եւ Ամիրաթն յիրար. շատ ժամանակ կռուեցաք՝ մինչեւ ձանձրացաք երկուսս, եւ իմ զօրքն փախեան. եւ ես կամէի բաժանել՝ որ հաւտատէի զիմ զօրքն: Նա ետես զիմ դառնալն ի յետս, եւ հրամայեաց՝ թէ Կալէք զայդ անհաւատդ: Փախեայ ես. եւ Ամիրաթն երեկ անկաւ ի վերայ իմ: Յայնժամ տարաւ զիս առաջի Սողոմոնի, որ ետ բերել զայս քարէ սիւնս, եւ զընդանեաց զիս յերկաթ եւ յարճիճ եւ ի պղինձ: Նա հրամայեաց Ամիրաթին, որ շալկեց զիս քարովս, եւ եբեր եդ զիս ի յայս բլուրս:

Գ. Էառ Ամիրմուսէն զկէս հեծելին եւ ի քաղաքն մտաւ. եւ ի շուրջ եկին ի քաղաքն, եւ տեսին որ ամենքեան մեռած էին եւ փտած: Եւ շուկէքն՝ ամէնն սալկապած էր, եւ ջուրն շուրջ գայր ի վերայ. եւ յամէն փողոցի գլուխ բրքայ մի շինած էր եւ ոսկի առիւծ մի դրած, եւ ջուր ընդ բերանն ի վայր թափէր: Գնացին ի թագաւորին դարպասն, որ երեք դուռն ունէր. եւ տեսան զարմանալի շինուածք, որ այլ չէր տեսեր աչք մարդկան: Ի ներս մտան ու տեսան զի երեք սիւն կայր, եւ գունբէթ մի ի վերայ սեանցն՝ ի յոսկոյ կազմած. եւ ի յայն գունբէթն ոչ տեսան փայտեղէն եւ ոչ քարեղէն, այլ ամէնն ոսկի եւ արծաթ էր: Եւ սիւն մի եւս կայր ի մէջ դարպասին, որ երեսուն կանգուն բարձր էր քան զդարպասն, եւ ոսկի առիւծ մի զուգած էր վերդ զկենդանի, եւ լուսատու ակունք յառիւծն դրած էր: Երբ մութն անկանէր՝ նա այն ակներն լուս տային զերդ զարեգակն: Եւ ոսկի տախտակ մի դրած էր ի վերայ աթոռի մի, եւ գոհար ակունք ի նմա եւ գեղեցիկ թագ մի, եւ թագուհի մի ի վերայ աթոռին՝ տղայ աղջիկ, եւ խոլէշո մի՝ ամէնն

փառաւոր մարգարիտ էր շարած ի թագուհուն ներքեւն, եւ թագուհին ի վերայ կայր նստած։ Եւ կայր ի գիրկն թագուհւոյն տախտակ մի ոսկի, եւ լաժվարդով շատ խրատ էր գրած ի նմա։ Եւ կարդաց ալեւորն, եւ էր այսպէս. Ով զիս տեսանէ՝ թող իւրն ողորմի եւ խրատուի։ Ես տասնուհինգ տարեկան էի, որ մեռայ։ Մահն ոչ ի թագաւորէն կու երկնչի եւ ոչ աղքատին կու խղճայ։ Ես՝ Ջմրուլթ թագաւորին դուստր եմ։ Յառաջ մեռաւ իմ մայրն, եւ ես հինգ տարեկան էի. եւ ապա մեռաւ հայրն իմ, եւ ես տասն տարեկան էի։ Կալայ զաթոռ թագաւորութեան, եւ զթագաւորութիւնն վայելեցի հինգ տարի։ Յայնժամ հասաւ ինձ մահն, եւ կործանեաց զթագաւորութիւնս իմ։ Քաղաքս երկնաչափ աշտեղօք է շինած եւ փըլըրմած. վերդ զսա ամուր քաղաք այլ չկայ ի վերայ երկրի։ Ով որ մտանէ ի սա հրամանաւն Աստուծոյ, գանձ շատ է. առէք որչափ որ պիտոյ է. բայց զայս որ յիմ վերայ է՝ մի առնուք վասն Աստուծոյ սիրուն համար։ Այսչափ իրքս որ յիմ վերայ է՝ ինձ թողէք. ի յիմ ամէն թագաւորութենէս ինձ բաժին զայս եմ առեր։ Երդմնեցուցանեմ զձեզ յԱստուած կենդանին, որ վախենայք յԱստուծոյ, եւ չառնէք իմ մարմնոյս մնաս, եւ զիս յիրար տայք եւ խոռէք։

Դ. Գնացին ծովեզերովն քառասուն օր, եւ տեսան բարձր բլուր մի, եւ ի բլրին տեսան սեւ մարդիկ այլադէմք, եւ ի տակ բլրին տեսան քարէ տներ։ Եւ իջաւ Ամիրմումէն անդ։ Եւ փախեան այն սեւ մարդիքն։ Եւ գնաց ալեւորն ձայն երետ եւ հասկացոյց. եւ գնացին սեւերն բերին զիւրեանց թագաւորն առաջի Ամիրմումէին։ Նըստան կերան եւ արբին, եւ ուրախ եղեն։ Յայնժամ եհարց ալեւորն ցսեւ թագաւորն՝ թէ Այն կուժերուն որ Սողոմոն զդեւն ի ներս էած եւ ի ծովն ձգեաց՝ աստ կու գտանի՞ թէ ոչ։ — Ասէ սեւ թագաւորն. Որչափ որ պիտոյ է Խամուշի համար թող բերեն մեր որսորդքն, բանան զկժին բերանն՝ որ տեսանէք։ — Ասաց Ամիրմումէն՝ թէ Մեք այն կժերուն համար եմք եկեր յայսքան ճանապարհս։ Յայնժամ հրամայեաց թագաւորն որսորդացն, որ գնացին բերին տասնուերկու կուժ առաջի Ամիրմումէին։ Եւ երբ տեսաւ

Ամիրմուաէն՝ յոյժ ուրախացաւ, եւ եդիր զկժերն ի յոսկի սնդուկն իւր, եւ շատ պատիւ արար Թագաւորին: Եւ ետուր նմա շատ ոսկի եւ ակունք եւ տաճիկ ձիանք: Եւ շնորհակալ եղեւ Թագաւորն եւ ոչ էառ: Ասաց Թագաւորն՝ Թէ Ոչ պիտի մեզ այդ, զի մեք ոչ ծախենք եւ ոչ գնեմք եւ ոչ ի ձի հեծնունք: Մերն այն է՝ որ որս առնենք, զմիսն ուտենք եւ զմորթին հագնինք:

Թագաւորն երկու լաւ մարդ ի հետ եդիր Ամիրմուաէին, եւ շնորհակալ եղեն միմեանց եւ ողջունեցին զիրար: Եւ նոքա տարան զնոսա կարճ ճանապարհով ի յերկիրն կանանց Թագաւորին: Տարաւ Ամիրմուաէն զալեւորն առաջի Թագաւորին եւ շնորհակալ եղեւ ասելով. Այս ի քէնէ է, որ զայս իմաստուն ծերս ի հետ մեզ դրիր, որ տարաւ զմեզ եւ եբեր: Եւ եօթն բարձած ուղտ ոսկի ետուր ալեւորին, եւ Թագաւորն ղուլղնեաց զծերն, եւ զԱմիրմուաէն լաւ պատուեաց, եւ զօրեղ ձիանս ետուր եւ ուղարկեց ի Մոր: Եւ ապա ելան ի Մորայ, եւ եկին ի յաշխարհն իւրեանց եւ հասին ի Պաղտատ:

* * *

Ինչպէս անշուշտ միտ դրուած է, ջանացած ենք օտար Առակաց՝ մանաւանդ Հնդկականաց՝ ինչ կերպով կամ ո՛ր լեզուի միջնորդութեամբ մեզի անցնելուն վրայ կարծիքնիս մեծ զգուշաւորութեամբ եւ չափաւորութեամբ յայտնել: Այս զգուշաւորութեան պատճառն եղած է գլխաւորաբար՝ մեզի ծանօթ եւ մեր ի ձեռին ունեցած աղբերաց նուազութիւնը: Վասն զի հնար է թէ գտնուին նիւթոյս վրայ ի մեր ծանօթութիւն չհասած այնպիսի աղբիւրներ՝ հայերէն կամ օտարալեզու, որոց օգնականութեամբ կարծիքնիս աւելի եւս չափաւորէինք կամ բոլորովին փոխէինք:

# ՄԻՋԻՆ ՈՒ ՆՈՐ ԲԺՇԿԱԿԱՆ ԳՐՈՒԹԻՒՆՔ

*Նախադիտելիք.* Վերնագրովս կ'իմանանք զայն ամենայն բժշկական գրուածս, որ Հետազօտութեանցս 14րդ եւ 15րդ Հատածոց մէջ յիշուածներուն յաջորդած են։ — Արդէն 14րդ Հատածէն կրնայ մակաբերուիլ որ չունինք բազմաթիւ հեղինակներու ինքնակաց կամ իբր ինքնակաց գրութիւններ այստեղ քննութեան առնլու։ Հազիւ թէ Միջին ժամանակներէն երկու երեք բժիշկք կան, որոց նոյնպիսի գրութիւնք ծանօթացած են արդեացս, եւ հարկաւ անոնց վրայ պիտի ամփոփուի մեր ուշադրութիւնն։ Սակայն եւ այնպէս կարծենք թէ Հնագոյն Բժշկարան+ վերնագրեալ 15րդ Հատածէն նուազագոյն հետաքրքրական պիտի չերեւան հետեւեալ քանի մի Հատածք։ Ստոյգ է՝ մեր գլխաւոր նպատակին — այն է՝ նախնեաց ռամկօրէն բարբառոյն — տեսակէտէն նայելով, Հնագունից շատ առատ նիւթ չեն կարող մատակարարել Միջինք իսկ ի մասին լեզուի, առաւելապէս այն պատճառաւ՝ որ ասոնք, եւ մանաւանդ Նորք կամ յետինք, որ ձեռնարկած են բժշկարան կամ այլ որպիսի եւ իցէ բժշկական գրութիւն յօրինելու, ոչ այլ ինչ յերեւան հանած են՝ բայց եթէ իւրաքանչիւրն հնագունից կամ իւր նախընթացից գրուածներուն եղանակաւորութիւնն։ Սակայն պիտի ջանանք բոլորովին անտես չառնել եւ ոչ իսկ յետնոց գրուածները։

Գլխաւորաբար երեք յատկութիւնք ի վերջոյ յիշատակեալ գրութեանց զմեզ յօժարեցուցին այս՝ եթէ ներեալ է ասել՝ զիջողութեան։ Վասն զի անոնց մէջ երբեմն այնպիսի հնագոյն կտորներ խառնուած կը գտնուին, որ **միայն անոնց միջոցաւ** մեզի հասած են եւ զոր դրեթէ անփոփոխ կամ թեթեւ փոփոխութեամբք պահած են։ — Վասն զի

թէեւ ըստ ինքեան անհարթ եւ հետեւակ է մանաւանդ յետնոց լեզուն, սակայն այնպիսի բացատրութիւններ եւ ասացուածներ ալ կը բովանդակէ, որք ոչ փոքր օգնութիւն կ'ընեն ռամկօրէնի կարեւոր իսկ բառից հաւաքածոյքն աճեցընելու: — Վերջապէս վասն զի ամէն բժշկական գրութիւն կարող է նպաստել լուսաւորելու եւ ամբողջացընելու հայ բժշկականութեան պատմութիւնն, որոյ կատարելութեան կը բաղձանք Դերօվանն օժանդակել:

Բայց որովհետեւ մեր ի ձեռին ունեցած գրաւոր միջոցները — Ձեռագիրները — շատ նուազ են, միանգամայն մեծ դժուարութեանց ներքեւ ինկած է՝ ամենակարեւոր Ձեռագրաց իսկ նաեւ մասնական ընդօրինակութիւն առնալ, նա թէ գոհացուցիչ տեղեկութիւն ժողովել անոնց նկատմամբ, — այսպիսեաց վրայ երկրորդաբար միայն կը խօսինք, այս ինքն՝ երբ մեզի ծանօթ նոր կամ յետին ժամանակաց գրութիւն մի կապ ու յարաբերութիւն կ'ունենայ զմեզ զբաղեցընող գրուածոց միոյն հետ:

## 21.

## Ժ. ԱՄԻՐՏՈՎԼԱԹ[1] ԱՄԱՍԻԱՑԻ

### Օգուտ բժշկութեան եւ Անգիտաց անպէտ:

Հերացի բժշկապետին Մխիթարութենէն (ՈԼԳ. = 1184) երկուհարիւր ութսունուերկու տարի ետեւ (ՋԺԵ. = 1466) կը գրէր Ամիրտովլաթ Ամասիացին իւր առաջին եւ գլխաւոր գործն, այն է՝ Օգուտն Բժշկութեան կամ

[1] Այս է բուն ուղիղ գրութիւն անուանս, եւ այսպէս ալ գրուած կը գտնենք հնագոյն Ձեռագրաց շատին մէջ. բայց աւելի սովորական եղած է Ամիրտոլվաթ գրութիւնն, որ կ'երեւայ թէ ռամկաց բերնէն առնուելով՝ մուտ գտած է առաւելապէս ի նորագոյն Ձեռագիրս: Յայտնի է որ ռամիկն դեվլեթ կամ դեօվլեթ բառն հասարակօրէն դեօլվեթ (դոլվաթ) կ'արտաբերէ: — Մենք ըստ տեղւոյն երկուքն ալ գործ կ'ածենք:

իւր ընդարձակ բժշկարանն, Մակեդոնիայի Փիլիպպոպոլիս քաղաքն, եւ այն Թուականէն տասուերկու տարի վերջն (ՋԻԷ. = 1478) ի Կոստանդնուպոլիս մայրաքաղաքն կը ձեռնարկէր ի գրութիւն իւր երկրորդ աշխատասիրութեան, որ է՝ բժշկական բառագիրքն, զոր ինք՝ Անգիտաց կամ Անգիտին անպէտ կ'անուանէ, ծանուցանելով թէ չորս տարի աշխատած է նոյն գործոյն (— ՋԼԱ. = 1482[1]):

Այս երկու գրութեամբք, մանաւանդ առաջնովն, մեծ անուն եւ համբաւ ստացած է Ամիրտովլաթ ազգիս մէջ. այնպէս որ իրմէ ետեւ բժշկութեան վրայ գրել ուզողներն զինքն իրենց օրինակ եւ առաջնորդ կ'առնուն: Ուստի երբ վերջին ժամանակներս իւր աշխատասիրութիւնք ծանօթացան, շատերն՝ առանձինն հմուտք բժշկութեան՝ զարմանալով իւր գրուածոց ներկուռ շատահմտութեան վրայ, սկսան իրեն ալ յատկացընել Բժշկապետ վերադիրն, որ ազգային բժշկաց մէջէն՝ Մխիթարայ Հերացւոյ միայն սեպհական պատուանունն էր մինչեւ ցարդ:

Ամիրտովլաթ իւր անձին եւ գրութեանց՝ ինչպէս նաեւ իւր ուսումնական ընթացից եւ բժշկական գործունէութեան վրայ բաւական մանրամասն տեղեկութիւն կու տայ երկու գլխաւոր գրուածոցը

[1] Ինք Օգուտ Բժշկութեան գրոց Թուականն Յառաջաբանին մէջ որոշ կը գրէ ՋԺԷ. որ կ'երեւայ թէ աւարտման Թուականն է, վասն զի կ'ըսէ. "Այսպէս գիրքս շինեցի„: Իսկ Անգիտաց անպէտին՝ թէ սկսման եւ թէ աւարտման Թուականները կը ծանուցանէ ոչ սովորական կերպով՝ այլ գաղտնագրութեամբ իբրեւ առեղծուած: Յառաջբանին մէջ սկսելուն Թուականը նշանակելու համար կը դնէ շինէ բառն, աւարտելուն Թուականն ալ ծանուցանելու մօտ Յիշատակարանին մէջ ի գործ կ'ածէ լմնայ բառն, երկուքն ալ կարմիր Թանաքաւ: Այս երկու բառերը կազմող իւրաքանչիւր գրին նշանակած Թիւն առնլով՝ կ'իմանանք թէ սկսելու Թուականն է (Շ = 500 + Ի = 20 + Ն = 400 + Է = 7) = ՋԻԷ. աւարտելուն Թուականն՝ (Լ = 30 + Մ = 200 + Ն = 400 + Ա = 1 + Յ = 300) = ՋԼԱ: (Վերջին առեղծուածին կից կայ նաեւ լուծումն՝ ՋԼԱ. որ անշուշտ յետոյ յաւելցուած է, եւ արդեամբք իսկ չունի զայն մեզի ծանօթ այլ Ձեռագիր:

*մէջ: — Այսպէս՝ ընդարձակ բժշկարանին մէջ իւր ի կիր արկած 'յոյն եւ արաբացի բժշկաց անուանքն յիշատակելէն եւ իւր երկասիրութիւնն անոնց հետեւողութեամբ յօրինելն իմացընելէն ետեւ (տես էջ 122) խօսքն այս կերպով կը շարունակէ. "Եւ այսմ հետէ գրեցի շատ աշխատանօք զայս ձեռամբ իմով, եւ շատ դժուարութիւն եւ պատահմունք եմ քաշել ի յանօրինաց եւ ի յայլազգեաց, ի դատաւորաց, ի թագաւորաց եւ իշխանաց: Եւ շատ գրեանք էի ժողովել ի յԱրաբաց եւ ի Պարսից եւ ի Թուրքաց: Եւ շատ ղուրբեթութիւն քաշի. եւ ըստ ժամանակին զչարն եւ զբարին եւ զպատահմունքն էի կրել, զհարստութիւն եւ զաղքատութիւն էի քաշել: Եւ ի յերկրէ ի յերկիր շատ բժշկութեան զարուեստն էի գործել: Եւ փորձել էի ես (յ)իմ միտքն շատ դեղեր եւ Խաբֆէղնի. եւ շատ ծառայել էի հիւանդաց եւ մեծամեծաց եւ իշխանաց եւ հազարապետաց եւ հարիւրապետաց եւ քաղաքացւոց եւ աղքատաց, մեծի եւ փոքու, եւ շատ չար եւ բարի էի տեսել: Եւ հանց եղայ ես հիմայ, որ ոչ հարստութեան կու խնդամ եւ ոչ աղքատութեան կու տրտմիմ. եւ զամենայն չարն եւ զբարին մէկ կու տեսնում եւ անհոգ լինիմ այս ամենայն ցանկութենէ կենցաղոյս . . . ":*

*Բժշկական բառագրոց վրայ ընդարձակագոյն եւս տեղեկութիւն կու տայ: — Ցառաջաբանին մէջ հետեւեալ չորեքտողեանով կը ծանուցանէ թէ ինչ մտօք նոյն գրութեան Անգէտք անպէտ անուն դրած է:*

*Եղիր հետեւող իմաստութեան հետ.*
*Եթէ չուսանիս՝ բըժիշկ ես անգետ.*
*Լինիս դու գիտուն՝ արա բանիս պետ,*
*Գրոցս է անունն՝ Անգետի անպետ:*

*Սակայն մի յետոյ նոյն Ցառաջաբանին մէջ կը գրէ . . . "Ցետոյ գնացաք շուրջ եկաք բաղում քա-*

ղաքանի, եւ անցաք զծովն եւ շուրջ եկաք զաշխարհն Մակեդոնացւոց, եւ բնակեցաք ի մայրաքաղաքն ի Կոստանդինուպոլիս, եւ հաւաքեցաք շատ գրեանք ի յայլ ազգաց, եւ աշխատեցաք եւ ուսաք զբառերն եւ զանուանքն ազգի ազգի ... հինգ լեզուաւ„:

Վերջապէս՝ բաց յայլոց մանրամանր տեղեկութեանց՝ ամէնէն աւելի ընդարձակ ծանօթութիւնը կու տայ Անֆէորաց անդէտի ոտանաւոր Յիշատակարանին մէջ, որ է այս.

... Գոհանամ ի քէն Քրիստոս անմահ արքայ,
Որ տուիր ինձ ժամանակ մինչեւ ի սմա,
Զորս տարի տիւ եւ գիշեր աշխատեցա,
Ի բազում աւրինակաց աւարտի սա.
Գրեցի կատարեցի բան զինչ որ կայ,
Ի բառից բժշկութեան զինչ որ գտա.
Աւարտեմ զսա հինգ լեզուով զինչ որ ուսա,
Ի Հայոց եւ ի Հոռմոց եւ յԱրապկա,
Ի Պարսից եւ ի Թուրքաց՝ քիչ Լաթինա.
Եւ ի Հայոցն եմ արարեր զսկիզբն դորայ
Ի վերայ այբուբենին զինչ դեղ որ կա,
Եւ զֆէն այլ յիշեցի վերջքն սորա.
Ես բժիշկ Ամիրտովլաթս՝ Հայրս Եղիայ,
Որ ծնեալ եմ ի քաղաքն Ամասիայ.
Ես հիմայ եմ բնակել ի Բիւզանդիա,
Որ իսկի դորայ նման քաղաք չիկայ,
Որ աթոռն է Թուրքք ազգին հիմակ որ կայ,
Որ ասեն տաճիկ լեզուաւ Կոստանդինա.
Գծողին եւ չինողին ով որ կարդայ՝
Ողորմի Քրիստոս որ ասէ Հայր մեղա,
Որ ի բանս այլ պակաս իրք չի մնա:
Փառք քեզ Տէր. ի Հայոց Թուական, ջլայ: (ՋԼԱ:)

Ամիրտովլաթայ մահուան մասին՝ յաջորդ տեղեկութիւնը կու տայ Մեծ. Ա. Տուրիկեանին՝ Արեւելքի 1890, Յուլ. 24ի թուոյն մէջ՝ Ամիրտովլաթայ Ձեռագրի մը վրայ հրատարակած ծանօթութիւնն: Ձեռագրին բուն Յիշատակարանն յառաջ բերելէն ետեւ՝ հրատարակիչը կը յաւելու. Գործոյս սկիզբները կայ մի այլ յիշատա-

*կարան եւս տարբեր գրչով գրուած այսպէս. «Փոխեցաւ ի Քրիստոս Ամիրտովլաթ բժիշկն Թարգմանող գրոյս ի Թվ. ՁԽԵ ․․․»։ (Յայտնի է թէ սխալ է Ձ· որ պիտի ըլլայ Ջ։) Շատ ծանրակշիռ է այս տեղեկութիւնն. բայց որովհետեւ Ձեռագրին բուն Յիշատակարանն պակասաւոր եւ տեղ տեղ անընթեռնլի է, բովանդակն պէտք ունի ուսումնասիրուելու, որուն համար մենք բաւական միջոց չունենալով՝ հմտագունից կը թողունք։*

*Հերացւոյն Ջերմանց Մխիթարութեան վրայ յուզուած խնդիրն՝ որ արդեօք թարգմանութիւն է՝ թէ ինքնագիր աշխատութիւն, կրնայ նաեւ Ամիրտովլաթայ երկու գրուածոց մասին յառնել։ Կարծենք չենք սխալիր՝ եթէ հաստատենք նոյն երկու գրուածոց վրայ ալ ինչ որ ըսինք առաջնոյն համար, այնպէս լուծելով նոր խնդիրն՝ ինչպէս ջանացինք լուծել հինն։* (*Տես էջ* 71—73։)

## Ա· ՕԳՈՒՏ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

*Գիտէ ամենայն ոք որ առաջին ժամանակները բժշկականութիւնն այնպէս չէր նկատուեր եւ ոչ այնպէս կ՚աւանդուէր՝ ինչպէս այժմս։ Ինչ որ ի մերձուստ կամ ի հեռուստ յարաբերութիւն ունի մարդկային կենաց ի մասին առողջութեան՝ բժշկականութեան անուան ներքեւ կը փակէին հինք. ուստի եւ իրենց բժշկարանաց մէջ կ՚առնուին ուսմանց այն նիւթերն ալ՝ որ այժմ բոլորովին զատ գիտութիւնք կը համարուին։ Այսպէս նաեւ Ամիրտովլաթայ Օգուտն Բժշկութեան՝ ըստ սովորութեան հնոց՝ կը պարունակէ եւ կ՚աւանդէ նաեւ այնպիսի ուսումներ, զոր արդիք՝ իբրեւ անկախ եւ ինքնակաց գիտութիւնք զատ զատ գրուածովք կ՚աւանդեն։ Յիշենք օրինակի համար՝ միայն Մարդակազմութիւնն, Վիրաբուժութիւնն ու Դեղագործութիւնն, որոց վրայ բուն բժշկականաց հետ խառն եւ կամ նաեւ առանձինն կը խօսի Ամասիացի բժշկապետն իւր բժշկարանին մէջ։*

*Ահա յիշեալ մասերնին բովանդակածն։ Հեղինակն՝ Յառաջաբանէն, նիւթոյ Ցուցակէն եւ*

քանի մի Թուղթ նախագիտելիքէն ետեւ, կը դնէ բաւական երկայն Մարդակազմութեան մասն։ Յետոյ՝ նոյն Յռջբնին մէջ ծանուցածին համեմատ՝ բոլոր գրութիւնն երկու բաժին կը հատանէ։ Ա. Բաժինն նուիրեալ է Առողջապահութեան (Hygiène), զոր ինք կը կոչէ "Թուղթք առողջութեան եւ սնածուցմն ամենայն անձինն". որ այս ամէնն՝ Ձռգրին առաջին 51 էջերը կը բռնէ։ Այնուհետեւ կու գայ Բ. Բաժինն, որ է՝ Ախտաբանութիւն (Pathologie) կամ ինչպէս ինք ըսած է, "Բ. Բաժինն յիշէ զկերակուրն եւ զդեղերն նորա որ մէկ ի մէկին խառնուած, եւ զընութիւնն եւ զօգտութիւնն եւ զօրութիւնն եւ զչափն առնելոյն եւ զփոխան ամէն մէկին"։ Այս Բ. Բաժինն բովանդակ Նախընթացին քառապատիկն է՝ ըստ՝ Թուոյ էջիցն, Թէեւ ասոր մէջ սիւներէն շատերն քանի մի (5—15) տող պակաս են, ուր Նախընթացին մէջ միշտ որոշ չափով (49—50) տողերն ամբողջ գրուած են։

Սոյն երկու բաժիններով կատարուած է Յռջբնին մէջ Հեղինակին նշանակածն։ Սակայն Ձռգիրն տակաւին շարունակուելով՝ իբրեւ երրորդ բաժին ի մէջ կը բերէ՝ ընդարձակ Դեղագործութիւն (Pharmacopée) կամ բժշկարանաց սովորական արաբացի բառիւ Աղրապատին մի, որոյ մասին առանձին Հատածի մէջ պիտի խօսինք։

Այս է Օգու—տն Բժշկո—ննեան ըստ մեր Ձռգրին, եւ ինչպէս ստոյգ կը համարինք՝ նաեւ ըստ այլ շատ Ձռգրց՝ որոց վրայ տեղեկութիւնք հրատարակուած են[1]։ — Բայց կայ եւ ասկէ տարբեր խմբագրութիւն, որոյ Ձռգիրք՝ Թէեւ ի սկզբան անԹերի՝ չունենալով հեղինակին Յռջբնն, եւ ոչ իսկ կը ծանուցանեն Ամիրտովլաթայ անունը, որ՝ ինչպէս վերագոյն տեսանք՝ միայն նոյն Յառաջաբանին մէջ նշանակուած է։ — Մենք այս յետնագոյն խմբագրու-

[1] Ասոր վրայ յետոյ առիթ կ՚ունենանք խօսելու։

թիւնը Համառօտեալ կը կոչենք, իսկ բուն Ամիրտովլաթայն՝ Լիակատար: — Համառօտեալ խմբագրութեան վրայ առ այժմ այսչափ միայն տեղեկութիւն տալն բաւական կը համարինք, որ Լիակատարին Ա. Բաժինն գրեթէ ամբողջ պահելէն ետեւ, բոլորովին թող տալով Բ. Բաժինն, կ'անցնի Ախրապատանին, որուն կը յաջորդէ նոր ընդարձակ մաս մի, ինչպէս ի յաջորդսն կը տեսնենք:

---

Մեծ օրինակ ունինք ի ձեռին Օգտի բժշկութեան Լիակատար խմբագրութենէն, (Մատենադարանս Թ. 11, Ա.) թղթեայ՝ միջակ մեծածալ, որ ունի ընդ ամենայն 413 էջ: Մինչեւ 376որդ էջն երկսիւն է, եւ կը բովանդակէ զՅառաջաբան, զՅանգ նիւթոց, զՄարդակազմութիւն, զԱ. եւ զԲ. Բաժին գրուածոյս, եւ երկու բաժնից մէջտեղը՝ համառօտ (իբր երեք էջ) բառագիրք ի վերայ ցաւոց: Հուսկ ապա ընդարձակ Ախրապատին մի: Այս ամենայն մաքուր նօտրգիր միակերպ՝ մինչեւ 359որդ էջին Ա. սեան կէսն, ուր գրիչն ու թանաքն իսկ կը փոխուի. բայց նաեւ անկէ ետեւ ալ ըստ բաւականին լաւ է գրչութիւնն: Երկսիւն մասին կը յաջորդէ եւ մինչեւ վերջը կը շարունակէ Մխ. Հերացւոյ Ջերմանց Մխիթարութիւնն՝ միասիւն: Այս մասին հանգամանքն կանխաւ ծանուցած ենք Հետազօտութեանցս 12որդ Հատածին սկիզբը: — Ընդօրինակողն իւր անունը կը ծանուցանէ Բ. Բաժնին վերջն (էջ 260) ճիշդ միեւնոյն գրով՝ որով գրուած է նախընթացն ու յաջորդն, կոչելով զանձն "... Լոկ անուն Դաւիթ եւեթ քահանայ„ յիշատակելով նաեւ հօրն Տէր Յովհաննէսին ու մօրն Բառոյին անունն: Իսկ գրչութեան թուականը կը յայտնէ յաջորդ (261) էջին սկիզբն՝ իբրեւ Յիշատակարան Ախրապատինին գրուած ուղղագիծ ատամնաւորին վերջին տողն, որ է "(Ջ)Հայոց թիւն հազար երկհարիւր քսան եւ հինգն„: (= 1776:) — Բայց կարելի է որ այս՝ ոչ թէ մեր Ձեռագրին ընդօրինակութեան թուականն ըլլայ, այլ սկզբնագրին՝ յորմէ ընդօրինակած է Դաւիթ քահանայն, անփոփոխ պահելով եւ ճշդիւ օրինակելով հնոյն թուականն: — Գրչութեան տեղւոյն ոչ ուրեք յիշատակութիւն կայ:

Երկու օրինակ ունի Մատենադարանս Համառօտեալ խմբագրութենէն: Մին (Թ. 93) փայլուն թղթի վրայ գրուած՝ ութածալ միասիւն շատ ընտիր բոլորգիր է, ունենալով 429 էջ, որ մինչեւ 268որդ էջն միեւնոյն գրչութեամբ կը շարունակէ. իսկ անկէ մինչեւ վերջն (էջ 429) յառաջ կը տանի նօտրգիր՝ մաքուր եւ միակերպ գրչութեամբ: — Երկրորդն (Թ. 61, Բ.) թանձրկեկ թղթի վրայ գրուած՝ փոքր քառածալ երկսիւն նօտրգիր է, ոչ այնչափ ընտիր գրչութեամբ՝ այլ դիւրընթեռնլի: — Երկուքին բովանդակութիւնն յար եւ նման է: Ի բաց թողլով հեղինակին Յառաջաբանն, — ուստի եւ չյիշատակելով Ամիրտովլաթ անունն, որ ինչպէս գիտենք՝ Լիակատարին Յառաջաբանին մէջ կը գտնուի, — յառաջ կը բերեն նոյն խմբագրութեան սկզբնաւորութեան, Մարդակազմութեան եւ Ա. Բաժնին համառօտութիւնն (Թ. 93, էջ 1—105): Յետոյ Բ. Բաժինն լռութեամբ անցնելով, Ախրապատին մի կը կցեն Ամիրտովլաթայ անուամբ, որ աւելի է քան զնախընթաց մասն: (Թ. 93, էջ 105—135:) Ի վերջոյ կայ աղիւսակակերպ մաս մի: Երկու Ձագրք ալ՝ թէպէտ իսկզբան անթերի, ապա քանի մի տեղ պակաս թղթեր ունին, Թ. 93 հազիւ 9 թուղթ, իսկ Թ. 61, Բ. իբր 50 թուղթ. բայց երկուքին պակասորդքն փոխադարձաբար իրարմով կը լրանան: — Այս Համառօտեալ խմբագրութեանց եւ ոչ մին տեղեկութիւն կու տայ ընդօրինակութեան տեղւոյն եւ ժամանակին վրայ, եւ ոչ ուրեք յիշուած է անուն գրչին:

*Օգուտ բժշկութեան գրութենէն ըստ սովորութեան քանի մի օրինակ կը բերենք, եւ անդէն ի սկզբան երեք այնպիսի կտորներ կ՚առնունք՝ որք թէ ի Լիակատար թէ ի Համառօտեալ խմբագրութեան կը գտնուին[1], եւ որոց առաջին երկուք կան միանգամայն յայլ գրուածս եւս, որով հնար է թերեւս յիշեալ երկու խմբագրութեանց կապակցութիւնն իմանալ։*

---

[1] *Համառօտեալ խմբագրութենէն առնուած օրինակներն յառաջ կը բերենք ըստ ընթերցուածոյ* Թ. 93 *Ձռգրին. բայց ուր* Թ. 61, Բ. *Ձռգրին ընթերցուածն ուղղագոյն կը գտնենք՝ առաջնոյն կը փոխանակենք փակագծեալ։ Իսկ գրչասխալաց եւ աննշանակ տարբերութեանց, ինչպէս նաեւ միոյն կամ միւսոյն մէջ աւելի պակաս կտորներուն նկատմամբ կարեւոր չենք համարիր այսպիսի զգուշութիւն։ — Լիակատար խմբագրութենէն առեալ* Ա. Օրինակն՝ *Ամիրտովլաթ իւր Յառաջաբանէն եւ մատենին Նիւթոց Ցուցակէն անմիջապէս ետքը կը դնէ։ Համառօտեալ խմբագրութիւնն — որովհետեւ Յառաջաբանը դուրս թողած է — նոյն կտորով կը սկսի։ Իսկ Ասար Սեբաստացի նոյնն ի մէջ կը բերէ իւր բժշկարանին կարճառօտ Նախաշաւղէն ետեւ։ Ամենուն մէջ* Բ. Օրինակն *կից է* Ա.*ին։*

---

Ա.

Լիակատար խմբագրութիւն։

*Եւ այլ իմացիր որ զայս բժշկութիւնս պատեհ է որ ամենայն մարդ ուսանի, (զի) այն պատճառին համար՝ որ քան զայն փառաւոր ուսումն չկայ, որ հանապազ մարդոյն զառողջութիւն կուզէ։ Տէր Աստուած քան զմարդ փառաւոր եւ պատուական իրք չէ ստեղծի։ Եւ* գրած է ի հին իմաստասիրացն՝ թէ Մովսէս հիւանդացաւ, եւ եկեն նորա աշակերտքն եւ ասացին՝ թէ Դեղ արա քեզ։ Եւ նա ասաց՝ թէ Ով ինձ զայս հիւանդութիւնս եբեր, նա զդեղն եւ զարածումն այլ ինքն տայ։ Եւ յայն եղեւ ի վերայ՝ թէ Դեղ արա քեզ, զի դեղն այլ եւս իմ ստեղծել, եւ արածումն այլ իմ հրամանաւն է։ Եւ դեղ արա քեզ, եւ ես տամ զառողջութիւն ամենայն դեղոց, եւ ցաւոց դարմանն Աստուած է. ամենայն ցաւոց Աստուած դեղ է ստեղծել, զորդ զմահն՝ որ դեղ չկայ։

*Այլ ասացեր են բժշկապետքն՝ թէ բժշկութեան արուեստն օգուտ է անձինն, որպէս աղօթքն եւ ողորմութիւնն օգուտ է հոգւոյն։ Եւ այլ պատեհ այն է՝*

որ յառաջն մարդոյն անձն առողջ լինի եւ ապա աղօթէ առ Աստուած. եւ որ չլինի առողջ մարմնով՝ ոչ կարէ ծառայել Աստուծոյ հոգւով: Եւ այդ պատճառով այս բժշկութեան արուեստս պատուական եւ փառաւոր եղաւ:

Եւ գիտացիր որ առաջն այս ուսումն Հելլենացուց ելաւ, եւ յետոյ ուսան ի նոցանէ Հնդիկքն, եւ յետ այնոր ուսան Հոռմոց իմաստասէրքն: Եւ ի Հնդկաց մէջն այս ուսումն քիչ էր եւ նուազ եւ վատուժ, եւ շատ չարչարանօք ուսանէին. եւ բայց Հոռմոց իմաստասէրքն հեշտ արարին եւ աղէկ ուսան եւ ուսուցին ամենայն ազգին. եւ նոցա բնութիւնն աղէկ եւ նմանութիւն էր այս արուեստիս, եւ աղէկ կարդային եւ կատարէին:

### Համառօտութիւն խմբագրութեան:

#### Ի բուն խմբագրութենէն:

Գիտացիր որ յառաջն կու յիշեն զբժշկարանին զդառուին եւ այլ խօսք որ ասացին (առաջինքն) եւ վերջինք միաբան՝ թէ պատեհ է որ զայս բժշկութեան արուեստն ամենայն մարդ ուսանի, այն պատճառին՝ որ առաւելութիւն եւ փառք ունի ի յայլ ուսմանն ի վերայ, այնով որ մարդու առողջութեանն պահողն է. եւ արարիչն Աստուած քան զմարդն փառաւոր իրք չէ ստեղծեր: Որպէս ասէ Մովսէս ի յԱրարածսն՝ Թէ Արարչագործ մարդ ըստ պատկերի իւրում. եւ զմարդն պատկերակից արար Աստուած: Բայց այսպէս է՝ նա պատեհ է որ դեղ այլ առնեն: Եւ այլ ասցած է՝ թէ Որ չլինի առողջ մարմնով՝ ոչ կարէ ծառայել Աստուծոյ հոգով: Եւ այլ խօսքն որ հայրապետքն են գրել. եւ այլ՝ այս է քրիստոնէից եւ այլ

#### Ի բժշկարանէ Աստրոյ:

Գիտելի է զի ասացին բժշկապետքն առաջինքն եւ վերջինքն միաբան՝ թէ պատեհ է որ զայս բժշկութեան արուեստն ամենայն մարդ ուսանի եւ գիտենայ: Եւ այս՝ վասն այն պատճառին համար, որ այս բժշկութեան արուեստն աւելի առաւելութիւն եւ փառք ունի ի յայլ ուսմանց վերայ. եւ արարիչն Աստուած ի վերայ երկրի քան զմարդն փառաւոր իրք չէ ստեղծեր. որպէս Մարգարէն Մովսէս ի յԱրարածսն ասէ. Արարչագործ մարդ ըստ պատկերի իւրում: Ապա երբ այս այսպէս է՝ նա պատեհ է որ երբ տկարանայ մարդն՝ նա դեղ առնեն զօրանայ բնութիւնն, եւ ազատի մարդն ի հիւանդութենէ. զի գրեալ է (°) եթէ Որ ոչ իցէ առողջ մարմնով՝ ոչ կարէ ծառայել Աստուծոյ հոգով: Եւ այլ խօսքն որ հայրապետքն են առհմանել, եւ

աղգաց է ձեռն ընդունելի խօսք է, թէ մի ոմն որ առաջնորդ լինի կամ կրօնաւոր կամ պատարագող՝ պարտ է որ է յանցն եսլէ խոց կամ պակասութեան չլինայ, թէ հանց որ կենայ՝ ոչ ընդունի Տէր Աստուած զնա, որպէս չընդունեցաւ զպատարագն Կայենին։ Իսկ այն որ անասուն է՝ զխոսն Աստուած չէ ընդունել, եւ այն որ պատկերակից է Աստուծոյ՝ ո՛րպէս ընդունի Տէր Աստուած։

*(Նախընթաց եւ յաջորդ կտորներուն մէջ մուծած է համառօտեալ խմբագրութիւնն Նիւթոց Ցուցակին մի մասն։)*

*Այլ գիտացիր որ յառաջն այս ուսումն ի յազգաց Հելլենացւոց ի մէջն էր, եւ յետոյ ուսան Հընդիկքն, եւ զօրացաւ այս ուսումն ի Հնդուստան. եւ յետոյ առին զայս ուսումն Հռոմայեցոց իմաստասէրքն եւ հեշտեցուցին. եւ յետոյ առին Պարսիկք եւ այլ հեշտ արին։*

այս է քրիստոնէից եւ է յայտ-աղգեաց ձեռն ընդունելի խօսք է, զի թէ մի ոմն որ աառաջնորդ լինի կամ քահանայ կամ պատարագող. նա պարտ է որ է յանցն խոց կամ այլ ցեղ հիւանդութեան չլինենայ. եւ թէ հանց լինի որ անենայ արարիչ՝ նա չէ ընդունելի առաջի Աստուծոյ, որպէս ոչ եղեւ ընդունելի պատարագն Կայենին։ Եւ այլ՝ չէ երբ այն որ անասունն է՝ զխոսն չէ ընդունել արարիչն Աստուած, այլ այն որ բանական է, եւ պատկերակից Աստուծոյ անուանի՝ ո՛րպէս պէտք որ ընդունի զնոսա։ . . .

*Գիտելի է, եղբայր, որ այս ուսումն յառաջն ի Հելլենացոց մէջն էր, եւ յետոյ ուսան ի Նոցանէ Հնդիկքն, եւ զօրացաւ այս արուեստն ի Նոցա մէջն։ Նմանապէս եւ Պարսիկքն արարին։ Եւ յետոյ առին Հռոմայեցիքն եւ պարզ մեկնութեամբ հեշտացուցին զամենայն բան։*

## Բ.

### Լիակատար խմբագրութիւն։

*Իսկ թագաւորաց եւ մեծունաց պատեհ է որ իմաստուն եւ ճարտար արուեստաւոր ի մօտն պահէ. այնոր համար որ յորժամ պիտենայ՝ տեղացմն այլ չի փնտռտեն, կամ այլ երկրէ բերեն. եւ հանապազ մարդն առողջ չի կենար։ Իսկ դարձեալ ասացին իմաստասէրքն՝ թէ թագաւորաց սահմանքն է՝ որ զօրք կավուն ժողովեն, եւ տուն շինեն եւ ի մէջն դնեն զուլեֆնին եւ պահեն այն աւուրն համար՝ որ թէ չարկամն յայտնի դիհացմն՝ նա բանան զայն տունն որ ուլեֆն կայ ի ներս, եւ հանեն զուլեֆն եւ բաժնեն հեծելին. թէ չարկամ չկենայ՝ այն ուլեֆնին*

մնայ ի այն տունն, եւ հոմոլոյ այն ոլքհներուն տեսնուլ պէտք է եւ պահել այն աւուրն յորում պիտոյ լինի:

Եւ հաքիմն այլ կու պիտի որ ուսումն եւ իմաստութիւն ունենայ եւ ճարտար լինենայ ի յիր արուեստն, եւ գուլն եւ վատուժ եւ ննջաւոր եւ տխամիտ չի լինայ: Շատ գրեանք լինի տեսել եւ ի վարպետէ կարդացել, եւ իր մտացն շատ ուսածումն լինի փորձել. եւ բարեմիտ եւ խրատատու լինայ, եւ կծնի եւ գողի եւ գանձասէր եւ փոմոհէ չի լինի, եւ աղքատաց իրք չքննէ. եւ Աստուծոյ սիրոյն համար դեղ տանէ: Եւ թէ այսպէս որ գրեցի՝ չի լինի եւ հակառակն լինի, լաւն այն է՝ որ զայնպիսի բժիշկն չի տանին առ հիւանդն եւ դեղ չառնէ հիւանդին, այն պատճառին համար՝ որ մարդն քաղաքմն է, եւ բնութիւնն թագաւոր է քաղաքին, եւ ցաւն հիւանդին որպէս չարկամն է քաղաքին, եւ ժիր կուզէ որ զքաղաքն տիրէ, զի դեղուն բնութիւնն զէտ ուժհ է, որ (՚) կռվուն ժամն, հոքիմն որպէս ուժհոփոր է: Բայց կու պիտի որ աղէկ ճարտար եւ ալիկ լինայ եւ գիտուն, եւ զատեննն աչէ, յորժամ թագաւորին կուլոյ ժամն ինչ կու պիտի՝ յիմանայ: Եւ թէ չարկամն ի թագաւորէն հեռի լինի եւ թագաւորն ուժհ ուզէ՝ պատեհ է որ ուժհոփոյն նետ եւ աղեղն տայ. թէ չարկամն այլ ի մօտի գայ՝ բռւումբ տայ, թէ հանց որ ի թագաւորն կցի՝ նա թուր տայ: Թէ այսպէս չանէ ուլհոփոյն՝ զհակառակն անէ, եւ նոյնէ կռվոյն աւերի եւ չարկամն յաղթէ զթագաւորն եւ զօրանայ: Եւ բժիշկն այսպէս պատեհ է որ զամէն իրք յատեննն տայ եւ իմաստութեամբ տանէ եւ ճարտարութեամբ, եւ զամենայն իրաց զատեննն տեսնու եւ այնէ: Հանց որ մէկումն որ լուծման դեղ պատեհ լինայ՝ նա վերաբերութեան դեղ չտայ, եւ յորժամ գարէջուր պատեհ լինի՝ մուղավլարոյ չտայ. եւ զինչ որ հիւանդին տալու է՝ ատեննն տայ եւ ի վերայ ուժին եւ ի վերայ հիւանդին տայ, եւ թէ հանց որ հակառակն անէ՝ աւերէ զխոփէքն եւ զբնութիւնն, ցաւն աւելանայ, եւ հիւանդին մեռնելուն նոփէքն ի բժշկին անգիտութենէն լինայ: Բայց բժիշկն կու պիտի որ գիտուն եւ իմաստուն (լինի) եւ հանց՝ որ թագաւորն զնորա խօսքն ընդունի: Եւ յորժամ թագաւորն կերակուրն ուտէ՝ նա բժիշկն ի խէչն լինայ եւ աչէ ի կերակուրն, եւ նստի ի մօտն, թէ կերակուրն վնասակար եւ զէնարար լինի իրք, որ անկից զեն հանի թագաւորին՝ նա չթողու որ ուտէ, այնոր համար՝ որ թագաւորաց եւ մեծունեաց չարկամն շատ է: . . .

Համառօտեալ խմբագրութեան։

Ի բուն խմբագրութենէն։

Պատեհ է որ մեծ թագաւորացն ի խէչ աղէկ վարպետ եւ իմաստուն եւ գիտուն հաքէմ կենայ, յորժամ որ օր մի թագաւորին հիւանդութիւն դիպի՝ նա չերթան ի յայլ տեղաց բերեն. այնոր համար որ մարդոյն բնութիւն ի ժիր աւողջ չի լինիր։ Որպէս որ թագաւորաց սահմանք է՝ որ սլէհ չինեն եւ դնեն ի խազնան, որ օր մի թէ չարկամ գայ՝ նա հանեն զայն սլէհնին ի խազնայէն եւ բաժնեն հեծելին եւ յաղթեն զչարկամն, եւ թէ չկենայ չարկամ՝ նա ի խազնան դնեն եւ պահեն։ Նոյնպէս եւ հաքէմն այլ պիտի որ ի յառողջութեան պահեն՝ այն աւուրն համար որ պիտի գայ։ Եւ բժիշկն ալ պիտի որ իմաստուն լինի եւ գիտուն լինի, եւ յուլ չլինի եւ սուտզրուց չլինի. (եւ վարպետի աշակերտ լինի եւ շատ գրեանք կարդացեր եւ շատ Բուքրատայոյ գիտել եւ խելօք խրատատու լինել եւ փոմահէ չլինել։) Եւ թէ այսպէս չլինի զոր ասացի՝ նա լաւն այն է որ զինքն ի հիւանդն ի խէչ չտանին եւ նորա դեղ չառնէ։ Այնոր համար՝ որ մարդուն անձն որպէս քաղաքն է, եւ բնութիւնն թագաւոր է, եւ հիւանդութիւն չարկամ է այս քաղաքիս, որ կու ջանայ որ աւիրէ զքաղաքս, եւ դեղերն որպէս

Ի Բժշկարանէ Ասորւոյ։

Բայց գիտելի է զի պատեհ է որ ի թագաւորաց եւ ի մեծամեծաց մօտն լաւ գիտուն եւ արուեստիւ հանճարեղ բժիշկք կենան. զի յորժամ պատահի որ թագաւորին հիւանդութիւն դիպի՝ նա չը անճարակին գնալու յայլ տեղաց բժիշկ բերելու։ Եւ այս՝ անոր համար որ մարդուն բնութիւնն ի ժիր աւողջ չի լինիր։ Եւ օրինակ քեզ. որպէս որ թագաւորաց սահմանք է որ սլէհ չինեն եւ դնեն ի խազինան, որ թէ պատահի որ չարկամ գայ՝ նա հանեն զայն սլէհն ի խազնայէն եւ բաժանեն զայն հեծելին, եւ այնիւ պատերազմին ընդ չարկամն եւ յաղթեն զնա, եւ եթէ չարկամ չկենայ՝ նա դնեն ի խազինան եւ պահեն։ Այսպէս պարտ է եւ զբժիշկն ի յառողջութեան ժամանակն պահել, որ այն աւուրն ի պէտք գայ։ Ապա պարտ է բժշկին որ իմաստուն լինի եւ գիտուն, եւ յուլ ու ծուլ չըլինի, եւ պարծենկոտ եւ սուտզրուց չըլինի, եւ վարպետի աշակերտութիւն արել լինի, եւ աղէկ ուսել լինի, եւ շատ գրեանք կարդացել լինի, եւ շատ բաներ լինի փորձել եւ ի գործ ածել, եւ ինքն իւր մտացն այլ շատ բաներ հանճարելու կարող լինենայ։ Եւ այլ պարտ է բժշկին որ քաղ-

ուլէհ է՝ որ ի կռվուն ժամն պիտենայ, եւ հօֆէմն որպէս ուլէհփար է։ Բայց պիտի որ ուլէհփարն գիտուն լինի զպէտքն որպէս տան զուլէհն. յորժամ թագաւորն ուլէհ ուզէ՝ զպէտքն տայ, եւ աշէ զչարկամն, թէ հեռուն է՝ աղեղ եւ նետ տայ թագաւորին, եւ թէ այլ ի մօտիկ գայ՝ ըռումբ տայ. եւ թէ այլ ի մօտիկ գայ՝ թուր տայ։ Եւ թէ այսպէս չառնէ՝ նա գիտացիր որ չարկամն զթագաւորն յաղթէ եւ զքաղաքն կաւիրէ. եւ քաղաքին առնուելուն պատճառն ի ուլէհփարին անգիտութենէ լինի։ Բայց հօֆէմն հանց պիտի որ աղուոր իմանայ զհիւանդն, որ յայնժամ որ հիւանդին լուծման դեղ տայ՝ նա որ պատեհ լինի՝ նա փսխելու դեղ չտայ, եւ յորժամ շարապ պատեհ լինի՝ գարէջուր չտայ։ . . . Եւ զինչ որ հիւանդին տալու է՝ ատենն տայ, եւ զկերակուրն յատենն զպէտքն տայ։ Եւ թէ այսպէս որ ասացի չլինի՝ նա գիտացիր որ հիւանդութիւն կու յաղթէ զբնութիւն, եւ մեռնելու պատճառն ի հօֆէմին անգիտութենէ լինի։ Եւ գիտացիր որ հօֆէմն երբ իմաստուն եւ արուեստաւոր լինի, հանց որ թագաւորին խրատատու լինի. (եւ յորժամ թագաւորն ի կերակուր նստի՝ նա հէֆէմն ի խէչն նստի.) եւ յորժամ կերակուր բերեն՝ հանց որ ի յայն կերակուրն մահա-ցրասիրտ լինայ եւ ողորմածբարք, եւ խրատատու լինի եւ աղքատասէր, եւ զպէտ այնելն ի սրտանց եւ ուղորդ առնէ. եւ վասն ընչից փոմահէ չըլինի։ Եւ թէ այսպէս չլինի զոր ասացաք նա լաւ է այնպիսոյն որ բժշկութիւն չայնէ։ Եւ գիտելի է՝ զի բնութիւն մարդոյն որպէս քաղաք մի է՝ որ ունենայ չորս դուռն, որ է չորս մաղձն. եւ կենդանութիւնն որպէս թագաւոր է՝ որ նստել է ի յայն քաղաքն. իսկ հիւանդութիւնն չարկամ է այս քաղաքիս եւ կու ջանայ որ աւերէ զքաղաքն. եւ դեղերն որպէս ուլէհն որ ի կռվու ժամն պիտենան, եւ բժիշկն որպէս ուլէհփար է։ Բայց պիտի որ ուլէհփարն գիտուն լինի, որ տայ զպիտոյսն ի ժամանակին. զի յորժամ թագաւորն ուլէհն ուզէ՝ նա տեսնու ուլէհփարն թէ չարկամն հեռու է՝ նա աղեղ եւ նետ տայ, եւ թէ այլ մօտիկ է՝ նա ուռումբ տայ, եւ թէ խիստ ի մօտիկ գայ՝ նա թուր տայ։ Եւ թէ այսպէս չառնէ ուլէհփարն զոր ասացաք եւ զհակառակն տայ՝ նա չարկամն զթագաւորն կու յաղթէ եւ զքաղաքն կու աւերէ. եւ քաղաքին աւերելուն պատճառն՝ ի ուլէհփարին անգիտութենէն կու լինի։ Այսպէս բժշկին այլ հանց պարտ է որ աղուոր իմանայ զհիւանդին պէտքն. որ երբ լուծման դեղ տալ պատեհ լինի՝ նա գարէջուր

ցու դեղ կենայ՝ ճանաչէ եւ չթաղու որ ուտէ թագաւորն։

Մեր հմուտ թղթակից Տր. Վահրամ Յ. Թորգոմեանի՝ փարիզու Ազգային Մատենադարանի հայերէն Ձեռագիրներէն քաղելով հրատարակած բժշկական գրուածոց մէջ՝ կայ նաեւ ընդարձակ Հատուած մի Խրատք յաղագս սննդեան մանկանց վերնագրով։ (Տես Արեւելք, Թ. 1929, Յունիս 21, 1890։) Այս Հատուած ճիշդ միեւնոյն կապակցութեան մէջ է Ամիրտովլաթայ Լիակատար եւ Համառօտեալ խմբագրութեանց հետ՝ ինչ կապակցութիւն որ կայ ատոնց եւ Ասարայ բժշկարանէն բերուած երկու օրինակներուն մէջ։ — Պատշաճ չհամարեցանք զնոյն Հատուած եւս աստ յաւելուլ, որովհետեւ մեր երեք Ձռգրց այնմ համապատասխանող կտորները արդէն հաղորդած ենք յիշեալ մատենագէտ Թղթակցիս։

չտայ, եւ որոյ գարեջուր պատեհ լինի՝ նա մուղլօարոյ չտայ. եւ ամենայն ինչ որ ի հիւանդն ի պէտք է տայու՝ ի յատէնն տայ, եթէ կերակուր եւ եթէ ըմպելի, եւ զամէնն շաքրով խառնէ եւ տայ։ Եւ եթէ այսպէս չառնէ՝ նա հիւանդութիւնն կու զօրանայ եւ կու յաղթէ զբնութիւնն եւ մահ ածէ մարդոյն. եւ հիւանդին մեռնելուն պատճառն ի բժշկին անգիտութենէն լինի։ Եւ այլ գիտելի է՝ զի երբ բժիշկն իմաստուն լինի թագաւորին, եւ յորժամ թագաւորն ի կերակուր նստի՝ նա հայի եւ տեսնու որ թէ ի կերակուրն մահու դեղ կենայ՝ նա ճանաչէ եւ չի թաղուր ի յայն կերակրէն ուտէ։

Ի մէջ բերեալ օրինակաց առաջինն մտադրութեան արժանի է, այնու՝ զի Լիակատար խմբագրութեան մէջ Ամիրտովլաթայ, անշուշտ ըստ Արաբացւոց կրօնական աւանդութեան, ի հայերէն թարգմանածն՝ Համառօտելոյն եւ Ասարայ մէջ քրիստոնէական գաղափարաց դարձուած է։ Զայս ակնյայտնի կը ցուցընեն նոյն օրինակին սկիզբները տեսնուած նոտրգիր տողերն։ Այս տողերն՝ ինչպէս նաեւ յիշեալ երկու ընթերցուածոց շարունակութեան նոտրգիր յաւելուածն՝ զգուշաւոր եւ միանգամայն գրաբարի եւ Կանոնականաց ու Ս. Գրոց հմուտ Եկեղեցականի ձեռք գուշակել կու տան։ Բաց յայլոց՝ Արտօրամ+ կոչուածն Ծննդոց գրքին՝ ապացոյց է գրաբարի հմտութեան, իսկ Կանոնականաց եւ Ս. Գրոց հմտութեան ցոյց կարող ենք իրաւամբք համարիլ նոտրգիր յաւելուածն։

Երկրորդ օրինակն այսպիսի ծանրակշռութիւն չունի, որովհետեւ երկու խմբագրութեանց եւ Ասարայ ընթերցուածոյն մէջ ըստ իմաստին տարբերութիւն չկայ, եւ ոչ իսկ ըստ լեզուին նշանակութեան արժանի խտիր կը գտնուի։ Ընդհանրապէս խօսելով՝ այս համեմատութիւնը պահուած է Լիակատար եւ Համառօտեալ խմբագրութեանց ընթերցուածոյն մէջ։ — Ասացելոյս ի հաստատութիւն՝ դնենք աստ երրորդ օրինակ մ'ալ, ուր պայծառ կը տեսնուի նոյն երկու խմբագրութեանց համեմատութիւնն։

## Գ·

Լիակատար խմբագրութիւն։

Սինային որդին ասէ՝ թէ Պօհրան ասելն՝ Ասորոց բառ է, գուշակէ դատաստան երթալ բնութիւնն եւ հիւանդութիւնն։ — Յիսէն ասէ՝ թէ Մարդն որպէս քաղաքի օրինակ է, եւ բնութիւնն թագաւոր է այս քաղաքիս։ Չարքն եւ չարկամքն՝ ցաւքն են, եւ կու ջանան հանապազ որ ի քաղաքն մտնեն, եւ այնժամ բնութիւնն եւ չարկամքն յիրար կու փակչեն, եւ չարկամքն կուզէ որ յաղթէ, եւ տաքութիւնն յաւելի եւ զօրաւոր լինենայ ի մէկ ժամն, եւ թէ պակասէ երկու եւ երեք ժամն՝ յաղթէ, եւ բնութիւնն վատուժի եւ տահրկուի. եւ յանժամ մարդն մեռանի։ Յայնժամ որ բնութեան եւ ի ցաւոյն մէջն այս կռիւս լինի՝ նա յայնժամ հիւանդին խիստ ծանրութիւն եւ վատու-

Համառօտեալ խմբագրութիւն։

Ասէ Սինեայ որդին՝ թէ Պահրան ասելն ասորի լեզու է, եւ ասել կու լինի թէ այն պահրանն կռիւ է, որ բնութիւնն եւ հիւանդութիւնն կու կռուին։ — Ասէ Ցեսու բժիշկն՝ թէ քաղաքմն է (մարդն), եւ բնութիւնն թագաւոր է, եւ հիւանդութիւնն չարկամ է քաղաքի՝ որ եկել է. եւ բնութիւնն կուզէ որ զչարկամն ի դուրս վարէ։ Եւ թէ տաքութիւնն յաւելի լինի մէկ տարպայ եւ թէ ուժն վատուժնայ երկու երեք տարպայ, եւ թէ չկարէ տահրկել զչարկամն եւ յաւելի լինի, եւ բնութիւնն պակաս լինի եւ յոգնիլ եւ վատուժնայ, զմարդն պօհրանն կու սպանէ։ Եւ յայնժամ որ բնութեանն եւ հիւանդութեանն մէջն այս կռիւս ընկնի՝ նա կու պիտի որ հիւանդն յանժամն խիստ

ժուլթիւն դիպի. եւ այս առենին բժշկապետքն պոհրան ասեն :

ծանր եւ վատուժ լինի, եւ յայն ժամուն՝ հոփէմնին պահրան ասեն ստոյգ եւ ճշմարիտ :

Ամիրտովլաթայ Օգուտ Բժշկութեան Ա. Բաժնէն առնուած երեք Օրինակաց վրայ կը յաւելունք այլ երկու Օրինակ նոյն մատենին Բ. Բաժնէն: Ասարայ բժշկարանին մէջ (բաց յայլոց) այս երկու Օրինակաց համապատասխանող կտորներ գտնուելով՝ զանոնք ալ առ երի կը դնենք :

Աւելորդ է գրուցել թէ Ամիրտովլաթայ Հատածներն շատ աւելի ընդարձակ են քան զԱսարայն, որ միեւնոյն Հատածները գրեթէ ամէն տեղ ըստ մասնէ միայն ի մէջ կը բերէ, կը համառօտէ, երբեմն այլեւայլ մասունքն ի մի կը ձուլէ, եւ հազիւ աստ անդ մանր յաւելուածներ կը մուծանէ, որ Ամիրտովլաթայ գէթ միեւնոյն Հատածին մէջ չեն տեսնուիր:

Դ.

Ըստ Բ. Բաժնի Ամիրտովլաթայ:

Գլխացաւութիւն որ ստամոքին վատուժութենէն լինի . . . (էջ 66, ա.) նշան . . . այն է՝ որ վաղվնէ (Երբ) անօթի լինի՝ ցաւի, եւ յորժամ քիչ ուտէ՝ ցաւն խաղի եւ յորժամ շատ ուտէ՝ պուխարն[1] ի գլուխն ելնէ. եւ ցաւի գլուխն: (Էջ 66, բ:) . . . Էհանան ասէ՝ թէ Որ ստամոքին տաքութիւնն ի սաֆրայէ լինի, նա վերաբերութիւն տուր անել. եւ սրբէ զստամոքն այս կերպով: Առ քասնու հունդ եւ քշուդրի հունդ եւ շահթարայ եւ վարդ՝ տասն տասն դրամ. զամէնն եփէ չորս լիտր ջրով եւ քացախ երկու լիտր, եփէ որ կէսն

Ըստ Բժշկարանին Ասարայ:

(Հտծ. Բ.) Գլխացաւութիւն որ ի ստամոքին վատութենէն լինի, նշանն այն է՝ որ վաղվնէն երբ անօթի լինի՝ ցաւի, եւ երբ քիչ մի հաց ուտէ՝ չցաւի, եւ երբ շատ ուտէ՝ բուխարն[1] ի գլուխն ելնէ, ցաւի: — Եհաննա ասէ՝ Թէ գլխացաւութիւն որ ի ստամոքին տաքութենէն լինի եւ կամ ի սաֆրայէ՝ նա վերաբերութիւն տուր այնել, եւ սրբէ զստամոքն այս կերպիւս: Առ քասնու հունդ եւ քշուդրի եւ շահթարայ չոր եւ վարդ՝ տասն տասն դրամ. զամէնդ եփէ չորս լիտր ջրով եւ երկու լիտր քացխով՝ մինչեւ կէսն մնայ. եւ առ

ձնայ. եւ առ երեք լիտր շաքար ի վերայ լից, եւ տուր ի ժամուն հնգետասան դրամ: Եւ զայս դիմէտն ի վերայ գլխուն դիր: Առ վարդ եւ սանտալ եւ ակակիա եւ հայկաւ եւ հազազ. զամէնն ծեծէ եւ շաղվէ մրտի ջրով, եւ դիմէտ արա եւ դիր ի վերայ գլխուն: Եւ անօթեց սերկեւիլ ուտէ եւ երկունուան ջուր: (ԷՋ 66, ա:)

. . . Մարճուէն ասէ. թէ ստամոքին վատուժութիւնն ի կերակուր չհալելուն լինի՝ նա տուր զխընծորին ճուարիշն՝ այս կերպովս: Առ քաղցր եւ թըթու խնծոր հատուն. եւ կեղեւած եւ մէջն հանած՝ մէկ լիտր, եւ գինով եփէ, եւ մէկ լիտր մեղր խառնէ եւ եփէ որ կապի: Եւ առ պեղպեղ եւ դառապղպեղ եւ ղարանֆուլ եւ սունպուլ՝ երկու երկու դրամ. զամէնն ծեծէ եւ խառնէ ի մեղր եւ եփէ որ կապի, եւ լից ի մարմարիոնի սալին որ տապկի, եւ կտրատէ, եւ տուր ի ժամուն չորս դրամ: Եւ զստամոքն զօրացընէ եւ զկերակուրն հալէ, եւ զ(ը)ղեղն յուժովցնէ եւ զստամոքին զթուլութիւն եւ զվատուժութիւնն տանի: Եւ այս ի յաղէկ ճուարիշներուն է: (ԷՋ 66, բ:)

երեք լիտր շաքար՝ լից ի վերայ, եւ տուր ժամուն հընգետասան դրամ: Եւ արա զայս տիմէտս եւ ի վերայ գլխոյն դիր: Առ վարդ եւ սանդալ եւ աղխաղայ եւ հայկաւ եւ հազազ. աղա եւ շաղվէ մրտի ջրով, եւ գլխուն վերայ դիր. եւ թող ուտէ քաղցր եւ թթու նուռն:

[1] Հարկ չենք համարիր այս օրինակաց օտար բառերը նօտրգրով նշանակել:

. . . Մարուճվէն ասէ՝ թէ Ստամոքին վատուժութիւնն որ ի կերակուր չհալելուն լինի՝ տուր զխնծորին ճուարիշն, որ է այս: Առ քաղցր խնծոր եւ թթու զհատուննն եւ կեղեւէ եւ զմէջն հան, եւ առ (Գեղր) մէկ լիտր եւ խառնէ եւ եփէ որ կապի, եւ առ պղպեղ ի տարիպղպեղ եւ ղարանֆուլ եւ սումփուլ՝ երկու երկու դրամ. աղա եւ մաղէ եւ ի մեղրն լից եւ եփէ որ կապի, եւ լից ի վերայ մարմարիոնի սալի եւ կտրատէ. եւ տուր ժամուն չորս դրամ: Զստամոքն զօրացնէ եւ զստամոքին վատուժութիւնն տանի եւ զ(ը)ղեղն ուժովցնէ:

Ե.

Որ ի քուն չլինի եւ (Հտծ. ՀԷ.) Վասն վասվասս որ է տքնութեան . . . : Մարթիւն . . . : Մարճուէն ճուան ասէ՝ թէ Լուծէ

ասէ՝ թէ Լուծէ զփորն դամոնջրով եւ վարդի շարապով, եւ պաղ ջուր լեց ի գլուխն, եւ մանուշկի եւ դդմի ձէթ օծէ ի գլուխն, եւ տուր ազոխի եւ դդմի ապուր եւ տուր հազար, եւ զինչ որ տաս՝ տուր նշի ձիթով, եւ տուր զմանուշակն անուցած։ Եւ խիարի կտի ձէթն օծէ ի գլուխն եւ կաթեցու ի քիթն, որ գիճացնէ եւ քուն բերէ. եւ թէ ի յայս ձիթերս դդմի կուտ՝ հազրի հունդ խառնես՝ ուժով լինայ։ Եւ բնաւ զքաֆուրն ի գործ մի արկաներ, այնոր համար՝ որ չորութիւն յաւելցնէ եւ զքունն տանի։ . . . (Էջ 76, ա։)

զփորն դամոնջրով եւ վարդի շարապով եւ մանուշակի. եւ օծէ ի գլուխն դդմի ձէթ, եւ տուր ազոխով եւ դդմով ապուր։ Եւ զամենայն որ տաս՝ նշի ձիթով տուր։ Եւ խիարի կտի ձէթ օծէ ի գլուխն եւ ի քիթն կաթեցո՝ որ գիջացնէ եւ քուն բերէ։ Եւ բնաւ զքաֆուրն ի գործ մի արկաներ, զի զչորութիւն կու յաւելցնէ եւ զքունն կու տանի։

Ստածումն որ ի հովէ լինի։ Ըհանան ասէ՝ թէ Յառաջն յասփրիմներուն ջուրն տուր եւ զանձն լուա։ Եւ թէ խաշխշի կեղեւ եւ պապունած եւ աքլիլմէլիք եփես ջրով, եւ վաղն եւ յիրիկունն ի վերայ գլխուն լնուս, որ զ(ը)ղեղն ուժովցնէ։ Եւ մանուշկի եւ նոնոֆարի եւ դդմի ձէթ եւ աղջկմոր կաթն յիրար խառնէ եւ ի քիթն կաթեցու եւ ի գլուխն օծէ, որ ի քուն լինի եւ գիճանայ ըղեղն եւ ուժովնայ, եւ անօթեց գարեջուր տուր։ (Էջ 76, բ։)

Արճիճանիսն ասէ. Թէ բնութիւնն կապ լինի՝ լուծէ հոկնայով։ Եւ տուր մաշ դդմով եփած, եւ հաւկթի դեղնուց թերխորով եւ դալար մանտր ձկներ,

Իհաննայ ասէ՝ թէ Երբ ի հովութենէ լինի՝ յառաջն ասփրիմներուն ջուրն առ եւ զանձն լուա։ Եւ թէ խաշխաշի կեղեւ եւ պապունած եւ աքլըլմէլիք եփեա ջրով, եւ վաղն եւ իրիկունն ի գլուխն լնեա՝ զ(ը)ղեղն ուժովցնէ։ Եւ զվերոյասաց ձիթերն օծ ի գլուխն։ Եւ թէ բնութիւնն կապ լինի՝ լուծէ։ Եւ տուր մաշ դդմով եփած եւ հաւկթի դեղնուց թերխորով եւ դալար եւ մանտր ձուկն եւ գինի ջրախառն։ Եւ հանապազ ի բաղանիս մտօ, ապա շըյտ ելնէ։ Եւ կերակուր տուր զգիջացնող իրվէն, եւ յամենայն աղի եւ ի թթու իրվնոց պատրաստ կալ, եւ օգտէ։ Եւ թէ ցաւն խիստ լինի եւ այս դեղ(երս) չօգտեն,

եւ գինի ջրախառն խմէ։ (Էջ 76, բ։)

Զաքարիայի որդին առէ. . . . Եւ թէ ցաւն խիստ լինի եւ այս դեղերս չօգտէ՝ դու տուր մէկ կուտ աֆիոն, որ քուն բերէ։ Եւ զայն կերակուրքն ուտէ՝ որ զանձն գիճացնէ. եւ հանապաղ ի բաղնիս մուտ, եւ շուտ ել։ Եւ ամենայն թթուէ եւ ի աղէ պատրաստ կացիր, որ շուտով օգտէ դեղին զօրութիւնն։ Էջ 76, բ։)

դու տուր մէկ կուտ աֆիոն որ ուտէ, եւ հանապազ աֆիոն հոտայ, որ քուն բերէ։ Եւ զգիջացնող ձիթերն ի գլուխն եւ ի քներն օծեն։

Դիտմամբ յառաջ բերինք նախընթաց հինգ համեմատական Օրինակներն, որպէս զի մտադրութիւն շարժենք քանի մի խնդիրներու վրայ, յորոց ոմանք կը վերաբերին երեք առաջին Օրինակաց, ոմանք՝ վերջին երկուց։ Առաջնոց վերաբերեալքն են՝ խնդիր ծագման Համառօտեալ խմբագրութեան, եւ խնդիր Նոյնութեան՝ Ասարայ բժշկարանին սկիզբները գտնուող քանի մի էջերուն՝ այն խմբագրութեան հետ։ Արդ՝ թէպէտ սոնց լուծումն ալ կրնայ մեզմէ սպասուիլ, սակայն որովհետեւ այս երկու խնդիրք՝ Մասնագիտաց համար միայն կարեւորութիւն ունին, եւ սոնց մէջ մտնելն՝ մեր յատուկ Նպատակէն շատ հեռու կը տանէր զմեզ, մանաւանդ թէ բոլորովին դուրս կը հանէր, — ակամայ իսկ կը ստիպուինք շատանալ խնդիրներն յերեւան հանելով, եւ լուծումն այնպիսեաց թող տալ՝ որոց առաւելապէս կը պատշաճին։

Ընդ հակառակն կ'ուզենք լիով զբաղիլ հետազօտութեամբ երկու յետին Օրինակաց, որք մեծ ծանրակշռութիւն ունին թէ՛ մեր՝ այժմինքն լեզուագիտական՝ տեսակիտէն, եւ թէ՛ մասնագիտական կամ պատմական տեսակիտէն։

Ամէն ընթերցող՝ բաւական որ բանասիրական հայեցուածով իրարու հետ համեմատէ Օգտի բժշկութեան Ա. եւ Բ. Բաժնէն բերուած այս սակաւ Օրինակներն, պէտք է որ տեսնէ թէ ամենայն ուրեք ճիշդ միեւնոյն լեզուաւ գրուած չեն։ Առաջին երեք (Ա. Բ. Գ.) Օրինակաց՝ յատկապէս Բ.

Օրինակին լեզուն շատ աւելի նորութեան եւ ստորին ռամկականութեան յատկանիշ կը կրէ, քան թէ վերջին երկու (Դ. Ե.) Օրինակացն, որք՝ ընդհանրապէս խօսելով՝ առաջին երեք Օրինակաց ստորին ռամկականութենէն ըստ բաւականին ազատ են, եւ ոչ սակաւ նմանութիւն ունին Հայերէն հնագոյն բժշկական գրուածոց։

Թիւրիմացութեան առիթ չտալու համար՝ աստէն ի սկզբանս մտադիր կ'ընենք որ Ա. եւ Բ. Բաժնին լեզուական տարբերութիւնն որ նշանակեցինք, կը հայի գլխաւորաբար Բ. Բաժնին այն մասանց՝ զոր Ամիրտովլաթ կը բերէ յանուանէ յիշատակելով իւրաքանչիւրին սկիզբն արաբական (արաբացի կամ արաբագիր) հեղինակներն, որոցմէ նոյն մասն առած է։ Այսպիսի մասանց համար է զրուցածնիս՝ թէ ոչ սակաւ նմանութիւն ունին Հայերէն հնագոյն բժշկական գրուածոց։ Վասն զի այն մասերն՝ որ առանց անուան օտար հեղինակի՝ կը տեսնուին նոյն Բ. Բաժնին մէջ, եւ կ'երեւայ թէ Ամիրտովլաթ իւր անձնական փորձերուն հետեւողութեամբ ինքնին գրած է, շատ անգամ մասամբ իւիք Ա. Բաժնին լեզուն կը յիշեցընեն։ — Այս վերջիններէն կը համարինք յաջորդ Օրինակն։

## Զ.

### Ըստ Բ. Բաժնի Ամիրտովլաթայ։

Արծուիք՝ որ ի հետն ջերմն լինի, բնաւ չէ պատեհ որ տաք իրք տաս ո՛չ ի դուրսէ եւ ո՛չ ի ներսէ։ . . . Այն դեղերն որ տաք առնէ եւ տաք մածուննի մի տալ, որ զջերմն կու յաւելցնէ եւ զանձն կու տաքցնէ։ Եւ արծուիք որ սուր ջերմերուն յետեւ լինայ, եւ լերդն ուռեց չի լինայ, դժար է այնոր համար՝ որ ո՛չ հովն կու օգնէ եւ ո՛չ տաքն. եւ թէ հով տաս՝ արծուիքն աւելնայ, եւ թէ տաք տաս՝ ջերմն

### Ըստ բժշկարանին Ասորւոյ։

Հատ. ԾԱ. Գիտացիր եւ զայս՝ զի արծուիք որ ի հետն ջերմն ունենայ, բնաւ չէ պատեհ որ տաք իրք տաս ո՛չ ի դուրսէ եւ ո՛չ ի ներսէ. զի զջերմն կու աւելցնէ եւ զանձն կու տաքցնէ։ Եւ արծուիք որ ի սուր ջերմերուն յետեւ լինի եւ լերդն ուռեց լինայ, դժար է անոր համար՝ որ ո՛չ հովն կու օգտէ եւ ո՛չ տաքն. զի թէ հով տաս՝ արծուիքն կու աւելնայ, եւ թէ տաք՝ ջերմն։ Եւ ճարն այն է՝ որ խառնուած տաս

ւելնայ։ Եւ թպտիր այն է որ խառնուած տաս զդեղերն. օգտէ եւ՝ աղէկ ստածուածն լինայ։ Եւ լինի որ ատեննին՝ տաք եւ ատեննին հով տաս, լաւ է. ո՛ր ցաւն որ յաւելի է՝ յառաջն այնոր պէտ արա, եւ յետեւ վատուժին պէտ արա։ Եւ այն խօսացն ականջ դիր՝ որ ասաց՝ եթէ Արծուիքն հանապազ տաք դեղեր տուր, լաւ է։ Եւ ես շատոք տեսայ՝ որ արծուիք եղաւ, եւ տաքով հովով ստածին, եւ ողջացաւ։ Եւ երկու ցեղ արծուիքն որ լինայ ի մարդն, ստածուածն այն է՝ որ բաղնեցէն ելնէ, եւ ի շող ճանապարհ երթայ, եւ շատ աշխատի՝ եւ շարժի. եւ ի ճանապարհն պաղ ջուր շատ խմէ։ Եւ մէկ այլ այն է՝ որ փորն շատ երթայ եւ փայծաղն ուռի, եւ քիչմն ջուր ի փորն մնայ եւ քամի առնէ։ Եւ այս ցաւուս դեղն դժար է։ (Էջ 172, բ։)

զդեղն։ Եւ տեսնուս թէ ո՛ր ցաւ յաւելի է՝ յառաջն այնոր պէտ այնես, եւ յետոյ վատուժին։ Եւ այսպէս երկդիմի ստածելն տեսայ որ շատոց օգտեց։

Իրերն այսպէս որոշելէն ետեւ, տեսնենք թէ ուստի՛ ծագած է այս տարբերութիւն։ Յառաջ քան զամենայն՝ հնար է ենթադրել թէ Ա. Բաժնին նորութիւնքն եւ ստորին ռամկականութիւնքն մասամբ իւիք մուտ գտած են ընդօրինակողաց միջոցաւ։ Այսպէս՝ ընդօրինակողք կրնան նկատուիլ իբրեւ մասնական՝ այլ ո՛չ իբրեւ բոլորական պատճառ. ապա թէ ոչ՝ անկարելի կ'ըլլար մեկնել նաեւ Բ. Բաժնին մէջ ալ անոնց չտեսնուիլը։

Դարձեալ՝ նոյնպիսի պատճառ կրնայ կարծուիլ զանազանութիւն նիւթոց երկուց բաժնից։ — Մեկնենք։ Ա. Բաժնին մէջ Ամիրտովլաթ ըստ մեծի մասին իւր ձեռնարկած գործոյն հանգամանքը կը ծանուցանէ, կերպ կերպ բարոյական եւ բժշկական խրատներ ու տեղեկութիւններ կու տայ, կենաց ամեն պարագայից մէջ առողջութիւնը պահպանելու միջոցները կը բացատրէ, մարդկային մարմնոյն կազմակերպութեան մասին աստուածային նախախնամութեան ցուցած իմաստութիւնը կը մեկնէ, որոց ամենն ալ իբրեւ ընտանեկան զրուցատրու-

թիւնք ըլլալով, բնականապէս այն կերպով գրելու էր՝ ինչպէս որ կը խօսէր: — Յայտնի է որ իբրեւ ռամկագիր հեղինակ՝ ըստ սովորութեան ամենայն ռամկագրաց՝ Ամիրտովլաթ եւս իր խօսած լեզուին մէջ գրաբար խառնած է:

Իսկ Բ. Բաժնին նիւթն որչափ տարբեր է: Այս բաժնին մէջ՝ յառաջ կը բերուին հիւանդութեանց պատճառներն ու նշանները, կը նշանակուին իւրաքանչիւրին ի դարման գործածուելու դեղորայք, նոյն դեղօրէից կազմութեան կամ բաղադրութեան կերպն, եւ այն՝ օտար անուանի բժշկապետաց ուսումնական ոճով գրուած խօսիւքն: Սովին հարկ էր որ ամէն հայ հեղինակ իւր յատուկ սովորական լեզուէն շեղելով, օտար հեղինակաց ոճն ի կիր արկանէր:

Բայց այս երկրորդ պատճառն եւս, որչափ եւ նախընթացէն աւելի ազդած համարուի երկու բաժնից լեզուական տարբերութեան վրայ, միշտ իբրեւ մասնական նկատուելու է. ուստի կը մնայ տակաւին լաւ ուսումնասիրել խնդիրն, եւ աւելի ընդհանուր ու բոլորական պատճառ գտնելու ջանալ:

Այլեւայլ ենթադրութեանց մէջ զոր հնար է մտածել այսպիսի ընդհանուր ու բոլորական պատճառ գտնելու համար, չէ՞ կրնար արդեօք մտածուիլ թէ գուցէ Ամիրտովլաթ Օգտի բժշկութեան Ա. Բաժինն, — ինչպէս նաեւ զԱնգիտաց անպէտն՝ որ լեզուի կողմանէ անկէ շատ չի տարբերիր, — գրած կամ թարգմանած է իւր յատուկ սովորական լեզուաւն. իսկ Բ. Բաժինը գրելու ժամանակ առաջի իւր ունեցած է հնագոյն հայ գրութիւններ եւ անոնց հետեւած, թէեւ այս վերջնոց մէջ ուրեք ուրեք իւր կողմանէ այնպիսի կտորներ ընդխառնելով, որք — ի վերջոյ յառաջ բերուած Զ. Օրինակին նման՝ — Ա. Բաժնին լեզուն կը յիշեցնեն: Ենթադրութեանս հաւանականութիւնը չի նուազիր այն պարագայիւ՝ որ յիշեալ հնագոյն հայ գրուա-

ծոց մէջ ալ աստ անդ իւր յատուկ լեզուին գոյնն ունեցող մասունք կը տեսնուին ։ Վասն զի զայսպիսիս հնար է կարծենք մեկնել իբրեւ ծագեալ վերագոյն յիշատակուած երկու մահական պատճառներէն եւ կամ նկատել իբրեւ հետեւանք իւր գրչին վարժութեան ։

Զայս ենթադրութիւն՝ ոչ թէ հաստատելով, այլ պարզապէս իբրեւ հնարաւոր անձնական մտածմունք՝ կ'ենթարկենք հետազօտութեան հմտագունից, խնդրելով միայն որ ուշադրութիւն ընեն հետեւեալ խորհրդածութեան ։

Ամենեւին տարակուսի ներքեւ չ'իյնար թէ մնացած են ի հին ժամանակաց բժշկական հայերէն գրութիւնք, որոց անթերի Ձեռագիրքն այս կամ այն մատենադարանին մէջ՝ անյայտ ի մարդկանէ մնացած են՝ բազմադարեան փոշիներով ծածկեալ ։ Բայց անոնց՝ ներքին եւ ոչ երեւակայական՝ գոյութեան ապացոյցք եղող հատակոտորք մինչեւ ցմեզ հասած են, ոչ միայն միջին՝ այլ նաեւ նոր ժամանակաց իսկ բժշկական գրուածոց միջոցաւ ։

Առ այժմ կը շատանանք միակ օրինակ բերելով, որ կը գտնուի թէ Ամիրտովլաթայ եւ թէ Ասարայ աշխատասիրութեանց մէջ. բայց այնպիսի հնութեան կնիք կը կրէ, այնչափ վայելուչ լեզուաւ գրուած է եւ երկուքին ալ սովորական լեզուէն այնչափ մեծ տարբերութիւն ունի, որ շատ փափուկ բանասիրական ճաշակ հարկաւոր չէ իմանալու համար թէ ո՛չ միոյն եւ ո՛չ միւսոյն գրչին արդիւնք կրնայ ըլլալ ։ — Աւասիկ նոյն հատածն ։

## Է.

### Վասն Մանախուլիային որ է սովդայէ ցեղէ մարդոյ ։

Ռուքաս բժշկապետն ասացեալ է՝ թէ Ի պալղամէ լինի եւ յարենէ. եւ իրաւ է. զի իւր նշանքն այն է՝ որ երբ մարդն զկերակուրն ուտէ՝ չկարէ հալել. եւ թէ շատ ուտէ եւ թէ սակաւ՝ կշտերն ուռչին եւ հետ ի հետ զմարդոյն իմացքն տանի ։ Եւ հանց լինի՝

*որ չի հաւատայ թէ խուրն բժշկութիւն լինի. եւ զինքն կախարդած գիտենայ կամ դեղած, եւ ո՛չ բժշկի հաւատայ եւ ո՛չ դեղի, եւ հանց գիտենայ՝ թէ կա՛մ վաղն մեռանի կա՛մ երիկունն, եւ նեղի եւ տապի, եւ ձգեռտուկն գայ ժամ մի թթու եւ ժամ մի հոտած եւ ձկնահամ: Եւ ժամ մի հանց գիտենայ թէ արիւնահամ ընդ բերանն ի դուրս է ի գալ: . . . Եւ երբ այդ ցաւդ դիպի մարդոյ՝ թէ այրկան եւ թէ կնոջ՝ պատրաստ պիտի ունել որ զինքն խեղդէ ոչ. վասն զի այնիւ խեղդի՝ թէ Թող ի յիմ կենացս զերծանիմ: Եւ բժշկապետերն զայս ցաւոյս տէրն Ստամոքխանկար կոչեն: Եւ երբ այդ ցաւդ ի լոյս ելանէ՝ մարդոյն քունն վատ գայ, եւ սատ ընդ սատ գայ ի քունն: Եւ երբ լինի ի քունն՝ իւր հանց թուենայ՝ թէ Ի մութն տեղ եմ. եւ այլ թուի՝ թէ ի բարձր տեղաց ի վայր է անկանել, եւ կամ ի ծովու մէջ կայ եւ կամ ի նեղ տեղ կայ: Եւ ասացեալ է Ռուֆաս՝ թէ Մարդ մի կայր, որ զինքն ի տանէն ի դուրս չկարէին հանել. եւ երբ ասէին՝ թէ Ել ի տանէդ, նա ասէր՝ թէ Ի՞նչ ցեղ ելնեմ, երբ երկինքն ի վերայս է փլչել եւ զիս ի ներքեւն է յարգելել: Եւ այլ ասէ՝ թէ Այդ ցաւդ ի պալղամէ լինի, եւ զարմանան: Բայց չէ զարմանք. զի յառաջին ժամանակին մարդ մի եղեալ է այդ ցաւոյդ տէր, եւ ասէին բժշկապետերն՝ թէ Նշանք տուր քո ցաւոյդ, նա խօսէր ոչ: Երբ ողջացուցին, հարցին՝ թէ Է՞ր չէր խօսել, նա ասաց՝ թէ Ի՞նչ ցեղ խօսէի, երբ լեզուս ապիկի էր, թէ խօսէի՝ կոտրէր: Եւ մարդ մի այլ կայր յիմ ժամանակին, եւ կարծէր՝ թէ Անգլուխ եմ. բայց բժշկապետերն ճարտար էին, յարճըճէ սաղաւարտ զուգեցին եւ ի գլուխն եդին. եւ երբ ի գլուխն ծանրացաւ՝ ապա գիտաց թէ Գլուխ ունիմ:* — (*Ամիրտովլաթ,* Օգուտ Բժշկ. էջ 74, ա: *Ասար Սեբաստացի,* Հտծ. ԴԼ: Եւ *այլուր:*)

*Անսովոր եւ մտադրութեան արժանի երեւոյթ կը տեսնուի Օրինակիս վրայ: Կարծես թէ զայն իրենց գրութեանց մէջ մուծանող հեղինակք եւ ընդօրինակողք իսկ՝ իբր թէ ակնածելով անոր պատկառելի հնութենէն, իրենց սովորութեան հակառակ՝ չեն համարձակեր կամայական մեծ փոփոխութիւններ ընել, իրենց ժամանակին ստորին ռամկականութիւնները մուծանել: Զորս ընթերցուած ունինք ի ձեռին սոյն Հատածիս, որ կը գտնուի՝ — ի Բ. Բաժնի Ամիրտովլաթայ, — ի Բժշկարանին Ասարայ (մեր մտնդրնին), — յընդարձակ Ախրապատնին որ ի Ձեռագիրս սովորա-*

*քար կը յաջորդէ Օգտի բժշկութեան Բ. Բաժնին, — ի Բժշկարանին Աստարայ մոնդրնի Ս. Ղազարու (որ ընտրելագոյնն է մեր տեսած չորս ընթերցուածոց մէջ,) որմէ առեալ հրատարակած է Բազմավէպ 1881 տարւոյն, էջ 36: — Եւ թէպէտ չորսին մէջ ալ կան սակաւաւոր փոքր փոքր տարբերութիւնք ի ռամկականութեան մասին, որք Հատածին ամբողջութեան այնչափ չեն համաձայնիր. սակայն չորս Ձեռագիրքն իրարու համեմատելով եւ չորսին մէջէն միոյն կամ երկուքին պահած հնագոյն ընթերցուածն ընտրելով, կարծենք թէ հին կամ սկզբնական ընթերցուածէն շատ տարբեր չէ մեր յառաջ բերածն:*

*Աստ վերջ կու տանք Օգտի բժշկութեան հետազօտութեան, թողլով առ այժմ Համառօտեալ խմբագրութեան աղիւսակակերպ մասն եւ Ախրապատինն, որոց վրայ՝ ինչպէս նաեւ Աստարայ վերաբերեալ քանի մի խնդրոց վրայ՝ ի յաջորդսն կը խօսինք:*

---

Ծանօթութիւն.

*Նախընթաց թերթն արդէն տպուած էր, երբ ընդունեցանք 1894 տարւոյն Մարտի Բազմավէպն, յորում սկսուած գտանք Բուսաբանութեան հմտալից գրութիւնն: Այս գրուածս՝ թէեւ Հետազօտութեանցս ներկայ մասին հետ միայն անձուկ կապակցութիւն ունի, բայց սկզբնական ընդհանուր տեսութեան մէջ՝ Անգիտաց անպէտին Հեղինակին կենաց նկատմամբ երկու կարեւոր տեղեկութիւնք կան, որոցմէ չէինք կարողացեր բուն տեղն օգտուիլ, եւ կը յաւելունք աստ:*

*Ամիրտովլաթայ մահուան թուականն յառաջագոյն (էջ 342) ծանուցած էինք, միայն՝ սխալմամբ գրուած ՉԽԵ.ն ուղղելով ի ՋԽԵ. եւ այս ուղղութեամբ հանդերձ՝ կասկածանք յայտնելով: Այժմ այն ՋԽԵ. թուականն կարող ենք անկասկած հաստատուն համարիլ, որովհետեւ Բուսաբանութեան յօրինողն երկրորդ վկայութիւն մ'ալ ի մէջ կը բերէ, որ աննշանակ տարբերութեամբք նոյն թուականը կը հաստատէ: Ահաւասիկ երկուքն ալ առերի իրերաց:*

| Արեւելք, 1890. Յուլ. 12/24: | Բազմավէպ. 1893, Մարտ, էջ 142: |
| --- | --- |
| *Փոխեցաւ ի Քրիստոս Ամիրտովլաթ բժիշկն Թարգմանող գրոյս ի Թվ. ՉԽԵ.* | *Փոխեցաւ ի Քրիստոս Ամիրտոլվաթն բժիշկն Թարգմանող գրոցս ի Թագաւո-* |

Դեկտեմբերի ամսուն ԻԸ. օրն րական բժշկարանէ. ի Թուին
Հինգշաբաթի։ ՋԽԶ. (1497) դեկտ. ամսոյն
ի ութ, աւուրն հինգշաբաթի։

Երկրորդ կարեւոր կամ գէթ հետաքրքրական տեղեկութիւնն այն է, որ 1480ին գրուած Յիշատակարան մի յառաջ կը բերուի վերոյիշեալ (142) իջին մէջ, որմէ կ'իմանանք թէ Ամիրտովլաթ որդի մի ունի եղեր՝ Ամիրէտիլ անուամբ, զոր "Գեղուղէշ նորահաս զաւակ" կը կոչէ Յիշատակարանն։

---

## Բ. ԲԺՇԿԱԿԱՆ ԲԱՌԳԻՐՔ

"Նախընթաց էջերուն մէջ տեսանք որ Ամիրտովլաթ՝ իւր Օգուտ Բժշկութեան կոչուած բժշկարանէն զատ՝ երկրորդ գլխաւոր երկասիրութիւն մ'ալ ունի, այն է՝ իւր Բժշկական բառագիրքն, զոր Անգիտաց անպէտ անուանած է։ Արդէն Հանդիսակիրքներ յառաջ բերած ենք սոյն երկրորդ գործոյն վերաբերեալ քանի մի համառօտ տեղեկութիւններ, որոցմէ կ'իմացուի գրութեան տեղն ու ժամանակը, միանգամայն թէ որչափ ատենուան մէջ շինուած է։ Նոյն տեղեկութեանց վրայ կը յաւելունք աստ՝ Հեղինակին Յառաջաբանէն կամ Նախաշաւղէն քաղելով՝ այն ամենայն ծանօթութիւններն, որք կարող են ծառայել տեսնելու թէ ինչ պատճառաւ եւ որ նպատակաւ ձեռնարկած է այս գործոյն, եւ ինչ կերպով գլուխ հանած։

Յիշեալ Նախաշաւղին սկիզբները քանի մի տող ընդհանուր խօսք գրելէն, եւ իւր այս գրաւոր աշխատութեան վրայ համառօտ տեղեկութիւններ տալէն ետեւ, այսպէս կը շարունակէ. "Թարգմանեցաւ այս գիրքս՝ մէկ մէկ դեղերուն զօրութիւնն՝ ի բազում գրենոց այլ ազգաց ձեռամբ մեղաւոր անպիտան եւ անիմաստ բժշկին Ամիրտովլաթին Ամասիացւոյ։ ...Եւ զայս գիրքս շինեցաք եւ ստուգեցաք շատ բառերով եւ պատմութեններով, զի որք կարդան՝ հեշտութեամբ յիմանան։ Եւ անգէտն

ոչ օգտի ի սմանէ. եւ անուանեցաք զայս գրոցս անուն՝ Անգիտաց անպէտ. եւ պարտական եմ գիտնականացն եւ ծառայ ամենայն փիլիսոփայիցն„:

Սակայն մի յետոյ կը ծանուցանէ թէ ինչ պատճառաւ ձեռնարկած է գրութեանս: Իրմէ յառաջ հայերէն լեզուաւ բժշկական գրուածք չինող ազգային բժշկաց անունները մի ըստ միոջէ նշանակելով, անոնց մասին՝ ինչպէս Հետաղօտութեանցս 14որդ Հածին մէջ տեսանք՝ կ'ըսէ թէ "Շատ գրեանք չինել էին վասն դեղերուն զօրութեանն եւ օգտութեանն„. բայց յայտնապէս իւր տհաճութիւնը կ'իմացընէ այս գրուածոց ոչ միայն կարճառօտութեան՝ այլ նաեւ նոյն կարճառօտութեամբ թերի եւ պակասաւոր մնալուն վրայ, ըսելով որ անոնցմով՝ դեղերուն "Թէ զբնութիւնն կու գիտէաք՝ նա զէութիւնն (թերեւս՝ զզօրութիւնն, ինչպէս պարբերութեան երկրորդ անդամը կը ցուցընէ,) չգիտէաք, եւ թէ զզօրութիւնն կու գիտնայաք՝ նա զբնութիւնն չէաք գիտնալ, եւ կայր՝ որ զանուանքն գիտէաք եւ զինքն չգիտէաք. եւ կայր՝ որ ոչ զանունն գիտէաք եւ ոչ զինքն եւ ոչ զիւր փոխանն: Եւ ի վերայ այսոր հանապազ մեզի պակասութիւն կայր վասն դեղերուն. եւ այս պատճառաւս այլ ազգաց կարօտէաք„:

Ապա ուրեմն վերոյգրեալներէն կը տեսնուի որ դեղօրէից վրայ իւր նախորդաց գրուածներուն պակասաւորութիւնն եղած է պատճառ այս Բժշկական բառագրոց ձեռնարկելուն. եւ իւր նպատակն էր՝ դեղոց մասին ամենայն հանգամանօք լիակատար գրութիւն մի յերեւան հանել: Զայս աւելի պայծառ կը ցուցընէ յառաջորդօքն, երբ դեղագործութեան նկատմամբ մանրամասն խօսած միջոցին՝ դեղերու սատիճանին (դարջային) եւ անոնց խառնուածին հանելով, այսպէս կը գրէ. "Այս արուեստիւս զխառնուած դեղերուն եւ զմաճունուն զբնութիւնն եւ զաստիճանն կու գտնուն եւ կու հանեն

եւ կու յիմանան. (Է—) Թէ այս խառնուած դեղերուն զօրութիւնն եւ տաքութիւնն եւ հովութիւնն եւ գիճութիւնն եւ չորութիւնն քանի՛ աստիճան է հասել՝ ստոյգ իմանան եւ գիտեն։ Եւ ես անարժանս ծառայ ծառայիցն Աստուծոյ ի յայս արուեստս շատ աշխատեցայ՝ մինչեւ զսա գտայ եւ ստուգեցի կրկին կրկին, որ հեշտութեամբ իմանան, եւ ուսանողացն հեշտ լինի եւ դիւրութեամբ ուսանի(ն) եւ հասկանա(ն) զծածուկ արուեստն, որ (այս) ամենայն բժշկապետքն զայս ծածկել էին եւ չէին գրել ի բժշկարանին. եւ ծառանիդ յայտնեցի կամօքն Աստուծոյ„։

Այս խօսքերէն ետեւ՝ Նախաշաւիղը քանի մի էջ ալ շարունակելով՝ Ամիրտովլաթ կը խօսի դեղոց իրարու որոշ չափով խառնուելուն հետեւութեամբ՝ անոնց աստիճաններուն փոփոխման վրայ։ Այնուհետեւ դեղոց՝ նոյնպիսի խառնուրդներէն ծագած վաթսուննուչորս տեսակաց արաբերէն անուանքը կարգաւ կը շարայարէ, զոր ինք կ՚անուանէ “ԿԴ. գործանաւորութիւն դեղերուն„. եւ անոնց առջեւ հայերէն նշանակութիւնն ու համառօտ մեկնութիւնը կը յաւելու։ Իբրեւ օրինակ կը դնենք այն “ԿԴ. գործանաւորութեանց„ մի քանին։

Ա. Լաթէֆ, որ է նուրբ, այնոր ասեն՝ որ դեռ մեր բնական տաքութիւնն ի նա չէ հասել՝ նա իր զօրութիւնն հանի մարդոյն անձինն յամենայն մասունքն, որ է նուրբս այս, որպէս որ գինին է եւ որ նման է սոցա։

Բ. Քասէֆ, որ է լերկն, որ այս վերագրածն որ լաթէֆ ասացաք՝ իր ներհակն է ամենայն դիմօք։

Գ. Սայէլ, որ է ջրի, այն է որ կու ասեն որ այնոր մասունքն ամենայն դիմօք ուզէ որ ի յանձն քայլէ, որ է ջուրն եւ որ նման սոցա կան։

Դ. Ճամէտ, սայէլին ներհակն է, որ է հակառակն, որ պաղի (= սառի)։

Ե. Լազէճ, որ է կպչուն, այն դեղն է՝ որ քաշելով չի կտրիլ, զերդ զմեղր...։

Զ. Հաշ, որ է փշրան, որ շուտ շուտ կտրի եւ փշրի, զերդ զաղան...։

ԻԱ. Մ--հ--մ-ր, որ է կարմրցնող, այն դեղն է որ զօղուածքն տաքցնէ եւ զարիւնն կուժովցնէ եւ ի դուրս քաշէ, եւ զգոյնն կարմրցնէ, որպէս մանանեխն եւ որ սոցին նման է։

ԻԲ. Մ--հ+--+, քորել տուող, այն դեղն է որ գլ-գէ՛ խ-լ-ն ուժով ի կաշին քաշէ եւ զմարդոյն կաշին հանապազ եռացնէ եւ քորել տայ։ . . .

Բովանդակ "Կ.Դ. գործանաւորութեանց" անուններն ու մեկնութիւնը մինչեւ վերջն այսպէս յառաջ կը տանի։

Նախաշաւիղը կ՚աւարտի այն հետաքրքրական Հատածով՝ որոյ սկիզբն է՝ "Եւ այլ յիշենք թէ էր եղաւ այս գիրքս աշխարհաբառ" զոր եւ հետազօտութեանցս սկիզբները (Հտծ. 10) հաղորդած ենք։

Դնենք աստ ըստ սովորութեան քանի մի օրինակ, որչափ կը ներէ մեր ի ձեռին ունեցած Ձեռագիրն, որ գաղափարեալ է բաւական հին, անթուական եւ պակասաւոր, բոլորգիր Ձեռագրէ։ Նոյնէն ամբողջ գաղափարեալ են Նախաշաւիղն եւ Բառագրին Առվ սկսած մասն. միանգամայն այլ սակաւաւոր Հատածք եւ բաւական առատ ասութիւնք որ բանասիրական տեսակէտէ կարեւորութիւն ունին։

Ա. . . . Յորժամ ձմեռն լինի՝ օձերն ի գետնին ներքեւ կու մտնուն կու պառկին եւ կուռին եւ աչուին չի տեսնուլ։ Եւ յորժամ գարուն կու լինի՝ կոյր ի դուրս կու գան, եւ կու ելանեն կերթան զ--գէ--նն կու գտնուն, զորն կուտեն եւ զորն ի վերայ աչիցն կու դնեն. եւ աչուին կու բացուի։ Եւ արարիչն Աստուած զայն օձերուն աչաց տեսութիւնն ի յայս խոտս է դրել։

Բ. . . . Ասէ Գեղիանոս . . . թէ Այս կաւիս Լիմնոսի կաւ կու ասեն։ Եւ Լիմնոս անուն կղզի մի կայ, ի հոն կու լինի . . .։ Եւ ի յայն կղզին կին մի կայր՝ որ այն կաւին իշխանութիւն կու անէր. եւ այն մատնեհարն որ զայն կաւն կու մատնեհրէին, որ Արտամիսին կերպն էր, այն կնկանն ի ձեռն էր։ Եւ կու երթայր այն կինն հառօք եւ փառօք եւ պատուով զայն հողն ի յիր

տեղացն կառնուր եւ ի քաղաքն կու բերէր. եւ ի յայն տեղն շատ մատաղ եւ զենումն կառնէր: Եւ զայս հողս ջրով կու տրորէր եւ կու խառնէր՝ զեղ շաղախ կու առնէր նոսր. եւ այնոր քարէ եւ աւազէ (մուռն) յատակն կու իջնուր: Եւ այն ջուրն որ ի վրայ գայ՝ կու առնուն, եւ զեղ տղտղուկ է եւ եղլի է. եւ այն որ անպէտ է՝ զեղ աւազ եւ զեղ քար է, չեն առնուլ: Եւ զայն ջուրն կու թողուն որ կու յիստակի, եւ կու չորացնեն՝ որպէս մոմ կակղանայ, կտոր կտոր կու կտրեն եւ ղուրս կու այնեն, որ է բլթնի. եւ ի վերայ ՚կԱրտամիսին զպատկերն կու մատնեհրեն եւ ի շուքն կու չորացնեն: . . . Եւ յորժամ զԴէոսկրիտոսին զգիրքն առի եւ կարդացի, (եւ) տեսայ որ (յ)այս մատնեհար կաւս քաւշի արուն կու խառնեն եւ ապա կու շաղվեն, եւ այն կինն որ զԱրտամիսին զմատնեհարն ունէր եւ ի նորա իշխանութիւնն էր այս կաւս, (եւ) կու առնուր յայս կաւէս՝ (որ) քաւշի արունով շաղված կաւէին, եւ մատնեհար կու առնէր, եւ զանունն Մատնեհար կաւ կաւէին: Եւ ես Գեղիանոս ուզեցի որ ես այլ զայսոր զխառնուրին յիմանամ, թէ յայս հողէս եւ յայս արիւնէս որչափ կու խառնեն եւ ինչպէս կու խառնեն: Հապա այս գործս ի սրտէս չէր ելնել, եւ կուզէի որ երթայի տեսնուի զայն կղզին եւ զայն հողին զգործն: Գնացի անցայ ի յայն կղզին որ Կիպրոս կասեն, այնոր համար որ ի հոն ինձի հնազանդ մարդիք կային՝ ի յայն կղզին զնոքա տեսնուլն պատեհ էր: Եւ զԼիմնոսի կղզին տեսնուլն չկյուլացայ. եւ կարճաբանենք զխօսքն . . . յորժամ ես ի յայն կղզին գնացի՝ նա այն կինն որ Արտամիսին պատկերին իշխանաւորն էր՝ ի յայն բլուրն եկաւ. եւ ի յայն բլուրն համբրով սիսեռ եւ գարի ցանեց, եւ զիրենց օրինացն զծէսն ինչպէս որ էր՝ արաւ, եւ զայս մատնեհրած կաւն շինեց: . . . Եւ յորժամ ես զայս տեսայ եւ ուզեցի որ գիտենամ որ ի յառաջի ժամանակն այս կաւիս քաւշի արուն կու խառնեն եղել, հարցայ՝ նա զիս ծաղր արին. եւ իրենք այլ ի մէկ ազգէ մի լսել էին, եւ նոքայ այլ զայլոցէ զլսածն կու պատմէին անգիտութեամբ: Եւ յետոյ յայն քաղքին մարդկացն գիրք մն առի: . . . Եւ ես Գեղիանոս ուզեցի որ փորձեմ եւ գիտենամ զատոյգն. եւ չկյուլացայ՝ առի ի յայս կաւէս ԻՌ. բլիթ շինեցի: Եւ այն մարդն որ զգիրքս մեզի երետ՝

յայն տեղացն պատուական մարդկացն էր, եւ զայս կաւս շատ ի գործ էր արկեր, նոր խոցերուն եւ հին խոցերուն, եւ օձահարի եւ ամենայն գազանահարի այս դեղովս դեղ կու առնէր:

Գ. Եւ անպիտան ծառայ(*) քիչ մի յիշեցնեմ վասն մատնեհար կաւուն: Ի թուականութեանն Հայոց ՋԻԹ. ամին, ի թագաւորութեան Սուլտան Մուհամմատ Խանին, որ կայսր էր նստել ի Կոստանդինուպոլիս, եւ զրոյց եղաւ վասն մատնեհար կաւին, որ գտնուին զինք, եւ ղրկեցին ի սարակինոս ազգէն մէկ բժիշկ մարդ մի ի յայն կղզին որ Լիմնոս անուանեն, որ երթար գտնուր զտեղն յուր մատնեհար կաւն է: Գնաց եւ ոչ գտաւ ի յայն կաւէն, այլ գտաւ ի յայն մէկայլ կաւէն՝ որ գոյնն կու ելանէր, որ եւ եբեր թագաւորին. եւ տեսան բժշկնին եւ ոչ ընդունեցան: Եւ այլվի հրամայեց թագաւորն մեր երեք մարդու որ երթան գտնուն զմատնեհար կաւն: Եւ այն երեք մարդոց մէկն բժիշկ էր ի Պարսից աշխարհէն, եւ մէկն բժիշկ էր հոռոմ, եւ մէկ այլ ի յայն տեղացն ի մարդկանց էր, եւ ունէր արուեստ նկարակերպութեան: Եւ գնացին ելան ի յայն կղզին, եւ գտան ի հին ծեր մարդիկ. հարցան եւ գտան գրեանք վասն պատմութեան մատնեհար կաւին. եւ զտեղն որ կու ելանէր՝ գտան: Եւ փորեցին եւ հանին ի յայն կաւէն՝ որ էր մատնեհար կաւն, եւ բերին թագաւորին մերոյ եւ առին պարգեւ ի թագաւորէն: Եւ յայն տեղն որ այն կաւն կու լինէր՝ դուռն դրին եւ պահապանք դրին, եւ չեն ի ձրի յայն կաւէն մարդու տալ: Եւ ի յայս կաւէս թագաւորն մեր շինել երետ շատ փարչեր որ ջուր կու խմեն. եւ զայլն ի խազինան եդիր եւ պահեց: Հիմա մերձ է մեզ եւ հեշտութեամբ կու գտնունք զկաւն:

Դ. Աշտանըլ տընող, որ Թուրքն Տովշան ղուլաղէ ասէ, որ է՝ լապատին (= Նապաստակին) ականջն: Ինքն մէկ խոտ մն է՝ որ մէկ կանգուն ի գետնէն ի վեր կու ելնէ եւ ծիրանի ծաղիկ ունի. նման է քթանի ծաղկին, եւ մէկ ճուղի մէջէն կու ելանէ. եւ յետեւ մանր ճղեր կու բուսնի շատ, եւ միջի ճղին հաստութիւնն մէկ մատի չափ է: Եւ տերեւն նման է ջղախոտին տերեւին, բայց գոյնն քիչ մի սեւութիւն կու քիշտէ, եւ տերեւին վերայ սպիտակ ղողող ունի. եւ յորժամ հանեն

եւ յերեսուրն քսեն՝ զերեսն կարմրցնէ եւ զգունն աղէկցնէ։ Եւ թէ եփեն եւ զջուրն խմեն՝ օգտէ գաղանահարին, եւ զկուրծքն կակղացնէ։ Եւ թէ ծեծես եւ վարդի եղով ապեղի առնես եւ դնես յայն ուռեցին վերայ որ ի նստատեղն լինի՝ օգտէ եւ զցաւն տանի եւ զխոստունկն այլ տանի։

Ե. Ալօտնէ։ Ինքն մէկ ցեղէ խոտ մն է, որ տերեւն սխտորի տերեւ կու նմանի, եւ տակն փոքրկիկ եւ բոլոր կու լինի։ Եւ ինքն մէկ ազգ սխտոր է եւ հինգ․ կամ վեց ճուղ կու նենայ, եւ յերկայնութիւնն մէկ մէկ թիզ կու լինի, եւ ի ցաներուն ի մէջն եւ ի փոս տեղրանք կու բուսնի, եւ տերեւին համն գղթորի համ կու նմանի։ Եւ թէ զտերեւն գարու ալուրով ապեղանի առնեն եւ դնեն ի աչից տաք ուռեցին՝ օգտէ։ (Օտրե ֆու) այն լուծմանն որ ի յաղեց գաներուն լինի։ Եւ թէ եփեն եւ դնեն տաք ուռեցին՝ օգտէ։ Եւ թէ զչորն ծեծեն եւ ցանեն հին խոցերուն՝ օգտէ. եւ կրակին այրածին օգտէ։ Եւ թէ ծեծեն ջղախոտով եւ զջուրն խմեն՝ օգտէ այնոր որ արիւն լուծի։ Եւ թէ ի ջրէն երեսուն դրամ եւ յիրմէն երկու դրամ ուտեն, եւ թէ ճրագեղով խառնեն եւ ի տղայոց խոցերոյն վերայ դնեն՝ միս բուսցնէ եւ ողջացնէ։

Զ. Աղուէս, որ Յարապն ռուլող ասէ, Պարսիկն բոոսալոհ ասէ, եւ Հոռոմն ալբայիկօ. եւ Թուրքն տիլփօս ասէ. եւ բնութիւնն տաք է եւ չոր է, եւ իր մորթ(ին) քան զամէն մորթի տաք է. եւ գէր մարդոյ եւ հովընութիւն մարդոյ օգտէ. եւ ռոմօսլին բնութիւնն ի դորա բնութիւնն մօտիկ է ի տաքութիւնն։ Եւ թէ զաղուէսն ի ջրին մէջն եփես եւ այն մարդն որ ոսկրացաւութիւն ունի ի վերայ լնուս՝ օգտէ։ ...Եւ թէ զինքն կենդանի ի հոռոմ ձէթին մէջն ձգես եւ եփես մինչեւ տրորի, եւ զայն ձէթն քամես եւ օծես՝ ոսկրացաւութեան եւ ջղերուն ցաւութեանն շատ օգտէ։ ... Եւ թէ զճրագուն ի յականջն կաթեցնես՝ զծանրութիւնն տանի։

Է. Աղֆուրբլուրեղ, որ է (գոյլոս)բղղունկ, կենդանի է ծովային յերկայն, ի սոտոֆ կու նմանի, եւ այս բղընկնին զինքն ծածկել է որպէս ձկան փող որ խոշոր լինայ ... եւ թէ խմեն՝ զփորն շարժէ լու-

ծելով եւ ամենայն դիմօք . . . ։ Իպն (= Իպն-պայտար) ասէ թէ Ինքն ստոփաֆի պէս կենդանու վերայ կու բուսնի որպէս հազուստ· եւ զայս ի յայն ծովուն կու բերեն՝ որ ի յայն ծովեզերքն ստանդոսլ կու բուսնի։ Եւ այս երկու ցեղ կու լինի· մէկն . . . սպիտակ է, եւ մէկն . . . սեւուկ է· եւ լաւն այն է որ սպիտակ է՝ որ ի Եամանու կու գայ։ . . . Իպն· ասէ թէ Պարսիկն այսոր Նոխոտն ֆոռրէ (ֆոռոէ՞) ասէ եւ Նոխոտնէ ստոփաֆ ասէ . . .

Ը· Անդրոսն, որ է անծրութն, ինքն յայտնի խէժ մն է· երկու ցեղ է, սպիտակ եւ կարմիր· լաւն այն է որ սպիտակ լինայ . . . յիստկող է ղխոցերն, եւ օգտէ աչից ցաւերուն եւ որ ջուր իջնելու է . . . ։ Եւ թէ օծես՝ օգտէ . . . ականջին խոցերուն եւ զմանն ի յերեսացն տանի . . . եւ զոտֆրան եւ զղողըղոմն լուծէ։ . . . Եւ թէ ռակրա-ցաւութեան ընկուզի ձիթովն խմցնես՝ օգտէ· եւ զմարդն գիրացնէ։ Իպնպայթար ասէ· Թէ ուզես որ մէն խմես՝ նշի ձէթ խառնէ եւ խմէ· երկու դրամ ի բան տար։ . . . Ասէ Պատեհին թէ Ինքն փշի մի խէժն է, որ ողողոտո ասեն· ինքն կարմիր եւ սպիտակ այլ կու լինի, երկուսն այլ ի մէկ փշէ կու լինի, եւ յորժամ արեգական տաքութիւնն յինքն շատ հասնի՝ հին եւ կարմիր լինի։ Եւ այս ցեղիս անդրոսնէ վողողրոս ասեն։ . . . Եւ լեառն մի կայ՝ որ Կօհի շապանկահ վարտաճան կասեն, յայնկից կու ելանէ։ Լաւն այն է՝ որ սպիտակ լինի եւ ի դեղնութիւն քշտէ։

Թ· Անիսոն, որ է յայտնի ամենայն լեզուաւ։ Ասցած է թէ ինքն հոռմցի բադխոնին հունդն է· եւ լաւն այն է՝ որ նոր լինայ։ . . . Եւ թէ ծխեն՝ օգտէ լանգամին, եւ շոգին հով գլխացաւութեան օգտէ եւ զբերնին համն աղէկ այնէ, եւ որոյ երեսն ուռի՝ օգտէ։ . . . Ասէ Պատեհին թէ Ինքն բադխոնոյն սերմն է, եւ ինքն երկու ցեղ է· այն որ հոռմցին է՝ ի Նանխոհ կու նմանի· եւ այն որ հոռմցի չէ՝ ի դրֆմանոյ կու նմանի· եւ լաւն այն է որ հոռմցի լինի։ Օգտէ արծուոց եւ ստամոքին քամուն եւ գոգուալուն։ . . . Օգտէ հին ջերմերուն եւ գլերդին կալածն բանայ· եւ թէ յակուան օծես՝ զհոտն անուշացնէ եւ զակռային տակերն սրբէ։ Եւ զիր չարութիւնն տանի բադխոնոն։

Կը մնայ քանի մի խօսք ալ գրել աստ՝ զմեզ զբաղեցընող Բառագրոց վրայ, ի մասին լեզուին ու յօրինուածոյն։

Գրութեանս ոճոյն ու լեզուին վրայ արդէն համառօտ ակնարկութիւն մ'ըրած ենք, ըսելով թէ Անգլիոյ Անդերոն լեզուի կողմանէ շատ չի տարբերիր Օգոստի Բժշկարանէն Ա. Բաժնէն, որ գրուած կամ թարգմանուած է Հեղինակին յատուկ սովորական լեզուաւն։ Միայն բանասիրաց ուշադրութիւնը կը հրաւիրենք մասնական եղանակաւորութեան մի վրայ, որ տեղ տեղ կը դիտուի Բառագրոցս ոճոյն ու լեզուին մէջ։ Ստոյգ է աստ լեզուն ալ՝ Բժշկարանին Ա. Բաժնին լեզուին պէս՝ Նախնեաց ռամկօրէնի շրջանին մէջ կը շարժի. սակայն աստ անդ կը նշմարուի թէ Անգլիոյ Անդերոն՝ նոյն ռամկօրէնէն արդի լեզուիս անցնելու սկսած է, եւ Գրիչն՝ թէեւ բազմօք գրաբառախառն՝ դէպ յարեւմտեան բարբառն կը շեղի եւ մասամբ իւրք նոյնին անգիր ժամանակաց գոյնը կ'առնու, մանաւանդ յատուկ բարբառոյ Կոստանդնուպոլսի, ուր գրուած ալ է։ Թէ՛ բուն Բառագրքէն եւ թէ՛ անոր Նախաշաւղէն առնուած օրինակաց եւ տեղեկութեանց մէջ աստ ոչ սակաւ յատկանիշք կրնան տեսնուիլ

Հատածիս սկիզբները կարճառօտիւք ծանուցինք մեր կարծիքն՝ որ Ամիրտովլաթայ երկու գրութիւնքն եւս, թէ՛ Անգլիոյ Անդերոն եւ թէ՛ նաեւ Օգոստոն Բժշկարանէն, Մխիթարայ Հերացւոյ Ջերմանց մխիթարութեան նման՝ ըստ մասին թարգմանութիւն է եւ ըստ մասին ինքնագիր աշխատութիւն։ Զայս արդէն ծանօթ համարելով ընթերցողաց, բժշկական Բառագրոց յօրինուածոյն նկատմամբ կ'ուզենք մտադիր ընել երկու կէտի։

Առաջինն այն է, որ Բժշկապետս ամասիացի ջանացած է յայտնել թէ զայս գրութիւն մեծ փութով ու շատ աշխատութեամբ ի գլուխ հանած է,

այնպէս որ ձեռքն ունեցած հեղինակներէն քաղածներն՝ աւելի կատարեալ եւ լաւագոյն ու օգտակարագոյն կերպիւ կը հաղորդէ իր ազգայնոց, քան զոր կրնային գտնել՝ եթէ անոնց սկզբնագիրներն ուսումնասիրէին։ Վերագոյն իւր Նախաշաւղէն ի մէջ բերեալ երեք վկայութեանց մանաւանդ վերջնոյն (տես էջ 364—366) հարեւանցի իսկ ընթերցումն լիով կը հաստատէ զասացեալքս։

Երկրորդ կէտն այն է, որ Ամիրտովլաթ՝ թէպէտ ոչ ուղղակի՝ կ՚ուզէ իմացընել թէ ո՛ր հեղինակաց հետեւողութեամբ յօրինած է այս իւր Բառագիրքն։ Նախաշաւղին առաջին էջերէն միայն մէջ կարճ տեղեկութեամբ մեկնելով ի յիշեալ գրութեան գործածած Համառօտագրութիւնքն, լոկ վեց հեղինակի անուն կը յիշատակէ. "Անուանք բժշկապետացս, կ՚ըսէ, այս են. Բա̃. Բագարատն, Գա̃. Գեղիանոս, Սի̊ն. Սինեայ (սովորաբար՝ Սինայի) որդին, Դս̈. Դիոսկրիտոսն, Իպ̃ն. Իպնպայտարն, Պա̃. Պատեհին". եւ անմիջապէս կը յարէ. "Եւ այս բժշկապետայն անուանքն (էն) որ պիտի յիշուի ի դեղերուն զօրութեանցն ի մէջն"։ — Արդ՝ առաջին երեք բժշկապետք ամէն բժշկական գրուածոց մէջ սովորաբար գործածուած գտնուելով, կ՚երեւայ որ հեղինակս կը դիտէ գոնեայ անուղղակի ծանօթացընել երեք վերջիններն, որոց երկասիրութիւնք յատկապէս նուիրուած են իբրեւ դեղ ի կիր արկեալ բնական նիւթոց, զոր ինք շատ յաճախ կը յիշատակէ, ինչպէս ի մէջ բերեալ օրինակներէն ալ կը տեսնուի։

* * *

Իբրեւ Յաւելուած կը յարենք աստ յաջորդ կտորն՝ գլխաւորաբար Մատնագիտաց համար, որ հետամուտ են պատմութեան հայ բժշկականութեան։

Ա. Հատածիս սկզբնաւորութենէն՝ ծանօթ է ընթերցողաց ստանաւոր Յիշատակարանն, յորում

իւր Բառագրոց վրայ հետեւեալ չորս տողերը կը գրէ Ամիրտովլաթ.

Աւարտեմ զսա հինգ լեզուով զինչ որ ուսա,
Ի Հայոց եւ ի Հոռմոց եւ յԱրպկա,
Ի Պարսից եւ ի Թուրքաց՝ քիչ Լաթինա.
Եւ ի Հայոցն եմ արարեր զսկիզբն դորա։

Բ. Օչոբէ Բժշկութեան Համառօտեալ խմբագրութեան՝ մեր մատենադարանին մէջ գտնուող երկու Ձռգրց վրայ Հանդիս սկիզբները դրուած մանրագիր տեղեկութեան վարերը ծանուցած ենք՝ թէ “Ի վերջոյ կայ Աղիւսակակերպ մաս մի„ որ հաւասարապէս կը գտնուի երկու Ձռգրց մէջն ալ։ — Այս Աղիւսակակերպ մասն՝ տեսակ մի բժշկական Բառարան է երկու հանդիպահայեաց էջերով։ Միայն առաջին կամ ձախու էջն աղիւսակակերպ է, իսկ երկրորդ կամ աջոյ էջն՝ սովորական շիտակ գրութիւն։ Առաջին էջն իբրեւ դեղ գործածուած նիւթոց անուանները կը դնէ զանազան լեզուօք եւ պէսպէս գիտելեօք. իսկ երկրորդին մէջ՝ իւրաքանչիւր բառին ճիշդ դիմաց՝ անոնց կիրարկութեան մասին նշանաւոր բժշկի մի աւանդածն։

Համառօտութեան համար աստ միակ օրինակ ի մէջ կը բերենք, եւ այն՝ թողլով զաղիւսակակերպութիւնն՝ այժմու բառարանաց հասարակ ձեւին վերածած։

(Անուն.) Արծաթ, (Հռոմայ.) ար(ե)իրոս, (Փռանկէ.) արճէնթօ, (Ցուրուպէ.) փզզա, (Պարսից.) սիմ։ (Որդէսուբիան.) Ինքն ի յարճիճէն լինի եւ ի յիստակէն։ (Աղփր.) Որ ի կրակէն յիստակ ելնէ։ (Բնութեան.) Հով եւ չոր է։ (Զօրն.) Մէկ դրամ տուր։ — Այսչափս կայ առաջին՝ աղիւսակակերպ իջին մէջ. իսկ հանդիպահայեաց երկրորդ իջին մէջ գրուած է. Ասէ Ցեսու բժիշկն թէ Զհոգսն տանի եւ զսիրան խնդացնէ . . .։ — Այսպէս ամէն տեղ՝ չորս կամ հինգ տող։

Աղիւսակակերպն՝ այս օրինակին պէս՝ միշտ կամ բուն հայերէն եւ կամ գոնեայ բժշկարանաց մէջ իբրեւ հայացեալ նկատուած բառերէ սկսելով, անոնց առջեւ շատ անգամ չորս՝ գէթ երեք օտար լեզուաց նոյնանիշները կ՚ունենայ։ Բայց յաճախագոյն եւս կը հանդիպին այնպիսի հայ կամ հայացեալ բառեր, որոց յոյն կամ փրանկ նոյնանիշն՝ մանաւանդ թէ երկուքն ալ կը պակսին, անոնց տեղը դատարկ մնացած ըլլալով։

Արդ՝ Աղէւսակակերպիս այս միակ օրինակէն եւ ասոնց նմաններէն հարկաւ պէտք ենք հետեւցընել թէ վերագոյն ի մէջ բերեալ չորս տողուտանաւորն՝ աւելի այս Աղէ-ահլահէրղ Բառարանին համար գրուած է, քան Անգիտաց անպէտ կոչուած Բառագրոց համար․ եւ այլազգ ալ չէր կրնար ըլլալ։ — Այս կարծիքս կը հաստատուի այնու՝ որ Անգիտաց անպէտն մեծաւ մասամբ օտար (արաբերէն, պարսկերէն, յունարէն) բառերով կը սկսի, եւ ոչ եթէ բուն հայերէն կամ մեր բժշկական գրուածոց մէջ իբրեւ հայացեալ նկատուած բառերով։ Դարձեալ այն եւս մեծ հաստատութիւն կու տայ կարծեացս, որ Անգիտաց անպէտին մէջ հազիւ քանի մի տեղ միայն կը տեսնուին խոստացեալ հինգլեզուեան նոյնանիշք։ Այսպէս՝ մի եւեթ օրինակ (Աղո-էօ բառը) գտանք բովանդակ Ա գրին մէջ․ հաստարակօրէն՝ միայն արաբերէն, պարսկերէն, թրքերէն նոյնանիշք գրուած են։

Իրաց այս վիճակին մէջ՝ դժուարին է իմանալ թէ ինչպէս մտած են վերոյիշեալ չորս տողերն ի յիշատակարանի Անգիտաց անպէտին, որոյ կազմութեան չեն յարմարիր ամենեւին, եւ ճշդիւ կը համաձայնին Աղէ-ահլահէրղ Բառարանին։ Բայց այս վերջնոյս վրայ ի յաջորդան կարեւոր բացատրութիւնը կու տանք։

## 22.

## ԺԱ․ ԱԽՐԱՊԱՏԻՆ (ԴԵՂԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ)

Նախնեաց բժշկականութեան վրայ հետազօտութեանցս մէջ ցարդ տրուած ընդհանուր տեղեկութիւններէն տեսնուած է՝ թէ Դեղագործութիւնն, — որ ըստ արդի ընթացից ուսմանց՝ իբրեւ առանձին գիտութիւն կը նկատուի, զատ եւ անջատ յայլ ամենայն մասանց բժշկական ուսմանց, մանաւանդ թէ ինքնին զանազան ճիւղեր

բաժնուած է, — հնոց մօտ ոչ միայն ամբողջացուցիչ մասն կը համարուէր բժշկականութեան, այլ նաեւ նոյն արուեստին գլխաւորագոյն մասանց մին կը կացուցանէր։ Արդեամբք իսկ բժշկարանաց մէջ սփռեալ կը գտնուի այն ամենայն որ կը վերաբերի Դեղագործութեան։

Եւ ոչ այսչափ միայն, այլ նաեւ ամէն բժիշկ՝ արդի բժշկաց պէս՝ Դեղագործութեան վրայ կատարեալ հմտութիւն ունենալէն զատ, իրօք եւ արդեամբք Դեղագործութեան արուեստն ի գործ եւս պիտի դնէր։ Այսմ ակնյայտնի ապացոյցք են այն Դեղագիրք կամ Նուսխայք որ յաճախութեամբ կը տեսնուին յամենայն բժշկարանս։ Բայց չեն պակսիր նաեւ պատմական ակնարկութիւնք եւ յիշատակութիւնք ի հաստատութիւն ասացելոցս։ Յառաջագոյն տեսանք թէ հնագոյն ասորի բժըշկաց մին, այն է՝ Գէորգ Մասուա, — հայր Յովհաննու բժշկապետի՝ որոյ (որդւոյն) վերադիրն եղած է Մասուայի որդին, — իւր ծննդեան (Ճոնտիսապուր) քաղաքն երեսուն տարի Դեղագործութեան արուեստն վարելէն ետեւ, Պաղտատ եկած եւ իբրեւ բժիշկ՝ մեծ անուն հանած է։ Իսկ նոյն Գէորգայ վերոյիշեալ Յովհաննէս որդին, որ իւր հօրն եւ այլ անուանի ուսուցչաց առաջնորդութեամբ բժշկութիւն սորված էր եւ Խալիֆայից մայրաքաղաքին հռչակաւոր հիւանդանոցին վերակացութիւն կ՚ընէր, հաւանագոյնս նոյն հաստատին մէջ ունէր նաեւ Դեղագործարան։ Անշուշտ այս վերջին նշանաւոր Դեղագործ-բժշկին աշակերտիլ ուզող եւ յետոյ անոր չափ եւ աւելի եւս հռչակաւորութեան հասնող Հոնէյին բժշկապետն, որ իւր երիտասարդութեան միջոցին իբրեւ սպասաւոր՝ յարեցաւ անոր (Մասուայի որդւոյն), ի մասին Դեղագործութեան կը կատարէր իւր սպասաւորութիւնն։ (Տես Հետազ. Հատ 14, 2րդ եւ 3րդ կենսագրութիւն։)

Մեծամեծ բժշկաց Դեղագործութեան արուեստն ալ կատարելն յայտնագոյն եւս կ'իմացուի ամենահռչակ բժշկապետի մ'իւր անձին նկատմամբ պատմածէն, զոր պահած է եւ կը հաղորդէ Ամիրտովլաթ Պիտառութեան մի մէջ՝ որով պիտի զբաղինք ի Հածիս։ Աւասիկ Ամասիացի բժշկապետին խօսքն. «Ասացել է Գեղիանոս վասն ճուարիշ քամունուն համար՝ թէ Շինեցի եւ ի բան տարայ զայս ճուարիշն, եւ զայն օգտութիւնն որ կ'ուզէի՝ չի գտայ. բայց զգողն յորդորեց եւ ցաւ տեսայ յերմէն։ Ինձի տրտմութիւն ընկաւ, եւ վախեցայ որ իմ բնութիւնն աւիրեր է՝ այնոր համար այս դեղս ինձի օգտութիւն չարար եւ զեն արար։ Եւ յետոյ միտք առի որ ծեծած էր խիստ բարակ, եւ յետոյ Տորյէտւ չինեցէ եւ խոշոր ծեծեցէ, եւ զօգտութիւնն գտայ»։ Ցայսմ մասին սատ անդ յառաջ կը բերուին՝ բաց ի հասարակ բժշկաց եւ բժշկապետաց՝ նաեւ դեղ շինող թագաւորք, որոց անուամբ կը կոչուին իրենց շինած դեղերն։ Թ(է)րիաքի մատրիտոս կոչուած Դեղագիրն այսպէս կը սկսի. «Զաքարիայի որդին ասէ՝ թէ Զինքն շինել է Մատրատետոս թագաւորն, եւ եդիր զիր անունն, եւ շինած է զինքն եւ փորձած իր վրայ . . .»։ Նոյնպիսի յիշատակութիւնք կան նաեւ ընդհանրապէս այլեւայլ ազգի բժշկապետաց վրայ. «Զայս Պարսից բժշկապետքն՝ . . . զինքն Հռոմոց բժշկապետքն՝ . . . Հնդկաց բժշկապետքն են շինել։»

Ի բժշկարանս կը գտնուին, ըսինք, Դեղագործութեան վերաբերեալք։ — Ոմանք ունին յատուկ Դեղագործական մասն՝ Աքրապատին կոչմամբ, որ բուն բժշկական ճիւղերէն զատեալ՝ ինքնուրոյն բաժին մի կը կազմէ, եւ է որպէս թէ ժողովածոյք Դեղագրաց, որք ըստ պէսպիսութեան տեսակաց դեղոց՝ այլեւայլ խմբերու կամ ցեղերու

բաժանեալ՝ կանոնաւոր դրութեամբ դասաւորեալ են։ Բայց Հնոց Դեղագիրքն ընդարձակագոյն են քան զարդեաց Դեղագիրս, այս վերջիններէն աւելի՝ ունենալով համառօտ տեղեկութիւններ այն ախտից եւ հիւանդութեանց որոց ի դարման կրնան օգտիւ գործածուիլ. մանրամասն հրահանգներ դեղոց բաղադրիչ նիւթերը պատրաստելու, իրարու հետ խառնելու, եփելու, թրջելու, չորցնելու վրայ եւայլն. զանազան խրատներ դեղոց կիրարկութենէն յառաջ եւ յետոյ ընելու զգուշութեանց, վնասակար եւ անվնաս ուտելեաց եւ ըմպելեաց եւ այլոց նմանեաց վրայ։

Բայց բժշկարանք՝ յատուկ Ախրապատին ունենան թէ ոչ՝ Դեղագործութեան վերաբերեալ մասեր ի մէջ կը բերեն նաեւ Ախտաբանութեան ճիւղին մէջ, ուր ախտից եւ հիւանդութեանց վրայ ճառելու միջոցին՝ անոնց իւրաքանչիւրին առ երի կը դնեն միանգամայն դարմանքն, երբեմն ճիշդ Դեղագրի ձեւով՝ վերագոյն նշանակեալ տեղեկութեամբք, հրահանգօք եւ խրատուք, — յայտնի է՝ այնչափ որչափ կը պատշաճի կամ կարեւոր է, — եւ երբեմն առանց այնպիսի ճշդութեան, եւ գլխաւորաբար չդնելով անոնց սկզբնաւորութեան նուիրական բանաձեւն՝ թէ Առ զԱ. եւ զԲ. զԳ..։

Ի Հոծիս հետազօտութեան պիտի առնունք երեք միայն Ախրապատին. Ա. Յովհաննու բժշկի կամ 1438ի բժշկարանին, Բ. Ամիրտովլաթայ, եւ Գ. Անանուն ընդարձակ Ախրապատինն՝ զոր Հաւաքածոյ Ախր. կը կոչենք։ — Այս երեքէն՝ գլխաւորաբար Գ.ին ուսումնասիրութեան ժամանակ առիթ կ'ունենանք տեսնել այլ եւս Դեղագործական գրուածներ։

Ա. Ախրապատին Յովհաննու բժշկի։ Որոշ հեղինակի անուն չունի ո՛չ Ախրապատինս եւ ո՛չ իսկ բովանդակ բժշկարանն՝ որոյ սկզբնաւորութիւնն է

այն Դեղագործական գրութիւնն[1]։ Ուստի յայլոց զանազանելու վախճանաւ դրած ենք զանուն բժշկին՝ որ ՊՁԷ. = 1438 Թուականին նոյնը կազմել (ընդօրինակել) տուած է իւր կիրարկութեան համար, եւ ինչպէս յայտնի կ'երեւայ՝ յատուկ աշխատսիրութեամբ իբրեւ նոր գրութիւն դարձուցած է, գաղափարել տուած սկզբնագրին կարգն ու նիւթոց դասաւորութիւնն այլակերպելով, շատ բան եղանակաւորելով, լեզուն սակաւ մի փոխելով, տեղ տեղ համառօտելով եւ տեղ տեղ յաւելուածներ մուծանելով։ Անդէպ չէ ենթադրել թէ այս եղանակաւորմանց, փոփոխմանց եւ մանաւանդ յաւելուածոց ոչ սակաւ մասունքն՝ իւր հօրմէն Վարպետ Սկանտարէն ունին իրենց ծագումն։

Իսկ սկզբնագիրն որ յիշեցինք՝ ի մեր ծանօթութիւն հասած հնագոյն բժշկարանն է, որոյ ի վերնագրին նշանակուած է թէ “Փոխած է ի տաճիկ (յարաբական) լեզուէ ի հայս՝ ի ժամանակս յաղթող Թագաւորին Հայոց Գագկայ„ այս ինքն՝ Ժ. դարուն վերջերը կամ ԺԱ.ին սկիզբները։ Երեք դարու չափ անցնելէն ետեւ՝ օրինակ մի գաղափարեալ է ԺԳ. դարուն յետին տարիներն (ՉԽԳ. = 1294 Թուականին) Պարոն Հեթմոյ Կոռիկոսի Տեառն կիրարկութեան համար[2]։

---

1 Որչափ կրնայ մակաբերուիլ թերթահամարներուն նայելով՝ ձեռագրիս սկիզբէն երեք թուղթք կը պակսին, յորս անշուշտ կային կարեւոր տեղեկութիւնք՝ թերեւս եւ վերնագիր իսկ։ Բախտիւ՝ վերջին Յիշատակարանն մասամբ իւիք կը լեցընէ նոյն պակասութիւնն։ — Սկզբնական Ցուցակէն ետեւ դրուած սակաւատող Յիշատակարանէն՝ այնչափ միայն նոր ծանօթութիւն կ'ունենանք, որ Աբրահամ կազմողն Աբեղայ է։

2 Կանխագոյն՝ Հետազօտութեանցս մէջ՝ երկու ձեռագրացս վրայ այս տեղեկութիւնքն հաղորդած ենք, նախ ի 10որդ Հատորին՝ ըստ մասնէ, ապա ընդարձակագոյնս՝ ի 15որդ Հատորին. բայց թէ աստ եւ թէ ի յաջորդան հարկ համարեցանք ինչ ինչ կրկնել՝ Ախրապատնիս վրայ պայծառ գաղափար տալու համար։ — Ցանկալի էր արդարեւ առնուլ յուսումնասիրութիւն զյիշատակեալ հնագոյն գրութիւնն 1294ին՝ քան զ1438ին. բայց չունենալով ի ձեռին զամբողջ

Ձեռագրիս սկիզբէն պակասեալ երեք թղթոց անմիջապէս կը յաջորդէ Ախրապատմին եւ բովանդակ բժշկարանին Ցուցակն՝ շարունակեալ Հածահամարով: Իսկ Ցուցակին վերնագիրն է այս. «Զշաբադրութիւն (կ'իմանայ՝ շարադասութիւն) գրոցս այսպէս գտցես»: Ցուցակէն ետեւ կու գայ բառարան մի դեղերու անուանց. այսմ կը յաջորդէ բուն Ախրապատմին, որ եւ այն չունի ընդհանուր վերնագիր, այլ իւրաքանչիւր Դեղատեսակին սկիզբը կարմրադեղով կը նշանակէ որ տեսակի վերաբերեալ դեղոց վրայ խօսելիքն: Կը սկսի Խուռսերէն՝ Յաղագս զանազան խառատերոյ վերնագրով, եւ կը շարունակէ մինչեւ ԺԹ.որդ Դեղատեսակն, որոյ վերնագիր է՝ Յաղագս զանազան Մորհամծոյ փոխեալ յարաբէն գրոց. իսկ ասոր կցած է առանց զատ տեսակահամարի՝ Յաղագս զանազան Մորհամծոյ փոխեալ ի լատին գրոց: Իւրաքանչիւր Տեսակին ներքեւ դրուած են աւելի կամ նուազ Դեղագիրք սովորական բանաձեւով: — Միայն Ե.որդն, — որոյ վերնագիր է՝ Յաղագս ԺԴ. դեղերոյն զօրութեան, եւ կը խօսի նոյնչափ տեսակ բժշկական պարզ խոտերու եւ տնկերու վրայ՝ անոնց առողջաբանական յատկութիւնքն ու կիր-

օրինակ հնագունիս, — թէեւ առած ենք բաւական տեղեկութիւններ եւ հատներ, որոցմէ մի քանին հրատարակած ալ ենք, (տես Հատ 15ին մէջ յառաջ բերուած համեմատական Օրինակներն.) — ստիպեցանք շատանալ յետնագունիւ:

— Որովհետեւ 1294ին հնագոյն բժշկարանն յիշատակեցինք, այստ առթիւ կ'ուզենք համառօտիւ ծանուցանել թէ ինչ է 15որդ Հատին սկզբնական մանրագիր տեղեկութեան վերջը նշանակուած հնագոյն եւս (ՋԻԵ. = 1276 թուականին գրեալ) բժշկարանն Էջմիածնի Մատդրնին: Նոյն տեղեկութիւնը կը փակէինք լսելով՝ Ասոր վրայ առայժմ այսչափ միայն. որով յոյս կը յայտնէինք նոյնին նկատմամբ որոշ ծանօթութիւն ստանալ: Արդ 1892ին վերջերն Պր. Փարսադան (այժմ Մեսրոպ Վ.) Տէր-Մովսիսեան, որ ուսուցչապետութեան պաշտօնիւ Էջմիածին հաստատուած էր, հաճեցաւ հաղորդել ամէն կարեւոր պարագայիւք հանդերձ՝ թէ ընդհանուր անուամբ Բժշկարան կոչուածն՝ Մխիթարայ Հերացւոյ Ջերմանց Մխիթարութիւնն է: Այս տեղեկութիւնս գրուած է յաջորդ տարւոյն սկիզբն, որուն համար մեր շնորհակալութիւնը հրապարակաւ կը յայտնենք:

արկութեան եղանակն ալ մեկնելով, — ինչպէս նաեւ ԺԹ.որդին լատին մասին մէջ դասուած լաւշտակի Հոծն՝ չունին սովորական բանաձեւով սկսեալ Դեղագիր: Այսպէս՝ Ախրապատնիս բուն Դեղագիրքն եւ ոչ իսկ 200ի կը հասնին:

Բ. Ախրապատին Ամիրտովլաթայ: Հեղինակիս Օջառոփ բժշկաբեան կոչմամբ ամենածանօթ բժշկարանին Համառօթեալ խմբագրութեան ձեռագիրք ի մէջ կը բերեն զայս ինքնուրոյն Ախրապատին, որոյ այս է ամբողջ Յառաջաբանն:

Ա.

Ցանկ է գրոցս Ախրապատին, որ առի ես անպիտան եւ անարժան ծառայս ի յարապ գրոց եւ ի Մինհա՛ճի տուքանէն. որ ժողովել էր զինքն Մուսի պին Մայմունն: Եւ ես յիշեմ զիրեն խօսքն եւ գրեմ ի հայ լեզուս: Բայց ի յայս արապ գիրքս որ Մուսի պին Մայմունն է շինել Եբրայեցոցն՝ նա զդեղերուն զօրութիւնն չէր գրել կատարելութեամբ եւ ոչ զբնութիւնն եւ ոչ զգործքն: Նա ես տեսայ որ Ախրապատինն առանց մուֆրատաբի չի լինիր, որ է մէկ մէկ դեղերն, նա շինեցի զխրապատինն լման եւ զմուֆրատքն այլ ի լման, եւ զանուանքն այլ դրի ի կարգին հինգ լեզուով, յառաջն հայերէն, եւ յունարէն եւ դաղմատերէն եւ արապկերէն եւ պարսկերէն. զբնութիւնն եւ զաղէկն եւ զառնելիքն եւ զփոխանն եւ զօգտութիւն ամենայն անձինն: Եւ շինեցի զգիրքս զայս, հանց գիր՝ որ ով որ յատար (յարատ) լինի եւ կամ յաշխապ լինի՝ նա իրենն այս գիրքս հերիք է, եւ ով զինքս կարդայ եւ ուսնի զամենայն գործքն բժշկութեան եւ զմուֆրատքն առնուլն՝ նա լինի կատարելութեամբ գէտ այս արուեստիս, եւ զայն այնէ զինչպէս որ գրած է՝ նա իր բանն լինի կատարեալ եւ անսղալ: Եւ զանազան Նուրբեղնին տեսնուս եւ զարմանաս զդեղերուն գործն՝ Աստուծոյ կարող զօրութեամբն:

Բայց որ ի սոցանէ բան օգտի՝ նա գիտենայ թէ ինչպէս է շինել անարժան ծառայն Աստուծոյ Ամիրտովլաթ բժիշկն, եւ տեսնու թէ ինչպէս է յաւելցուցել զգիրքս եւ ինչպէս է ձեւել զդեղերոյն զօրութիւնն եւ զայլ որ ի կարգին է որ պէտք է մեզ:

Թէ այս Յառաջաբանին յաջորդող Ախրապատինն իրօք եւ արդեամբք Ամասիացի բժշկապե-

*տին յատուկ երկասիրութիւնն է, կարծենք՝ ոչ ոք կարող է տարակուսիլ։ — Արդարեւ վերիվերոյ հայեցմամբ այնպէս կ՚երեւայ թէ մեծ տարբերութիւն գտնուի ի մէջ գաղափարին զոր կու տայ Ցառաջաբանս եւ ի մէջ բուն Ախրապատնին. վասն զի առաջնոյն ըրած մեծամեծ խոստմունքն իրօք կատարուած չեն տեսնուիր յերկրորդին։ Արդեամբք իսկ ի՞նչ է Ախրապատինս՝ բայց եթէ Դեղագործական հասարակ գրութիւն ի քսան Գլուխս բաժանեալ, որոց իւրաքանչիւրին մէջ այս կամ այն Դեղատեսակին վերաբերեալ՝ մեծագոյն մասամբ համառօտ Դեղադիրք յառաջ բերուած են։*

*Այսպէս պէտք է մտածել Ախրապատնին սոսկ առաջին քսան Գլուխները կարդացողն, որ ի հարկէ ինք իրեն կը հարցընէ թէ Ո՞ւր կը մնան Հեղինակին յառաջաբանական խոստմունքն։ — Բայց յայսպիսի վրիպական կարծիս մտաբերողն՝ իւր սխալելին իմանալու եւ ուղղելու համար՝ հարկ չունի պէսպէս խուզարկութեանց ձեռնարկելու. պարզապէս ընթերցումն յառաջ տանելով՝ կը համոզուի թէ Ցառաջաբանին մէջ Հեղինակին ամէն խոստացածներն լիով կատարուած են։*

*Դնենք աստ բովանդակ երկասիրութեան մանրամասնութիւնքն, թէ՛ բուն Ախրապատնին՝ անձուկ միօք առեալ, եւ թէ՛ անոր հետ կապակցութիւն ունեցող մասանց՝ որոց կ՚ակնարկեն Ցառաջաբանին խոստմունքներն։ — Ցառաջաբանին կից դրուած է ամբողջին Ցանկն՝ Իե. Դուռն (= Գլուխ) բաժնուած։ Առաջին քսան Գլխոց մէջ կը խօսի Ամիրտովլաթ դեղոց գլխաւոր տեսակներուն վրայ։ Կը սկսի (Ա.) Ըռուպներու կամ Շարապներու տեսակէն, եւ կը վերջացընէ՝ Ա. Ախրապատնին պէս՝ (Ի.) Մորհամներու տեսակաւ. բայց միջին տեսակներն երկուքին մէջ միեւնոյն դասաւորութիւնը չունին։ — Նախընթացին նման՝ այս եւս իւրաքանչիւր Դեղատեսակին ներքեւ՝ զանազան թուով Դե-*

ղադիրներ կը դնէ, որոց թիւն ընդ ամենայն 370էն սակաւ աւելի է։ Սովին կը վերջանայ բուն Ախրապատինն՝ անձուկ մօտք առեալ։ — Այնուհետեւ կու գան Ցանկին մէջ նշանակուած հինգ Գլուխներն (ԻԱ.—ԻԵ.), որոց այս է համառօտ բովանդակութիւնն։

ԻԱ. Քանումէկ Դուռն որ յիշէ զդեղերոյն զփոխանակն եւ զպիտեւանն։ — Այս վերնագրին ներքեւ դրուած է համառօտ այբուբենական ցուցակ՝ երկու բաժնիւ, նախ՝ պարզ դեղոց, ապա՝ բաղադրելոց։ Գլխոյն սկզբնաւորութիւնն ալ է այս. “Եւ կու յիշեմ զդեղերոյն զփոխանակն, որ զինքն բժշկապետքն չինել են՝ վասն այն պատճառուն որ զինքն հաստատեն իմաստութեամբ, որ թէ մէկ դեղն չի գտուի վասն իրացմն որ առնեն եւ պակաս լինի՝ նա զայնոր փոխանակ դնեն, որ բանն կատարի եւ պակաս չիմնայ եւ զօրութիւն առնու, այսպէս. Ափմոդին, եւ իւր փոխանն ճուտայն է եւ կէս բաժին չեհերմանին է . . . ։ — Աւշախ, եւ իր փոխանն սպիտակ վրացի կոճն է։ — Աւշնայ, եւ իր փոխան ղոտմանան է, եւ երեք բաժնէն մէկ՝ ոճն է, եւ երեքէն մին՝ համաման . . .„։

Այսպէս՝ այբուբենի (ճշդագոյն խօսելով՝ Էպճդէէ) կարգաւ իբր 150 պարզ դեղեր յառաջ բերելէն ետեւ, անոնց տողանը կը փակէ՝ գրելով. “Եւ լմնցուցաք ղֆ-րֆ դեղերուն փոխանն . . . եւ այլ ասենք զչինած Թարքիպնոյն փոխանն, որ թէ մէկն չլինի՝ նա զմէկ(այլ)ն առնուն„։ Անոնցմէ ալ 25 բառ շարելէն ետեւ՝ կ'աւարտէ զԻԱ. Գլուխն՝ ըսելով. “Եւ լմնցուցաք զխօսքն։ Եւ ասցած է թէ կու պիտի որ զդիմանալն այլ յիշենք ղֆ-րֆ դեղերոյն։ Եւ ասցած է՝ թէ Մեք այնով բան առնենք, եւ է մեզ պիտանի եւ օգտակար„։

ԻԲ. Գլխոյն այս է վերնագիրն ու սկզբնաւորութիւն։ “Քանեւերկու Դուռն որ յիշէ զդեղերոյն զգիմանալն եւ զուժն եւ զմուրաքապերն դե-

ղերոյն։ — Կու յիշենք զդեղերոյն զուժն եւ դիմանալն եւ զանցանելն, թէ որպէս է եւ ինչպէս պահեն եւ որպէս դիմանայ ուժն, եւ յիշենք կարգաւ։ Վարդն եւ Նինուֆարն՝ յորժամ կենայ ի տեղն, մինչեւ գոյնն անցնի՝ նա ուժն հատնի. եւ թէ ի յատենն կտրեն՝ նա մին տարի դիմանայ, եւ ուժն անցնի»։ Այս կերպով կը յիշատակէ 20 տեսակ պարզ եւ բաղադրեալ դեղեր, ըստ մասին՝ իւրաքանչիւրին վրայ զատ զատ խօսելով, ըստ մասին՝ խմբովին, զ. օ. Աչաց դեղերու, Չէթերու, Հնդերու, Տակերու = Արմատներու . . . վրայ։

ԻԳ. Գլխոյն Նկատմամբ Ցանկին մէջ գրուած է. «Քսանուերեք Դուռն յիշէ զդեղերոյն զօրութիւնն, եւ զանազանքն հինգ լեզուով պատմէ»։ Իսկ գրուածոյն մէջ նոյն Գլխոյն վերնագիրն է այս. «Բառ ի վերայ ամենայն բժշկական վարդապետացն(°). պատմութիւն վասն դեղերուն»։ Վերջին հինգ Գլխոց մէջ ամենէն ընդարձակն է այս, 23 էջ կը բռնէ խիտ գրուած՝ տողերն առանց ընդհատելու. եւ մերձաւորաբար հաշուելով՝ իբր 800 բառ կը պարունակէ։ Հարեւանցի գաղափար տալու համար՝ ընտրանօք քանի մի բառ կը բերենք սկզբնաւորութենէն։ «Աղրաս, որ է խնդէն, որ է պրուխն, որ է փայլկտուկ, որ է խունուս, որ է շրէշն։ — Ասմթըլ յարզ, որ է հաւթրէճ, որ է տերեւառն, որ է մազարիոնն։ — . . . Երխըս, որ է կարմիր ջրի դաղձն։ — Ապրխունդիոն, որ է ղասումն, որ է բացուեննեկն, եւ Թուրքն ղուան չիչէկի ասեն։ — . . . Աղըրըընդաս, որ է զանապըլ ղայլն, որ Հայերն ձիու ագի ասեն։ — . . . Աղաւնի, որ է համամէ։ — Ապիկի, որ է զուճաճ։ — Ազոխ, որ է հուարումն։ . . . Ազան, որ է քօշմորուսն։ — . . . Ասլիսուս, որ է մատուտակն։ — . . . Աղի ծաղիկ, որ է շորան, եւ կամ այն է՝ որ աղն ի վերայ իւր բուսանի, կամ աղն է»։

ԻԴ. Քանեւչորս Դուռն որ մինչէ զկշեռքն եւ զլտրերն եւ զնուկեստանն եւ զդրամն եւ զմըթխալն եւ զկուտն։

ԻԵ. Քանեւհինգ Դուռն որ մինչէ զամենայն ազգ ջրերն եւ զոր մեզի պէտք է, եւ զգարեջուր եւ զայլ ջրերն որ ի փուռն հանեն եւ զմսին ջուրն եւ զայլն որ պիտի մեզ։

Թէպէտ երկու վերջին Գլխոցս վերնագիրքն աստ նշանակուածին պէս դրուած են Թ. 93 ձեռագրին մէջ, բայց բուն նիւթն ընդօրինակեալ չէ. այլ՝ քանի մի դատարկ թուղթք թողուած են։ Իսկ Թ. 61, Բ. ձեռագիրն, որ բոլորովին անյիշատակ թողած է զԻԳ. Գլուխն, այս երկու Գլուխներն յառաջ կը բերէ՝ զԻԴ. փոխելով ի ԻԳ. եւ զԻԵ. ի ԻԴ։ Եւ այս է իւր ընթերցուածն սոյն երկու Գլխոց։

“Քան երեք Դուռն, որ մինչէ զկշեռքն եւ զլիտրն եւ զնուկեստանքն եւ զդրամն եւ զմթխալն եւ զկուտն։ Իմացիր որ մէկ լիտրն բժշկաց (գոր) ունին ի Հաշիւն Պաղտատցիքն, ՃԻ. դրամ է, եւ կէս լիտրն Կ. դրամ է։ Եւ մէկ նուկին Ժ. դրամ է։ Եւ Ժ. դրամն Զ. մթխալ ու կէս ու չորս ու կէս կուտ է։ Եւ ամէն մթխալ ԻԴ. կուտ է։ Եւ մէկ դրամն ԺԶ. կուտ է. եւ կէս դրամն Ը. կուտ է։ Եւ մէկ տանկն Դ. կուտ է։ Եւ այսպէս իմացիր զամենայն”։

“Քան եւ չորս Դուռն, որ մինչէ զամենայն ազգ ջրեր եւ զգարեջուրն”։ — Այս կրճատ վերնագրին ներքեւ 19 տեսակ ջրի բաղադրութիւնք կը դնէ՝ մեծ մասն սովորական բանաձեւով։ Բայց՝ որովհետեւ ասոնք բուն Ախրապատնին կը վերաբերին՝ սոյնպիսեաց յատուկ տեղը երկու Օրինակ կը բերենք ասոնցմէ։

Այսչափ՝ Ախրապատնիս յետին հինգ Գլխոց վրայ, որք բաւական են՝ կարծենք՝ ամէն կասկած փարատելու։ Վասն զի ասոնց պարունակութենէն կը տեսնուի թէ Յառաջաբանին խոստմունքն գո-

հացուցիչ կերպով կատարուած են։ Միայն դուրս մնացած է այն մասն ուր կ'ըսուի՝ թէ "Զանուանքն այլ դրի ի կարգին հինգ լեզուով, յառաջին հայերէն, եւ յունարէն եւ դաղմատերէն եւ արապկերէն եւ պարսկերէն. զանութիւնն եւ զաղէկն եւ զառնելիքն (եւ զփոխանն) եւ զօգտութիւն ամենայն անձինն"։ Սակայն այս պակասութիւնն եւս կատարելապէս կը լեցուի երկու ձեռագրաց մէջ ալ հինգ Գլխոցս կից ի վերջոյ դրուած Աղէ—ա—կ—կէր—գով, որ Ախրապատնիս ամբողջացուցիչ մասն է, զոր եւ յառաջագոյն (21րդ Հանէն եռեւ) Ցուեւլուածոյ մի մէջ հաղորդեցինք եւ օրինակ մ'ալ բերինք։ Նոյն տեղ խօսքն աւարտեցինք ըսելով թէ ի յաջորդան կարեւոր բացատրութիւնք կու տանք։ — Արդ թէպէտ նախընթաց տողերով տրուած տեղեկութենէն ինքնին. կ'իմացուի Աղէ—ա—կ—կէրդ Բառարանիս նպատակն՝ որ ոչ այլ ինչ է, եթէ ոչ՝ իրօք կատարել ի Ցառաջաբանի Բ․ Ախրապատնին եղած խոստմանց այն մասունքն եւս, որք Ցանկին մէջ նշանակուած հինգ (ԻԱ․—ԻԵ․) գլուխներով չէին կատարուած. սակայն այս բացատրութեամբ հանդերձ, անլուծանելի առեղծուած կը մնայ չորեքտողեան ոտանաւորին՝ Անֆի—թոյ անդէտին յիշատակարանին մէջ գտնուիլը։

Գ․ Ախրապատին Հաւաքածոյ։ Այսու կոչմամբ կ'իմանանք այն ընդարձակ Գեղագործութիւնն, զոր Ամերտովլաթայ Օֆ—ր քեշկ—նեան կոչուած մեծ բժշկարանին Լէ—կ—րդ խմբագր—նեան Բ․ Բաժնին կից ի մէջ կը բերեն շատ ձեռագիրք։ Բայց կարեւոր կը համարինք յառաջ լիով ծանօթացընել նոյն Բժշկապետին մի Պիտառութիւնն, որ Ախրապատնիս հետ կապակցութիւն ունի։

Այս համառօտ՝ բայց հմտական եւ հետաքըրքրական գրութեան վերնագիրն է՝ Վ—ան Նէ էք էդէ—Ախր—դ—թէն, է— ք—ղ—մ խր—թ։ Ցո——Ջ—ք—Ն——Նե—Ն

Ախրապատինին[1]։ Իսկ Հաւաքածոյիս հետ ունեցած կապակցութիւնը կը հայի սոյն Դեղագործութեան սկիզբը գտնուող Յառաջաբանական կտորին։

*
* *

Ամասիացի բժշկապետին անունը կրող յիշեալ Պիտառութիւնն հինգ մաս կը բաժնուի։ — Ա. Մասին մէջ, որ կրնայ իբրեւ ծրագիր համարուիլ բովանդակ գրութեան, կը մեկնէ Հեղինակն թէ ինչու կարելի չէ յամենայն դէպս մեկնակ պարզ դեղերով ստածել կամ դարմանել ամէն տեսակ ցաւ եւ հիւանդութիւն, այլ սովորաբար հարկաւոր է զանազան պարզ դեղերու խառնուրդ գործածել՝ ըստ իւրաքանչիւր պիտոյից եւ այլեւայլ հանգամանաց հիւանդին եւ հիւանդութեան։ Իսկ մնացեալ չորս մասունքն, մանաւանդ երկրորդն՝ որ այլ մասերէն շատ աւելի ընդարձակ եւ բուն էական մասն է բոլորին, կրնայ կոչուիլ՝ Լուսաբանութիւն կամ ընդլայնումն այս ծրագրին։ — Կը դնենք աստ նախ՝ Ա. Մասին իբր կէսն։

Բ.

Խօսք բժշկապետացն թէ յէր եղեւ Աղրապատինն։ — Յառաջն յիշենք զերկու ազգ փորձողնին, որ է Թաճրիպային տէրքն. եւ յետոյ յիշենք զկարծողքն, որ է ղիասին տէրքն։ Եւ այնոնք որ փորձողքն էին ի բժշկապետացն՝ մէկ մէկ դեղերով կու գործէին, եւ յետոյ գրեցին խառնուած դեղեր, որ այն բժշկապետքն իւրեանց բառովն հին բժշկարան ասեն, եւ Բաքարատ կու բանէր։ Եւ այս այսպէս է՝ որ զայս դեղերն յերազն տեսաւ, եւ ոմանք միաբանեցան եւ փորձելով գտան զօգտութիւնն։ Եւ խառնուած դեղերն այն դեղերն է՝ որ բժշկապետքն ի մէկ մէկ դեղերուն յիրար խառնէր եւ շինէր են, եւ զօգտութիւնն փորձելէն։ Եւ

1 Ամիրտովլաթայ այս հետաքրքրական գրութիւնն պահուած է Փարիզի Ազգային Մտնդրնին Թ. 108 ձեռագրին մէջ, որ ութածալ նոտրգիր ընդօրինակութիւն մի է 88 թղթով, որոց վերջին 8 թղթերը կը բանէ յիշեալ գրութիւնս։ — (Տես նաեւ ի յաջորդսն նոյն Մտնդրնին Թ. 106, A. ձեռագրին առթիւ դրուած ծանօթութիւնն։)

այս այսպէս է՝ որ մէկ քանի մէկ մէկ դեղեր, որ ի մէկ քանի հիւընդին փորձեր էին, (եւ) զայն յիրար խառնեցին եւ շինեցին, եւ քանի մի ցեղ խառնուած հիւանդութեան փորձեցին, եւ ինքն օգտեցո։

Բ. Մասն՝ ի սկզբան անդ որպէս թէ գրութեան բաժանումը կը ծանուցանէ. եւ ապա միեւնոյն ոճով խօսքն յառաջ կը տանի։ — Ահա սոյն մասին սկզբնաւորութիւնն։

Գ.

Երկրորդ յիշենք զայն պատճառնին, որ իր հասկնալն պիտեւան է վասն չորս պատճառի։ Ա. այն է՝ որ բնութիւնք հիւանդնուն հակառակ է. եւ Բ. այն է՝ որ հիւընդին զօդուածին ձեւն մէկ մէկի հակառակ է. եւ Գ. այն է՝ որ մէկ մէկ դեղերուն ուժն այլ հակառակ է մէկ մէկի. եւ Դ. այն է՝ որ դեղեր շինեն որ ի հիւանդին ի ստածումն շատ ի գործ կու անցնի եւ մահացու դեղոցն զէն կու առնէ եւ զգազանահարին զչարութիւնն կու խափանէ։ Բայց զայս դեղրանքն յիրար խառնեցին՝ որ բնութիւնք մարդկային մէկ մէկի հակառակ են, եւ հանց հիւանդ մի կայ՝ որ հով է եւ տաք. բայց աստիճանն դեղին կամ հիւանդին չիմացուաւ, եւ բնութիւն հիւանդին եւ դեղին հաւասար չեղաւ, եւ ելան բժշկապետքն դեղմն այլ խառնեցին՝ վասն հաւասար գալու համար հիւընդին բնութեանն։

Այս Բ. Մասին վերջերն Պիտառութիւնն ունի կարճառօտ Հտծ մի. եւ այսու կը սկսի Հաւաքածոյին Յառաջաբանական կտորին հետ ունեցած կապակցութիւնն։ — Որովհետեւ առաջնոյն այս կարճառօտ Հտծն ամենայն ճշդութեամբ կը գտնուի երկրորդին «ներդբ», կը դնենք աստ Պիտառութեան ընթերցուածն, իսկ Հաւաքածոյին մանր տարբերութիւնքն ի ծանօթութեան կը նշանակենք։

Դ.

Այլ եւ զայս գիտացիր[1] որ զայս դեղրունքս կէս մի փորձելով գտան, եւ կէս մի յերազի տեսան եւ իմացան եւ ստուգեցին, եւ կէս մի կարծեօք[2] իմացան իմաստութեամբ զաստիճանն եւ զխառնուիլն որ խառնեն զդեղրանքն, որ զմէկմէկի ուժ յաւելցնէ եւ կամ

զսուր դեղերոյն զահրն պակսեցնէ, որ զէն չի առնէ[3]: Զի ցաւեր կան որ հակառակ են, որ լինի ի տաքութենէ եւ ի չորութենէ. զայն պիտոր[4] հովցնեն զտաքութիւնն, եւ զչորութիւնն գիճացնեն, որ հաւասարի տարերաց[5]: Կամ լինի ի հովութենէ եւ ի գիճութենէ, պիտի որ տաքցնեն եւ պնտեն: Թէ հով եւ չոր է[6]՝ դեղն տաք եւ գէճ պիտի. թէ[7] տաք եւ գէճ է՝ հովցնել պիտի եւ զգիճութիւնն պակսեցնել[8]: Եւ դեղերուն ուժն այլ այս չորս մաղձէս է եւ չորս տարերաց, եւ չորս տարածայէ եւ մէկ մէկի հակառակ է: Այսպէս՝ զոր յիշեցի՝ պարտ է գիտել եւ փորձել զբնութիւնն, եւ զպատճառ[9] ցաւոյն իմանալ եւ զցաւն հակառակովն բժշկ(ել):

[1] Այլ եւ գիտացիր: — [2] Եւ կէս կարծեաք: — [3] Զառնէ: — [4] Պիտի որ: — [5] Երկու ընթերցուածն ալ այսպէս՝ տարերաց. թերեւս պէտք է փոխել եւ ընել՝ էլէրաց: — [6] Եթէ հով է եւ չոր է: — [7] Եւ թէ: — [8] Պակասեցնել: — [9] Պատճառն:

Հաւաքածոյին Ցառաջաբանական կտորն այս կարճառօտ Հտծին կը կցէ Պիտառութեան Բ. Մասին նոյն Հտծէն յառաջ դրածն: Բայց երկուքին ընթերցուածքն ոչ միայն նոյն չեն, այլ եւ ոչ տարբերութիւնք միակերպ են. ուրեք ուրեք գրեթէ բառական նոյնութիւն կայ, այլուր միեւնոյն իմաստներն զատ զատ բառերով եւ իրարմէ տարբեր եղանակաւ բացատրուած են, տեղ տեղ ալ Հաւաքածոյին ընթերցուածն համառօտագոյն է քան զՊիտառութեանն: Այս ամենայն կը տեսնուի հետեւեալ համեմատական Օրինակին մէջ:

Ե.

Ըստ ընթերց. Պիտառ.

...Եւ քեզ օրինակ մի այլ, որ մարդ խիստ ցաւ մի ունենայ կամ հիւանդութիւն մի որ ի տաքութենէ կամ ի հովութենէ եւ կամ ի յայլ ցեղ իրաց, եւ իմանաս որ մէկ դեղն նորա չօգտէ եւ չի կարէ դարձներ (զ)ցաւն, նա չպիտի որ անճարակի. քանի մի

Ըստ ընթերց. Հաւաքած.

...Եւ թէ ցաւ մի լինի կամ հիւանդութիւն մի, որ ի տաքութենէ կամ ի հովութենէ, եւ իմանաս որ մէկ դեղն նորա չի օգտէ, նա չի պիտի որ անճարակի, քանի մի դեղ յիրար խառնէ, եւ ներհակ լինի ան ցաւուն եւ դարձնէ զհիւանդութիւն: Եւ այս

դեղ յիրար՝ խառնեն, եւ ներհակ լինի այն ցաւուն եւ օգտէ հիւանդին բնութեանն։ Եւ այս դեղերս որ միանան՝ ուժոմնան եւ ընկերեն մէկ մէկի եւ դարձնեն զհիւանդութիւնն։ Եւ այս դեղերուս խառնուիլն ի զօդուածոց հաշուոմն այլ ի գործ կու արկանեն. հանց որ զօդուած մն լինի որ ի ստոմաքէն հեռու լինի, որպէս բուշտն եւ երիկամն եւ Թոքք, եւ իւր հեռութեան պատճառոմն դեղին ուժն ի յայն տեղն յուշ կու հասնի։ Բայց անճարակ զայն դեղերն որ այն զօդուածին համար է շինած՝ զայն յայն տեղն տանի ուժով, եւ դեղմն այլ որ զուժն պահէ, եւ այլ զօդուածքն զդեղին զուժն չմարսէ, եւ խափանի ուժն եւ յայն տեղն չհասնի։ Բայց այն դեղերն որ շուտով ի ցաւուն տեղն հասնի, որպէս քարոսին հունդն եւ սալիխան եւ անիսոնն, եւ այսոք են ընկերող դեղերն, եւ այսոնց բժշկապետքն մուպատրաղ ասեն, որ Թարգմանի ընկերող։ Եւ այն որ զդեղերուն ուժն պահէ, եւ այլ զօդուածքն զինքն չի մարսէ, որպէս աֆիոնն եւ աղուեշքենկին հունդն եւ լուֆահին տակին կեղեւն։ Եւ այն զօդուածքն որ՝ որպէս ստամոքն եւ լերդն, եւ իր ստածումն հալող դեղերով լինի, եւ զայն հալող դեղերն ի կապող դեղն խառնես եւ առնուս, եւ անուշ որպէս մազտաքէն եւ տարչինին որ յիրար խառնի, որ զզօդուածքն ի յուժէ չիձգէ։ Եւ Թէ հանց զօդուած մն լինի՝ որ դեղին զօրութիւնն ի յայն զօդուածքն հասնի եւ քիչ մի ի հօն կենայ, որ այն դեղին զօրութիւնն կենալոմն ներգործէ, որ կատարի բանն„ . . . ։ *

դեղերոյս խառնուիլն ի զօդուածոցն ի հաշիւն այլ ի գործ կու արկանեն, հանց որ զօդուած մի լինի որ ի ստամոքէն հեռու լինի, որպէս բուշտն եւ երիկամն եւ Թոքն, հանց դեղ մի այլ պիտի, որ զդեղին ուժն պահէ որ այլ զօդվածն զնորա ուժն չի մարսէ եւ խափանէ, որ դեղին ուժն ի տեղն հասնի. որպէս քարօսի հունդն եւ սալիխանն եւ անիսոն, եւ այսոք են ընկերող դեղերն։ Եւ այն որ զդեղերուն ուժն պահէ, որ այլ զօդվածք զինք չի մարսէ, որպէս աֆիոնն եւ աղուէշքանկին հունդն եւ լուֆահին տակին կեղեւն։ Եւ այն զօդվածքն, որպէս ստամոքն եւ լերդն, ստածումն որպէս զհալող դեղերն ի կապող դեղերն խառնես, որպէս մազտաքէն եւ զտարչինն յիրար խառնէ, որ զօդվածքն ի յուժէն չի ձգէ։ Եւ Թէ հանց զօդվածք լինի որ դեղին զօրութիւնն ի յայն զօդվածքն հասնի եւ քիչ մի անդ կենայ, որ դեղին զօրութիւնն կենալոմն ներգործէ, որ կատարի բանն...։

*Բառական համարելով այսչափս նկատմամբ կապակցութեան երկու գրութեանց, որոց մէջ այս յիշատակուածներէն եւ Ե. Օրինակին շարունակութենէն զատ՝ գրեթէ նոյնութեան կամ նմանութեան ոչինչ այլ նշմարանք կայ, — կը վերջաւորենք ի մէջ բերելով Պիտառութեան յետին տողերն, որ կրնայ Յիշատակարան կոչուիլ նոյն գրութեան ։*

## Զ.

*Եւ կատարեցաւ Առաջաբանութիւն Աղրապատին կամօքն Աստուծոյ։ Եւ յիշեմ մէկ քանի բան մի այլ՝ թէ պատճառն ինչ է որ այս Առաջաբանութիւնս գրեցաւ ։ — Տեառ ես անպիտան ծառայ Աստուծոյ Ամիրտօլուաթս ի թուականութեանս Հայոց ՋԼ. Ապրիլ ամսոյ ի Զ. ի տօնի աւետման սրբոհոյ Աստուածածնին ի մայրաքաղաքն ի Կոստանդինուպոլիս, եւ գտաք շատ Աղրապատիննի, որ գրած էր Հայոց լեզուով, եւ զինչ որ կու յիշէին զայս շինուած իրացս զպատճառն չգիտէին՝ թէ այս յէր էր, եւ զդեղերուն թրապրալն չգիտէին, եւ զինչ որ կու շինուէր՝ չէր աղէկ, ի գործն պակասութիւն կայր, եւ չէին գիտել զայս Առաջաբանութիւնս. եւ մեք գրեցաք եւ յայտնեցաք, զի ով որ ի յայս արուեստս հետեւի՝ նա իւր շինած դեղերն պակասութիւն չգտուի կամօքն Աստուծոյ։ Եւ զիս ճառահ պաշի եւ Պօստանճի պաշի յիշեցէք ի Տէր ։*

*Անշուշտ ցանկալի է իմանալ թէ ուստի պատճառած եւ ինչպէս մուտ գտած է այս նմանութիւն եւ ըստմասնեայ նոյնութիւն ի մէջ Պիտառութեան եւ ի մէջ Հաւաքածոյին Յառաջաբանական կտորին ։ — Թէպէտ շատ դժուար է որոշակի եւ վճռողաբար բան մի հաստատել, սակայն յուսանք որ յանդըգնութիւն չի համարուիր յայտնել հետեւեալ երեք ԷՆԲ––ԴՐ––ԲԻ–Ն+Ն, որ կարծենք՝ բնական են ։ Ա. կամ Հաւաքածոյ Ախրապատնին հաւաքողն (հաւաքողներէն մին, եթէ աւելի են քան զմի՝ ինչպէս հաւանական կ՚երեւայ,) զՊիտառութիւնն առած, եւ մասամբ համառօտելով՝ մասամբ բառ առ բառ օրինակելով, Հաւաքածոյին սկիզբը փոխադրած է ։ —*

*Բ. կամ Ամիրտովլաթ նոյն Հաւաքածոյն առջեւն ունենալով, ընդլայնած եւ զիւր Պիտառութիւնն յօրինած է։ — Գ. կամ ի հին ժամանակաց կայր այնպիսի գրութիւն մի, զոր առաջինն համառօտած է եւ երկրորդն ընդարձակած։ — Գուցէ գտնուի Դ. կամ մ՚ալ յաւելցընող, որ ըսէ թէ Անանուն ումն Հաւաքածոյին Յառաջաբանական կտորէն, նոյնին ակնաղբիւրէն եւ Ամիրտովլաթայ զանազան գրութիւններէն ժողված եւ զՊիտառութիւնն յերեւան հանած է. եւ այս անհարազատ գրուածոյն ճոխութիւն տալու համար՝ Ամասիացի բժշկապետին հռչակաւոր անուամբը զարդարած է։ — Թողլով Մասնագիտաց որոշել այս երեք — եւ եթէ կամին՝ չորս — ենթադրութեանց հաւանականութեան չափն, կ՚անցնինք մանրամասնութեանց Հաւաքածոյին։*

*Գ. Ախրապատին Հաւաքածոյ։ — Գրուածոյս մանրամասնութեանց խուզարկութիւնը պատշաճ կարգաւ կատարելու համար, պէտք է յառաջ քան զամենայն որոնենք թէ ինչպէս, երբ եւ որո՛յ ձեռօք գոյութիւն առած է. պարզ խօսելով՝ ջանանք իմանալ թէ ունի՞ որոշ հեղինակ եւ ո՛վ է։*

*Կը գուշակենք որ զարմանք, եթէ չըսենք՝ ապշութիւն, պիտի պատճառէ այս մեր սկզբնաւորութիւնս այն Մասնագիտաց, որոց մէջ բաւական տարածեալ կարծիք կայ՝ թէ Ամիրտովլաթայ բազմաբեղուն գրչին արդիւնքն է Ախրապատինս։ Հնար է նաեւ որ այս կարծեաց տէարք աւելորդ եւ անպատշաճ ժամավաճառութիւն համարին խնդիր յարուցանել յայսմ մասին. թերեւս ոմանք իբրեւ նախատինք նկատեն — հռչակաւոր Բժշկապետին անունն ի միակողմն թողլով — ինքնահնար Հաւաքածոյ վերադիր դնելն այնպիսի աշխատասիրութեան, որ իւր մատենագրական պսակին ազնուագոյն գոհարն կրնար կոչուիլ։*

Ցարգելով հանդերձ ամասիացի Բժշկապետին պատուոյն նախանձախնդրաց կարծիքն, կ'աղաչենք ի կախ պահել առ սակաւ մի իրենց դատաստանն, յուսալով որ երբ յառաջ բերուելու պատճառներն անկողմնակալութեամբ կշռեն, կը տեսնեն թէ Գ. Ախրապատինս չէ եւ չի կրնար ըլլալ միակ հեղինակի գործ, ոչ Ամիրտովլաթայ եւ ոչ այլոյ ուրուք, եւ թէ Հ——ա+աֆոյ կամ այնմ նման վերադրէ պատշաճագոյն անուն չի կրնար տրուիլ գրութեանս։

— Ներուի մեզի՝ պատճառաբանութեանցս ձեռնամուխ չեղած՝ երկու խօսք ալ յաւելուլ աստ թէ ուստի ծագած կը համարինք այն կարծիքն, որով հռչակաւոր Բժշկապետիս կ'ընծայուի յիշեալ գրութիւնս։ Ցայտնի կ'երեւայ թէ գլխաւոր հիմն այն է՝ որ սոյն ընդարձակ Պեղագրուգութիւն կը գտնուի ընդօրինակեալ ի վերջն այն ձեռագրաց՝ որոց ամէն նախընթաց մասունք նոյն Ամիրտովլաթայ սեպհական երկասիրութիւնք են, այս ինքն՝ իւր Մեծ բժշկարանին։ Զայս գլխաւոր հիմն ընականապէս առաւել եւս պիտի հաստատէր կապակցութիւնն զոր տեսանք թէ կայ Ախրապատնիս յառաջաբանական կտորին եւ այն Պիտառութեան մէջ (Վ—ոն Բէ էր եղէ— Ախրապատին) որ զմեզ ի նախընթաց էջսն այնչափ զբաղեցուց։ —

Մեր պատճառները բացատրելու համար՝ պէտք է նախ քննենք թէ կա՞ն արդեօք հին ու միջին բժշկական գրուածոց մէջ յիշատակութիւնք, որ եթէ ոչ պայծառ՝ գոնեայ աղօտ լոյս մատակարարեն գրութեանս հեղինակին կամ ժամանակին վրայ. եւ երկրորդ թէ այս նկատմամբ ինչ կը ցուցընեն գործոյն ներքին հանգամանքն։

Ա. Մեր տեսած ձեռագրաց մէջ՝ Գ. Ախրապատնին հեղինակին կամ ժամանակին նկատմամբ՝ ոչ ուրեք գտած ենք որոշ եւ ուղղակի յիշատակութիւն. ընդ հակառակն՝ բազմաթիւ այն-

պիսի անուղղակի յիշատակութեանց հանդիպած ենք, որք մեծապէս կ'օգնեն իրաց որպիսութիւնն յերեւան հանելու եւ խնդիրը գոհացուցիչ կերպով լուծելու: — Յիշատակութիւնք որ ըսինք՝ յայտնի կը ցուցընեն թէ հին ժամանակներէ վեր ազգային բժշկաց ծանօթ էին զանազան Դեղագործական գրութիւնք՝ զոր սովորաբար Աւրաղափէն եւ երբեմն նաեւ (Հին) Բժշկարան կը կոչեն, առանց որոշ հեղինակի անուն տալու:

Այս նկատմամբ մտադրութեան արժանի են Ամիրտովլաթայ այն վկայութիւնք զոր արդէն մի անգամ ի մէջ բերած ենք: Ասոնցմէ միոյն մէջ՝ իրմէ կանխագոյն ապրող հայ բժշկաց անուանքն մի ըստ միոջէ յիշատակելով, անոնց համար կ'ըսէ թէ "Շատ գրեանք շինել էին վասն դեղերան զօրութեանն եւ օգտութեանն": Այս խօսքէն եւ անոր շարունակութենէն (տես 21, Բ. էջ 365) յայտնապէս կ'իմացուի թէ յիշած հայ բժշկաց գրեանն չէին այլ ինչ՝ բայց եթէ զանազան Աւրապատինք: Բաց յայսմանէ, սակաւ մի յառաջ՝ վերոյիշեալ Պիտառութեան վերջաբանին կամ յիշատակարանին մէջ՝ տեսանք յիշատակածն, թէ "Գտաք (ի Կոստանդինուպոլիս) շատ Աղրապատինի որ գրած էր Հայոց լեզուով": (Տես Հածիս Զ. Օր:) Դարձեալ նոյն Պիտառութեան սկիզբները կը գրէ այսպէս. "Այնոնք որ փորձողքն էին ի բժշկապետացն . . . գրեցին խառնուած դեղեր, որ . . . իւրեանց բառովն՝ Հին Բժշկարան ասեն": (Տես Բ. Օր:) Եւ թէպէտ այս յետին խօսքն հաւանօրէն օտարալեզու գրութիւն կ'ակնարկէ. սակայն ո՞վ կրնայ հաստատել թէ այն եւս ազգայնացած չէ թարգմանութեամբ: Վերջապէս իւր Մեծ բժշկարանին Բ. Բաժնին մէջ ի Հածին Մանախուլիայի, Ռուբասայ գեղեցիկ կտորէն սակաւ մի վերջը կը յանձնէ ընթերցողին դիմել իբրեւ ի ծանօթ գրութիւն՝ անանուն Աւրապատնի մի, ըսելով. "Գնա գիտ ի

Ախրապատինն ի Մանախուլիայի համարն, եւ արա զդեղն զոր գրած է„: — Նոյն յանձնարարութիւնը կ'ընէ իւր բժշկարանին մէջ նաեւ Ասար Սեբաստացի, որ կը գրէ. “Եւ զոր ինչ եւ պիտոյ է՝ տես յԱխրապատինն զինչ որ գրած է վասն Մանախուլիային եւ տուր„: (Հտծ. ԴԵ:)

Սոյնօրինակ յիշատակութիւնք կան ի հնագոյն բժշկարանս եւս: Յովհաննէս բժիշկն իւր յատուկ Ախրապատնին եւ բժշկարանին մէջ շատ անգամ ի վկայութիւն կը կոչէ նոյնպիսի անորոշ եւ անանուն գրութիւններ՝ Ախրապատին եւ երբեմն Բժշկարան կոչմամբ: Աւասիկ քանի մի օրինակ. “Խուրս ծորի ի Խրապատէն փոխած...„: — “Ինքն առաջին հայն է յԱխրապատնէն„: — “...Որպէս Ախրապատինն կու խրատէ„: — “...Զինչ ցեղ բժշկարանն կու տայ խրատ„: — “Որպէս ի բժշկարանն է յիշած„: — “Ի Խրապատինն եւ ի բժշկարաներն լիմաւի (= լիմօնի) շարպին նշանքտ այտ կերպովտ է գրած...„: Թէ այս՝ Ախրապատին եւ բժշկարան կոչմամբ յիշատակուած գրութիւնք իւր (Յովհաննու բժշկին) սեպհական Ախրապատնէն եւ բժշկարանէն զատ են՝ անտի յայտ է որ իրենները միշտ կը նշանակէ իւրաքանչիւր համարովն, զ. օ. “Զայս մածունս գիտ ի մածուններին Է. համարն„: — “Տէմէտ շինէ... զայն ազգ տէմէտն որ յԱխրապատինն է գրած յԹ. համարն„: Եւ կամ այլ եղանակաւ կը յայտնէ զ. օ. “Որպէս գրեցաք այլ ի յառաջ ի ճուլապին շինելն„:

Բաւական են այսչափ յիշատակութիւնք յապացոյց գոյութեան անանուն Ախրապատնից, որոց համար ըսինք թէ կ'օգնեն ի լուծումն խնդրոյ հեղինակի եւ ժամանակի Գ. Ախրապատնիս: Հիմնեալ այս յիշատակութեանց եւ այլ նմանեաց վրայ, կը համարձակինք հաստատել թէ Սոյն ընդարձակ Գեղագործութիւն ոչ այլ ինչ է՝ բայց եթէ գումարութիւն քաղեալ այն անանուն Ախ-

րապատիններէն կամ Դեղագործական գրութիւններէն, որ հին ժամանակներէ վեր կը գտնուէին յազգին եւ ծանօթ էին բժշկաց։ Զայն եւս հաւանական կը կարծենք որ այս գործողութիւն ոչ եթէ ի միում ժամանակի միահաղոյն կատարուած է եւ ոչ միակ անձի ձեռօք, այլ հետզհետէ եւ զանազան անձանց — բժշկաց եւ ընդօրինակողաց — միջոցաւ. այնպէս որ Ամիրտովլաթայ Ախրապատնէն իսկ, թերեւս նաեւ իրեն ժամանակակից կամ իրմէ սակաւ մի յետնագոյն բժշկաց Դեղագործական գրութիւններէն բաւական թուով Դեղագիրք մէջն առնուած են։ — Կարծենք այսու կ'արդարանայ Հաստուածոյ վերադիրն զոր պատշաճ համարեցանք յատկացընել այս Գ. Ախրապատնիս։ — Յաջորդօքն առաւել եւս կը հաստատուին ասացեալքս։

Բ. Ներքին հանգամանք գրուածոյն։ — Երկու տեսակէտէ կրնան հետազօտուիլ այս հանգամանք։ 1. Նիւթական կազմակերպութեան հայեցմամբ. 2. Բանասիրական կամ լեզուաբանական հայեցմամբ։

1. Հաւաքածոյին կազմակերպութիւնն հիմնովին իմանալու համար՝ պէտք է միտ դնել մեծ տարբերութեանն զոր ունի նախընթաց երկու Ախրապատիններէն։ Ա. եւ Բ. Ախրապատինք զանազան Հտծ կամ Գլուխ (Դուռն) բաժնուած են, եւ միտ դրուած չէ այբուբենական կարգին։ — Ընդհակառակն՝ ի Հաւաքածոյին չկայ այսպիսի բաժանումն, այլ ԷՖՐ ՐԷ միայն այբուբենական կարգին նայուած է, այս ինքն՝ Դեղագրի մի անուան առաջին բառին Այբով կամ Բենով... սկսելուն, եւ բովանդակ գրութիւնն ծայրէ ի ծայր այս կերպով յառաջ կ'երթայ։

Ըսինք՝ ԷՖՐ ՐԷ... վասն զի շատ տեղ խառնակ եւ անկանոն է այբուբենական կարգն։ Միեւնոյն տեսակի, զ. օ. Լիզելիքի (= Լաուխի) տեսակին վերաբերեալ Դեղագիրք երկուքի բաժ-

նուած են՝ երկու բաժինքն ընդհատուելով ոչ միայն Լինով սկսած զատ տեսակաց Դեղագրովք, այլ նաեւ քանի մի այլատեսակ Դեղագրովք որ Խէով կը սկսին: Առաւել եւս խառնակեալ է Մաճունի Դեղագրաց շարքն, որ երեք չորս անգամ կ'ընդհատի այնպիսի եղանակներով, որոցմէ յայտնի կը տեսնուի թէ խառնակութեան կամ ընդհատման պատճառն է՝ Ախրապատնիս Հաւաքածոյ լինելն:

Ի մեկնութիւն՝ դնենք քանի մի օրինակ: Հաւաքողն՝ առժամն ի ձեռին ունեցած գրութեան մի մէջ՝ կը հանի այնպիսի Մաճունի որուն կը յաջորդէ այլ տեսակաց, զ. օ. Շարապի, Խուռսի, ... վերաբերեալ Դեղագիր, թէ ունեցեր է կապակցութիւն նախընթաց Մաճունին հետ՝ թէ ոչ, թէ Մենով սկսեր է՝ թէ այլ գրով, այն հոգ չէ, նոյն Դեղագիրն եւս ամենայն ճշդութեամբ կ'ընդօրինակէ այնպէս ինչպէս կը գտնէ միւս ձեռագրին մէջ: Այսպէս՝ Մաճուն Մանախուլիայի կոչուած ՃԽԶ. համարագրով Դեղագրէն ետեւ՝ կու գան երկու ըմպելիք ՃԽԷ. համարագրով, որոց երկուքին միակ վերնագիրն է՝ Ա՛յլ դեղ Մանախուլիայի լուծման, որ խմելոյ տան: Ասոնց կից դրուած երկու Մաճուններէ վերջը կը յաջորդեն չորս Դեղագիրք, որոց համարագրերն են ՃԾ. — ՃԾԳ. եւ որոց վերնագիրք են՝ Ա՛յլ ըմպելի օշնդրի, որ օգտէ զմատի...: — Ա՛յլ շարապ լերդի եւ փայծղան...: — Նշանք սպեղնի ըմպելոյ..., որ օգտակար է ամենայն հով ցաւու...: — Ա՛յլ նշանք սպեղնի ըմպելոյ:

Կարծենք թէ այսպիսի եւ ասոնց նման խառնակութիւնք եւ կանոնաւոր շարադասութեան ընդհատութիւնք, որ շատ յաճախ կը տեսնուին Ախրապատնիս մէջ, բաւական են համոզուելու թէ Հաւաքածոյ է Ախրապատինս, եւ թէ այս ամենայն՝ զանազան գրութիւններէ առնուած ըլլալէն պատճառած է: — Բայց ի հաստատութիւն՝ բերենք այլ կերպ ապացոյց մի եւս: Դեղագրաց սկիզբը

գրուած Մօրհամ բառն, հետզհետէ բերուած սակաւաւոր կամ աւելի շատ Դեղագրաց վրայ՝ փոխն ի փոխ՝ է զի Մօրհամ գրուած է եւ է զի Մօրհամ, անշուշտ հետեւելով այն գրութեանց որոցմէ առնուած է իւրաքանչիւրն։ Նոյնը կը տեսնուի նաեւ Մատպուխ բառին վրայ, որ է զի Մօտպուխ՝ է զի Մ-տպուխ գրուած է։

Նախընթաց երկուքին եւ այս Գ. Ախրապատնին մէջ կայ նաեւ այլ մեծ տարբերութիւն ի մասին թուոյ Դեղագրաց։ — Ա. Ախրապատնին 200էն նուազ՝ Բ.ին իբր 370 Դեղագրաց դիմաց, Հաւաքածոյս՝ մերձաւորաբար հաշուելով՝ 1000էն աւելի պիտի ունենայ։ Ամենէն մեծագոյն տարբերութիւնը կը տեսնուի Մաճուններու տեսակին մէջ, ուր Ա.ին 7՝ Բ.ին 19 Դեղագրաց դիմաց՝ Գ.ին մէջ իբր 100 Դեղագիրք կը գտնուին։ Ոչ այնչափ՝ սակայն մեծ է նաեւ խտիր թուոյ Դեղագրաց Խուրսի տեսակին (Ա. 18, Բ. 14, Գ. 80)․ նոյնպէս եւս Ղարապի տեսակիններուն (Ա. 19, Բ. 14, Գ. 65)։ Թուոյ Դեղագրաց այս մեծ խտիրն անտի կը ծագի որ — հակառակ Ա. եւ Բ. Ախրապատնից, որք սովորաբար մի միայն Դեղագիր ունին՝ միեւնոյն բաղադրութեամբ, — Հաւաքածոյին մէջստէպ կը հանդիպին չորս հինգ Դեղագիրք միեւնոյն բաղադրիչ մասերով եւ կամ սակաւ տարբերութեամբ, բայց՝ զատ զատ ոճով եւ լեզուաւ, ինչպէս արդ կը տեսնենք։

2. Բանասիրական կամ լեզուաբանական հանգամանք Հաւաքածոյ Ախրապատնիս։ Որչափ եւ մեծ համարուին տարբերութիւնք որ կան Գ. Ախրապատնիս եւ երկու Նախընթացներուն մէջ հայեցմամբ նիւթական կազմակերպութեան, անհամեմատ մեծագոյն է խտիրն՝ բանասիրական կամ լեզուաբանական հայեցմամբ։ Նախընթաց երկուքէն իւրաքանչիւրն ունի իւր սեպհական ոճն ու լեզուն, զոր միշտ անփոփոխ եւ հաստատուն կը

պահէ ի բովանդակ գրութեան, թող աստ անդ նշմարուող մանր մանր շեղումներն՝ որ անշուշտ կամ ընդօրինակողք մուծած են, կամ այլ որպիսի եւ իցէ անծանօթ պատճառէ մուտ գտած։

Ընդ հակառակն՝ լեզու այս երրորդին չունի ամենեւին միակերպութիւն, այլ ծայրէ ի ծայր իրարմէ տարբեր լեզուներով կտորներ կը հանէ առաջի ընթերցողին, եւ է որպէս թէ Հատընտիր ժողովածոյք մի, յորում նախնեաց ռամկօրէն գրականութեան համօրէն լեզուական պէսպիսութիւնք կրնան տեսնուիլ, յայտնի է՝ այնու սահմանաւոր չափով զոր կը ներէ նիւթոյն միօրինակութիւնն։ Մեզի ծանօթ գրութիւններէ սկսելով, ոչ ցանցառ կը հանդիպին Ախրապատնիս մէջ Գեղագիրք Ա. (1438ի) — ճշգրտագոյն խօսելով՝ անոր սկզբնագրին (1294ի) — Ախրապատնին լեզուաւ, յաճախագոյն եւս Բ. (Ամիրտովլաթայ) Ախրապատնին լեզուաւ։ Աւելորդ է խուզարկել այս լեզուներուն ներկայացուցչաց ի սոյն գրութեան հիւրընկալուելուն պատճառն. միակ պատճառն՝ Հաւաքածոյ լինելն է, այնու միայն կը մեկնուի, որ զանազան հին եւ նոր Գեղագործական գրուածոց գումարութիւնն է։ — Ահաւասիկ քանի մի համեմատական Օրինակք, որոցմէ կը տեսնուի թէ իրօք եւ արդեամբք շատ կտորներ Ա. եւ Բ. Ախրապատնէն առնուած են ի Գ. Ախրապատինն։

Համեմատական Օրինակք յԱ. եւ ի Գ. Ախրապատնից։

Է.

Այնչափ նմանութիւն՝ մանաւանդ թէ նոյնութիւն կայ թէ՛ այս եւ թէ՛ յաջորդ Ը. եւ Թ. Օրինակներուն ընթերցուածոց մէջ, որ զԱ.ին ընթերցուածն եւեթ կը բերենք՝ ի ծանօթութեան դնելով Գ.ին ընթերցուածոյն աննշանակ տար-

բերութիւնքն, որք ինքնին մատնանիշ կ՚ընեն զընթերցուած 1294ի ձեռագրին[1]:

Ըստ ընթերցուածոյ Ախրապատնին 1438ի:

Յառաջ զհամպի արէճն գրենք, որ է օգտակար[1] գլխոյ որ ցաւի եւ աչից որ վատ տեսնու[2]. եւ թէ ի ցաւքն տաս զինք[3] եւ թէ՛ յառողջութիւնն՝[4] շատ օգտէ. փորձած է[5]: — Առ թրպութ կէս դրամ եւ խարիկոն կէս մթխալ, քապուլի հալիլա ի կտէն հանած[6] մէկ դրամ, սապռ դրամ մէկ ու կէս, քար լաճվարդ[7] կէս մթխալ, մազտաքէ եւ բռզխանի ունդ երկու երկու դանկ, ռէվանդ դրամ մէկուկէս, սաւլընջան մթխալ մէկուկէս: Զամէնտ աղա եւ մաղէ, եւ հով ջրով շաղղէ, եւ ի պղպղի չափ հապեր[8] արա. եւ թէ մարդն կապընութիւն լինի՝ կէս դանկ սակամունի լից[9] ի ներս, եւ պատրաստ տար[10] զմարդն՝ որպէս դեղի[11] բռսամ է, եւ յիրեկունն տուր որ ի բերանն ձգէ[12], եւ ի վերայ հով ջուր առնու, որ դդեղն ի վայր տանի: Եւ զայտ հապտ մէկ աշունն տուր եւ մէկ գարունն. փորձիւ է[13]:

[1] Հապի արէճն որ է օգտակար: — [2] Տեսանէ: — [3] Եթէ ի ցաւիդ տաս զինքդ: — [4] Առողջութեան: — [5] Զի փորձած է: [6] Սրբած: [7] Լազվարդ քար: — [8] Հատեր: — [9] Արկ: — [10] Արա: — [11] Այլ դեղի: — [12] Երեկունն տուր որ ձգէ ի բերանն: — [13] Զի փորձած է:

Բ.

Մտպուխ թեթեւ եւ օգտակար, զոր գրեաց Յեսսէ բժիշկն Գրիգորոյ Վահրամայ որդւոյն: Առ քապուլի հալիլայ ի կորզէն հանած եւ ձարձատած տասն դրամ, բլիլաճ եւ ամլաճ երեք երեք դրամ, բռզխան եւ անիսոն երկու երկու դրամ[1], գարի կեղեւած[2] եւ ծեծած տասն դրամ, չոր մանուշակ դրամ կէս[3], կօդայի ունդ կտուած եւ ծեծած եւ ծոր երկու երկու դրամ, եղերդական ունդ մէկ դրամ, աննուխ հինգ ցախ: Զամէնտ ի մէկ տեղ[4] ի քարեղէն մի լից[5], եւ ի վերայ ջուր լիտր մէկ ու կէս[6], եւ օր մի ի թրջոց[7] պահէ եւ ապա եփէ որ միայն կէս լիտր ի ջրէն[8]: Եւ ապա առ ի կրակէն եւ քամէ: Եւ առ տապաշիր կէս դրամ եւ ռեվանդ դանկ

---

[1] Տարբերութեանցս մեծ մասն անտի պատճառած կ՚երեւայ՝ որ այս եւ յաջորդ երկու Դեղագիրներն 1294ի ձեռագրին ընթերցուածոյն համեմատ յառաջ բերած է Հաւաքածոյն, ուր՝ մեր դրամներն են ըստ ընթերցուածոյ 1438ի ձեռագրին, յորում՝ ինչպէս ծանուցած ենք՝ տեղ տեղ փոփոխութիւններ մուծուած են: Անտարակոյս ոմանք ի տարբերութեանց ընդօրինակողներուն գործն է:

կէս[9], շաքար քսան դրամ։ Զայս դեղերս զամէնս[10] աղա. եւ զմտպուխս տաքցո, եւ ապա զայսոք[11] ի ներս խառնէ, եւ ժամհրօքն խմելոյ տուր, պատրաստութեամբ որպէս այլ դեղերոյն ըռասմ է։

[1]Հաւաքածոյն չունի՝ ըռզխան եւ անիսոն երկու երկու դրամ։ — [2] Գարի փերճոկած։ — [3] Մանիշակ չոր դրամ եւ կէս։ — [4] Գրուած է ի ա՟ տեղ. Հաւաքածոյն կը գրէ՝ ի մի տեղ։ — [5] Արկ։ — [6] Գրուած է ջուր լիտր ա՟ս. Հաւաքածոյն կը գրէ՝ Լիտրուկէս ջուր արկ։ — [7] Ի Թրքմանն։ — [8] Ի ջրեղ։ — [9] Դանկ եւ կէս։ — [10] Զայդեր զամէնդ։ [11] Զայտեր։

## Թ.

Մտպուխ պատրաստութեան[1] զոր արար ծեր բժիշկ[2] պաղտատցին, որ է օգտակար[3] միջացաւի, կոլընջոտի եւ այդպիսի[4] ցաւու։ Պահէ զմարդն[5] պատրաստ վեց օր, եւ յամէն օր տուր[6] որ խմէ սքնճպին մէկ նուկի, երկու նուկի ջրով, եւ ուտելոյ հաւով զօմին[7], եւ գառին մսով զօմին զջուրն. եւ հետ այսոր՝ անուամբ Աստուծոյ տուր[8] զայս մտպուխս։ Առ մեծ հալիլա դեղին, եւ քապուլի հալիլա, եւ սեւ, յամէն մէկէ կէս էքսակ, ամլաճ եւ բլիլայճ՝ զերկու բաժինն, քար լազուարդ[9] եւ ռէվանդ խորասանի ութ ութ կուտ, ծխանելիք եւ մազտաքէ վեց վեց կուտ։ Զամէնտ ծեծէ եւ մաղէ բարակ կտաւով. եւ առ մանուշկի շարապ երկու նուկի. եւ թէ չգտնուս[10] զայտ՝ դու հանչաք շաքրով վարդմարապա առ, եւ լից ի վերայ չորս նուկի ջուր, եւ եփէ որ մնայ երկու նուկի, եւ ապա ի յետ առ եւ քամէ սպրկիկ։ Եւ ապա զաղացած դեղերտ ի ներս խառնէ. եւ լից[11] ի վերայ ճուլապ մէկ նուկի, եւ տուր ժամհրօքն որ խմէ, եւ ի վերայ ի քուն թող չլինի։ Եւ երբ յիտակի ի դեղէն, երկու դրամ պզրղատուն տուր հով ջրով. եւ հետ պահու մի հաց տուր հավու ձագ զօմին եւ կամ գառին մսով եւ խորոված։ Եւ հետ երկու աւուրն ի բաղնիք[12] ած, եւ տասն օր պատրաստ պահէ, եւ յամէն երեք օր ի բաղնիք թող մտէ. օգտէ 13։

[1] Մտպուխ. Նշանք պատրաստութեան։ — [2] Բժիշկն։ — [3] Որ օգտակար է։ [4] Այլ այդպիսի։ — [5] Ցանունն Աստուծոյ պահէ զմարդն։ — [6] Ցամէն օր անօթուց տուր։ — [7] Հաւի զօմին։ — [8] Հետ այն տուր անուամբն Աստուծոյ տուր։ — [9] Եւ բալիլաճ, երկու բաժին թրպուլթ սպիտակ, զերկու բաժին լազուարդ քար։ — [10] Չգտանես։ — [11] Արկ։ — [12] Ի բաղանիս։ [13] Թող ի բաղանիս մտանէ. եւ Աստուծով բարի լինի։

*Համեմատական Օրինակք ի Բ. եւ ի Գ. Ախ-րապատնից:*

ԺԹ.

Ըստ ընթերց. Աթերտոնի .

*Շարապ խնծորի: Օգտէ խիստ խափանակի եւ սրտին վատուժութեանն եւ ստամոքսն ուժովացնէ, եւ որ դարձնէ եւ լուծումն ունայ՝ օգտէ: Առ խնծոր զքաղցրն եւ զմուզն եւ զխոշորն եւ ղաղէկն, զմէջն եւ զկեճեպն ձգէ, եւ ծեծէ ի քարէ սանդ. եւ առ ի ջրէն հինգ լիտր եւ դիր օր մի որ յիստկի. եւ առ շաքար կամ մեղր տասն լիտր, եւ լից ի շաքարեռեցն եւ եռացո յեղմն կրակով եւ զուֆրն քաղէ որ յառաջն աստացաք ու ի ղվամ բեր որ թանձրնայ. ի վայր առ ի կրակէն որ պաղի, եւ պահէ ի բան. օգտէ:*

Ըստ ընթերց. Հաստատոյ.

*Շարապ խնծորի: Մասուայի որդին ասէ՝ թէ Ինքն հով է եւ չոր է, եւ զստամոքին բերան ուժովցնէ, եւ օգտէ զափաղանին եւ ըռուպուին, եւ զվերաբերութիւն եւ զլուծումն կտրէ: Առ խնծոր քաղցր եւ թթու, եւ զմէջն եւ զկեղեւն ձգէ. եւ առ իւրմէն հինգ լիտր եւ ծեծէ, եւ շաքար տապարզի ծեծած եւ կամ մեղր խառնէ տասն լիտր, եւ դիր ի պտուկն եւ եփէ, եւ զփրփուրն առ: Եւ յայնժամ դիր յապիկած ամանն եւ զբերան կապէ, եւ մէկ ամիս յարեւն դիր որ թանձրանայ, եւ ի բան տար:*

ԺԱ.

*Լիզելիք խաշխաշիոր օգտէ հազի որ ի տաքութենէ լինի եւ որ ի աղէքն խոց լինի եւ (է) թոքն, եւ օգտէ որ ի խռչկէն արուն գայ: Առ յիսուն խաշխաշ զմեծն եւ ծեծէ, եւ օր մի եւ գիշեր մի երեք լիտր ջրով թրջէ, եւ եփէ մին. չեւ կէսն մնայ: Եւ առ ի վայր ի կրակէն եւ հովցու, եւ աճռէ եւ քամէ, եւ մէկին կէս շաքար խառնէ, եւ կէս լիտր գինոյ ըռուպ խառնէ, եւ արկ ի կրակն եւ եռցու մինչեւ թանձրանայ: Եւ առ ի վայր եւ*

*Լաուխ խաշխշի: Ասէ Գեղիանոս՝ թէ Օգտէ նուզլայի եւ հազի որ ի տաքութենէ լինայ, եւ թոքին խոցնալուն եւ որոյ արուն թքնու եւ կամ ի խռչակէն արուն գայ: Առ յիսուն մեծ խաշխաշ որ հասուն լինայ եւ ծեծէ, եւ օր մն եւ գիշեր մին ի թուրջ արկ երեք լիտր ջրով, եւ եփէ մինչեւ կէսն մնայ: Եւ առ ի վայր ի կրակէն՝ որ հովանայ, եւ աճռէ եւ քամէ, եւ ամէն մէկ լիտր ջրին կէս լիտր շաքար խառ. նէ եւ կէս լիտր մուսալառ*

խառնէ ի յինքն երկու դրամ քիթրայ ծեծած, եւ տուր ի ժմուն տասն դրամ։

խառնէ, եւ այլվայ դիր ի կրակն եւ եփէ մինչեւ թանձրանայ եւ երկու դրամ քիթրայ խառնէ եւ ապիկած ամման ած եւ պահէ, եւ տուր ի ժմուն մէկ նուկի։

## ԺԲ.

Գարեջուր։ Ասէ Ռուֆուս՝ թէ Օգնէ հազին եւ խուչկին ցաւուն եւ կըշտացաւին։ Առ գարէկորկոտ երեք նուկի եւ յունապ քսան հատ եւ ըսպստան երեսուն հատ եւ մատուտակ տաշած երեք դրամ. զամէնն եփէ երեք լիտր ջրով մինչեւ թանձրանայ, եւ քամէ եւ խառնէ քսան դրամ մանուշկի շարապ եւ երեք գրամ նշի ձէթ, եւ ի բան տար։

Գարեջուր։ Ռուֆոս ասէ՝ թէ Օգտէ հազի եւ փողացաւութեան եւ կշտացաւութեան։ Առ գարուկորկոտ երեսուն դրամ եւ յունապ առանց կուտ քսան հատ եւ սպըստան երեսուն հատ եւ մատուտակ տաշած երեք դրամ. զամէնն եփերեք լիտր ջրով՝ որ թանձրանայ, եւ քամէ եւ տուր, եւ խառնէ քսան դրամ մար նուշկի շարապ եւ եօթն դրամ նշի ձէթ, եւ տուէ որ ուտէ։

## ԺԳ.

Գարեջուր սատաճ։ Եւ գարին կտուած լինի եւ աղէկ եփէ։ Եւ բնութիւն հով եւ չոր է եւ զոսկրաց տաքութիւն կտրէ, եւ զգոզն բանայ, եւ օգնէ տաք եւ այրեցող ջերմերուն, եւ զլերդն հովցնէ, զծարաւն կտրէ, եւ զայրած խառնուածն ստամոքէն ի վար քշէ, բայց (է) ստամոքն քամի ընկենու։ Եւ իր օգտութիւն վարդմարապ(այ)ն է, (որ) յետոյ ի բան տանին։ Զգարին ի ջուրն թրջէ՝ որ կակուղ լինի, զկեղեւն հան եւ ած ի քարէ պտուկ, մէկին չորս ջուր լից եւ յեղմն եփէ, եւ զքաֆն առ եւ

Գարեջուր սատայ։ Բագարատ ասէ՝ թէ Լաւն այն է որ գարին կտուած լինի եւ աղէկ եփի։ Եւ բնութիւն հով է եւ չոր է. զանձինն տաքութիւն տանի եւ զգոզն յորդորէ, եւ օգտէ ջերմերուն որ տաք լինայ եւ սուր լինայ, եւ զլերդն հովցնէ եւ զծարաւն կտրէ, եւ զայրած խլտերն ի ստամոքէն լուծէ. եւ ծերոց շատ զէն առնէ, եւ ստամոքին եւ ահշահին քամի առնէ։ Եւ զիր փնասն տանի կուլանկուպինն որ յետեւ այսոր ուտես՝ օգտէ։ Առ գարի եւ ի ջուրն թրջէ՝ որ կակ-

շերեփով խառնէ մինչեւ եփի, եւ առ ի վար եւ քամէ, եւ քիչ մի մանուշկի շարապ խառնէ: Տուր անօթուց, օգտէ:

ղանայ, եւ ծեծէ եւ կտուէ եւ դիր ի քարէ պտուկ, եւ ամէն մէկ լտրին տասն լիտր ջուր խառնէ եւ եփէ հաշանդ կրակով, եւ զուֆրն քաղէ եւ խառնէ շերեփով մինչեւ եփի. եւ ի վար առ եւ քամէ, եւ տուր անօթուց մանուշկի շարապով. օգտէ Աստուծով:

Գ. Ախրապատնիս եւ Նախընթաց երկուքին (Ա.ին ու Բ.ին) համեմատութեամբ բերուած այս տակաւ Օրինակք բաւական են, կարծենք, լիով հաստատելու սոյն Գ.ին նկատմամբ վերագոյն նշանակեալն՝ թէ Հաւաքածոյ է եւ ի զանազան հին ու Նոր Գեղագործական գրուածոց ժողովեալ: Այսպէս պէտք չմնալով ասոնց նման այլ Օրինակաց՝ զոր հնար էր մեծ բազմութեամբ յառաջ բերել, կ'անցնինք ի կարեւոր բացատրութիւն ասացելոցս:

Թէ Ա. Ախրապատնէն բերուածներն, մանաւանդ Ը. եւ Թ. Օրինակքն, չէին կրնար այլազգ մուտ գտնել Հաւաքածոյին մէջ՝ բայց եթէ Ա.էն (= անոր սկզբնագրէն կամ 1294ին բժշկարանէն) առնուելով, այն ամենեւին տարակոյս չի վերցըներ: Այսմ համոզուելու համար՝ հերիք է միտ դնել Հտծ 15ին մէջ հնագոյն բժշկարանիս եւ առանձինն Ը. եւ Թ. Օրինակացս վրայ տրուած տեղեկութեանց: (Տես Հետազօտ. էջ 135—139:) Արդէն տեսանք որ այս երկու Օրինակք մի մի Գեղագիր են՝ ամենածանօթ որոշ անձնաւորութեանց համար շինուած: Այսպէս՝ պատմական յիշատակարանաց վրայ հիմնեալ իրականութիւն է թէ նոյն Գեղագիրք սեպհականութիւն են յիշեալ հնագոյն բժշկարանին. այնչափ ժամանակագրական ճշդութիւն կայ առաջնոյն (Ը.ին) սկիզբը նշանակուած իշխանական անձանց՝ Վահրամայ եւ իւր Գրիգոր որդւոյն, ինչպէս նաեւ Գեղագիրը շինող Յեսսէ

բժշկին, ժամանակին եւ բժշկարանին թարգմանութեան կամ խմբագրութեան ժամանակին մէջ, որ ամենեւին տեղի չի տար երկբայութեան: — Նոյնպէս այնչափ միաբան են ձեռագրին ընդօրինակութեան ժամանակն եւ ժամանակ կենաց Հեթմոյ թագաւորական իշխանին, որոյ համար շինուած է երկրորդ (Թ.) Դեղագիրն, մինչեւ իշխանն նոյն Դեղագրին սկիզբն գրել տուած է իւր անունն, ինչպէս գրուած կը տեսնուի ի ձեռագրին 1294ի: — Հաւանական է թէ այլ եւս Դեղագիրք ձեռագրին 1294ի, որ կը գտնուին նաեւ ի Հաւաքածոյին, նոյն կերպով անցած են ի Գ.Ն:

*
*   *

[illegible]ատածիս սկիզբներն (Հետազ. էջ 378) երբ կը նշանակէինք թէ որ Ախրապատիններու վրայ պիտի խօսինք, ծանուցինք որ Գ.ին ուսումնասիրութեան ժամանակ առիթ կ'ունենանք այլ եւս Դեղագործական գրուածներ տեսնելու: Մեծաւ մասամբ մանր երկրորդական գրութիւնք են ասոնք. բայց կայ նաեւ առաջնակարգ ընդարձակ մատեան մի, որ մեծ կարեւորութիւն ունի եւ կրնայ նպաստել թէ՛ ի լուծումն եւ ի լուսաւորութիւն զանազան խնդրոց, եւ թէ՛ ի հաստատութիւն նախընթաց բուսածներուն եւ այսուհետեւ բուսելիքներուն: — Փարիզու Ազգային Մատենդրանին հայերէն ձեռագրաց մէջ կը պահուի օրինակ մատենիս, որ թէպէտ ըստ ինքեան բաժանեալ է յերիս մասունս, որոց իւրաքանչիւրն իբրեւ ինքնուրոյն Գործ (երկասիրութիւն) կրնայ նկատուիլ, բայց երեքն միահաղոյն առեալ՝ որպէս թէ մի Դեղագործական գանձարան կը կացուցանեն[1]:

---

[1] Տր. Վահրամ Ց. Թորգոմեան, վերոյիշեալ Մատենադարանին հայերէն բժշկական ձեռագիրներն 1889ին քննելէն ետեւ, միեւնոյն տարին անոնց վրայ Արեւելք լրագրին 1731, 1733, 1734 թուերուն մէջ հմտական տեղեկութիւններ հրատարակած է: Ի կարգի ձեռագրացս, — եթէ

*Տեսնենք նախ երեք մասերուն մանրամասնութիւնքն:*

Ա. *Մասն գործոյս է ընդարձակ բժշկարան* (Ա խ տ ա բ ա ն ո ւ թ ի ւ ն  ե ւ  Ա ռ ո ղ ջ ա պ ա հ ո ւ թ ի ւ ն), *յորում այլ ամենայն նմանօրինակ բժշկական գրուածոց սովորական կարգաւն յառաջ կը բերուին միըստմիոջէ ամէն ախտք եւ հիւանդութիւնք՝ իւրաքանչիւրին կից դրուելով իւր դարմանքն:* Իսկ *երկրորդ բաժինն է ինքնուրոյն Ախրապատին:* Երկու *բաժինք միասին* ՁԷ. *համար բաժնուած են, որոց այս են նիւթերն.* Ա. — ԾԳ. Բուն *ընդարձակ բժշկարան:* ԾԴ. — ԾԸ. *Ախտանշանք:* ԾԹ. — ԿԳ. Քանի *մի ախտք:* ԿԴ. — ՁԷ. Երկրորդ *բաժին կամ Ախրապատին* Ա. Մասին: Այս *ամենայն կարգաւ կը տեսնուի* Մասինս *սկիզբը դրուած* ՁԷ. *համարադրով* Ցանկին *մէջ:*

---

*ոչ ըստ հնութեան՝ գոնեայ ըստ պարունակութեանց, — կարեւորագոյնքն են* Թ. 108, *որոյ մի Պիտառութիւնն արդէն հաղորդած ենք (տես Հետազօտ. էջ* 387—392), *եւ* Թ. 106, A, *որ է ձեռագիր Երեքմասնեայ մատենին: Այս յետինս միակերպ գրչութեամբ միջակ միածալ երկսիւն ձեռագիր է շատ մաքուր նոտրգիր, եւ ունի ի վերջոյ միեւնոյն գրչութեամբ երկայն Յիշատակարան, որոյ այս ընդօրինակութեան վերաբերեալ տողերն են.* “. . . *Արդ գրեցաւ Հաքիմարանս ի յերկիրս Շօշ՝ որ է Ասպահան, ի գեօղն որ կոչի Մարունան, ընդ հովանեաւ Մինասայ բազմաչարչար նահատակին, ի թագաւորութեան Պարսից Շահ Սուլէմանին, ի հայրապետութեան Տեառն (տող մի դատարկ թողած), ի վերատեսչութեան նահանգիս մերոյ Տեառն Յոհան Վարդապետին. ի թուականիս մերոյ* ՌՃԼԱ. (= 1682) *Օգոստոսի մէկ, ձեռամբ յոգնամեղ Մալխասս դպրի. ի վայելումն Յակոբ քահանային եւ ամենայն արեանառուացն* . . . »: (Թղթ. 289:) — Իսկ *ծածկին առաջին իջին վերեւն մեծ գլխագրերով տպուած է.* «*Յիշատակ է Հաքիմարանս ի Հաքիմ Տէր Յակոբին՝ թուին* Ռ.Ճ.Լ. *ամին». որ անշուշտ պէտք է ընթեռնուլ՝* «*Յիշատակ է Հաքիմարանս Հաքիմ Տէր Յակոբին, ի թուին* Ռ.Ճ.Լ. *ամին»:*

*Ամբողջ ձեռագիրն ունի* 290 *թուղթ.* 146 *թուղթ կը բռնէ* Ա. Մասն, *այսմ կից՝ բժշկական բառից ժողովածոյք մի կայ՝* Բ ո ւ ժ է լ է  Հ ա ք ի մ ա ր ա ն է ս *վերնագրով, որ* 32 *թուղթ կը լեցընէ.* Բ. Մասն 70 *թուղթ կը բռնէ.* Գ. Մասն՝ 40 *թուղթ. վերջին* 2 *թղթերուն վրայ գրուած են Ասարայ Սեբաստացւոյ բժշկարանին սկզբնաւորութիւնն եւ ձեռագրին Յիշատակարանն:*

Բ. Մասն կրնայ նկատուիլ իբրեւ Գ. (Հաւաքածոյ) Ախրապատնին համառօտեալ խմբագրութիւնն, թէեւ ունի զանազան յաւելուածներ՝ մանաւանդ ուտելեաց վրայ, որովք կը զգուշի թէ իւրաքանչիւր գրին մէջ՝ ըստ բերելոյ այբուբենական դասաւորութեան, եւ թէ յետոյ՝ իբրեւ ի զանազան յաւելուածս՝ ուր դարձեալ կը դառնայ խօսիլ ամէն տեսակ կերակրոց եւ ուտելեաց վրայ։ Այս էջք-յաւելուածք հետեւեալ նիւթոց վրայ են. 1. Համար Ա.—ԻԵ. Սպանախէ տպարէն մինչեւ Քաֆ-Ռայի վրայ. 2. Ցեղուցեղ մսերու, 3. Կաթերու, 4. Իւղերու եւ կարագի վրայ (2—4 էջք-յաւելուածք առանց համարագրի են). 5. Համար Ա.—ԾԹ. Այլեւայլ Դեղագիրք եւ բժշկական տեղեկութիւնք, որոց մէջ կան քանի մի կարեւոր կտորներ։ 6. Այս վերջին էջք-յաւելուածն յառաջ կը բերէ յերկոտասան (մեծագոյն մասամբ առանց համարագրի) համարս քանի մի Դեղագիրներ եւ բժշկական տեղեկութիւններ։

Մտադրութեան արժանի է որ Գ. Ախրապատնին այս համառօտեալ խմբագրութեան մէջ չի գտնուիր բուն Գ. Ախրապատնին կամ Հաւաքածոյին սկիզբը դրուած այն յառաջաբանական կտորն՝ որ կապակցութիւն ունի Ամիրտովլաթայ ծանօթ Պիտառութեան հետ։

Գ. Մասն, որ ինքնուրոյն բժշկարան կրնայ համարուիլ, նախընթաց երկու մասանց պէս յօրինաւոր կանոնեալ կարգաւ շինուած գրութիւն չէ։ Ցախտաբանականս չունի որոշ կարգաւորութիւն. իսկ ի դեղագործականս՝ ոչ ըստ այբուբենական դասաւորութեան եւ ոչ ըստ դեղատեսակաց շարայարութիւն։ — Այժմ լիով համոզուելու համար՝ բաւական է հարեւանցի յակն արկանել Մասինս սկիզբը դրուած ՃԽԲ. համարագրով Ցանկն։

Բայց արտաքին նիւթական թերութեանցս պատճառաւ կարծելու չէ որ չնչին ու խոտան գրու-

թիւն է. քա՛ւ լիցի. մանաւանդ թէ ըստ զանազան հայեցմանց՝ շատ հետաքրքրական եւ ծանրակշիռ կտորներ կը պարունակէ, յորոց ոչ սակաւք՝ եթէ բանասիրական, եթէ մասնագիտական եւ եթէ պատմաբանական տեսակէտներէ՝ կրնան Ա. Մասին ամէնէն գեղեցիկ Հատածոց առերի դրուիլ: Անոնց քանի մի կարեւորագոյններն յետոյ առիթ կ'ունենանք յառաջ բերելու:

Իսկ աստ՝ թէպէտ կարեւորութիւն չենք տեսներ այս տեղեկութիւնս աւելի յերկարելու. բայց պատշաճ կը համարինք կարճառօտիւ հաղորդել թէ ինչ է նիւթ առաջին երկու համարոց Ցանկին: Ա. Համարոյն՝ Յառաջաբանութիւն գրոց Հաքիմաց ըսածին նիւթն է՝ ընդօրինակութիւն Ա. եւ Բ. Օրինակաց զոր յառաջագոյն (ի 21, Ա. Հտծին) յառաջ բերած ենք համեմատութեամբ Ամիրտովլաթայ լիակատար եւ համառօտեալ խմբագրութեանց եւ առաջին իջից կամ Ա. Գլխոյ բժշկարանին Ասարայ, որ ձեռագրին իբր հինգ սիւնը կը լեցնէ. Նոյնպէս Բ. համարոյն՝ Յիշատակարան գրոց ըսածն՝ ոչ այլ ինչ է, բայց եթէ բառական ընդօրինակութիւն Սեբաստացի բժշկին նոյն գրութեան սկզբնաւորութեան, յորմէ — դիտմամբ թէ պատահմամբ՝ չենք գիտեր, — դուրս թողուած է Ասար անունն. իսկ ի վերջոյ յաւելցած է՝ Ա. Գլխոյն վերջաւորութիւնն: Այս ամենայն, ինչպէս յայտնի է, կը վերաբերի Ասարայ բժշկարանին:

1. Մատեանս բազմօք հնագոյն է քան զԹուական ձեռագրին, այն աստիճանի՝ որ ո՛չ ընդօրինակող Մալխաս դպիրն եւ ո՛չ Հաքիմ Տէր Յակոբ՝ որոյ ի վայելումն կատարուած է ընդօրինակութիւնն, որչափ կրնայ գուշակուիլ զանազան թէ՛ նիւթական եւ թէ բանասիրական նշաններէ, գրեթէ ոչինչ մասնակցութիւն ունեցած են ի խմբագրութեան: Այնպէս կ'երեւայ որ ընդօրինակողէն

գործն ոչ այլ ինչ եղած է՝ բայց եթէ առաջի իւր ունեցած սկզբնագրին պարզապէս օրինակն առնուլ:

2. Բովանդակ պարունակութիւն ձեռագրիս՝ հեղինակի որոշ անուն չունենալով, կը կոչենք Էբերսմաննեայ. եւ որովհետեւ հաւանական է որ սկզբնագրին երեք մասունքն եւս յայլեւայլ՝ հնագոյն, հին եւ միջին ժամանակս գրեալ՝ ձեռագիրներէ ժողովեալ ըլլան, յընթացս կը յիշատակենք անուամբ Խմբագրութիւն կամ Խմբագիր Էբերսմաննէին: Թէ մատեանս իրօք եւ արդեամբք այլեւայլ բժշկարաններէ ժողովեալ է՝ ամենեւին տարակուսի ներքեւ չ'իյնար: Աւելորդ է այս նկատմամբ Բ. Մասին վրայ նորէն խօսիլ. ինչ որ Գ. Ախրապատնին (Հաւաքածոյին) համար ըսուած է՝ առաւելագոյն իրաւամբք կրնայ հաստատուիլ նաեւ այս Բ. Մասին վրայ՝ պատճառաւ նորանոր համարոցն որ մուտ գտած են յայսմ: Գ. Մասին եւս միեւնոյն հանգամանաց մէջ գտնուելուն յայտնի ապացոյցն է իւր այլեւայլ Հտծոց ոճոյն ու լեզուին իրարմէ տարբերութիւնն:

Կը մնայ Ա. Մասն, որոյ ոճոյն ու լեզուին՝ գտնեայ ըստ գլխաւոր հանգամանաց՝ միակերպութիւնն թերեւս ի հակառակ կարծիս միտել տայ. բայց ամէն կասկած ու տարակոյս փարատելու բաւական են նոյն Մասին մէջ ստէպ ստէպ այս մտօք տեսնուող յիշատակութիւնք, որոց մի քանին յառաջ կը բերենք: "Ա՛յլ դեղրանք լերդին է յոյլ բժշկարանէ՝ հեշտ թէ առնես եւ թէ այլոց նշանք տաս": — "Ա՛յլ դեղրանք ատամանց. աստից յառաջ յոյլ բժշկարանէ է, հեշտ եւ օգտակար": — "Ա՛յլ դեղ փայծղան յոյլ բժշկարանէ": — "Ա՛յլ դեղ աչաց նոյն ցաւերոյդ եւ զինքդ յոյլ բժշկարանէ ենք թարգմանել, զի յայս ակրապատնիս չկայր": — "Նշանք հասի է յոյլ բժշկաղետներաց նոսախաբէ՝ ի Յոհաննու ի Սրաբիոնի որդւոյն": — "Ա՛յլ

մտքուխ որ Յիսէ բժիշկն գրեց ջեր Նուախաբննոյն՝ օգտակար եւ աղէկ՚„։

Աստ յառաջ կը բերենք կարեւոր Օրինակներն՝ երկու խումբ բաժնելով։

Ա. Խումբ Օրինակաց։

Ծանօթ է Ամիրտովլաթայ հետաքրքրական խօսքն, զոր կը գրէ քանի մի հայ բժշկաց անուանքն յիշատակելով, թէ "Շատ գրեանք շինել էին վասն դեղերուն զօրութեանն եւ օգտութեանն„։ (Տես Հետազօտ. էջ 125, 126։) Այլով առթիւ նշանակած ենք թէ այս գրութիւնք Ախրապատին են։ (Հետազօտ. էջ 394։) Ամասիացի բժշկապետին յիշատակած բժիշկներուն մէջ կը գտնուին՝ Ահարոն բժիշկն եւ որդի նորա Ստեփանոս բժիշկն եւ տոհմէ նոցա՝ Ճոշլին, Սարգիս ... Դեղին ... Վահրամ։ — Արդ Երեքմասնեայ մատենին՝ առաւելապէս Գ. Մասին մէջ կը տեսնուին ոչ սակաւ Դեղագիրք մանաւանդ անուամբ Ստեփանոսի, որ կ'երեւայ թէ միւսներէն աւելի գրեանք թողած է, զոր կ'ուզենք յառաջ բերել, սկսելով նշանաւորագունէն, յորում կը ծանուցանէ իւր ցեղին ազգահամարն ու ժամանակն։

1. Ահա դեղ որ փորձած է եւ չէ գրած ի բժշկարանին. բայց գիտուն մարդիկն իրերաց ուսցնեն, եւ ձեր հայրն Ահարոն բժիշկն ի մեզ էր ուսուցեր, եւ ես Ստեփաննոս՝ մեղուցեալ ծառայ Յիսուսի Քրիստոսի Աստուծոյ մերոյ, եւ իմ հարազատ եղբայր Ճօշլին բժիշկն գրեցաք, յետոյ ի թուին Հայոց ՈՁԱ. (= 1232) ի յամեանն Հոռի, ի յօգնութիւն շատ բժշկաց եւ առողջութիւն բազում հիւանդաց։ Եւ զմեզ յիշեցէք ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր։

Այս քանի մի տողերով կը փակէ Գ. Մասին ՁԱ. համարն, ըստ երեւութին՝ առանց իրական

---

1 Յետոյ կը տեսնենք թէ իրօք նոյնպիսի Դեղագրոց ժողովածոյ կար նուսխաթնի կոչմամբ յանուն Յեսսէի բժշկապետի։

Դեղագրի։ Բայց՝ եթէ միտ դրուի որ այս համարս ամենեւին կապ չունի ոչ նախընթաց Զ. համարին եւ ոչ յաջորդ ԶԲ. համարին հետ, ուստի ինքնուրոյն անբաժին ամբողջ մի կը կազմէ, ի հարկէ կը հետեւի թէ բովանդակ ԶԱ. համարն Ստեփանոսի գրութիւնն է հանդերձ երկայն Դեղագրաւն՝ զոր աստ ի մէջ կը բերենք, եւ որոյ իբրեւ յիշատակարան պէտք է նկատել զսակաւ տողերն, որոցմով կը փակի, ըսինք, ԶԱ. համարն։

Նշանք տէկպարտիկին, օգտէ նասուրին՝ եթէ (=թէեւ, թէպէտ եւ) տասն տարոյ լինի, ուտէ ղփտած միսն եւ սրբէ եւ շատ օգտութիւն առնէ ի հին խոցերուն։ Առ... զամէնդ լուէ եւ ի միատեղ խառնէ, եւ առ անդէրկ երեք դրամ եւ լից ի սերտ կտաւ եւ քամէ յայտոր վերայ եւ աղէկ հաւսրէ հետ դեղերիդ։ Յայնժամ առ կրճուճ հանց որ զդեղերդ ընուս՝ նա կոճ մի ի շըրթանցն ի վայր լինի, ոչ փոքր լինի քան զչափն եւ ոչ մեծ, եւ պտկիդ բերանն զերդ զփողըանկ պռկունք ունենայ։ Եւ առ պտուկ մի այլ, որ բերանն քան զայդ մեծծակ լինի, եւ կործէ ի վերայ՝ որ յիրար հագնին, եւ զփակն ծեփէ կաւով իմաստասիրաց երեք մասն լայնութեամբ։ Եւ թէ կամիս չորս կամ հինդ պտուկ անել, այդ նշանօքդ արա զամէնն, եւ զդեղերն ամէն պտկի՝ այդ կշռովդ։ Յայնժամ առ գործելի եւ ի թոնիրն վառէ եւ ուժով կրակ արա եւ կամ կաղնի փայտով, որ շատ լինի կրակն եւ ուժով ճերմկի թոնիրն։ Եւ զպտկնին ի ներս թաղես մինչեւ ի ծեփածն, եւ զներքի տաքն աղէկ ամբացուր, եւ մէկ օր կամ երկու օր ի թոնիրն թող կենայ, եւ զթոնրին բերանն ամուր կալ, որ ուժով կենայ զոլն՝ որ աղէկ եփէ եւ ելնէ ճօհարն եւ փակչի ի վերին պտկին տաքն եւ ի կռնակն զերդ զապիկի մանրուն։ Եւ այդ է նշանն որ եփեցաւ դեղն եւ (= երբ) ճու(հ)արն շատ տեսանես ի վերին պտուկն։ Առ զպտուկն ի կրակէն ի զատ՝ որ հովանայ ճուհարն, դանկով քերէ եւ արկ յապիկէ շիշայ եւ պահէ զինքն։

Եւ յերբ ի նասուր կամենաս ի բան տանել՝ դու առ յիւրմէն ըստ պիտոյին, եւ ի վերայ նասուրին ընդ շրթանն որ ի հետ ողջ տեղւոյն կայ՝ ցանէ ի նասուրն շուրջանակի զամէնն բոլոր։ Եւ առ զդմակն եւ նօսր տապակէ եւ ի վերայ դիր հաւասար, եւ երեք օր մի՛ բանալ. եւ յետ երեք աւուրն բաց, նա խաղել լինի եւ փուլել. դուն ծանթորանոփն բռնէ եւ ածելոփն կտրէ

եւ հան։ Եւ զինչ որ ի պատեհ տեսանես ի միջամոյն՝ դիր ի վերայ։ Եւ թէ ոսկոր կենայ փտած՝ նա հանես, եւ զամէն պէտքն հոգաս՝ մինչեւ ողջանայ։

Եւ այդ որ ի ներքի պուտուկդ մնայ՝ ի յամէն հին խոցի ի վերայ ցանես՝ նա ուտէ, եւ զփուտ միսն եւ կտրէ։ Եւ թէ դանկով եւ կամ այլ սրով քշտեն, եւ արիւնն խիստ կենայ ու երթայ՝ ոչ կարեն արգելել, երբ ի վերայ դնես՝ արգելվի Աստուծով։ Եւ թէ ի բերանոյ ցանես՝ որ կերցաւ լինի ի լինդքն, օգտէ՝ յորժամ ի պալղամէ լինի։

Թէ՛ նոյն Գ. Մասին եւ թէ՛ Բ. Մասնէն ետեւ իբրեւ յաւելուած դրուած կտորներուն մէջ կը պատահին այլ եւս համառօտ Դեղագիրք Ստեփանոս բժշկին, յորս ուղղակի կը խօսի։ Ահաւասիկ անոնցմէ մի քանին։

2. Մածուն որ ի վերայ ապուրին[1] ուտէ մարդ որ հով ստամոք ունի եւ զապուրն չկարէ հալել, եւ զամէն ցաւն որ (է) ստամոքն լինի եւ ի ձախ կուշտն եւ քօշն լինի, եւ անուն սորա կոչի հերմնի, եւ ես Նուաստ Ստեփաննոսս արարի, եւ օգտեաց բազմաց։ Առ . . . եւ եփէ որ թանձրանայ, վարդեջուր տասն դրամ եւ նշի ձէթ տասն դրամ արկ ի ներս, եւ զծեծած դեղերդ ի ներսն խառնէ եւ յապիկի ամանն դիր, եւ տուր յիւրմէդ ըստ ուժոյն երեք դրամ ի վերայ ապուրին. օգտէ Աստուծով։

[1] Նախնեաց ռամկօրէնին մէջ «ապուր» բառն գործ կ'ածուի ու-տէլէ, չէրպաչօր նշանակութեամբ։ Տես Շնորհալի, Առակք. Եղեւ։ Մեծին ագռաւըն տայր ապուր։

3. Այլ պատրոյգ նոյն ցաւոյդ զոր ես Ստեփանոսս արարի եւ օգտեաց բազմաց։ Առ... ալուր եւ մոմ, եւ դէմ կրակին ընդ ափդ տուր որ կակղի, եւ առ զայս դեղերս ի ներս դիր, հար որ միաւորի, եւ պատրուգնի արա եւ օծէ հոռոմ ձիթով եւ դիր. լուծումն առնէ։

4. Հապ լուծման եւ շատ օգտութիւն առնէ, զոր ես Ստեփաննոսս փորձեցի պոմնօվ (՞) աբեղայի եւ ծերի եւ կտրճի։ Առ . . . զամէնդ աղա եւ մաղէ. թէ կամիս՝ հապ արա. թէ կամիս՝ կթխայ լից եւ ջրով առ, քան դրամ ջուր կամ երեսուն, եւ տասն դրամ շաքար, եւ տուր որպէս օրէնն է այլ դեղերի պատրաստութեամբ։

5. Այլ նշանք լուծման դեղի, զոր ես փորձեցի Ստեփաննոսս եւ օգտեաց բազում ջերմոտաց։ Առ . . .

աղա եւ մաղէ եւ քարաւսի ջրով շաղ(ղ)է եւ հապ արա եւ յերեկօրէ առ, եւ թէ կամիս՝ շաքրաջրով կըլթ-խայ՝ յառաւօտուն. եթէ մարդն ուժով լինի՝ զամէնն տուր, եւ թէ վատուժ լինի՝ զկէսն տուր, եւ յետեւ յառաջ պատրաստ պահէ, որպէս սահմանն է այլ դեղերուն. եւ օգտէ:

Վերջին չորս (2—5) Դեղագիրք՝ թէեւ կարճ են եւ ըստ ինքեան հետաքրքրութիւն շարժելու յարմարութիւն չունին, սակայն իբրեւ ազգային յիշատակարան՝ պատշաճ համարեցանք հաղորդել, թողլով զայնպիսիս՝ զոր Խմբագիր Երեքմանէին ինքնին ի մէջ կը բերէ յանուն Ստեփանոսի, Դե-ղագրին սկիզբը դնելով . . . "Ստեփաննոսի արա-րեալ„ կամ "Գրէ Ստեփաննոս„. բայց չուզեցինք դուրս թողուլ այսպիսեաց մին՝ յորում Ստեփա-նոս յիշատակութիւն կ'ընէ իւր հօրն Ահարոն բժշկի, որ է հետեւեալն:

6. Վասն փուշտանկի. որ է ձուանկն: Գրէ Ստեփաննոս բժիշկն՝ թէ Իմ հայրն Ահարոն բժիշկն ուսոյց զայս ինձ, որ այլ զօրաւոր է քան զառաջինն: Առ ձկան սոսինձ տասն դրամ, կտրատէ եւ ի վերայ գինիած եւ թրջէ, եւ եփէ մեղմն մինչեւ աղէկ հալի սոսինձն. եւ առ խնկի փերժուկ վեց դրամ. մազտաքի եւ անձրութ եւ մուռ եւ աղաղիա հինգ հինգ դրամ, . . . զամէնդ աղա մանտր եւ ի սոսինձն լից եւ խառնէ, եւ մազաղաթովն նոյն կերպիւն դիր ի վերայ ծակուն եւ կապէ մուտամ(?) մինչեւ ողջանայ: Եւ այս՝ այլ լաւ ողջացնէ քան զմէկայն: . . .

Ինչպէս Դեղագրիս խօսքերէն կը տեսնուի՝ առորնախընթաց Դեղագիրն եւս (համար ՀԱ. Վասն հին միջացաւութեանց) նոյն Ստեփանոսի շինածն է. բայց առանց յիշատակութեան անուան Ստե-փանոսի եւ Ահարոնի: — Վերջնոյս անուամբ կը տես-նուին նաեւ քանի մի համառօտ Դեղագիրք... "Ա՛յլ ակրաս Ահարոնի բժշկապետի արարած„: — Կայ այլ շատ կարճ Դեղագիր մի, որոյ սկիզբն է. "Ահա-րոն ասացեալ է՝ թէ Սխտորի ջուրն . . .„: Զասոնք յիշատակելով միայն կը շատանանք, մանաւանդ

որ վերջնոյն լեզուն մեծ հնութեան երեւոյթ չու-նի։ — Բայց չենք կարող զանց առնել զԴեղա-գիրն՝ զոր յանուն Սարգսի բժշկի յառաջ կը բերէ Խմբագիր Երեքմաննէին, վասն զի ոչ միայն միակն է նոյն բժշկին անուամբ, այլ նաեւ ընտիր լեզուաւ, թէեւ խառնակեալ է եւ պակասաւոր։

7. Նշանք Սարգսի հայի, որ օգտէ զմատի լպնէ թողաթ(°) եւ ինքն է խիժ, եւ մոթալաթ(°) մի-աչափ ի կրակին դիր որ զիրարի։ Ապա ի զատ առ եւ ի սիսռան չափ հատեր արա, եւ ժմոյն երկու հատ առու կամ երեք, թէ պիտի՝ յանօթուց, թէ պիտի՝ ի կշտե-լոյթ. օգտէ։

Առանցմէ զատ կայ նաեւ Դեղչին բժշկին ա-նուամբ Դեղագիր մի, որ գրեթէ ամբողջ էջ մի կը լնու ձեռագրին, միանգամայն ոճն ու լեզուն մեծ հնութեան կնիք կը կրէ։ Եւ է սկզբնաւորութիւնն այս. "Ա՛յլ մաջուն՝ զոր Դեղչին բժիշկն Գրիգորոյ — անշուշտ որդւոյ Վահրամայ սպարապետի — համար գրեց եւ նմա համար արար։ Ինքս զստա-մոքսն ուժովացնէ, եւ օգտէ քամուն եւ հեւոցն, եւ զպլղամն եւ զսավտայն հանէ...„։ — Այս Դե-ղագիր կը վերաբերի նաեւ Օրինակացս Բ. Խմբին։

Իսկ Վահրամայ անունն եւեթ քանի մի ան-գամ կը յիշատակուի՝ իւր նախընթաց ունենալով Դուէյն անունն. զ. օ. "Ա՛յլ հապ որ բանեցնէին Դաւիթ եւ Վահրամ, որ օգտէ ամէն ցեղ ջերման...„։

Բ. Խումբ Օրինակաց։

Քանի մի տեղ խօսուած է Վահրամայ սպա-րապետի Գրիգոր որդին դարմանելու համար շի-նուած Դեղագրի մի վրայ։ (Տես Հետազ. էջ 404, ուր յիշատակուած են ի նախընթացն տրուած տեղեկութիւնքն ալ։) Տեսած ենք որ մինչեւ ցայժմ միակ բժիշկ կը յիշատակուէր զիշխանն դարմանող, այն է՝ Ցայսէ կամ Յեսսէ բժիշկն, եւ մի եւեթ Դեղագիր յառաջ կը բերուէր։ Այս նիւթերուն նկատմամբ այլ յիշատակութիւն չկար մեզի ծա-

նօթ բժշկարանաց մէջ։ — Արդ՝ յԱ. Մասին Երեքմասնէին ոչ միայն դեղ մի Դեղագիրք կը գտնուին նոյն (Յիսէ) բժշկին անուամբ, այլ նաեւ իրմէ զատ քանի մի բժշկաց անուանք եւ Դեղագիրք, զոր կ՚ուզենք ըստ մասին՝ յառաջ բերել Օրինակօք ինչ, որով ընթերցողք թէ յիշեալ Ա. Մասին վրայ պայծառ գաղափար կ՚ունենան, թէ պատմական հետաքրքրաշարժ Յիշատակարան։

Սկսինք Բուսայէդ բժշկէն[1], որոյ սատ յառաջ բերուած Դեղագիրն՝ որպէս թէ նախերգանքն է Գրիգոր իշխանին ի դարման շինուածներուն։

1. Վասն լերդացաւի որ ի ջերմութենէ ցաւի, եւ զայն գրենք որ Գրիգոր Վահրամայ որդին իւրն արար եւ այնով յաջեցաւ յայնժամն ինչ նմայ լերդն ի ջերմութենէ ցաւեցաւ, եւ գնաց ի Մուֆարղինն (=Նփրկերտ) ի ՆՁԶ (= 1037) թուականին, եւ Բուսայիդ բժիշկն զայս արար նմա եւ այսով յաջեցոյց։ Եւ նմային (= նոյնին) նշանքն այս էր՝ որ թիկունքն եւ աջոյ բազուկն ցաւէր եւ ձեռքն ծանրանայր, եւ ընդ կողքն ի ներս խոցոտէր դէպ ի յետի կոյսն որ կողքն հատանի։ Երբ աջ դեհին պառկէր՝ խիստ ցաւէր եւ ջերմանայր. եւ գինին եւ այլ տաք իրքն ինչ ուտէր՝ խստացնէր։ Ապա ինչ այտ ցաւս նմա դիպաւ եւ նա ի Մուֆարղինն գնաց. որչափ ձմեռնաւուրք էր՝ բժիշկն չարար նմա դեղ, ասէր՝ թէ Յայս աւուրքս դեղն չօգտէ, զի մարդն այնց սառուցած լինի զերդ հողն, եւ չօգտէ դեղն՝ ինչուր լքչի(°). բարի (= այլ. բայց) հով ըմբելասատան տայր՝ զերդ ծորի, զերդ նռան, զերդ սքնջբին յամէն աւուր. եւ կերակուր զայն տայր զոր ախորժական լինէր։

Ապա երբ գարնանայինն մտաւ՝ զայս նմայ քառասուն աւուր նուսխաթ գրեց, եւ զամէն աւուր զդեղ եւ զկերակուր ուրիշ ի գիր եհան, եւ այնց ասաց՝ թէ Զայտ նուսխաթնիտ որ ի ժողով եմ ածել եւ քեզ համար ընտրել եւ ի գիր հանել, զլերդն ուժովացնէ

---

1 Պէտք չէ անուանց նոյնութեան նայելով՝ զայս Բուսայիդ բժիշկ շփոթել Աբուսայիդ բժշկին հետ, որ ժամանակակից էր Շնորհալւոյն († 1173) եւ Լամբրոնացւոյն († 1198). ապա թէ ոչ՝ իբր մի եւ կէս դարու ժամանակագրական վրիպակ յերեւան կ՚ելլէ։ Վասն զի ոչ ոք կարող է կարծել թէ զԳրիգոր իշխանը († 1045) բարմանողն ապրած ըլլայ մինչեւ յիշեալ Հայրապետացս ժամանակն։

եւ զցաւըն տանի, եւ զայն շղքն որ ի լերդէն ի վեր ի թիկունքն է յելնել եւ ի ցաւեցնել՝ զայն կտրէ եւ զանձն դալարեցնէ եւ գիրացնէ, եւ զոհմքն(°) եւ զմտավածքն՝ ի սրտէն (հանէ)։ Արդ՝ ինչ գարնանայինն մտաւ եւ Հոռի ամսոյ տասն էր, յառաջ արար՝ նմա դեղ տալոյ։ Առջի դեղ՝ զայս ակրաս երետ, որ զլերդն ուժովացնէ եւ հովացնէ։ Առ... բզըղատնի ջրով շաղղէ՝ ղերդ այլ ակրասի ռասմ է, այնց որ ջրի չլինի խիստ, եւ բլթնի արա՝ զամէն բլիթ դրամ մի, եւ ի մաղի վերայ շարէ եւ շուք ընդ արեւ չորացո։ Եւ առ յիւրմէտ հինգ օր հետ իրաց՝ յամէն յեղէն արեւահարուցն. եւ երբ յառուլ լինիս՝ այս նշանօքս զուգէ։ Առ յիւրմէդ դրամ մին եւ մանդըր աղա. եւ առ տասն դրամ նուանվքնքբին եւ հինգ դրամ յունապի ըմպելի... զայսոց յիրար խառնէ, եւ զաղցած ակրաստիններս ի կթղայն ած. եւ յըմբելոյդ քիչ մի վերայ ած խառնէ որ տրորի, եւ քիչ մի այլ կաթեցո եւ այլ տրորէ. յենում (= աղա) զըմբելէդ զամէն ի ներս արկ եւ խառնէ եւ խմէ եւ երեսուն դրամ հով ջուր արկ եւ խառնէ եւ խմէ։

Եւ պահ մի կաց եւ ձի հեծիր եւ ի շուրջ եկ ի նուսխատեղ եւ ի կանաչի. եւ դարձիր եւ ի բաղնիս մտու, բարի յամէն օր մի մտել. ի շաբաթն երեք օր հերիք է...։ Եւ երբ մտես՝ յուշիկ մարձել տուր, եւ շատ ջուր արկ ի վերայ եղկ... եւ ի ներսն շատ մի յեմել. եւ երբ յելնել լինիս՝ զանձնդ մանիշակեղով օծնէ։ Եւ երբ ջուրն ի զուգել լինին՝ այս նշանով զուգէ... այնց որ ինչ ի ներս մտես՝ ինչուր վիզն թանուի... եւ ի ներս նիստ այնչափ որ վատուժիս ոչ։ Եւ երբ ելնես՝ ի քիմքն մանիշակեղ հասո. պառկիր պահ մի եւ հանգիր, եւ ի ցրտոյ պատրաստ կաց։ Եւ ինչ ի ջրէն ելնես եւ զայս ամէն անես՝ այնց արա որ օր հասարակ լինի, յենում հաց կեր եւ զհացն միամաղ տուր առնել։ ...Եւ զայս ամէն զինչ գրած է՝ հինգ օր արա զդեղտ եւ զկերակուրտ. եւ յետ հինգ աւուրն փոխէ եւ զայս արա զոր այժմ գրենք։...

Այս՝ եթէ ներեալ է ասել՝ պատմական Դեղագրին — որ՝ մէջէն դուրս հանուած եւ ի վերջոյ գտնուող մասանց հետ՝ Երեքմանէին իբր վեց սիւնը կը լեցընէ, — կը յաջորդէ միւս եւս Դեղագիր, որոյ այս է սկզբնաւորութիւնն. "Ա՛յլ սփուֆ որ Բուսայիդ Գրիգորոյ երետ ի Մուֆարղինն աղցայն(°), որ օգտէ լերդին՝ ինչ ի ջերմութենէ ցաւի, եւ զստամոքսն ուժովացնէ՝ ինչ զկերակուրն վատ

հալէ, զքամին հանէ եւ զփորն կակղացնէ։ Աւ...„։ Կայ նաեւ յիշատակութիւն այն ակրասին որ Թիւ 1. երկայն Գեղագրին մէջերը նշանակուած է։ Եւ այս է յիշատակութիւնս. “Վասն ամենայն ցեղ ակրասերոյ, որ Թարգմանի խուռասայ։ Առաջի ակրասն այս է՝ որ Բուսայիդ բժիշկն Գրիգորոյ արար, եւ ինքդ գրած է ի լերդացաւին կարգին, զի եւ ինքս փորձած է լերդի եւ խիստ օգտակար։ Անդ գիտ„։ Նոյն բժշկին անուամբ Գրիգորոյ համար շինած դեղերուն վերջինն է հետեւեալն։

2. Ա՛յլ մորուխ որ գրեցաք ի Բուսայիդայ բժշկարանէն, որ Գրիգորոյ Վահրամայ որդոյն արար՝ ինչ նմայ լերդն ցաւեցաւ եւ ի Մուֆարղինն գնաց, որ յամէն զարուն առոյր, եւ ինքս խիստ օգտակար է բազում պատճառուց։ Առ դամինաչիր եւ յաւնապ մետասան հատ. Թալհնդի կտէն հանած եւ ընտրած եօթն դրամ, սեւ չամիչ եւ քաբուլի հալիլայ ի կտէն հանած եւ ընդրած եօթն դրամ, սեւ հալիլայ եւ անծխոտ մենու հինգ դրամ, թէ սեւ հալիլայ չլինի՝ նոյն կշռանովս դեղին հալիլայ խառնէ ... աննուխ հինգ ցախ, եղեգն բուռն մին. զամէնս ի թանկիրայն արկ, եւ ի վերայ ութ լիտր ջուր արկ, օր մի եւ գիշեր մի ի Թրջման պահէ, եւ եփէ մեղմ ինչուր ի յայն՝ որ մնայ ի ջրէն հարիւր երեսուն դրամ. զափթիմոնն ի կտաւի ծրարէ եւ այնց խառնէ ի դեղս. յենում մաղով քամէ. եւ առ խիարի շամբլէ միջուկ հինգ դրամ ի կտէն ընտրած եւ տասն դրամ Թառանկուբին եւ լից ի քարաղան, եւ ի մորխի ջրէս ի վերայ լից եւ տրորէ ձեռօքդ պինդ եւ խառնէ ի մորուխս եւ զամէնս ի մէկ տեղ քամէ մաղով, եւ արկ ի ներս պարտիզաքար աղցած մէկ դրամ, սեւ հնդիկ աղ մէկ դանկ, սկուտրի սապր եւ քթիրայ եւ քարախունկ մենու հինգ գարեկշիռ, շաքար կամ ջօլապ քսան դրամ կամ նինոֆարի ըմպելի զնոյն չաքսդ, եւ ի մորուխս խառնէ զամէնս. եւ ժամհրուցն եղկացն որ խմէ։

Բազմաթիւ են յՆրէքմանէին՝ Ցայիսէ կամ Ցիսէ բժշկին Գրիգորոյ ի դարման շինած Դեղագիրներն, որոց այս է շարադասութիւնն[1]։

---

1 Ա. Մասին Վասն ծլխոցաւի ամենայն ցեղ վերնագրով Ա. Համարին սկիզբներն կայ չորս սիւն երկայնու-

Յառաջ քան զամենայն՝ Վասն ամենայն ցեղ օֆ..ֆն.յ վերնագրով ԿԸ. Համարին մէջ՝ առանց նշանակելոյ զանուն բժշկին եւ հիւանդին, կը դնէ սփուփի չորս Դեղագիր, ապա կը բերէ հինգերորդ մի, որոյ այս է սկզբնաւորութիւնն եւ վերջաւորութիւն. "Ա՛յլ սփուփ որ առջի տարին վանձին երեւ Յիսէ բժիշկն Գրիգորոյ, եւ ի վերայ՝ վանձին երեւ, որ (այսինքն՝ սփուփն) օգտէ ստամոքացն եւ լերդին, զանձն դալարեցնէ, զերակն սրբէ եւ բանայ, եւ աւուրն հետ մի լուծումն առնէ։ Ա...": Ամբողջ դեղագրին բաղադրութիւնը սովորական. կերպով ստորագրելէն ետեւ՝ այսպէս կը վերջացնէ "Յանօթուց առ, եւ ութսուն դրամ վանձին խմէ... տաք՝ լուր այնց որ խմել կարենայ ի սփուփիդ վերայ, չորեքտասան օր հետ իրաց։ Եւ երբ խմես՝ ի շուրջ եկ եւ ի բաղանիս մուտ, եւ հաց ան(ա)գան կեր, որ ի ստամոքուցդ գնայ։ Եւ զվանձինն այն նշանօքն արա որ ի լերդացաւին գրած է"։ — Այս հինգերորդէն ետեւ՝ դարձեալ առանց անուան՝ վեցերորդ մ'ալ յառաջ կը բերէ, զոր կը վերջաւորէ այսպէս. "Ինչվի յայս սփուփնիս՝ ամէնս ի Յիսէի նուսխաթէն է, որ Գրիգորոյ համար արար"։

Վասն ամենայն ցեղ մ.բ..խ.ի, որ է՝ լ..թ.մ.ն եփ..թ.. ե.. խ.ել.վ վերնագրած Հ. Համարին առաջին Դեղագիրն կը սկսի այսպէս. "Յառաջ քան զամենայն ինչ զՅիսէի բժշկին նուսխաթն գրենք, որ Գրիգորոյ Վահրամայ որդւոյն գրեց ի

---

թեամբ Դեղագիր մի, որ կը սկսի այսպէս. "Խրատ Յիսէի Մուֆարղնցի բժշկին. խրատք եւ պատրաստութիւն ինչ առ մարդոյն գլխացաւութիւն լինի ի ջերմութենէ...": — Հաւանական որ այս խմբին վերաբերի նաեւ Դեղագիրս կամ մանաւանդ այլեւայլ Դեղագրաց տողանն. վասն զի թէ ըստ բաղադրութեան դեղոց եւ թէ ըստ ամենայն հանգամանաց ստածման՝ շատ նման է ի դարման Գրիգորոյ շինուածներուն։ Բայց որովհետեւ մէջն ամենեւին յիշատակութիւն չի գտնուիր նոյն իշխանին, չուզեցինք մուծանել ի կարգ այլոց։

Մուֆարղինն։ Առ . . .„[1]։ Այժմ կը յարէ երեք այլ Դեղագիր Մտբխի, որոց առաջինն գրեթէ ամբողջ կը դնենք. վասն զի ըստ բաղադրութեանն բաւական նման է յառաջագոյն համեմատութեամբ Ա. եւ Գ. Ախրապատիններուն մեր դրածին։

3. Ա՛յլ դեղ մտբուխ որ Ցխսէ բժիշկն Գրիգորոյ երեւս ի Մուֆարղինն՝ օգտակար ամէն բնութեան։ Առ Թպլհնդի քան դրամ, մանիշակ եւ ռազանայ եւ անիսոն, վարդ եւ եզան լեզու, մնուու երկու դրամ ձարձատ արարած . . . զամէնն ի Թանկիրայն արկ եւ ի վերայ երեք լիտր ջուր, եւ օր մի եւ գիշեր մի ի Թրջման պահէ, մեղմ եփէ՝ որ մնայ ի ջրէն կէս լիտր։ Կտաւով քամէ. եւ առ դանկ մի ըռեւանդ եւ դանկ մի տապախշիր, ջհտաքար կէս դրամ, երեանկի քամուքս մէկ դանկ, շաքար քան դրամ. զամէնն աղա եւ մաղէ եւ ի քամած դեղդ խառնէ։ Եւ երբ առնուլ կամենաս՝ պատրաստ կալ. մին այլ օրն վաղ հաց կեր, հաւի ջերմ եւ ի ներս հաց Թաց, ի մնէն մի ուտել՝ հանց որ յիրիկունն քաղցել լինիս, եւ այն օրն գինի մի խմել եւ Թթու մի ուտել, եւ ի հացին յետեւ քչիկ ջուր խմէ եւ այլ յետեւ մի խմել։ Ժամահարուցն զդեղս եղկացո եւ խմէ. եւ Թէ սիրտդ ճղմատի՝ ի վերայ խաւրծիլ ծամէ կամ Թթու խնձոր կամ աննուխ կամ նուռն, եւ ի քացախն հոտոտա։ — Երբ ճաշք լինի՝ տաք ջուր խմէ երեսուն դրամ, եւ ի տանն յուշիկ ի շուրջ եկ։ Երբ օրհարակ լինի՝ երեսուն դրամ տաք ջուր այլ խմէ, պահ մի կաց եւ ի բաղնիս մուտ, եւ շատ մի կալ ի ներսն։ Երբ ելնես՝ առ երեսուն դրամ ջօլապ, եւ ի ներս երկու դրամ ըռեհանի հունդ խառնէ կամ պզրղատուն ի նոյն չաքրն, երեսուն դրամ ջուր խառնէ, խմէ, եւ պահ մի հանգիր, եւ հաց կեր՝ հաւի մսով մոտակակ(°) եւ զիրիպաճ հաւով։ Եւ ի հացին վերայ պակաս ջուր խմէ ի ծարաւ եւ յերիկծաւքն երկու կԹխայ գինի խմէ պարզած ջրախառն։

---

[1] Այս դեղագիրն ամբողջ կը հաղորդենք յետոյ ի կարգի համեմատական Օրինակաց։ (Տես գԹ. 2. ըստ ընԹերց. Երեքմ։) — Ինչպէս յետոյ նոյն 2որդ հմմտկն Օր. մէջ պիտի տեսնենք, Հաւաքածոյին ընԹերցուածոյն առաջին ընդարձակ բաժինն առնուած է Երեքմաներէն այս տեղ նշանակուած դեղագրէն. իսկ յետին համառօտ բաժինն՝ վերջաւորուԹիւն է ի ստորեւ յառաջ բերելոց 3որդ Դեղագրին Ցեաւէի։ (Տես նաեւ յետոյ յէջն 431 դրուած ծանօԹ. 1։

Իսկ մնացեալ երկու Դեղագրաց միոյն եւեթ սկիզբը նշանակուած է Գրիգորոյ համար սահմանուած ըլլալն՝ այսպէս. “Ա՛յլ մտբուխ որ Յիսէ բժիշկն Գրիգորոյ երեսն յաշխատաւորքն՝ ինչ լերդն ցաւէր եւ ի Մուֆարղինն գնայ„։ Իսկ վերջինը չունի որոշ անուն հիւանդի. այլ միայն այսչափ կը ծանուցուի՝ թէ “Ա՛յլ մտբուխ որ Յիսէ բժիշկն դրեց յոյր նուախաթնոյն օգտակար եւ աղէկ։

Վերջապէս ի թիւ Գրիգորոյ համար շինուած Դեղագրաց դասելու է Դեղին բժշկին անուամբ գրուած Մածունն, զոր յառաջ յիշատակեցինք[1]։

---

Երեքմանեէին խուզարկութեան ձեռնարկած ժամանակնիս, նոյն Մատենին վրայ ընդհանուր

---

[1] Դեղին բժշկին այս մածունին վրայ յառաջագոյն (յէջն 414) տրուած տեղեկութիւնն՝ եթէ համեմատենք Ահարոն բժշկին Ստեփանոս որդւոյն իւր գործունէութեան ժամանակին նկատմամբ դրած թուականին հետ, կը հետեւի որ վրիպակ մի սպրդած ըլլալու է ի մասին յիշատակեալ անձնաւորութեանց եւ կամ յիշեալ թուականին։ Ստեփանոս կը գրէ. (տես յէջն 410.) Ես Ստեփաննոս . . . եւ իմ հարազատ եղբայր Ճօշլին բժիշկ գրեցաք ինքս ի թուին Հայոց ՈՁԱ. (= 1232)։ Արդ՝ գիտենք որ Վահրամայ Գրիգոր որդին մեռած է ի թուին Հայոց ՆՂԴ. (= 1045։ Տես յէջն 136։) Ապա ուրեմն Դեղին բժիշկն. զոր գոնեայ քանի մի տարի յետնագոյն պէտք է դնել քան զՍտեփանոս, (տես Ահարոն բժշկին ցեղին բժշկաց կարգն յէջն 126) չէր կարող դեռ գրել ի դարման 200 տարի յառաջ մեռնող իշխանին։ Բայց ժամանակն ճշդիւ կը յարմարի՝ եթէ ՈՁԱ. թուականին առաջին գիրը փոխելով ընենք ՆՁԱ. (= 1032։)

Այսպիսի գրչասխալք դիւրաւ կը մեկնուին՝ երբ ձեռագրին գրչութիւնն երկաթագիր է։ Շատ հաւանական եւ գրեթէ ստոյգ է թէ Երեքմանեէին սկզբնագիրն երկաթագիր էր, գրչութիւն՝ որոյ ոչ սակաւ նշանագիրք՝ փծուն եւ անզգոյշ ձեռաց ներքեւ՝ անորոշ կը մնան. մանաւանդ զի կան նշանագիրք որ ի բնէ այնչափ մեծ խտիր չունին իրարմէ։ Եւ արդեամբք իսկ տեղ տեղ հանդիպած էին այսպիսեաց նշանակք, յորոց մին միայն իբրեւ նմոյշ յառաջ կը բերենք։ Ի Թ. 1. Հմմտկն Օրինակաց՝ ըստ ընթերց. Երեքմ. կ՚ըսուի Արիւնահոս է ի գալ ի բերնէն ի դուրս. մինչդեռ ըստ սովորական ընթերց. ամենայն ձեռագիրք կ՚ըսեն՝ Արիւնահամ ընդ բերանն ի դուրս է ի գալ, որ բուն ուղիղ ընթերցուածն է։

տեղեկութիւն տալու մտօք՝ այնպիսի ակնարկութիւններ ըրած ենք, որոցմէ կրնայ իմացուիլ անոր կարեւորութիւնն թէ՛ մատենագիտական եւ թէ՛ բանասիրական տեսակէտէ։ — Վերագոյն՝ Ա. եւ Բ. խմբի բաժանեալ՝ մէջ բերուած Օրինակներէն դիտած են անշուշտ Մատենագէտք բժշկականութեան թէ ինչպիսի ճոխ գանձարան է իրենց համար Մատեանս։ Բայց նուազագոյն չէ բանասիրաց համար ալ՝ հայեցմամբ ոճոյ եւ լեզուի՝ մանաւանդ Ա. Մասին կարեւորութիւնն, զոր դիւրին է տեսնել գլխաւորաբար Բ. խմբին օրինակներէն։

Արդեամբք իսկ նոյն Ա. Մասին լեզուն, ինչպէս նաեւ լեզու ոչ սակաւ Հատուածոց Գ. Մասին, այնպէս գեղեցիկ է, որ ընդհանրապէս խօսելով, եթէ չըսենք՝ բովանդակ մատեանն, գոնեայ ամբողջ Ա. Մասն եւ կիսով չափ Գ. Մասն, կրնան նկատուիլ իբրեւ մի յընտրելագոյն յիշատակարանաց ռամկօրէն գրականութեան։ Եւ ոչ միայն այսչափ՝ այլ նաեւ հնար է հաստատել թէ ձեռագրին մեծի մասին լեզուն՝ — չքնաղ վայելչութեամբն, դարձուածոց գեղեցկութեամբն, ասացուածոց ընտրութեամբն, ընտանեկան-ժողովրդական բառից եւ բացատրութեանց հնութեամբն . . . — այնպիսի է՝ որ չի գտնուիր մեզի ծանօթ ռամկական գրուածոց մէջ՝ ոճոյ եւ լեզուի հայեցմամբ՝ այսմ նախամեծար ընելու այլ գրութիւն, եւ հազիւ թէ սակաւաւորք կան հաւասար գծի վրայ դնելու[1]։

---

[1] Հարկ կը համարինք ծանուցանել՝ թէ ինչ է պատճառն, որ այսպիսի առաջնակարգ Մատենի մի վրայ՝ այնպէս խօսեցանք, որպէս թէ երկրորդական կարգի գրութիւն ըլլար։ Իրաց այս երեւոյթն առնուլն՝ մեզմէ անկախ պատճառի հետեւանք է։ Մենք Փարիզու Ազգային Մատենադարանին վարչութենէն միահաղոյն խնդրած էինք 106, A. եւ 108 թուով ձեռագիրներն։ Բաւական շուտ ընդունեցանք զԹ. 108, իսկ զԹ. 106, A. շատ աւելի ուշ, որով կամացս հակառակ ստիպեցանք երկրորդական գրից մէջ գործածել զՄատեանս, զոր եթէ կանխագոյն ի ձեռին

Ասացելոցս ի հաստատութիւն՝ յառաջագոյն դրուածներուն վրայ կը յաւելունք այլ եւս քանի մի Օրինակ՝ Մատենին Ա. Մասէն առնլով, եւ իւրաքանչիւրին առ երի դնելով իրեն համապատասխանող կտորներն՝ որ յայլ բժշկական գրութիւնս կը գտնուին: Եւ թէպէտ այս վերջնոց ընթերցուածքն մեծաւ մասամբ արդէն աստ անդ հաղորդած ենք, սակայն նորէն կը կրկնենք. որպէս զի ընթերցողք կարենան լաւ եւս դիտել երկու ընթերցուածոց տարբերութիւններն:

## Գ. Խումբ. Համեմատական Օրինակ:

1.

Ըստ ընթերց. Երեւմանեին:

Վասն Մանախոլայէ որ է սովդայէ լինի:

Ռուփաս ասացել է՝ թէ ի բլղամէ լինի, եւ իրաւ է ասցել: Եւ մանախոլային նշանքն այս է. յառաջ քան (ղամընայն) մարդն զկերակուրն չկարէ հալել, եւ թէ՛ շատ ուտէ եթէ՛ քիչ՝ կշտերն ուռչի եւ քամի ընկնի, եւ զմարդոյն յիմացքն քիչ քիչ տանի, եւ հանց տանի՝ որ մարդն չիմանայ եւ չաւտայ՝ թէ Իմ բժըշկութիւն կայ, եւ զինքն կախարդած գիտենայ, եւ բժշկի չաւտայ եւ ոչ դեղի՝ թէ Իմ դեղ կայ. եւ այնց գիտենայ՝ թէ յեգենն մեռնի կամ յիրիկունն: Եւ զինչ ուտէ՝ հալել չկարէ. նեղու եւ տապի, եւ սրգեւտկայ կէս թթու կէս հոտած ձկան հոտով, եւ

Ըստ սովորական ընթերց:

Վասն Մանախուլեային որ է սովդայէ դեղէ մորդոյ:

Ռուբաս բժշկապետն ասացեալ է՝ թէ Ի պալղամէ լինի եւ յարենէ. եւ իրաւ է. զի իւր նշանքն այն է՝ որ երբ մարդն զկերակուրն ուտէ՝ չկարէ հալել, եւ թէ՛ շատ ուտէ եւ թէ՛ սակաւ՝ կշտերն ուռչին եւ հետ ի հետ զմարդոյն իմացքն տանի: Եւ հանց լինի՝ որ չի հաւատայ թէ իւրն բժշկութիւն լինի. եւ զինքն կախարդած գիտենայ կամ դեղած, եւ ո՛չ բժշկի հաւատայ եւ ո՛չ դեղի, եւ հանց գիտենայ՝ թէ կա՛մ վաղն մեռանի եւ կամ երիկունն, եւ նեղի եւ տապի, եւ ձգեռտուկն գայ ժամ մի թթու եւ ժամ մի հոտած եւ ձկնահամ: Եւ ժամ մի հանց գիտենայ՝

---

ունենայինք՝ իւր ծանրակշռութեան համեմատ կը կարգադրէինք Դեղագործութեան ամբողջ Հածն:

կէս այնց գիտենայ թէ արիւնահոտ է ի գալ ի բերնէն ի դուրս ։ ...ինչ այս ցաւս մարդոյ դիպի թէ երկան եւ թէ կնգան՝ պատրաստ պիտի կալ, զի խեղդելոյ ջանայ կամ այլ ինչ իւր անձինն մեղանալոյ՝ թէ թող յիւր կենացն զերծանի ։ Եւ բժշկապետերն կոչել են զայս ցաւիս անունն Սոսամոռքոախնկարութիւն ։ (Ե։Բ) այս ցաւս ի լոյս ելնէ՝ մարդոյն քուն (անուշ)* գայ եւ սատընդոստէ. եւ երբ (ի զարթուն) լինի՝ այնց թուենայ թէ ի մութն տեղ է, եւ թուենայ թէ ի բարձր (տեղ) ի վայր է ընկնիլ եւ այնց թուի թէ ի ծով է ։ Եւ Ռուփոս ասէ՝ թէ Մարդ մին եղաւ այս ցաւովս, զինք ի դուրս չկարէին հանել. երբ ասէին՝ թէ Ի դուրս ել, ապա ասէր՝ թէ Ո՞նց ելնեմ ի դուրս՝ երբ երկինքն ի շուրջ է ի գալ եւ զիս ի ներքէ ի յունել ։ Եւ Ռուփոս ասէ՝ թէ Այս ցաւերս ի բլղամէ եւ ի սավտայէ լինի. զարմանան. (է արմացք,) զի մարդ մին (լեղէ) այս ցաւովս. բժշկապետերն ասէին՝ թէ Նշանք տուր, զի՞նչ ես. նայ չխօսէր. ապա երբ (յաջեցոյց) զինքն, հարցնէին՝ թէ Ի՞ր չխօսէիր ։ Նայ ասէր. Ո՞նց խօսէի՝ ինչ լեզուս տպիկի էր. ինչ խօսէի՝ կտրէր լեզուս ։ Եւ մարդ մին այլ կայր յՌուփասայ ժամանակին այս ցաւովս. այնց գիտէր՝ թէ Անգլուխ եմ. բժշկապե-

թէ արիւնահամ ընդ բերանն ի դուրս է ի գալ ։ ...Եւ երբ այդ ցաւդ դիպի մարդոյ՝ թէ այրկան եւ թէ կնոջ՝ պատրաստ պիտի ունել որ զինքն խեղդէ ոչ. վասն զի այնիւ խեղդի՝ թէ Թող ի յիմ կենացս զերծանիմ ։ Եւ բժըշկապետերն զայս ցաւոյս տէրն Սոսամոռքխանկար կոչեն ։ Եւ երբ այդ ցաւդ ի լոյս ելանէ՝ մարդոյն քուն վատ գայ, եւ սատ ընդ սատ գայ ի քունն ։ Եւ երբ լինի ի քունն՝ իւր հանց թուենայ՝ թէ Ի մութն տեղ եմ. եւ այլ թուի՝ թէ ի բարձր տեղաց ի վայր է անկանել, եւ կամ ի ծովու մէջ կայ եւ կամ ի նեղ տեղ կայ ։ Եւ սասցեալ է Ռուբաս՝ թէ Մարդ մի կայր, որ զինքն ի տանէն ի դուրս չկարէին հանել. եւ երբ ասէին՝ թէ Ել ի տանէդ, նա ասէր՝ թէ Ի՞նչ ցեղ ելնեմ, երբ երկինքն ի վրայս է (է) փլչել եւ զիս ի ներքեւն է յարգելել ։ Եւ այլ ասէ՝ թէ Այդ ցաւդ ի պալղամէ լինի, եւ զարմանան ։ Բայց չէ զարմանք. զի յառաջին ժամանակին մարդ մի եղեալ է այդ ցաւոյդ տէր, եւ ասէին բժշկապետերն՝ թէ Նշանք տուր քո ցաւոյդ, նա խօսէր ոչ ։ Երբ ողջացուցին, հարցին՝ թէ Է՞ր չէր խօսել. նա ասաց՝ թէ Ի՞նչ ցեղ խօսէի, երբ լեզուս ապիկի էր, թէ խօսէի՝ կտրէր ։ Եւ մարդ մի այլ կայր յիմ ժամանա-

տերն (ճար արարին) եւ արճիճէ սաղաւարտ արարին եւ ի գլխոյն դրին. ինչ գլուխն ծանրացաւ՝ ապա գիտաց Թէ իմ գլուխ կայ։

կին, եւ կարծէր՝ Թէ Անգլուխ եմ. բայց բժշկապետերն ճարտար էին, յարճրճէ սաղաւարտ զուգեցին եւ ի գլուխն եդին. եւ երբ ի գլուխն ծանրացաւ՝ ապա գիտաց Թէ Գլուխ ունիմ։

---

* Ի ձեռագրիս ճիշդ այսպէս գրուած են փակագծեալ բոլորգիր բառերն, որոց ոմանք պարզապէս գրչասխալ են, իսկ ոմանք՝ նաեւ անյարմար ըստ նշանակութեան, մանաւանդ Թէ Հակառակ իմաստ կու տան։ — Ցես նաեւ յառաջագոյն (յէջն 420) դրուած ծանօԹուԹիւնն, առանձինն՝ արիւնահոտ բառին նկատմամբ եղած խորհրդածուԹիւնն։

## 2.

Ըստ ընԹերց. Երեւմանեան։

Վասն ամենայն ցեղ մորուխի, որ է լուծման եփածու եւ խմելով։ Յառաջ քան զամենայն ինչ զՅիսէի բժշկին նուսխաԹն գրենք, որ Գրիգորոյ Վահրամայ որդոյն գրեց ի Մուֆարղինն։ Առ դեղին հալիլայ եւ քաբուլի հալիլայ հինգ հինգ դրամ, ի հաւանն ձգէ եւ ի վերայ մէկ դրամ նշի ձէԹ արկ. եւ առ վարդ, Թէ դալար լինի՝ լաւ է, եւ Թէ չոր լինի՝ չորս դրամ, եւ նինուֆար եւ ծոր եւ գինձ եւ ծեծած քշոԹ եւ շնկղի հունդ եւ փեփերնի հունդ եւ անծխոտ եւ եզան լեզու եւ մարուխ քերած՝ յամէն մէկէ երկու դրամ, նռան հատ (Երեւ) դրամ, մանիշակ եւ ըռազիան (Ե–) անիսոն մէկ մէկ դրամ, քարաւսի հունդ մէկ դրամ, յունապ (Ե–) դամոնչիր քսան քսան դրամ. Խորա-

Ըստ ընԹերց. Հաղբատածոյին։

Մոտպուխ ոլ է գրած Յեսէ բժշկին, որ օգտէ բազում ցաւերոյ։ Առ դեղին հալիլայ եւ քապուլի հալիլայ հինգ հինգ դրամ. զիրենքդ ի մէկ տեղ ի հաւան արկ, եւ ի վերայ մէկ դրամ նշի ձէԹ արկ եւ ծեծէ մանր, եւ առ վարդ՝ Թէ չոր լինի, եւ Թէ դալար լինի՝ այլ լաւ է, չորս դրամ, եւ նօնօֆար եւ ծոր եւ ծեծած գինձ եւ քիշուԹրի ունդ, որ է գայլն որ ի յայգիքն լինի, եւ անմեռուկի ունդ եւ անծխոտ եւ եզնալեզու եւ մատուտակ քերած եւ ձարձատած, յամէն մէկէ երկու դրամ, նռան հատ երեք դրամ, մանիշակ եւ ըռզիան եւ անիսոն, յամէն մէկէ դրամ մէկ եւ կէս, եւ կարօսի ունդ մէկ (դրամ), յունապ եւ դամոնչիր քսան քսան հատ, չէկ չամիչ ի կտէն հանած քսան դրամ.

սանի չամիչ ի հատճէն հանած քառասուն դրամ, Թպլհնդի տասնեւհինգ դրամ, փերճոկած գարի եւ ձարձատ արարած հինգ դրամ։ Ջամէնս ժողվէ եւ ի Թանկիրայն արկ, եւ ի վերայ՝ երեք լիտր ջուր արկ, օր մին եւ գիշեր մին ի Թ(ու՝)րջման պահէ, եւ ի կրակին դիր ինչուր մնայ Ճ մին. ի զատ առ եւ քամէ կտաւով, եւ առ յիւրմէտ հարիւր երեսուն դրամ, եւ առ պարտիզաքար չորս դանկ եւ ըռեւանդ դանգակէս մին եւ տասնեւհինգ դրամ շաքար։ Ջամէնստ աղա եւ յիրար խառնէ. եւ երբ առնուլ կամենաս՝ պատրաստ արա զինչ այլ դեղի ըռասմ է։ Գրած է. օգտէ։

Թպրհնդի տասն եւ հինգ դրամ, փերճոկած եւ ձարձատած գարի հինգ դրամ։ Ջամէնդ ի սուրբ պտուկ արկ եւ երկու լիտր ջուր արկ ի վերայ, եւ օր մի ի Թրջման պահէ, եւ ապա եփէ որ մնայ Ճ դրամ, եւ առ ի կրակէն եւ քամէ սուրբ կտաւով, եւ առ ի յայդ քամած ջրէ հարիւր դրամ եւ արկ ի ներս լազուարդ քար չորս դանկ եւ ռեւանդ դանկ եւ կէս, եւ շաքար տասնեւհինգ դրամ։ Ջամէնդ աղա եւ ի մրտպուխն խառնէ, եւ պատրաստեցս զմարդն. զերդ այլ դեղի ըռասմն . . .։

Երբ ճաշք լինի՝ տաք ջուր խմէ 'երեսուն դրամ, եւ ի տանն յուշիկ ի շուրջ եկ։ Երբ օրհասարակ լինի՝ երեսուն դրամ տաք ջուր այլ խմէ, պահ մի կաց եւ ի բաղնիս մուտ, եւ շատ մի կալ ի ներսն։ Երբ ելնես՝ առ երեսուն դրամ ջուլապ, եւ ի ներս երկու դրամ ըռեհանի հունդ խառնէ կամ պզրղատուն ի նոյն չափն, երեսուն դրամ ջուր խառնէ, խմէ, եւ պահ մի հանգիր. եւ հաց կեր՝ հաւի մոտակակ (°) եւ զիրիպաճ հաւով։ Եւ ի հացին վերայ պակաս ջուր խմէ ի ծարաւ եւ յերիկծաւքն երկու կԹխայ գինի խմէ պարզած ջրախառն։

Եւ երբ ճաշք լինի՝ երեսուն դրամ տաք ջուր տուր խմել եւ յուշիկ ի տուն շուրջ Թող գայ, եւ երբ օրհասարակ լինի՝ քսան դրամ տաք ջուր այլ տուր խմել, եւ պահ մի կալով՝ ի բաղանիսած, բայց շատ Թող չյամէ ի ներս։ Երկու դրամ ըռահանի ունդ եւ երեսուն դրամ հով ջուր արկ ի վերայ եւ տուր որ խմէ եւ պահ մի հանգչ. եւ հաց տուր՝ հաւի մսով զիլիպայճ եւ զոմին անզաֆրան շաքրով։ Եւ ի հացին վերայ Թէ ծարաւի՝ ջուր տուր պակաս, եւ յիրեկունն երեք կԹխայ պարզած գինի տուր խմելոյ՝ ջրախառն. եւ օգտէ Աստուծով։

Յ·

Ըստ նախընթացոյ ընթերց։

Մաջուն կոմիտ Թագաւորի, որ օգտէ զօդուածացաւի եւ նկրիսի, որ դադրեցնէ եւ օգտէ երկուսանացն, եւ յողջութեանն թէ առու՝ ցաւիտ ընձայիլ չտայ, եւ զ(ը)նձայածն առողջացնէ, եւ ջերմնոտի որ ի վաղեց ընկացել լինի՝ օգտէ, եւ փայծղնացաւի որ ի թանձր քամոյ լինի հով եւ հեւոց. օգտէ հին հազի եւ աղեցաւի եւ ելունի որ յաղէքն լինի, եւ որ աչացն մթնել լինի եւ լոյսն պակասել, եւ աչացաւի եւ փողացաւի, եւ երբ յողջնութեանն յոյրմէտ ըմբել տաս՝ զանձն առողջ պահէ ի ցաւերոյ եւ ի տխպոց։ Առ... ստախոսս եւ զուկի ձէթ՝ մենու եօթն դրամ. մուռ, կարմիր վարդ եւ բալասենի պտուղ՝ մէնու չորս դրամ... հնդկոկի հունդ եւ նշի խէժ՝ մենու վեց դրամ... զամէնտ աղա եւ մաղէ եւ զխէժերդ գինով թրջէ եւ զամէնտ ի մին խառնէ, եւ որչափ դեղերտ են՝ այնչափ երեք մեղր հալէ, եւ ի զատ առ ի կրակէն եւ զամէն դեղերտ ի ներս արկ, խառնէ եւ ի կճուճ դիր, եւ երբ տաս մարդոյն՝ յերկու դրամէն ինչուր ի չորս դրամն տուր անուշ գինով. օգտակար է։

Ըստ նախընթացոյ ընթերց։

Մաճուն որ կոչի Ակաւմիտ Թագաւորին մաճուն, որ օգտակար է զօդուածացաւի եւ նկրիսի, որ դադարեցնէ զցաւն եւ չտայ ընծայել, (Ե– Երբ ընծայել, լինի՝ զայն ողջ առնէ, եւ ջերմնոտի որ ժամնակաց լինի՝ օգտէ, եւ փայծղնացաւի եւ թանձր քամոյ որ ի հովութենէ լինի՝ օգտէ, եւ հեւոց եւ հին հազի եւ աղեցացաւութեան. եւ որոյ լոյս յաչից պակասել լինի՝ օգտէ. եւ փողացաւութեան օգտէ, եթէ (յ)այդ ցաւերոյդ լինի առ մարդն եւ տաս՝ բժշկէ, եւ թէ յառաջ տաս՝ ի յայդ ցաւերոյդ չտայ ընծայել առ մարդն։ Առ... ստախօտուս եւ զուկի ձէթ, — զուգծոյ է ինքնդ, — յամէն մէկէ եօթն դրամ... զմուռ... կարմիր վարդ եւ բալասենի պտուղ՝ յամէն մէկէ չորս դրամ... հնդկոկի ունդ եւ նշի խէժ՝ յամէն մէկէ վեց դրամ...։ Զայս դեղերս զամէնն աղա եւ մաղէ, եւ զոր չլեսուին՝ գինով ի թուրջ արկ, եւ զամէնտ յիրար խառնէ եւ մեղրով շաղէ եւ յաման արկ եւ պահէ, եւ երբ պիտենայ այդ ցաւերոյտ՝ տուր երկու դրամէն ինչուէ չորս դրամն։

### 4.

Ըստ Նախընթաց ընթերցի:

Պիտի որ զերակն զհիւանդին ճանաչես թէ աղէկ է՝ թէ չէ, ուժով՝ թէ վատուժ, յերկայն է՝ թէ կարճ, այնով պիտի գիտենալ՝ որ ինչ մարդն ողջ լինի՝ մոդամ յողջնութեանն զերակն տեսել լինի, եւ ինչ հիւանդանայ՝ զշահն եւ զզենն այնով գիտենայ. զի ամէն բժշկապետերն զայս են հրամայել եւ մեք զայս հրամայեցաք:...

Ինչ զմարդոյն երակն բռնես, եւ մատներոյն ներքեւ աղէկ ի լոյս խաղայ եւ դէպ ի վեր ի բազուկն աղէկ երեւնայ, այսոր անունն յերկայն ասեն: Ապա թէ չերթայ շատ ի վեր եւ երակն ի բազկին միջին լինի, եւ վերի կոյսն եւ ներքին միաչափ լինի եւ երակն ի միջին լինի, այնոր լայն ասեն: Ապա թէ խիստ լինի եւ մատինդ ներքեւ խիստ զարկնի. այնց որ քեզ այնց թուենայ թէ զմատնդ ի զատ է ի ձգել, այնոր ահաւ(որ) ասեն: Ապա թէ մեղմ չլինի եւ շատ խաղայ մատինդ ներքեւ, այնոր սուր ասեն: Ապա թէ պահ մի յերկանանայ եւ պահ մի կարճանայ, այտոր յերկար ասեն: Ապա թէ զձեռնդ ի վերայ հարուս եւ քեզ անց թուի թէ ի վէմ ես ի հանել կամ ի յորմ, այտոր անունն թոյլ ասեն:...

Եւ ինչ մարդն ի քնոյ զարթի, յայն պահն երակն

Ըստ ընթերցի. Յետոտէր. 1294ին:

Պարտ եւ արժան է զերակն ճանաչել զհիւանդին այսպիսի նշանօքս. զվատուժն եւ զուժովն, զերկայնն եւ զկարճն. եւ այսպէս կարես գիտել եւ իմանալ՝ որ եփ մարդն առողջ լինի՝ համակ տեսանուս զերակն, որ եփ հիւանդնայ՝ կարէ իմանալ զշահն եւ զվզենն, զի ամենայն բժշկապետքն զայս են հրամայել:

Եփ զմարդոյն երակն բռնես մատներովդ ի վերայ, եւ աղէկ ի լոյս խաղայ ու դէպ ի վեր ի բազուկն երեւնայ, այսոր անունն յերկայն ասեն: Ապա թէ չերեւնայ շատ դէպ ի վեր եւ ի բազկին մէջն երեւնայ, այսոր անունն լայն ասեն: Ապա թէ մատինդ ներքեւ խիստ զարկնէ ու թըւենայ թէ զմատնդ ի զատ կու հանէ, այտոր ահաւոր ասեն: Ապա թէ մեղմ չլինի եւ շատ խաղայ մատինտ ներքեւ, այտոր սուր ասեն: Ապա թէ երակն մատինտ ներքեւ պահ մի յերկայննայ ու պահ մի կարճնայ, այնոր յերկայն ասեն: Ապա թէ երբ զմատներդ ի վերայ դնես ու հայնց թուենայ թէ ի վէմ հատաւ, այտոր թոյլ ասեն:...

Եւ եփ ի քնոյ զարթչի մարդն, յայն ժամն երակն

ուժով լինի քան զայն որ պահ մի կայ: Եւ ինչ մարդն ի բաղնիսն մտէ, երակն ուժով լինի քան զայն որ չլինի մտել, եւ կա(րող) լինի եւ սուր: Եւ թէ մարդն ի բաղնիսն շատ յամէ, երակն վատուժի եւ բարականայ, զի երբ մարդն ի բաղնիքն շատ կայ, վատուժի եւ զեն արնէ եւ սիրտն փխցկի. եւ ինչ ի բաղնեցն ելնէ եւ պահ մին կայ, այլ ուժովանայ եւ դառնայ: Եւ (եթէ) մարդն զհացն ուտէ եւ պարապէ ի հացէն, երակն ընդ վատուժն եւ ընդ ուժովն ի մէջ լինի: Եւ գինին յերկին ուժն յաւելցնէ եւ շուտ արնէ յերակն երեւումն:

ուժով լինի քան եփ պահ մի յեմէ: Ու եբ ի բաղնիք մտէ ու ելնէ՝ նա երակն ուժով լինի քան յառաջ որ մտէր, եւ կարող լինի եւ սուր: Ապա թէ յեմէ ի բաղնիքն երակն վատուժէ ու բարկընայ, զի ի շատ յեմելն՝ տանի բաղանիքն զուժն զերկին եւ տհոկէ. բայց յետ ելնելոյն՝ եփ պահ մի կենայ, այլվայր դառնայ ուժն եւ զօրանայ երակն: Եւ եփ մարդն հաց ուտէ եւ պարպէ՝ երակն ընդ վատուժն եւ ընդ ուժովն ի մէջ լինի: Եւ գինին յերակին ուժն յաւելու եւ սրացնէ եւ շուտացնէ երեւումն յերակն քան զհացն:

5.

Ըստ Նախընթաց ընթերց:

Արժան է զհիւանդին գոյնն տեսնել, եւ այս ի ջերմ ցաւի ի ներս լինի: Ինչ տեսանես զգոյնն որ զերդ ողջի գոյն լինի կամ զերդ իւր սովորութեանն գոյնն, բարոյ նշան է: Ապա թէ չլինի զերդ ողջի գոյն կամ զերդ իւր սովորութեան գոյնն, գէշ նշան է: Առաջքն այս է որ քիթն նուրբ եւ բարականայ, եւ աչքն ի քնոյ երակնին ի խորն երթայ, եւ ականջն հովնայ եւ սպիտակի եւ նիհարնայ, եւ ճակտին կաշին պնդի. եւ երեսն թխանայ կամ կանընչի կամ արճիճագոյն դառնայ. այսոք չեն աղէկ, մահու նշան են: Բարի թէ երեսն նի-

Ըստ Նախընթաց ընթերց:

Ի ջերմ ցաւերն՝ յորժամ տեսնես զգոյնն զէդ աղէկ մարդոյ կամ որպէս ի(ւր) սովորութիւն էր, այտ բարոյ նշան է: Ապա թէ տեսանես որ քիթն դառնայ եւ բարկնայ, եւ աչքն խորխնայ, եւ ականջքն սպիտակէ եւ հովնայ, եւ քներոյն երակն ի ներքս երթայ, եւ ճակտին կաշին պնդի, եւ երեսն աղխնայ եւ թխանայ եւ արճիճգոյնի կամ կանաչգոյնի, այսոք չեն բարոյ նշան. մահու է: Ապա թէ մարդ լուծումն ունենայ եւ երեսն աղխնայ, չէ ահոկ՝ զի յայնոր լինի: Եւ յորժամ հիւանդն ի քուն լինի, եւ աչքն ի բաց մնայ, մահու-

*հար լինի եւ մարդոյն լուծումն լինի դիպել, այնօք լինի, այն չէ գէշ նշան: Ապա թէ հիւանդն ի քուն լինի եւ աչքն ի բաց մնայ, մահու նշան է: Եւ թէ արտեւանունքն ի վեր լինի շրջել եւ ի ներս կապոյտութիւն լինի, չէ աղէկ նշան: Այլ նշան որ հետ այսոր երեւի, գիտացիր թէ ի մահ մօտել է. թող զհիւանդն որ զինչ կամի՝ ուտէ, զի բժշկի չէ բանս: Ապա ինչ ի հիւանդն մօտես եւ տեսնես ի մին կողման վերայ ի պառակ, կամ յաջ կամ ի ձախ, եւ ինչ յանձն հանրիս՝ անձն թաց թաց լինի կամ վիզն, բարոյ նշան է: Ապա թէ զհիւանդն պորտ ի վեր տեսնուս. եւ զձեռներն եւ զոտներն ի վայր հանած, չէ աղէկ: Ապա թէ հետ այսոր ի վայր լինի յընկնիլ կամ ի սնարուցն յանոտքն լինի ի խաղալ, խիստ գէշ է: Ապա թէ հետ այսոր զոտներն ի բաց տեսնես եւ տաք չլինի՝ հով լինի, եւ հիւանդն խիստ ի տապի լինի, եւ թէ ի քուն լինի եւ բերանն ի բաց, չէ բարոյ: Ապա թէ զհիւանդն տեսնուս ի վերայ փորոյն պառկած, եւ յողջոյթն չէ սովորութիւն այնց պառկելոյ, գէշ նշան է. գիտացիր որ խելքն խառնակել կամի եւ ընդ այլ կամի խօսիլ, եւ ցաւն ի փորին լինի:...*

*Նշան է. եւ թէ աքուն լինի հիւանդն եւ աչքն ընդ այնոր խորանայ, չէ ահոկ: Ապա թէ եբ առ հիւանդն մօտես, եւ տեսնես զհիւանդն ի մէկ կողման ի վերայ պառակ, եւ երբ զձեռնդ տանիս՝ վիզն եւ անձն թաց թաց, լաւ նշան է: Եւ թէ մօտես առ հիւանդն եւ զինք պորտ ի վեր տեսնես, եւ զոտքն եւ զձեռքն մեկնած, չէ լաւ նշան: Ապա հետ այսոր թէ ի սնարուցն ի վայր լինի ընկեալ եւ դէպ ի յանոտքն խաղայ եւ յօժարի, այդ բնաւ գէշ նշան է: Եւ թէ տեսնես զհիւանդն ի փորոյն վերայ պառակ, եւ չէր իր սովորութիւն, գէշ նշան է. գիտացիր որ խելքն խառնակել կամի եւ ընդ այլ խօսել, եւ ցաւն ի փորն է:...*

6.

Ըստ բնագրոյ. Երեւմանեկին:

*Վասն գողութեան ասաց Գաղիանոս՝ թէ Որք փորձեցին յառաջ քան զմեզ եւ զոր մեք փորձեցաք, օգտէ քան զամէն լաւ՝ օձի միսն: Զի երիկ*

Ըստ բնագրոյ. Ասորւոյ:

*Գեղիանոս ասաց. Յիմ ժամանակս երեք մարդ տեսայ որ զերծան: Մէկն մեծատուն էր եւ չարասիրտ մարդ էր, եւ ունէր ծառայ մի որ կերակուր եփէր:*

մարդ մին մեծատուն գողեցաւ. յիս բերին շատ ծառայօք եւ աղախնօք՝ սպասաւորք ոյրեննն եւ ծառականք, եւ ասաց՝ Թէ Մի խնայեր յիմ իրքս, եւ ի քո դեղն ինձ ճար արա: Ապա կացուցի եւ դեղ առնէի նմա: Մին օրն ապաս էին արրել նմա իւր աղախներն. եւ չար էր մարդն ի նոցա վերայ. երեկ օձն, ի ապասն ընգաւ եւ եփեցաւ ի ներսն: Նոքա չիշխեցին ի խիստ գալ, ասացին՝ Թէ Եկայք որ չգանք ի խիստ, ուտել տանք եւ զերծնունք յոյրմէն: Ապա զերդ հաց ուզեց եւ կերաւ ի ապասէն՝ ի քուն եղաւ ինչուր ի յեգէն: Երբ զարթաւ՝ խորխն ելնելոյ առաջ արար, եւ օրերն յաջեցաւ եւ անարատ յոյր տուն գնաց:

Մին մարդ այլ ածին յիս՝ մեծատուն եւ հարուստ, եւ ի ծախք եդիր զիւր հարստութիւնն: Եւ ջանք դրի նմա դեղարանօք. ետու նմա աւագ Թրիակ, եւ ծեփէի զանձն նորա աւագ Թրիակով, եւ օձի միս ուտնէ (°) ետու: Յաջեցաւ եւ գնաց յոյր տունն փառաւորելով զԱստուած:

Ա՛յլ ասաց Գաղիանոս՝ Թէ Երրորդ զայս այլ փորձեցի: Մարդ մին աղէկ Յունաց երկրէն այլ գողեցաւ, եւ անց զգալի եղաւ՝ որ ի մարդոյ մէջ ոչ Թողուին: Ի դրացի յանդին մայր առնէր ի հնձողացն եւ ի վաստակաւորացն, եւ շնչոփն ապրէր: Մին օրն շատ հնձողք կային եւ հաց եւ գինի էին բերել, եւ զգինին ի տաշտեր էին արկել՝ որ յետ ի հաց գային: Զերդ եկին ի հաց՝ օձն եկել էր ի

Օր մի զպտուկն ի բաց էր մոռացեր, օձ ընկաւ, եփեցաւ, եւ նա վախաց ասելու, եւ եբեր կերցուց: Եւ մարդն ի քուն եղաւ. երբ զարթեցաւ՝ կաշին ի վեր էր շրջել եւ ողջացաւ:

Մէկն աղքատ էր եւ մօտ ի ճանապարհն նստէր. եւ հօն արտհնձողք կային, եւ տիպոն էր (°) որ գինի պահէին վասն խմելոյ: Օր մի տեսան որ գինին փրփրել էր, լցին ի տաշտն եւ զսափորն կոտրեցին՝ նա ի մէջն օձ էր. ասեն՝ Թէ Զգինին գողոյն տանք որ խմէ եւ մեռնի եւ խալսի ի ցաւէն: Երբ խմեց՝ ի քուն եղաւ, եւ երբ զարթեաւ՝ ողջացաւ:

Մէկն հարուստ մարդ էր, նա շատ գանձ առաւ եւ եկաւ ի մօտս: Այդպէս կու այնէի: Եւ գիշեր մի մէկ մի ձայնեց ինձ եւ ասէ. Քանի՞ տանջես զայդ մարդդ: Եւ ես ասի՝ Թէ Դեղ կու այնեմ, բայց չի օգտել: Եւ նա ասաց՝ Թէ Աւագ Թիրեաք կերցո, եւ զինքն ի ձոր մի տար եւ Թիրեաքով զամէն անձն ծեփէ: Եւ արարի այնպէս, եւ ողջացաւ: Եւ քան զամէն իրք օգտակար քան զօձի միսն չկայ որ տան իւրեննն:

*տաշտն ընկել եւ սատկել: Ասացին՝ թէ Եկայք որ գողուն խմել տանք՝ որ ի նմանէ զերծնունք: Ածին եւ խմել ետուն. հարբեցաւ եւ ի քուն եղաւ: Ինչ զարթեաւ՝ խորխն ելնելոյ առաջ արար, եւ ի պակաս օրեր յաջեցաւ:*

*Առաջնոյ Մասին Երեքմանեին այլ բժշկական ծանօթ գրուածոց հետ ունեցած ամբողջական կապակցութիւնն լաւ իմանալու համար՝ պէտք էր երկայն եւ դժուարին խուզարկութեան մտնել, զոր կարճառօտիւք ի գլուխ հանել անկարելի է. ուստի խօսքն ի վեր անդր յառաջ բերեալ վեց Օրինակաց կ՚ամփոփենք: — Այլեւայլ եւ միմեանց աննման յարաբերութեան մէջ են իրարու հետ նոյն իսկ սակաւաթիւ համեմատական Օրինակացս ընթերցուածք. կ՚ուզենք ըսել՝ ընթերցուած Երեքմանեին, եւ իւրաքանչիւր Օրինակին առ երի դրուածին: Որչափ կրնայ մակաբերուիլ, Առաջին Օրինակին երկու ընթերցուածքն իրարմէ անկախ են եւ զատ զատ թարգմանութենէ առեալ կ՚երեւան: — Երկրորդին եւ Երրորդին համար հնար է ապահովութեամբ հաստատել թէ Երեքմանեէն առած է Հաւաքածոյն. այն միայն կայ՝ որ 2րդ Օրինակին վերջերն երկու ընթերցուածքն բաւական կը տարբերին իրարմէ. բայց այս տարբերութիւնն անտի կը պատճառի որ իւրաքանչիւր խմբագիր ուզած է իւր ընթերցուածոյն վերջն՝ նախընթաց մասին համաձայնցընել, Երեքմանեայն իւր խօսքն՝ հիւանդին ուղղելով, իսկ Հաւաքածոյն՝ բժշկին[1]: — Դժուարին է ճշդիւ որոշել Չորրորդին եւ Հինգերորդին ընթերցուածոց յարաբերութիւնն. կայ ինչ ինչ*

---

*1 Որովհետեւ ըստ ընթերցուածոյ Երեքմանեին՝ երկու Դեղագրաց մէջ ալ՝ խօսքն ուղղուած էր հիւանդին, եւ այս պատճառաւ խմբագիր Հաւաքածոյին ուզելով սովորական Դեղագրի դարձընել՝ առաջին բաժնին սկզբնաւորութիւնն ուղղած էր բժշկի, — ի հարկէ երկրորդ բաժինն եւս նոյն-կերպով փոխելու եւ խօսքը բժշկի ուղղելու էր: Աստի ծագած է տարբերութիւնն որ կայ իւր եւ Երեքմանեին ընթերցուածոց մէջ:*

որ միտել կու տայ կարծելու թէ մին միւսէն առած՝ է, կայ նաեւ այլ ինչ՝ որ հակառակ կարծեաց հակել կու տայ։ Թերեւս երկու խմբագիրք միեւնոյն աղբիւրն ունենալով, իւրաքանչիւրն իւր կամաց համեմատ փոփոխութիւններ մուծած ըլլայ, որոցմէ ծագին այս տարբերութիւնք։ — Աւելորդ է խօսիլ Վեցերորդ Օրինակին վրայ։ Ամէն բանասէր ինքնին կը տեսնէ մեծ զանազանութիւնն որ կայ երկու ընթերցուածոց մէջ։ Այնչափ գեղեցիկ է Երէքմանէին ընթերցուածոյն լեզուն, որ Սեբաստացւոյնն՝ իբրեւ ստուեր կրնայ ծառայել առաջնոյն անհամեմատ վայելչութիւնն յերեւան հանելու։ Ստիպուեցանք զայս ընթերցուած առնուլ՝ այլուր չգտնելով լաւագոյն համեմատական, մանաւանդ որ գրեթէ առանց տարբերութեան նոյն ընթերցուածն ունէին թէ՛ մեր եւ թէ՛ Ս. Ղազարու ձեռագիրք բժշկարանին Ասարայ։

---

Դառնանք արդ Գ. Ախրապատնին հետազօտութեան, զոր ընդհատեցինք Երէքմանէին զբաղելու համար, որոյ լիուլի տեղեկութիւնն հարկաւոր կը տեսնէինք յիշեալ հետազօտութիւնն բստ կարի կատարեալ ընելու։

Ընդհատմանէս յառաջ տեսած ենք թէ Ա. Ախրապատնին եւ նոյն Գ.ին (Հաւաքածոյին) մէջ հաւասարապէս գտնուող Դեղագիրք՝ Ա.էն (= 1294ին Ախրապատնէն) անցած են Գ.ին։ Արդ՝ կը զրուցենք թէ նաեւ Բ. (Ամիրտովլաթայ) եւ միեւնոյն Գ.ին մէջ հաւասարապէս գտնուող բազմագոյն թուով Դեղագիրք նոյն կերպով Բ.էն անցած են Գ.ին. բայց այս վերջնոց նկատմամբ չէ կրնար կատարեալ ապահովութեամբ հաստատուիլ, այլ լոկ հաւանական կարծեօք։ Զայս զանազանութիւն (հաւանականութեան, եւ ոչ կատարեալ ապահովութեան) հարկ է դնել՝ նախ այն պատ-

ճառաւ որ Բ.ին նկատմամբ չկան պատմական հիմունք՝ ինչպէս տեսանք որ կային Ա.ին համար։ Ջանազանութեանս երկրորդ պատճառ մ'ալ այն է՝ որ յընթերցուածս Բ.ին եւ Գ.ին կը հանդիպին այնպիսի տարբերութիւնք, յորս կը դիտուին նշանք ինչ՝ որ կասկածել կու տան ոմանց թէ գուցէ Բ. Ախրապատինն չէ ինքնագիր գործ Ամասիացի բժշկապետին, այլ հանեալ է այն աղբիւրներէն, որոցմէ՝ կանխագոյն քան զնա՝ ժողոված էր Գ.ին խմբագիրն։ Հնար է նաեւ որ այս ոք կամ այն համարի թէ Ամիրտովլաթ ինքնին քաղած է Հաւաքածոյէն։

Ըստ մեզ՝ աւելորդ բծախնդրութիւն է այսպիսի անհիմն եւ առերեւոյթ զըաբանութեանց ականջ դնելով, մուրացածոյ բանաքաղութեան կարգ իջեցընել այնպիսի աշխատութիւն մի, զոր մեր միջին ժամանակաց նշանաւորագոյն բժըշկապետն այնչափ ջանիւք եւ հոգատարութեամբ յօրինած է, եւ իբր իւր սեպհական գրութիւնն՝ իւր անուամբն յերեւան հանած։ — Յիշատակեալ զըաբանութեանց գլխաւորն այն է, որ երկու (Բ. եւ Գ.) Ախրապատնից մէջ հաւասարապէս գտնուող Դեղագրաց սկիզբն՝ ի Հաւաքածոյին գրեթէ միշտ նշանակուած կ'ըլլայ բժշկապետի մի անունն, մինչդեռ նոյնպիսի անուն հազիւ քանի մի անգամ կը հանդիպի յԱխրապատնին Ամիրտովլաթայ, եւ այս տարբերութիւնն այնպէս կը մեկնեն հակառակորդք՝ իբր թէ վերջինս նոյն Դեղագիրներն առած է Հաւաքածոյէն։ — Բայց կը համարինք թէ այս կէտս չունի ամենեւին ապացուցական զօրութիւն. եւ զայս կարծիս կը հիմնենք յաջորդ պարագային վրայ։ Մենք Բ.ին Դեղագիրներն յառաջ բերած ենք ըստ ընթերցուածոյ Համառօտեալ խմբագրութեան, եւ ոչ եթէ Լիակատար խմբագրութեան, զոր չունէինք ի ձեռին։ Սակայն գիտենք որ կայ այսպիսի Լիակատար խմբագրութիւն ի ձա-

որ միտել կու տայ կարծելու թէ մին միւսէն առած՝ է, կայ նաեւ այլ ինչ՝ որ հակառակ կարծեաց հակել կու տայ։ Թերեւս երկու խմբագիրք միեւնոյն աղբիւրն ունենալով, իւրաքանչիւրն իւր կամաց համեմատ փոփոխութիւններ մուծած ըլլայ, որոցմէ ծագին այս տարբերութիւնք։ — Աւելորդ է խօսիլ Վեցերորդ Օրինակին վրայ։ Ամէն բանասէր ինքնին կը տեսնէ մեծ զանազանութիւնն որ կայ երկու ընթերցուածոց մէջ։ Այնչափ գեղեցիկ է Երեքմանէին ընթերցուածոյն լեզուն, որ Սեբաստացւոյնն՝ իբրեւ ստուեր կրնայ ծառայել առաջնոյն անհամեմատ վայելչութիւնն յերեւան հանելու։ Ստիպուեցանք զայս ընթերցուած առնուլ՝ այլուր չգտնելով լաւագոյն համեմատական, մանաւանդ որ գրեթէ առանց տարբերութեան նոյն ընթերցուածն ունէին թէ՛ մեր եւ թէ՛ Ս. Ղազարու ձեռագիրք բժշկարանին Ասարայ։

---

Դառնանք արդ Գ. Ախրապատնին հետազօտութեան, զոր ընդհատեցինք Երեքմանէին զբաղելու համար, որոյ լիուլի տեղեկութիւնն հարկաւոր կը տեսնէինք յիշեալ հետազօտութիւնն ըստ կարի կատարեալ ընելու։

Ընդհատմանէս յառաջ տեսած ենք թէ Ա. Ախրապատնին եւ նոյն Գ.ին (Հաւաքածոյին) մէջ հաւասարապէս գտնուող Դեղագիրք՝ Ա.էն (= 1294ին Ախրապատնէն) անցած են Գ.ին։ Արդ՝ կը զրուցենք թէ նաեւ Բ. (Ամիրտովլաթայ) եւ միեւնոյն Գ.ին մէջ հաւասարապէս գտնուող բազմագոյն թուով Դեղագիրք նոյն կերպով Բ.էն անցած են Գ.ին. բայց այս վերջնոց նկատմամբ չի կրնար կատարեալ ապահովութեամբ հաստատուիլ, այլ լոկ հաւանական կարծեօք։ Զայս զանազանութիւն (հաւանականութեան, եւ ոչ կատարեալ ապահովութեան) հարկ է դնել՝ նախ այն պատ-

ճառաւ որ Բ.ին նկատմամբ չկան պատմական հիմունք՝ ինչպէս տեսանք որ կային Ա.ին համար։ Զանազանութեանս երկրորդ պատճառ մ՚ալ այն է՝ որ յընթերցուածս Բ.ին եւ Գ.ին կը հանդիպին այնպիսի տարբերութիւնք, յորս կը դիտուին նշանք ինչ՝ որ կասկածել կու տան ոմանց թէ գուցէ Բ. Ախրապատինն չէ ինքնագիր գործ Ամասիացի բժշկապետին, այլ հանեալ է այն աղբիւրներէն, որոցմէ՝ կանխագոյն քան զնա՝ ժողոված էր Գ.ին խմբագիրն։ Հնար է նաեւ որ այս ոք կամ այն համարի թէ Ամիրտովլաթ ինքնին քաղած է Հաւաքածոյէն։

Ըստ մեզ՝ աւելորդ բծախնդրութիւն է այսպիսի անհիմն եւ առերեւոյթ զրաբանութեանց ականջ դնելով, մուրացածոյ բանաքաղութեան կարգ իջեցընել այնպիսի աշխատութիւն մի, զոր մեր միջին ժամանակաց նշանաւորագոյն բժշկապետն այնչափ ջանիւք եւ հոգատարութեամբ յօրինած է, եւ իբր իւր սեպհական գրութիւնն՝ իւր անուամբն յերեւան հանած։ — Յիշատակեալ զրաբանութեանց գլխաւորն այն է, որ երկու (Բ. եւ Գ.) Ախրապատնից մէջ հաւասարապէս գտնուող Դեղագրաց սկիզբն՝ ի Հաւաքածոյին գրեթէ միշտ նշանակուած կ՚ըլլայ բժշկապետի մի անունն, մինչդեռ նոյնպիսի անուն հազիւ քանի մի անգամ կը հանդիպի յԱխրապատնին Ամիրտովլաթայ, եւ այս տարբերութիւնն այնպէս կը մեկնեն հակառակորդք՝ իբր թէ վերջինս նոյն Դեղագիրներն առած է Հաւաքածոյէն։ — Բայց կը համարինք թէ այս կէտս չունի ամենեւին ապացուցական զօրութիւն. եւ զայս կարծիս կը հիմնենք յաջորդ պարագային վրայ։ Մենք Բ.ին Դեղագիրներն յառաջ բերած ենք ըստ ընթերցուածոյ Համառօտեալ խմբագրութեան, եւ ոչ եթէ Լիակատար խմբագրութեան, զոր չունէինք ի ձեռին։ Սակայն գիտենք որ կայ այսպիսի Լիակատար խմբագրութիւն ի Վա-

տասն Գլուխ, որոյ համար կ'ըսուի թէ Ամիրտովլաթ աշխատասիրած է Մուսի իբն Մայմունի արաբական գրուածին վրայէն, ճիշդ այնպէս ինչպէս կը յայտարարէ Համառօտեալ խմբագրութեան Յառաջաբանին: Անշուշտ խմբագիր Հաւաքածոյին այս Լիակատար խմբագրութենէն առած է յիշատակեալ Դեղագիրներն, որոց սկիզբն հաւանական է որ գտնուէին անուանք բժշկապետաց, զոր իբրեւ աւելորդ դուրս թողած է խմբագիր Համառօտելոյն:

Այսպէս լուծուելով կնճիռն, Ամիրտովլաթ կը մնայ սեպհական Հեղինակ իւր Ախրապատինին:

Մի անգամ հաստատուելէն ետեւ որ Հաւաքածոյիս ոչ սակաւ Դեղագիրքն առեալ են մեզի ծանօթ երկու (Ա. եւ Բ.) Ախրապատիններէն, կը մնայ ցուցընել թէ ուստի առեալ են անոր մնացած բազմագոյն Դեղագիրքն, որ չեն գտնուիր նոյն երկուքին մէջ, եւ միանգամայն թէ անոնցմէ եւ թէ իրարմէ տարբեր ոճ ու լեզու ունին: — Յառաջագոյն տրուած տեղեկութիւններէն եւ բերուած պատճառաբանութիւններէն ինքնին կը հետեւի թէ առեալ են այլ նմանօրինակ բժշկական-դեղագործական գրութիւններէն, որ այն երկուքին պէս՝ հայ լեզուաւ էին, եւ ծանօթ՝ ազգային բժշկաց[1]:

---

1 Տես Հաւաքածոյին կազմութեան, ներքին համեմատութեան եւ այլ Ախրապատինից հետ ունեցած յարաբերութեան վրայ կանխաւ ըսուածներն: (Հատուած. 393—396:) — Տես նաեւ գրութեանս սկիզբներն (10) Մխիթարայ Հերացւոյ Ջերմանց Մխիթարութեան յառաջաբանական ինքնագիր տեղեկութենէն առնուած կտորն, զոր աստ միւսանգամ յառաջ կը բերենք այնպիսեաց համար որ հնար է թէ չունենան դիւրութիւն այլուր գտնելու: Ես այս է բժշկապետիս խօսքն. "Ես Մխիթար Հերացի, տրուպս ի բժշկաց, որ ի մանկութենէ . . . վարժեցայ ի գպրութիւն Արաբացւոց, Պարսից եւ Հելլենացւոց, տեսի յընթերցուածս որ առ նոսա գրոցն՝ զի ունէին զարուեստ բժշկութեան լի եւ կատարեալ . . . այսինքն՝ զնախագիտութիւն, որ է իմաստ եւ վարդապետութիւն բժշկական

*Երկու իրական ապացոյցք գոյութեան հայերէն հին բժշկական գրուածոց:*

Ա· Նոյն հայերէն հին գրութեանց գոյութեան զօրաւոր ապացոյց է Երեքմասնէին մանաւանդ Ա· Մասն, որ՝ ինչպէս Մատենին խմբագիրն ինքնին կը վկայէ՝ ժողովեալ է յայլեւայլ բժշկական գրուածոց, այն եղանակաւ՝ որով ըստ մեզ ժողովեալ է Հաւաքածոյն։ (Բազմագոյն վկայութեանց մէջէն՝ տես մեր յառաջ բերածնո՛րն։ Հետազօտ. էջ 409։) — Եւ արդէն Ա· Մասին հատածոց շատերուն իրարմէ տարբեր ոճ ու լեզու ունենալն՝ մեծ հաստատութիւն կու տայ այս կարծեաց։ Վասն զի թէեւ՝ մեր յառաջագոյն (Անդ.) ակնարկածին համեմատ՝ Մասինս լեզուն ըստ ընդհանուր հանգամանաց ունի միակերպութիւն, սակայն այսու միակերպութեամբ հանդերձ, կարելի չէ ուրանալ ոչ սակաւ հատածոց՝ լեզուաւ իրարմէ տարբերիլն։ — Մեկնենք աստէն թէ ինչ մտօք պէտք է իմանալ զայս միակերպութիւն եւ ո՛ր են նշանները։

1. Միակերպութեանս ամենէն աւելի աչք զարնող նշանն այն է՝ որ բովանդակ Ա· Մասին մէջ ամենեւին չի տեսնուիր ռամկօրէն սահմանական ներկային ու անկատարին յայտարարն՝ ոչ միայն կու կամ լոկ կ, այլ եւ ոչ հնագոյն ձեւերն

---

տրուեստից. եւ ի Հայս բնաւ ոչ գտի զվարդապետութիւն եւ զհմաստ նախագիտութեանն, այլ զատածումն միայն. եւ այն՝ ոչ ըստ կարգի եւ լի՝ այլ համառօտ եւ ծաղկաքաղ աստի եւ անտի հաւաքեալ յայլեւայլ գրչաց»։

Այս խօսքով յայտնապէս կը ցուցընէ Մխիթար թէ ունէր ի ձեռին հայերէն Ախրապատիններ կամ Դեղազուգական գրութիւններ, զոր եւ յընթացս գործոյն քանի մի անգամ ի վկայութիւն եւս կը կոչէ, այսպէս. «Ցուր զդեղն նախկին զոր յԱկրապադինն կայ գրած։ — Ցուր զտապակն զոր ըռազխանի ջրով եւ հնախպէի ջրով թրջած լինի, եւ զինքդ ի յԱկրաբայդինն գտանես գրած։ — Քան զամենայն դեղեր՝ որ գրեալ են եւ զոր մենք փորձեր ենք եւ սովոր ենք տալոյ, այն դեղն է՝ որ անկժատ ունի, եւ ինք յԱկրաբադինն կայ գրած»։ (Տպգր. Վենետ. 1832, յէջսն 84, 102, 126։)

կոյ ու— . . . , կենոյ ու— . . . Հապա միշտ առանց բացառութեան ի գործ ածուած է կամ գրաբարի սահմանական ներկայն ու անկատարն, եւ կամ բային աներեւութին՝ եմ է, լինիմ է, ինչպէս գրեթէ ամէն օրինակաց մէջ տեսանք, — որ շատ աւելի ընտիր է եւ յեցեալ գրաբարի վրայ։ (Տես նաեւ Հատ 17, վերջերը։)

2. Դարձեալ միեւնոյն Ա. Մասին մէջ ոչ երբեք կը տեսնուի նո մասնիկն, զոր՝ ինչպէս ամենածանօթ է՝ ամէն ժամանակի ռամկագիրք առհասարակ կը դնեն՝ թէական, յարաբերական, տեղական երկմասնեայ նախադասութեանց երկրորդին սկիզբը, եւ բազում ուրեք նաեւ փոխանակ եւ-ի կամ լոկ իբրեւ զօդիչ շաղկապ։

3. Ա. Մասին լեզուական միակերպութեան որոշ նշաններէն մին եւս այն է՝ որ գոյականաց եզակի ներգոյականը մեծագոյն մասամբ հոլովեալ գործածուած է։ Հարկ չէ զրուցել որ ռամկօրէն գրութեանց՝ նա թէ յետին դարուց գրաբար գրուածոց իսկ՝ սովորական կերպն է նոյն եզակի ներգոյականն անհոլով թողուլ, դ. օ. ի շուքն չորացո. նիստ ի տուն +. մինչդեռ հին դասական լեզուին մէջ՝ բաց ի քանի մի բացառութեանց եւ զարտուղութեանց՝ միշտ հոլովեալ ի գործ կ'ածուի։

Այս նկատմամբ նոր ցոյցեր բերելու պէտք չկայ. բաւական են յառաջագոյն բերեալ Օրինակաց՝ մանաւանդ համեմատականաց մէջ գտնուածները։ Միայն կ'ուզենք մտադիր ընել որ ճշդիւ դասական գրաբարին համաձայն է դնել բային եզ. ներգոյ. խնդիրն հոլովեալ գործածել. դ. օ. ի նրակէն դիր, ի կայծի դիր, յակնդքն դիր . . .։ Այն աստիճանի ճշդութիւն պահել ուզած է յայսմ խմբագիրն, մինչեւ տեղ մի (1 Հմմտ. օր.) գրած է՝ Ի Գլխոյն դրին, որ գոնեայ իւր հմմտկնին պէս կրնար ըսել է Գլուխն. ինչպէս նաեւ տեղ տեղ կը տեսնուին նոյնպիսի անկանոն ճշդութիւնք այլ բայ-

երու խնդրոյ վրայ այլ. գ. օ. տեղ մի գրաբարի Հակառակ՝ գրուած է Ի բերանոյ պահել, փոխանակ ի բերանն կամ լաւ եւս՝ ի բերնին, եւ այլ նմանիք:

Գլխաւորաբար այս երեք յատկանիշք են միակերպութեան լեզուի Ա. Մասին Երեքմասնէին: Բայց առնցմէ ի զատ՝ կան նաեւ երկրորդականք, զոր համառօտիւ կը նշանակենք երկուքի ամփոփելով:

4. Ուղղագրականք: Շատ անգամ կը գրէ ոյր, իբրեւ իւր. գ. օ. Ոյրենն փոխան, յոյր տուն գնաց, յոյրենն կամ յոյրենդ վերայ ջուր արկ, յոյրմէդ, յոյրմէն, ըոյրենոդ ...: — Նոյնպէս շատ յաճախ կը տեսնուին աընել, աընէ, աընէր, ... (առնել.) կայ նաեւ յաընել կամ յէընել: — Ըստ երեւութին առնոյ կը նմանի՝ բայց իրօք գաւառականաց ներքեւ կ'իյնայ ո—ւ, իբրեւ՝ առնուլ, գ. օ. Ա—, երբ յ—ւ լինիս, յետ դեղ ո—ւոյդ, ո—ւոյն չարքն ...:

5. Գաւառական առմունք կամ բառք, որոց ամէնն ալ կը հանդիպին ցարդ բերեալ Օրինակաց մէջ: — Յաճախ ի կիր արկեալքն են. Ինչ, իբրեւ՝ երբ, յորժամ, եթէ: — Մէնա կամ մէնա, ձեռագրին առաջին թղթերուն մէջ Ամէնա գրուած, իբրեւ՝ յամէն մէկէ, ի մէն միոյ: Բայց ոչ սակաւ Հատոց մէջ՝ յԱ. Մասին իսկ՝ ի կիր արկեալ կը գտնուի նաեւ սովորական եղանակաւ՝ յամէն մէկէ եւ կամ չափոյն Ի-ը կրկնելով. ինչպէս, յ2որդ հմմտկն Օրինակին տեսանք՝ ըստ ընթերց. Երեքմ. յամէն մէկէ երկու դրամ, եւ հինգ հինգ դրամ. Նոյնպէս նաեւ այլուր:

Յեն..., յեն..., յան... . . ., իբրեւ՝ ապա, յետոյ, յայնժամ: Միեւնոյն դեղագրին մէջ, որ թէ յԵրեքմասնէին եւ թէ ի Հաւաքածոյին կը գտնուի, ուր ըստ ընթերց. առաջնոյն կ'ըսուի. "Այնչափ եփէ՝ որ կէս լիտր մնայ, յեն... քամէ

զինքդ»․ երկրորդն կը գրէ․ «Եփէ ինչուր միայ կէս լիտր ջուր, ապա մաղով քամէ»։ Եւ թէպէտ շատ տեղ կրնայ նոյն ապա կամ յետոյ բառերով փոխանակուիլ․ ինչպէս Երեքմ․ այս խօսքերուն մէջ․ «Ցառաջ յանօթուց տաք ջուր խմէ, եւ յետոյ (ուտէ) աղի ձուկն․ — Դիր ի կայծերոյ վերայ ինչուր տաքնայ, յետոյ առ գինեքացախ եւ ի ներս ընկէ»․ բայց կ՚երեւայ որ գաւառականի մի յատուկ ձեւն է իբրեւ յոյնամ (= յայնժամ), ինչպէս ի յաջորդսն կը տեսնենք։

Բայց, իբրեւ՝ բայց, սակայն, ապա թէ (= իսկ եթէ)։ Այսպէս՝ կը կարդացուի յԵրեքմ․ «Ուտել տուր զիւր սովորն, բայց ի տաք իրաց պատրաստ կաց․ — Ափթիմոնն զօրութիւն ունի որ զսավտային հանէ յանձնէն, բայց անդոհ ածէ, եւ երբ շատ տաս՝ աչացլոյսն պակսի․ — Օգտէ ստամոքսացաւի . . . բայց զինքն շատ չմարթի ուտել»։ Տես նաեւ 5րդ հմմտկն Օր․ մէջ, ուր ըստ ընթերց․ Երեքմ․ «Այսոք չեն աղէկ, մահու նշան են, բայց թէ երեսն նիհար լինի եւ մարդոյն լուծումն լինի դիպել՝ այն չէ գէշ նշան» բառաձն, ըստ ընթերց․ ձեռագր․ 1294ին՝ է «Այսոք չեն բարոյ նշան, մահու է․ ապա (= իսկ) թէ մարդն լուծումն ունենայ եւ երեսն աղինայ, չէ ահոկ»։

Մոհկամ կամ մուհկամ՝ զոր քանի մի անգամ իբրեւ անյայտ (°) բառ նշանակած ենք, հեղ մի (4րդ հմմտկն Օր․ սկիզբներն) իբրեւ համակ բառին նոյնանշան կը տեսնուի․ ուստի եւ յայտնապէս մ-հքէմմ արաբական բառին հայացուցեալն է, եւ կը նշանակէ ամբողջ, լի կատարեալ, ինչպէս միեւնոյն նշանակութիւնն ունի համակ։ Անցողակի յաւելունք որ համակ դասական գեղեցիկ բառն շատ յաճախ կը տեսնուի Երեքմանէին մէջ․ Դիր համակ որ ի բերնին ունի։ Դիր համակ գիշեր ու ցորեկ։ Համակ զգարեջուրն ի վերայ պահէ։ Համակ թող մատն ածէ։

Գաւառականաց կարգը դասելու է նաեւ ո՞նց, իբրեւ՝ ինչ ցեղ, ի՞նչպէս, որ շատ գաւառաց մէջ ստէպ ի կիրարկութեան է նաեւ ի գրաւորականս. բայց կիլիկեան բարբառոյն մէջ շատ չի գործածուիր։

Զանց կ'առնենք յիշատակել այլ եւս քանի մի նմանօրինակ բառերն, որ սովորական են Ա. Մասին Երեքմասնէին, ինչպէս են խօղէլ, իբրեւ՝ խաղաղիլ կամ խաղղել. յօջէլ իբրեւ՝ յաջողիլ, առողջանալ. յօջեցնել, իբրեւ յաջողցրնել, առողջացրնել, որ ըստ բաւականին գործածուած են նաեւ յայլ բժշկական հին գրութիւնս։ — Այամ եւս միտ դնելու է որ ոմանք յուղղագրականաց եւ ի գաւառականաց, զոր վերագոյն նշանակեցինք, զ. օ. օյր եւ ինչ..., շատ անգամ իրենց սովորական նոյնանշանին հետ փոխն ի փոխ կը գործածուին նաեւ իրարու մօտ։ Այսպէս կը տեսնուի. Ցինքն (ի գինին) պակաս գինջութիւն կայ եւ պակաս դառնութիւն, զի իւր վաստակն ի ջրէ է, եւ օյր տապութիւնն պակաս է։ Արդէն տեսած ենք (Բ. Խմբին 1. Օրին. մէջ) հեղ մի՝ Ինչ գարնանայինն մտաւ, ինչ ի ներս մտես. եւ այլ անգամ՝ Երբ գարնանայինն մտաւ, երբ մտես՝ յուշիկ մարձել տուր։

Թէ երբ եւ ինչպէս մուտ գտած են ի Մատեննիս՝ նշանակեալքն իբրեւ մեկնութիւն միակերպութեան լեզուի Ա. Մասին, այսչափ միայն կրնայ կարծեօք ըսուիլ որ յընթացս դարուց մուծած են Օրինակողք կամ Խմբագիրք ըստ իւրեանց յատուկ վարժութեան։ Բայց կ'երեւայ որ ասոնցմէ զատ այլ մեծամեծ փոփոխութիւններ ըրած չեն, որով իւրաքանչիւր Հատածին կամ այլեւայլ հեղինակաց սկզբնական ոճոյն ու լեզուին տարբերութիւնը չէ բոլորովին անհետ եղած։ Մանաւանդ թէ նոյն իսկ յԱ. Մասին Երեքմ. շատ ստէպ այնպիսի Հածք կը տեսնուին, յորս՝ ինչ բառէն զատ՝ վերոյիշեալ գաւառական առմունք եւ բառք մուտք

գտած չեն։ Եւ սոր բնական մեկնութիւնն է Մատենիս ժողովածոյ ըլլալը։

Բ. Նախընթացէն զօրաւորագոյն ապացոյց կայ նոյն իսկ Գ. Ախրապատնին մէջ՝ գոյութեան հին բժշկական գրութեանց։ — Կանխագոյն (Հետազ. էջ 410, 411) Երեքմաներին Ա. Մասին յայլեւայլ ձեռագիրներէ ժողված ըլլալը ցուցընելու համար բերուած վկայութեանց վերջինն էր այս. "Այլ մորուխ որ Յիսէ բժիշկն գրեց յէտր Նաւախաբենոյն՝ օգտակար եւ աղէկ"։ Նոյն տեղն յաւելցուցած էինք ի Ծանօթութեան. "Յետոյ կը տեսնենք թէ իրօք նոյնպիսի Գեղագրաց ժողովածոյ կար Նաւախաբնի կոչմամբ յանուն Յեսսէի բժշկապետի"։ Արդ՝ Հաւաքածոյն (Գ. Ախրապատինն) ի կարգի իւր Գեղագրաց՝ ի մէջ կը բերէ զայն Նաւախաբնի՝ առանձին վերնագրաւ, եւ այնպիսի կերպով՝ որ ամենեւին տեղի չի մնար ինքնուրոյն Գեղագրական գրութենէ մի առեալ ըլլալուն վրայ երկբայելու։ Յիշեալ վերնագիրն է. Ամենայն ցեղ բժշկելի, որ է Յեսսա բժշկապետին Նաւախանան, ծըրէ-ե ֆորձե գրած։

Հաւաքածոյն Շ գիրը կը սկսի Շաֆ (Շիաֆ) կոչուած դեղատեսակաւ, որ 26 (Ա.—ԻԶ. համ.) Դեղագիր ունի։ Այսմ կը յաջորդէ Շարապի տեսակն, զոր հարկ է իբրեւ երկբաժին նկատել։ Առաջին բաժնին մէջ կան 37 (ԻԷ.—ԿԳ. համ.) Դեղագիրք, որոց 30էն աւելին զատ զատ բժշկապետաց անունը կը կրէ. եւ մնացեալ սակաւաւորք միայն չունին իսկզբան բժշկապետի անուն։ Իսկ երկրորդ բաժնին 39 (ԿԴ.—ՃԲ. համ.) Դեղագիրներն են՝ յանուն Յեսսէի առանձին վերնագրաւ բերուածներն։

Թէ այս վերջին 39 Դեղագիրք խմբովին Յեսսէ բժշկին են, եւ թէ զանոնք Հաւաքածոյին մէջ առնող Խմբագիրն՝ ամէնն ալ միահաղոյն ի միում գրութեան ամփոփեալ գտած է, յայտնի կ'երեւայ հետեւեալ նշաններէն։ 1. Դեղագրաց տողանն՝ անմիջապէս վերնագրին կից՝ կը սկսի գրե-

լով. "Յառաջ զսերկեւլի սքնձպինն գրենք, որ օգտէ . . .„: Արդ՝ տեսած ենք տեղ տեղ թէ այս ձեւով սկզբնաւորութիւն յատկացած է այն Դեղագրաց եւեթ, որովք ինչպիսի եւ իցէ դեղագործական գրութեան նոր բաժին մի կը սկսի: — 2. Մինչդեռ Հաւաքածոյին Դեղագրաց ամենամեծ մասին սկիզբը նշանակուած կը գտնուի իւրաքանչիւրը շինող կամ հնարող բժշկին անունն, 39 Դեղագրացս եւ ոչ միոյն սկիզբն ամենեւին բժշկի անուն չի գտնուիր՝ վերնագրին մէջ նշանակուածէն ի զատ, ո՛չ Յեսուէի եւ ո՛չ այլ որ եւ իցէ բժշկի, որմէ որոշակի կ'իմացուի թէ ամէնն ալ իրենն են, եւ խմբագիրը զանոնք հնագոյն գրութեան մի մէջէն իբրեւ ամբողջ գումարութիւն առած է, միայն նախընթացներուն համարագրերը շարունակելով:

Նայելով Յեսուէի ազգայնութեան, որ ինչպէս գիտենք՝ ասորի էր, պէտք է ենթադրել թէ նուսխաթնոյն սկզբնագիրն արաբերէն էր. վասն զի նոյն լեզուաւ կը գրէին սովորաբար ժամանակին նաեւ ոչ-արաբացի բժշկապետք: Աստի ինքնին կը հետեւի որ ազգային բժիշկ մի զանոնք իւր մայրենի լեզուին թարգմանած է, իսկ Հաւաքածոյին խմբագիրն, — եթէ չըսենք՝ բոլորովին անփոփոխ, — առանց մեծ փոփոխութեան առած է՝ պահելով ըստ նախնական թարգմանութեան. ինչպէս տեսանք Ա. եւ Բ. Ախրապատիններէն առնուած համեմատական օրինակներէն՝ թէ այս եղանակաւ վարուած էր անոնց նկատմամբ:

Ահաւասիկ նոյն Դեղագրաց քանի մի հատակտորք, որոցմէ կը տեսնուի անոնց ոճոյն ու լեզուին թէ՛ հնութիւնն ու վայելչութիւնն եւ թէ՛ միօրինակութիւնն ու նոյնութիւնն:

Հատակտորք Յեսուէի 39 Դեղագրոց:

Հմր ԿԴ. Յառաջ զսերկեւլի սքընջպինն գրենք, որ օգտէ ստամոքսաց վատուժութեան . . .: Առ սերկեւիլ հասուն եւ սրբէ նոյն կեղեւովն եւ կորտէ, եւ զկուտն

ձգէ եւ ի սանդ. ած եւ ծեծէ եւ քամէ ձեռօքդ, եւ այլ ջուր մի՛ արկանես ի վերայ, զիւր ջուրն մէն առ եւ լից ի քարեղէն մի, եւ վայր դիր որ յիստկի, եւ զպարզն ի յայդ ջրեդ արկ . . . ի սուրբ պտուկ. եւ արկ ի ներս շաքար . . . եւ քացախ . . . եւ ի կրակն դիր եւ ընդ մեղմ եփէ, որ քան զճուլապ այլ թանծր լինի . . . զփրփուրն առ . . . եւ ի փրփրին առնուլն՝ սակաւ սակաւ (վորդէ Ֆոր) ի ներս լից. եւ երբ եփի՝ ի վայր առ ի կրակէն եւ հովցու եւ ի շիշ արկ. եւ երբ պիտենայ՝ . . . ըմպելոյն չաքն երկու ջուր արկ ի ներս եւ տուր։

Հմր ԿԶ . . . Առ սերկեւիլ աղէկ եւ հասուն եւ կտրտէ փայտէ դանկով, եւ ի կտէն սրբէ եւ դիր ի սուրբ յաման եւ ած ի վերայ ջուր, եւ խաշէ ինչուր տրորի եւ ապա քամէ, եւ առ զքամած ջուրն, եւ դիր այլուայր որ եռայ եւ զփրփուրն առ։ Եւ թէ կամիս որ պքնճրպին զինք զուգես սերկեւիլ, դու արկ յինքն շաքար այնչաք որ ջուրն ծածկէ զշաքարն, եւ սակաւ մի քացախ, եւ ինչվան եփէ որ թանծրանայ եւ կապի։ . . . Ապա թէ լոկ պլնել (կոփո) զինքդ, . . . դու ոչ շաքար մի՛ ածես եւ ոչ քացախ, զսերկեւլոյ ջուրն միայն եփէ. եւ հանց պահէ որ թանձր լինի։

Հմր ԿԸ . . . Առ մուզ խնծոր եւ փայտէ դանկով ճեղքտէ եւ զկուտն սրբէ, եւ ապա սանդով ծեծէ եւ ~~զջուրն ձեռօքդ քամէ~~, եւ դիր ի ~~վայր~~ որ պարզի, . . . եւ արկ ի պղինծ եւ շաքար ի վերայ եւ վարդի ջուր, եւ ընդ մեղմ եփէ . . . եւ ի փրփրին ածելն՝ կաթեցու ի ներս վարդի ջուր, եւ ինչվան եփէ՝ ինչուր կապի . . . եւ յաման արկ. եւ երբ պիտենայ տուր . . . ի տասն դրամէն ինչվի քսան դրամ, եւ ըմպելոյդ չաք երկու ջուր խառնէ ի ներս։

Հմր Հ. Շարապ աղոխի, որ օգտակար է երբ ի սարսափէ ստամոքսն տաքցել լինի եւ վատուժել . . .։ Եւ լերդն երբ ի ջերմութենէն ցաւի՝ օգտէ . . . եւ թէ արիւն շարժի ի մարդն՝ խաղեցնէ . . .։ Առ ժուռ մեծապտուղ եւ խիստ թթու, եւ զպտուղն յաման մի թափէ եւ ձեռօքդ աճռէ եւ քամէ եւ կտաւով պարզէ, . . . արկ ի պղինծ եւ շաքար արկ ի վերայ եւ ընդ մեղմ եփէ . . . երբ պիտենայ՝ տուր . . . ի տասն դրամէն ինչվի քսան դրամ . . .։

Հմր ՀԷ. Առ մուզ նուռն . . . դանկով մի՛ կտրես եւ ոչ դանակ ի յինք հասուցանես . . . բարակ

*կտաւով պարզէ . . . արկ ի յաման եւ ած ի վերայ շաքար . . . եւ դիր ի կրակն եւ ընդ մեղմ եփէ . . . եւ ինչվայն եփէ ցուր կապի . . .։ Ապա թէ պիտի որ շարապ առնես նուան, քացախ մի խառնես ի ներս, զնուան ջուրն եւ զշաքարն մէն արա . . .։ Ապա թէ ընպելի կամիս առնել նուան, առ նուռ մուզ, կորէ ձեռօքդ եւ քամէ . . . եւ եփէ որ ի չորս բաժնէն մէկ մնայ՝ առանց շաքրի . . .։*

*Հմր* ՁԵ . . . Ա*ռ ապիտակ խաշխաշ նոյն իր կժովն եւ արկ ի վերայ ջուր, եւ ի կրակն դիր եւ ընդ մեղմ եփէ . . . եւ ապա քամէ . . . եւ եփէ հայնչաք որ մնայ երկու լիտր եւ յաման արկ ու պահէ, եւ երբ պիտենայ՝ տուր . . . ընբելոյդ չափ երկու ջուր խառնէ, թէ պէտ՝ հով, թէ պէտ՝ տաք, եւ տուր։*

*Հմր* ՂԱ . . . Ա*ռ աղէկ դամոնչիր եւ զկուտն հան ձգէ, եւ զինք ի սուրբ պտուկ արկ, եւ ջուր ի վերայ հայնչաք որ զդամոյն ծածկէ, եւ ի կրակն դիր եւ մէկ եռ անցո ի վերայ, եւ ի կրակէ ի վայր առ եւ կտաւով քամէ, եւ այլուայր ի յաման արկ եւ ընդ մեղմ եփէ, որ ի չորս բաժնէն մէկ բաժին մնայ . . .։*

*Հմր*. ՂԲ . . . Ա*ռ հասուն թութ, ծեծէ եւ զջուրն քամէ եւ ի սուրբ պտուկ արկ եւ մեղմ եփէ ցուր կէսն մնայ. եւ ապա ի վայր առ ի կրակէն, եւ առ ի յայդ թթի ջրէդ, եւ առ եփած գինի եւ հալած ու պարզած մեղր. զամէնդ յիրար խառնէ, եւ այլուայր ի կրակն դիր եւ ընդ մեղմ եփէ ցուր յերիցն մէկ մնայ . . .։*

*Հմր* Ճ. Ա*ռ շաքար որչափ պիտենայ եւ մանրէ ի քարեղէն մի, եւ առ ձու(է) սպիտկուցնի եւ ի վերայ լից եւ ընդ ափդ տուր որ միաւորի ընդ շաքարն, եւ ապա ի յօծած պղինձ արկ, եւ ի վերայ՝ ջուր որչափ պատեհ լինի, եւ ի կրակն դիր եւ ընդ մեղմ եփէ, եւ զփրփուրն հետ առ, եւ յորժամ իմանաս որ ձուի զաֆրն յիստկէ եւ զշաքարին աղտն ընդ ինքն հանէ, ապա առ վարդի ջուր . . . եւ կաթ կաթ դգալով ի յեռն ած. եւ ինչվայն եփէ ցուր որ ի վերայ ըղընգանդ դադրէ. եւ ապա յաման արկ եւ պահէ . . .։*

*Հմր* ՃԱ. . . . Ա*ռ մեղր եւ մեղրին չափ երկու ջուր խառնէ ի ներս, եւ եփէ . . . եւ . . . մօտ ի կրակն դիր որ տաք կենայ եւ նօսրնայ ոչ, եւ ապա ի զատ առ։ Եւ թէ հովընութիւն մարդոյ համար չինես, երբ*

եփել կամենաս՝ հաւէճ ած ի ներս՝ քիչ մի դարիսէն եւ զնճպիլ եւ պղպեղ...: Ապա թէ կորիճ եւ տաքբնութիւն մարդոյ համար զուգես՝ հաւէճ մի՛ ածես, զինք մէն արա...:

Որչափ որոշ եւ յայտնի է Հատակոտորոցս իրարու հետ լեզուական նոյնութիւնն, նոյնչափ պայծառ կ'երեւայ անոնց լեզուին աւելի կամ նուազ չափով տարբերիլն Գ. Ախրապատնին այլ Գեղագրաց լեզուէն: Այս նոյնութիւնն ու տարբերութիւնն ըստ ինքեան պէտք չունի ապացուցութեան: Սակայն ուզելով այսու պատեհաւ միջոց մատակարարել՝ առիթ որ հանդիպի՝ իմանալու դլխաւորաբար միեւնոյն նիւթով զբաղող գրուածոց լեզուի կողմանէ նոյնութիւնն ու տարբերութիւնն, զայս Հատակոտորքս օրինակ առնլով, կը զրուցենք որ ամէնէն աւելի դիւրաւ կը յաջողի խուզարկութիւնն՝ եթէ միտ դրուի նիւթոյն վերաբերեալ բառից ու բացատրութեանց:

Հատակոտորոցս մէջ՝ նիւթոյն (դեղագործութեան) վերաբերեալ երեք կերպ բառք ու բացատրութիւնք կան մտադրութեան արժանի. 1. [illegible], 2. [illegible] եւ մանաւանդ՝ [illegible], 3. [illegible], [illegible], [illegible], [illegible] եւ այլ նմանիք, որք կրնան նկատուիլ իբրեւ նշանակք լեզուական նոյնութեան 39 դեղագրաց Ցեսսէի, եւ տարբերութեան ասոնց լեզուին՝ յայլ դեղագրաց Գ. Ախրապատնին: Ասոնց մէջ 12 անգամ կրկնուած է բառն [illegible], իբրեւ՝ ջինջ, մաքուր, սպիտակ. — 4 անգամ՝ [illegible], եւ 25 անգամ՝ [illegible], իբրեւ՝ յեղմ, կամաց, հահանդ, կամկէկ. այսինքն՝ բառքն [illegible], [illegible] եւ [illegible] գործածուած են ամէն անգամ որ առիթ եկած է նոյն նշանակութեամբ բառի մի կիրարկութեան. — Նոյնպէս առանց բացառութեան՝ [illegible] բառին տեղ՝ միշտ [illegible] եւ այլ նմանիք ի գործածուած են:

Յիշատակեալ նոտրգիր բառք կը գտնուին նոյն այլ եւս դեղագրաց մէջ ալ, բայց ոչ նովին յաճախութեամբ, եւ մանաւանդ՝ ոչ անխտիր, տառից բացառութեան։ Եւ յայսմ է ապացուցութեանս գլխաւոր զօրութիւնն։ — Այս զօրութիւն ապացուցութեանս յայտնագոյն եւս կ'երեւայ՝ եթէ 39 դեղագիրք համեմատուին անոնց նախընթաց 37 (Իէ. — Կգ.) դեղագրաց հետ, — որք՝ ինչպէս տեսանք՝ միեւնոյն դեղատեսակին կը վերաբերին, — սակայն եւ այնպէս՝ ասոնց (37ին) մէջ սուրբ բառն ոչ երբեք ի կիր արկեալ է. մեղմ եւ ընդ մեղմ ոչ ուրեք կը տեսնուին, այլ երեք անգամ առ իթ գալով, փոխ այնր՝ եղծ գործածուած է. իսկ կամացուկի եւ նմանեաց տեղ՝ միշտ գրուած է մինչեւ, եւ այն՝ քսան անգամ կրկնուելով։

Բառերու միջոցաւ այլեւ այլ դեղագրաց լեզուական նոյնութիւնն ու տարբերութիւնն իմանալու նկատմամբ գրուած վերջին տողերն՝ այնպիսի մասնագիտաց համար են, որ ուզենան դիւրաւ ի գլուխ տանիլ իրենց ուսումնասիրութիւնն։ — Դեղագրաց մանրամասնութիւնք գրեթէ միշտ միակերպ են յէականս, ուստի եւ սովորաբար միեւնոյն բառերով կը բացատրուին։ Բայց երբեմն կը հանդիպի որ գրիչն կամ թարգմանիչ՝ սովորական բառերը թողլով՝ անոնց անսովոր նոյնանշանները կը գործածէ։ Արդ երբ քանի մի այսպիսի անսովոր բառք տեսնուին՝ իրարու կից կամ մօտաւոր դեղագրաց մէջ, հնար է նկատել զայս իբրեւ ապացուցական նշան՝ թէ այն դեղագիրք ելած են միեւնոյն գրչէ, որ տարբեր է յայլոց գրչաց՝ որք միշտ սովորական բառերով կը բացատրեն նոյն իմաստն. եւ այս եղանակաւ հաստատել թէ այն անսովոր բառերով դեղագիրք առնուած են յայնպիսի հայ դեղագրական գրութենէ, որոյ լեզուն նոյն չէ այլոց լեզուին հետ։

Մեկնենք միակ օրինակաւ։ Մինչեւ այս տեղ, յառաջ բերեալ դեղագրաց ամէնուն մէջ տեսած ենք որ դեղոց նիւթ մի մանր ծեծել կամ մանր շաղել պատրաստուած ժամանակ՝ միշտ կը յանձնուի խոշոր ծեծել՝ խոշոր աղալ. կամաց կամաց կամ մեղմ կրակի վրայ եփել՝ եռացրնել յանձնելու համար՝ ընդհանրապէս կը գործածուին յեղծ, յեղմ, կամաց կամաց, մեղմ, ընդ մեղմ, հա-

հանդ, հանդարտ բառերէն մին: Բայց Հաւաքածոյին Ձէթի տեսակին 57 դեղագրաց քանի մի հատին մէջ, փոխ խոլոր բառին՝ իբր տասն անգամ ի կիր արկեալ կը տեսնուի ջուրք անսովոր բառն. զ. օ. "Աղա զպյտեր ջուրք: Զամէնն աղա ջուրք: Զայս դեղերս աղա ջուրք: Աղա զիրենքդ ջուրք...,, մինչդեռ միեւնոյն ձէթի տեսակին այլ դեղագրաց եւ բովանդակ Հաւաքածոյին, նա թէ՝ այլ ամենայն բժշկական գրուածոց մէջ, միշտ գործածուած է սովորական խոշոր բառն[1]: — Միեւնոյն դեղագրաց մէջ կամ սակաւ մի յետոյ չորս հինգ անգամ կը տեսնուի սասր նման անսովոր բառ մի այլ. այն է՝ չոփէլ, փոխ՝ մեզմ, հանդարտ, հահանդ... սովորական բառից. զ. օ. "Դիր ի քարէ պտուկն եւ չոփէլ եռցու: Եռցու ի կրակն չոփէլ: Ի կրակն եփէ կամկէկ...[2],,: Աւելորդ կը համարինք յառաջ բերել միեւնոյն դեղագրաց մէջ գտնուող այլ եւս ոչ այնչափ սովորական բառերն, օրինակի համար՝ ճէճն = սանէպ, շուտ շուտ. Բանջէրա = պղնձէ անօթ, կասսայ..., որոց առաջինն թէեւ շատ սովորական է յայլ ռամկօրէն գրուածս, սակայն ցանցառ կը հանդիպի ի Հաւաքածոյին: Նոյնպէս Հաւաքածոյին մէջ չէ այնչափ յաճախեալ՝ որչափ յայլ դեղագրուգականս՝ մանաւանդ յԵրեքմաանէին՝ Բանջէրա բառն:

---

Վերջ կու տանք Դեղագործութեան Հատածոյն, որ չափէն աւելի յերկարեցաւ առաւելապէս պատճառաւ խնդրոյ հեղինակին լինելոյ Գ. Ախրապատնին, եւ ոչ եթէ յատուկ աշխատութիւն միակ գրչի (Ամիրտովլաթայ), ինչպէս սովորաբար կը կարծուի: Այս կարծիքս լիով հաստատելու համար կը յաւելունք աստէն նորին իսկ

---

1 Այնչափ անսովոր է ջուրք բառն, որ Երեքմաանէին անհամար դեղագրաց մէջ երկու անգամ միայն տեսած ենք, այսպէս. "Զինք ջուրք աղա, մանտր մի աղալ: Զինք ջուրք ծեծէ,,:

2 Չոփէլ բառն եւս՝ թէեւ Նախընթացին պէս օտար չի հնչեր, բայց այնպէս ցանցառ կիրարկութեան մնած է, որ հազիւ երկու անգամ կը հանդիպի Վաստակոց գրոց մէջ, այսպէս. "Զտնկին դնելն չոփէլ արա, որ չճխմի: Դու ի մէկալ օրն զինքն (զձէթն) յապիկած ամանս շըջեա ի չոփէլ,,: — Ջուրք եւ չոփէլ բառերուն վրայ ըսուածն իմանալու է՝ ինքնագիր կամ իբր-ինքնագիր աշխատութեանց համար, եւ ոչ եթէ բանաքաղութեամբ շինուածներուն:

*Ամասիացի բժշկապետին անուամբն ի Հաւաքածոյին գտնուող մի դեղագիրն, որ թէեւ շատ պատուադիր վկայութիւն է մեծի համբաւոյ հմտութեան զոր անդատին ի սկզբանէ կը վայելէ մեր միջինդարեան բժշկաց գլխաւորն. սակայն միանգամայն ամենազօրաւոր եւ անհերքելի ապացոյց է՝ ամբողջ Գ. Ախրապատնին իւր յատուկ գրութիւնը չըլլալուն։ Վասն զի որոշ կ'երեւայ նոյն Դեղագրին սկզբնաւորութենէն՝ թէ այլ բժիշկ մի մուծած է զայն ի Հաւաքածոյն, յորում դասուած է Շաֆի տեսակին դեղագրաց կարգին մէջ ԽԳ. Համարագրաւ։*

*Շաֆ որ օգտէ միջացաւութեան եւ ծնկացցաւութեան, եւ լուծումն առնէ։* [illegible] *— Առ թրպուլթ եւ շահմի հանտալ եւ մատուտակ եւ անիսոն երեք երեք դրամ, օշախ հինգ դրամ, չամիչ տասնուհինգ դրամ, շաքար տասն դրամ, զարտալուի եւ շաֆտալուի կուտ չորս չորս դրամ, ըռզիան երկու դրամ, աղ եւ պորայ երկու երկու դրամ. զոր ծեծելու է՝ ծեծէ, եւ զոր մաղելու է՝ մաղէ, եւ շաֆ արա ամբաւի կտի չափ. ամէն գիշեր զմէկն վերաւ։*

*Նոյն դեղագիրն պահուած է նաեւ յԲ. Մասին Երեքմանեին, որ է ասել՝ Գ. Ախրապատնին համառօտեալ խմբագրութեան մէջ։ Բայց թէպէտ աստ սկզբնաւորութիւնն միւսէն տարբեր է այնու որ աստ մէջ Ամիրտովլաթ որպէս թէ անձամբ կը խօսի, սակայն հետեւանքն նոյն կը մնայ, այսինքն՝ յայտնի կը տեսնուի թէ բուն Գ. Ախրապատնին չի վերաբերիր։ Ապա թէ ոչ՝ ինչու միայն աստ սկիզբը պիտի յիշատակուէր Ամիրտովլաթայ անունն, մինչ՝ իւր այլ ամենայն դեղագրաց սկիզբները դրուած չէ։ — Այս վերջնոյս սկզբնաւորութիւնն եւեթ կը բերենք, մնացեալն գրեթէ նախընթացին հետ նոյն ըլլալով։*

Շափ որ օգտէ միջացաւութեան եւ ծնկնացաւութեան, եւ լուծումն առնէ, զոր ես անարժան Ամիրտովլաթս բժիշկ արարի, եւ օգտեց բազմաց Աստուծով: Առ Թրբութ . . . :

Երեքմասնէին Բ· Մասին ընթերցուածոյն նման սկզբնաւորութեամբ Դեղագիր մ'ալ կայ նոյն Մասին էբր–յաւ–ելու–ածոց միոյն մէջ, որ իւիք իրօք կը հաստատէ վերագոյն գրեալքս: Եւ այս է սկզբնաւորութիւնն:

Անպիտան ծառայ Աստուծոյ Ամիրտօլվաթս շինեաց, որ օգտակար է խիստ եւ պիտեւան ամենայն մարդկաց . . . :

Այսպիսեաց եւ ասոնցնմանեաց վրայ ի վերջ կոյս բժշկական Հտծոց միահաղոյն կը խօսինք:

## 23.

## ԺԲ· ԲԺՇԿԱՐԱՆ ԱՄԱՐԱՑ ՍԵԲԱՍՏԱՑԻՈՑ ԵՒ ԱՅԼ ՆՈՐԱԳՈՅՆ ԲԺՇԿ· ԳՐՈՒԹԻՒՆՔ

Հետազօտութեանցս մէջ հայերէն բժշկական գրուածոց նկատմամբ այս ընդհանուր դիտողութիւնն ըրած ենք որ նոյն գրութիւնք՝ թէեւ յանձուկ միտս լոկ թարգմանութիւնք չեն, սակայն եւ ոչ բոլորովին անկախ եւ ինքնակաց հեղինակութիւնք են: (Տես Հտծ 14՝ վերջերն:) Եթէ այսպիսի ըստմասնեայ եւեթ անկախութիւն եւ ինքնակացութիւն ունին հայերէն հնագոյն բժշկական գրուածք անգամ, եթէ ի նման հանգամանս կը գտնուին նոյն իսկ բազմաթիւ գրաւոր երկասիրութիւնք միջին ժամանակաց ազգային նշանաւորագոյն բժշկին Ամիրտովլաթայ, — ապա ինչ պէտք է ըսել այս բժշկապետէն ետեւ հետզհետէ յերեւան ելլող բժշկարանաց վրայ, որոց համար հնար է առանց չափազանցութեան հաստատել՝ թէ անոնց պարունակութեան մեծ մասն հետեւողութիւն է, կամ ճշդագոյն եւս՝ բանաքաղու-

թիւն, Ամասիացի Բժշկապետիս գրուածներէն։ Բայց կան յայսպիսիս, նա թէ՝ ի յետնագոյնս իսկ, ոչ սակաւ հատակոտորք որ քաղեալ են ի հնագոյն գրուածոց։ Այս հայեցուածով՝ չենք կարող առանց յիշատակութեան թողուլ եւ ոչ իսկ յետին ժամանակաց բժշկական գրուածներն, որ իւրք իրօք կարեւոր կրնան համարուիլ յամբողջութիւն պատմութեան ազգային բժշկականութեան, եւ ի բանասիրական տեսակէտէ իսկ՝ բոլորովին խոտան չեն։ — Սկսինք այսպիսեաց հնագունէն։

## Ա· ԲԺՇԿԱՐԱՆ ԱՍԱՐԱՅ ՍԵԲԱՍՏԱՑՒՈՅ

Ձեռագիրներու հրատարակեալ Ցուցակաց եւ զանազան հրապարակական ու առանձնական տեղեկութեանց նայելով, չեն այնչափ առատ գրչագիր օրինակք Ասարայ բժշկարանին՝ իբրեւ զԱմիրտովլաթայն, եւ այն սակաւ օրինակք եւս՝ որչափ մեզի ծանօթ է՝ յետին ժամանակաց գրչութիւնք են։ — Մեր մանդրնին օրինակն, որ միջակ ութածալ նօտրգիր է՝ մասամբ երկսիւն եւ մասամբ միասիւն, կը շարունակէ միակերպ գրչութեամբ մինչեւ 164 էջն. անտի մինչեւ ցյետին 224 էջն կը փոխուի գրչութիւնն, որ անկէ ետեւ տարբեր գրչի՝ թերեւս գրչաց՝ գործ է, աւելի շղագիր քան նօտրգիր։ Առաջին մասն ըստ երեւութին հարիւր տարեան հնութիւն կրնայ ունենալ, իսկ երկրորդն՝ բազմօք նուազագոյն։ Ընդօրինակութեան տեղւոյն ու թուականին վրայ ձեռագրիս մէջ ոչ ուրեք ակնարկութիւն կայ։ Ձեռագրիս վերջերը (յէջն 199) կը տեսնուի սկզբնաւորութիւն մի եւեթ, որ անկատար մնացած է, այսպէս. "Ես Քրիստոսի յուսոյն մերում փառք։ Գրեցաւ Մարդակազմութեան եւ բժշկարնո։ Սակաւ մի յառաջ (յէջն 185) կայ նաեւ այսպիսի ծանօթութիւն. "Յիշեա 'զՍեփաստացի Ասար ծառայս եւ 'զԱստուածատուր երէց գծող"։ — Ս· Ղազարու օրինակին նկատմամբ զանազան անգամներէ առած տեղեկութեանցս համեմատ՝ կարող ենք ըսել թէ ըստ յիշատակեալ արտաքին հանգամանաց մերինէն մեծ տարբերութիւն չունի։ Այն եւս նոր գրչութիւն է եւ անթուական. միանգամայն սկիզբէն քանի մի Գլուխք կը պակսին։ Ներքին (լեզուի եւ այլ նման) հանգամանաց կողմանէ՝ երկու օրինակաց նոյնութեան վրայ գիտողութիւն եղած է ի նախընթացին։ (Տես առթիւ Երկքմանէին 6որդ համեմատական Օրինակին նշանակուածն։ Հետազօտ. էջ 432։)

Ինչպէս վերագոյն ակնարկեցինք, Ամիրտովլաթէն ետեւ եւ անոր հետեւողութեամբ շինուած մեզի ծանօթ գրուածոց հնագոյնն է Ասարայ Սեբաստացւոյ այս երկասիրութիւնն, որ Բժշկարան անուամբ ծանօթացած է, եւ ինք իւր Յառաջաբանին մէջ՝ Գիրք Բժշկական արհեստին կը կոչէ։ — Որոշ հեղինակի անուամբ մինչեւ մեր ժամանակներն անկորուստ պահուած՝ ըստ բաւականին կանոնաւոր եւ բժշկարան կոչուելու արժանի գրու-

թիւն է այս, եւ ժամանակագրական կարգաւ՝ երրորդն, յետ գրուածոց Մխիթարայ Հերացւոյ եւ Ամիրտովլաթայ, որոց գրուածոց գտնեայ մի մասն ի ձեռին ունեցած է հեղինակս, եւ մեծաւ մասամբ անոնց կը հետեւի՝ մանաւանդ երկրորդին։

Իւր բժշկարանին մէջ Ասար ոչ ուրեք ոչինչ ամենեւին յիշատակութիւն եւ ոչ իսկ ակնարկութիւն կ՚ընէ իւր անձնական հանգամանաց վրայ, գրութեան ժամանակն անգամ չի ծանուցաներ։ Այսպէս՝ ստիպեալ ենք դիմել օտար գրչաց՝ իւր վրայ տեղեկութիւն ստանալու համար։ Նոյնպիսի տեղեկութիւն կ՚ունենանք ԺԷ. դարուն առաջին քառորդին (ՌՀԴ = 1625) ի Սպահան գաղափարեալ ձեռագրէ մի, յորում Ապուսայիդայ Յաղագս կազմութեան մարդոյն եւ գոյացութեան ամենայն անդամոց մարմնոյն վերնագրեալ պիտառութեան կից Յիշատակարանն յաջորդ տողերը կը գրէ անոր անձին վրայ։ "Ասա, եղբայրք, օրինակն (Ապուսայիդայ գրութեան՝ յորմէ պիտի ընդօրինակէր) խիստ պակասաբան էր եւ սղալած. բայց օգնականութեամբն Աստուծոյ՝ Սեբաստացի Ասար դպիրն եւ ճշմարիտ գրոց աշակերտն, յոյժ ներհմտութեամբ պարապեալ ընդ արտաքին գրեանսն, եւ բազում աշխատութեամբ հազիւ կարաց յայսչափ ստուգութիւնս ածել". եւ սակաւ մի յետոյ՝ կը յաւելու. "Յիշեցէք հայր մեղայիւ զբազմաշխատ Ասար դպիրն եւ զիս զբազմամեղ գծողս . . .":

Այսչափ են տեղեկութիւնքն զոր Ասարայ անձնական հանգամանաց նկատմամբ կու տայ Յիշատակարանս, որոց հետ կապելով ամբողջ ձեռագրին վերջը գտնուող այլ Յիշատակարանի մը՝ ի մասին տեղւոյ (Սպահան) եւ թուականի (1625) գրչութեան նոյն ձեռագրին՝ հաղորդած ծանօթութիւններն, կրնան զանազան մակաբերութիւնք հանուիլ։ Կրնայ, օրինակի համար, մակաբերուիլ որ Սեբաստացի բժիշկս Աբուսայիդայ Մարդակազ-

մութիւնն աչքէ անցուցած՝ ուղղած (°) էր 1625էն յառաջ. — թէ նոյն տարին տակաւին կենդանի էր, ապա թէ ոչ՝ ի հարկէ իբրեւ մեռելոյ համար աղօթք կը յանձնէր գրիչն. — թէ գոնեայ առ ժամանակ մի ի Սպահան կամ ի մօտաւոր տեղիս գտնուած էր. — թէ դպիր էր կամ հմուտ գրագէտ. — թէ ընդօրինակողն զինքը ճանչցած էր, ապա թէ ոչ՝ չէր կրնար նորոգ ըսել. — թէ գրաւոր աշխատութեանց կը պարապէր: Բայց այս ամենայն՝ մակաբերութիւնք եւեթ են, յորոց ոմանք աւելի՝ ոմանք պակաս հաւանականութիւն ունին. ուստի մասամբ իւիք չեն բոլորովին ապահով [1]:

Ըստ այժմու պարունակութեան մեր ձեռագրին՝ իւր բժշկարանին սկիզբը կ'ընէ Ասար հետեւեալ կարճառօտ Յառաջաբանիւ:

Յանուն Աստուծոյ գթածին եւ ողորմածին: Գիրք բժշկական արհեստին, զոր սահմանեցին իմաստուն փիլիսոփայքն եւ բժշկական վարդապետքն՝ իմանալ զբնութիւն մարդոյն, եւ խնամ տանել ցաւածին՝ առ ի պէտս բժշկութեան: Զի որպէս ի ձեռն խոստովանութեան եւ ճշմարիտ ապաշխարութեան առնուն զբժշկութիւն հոգւոց, նոյնպէս եւ ի ձեռն բժշկական վարդապետացն եւ յօգնութենէ դեղերացն ընդունիցին զառողջութիւն մարմնոյ եւ ազատեսցին ի ցաւոց: Իսկ այժմ նուաստ ոգիս, ծառայ ծառայից Աստուծոյ, անիմաստ եւ յոգնամեղ Ասար Սեբաստացիս, կամեցայ զընտիրսն հաւաքել եւ զկարճառօտն բացայայտել ըստ կարեաց մերում փոքր ի շատէ ի բանից իմաստասիրաց եւ բժշկական վարդապետացն, եւ խնամ տանել ցաւագնեալ անձանց առ ի պէտս բժշկութեան: Եւ նա որ ստեղծողն է՝ տայ զառողջութիւնն յամենայնի, ըստ

---

1 Հետաքննինք որ կ'ուզեն տեղեկութիւն ստանալ այս ձեռագրիս ոչ միայն վերոյիշեալ Ցիշատակարանին մէջ նշանակելոց, այլ նաեւ այլ մանր Ցիշատակարանաց պարունակութեան վրայ, — որ մեր այժմու Հանդէսին հետ կապակցութիւն չունենալով՝ այստեղ չենք յառաջ բերեր, — կրնան գտնել զանոնք ի հետաքրքրական Հանդէսին, զոր Մորգենլենդիշեն Անցայգերի վերնագրաւ հրատարակած է Տր. Վ. Ց. Թորգոմեան, ի Հանդիսի 1892 տարւոյն, էջ 333—336:

29*

բարի եւ բարերար կամաց իւրոց. եւ նմա փառք եւ գոհութիւն, որ է օրհնեալ յաւիտեանս եւ անզրաւ յաւիտենին. ամէն:

Ցուցաքանիս կը յաջորդեն կարգաւ ՃԻԳ. Գլուխք բժշկարանին՝, յորս՝ սակաւ բացատրութեամբք՝ կը ճառուի ամենայն ախտից եւ հիւանդութեանց վրայ՝ իւրաքանչիւրին հետ խառն ունենալով միոյն միոյն դարմանն՝ ամէն բժշկարանաց սովորական եղանակաւ: Իսկ բացատրութիւնք որ ըսինք, այն են՝ որ այլ բժշկարանաց, գլխաւորաբար բժշկականութեան ընդհանուր գիտելեաց վրայ՝ ի Նախաշաւղի կամ յառանձին բաժնի՝ յառաջ բերածներէն մի քանին, Հեղինակս աստ անդ ի կարգի այլոց Գլխոց կը դասաւորէ: Այսպէս են, օրինակի համար, Ա. Գլուխն՝ Թէ որպէս պարտ է ուսանել զբժշկութեան արուեստն, ԼԳ. Գլուխն՝ Որ չէ ղորղոյոց անօթոցն, զանազան բաժանումներով, ԼԴ. Գլուխն՝ Ջօղն է կոճնէն կորբլոյն յեռեոնցնելն, եւ այլ սակաւաւորք: — Պէտք է յիշատակել նաեւ որ ի ՃԻԳ. Գլուխս կը պակսին նաեւ Մարդակազմութեան վերաբերեալքն:

Բայց նոյն իսկ մեր ձեռագրին վիճակէն եւ քանի մի նշաններէն յայտնապէս կը տեսնուի թէ Աստրայ սկզբնագրին մէջ՝ յառաջ քան զամենայն եւ քան զկարճառօտ Ցուցաքանն՝ կար բաժին մի, յորում կարճ ի կարճոյ ամփոփեալ էին բժշկականութեան ընդհանուր գիտելեաց եւ Մարդակազմութեան վերաբերեալքն: Զայս կը ցուցնէ ձեռագրին վերջը դրուած երեք Ցանկերուն առաջինն, զոր աստ ամբողջ մէջ կը բերենք: — Մարդակազմութեան նկատմամբ մեծ հաստատութիւն կու տայ՝ ձեռագրիս 199 էջէն առնուած կտորն,

---

1 Առաջին գրչութիւնն կը վերջանայ սկզբնաւորութեամբ ՂԹ. Գլխոյն. իսկ յաջորդ իջին վերջին տողերն սկսող Գլուխն ունի՝ փոխ Ճ.ի՝ ՃԺ. Գլխահամար, ամբողջ թերթ մի ինկած ըլլալով նոր գրչութենէն:

*զոր ի սկզբնական մանրագիր տեղեկութեան հա-ղորդեցինք։*

## Ա. Ցանկ։

*Ա. Ցաղագս մարդոյն կազմութեան։ Բ. Վասն ստեղծման եօթն անդամոցն։ Գ. Մասունք մարմնոյն։ Դ. Վասն կազմութեան մարդոյն մեծին։ Ե. Վասն վեց իրաց մարդ մեռանի մահապարտ է (°)։ Զ. Խրատ զգնութիւնն առողջ պահելոյ։ Է. Ի բաղանիս լուա-ցիլն է։ Ը. Դուռն որ յիշէ զչորս տերեճեքն։ Թ. Գի-տենալ զօդերն։ Ժ. Պատճառ հիւանդութեանց չորս եղանակ է։ ԺԱ. Վասն երակի ճանաչելոյ։ ԺԲ. Հաս-կանալ եւ ճանաչել զգօզն։ ԺԳ. Նշանք ձեռնալուայ-ին։ ԺԴ. Վասն պօհրանի։ ԺԵ. Վասն նշանաց հիւ-դին։ ԺԶ. Վասն հիւնդին քրտնելուն։ ԺԷ. Առաջա-գիտութիւն հիւնդութեանց։ ԺԸ. Նշանք ելնդու։ ԺԹ. Խօսք միահամուռ։ Ի. Վասն բառերու։*

*Թէ այս Ցանկին մէջ նշանակուած քսան Գլուխք արդեամբք կային ի սկզբնագրին Ասարայ եւ համառօտ էին, անտի յայտ է՝ որ յիշեալ ձե-ռագրիս առաջին թերթն, փխկ՝ մնացեալ թեր-թերուն պէս՝ 12 թուղթ ունենալու, ունի 6 թուղթ միայն, կամ թէ ըսենք՝ թերթին երկրորդ կէսն է, ուստի եւ թերթին առաջին կէսն պիտի պարու-նակէր յԱ. Ցանկին նշանակուած Ի. Գլուխներն, որք ի հարկէ կարճ ըլլալու էին։ — Դարձեալ ա-սացելոցս մեծ ապացոյց է եւ այն՝ որ Ցանկիս Զ. Գլուխն՝ Խրատ զգնութիւնն առողջ պահելոյ՝ իրօք եւ արդեամբք կար ի սկզբնագրին Ասարայ, որովհետեւ նոյն Գլուխն առնուած է Երեքմանեին Գ. Մասին սկիզբն, եւ տեղաւորուած է նոյն մասին Ցանկին եւ բուն մարմնոյն մէջտեղն, այն Մասին, կ՚ըսենք, որոյ Ա. Համարն՝ Ցաւաչքաբանութիւն գրոց Հունէնայ վերնագրաւ Ասարայ բժշկարանին Ա. Գլուխն է, իսկ Բ. Համարն՝ Յիշատակարան գրոցս վերնագրաւ՝ Ցաւաչքաբանին է նոյն բժշկարանին։ Այսպէս ան-ձուկ յարաբերութիւն գտնուելով Երեքմանեին Գ. Մասին Ա. եւ Բ. Համարոց եւ Ասարայ բժշկա-*

րանին Ա. Գլխոյն եւ Ցաւաշաբանին մէջ, զարմանք չէ որ նաեւ ասոնցմէ յառաջ դրուած Ի. Գլխոց Ջ.որդն եւս յառաջընթաց ըլլայ ասոնց։ (Տես Հետազօտ. էջ 408։ Տես նաեւ զԱ. եւ զԲ. համեմատական Օրինակս 21. Ա. Հատծին։) Իսկ Ի. Գլխոց Ջ.որդն այս կերպով յառաջ բերուած է Յերեքմասնէին։

Եղբայր, գիտացիր որ ամենայն հիւանդութիւն եւ պէսպէս ցաւեր ամենեցուն պատճառն ի ստամոքին լիութենէն է, որ չի կարենալ հալել զկերակուրն, մնայ ի ստամոքին մէջն, մաղձեր դառնայ, որպէս սաֆրայ, պալղամ եւ սավտայ, եւ ապականէ զարիւնն եւ ազգի ազգի ցաւեր ընծայէ առ մարդս եւ վնաս գործէ։ Ոմանք ասեն թէ ցաւն մրսելոյն կու գոյանայ. չէ ստոյգ։ Թէ մրսելոյն ցաւ կու ընծայեր, այլ աղքատի զարմ չէր մնալ, զամէնն կու կոտորվէր, ստամոքն նոցա դատարկ է զրայ չկայութենէն. Թէպէտ որ մրսին՝ այլ որ վնաս չի հասնիլ։ Գիտացիր որ ցաւ ընծայելոյն պատճառն ստամոքին ծանրութենէն է, որ ի ստամոքն լիքն լինի եւ չհալի եւ մրսի, եւ այնու առնէ հիւանդ զմարդն եւ բերէ տքնութիւն եւ սաթլճամ։ Եւ թէ լսես ի խրատ հաքիմներուն որ կեանքդ առողջ տանիս, ի կերակրոյ շատ ուտելոյ պատրաստ կացիր, որ իսկի վնաս չգտանես. եւ երիկունն շատ մի ուտեր[1]։

Կարծենք հարկ չկայ ջանալ ցուցընելու թէ Ասարայ բժշկարանին մէջ ճշդիւ ի գործ դրուած է այն ամենայն՝ զոր Ամիրտովլաթէն ետեւ չինուած բժշկական գրուածոց վրայ ի սկզբան Հատծիս ըսած ենք։ Հարեւանցի խուզարկութեամբ իսկ կրնայ տեսնուիլ թէ բժշկարանս յայնպիսեաց կարգէն է՝ որ հնագունաց եւ մանաւանդ Ամասիացի բժշկապետին հաւատարիմ հետեւողութեամբ յօրինեալ են։ Արդէն յառաջագոյն (ի 21, Ա. Հատածին) տեսած ենք այսր ակնյայտնի ապացոյցներն։ Ո՞չ ապաքէն նոյն Հատծին Ա. եւ Բ. հմմտկն

---

1 Հատակոտորըս մէջ կան ինչ ինչ որ Ասարայ սովորական չեն։ Ասոնք անշուշտ հետեւանք են Երեքմասնէին խմբագրին կամ ընդօրինակողին ըրած փոփոխութեանց։

Օրինակքն, ինչպէս նաեւ այն երկուքէն ետեւ գրուածներէն՝ Դ. Ե. եւ Զ. Օրինակք, սակաւ փոփոխութեամբ առնուած են Օջ——փ Բժշկ——ըեան կոչուած ամենածանօթ գրութենէն: Թէ Ասարայ բժշկարանին մէջ ասոնց նման այլ ոչ սակաւ կտորներ կան միեւնոյն երկասիրութենէն առեալ՝ այն եւս տարակուսի ներքեւ չ'իյնար:

Բայց Ասարայ աղբիւրներն բազմաթիւ են: Անծանօթ չեն իրեն՝ ազգային բժշկականութեան հնագոյն գրութիւնք, եւ զանոնք ալ յաճախ կը գործածէ իւր բժշկարանին մէջ: Վաղագոյն (12 հատածին վերջը) տեսած ենք թէ ինչպէս ի կիր արկած է Հերացի բժշկապետին՝ Ջերմանց Մխիթարութենէն զատ՝ մի գրութիւնն: Սակայն աւելի ապացուցական են առեալքն ի Ջերմանց մխիթարութենէ, զոր դիւրին է ակնյայտնի տեսնել՝ երկու գրութիւնքն իրարու հետ համեմատելով:

Այսպիսեաց գեղեցիկ օրինակ է Հոծն Ծաղիկ ախտին, որոյ վրայ թէ՛ Մխիթար եւ թէ՛ Ասար բաւական ընդարձակ կը ճառեն, առաջինն՝ ԻԸ. Գլխոյն, իսկ երկրորդն ԼԶ. եւ ԼԵ. Գլխոց մէջ: Երկու գրութեանցս այն հատակտորներն յառաջ կը բերենք, որոց միջոցաւ որոշ կ'երեւայ անոնց կապակցութիւնն, այն կարգը պահելով՝ զոր ունին իւրաքանչիւր սկզբնագրին մէջ, եւ միոյ միոյ հատակտորոյն սկիզբն յաւելլով իւր թուահամարն ըստ անձնիւր ընթերցուածոյն: Ասարայ ընթերցուածոյն կտորներուն վերջն ալ կը նշանակենք թէ Մխիթարայ ո՛ր կտորին կամ կտորներուն հետ համեմատելու է, որմէ կրնայ որոշ իմացուիլ իւր դուրս թողածն ու փոփոխածն[1]:

---

[1] Մխիթարայ ընթերցուածոյն իւրաքանչիւր հատակտորոյն առերի նշանակուած են էջք Ս. Ղազարու 1832ի տպագրութեան, որուն համեմատ յառաջ կը բերենք նոյն հատակտորներն: Բայց քանի մի տեղ փոխած ենք համեմատութեամբ մեր պակասաւոր եւ աղճատ ձեռագրին՝ (տես 12ին սկզբնական մանրագիր տեղեկութիւնն,) — մա-

Ընթերցուած Մխ. Հերացւոյ։

1. Վասն ստածման եւ բժշկութեան այն ջերմանն որ զկնի ծաղկին լինի։ Իսկ այն ջերմն որ զկնի ծաղկին լինի՝ իւր նշանն այս է որ երեսաց գոյնն կարմիր լինի եւ աչացն, եւ գլուխն ծանրանայ, եւ պինչանցներքս քորին եւ կծան, եւ փռնկտուք գայ, եւ ամենայն մարմինն լիանայ։ Ապա երբ այս նշաններս երեւան՝ գիտացիր որ ծաղիկ կամի հանել։ Ապա զքո զառաջին ջանքն եւ զստածումն յաչքն արա, որ չելնէ ծաղիկ։ Եւ գիր յաչքն զայս դեղս։ Առ աղտոր եւ վարդի ջրով եւ քացախով թրջէ, եւ սակաւ մի մուզ նռան ջուր խառնէ։ Զայս զամէնս պարզէ եւ դեղադրով յաչքն դիր։ Ապա թէ . . .։ Էջ 76։

2. Այլ գիտացիր որ այս հիւանդիս սկիզբն հիւանդութեան խափական դիպի, եւ սիրտն խառնըկի, եւ հիւանդն տապի եւ շարժակլի։ Ապա երբ զայդ տեսանես՝ ճար արա որ զծաղիկն շուտ ի դուրս քաշես եւ հանես այս նշանօքս։ Առ ափ մի ոսպ լուացած եւ թուզ մի կտրած, եփէ ջրով եւ քամէ. եւ առ լուք աղցած եւ մաղած, եւ երեք դրամ ի ներս խառնէ, եւ տուր որ խմէ։ Եւ կերակուր՝ մաշ տուր . . .։ Էջ 77։

3. Եւ այլ են ասացել բժշկական վարդապետքն՝ թէ Ջերթ զխաղողն յերբ քամեն՝ պիտի որ եռայ գինին եւ փրփուրն ի վերայ գայ եւ դիրտն ի վայր նստի եւ պարզի գինին. նոյնպէս եւ մարդոյ արիւնն եռայ եւ պարզի եւ (զ)ծաղիկն ի դուրս փչէ։ Եւ այնոր պատճառն՝ որ ոմանց ի փոքրութեան դիպի եւ ոմանց ի մեծութեան, այս է՝ որ (երբ) տղին բնութիւնն ուժով լինի եւ արիւնն թանձր, ոչ պարզի եւ ոչ ծաղկէ, եւ երթայ մեծութեան հասանի, եւ երբ տղին արիւնն նօսր լինի՝ շուտ պարզի արիւնն, շուտ ծաղկի. որպէս թանձր գինի յուշ եռայ եւ պարզի, եւ նօսր շուտ եռայ եւ շուտ պարզի։

Այս (3.) հատուածս չի գտնուիր Մխիթարայ՝ Հերացւոյ տպագրելոյն ԻԸ. Գլխոյն մէջ. առած ենք մեր աղճատ ձեռագրէն՝ յայտնի գրչասխալներն ուղղելով։ — Ասկէ լրացուցած ենք՝ փակագծեալ՝ նաեւ Ասարայ ընթերցուածոյն նոյն (3) թուահամարով հատուածոյն քանի մի պակաս բառերն։ — Մտադրութեան արժանի է այն պարագայն եւս՝ որ Ասարայ հատուածոց բառացութիւնն ճշդիւ կը միաբանի մեր այս աղճատ ձեռագրին. նոյնպէս

---

նաեւ անդ երբ մերոյն ընթերցուածն կը միաբանի Ասարայ հետ։ Զայսպիսիս նշանակած ենք՝ փոխուած տեղերուն սկիզբն մի աստղ (*) դնելով, վերջն՝ երկու աստղ (**)։

երկուքին ընթերցուածոցն մեծ տարբերութիւն չունին իրարմէ։ — Ի վերջին համեմատական ընթերցուածոց Մր․ Հերացւոյ եւ Ասարայ՝ ամբողջ կը գտնենք մեր աղճատ ձեռագրիս այն մասերն որ ի նոյն Համմուլն ընթերցուածս յառաջ բերուած են՝ կ՚ենթադրուի գրչասխալներն ուղղելով։ Միայն զ3րդ Հատակոտորն՝ որ մի անգամ յառաջ բերած ենք ի կարգի ընթերցուածոյն Մխիթարայ, չենք կրկներ։

4․ Բայց ի հիւանդութեան սկիզբն *զբնութիւնն կակղացո դամոյնով եւ յունապով եւ թառանկուպինով եւ յետ եօթն աւուրն պատրաստեցս որ չլուծանես զբնութիւնն․ զի այս** հիւանդութիւնս ի վճարն ինքնին լուծանէ զբնութիւնն․ զի այն մնացորդն՝ որ ի ծաղկէն ի ներքս մնաց եւ չելաւ ի դուրս, յետոյ լուծանէ զբնութիւնն։ *Ապա թէ լուծանէ՝ տուր** սերկեւիլ եւ տանձ եւ մուզ նուռն։․․․ Ապա թէ լուծումն պնդի, տուր զտապաշիրին կուրսն՝ զոր թրթկճի հնդով զուգեն։ Եւ իւր նշանն այս է։․․․ Էջ 77։

5․ Ապուճարեհն ասէ՝ թէ իւր պատճառն յաւելի տաք եւ ի գէճ արենէ լինի, որ մարմնոյն յաղթէ։ Իհաննես ասէ՝ թէ իւր պատճառն այն արեան յաւելուածոցն լինի, որ մանուկն ի յարգանդի մօրն կերակրի․ եւ այն արիւնն՝ կանացին է, որ ի յամենայն մարմնոյն յիստակի եւ սրբի եւ ապա կերակրէ զմանուկն ընդ պորտն։ Եւ իւր նշանն այն է՝ որ ջերմանայ խիստ առանց դողալոյ․ երեք օր երեք գիշեր ի յար լինի իւր տաքութիւն առանց պակասելոյ․ մէջքն եւ ողնշարն ցաւի։ Էջ 78։

6․ Եւ իւր ստածումն այս է, որ ի սկզբանն երակ առնուն եւ արիւն թողուն ըստ ուժոյն։ Ապա թէ յառաջ քան զերակ առնուլն ծաղիկն յերեւան գայ երակ չէ պատեհ առնուլ, զի աչակէ շատ։ Ապա զկնի ծաղկին երեւելոյն՝ *գարեջուր տուր, զոր յունապով եւ փերճոկած ոսպնով եփած լինի, եւ սրքնճպին զուգէ՝ ծեծած խիարի հնդով** եւ ըղըդական հնդով եւ սամթի հնդով, եւ զայն տուր խմելոյ։ Էջ 78։

7․ Ապա թէ երակ չկարէ առնուլ, ի գարեջրէն եւ ի հով իրաց պատրաստ կենայ, եւ զայն զդեղերն տանի ի բան, որ զծաղիկն ի դուրս հանեն եւ եփեն, այս նշանօքս։ Առ փերճոկած ոսպն տասն դրամակշիռ․․․։ Էջ 78։

8․ Եւ վարդն, զոր հարսանիթէ ասեն, եւ *Աղուանից տունն՝ քութէշ, նոյնպէս իւր պատճառն արիւնն լինի, զերդ որ ծաղիկն է։ Բայց ծաղկին գլուխքն եւ նիւթքն հաստ լինի եւ զօրաւոր, եւ վարդին՝ այլ պարկեշտ եւ նօսր եւ թեթեւ լինի, եւ իւր ստածումն

յար եւ ի մօտ է ի ծաղկին ստածումն** ամենայն դիմօք թէ Աստուած կամի։ Էջ 19։

Ընթերցուած Ասորւոյ։

1. Պատմութիւն նախագիտութեան վասն ծաղկին ջերմանն։ Եհաննա ասէ՝ թէ Պատճառն այն արեանն յաւելուածքն լինի՝ որ մանուկն յորովայնի մօրն կերակրի։ Եւ այն արիւնն՝ կանացիան է, որ յամենայն մարմնոյ(ն) ատկի եւ սրբի, եւ ապա կերակրէ զմանուկն ընդ պորտն։ Եւ իւր նշանն այն է՝ որ ջերմանայ խիստ առանց դողալոյ, երեք օր եւ երեք գիշեր ի յար լինի իւր տաքութիւն՝ առանց պակասելոյ եւ մէջքն եւ ողնաշարն ցաւէ։ Համմտէ. Մխ. 5։

2. Ապուճէրիճն ասէ՝ թէ իւր պատճառն յաւելու եւ ի գէջ յարենէ լինի՝ որ մարմնոյն յաղթէ, եւ իւր նշանն այն է՝ որ երեսացն գոյնն կարմիր լինի եւ աչացն, եւ գլուխն ծանրանայ։ Երբ այս նշաննիս երեւնայ՝ գիտացիր որ ծաղիկ կամի ելանել։ Համմտէ Մխ. 5 եւ 1։

3. Այլ ասացել են ի բժշկական վարդապետացն՝ թէ Ջերդ զխաղողն որ քամեն, որ պիտի որ եռայ գինին, եւ փրփուրն վերայ գայ եւ մրուրն ի վայր նստի եւ պարզի գինին, (նոյնպէս եւ մարդոյ արիւնն եռայ եւ պարզի,) եւ զծաղիկն ի դուրս փչէ։ Եւ այնոց պատճառն՝ որ ոմանց ի փոքրութեան գիպի եւ ոմանց ի մեծութեան, այս է՝ որ երբ տղային բնութիւնն ուժով լինի եւ արիւնն՝ թանձր, յուշ պարզի եւ յուշ ծաղկէ, եւ երթայ ի մեծութիւն հասանէ. եւ երբ տղային արիւնն նօսր լինի՝ շուտ պարզի արիւնն եւ շուտ ծաղկէ. որպէս թանձր գինին՝ որ յուշ եռայ եւ պարզի, եւ նօսր շուտ եռայ եւ շուտ պարզի։ Համմտէ Մխ. 3։

4. Յորժամ յիմանաս որ ծաղիկ կամի ելանել ի մարդն՝ յառաջ քան զամենայն ի սկիզբն երակ առ ի կէֆալէն կամ ի պասիլիկէն, եւ արիւն թող ըստ ուժոյն։ Ապա եթէ յառաջ ծաղիկն յերեւան գայ՝ երակ չէ պատեհ առնուլ. զի շատ աճոկէ։ Ապա զկնի ծաղկին երեւելոյն՝ գարեջուր տուր, որ յունապով լինի եփած եւ փերճոկած սոքամբ։ Եւ սրքնճէպին զուգէ՝ ծեծած խիարի հնդով եւ եղրդակի հնդով, եւ զայն տուր խմելոյ։ Ապա թէ երակ չկարէ առնուլ, ի գարեջրէն եւ ի հով իրաց պատրաստ պահէ, եւ զայս դեղս տուր՝ որ եփէ եւ զծաղիկն ի դուրս զարնէ եւ հանէ։ Առ փերճոկած սոբն տասն դրամ . . .։ Համմտէ Մխ. 6 եւ 7։

5. Բայց քան զամենայն ինչ զքո առաջին ջանքն եւ զստածումն յաչքն արա, որ չելանէ ծաղիկ, եւ դիր յաչքն զայս դեղս: Առ աղտոր եւ վարդի ջրով եւ քացխով թրջէ, եւ սակաւ մի մուզ նռան ջուր խառնէ, եւ դեղդրով յաչքն դիր:... Հմմտէ Մխ. 1:

6. Այլ գիտացիր որ ի յայս հիւանդութեանս ի սկիզբն՝ մարդոյն խաֆազան գիպի եւ սիրտն խառնի, եւ հիւանդն տաքի եւ շարժկլթի: Եւ երբ զայս տեսանես՝ ճար արա որ զծաղիկն ի դուրս քարշես եւ հանես այպղէս: Առ ափ մի ոսբն լուացած եւ թուզ մի կտրտած, եւ եփէ ջրով եւ քամէ. եւ առ լուք աղցած եւ մազած երեք դրամ, եւ ի ներս խառնէ, եւ տուր որ խմէ: Հմմտէ Մխ. 2:

7. Եւ ի հիւանդութեանն սկիզբն զընութիւնն կակղացո թառանգպինով եւ դամոնով եւ ունապով: Եւ յետ եօթն աւուրն պատրաստեցո որ չլուծանէ զընութիւնն. զի այս հիւանդութիւնս ի վճարն ինքնին լուծէ զընութիւնն. զի այն մնացորդն որ ի ծաղկէն ի ներս մնայ եւ չելանէ ի դուրս, յետոյ լուծանէ զընութիւնն: Ապա թէ լուծանէ՝ տուր սերկեւիլ եւ տանձ եւ մուզ նուռն: Ապա թէ լուծումն պնդէ, տուր տապաշիրին խուրսն՝ որ զաւգած լինի թթըրկճի հնդով:... Հմմտէ Մխ. 4:

8. Եւ վարդն որ հարսանիթէ ասեն, եւ յԱղուանից տունն քուլթէշ ասեն, նոյնպէսն եւ իւր պատճառն արիւնն լինի, զերթ որ ծաղկին է: Բայց ծաղկին նիւթն եւ գլուխն հաստ լինի եւ զօրաւոր, եւ հարսանիթային՝ այլ պարկեշտ եւ նօսր եւ թեթեւ լինի, եւ իւր ստածումն յար եւ ի մօտ է ի ծաղկին ստածումն ամենայն դիմօք:... Հմմտէ Մխ. 8:

Ամիրդոլ. [illegible] Ջերմանց Մխիթարութեան:

1. Պատմութիւն (եւ) Նախագիտութեան վասն ծաղկին ջերմանն: — Էհանայ ասէ՝ թէ Իւր պատճառն այն արեան աւելուածք լինի՝ որ մանուկն յորովայնն մօրն կերակրիլ է, եւ այն արիւնն կանացիս է՝ որ յամենայն մարմնէն յիստակի եւ բորբոսի, եւ ապա կերակրէ զմանուկն ընդ պորտն: Եւ իւր նշանն այն է՝ որ ջերմնայ խիստ առանց դողալու, եւ երեք օր եւ երեք գիշեր ի յար լինի իր տաքութիւն առանց պակասելու, (Ի—) մէջքն եւ ողուշարն ցաւի:

2. Ապուճէրին ասէ՝ թէ Իւր պատճառն աւելի գէճ արիւնէն լինի՝ որ մարմնոյն յաղթէ. եւ իւր նշանն այն է՝ որ երեսին գոյնն կարմիր լինի եւ աչքն, եւ

գլուխն ծանրանայ եւ պնչերն ընդ ներքսէ կծան եւ փռնկտայ: Գիտացիր որ ծաղիկ կամենում է հանել, եւ ամենայն մարմինն լիանայ:

3. Եւ այլ են ասացել բժշկական . . .: (Տես յընթերցուածի Մխիթարայ:)

4. Վասն ստածման եւ բժշկութեան այն ջերմանն որ (չինէ) ծաղկին լինի: Յորժամ յիմանաս որ ծաղիկն կամի ելանել ի մարդ՝ յառաջ քան զամենայն սկիզբն երակ առ ի կիֆալէն կամ ի վասիլիկէն, եւ արիւնն թող ըստ ուժոյն: Ապա եթէ յառաջն ծաղիկն երեւնայ՝ երակն չէ պատեհ առնել, զի ահսկէ չար: Ապա զկնի ծաղկին երեւելուն՝ գարեջուր տուր յունապով եփած եւ փրճկած ոսպն, եւ սքանճոյին զուգէ՝ ծեծած խիարի հունդով եւ սամթի հնդով, եւ զայն տուր խմելու: Ապա եթէ երակն չի կարէ առնուլ՝ ի գարեջրէն եւ ի հով իրաց պատրաստ պահէ, եւ զայս դեղս տուր որ (զ)ծաղիկն ի դուրս հանէ: Առ փրճկուտած ոսպն տասն դրամ . . .:

5. Բայց (տոն) զամենայն ինչ դքո առաջին ջանքն եւ ստածումն ի յաչքն արա, որ չելանէ ծաղիկն ընդ դուրս, ի աչքն զայս դեղս արա: Առ աղտոր եւ վարդեջուր եւ քացախով թրջէ, եւ սակաւ մի մուղ նռան ջուր խառնէ ի ներս, եւ զամէնդ պարզէ եւ դեղդրով աչքն դիր . . .:

6. Այլ գիտացիր որ (զ)հիւանդութեան սկիզբն մարդոյն խափական դիպի եւ ի սիրտն խառնի, հիւանդն տապի եւ սիրտն շարժկլտի: Երբ զայս տեսանես՝ ճար արա որ ծաղիկն ի դուրսն քաշես եւ հանես այս նշանօք: Առ ափ մի ոսպ. թուզ մի կտրատած, եւ եփէ ջրով եւ քամէ. առ լուք աղցած եւ մաղած, երեք դրամ ի ներս խառնէ, եւ տուր որ խմէ:

7. Ի հիւանդութեանն սկիզբն զընութիւն կակղացո թառանկուպինով: Եւ յետ եօթն օրն պատրաստեցո որ չլուծես զընութիւն. զի այս հիւանդութիւն ի վճարն ինքնին լուծանէ զընութիւն: Ապա թէ լուծանէ՝ տուր սերկեւիլի լուապ եւ տանձ եւ մուղ նռան: Ապա թէ լուծումն պնդի, տուր թապաշիրին զուրսն՝ (որ) զուգած լինի թրթնկի հնդով:

8. Եւ վարդն զոր հարսանիթէ ասեն եւ Աղուենից (գրեալ՝ ողո—ինեց) տունն քուտէշ ասեն, նոյնպէս եւ իւր պատճառն արիւն լինի եւ երկրորդ ծաղիկն լինի: Բայց ծաղիկն գլուխն է, եւ նիւթն հաստ լինի եւ զօրաւոր, եւ հարսանիթային՝ այլ պարկեշտ եւ նօսր եւ թեթեւ լինի. (է—) իւր ստածումն յար եւ ի մօտ է ի ծաղկին ստածումն ամենայն դիմօք:

Ասարայ անծանօթ չէն, ըստ էինք, ազգային բժշկականութեան հնագոյն գրութիւնք․ (տես Հետազ․ էջ 143) եւ անոնցմէ՝ մանաւանդ ի գրուածոց Մխ․ Հերացւոյ՝ օգտուելն ըստ բաւականին տեսանք։ Բայց այլ եւս հին եւ հնագոյն գրուածոց բազմագոյն նշանք չեն պակսիր ի բովանդակ ընթացս իւր բժշկարանին։ Սեբաստացի բժշկիս գլխաւոր աղբիւրներէն մին է Ա․ Մասն Երեքմանեին։ Իւր երկասիրութեան մէջ յաճախութեամբ կը հանդիպին շատ մի բառեր որ այն գրութեան յատուկ են, նոյնպէս կան այս իւր երկասիրութեան մէջ այնպիսի քերականական ձեւակերպութիւնք եւ կիրարկութիւնք, որ իւր ժամանակին գրչաց բնական բխմունք չեն, այլ հնագոյն աղբերականք մատնանիշ կ՚ընեն։ Ցայսմ մասին բաւական կը համարինք՝ փոխանակ երկայն հմմտկն օրինակաց՝ կարճ նմոյշներ յառաջ բերել։

Աչացաւութեան վրայ իւր սովորականէն շատ աւելի ընդարձակ կը խօսի Ասար ԿԳ․ Գլխոյն մէջ (եր․ 91—105), որոյ գլխաւոր աղբիւրն եղած կ՚երեւայ յիշեալ Ա․ Մասն Երեքմանեին։ Աւասիկ քանի մի նմոյշներ։ "Երբ դադարէ ի վերաբերութենէն՝ յոյն—ն հով ջուր ի յերեսն եւ ի գլուխն լնուն։ — Եւ թէ գէշ ցեց լինայ, . . . յոյն—մ զինքն ծեծել պիտի„։ Այս երկուքն ի յիշեալ ԿԳ․ Գլխէն են․ բայց նոյն բառն նաեւ այլ Գլխոց մէջ կը գտնուի։ Օրինակի համար, ի ԼԲ․ Գլ․ կը կարդացուի․ "Երբ որ հազայ շատ, . . . յոյն—մ զայս դեղս արա„։ ԽԱ․ Գլխոյն մէջ ալ երկու հեղ կ՚ըսուի․ "Ձիթով օծէ յոյն—մ որ դնել կամենաս„։ (Տեսնաեւ յետոյ ՀՋ Գլխոյն նկատմամբ գրուածն։)

Թերեւս Պարսկահայոց գաւառականէն մուտ գտած կարծուի յոյն—մ բառն յերկասիրութիւն Սեբաստացւոյն․ սակայն միեւնոյն գրութեան մէջ կան այլ եւս ոչ սակաւ բառք, որոց յԵրեքմանեէն առեալ լինելն աներկբայ է, ինչպէս կը ցու-

ցրնեն առերի գրուած հմմտկնքն, որ շատ յաճախութեամբ կը տեմնուին յԵրեքմանեին։

Ասար. Ի ապխտկուցին վերայ [illegible] մի միս երեւի զերդ ըղուեկն։
Երեքմ. [illegible] մի բամբակ։

Ասար. Առ ղինքն եւ չորացո, եւ [illegible] մի մուշկ խառնէ ի ներս։
Երեքմ. Հալէ [illegible] մի քացախով։ Հաց կեր . . . եւ [illegible] մի գինի խմէ։

Ասար. Մեղրաջրով տրորէ եւ յայն տեղն կաթեցո [illegible]։
Երեքմ. Ընդ աչքն ած [illegible] (պղնձի՝ [illegible]) [illegible]։

Ասար. Դառնայ (բիբքն) եւ [illegible]։
Երեքմ. Օգտէ աչաց քորելոյն եւ [illegible]։

Ասար. Աչաց դեղ [illegible]։
Երեքմ. Աչքն զերդ [illegible] լինի։

Չափէն աւելի կ'երկընճար խօսքն՝ եթէ մի ըստ միոջէ իրենց համեմատականօքն յառաջ բերել ուզէինք Ասարայ յաճախ իսկ ի կիրարկութիւն մուծած այն բառերն՝ որ շատ սովորական են Երեքմանեին, թէեւ այս յետինքս այլ հին բժշկական գրուածոց մէջ ալ ուրեք ուրեք կը հանդիպին։ Այսպիսի են յաջորդ նմոյշներուն նոտրգիր բառերն Սեբաստացւոյն։ "Կայ պիսակ որ [illegible] եւ կայ որ [illegible]։ Շատն այն է որ այս դեղովս [illegible] . . . ։ Ապա թէ այսով [illegible] եւ ցաւն [illegible]՝ ղուրս արա եւ ի շքի չորացո . . . ։ Թէ շուտ պէտ այնեն՝ շոյտ ողջանայ, եւ թէ ոչ՝ [illegible]։ Զերդ երակ գայ աչիցն վերայ . . . եւ ինքդ յառաջ ի սեւուցն վերայ լինի, եւ երբ [illegible]՝ ([illegible]) ապիտակուցն ելանէ"։

Բայց Ասարայ հետեւողութիւնն Երեքմանեին՝ մեկնակ բառերու վրայ չի սեղմուիր, այլ կ'անցնի նաեւ ամբողջ պարբերութեանց, երբեմն բառական նոյնութեամբ, երբեմն սակաւ փոփոխութեամբ։

Ասոր. Ապա թէ մարդոյ աչքն... կծայ եւ քորի, եւ ջուրն երթայ եփեն՝ ինչ ի քնոյ (յ)առնէ...։
Երեւմ. Ապա թէ մարդոյ աչքն քորի կամ կծի, եւ ջուր գնայ յեփենն՝ ինչ ի քնոյ յերնէ (= յառնէ)...։

Ասոր. Մարդն գանկտի թէ ժամ մի խաւէ, ժամ մի դիւրանայ։
Երեւմ. Մարդն հանց գանգտի թէ ժամ մի խաւէ եւ ժամ մի յաջի։

Ասոր. Ի կրակն դիր որ հալի եւ մի փերթ դառնայ։
Երեւմ. Եփէ ինչուր միանայ, հալի եւ միափերթ դառնայ։

Ասոր. ...Իւր անունն... ըռամատ ասեն, եւ իւր նշանն այն է՝ որ մարդն զաչքն բանալ չկարէ եւ արտասուքն գնայ։
Երեւմ. Իւրս անուն ռամատ ասեն. զաչքն բանալ չկարէ եւ արտասուքն գնայ։

Ասոր. Երբ գիտենաս որ հիւանդն դարձաւ, յայնում քչիկ քչիկ զկերակուրն յաւելցու, որ ի յուժ գայ։
Երեւմ. Երբ գիտենաս որ հիւանդն դարձաւ՝ զուտելացուն օր քան զօր յեւելցո, որ շոյտ ի յոյժ գայ։

Ասորայ բժշկարանին՝ ըստ մեծագոյն մասին՝ ԿԳ. Գլխէն առնուած այս տակաւ կտորներուն նման բազմաթիւ հմմտկնք կան ոչ միայն նոյն Գլխոյն մէջ, այլ նաեւ յայլ եւս Գլուխս։ Բայց թողլով զայլ ամենայն համեմատութիւնս, երկու եւեթ օրինակ կը յաւելունք աստէն, որ զանազան հայեցմամբ հետաքրքրական են։

1. Ցառաջներն (Հմծ 21, Ա) հմմտկն Օրինակաց Ե.ին մէջ՝ Ասորայ Վ...ն փ...ն–Ըեան վերնագրաւ ՀԷ. Գլխէն բերուած երկու հատակտորներէն յառաջ՝ Սեբաստացի բժիշկս ունի այլ հատակտոր մի, որ չիգտնուիր ի հմմտկն ընթերցուածին Ամիրտովլաթայ։ Եւ է այս.

Ապա թէ տքնութիւն ի յողջնութիւնն լինի՝ զայս ջուրս զուգէ եւ ղեղերոծ ղոփեր։ Առ չոր մանիշակ... զամէնդ ի պղինձ արկ եւ ի վերայ՝ ջուր տասն լիտր, եւ եփէ որ մնայ վեց լիտր. եւ զայտ ջուրտ եղկ ղեղերոծ ղոփեր վաղն եւ երեկունն...։ Եւ թէ ձեռն յօգուտ՝ ի յայտ ջուրտ խառնէ այծու կաթն եւ անց ղոփեր ղեղերոծ։

Արդ՝ ամենայն նշանք յայտնի կը ցուցընեն թէ այս գեղեցիկ տողերս գրուած են հետեւողութեամբ Երեքմանէին, որուն շատ սովորական են նստրգիր բացատրութիւնքն։ Համեմատէ. "Եղկ ջուր չոփէ ղէլխօն։ Ցեփէնն եղկ ջուր ղէլխօն չոփէ․ ։․․․Տես նաեւ գլաջորդն. "Զայս ջրերս ղէլխօն տուր։ Տաքացո եւ այլ տուր ղէլխօն։ Առ բարձուեննեկ եւ զջուրն ղէլխօն ծփէ„ ։ . . . Ասոնց եւ նմանեաց վրայ՝ յաւելցու նաեւ համառօտ հատակոտորս մէջ տեսնուած՝ Եւ թէ չլինի յօգնել ձեւն, որ այնչափ սովորական է Երեքմանէին, իսկ Ասարայ յատուկ գրչին եւ իւր ժամանակին՝ բոլորովին օտար, այնպէս որ միայն այս ձեւոյն կիրարկութիւնն մատնացոյց կ'ընէ թէ օտարամուտ է։

2. Հետազօտութեանցս սկիզբներն (ի վերջ 12 հածին) Մխիթարայ Հերացւոյ՝ Ջերմանց Մխիթարութենէն զատ՝ այլ եւս անծանօթ գրուածներ ունենալն ցուցընելու համար, Ասարայ բժշկարանին ՀԶ. Գլխէն առնլով՝ բոլոր Գլխոյն իբր քառորդ մասն յառաջ բերած, իսկ մնացեալ մասն լոկ յիշատակելով՝ կասկած յայտնած էինք ամբողջ Գլխոյն Հերացի բժշկապետին հարազատ կամ անխառն գրութիւնն ըլլալուն վրայ։ — Արդ՝ այս տեղ իբրեւ 2որդ հատակոտոր յառաջ բերուածն՝ այն լոկ յիշատակուած մասէն է, որմէ կը տեսնուի թէ որչափ հիմնական էր կասկածս. միանգամայն ապացոյց է Ասարայ մեծապէս օգտուելուն Երեքմանէին Ա. Մասէն։

...Եւ թէ այն որ ըստ տէրն է գնալ լինի (եւ) նեղու, եւ ուզես որ կտրես՝ ծխէ ի ներքեւ քթացն խունկ սանդարոս, գրած քարտէզ, եւ որչափ կարես՝ մի՛ կտրել զայն որ է տեղոյն լինի գնալ, ինչուր ի կուրծքն չլինի իջել։ Ապա թէ ի փողքն չորանայ՝ երակ կտրէ զկիֆալն։ Եւ թէ փորն կապ լինի՝ կակղացո մնպուխով։ Ապա երբ զերակն կտրես եւ մնպուխով կակղացնես, եւ չլաջի, եւ նուզլան ի կուրծքն իջանէ եւ հազ գայ, դու շտապէ եւ այլ պատրաստեցո, եւ սնու-

ցած մանիշակ տուր՝ որչափ հաղն կէնէ է գօլ, եւ խոշորութիւն լինի ի փողքն եւ ի կուրծքն, մինչ որ այդից յաջի:... Պարտ է զանձն յիստակել երակով ... եւ զկերակուրն պարկեշտացնել ... եւ ամէն օր քաֆուրի ակրօս առնուլ:... Եւ երբ գիտենաս որ հիւանդն դարձաւ, յոյնոմ քչիկ քչիկ զկերակուրն յաւելցու, որ ի յուժ գայ[1]:

Համեմատէ ի մէջ այլոց՝ Երեքմ· Ա· Մաշին յաջորդ կտորներուն հետ. "Փչէ յայն քիթն որ ի գնալ լինի: Եւ թէ (արիւնն) ընդ աջոյ քիթն լինի ի գնալ ....: Ապա թէ (ընդ) ձախոյ դիհն լինի ի գնալ: Արգելէ զարիւնն որ ընդ քիթն գնայ: Օգտէ արեանն որ յանձին յոր եւ իցէ տեղոյ գնալ լինի ...„:

Առանց պէտ յԵրեքմանէէն առեալ պէտք է համարիլ նաեւ յաջորդները, որ Սեբաստացւոյն ԿԱ· եւ ԿԵ· Գլխոց մէջ կը կարդացուին: "Ապա թէ է վէր լէնէ է գօլ ...: Երբ անկանէ արիւն լէնէ է գնօլ, որչափ գոյնն կարմիր լինի՝ զայն արիւնն չմարթի արգիլել, քանի որ ինքն կէնէ է տեղնել„: — Ամէնէն աւելի ապացուցական են Ակրօս եւ Յոյնոմ բառերն որ ի վերջ կոյս օրինակիս կը տեսնուին:

Արդէն յառաջագոյն (Հետազօտ. էջ 461) ակնարկութիւն ըրած ենք ի մասին Յոյնոմ բառին: Իսկ Ակրօս բառն այնպէս յատուկ է Երեքմանէին, որ չենք յիշեր այլուր տեսած ըլլալ: Եւ թէպէտ ի նմին Մատենի շատ յաճախ ի գործ ածուած է, սակայն եւ այնպէս Խմբագիրն հարկ կը համարի մեկնութիւն դնել առերի՝ գրելով. "Վասն ամենայն ցեղ ակրօսերոյ, որ թարգմանի խուռայ„: (Տես Հետազօտ. էջ 417:) Եւ ոչ այսչափ միայն՝ այլ նաեւ Մատենին բառագրոց մէջ ալ (տես անդ, յէջն 406 ի Դ·) կ'առնու, եւ կը մեկնէ

---

1 Տես Ասարայ եւ Երեքմանէին համեմատութեամբ բերուած նմոյշներուն վերջինն: Հետազ. էջ 463:

այսպէս. «Ակրաս, որպէս խուրս՝ ինչ որ լինի»։ — Աւելորդ է ասել թէ՝ որչափ կը յիշենք՝ ոչ Ցոյնամ (յենում, յանում), եւ ոչ Ակրաս ի կիր արկեալ են ի Ջերմանց Մխիթարութեան։

Անցողակի յիշատակենք որ Ակրաս՝ սովորական յոքնակին է խուրս արաբական բառին (եզ. գուրս, յգ. ագրաս) որ տառադարձութեամբ հայացած է, ինչպէս շատ անգամ եղած են յՆրեքմաններին օտար բառեր։ Այսպէս օֆուֆ բառն՝ քանի մի Հտծոց մէջ գրուած է ոֆոփ, որով ազգային կերպարանք առած, որ այս եւս կրնայ իբրեւ ցոյց նկատուիլ սոյն Հտծոց՝ տարբեր ձեռագրէ առեալ լինելուն՝ քան զնախընթաց եւ զյաջորդ հատակոտորս, յորս սովորական օֆուֆն գործածուած է։ — Նկատմամբ Ակրաս բառին՝ թերեւս աւելորդ չէ յիշատակել թէ բոլորովին տարբեր է Բ. (Ամիրտովլաթայ) Ախրապատնին Աղրաս-ըսածէն (տես Հետազ. էջ 384) որ ինքնակաց դեղանիւթ մի կը մեկնուի։

Ասարայ բնական լեզուին վրայ կը խօսինք Հտծիս Բ. Բաժնին մէջ՝ այլ նորագոյն կամ յետին բժշկական գրուածոց լեզուին հետ միահաղոյն։

## Բ. ՆՈՐԱԳՈՅՆ ԲԺՇԿԱԿԱՆ ԳՐՈՒԹԻՒՆՔ

«Նորագոյն անուանեալ գրութիւնքս՝ ըստ ինքեան ստորին կարգի եւ յետին ժամանակաց գործ են, եւ ընդհանրապէս խօսելով՝ խառնակ ու աննշանակ երկասիրութիւնք. ուստի անոնք միայն եւ կամ այն մասունք նոյնպիսեաց կրնան ըստմանեայ եւ երկրորդական կարգի կարեւորութիւն ունենալ, որք մասնագիտական տեղեկութիւններ կը բովանդակեն, կամ ժողովրդական բառեր, բացատրութիւններ ու ասացուածներ։ Սակաւաւորք այս գրուածոց ինքնուրոյն ձեռագրի մէջ պահուած են. սովորաբար կը գտնուին այն ժողովածոյ ձե-

ռագրաց մէջ՝ որք այլեւայլ (կրօնական, վիճական, գիտնական, բանասիրական...) նիւթոց գումարութիւն կը պարունակեն. եւ վերջինքս (ժողովածոյք) բազմաթիւ են քան զչափն:

Մեր Մանդրոնին վերյիշեալ երկու տեսակ ձեռագիրք ալ ծանրակշռութիւն ունեցող բազմաթիւ հատակտորներ չպարունակելով, ընտրանօք հազիւ քանի մի մտադրութեան արժանի կտորներ յառաջ կը բերենք զատ զատ. Մնացելոց վրայ միահաղոյն կը խօսինք առաւելապէս լեզուական տեսակէտէն: Ըստ պատեհութեան՝ ասոնց հետ կը խառնենք նաեւ ինչ որ Ասարայ բնական կամ յատուկ լեզուին նկատմամբ յԱ. Հտծաբաժնին դուրս էինք թողեր: — Իսկ մատենագիտական՝ մանաւանդ հայ բժշկականութեան պատմական մասին հայեցմամբ՝ այնօրինակ գրութիւններէն հազիւ հնար է որոշ տեղեկութիւն քաղել. որովհետեւ ասոնք՝ սակաւ բացառութեամբ՝ անանուն են, խմբագրութեան տեղն ու ժամանակն ալ անյայտ մնացած է. ուստի եւ պատմագրի համար գրեթէ նշանակութիւն չեն ունենար:

---

Միակ գրութիւն ունինք ի ձեռին Ասարէն ետեւ յերեւան եկածներէն, որոյ խմբագիրն, — եթէ ոք ախորժէ՝ հեղինակն, — ոչ միայն իւր անունն ու ժամանակն, այլ նաեւ իւր կենաց եւ գործունէութեան մանրամասնութիւնքն ընթերցողաց հաղորդած ըլլալով, մենք ալ իւր գրութեան վրայ պիտի խօսինք առանձինն եւ սակաւ մի ընդարձակ, որով եւ յետին ժամանակաց բժշկական գրուածոց՝ թէ մատենագէտք եւ թէ բանասէրք՝ իւրաքանչիւր իւր ճիւղին վերաբերեալներուն մասին կրնան պայծառ գաղափար ունենալ:

## 1. Բժշկարան Գալուստ բժշկի ամասիացւոյ[1]:

Որչափ գիտենք՝ մինչեւ ցարդ բոլորովին անյայտ մնացած գրութիւն մ՚է այս, որոյ խմբագրին անուան յիշատակութիւնն իսկ տեսած չունէինք մինչեւ մօտ օրերս, երբ գործոյս մաքուր նօտրգիր ընդօրինակեալ փոքր ութածալ անթուական ձեռագիրն ստացաւ Մանդրնս: Խմբագիրն՝ թէպէտ իւր գրութեան ժամանակին վրայ կը լռէ, բայց որովհետեւ որոշ կը ծանուցանէ թէ ՌՃԺԸ. (= 1668—69) թուականին սկսած է իւր բժշկական գործունէութիւնն, բնական է հետեւցրնել որ միեւնոյն միջոցին՝ իբր ԺԷ. դարուն երրորդ քառորդին՝ ձեռնարկած է ի գրութիւն:

Կարելի չէ իբրեւ ազգային բժշկականութեան պարծանաց նիւթ նկատել զայս երկասիրութիւն, եւ կամ իբրեւ ռամկօրէն լեզուի վայելչութեան օրինակ. բայց եւ ոչ բոլորովին խոտան եւ ընդվայրընկեցիկ գրութիւն համարիլ: Արդեամբք իսկ ձեռագրին 587 էջերուն պարունակութիւնն՝ ՃԾ. հմր բաժնուած անթերի բժշկարան է, — ունենալով Մարդակազմութիւն, Ախտաբանութիւն եւ Դեղազուգութիւն, որոյմէ հնար է տեսնել խմբագրին փորձառութեանց եւ տեղեկութեանց չափն:

Բովանդակ երկասիրութիւնն վեց բաժին ունի, որ են. Ա. Մարդակազմութիւն. (Հմր Ա. էջ 33*—82:) — Բ. Ախտաբանութիւն եւ Առողջապահութիւն. (Հմր Բ.—ՂԵ. էջ 83—353:) — Գ. Դեղազուգութիւն կամ Դեղագրաց գումարութիւն եւեթ. (Հմր ՂԶ.—ՃԺԲ. էջ 354–398:) — Դ. Բժշկական բառարան, որ վերնագրեալ է՝ Մէւֆրէտաթ (= Միւֆրէտաթ) ղուրմանըլը եւ-բաթոյք. (Հմր ՃԺԳ. էջ 399—460:) — Ե. Ընդհանուր

---

1 Զարմանալի զուգադիպութիւն է՝ միջին եւ վերջին ժամանակաց բժշկարաններուն չորս հեղինակացն՝ երկու քաղաքի քաղաքացի ըլլալն, Ամիրտովլաթայ եւ Գալուստի՝ Ամասիացի, Ասարայ եւ Պունեաթի՝ Սեբաստացի:

գիտելիք բժշկականութեան, վասն երակաց, վասն հիւանդին կենաց եւ մահու, վասն հիւանդին ԻԴ. նշանաց, վասն հիւանդին կենաց եւ մահու, վասն հիւանդին քրտնելուն, վասն ձեռնալուայի, վասն հասկանալ եւ ճանաչել զգողն. (Համր ՃԺԴ. - ՃԺԹ. էջ 473*—501:) — Զ. Աղբապատին՝ Դեղագործութեան նախաշաւղաւ. (Համր ՃԻ.—ՃԽԱ. էջ 505* 560:) Այսմ կից է Անվան+ ցուոց վերնագրաւ Հատ մի. (Համր ՃԾ. էջ 561—565:) — Մինչեւ այս տեղ ձեռագրին գրչութիւնն միակերպ է. անկէ ետեւ մինչեւ վերջը (էջ 567—575) կը փոխուի գրչութիւնն: Իսկ հուսկ յետին հինգ էջք (577*— 581) Գալըստ բժշկիս Ցիշատակութիւնքն են, որ գտնեալ երկու կերպ գրով գրուած կ'երեւան:

* Համարիս 33որդ էջէն սկսիլը՝ անկէ պատճառած է, որ նախընթաց էջք դատարկ մնացած են եւ ըստ մասին օտար գրչէ մրճոտած: Միայն միջոտեղէն՝ էջքն 20—26 գործածուած են Ցուցակին, որոյ առաջին Համրք մինչեւ ՃԽԲ. բուն ձեռագրին գրչութեամբն են: — Դատարկ եւ ըստ մասին մրճոտած թղթեր աստ անդ կը գտնուին եւ ի յաջորդսն զոր ի վար անդր *ով նշանակած ենք:

Այս բաժանմանց նիւթերուն նայելով, ամբողջական եւ ըստ բաւականին կարգաւորեալ բժշկարան մի կ'ունենանք. բայց իրական կարգաւորութեան հայեցմամբ չեն պակսիր թերութիւնք եւ խառնակութիւնք:

Գրութեանս ժամանակն ինքնին գուշակել կու տայ թէ իւր ժամանակակցաց պէս՝ ծնունդ է բանաքաղութեան: Իրօք ալ բաւական է սակաւ մի թղթատել զձեռագիրն՝ համոզուելու համար որ Գալըստ բժիշկն, առաջի աչաց ունենալով հին եւ հնագոյն հայ բժշկարաններ, եթէ ոչ ի բնագիրս՝ գտնեալ անոնց հետեւողութեամբ շինուածներն, անոնցմով կարկատած յերեւան հանած է իւր բժշկարանն:

Այսպիսի ծնունդ ունենալով բժշկարանս՝ ի հարկէ ամէն կերպ լեզուաց խառնուրդ ըլլալու էր

պարունակութիւնն։ Եթէ Ասարայ երկասիրութիւնն լի է իրարմէ տարբեր ոճով ու լեզուաւ գրուած հատակոտորներով, ինչպէս տեսնուեցաւ Հածիս Ա· Բաժնին մէջ, աւելորդ է յիշատակել անգամ՝ թէ իրմէ վերջը գրի առնուածներն ալ միեւնոյն եղանակաւ գոյութիւն առած ըլլալով, չեն կրնար լեզուի միակերպութիւն ունենալ։ Իսկ որովհետեւ բազմաթիւ օրինակներով եւ նմոյշներով Ասարայ գրութեան այլայլախառն հանգամանքն եւեթ ցուցընելէն ետեւ՝ զանց ըրած էինք իր բնական յատուկ լեզուն եւս առնուլ ի հետազօտութիւն, կ'ուզէինք թէ՛ իր եւ թէ՛ յաջորդ գրութեանց սեպհական լեզուին վրայ միահաղոյն խօսիլ, զոր եւ ակնարկած էինք յիշեալ Հատուածաբաժնին յետին տողերուն մէջ։

Սակայն ստիպուած ենք այստեղ բացատրութիւն ընել ի մասին Նոր Ամասիացւոյն, կ'ուզենք ըսել՝ թէ իր գրութեան պարունակած բանաքաղութեանց մի քանին մէջ բերելէն կանխագոյն իսկ, հարկ կը համարինք իր բնական լեզուաւ գրուած դեղ. մի նմոյշներ հաղորդել, ոչ եթէ լեզուական նպատակաւ՝ այլ տեղեկութիւն տալու համար իր անձնական հանգամանացն եւ բժշկական գործունէութեան, միանգամայն իր բժշկարանն բանաքաղութեամբ չինելուն։ Այն նմոյշք այնպիսի եղանակաւ գրուած են՝ որ կ'երեւայ թէ Գրիչն անանցմով կը դիտէ իր անունն ընթերցողաց ծանօթացընել, եւ բժշկական գործունէութիւնն ու քաջագործութիւնքն աշխարհահռչակ ընել։ Հակառակ ընթացք բռնելով համեստ լռութեան Ասարայ, որ հազիւ մի երկու տեղ իր անձին ու անուան յիշատակութիւն կ'ընէ, ինք անհամար անգամներ կը կրկնէ Ցի՛շէա զԳալուստ Ամասիացին։ Այս անթիւ յիշատակութիւններէն զայնպիսիս միայն կ'առնունք ընտրանօք՝ որք Գրչին բժշկական գործունէութեան հետ կապ ունին։ Ինքնաբուռն խօսքեր են

սաղնք, ուստի եւ ամէն օտար ազդեցութենէ ազատ, թէեւ գրաբար գիտնալուն ցոյց ընելու դիտումով ալ կրնայ մակաբերուիլ[1]։

1. Ծանիր, ով բժիշկ, մի մեղադրեր՝ թէ է՞ր շատ դեղ ես տուեր. չեմ գիտեր՝ թէ որն այնեմ։ — Վասն այս շատ տուաք, որ պաղէ փոքր եւ խիլաֆ երկիր կու անկանիս, եւ այս դեղըանքս չի գտվիր թէ որն որ գտվի՝ զայն կանես։ Վասն (զի) ես քաշեցի այս հոգս շատ երկիր վասն դեղի, վասն այն ժողովեցի ի Ըստամպօլ քաղաքն ի գրոց եւ փորձեցի՝ որ ողջոյ ամէնս որ գրեր եմ՝ ըստոյգ է եւ զարմանալի...։ Ամենայն դեղ զոր ինչ գրեալ եմ՝ ընտրութեամբ է, օգտէ Աստուծով։ Եւ յիշեա զԳալուստ Ամասիացին։

2. Վասն ձայնի դեղ զարմանալի որ երգեն մանկունք եկեղեցոյ...։ Մարդ որ ի բնէ ձայն չունի՝ չէ պարտ որ ժամասացութիւն առնէ, այլ լուռ լիցի բերան նորա. զփոխն եւ քարոզն եւ սաղմոսն երգիցէ։ Եւ թէ յանդգնիցի անհամձայնն եւ խաղ եւ անուշաբարբառ շարականն աւրէ՝ այնպիսեացն տուննն աւերի։ ...Այլ գիւղաքաղաք տեղ կամ յանապատ տեղ՝ որ ոչ լիցի ձայնով քահանայ կամ սարկաւագ զայն տեղն թող առէ։ Ապա թէ լինի քաղցրաձայն սարկաւագ կամ քահանայ, եւ անդքնի անհամն, օրինակ է անասնոց՝ իշու եւ լեռան ասչու։ — Այս դեղս այն մարդկաց է՝ որ ձայնն լաւ է եւ խափանել է, եւ կամ պլղամն զձայնն կարեր է, եւ այլ բազում պատճառէ լինի։ (Աստ շատ մի գեղեր մանրամասն նշանակելէն ետեւ՝ խօսքն կը վերջացընէ գրելով.) Առաջ շէրպէթով զանձըն յիստակէ, եւ յետոյ ճիկէր տամարէ երակ առ. ապա արա զդեղդ։ Թէ խիստ բռնված ձայն լինի՝ շէրպէթով արա, թէ

[1] Կարծենք իւր պատուոյն աւելի համաձայն կը գործէր Գալուստ, եթէ փոխանակ աղճատ եւ սխալուոր գրաբարով ծեքծեքանելու՝ ժամանակին սովորական լեզուն բանեցընէր։ Բայց կ'երեւայ թէ ինք մեծ գաղափար ունի իւր գրաբարին վրայ, որուն համար յաջորդ 5որդ կտորին մէջ՝ որպէս թէ զանձն ջատագովելու նպատակաւ՝ կ'ուզէ մեկնել թէ ինչու ֆեղլօ-դբար (= ռամկօրէն) գրած է նոյն կտորն, թէեւ իւր բժշկարանին սովորական լեզուին ընտրելագոյններէն մին է. մանաւանդ որ՝ քանի մի բացատրութիւններէն եւ այլ նշաններէն կրնայ մակաբերուիլ՝ բոլոր կտորին հնագոյն գրութենէ մ'առնուած ըլլալը։ — Հարկ չկայ ծանուցանել որ մանաւանդ այսպիսի գրաբարախառն նմոյշներու մէջ ճշդիւ պահած ենք ուղղագրական սխալները։

սակաւ է՝ սալդ դեղերդ տուր: Եւ յիշեա Գալուստ Ամասեացին. զի բազում գրոց ժողովեցի փորձութեամբ զդեղս:

3. Ես պակասաւոր ծառայս քաշեցի մէկ քանի տարի զայս ցաւս. զհէքիմպաշէ շարպաթն խմեցի եւ չբժշկեցայ. այլ զայս հապս ուտելով՝ ազատեցայ, եւ բազում մարդկաց տվի եւ ազատեցան: Եւ է այս. Առ . . .:

4. . . . Յիշեա Գալուստ բժիշկս Ամասիացին, որ բազում գրոց ժողովեցի ընդրածն եւ փորձածն, եւ ես ինքս փորձեցի:

5. Վասն հիւանդին քրտնացն որ յետեւ լինի, երբ աղէկնայ՝ նա շատ քրտնի, եւ այս՝ երկու պատճառանաց լինի: Առաջինն այն է՝ որ հիւանդն ի ցաւուն աղէկ չէ խասակել. եւ երկրորդն այն՝ որ չաքէն ի դուս յաւել ունէ. եւ այս ցեղ քրտնացս նեխաքրտինք ասեն: Ապա թէ այն է՝ որ ցաւուն չէ յխասակել, զինքն եւ բաղանիք տար, եւ ի վերայ տաք ջուր արկ, եւ զայս դեղս ի վերայ ցանէ յանձն հաւասար: Առ չոր վարդ եւ չոր մուռ, մանր աղա եւ յիրար խառնէ, յայնժամ իրիկունն ի վերան ցանէ: Ապա թէ ի շատ կերակրոյ է, նմա մասն տուր արկանել երկու եւ երեք հաղ. եւ զկերակուրն պակաս տուր: Եւ յիշեա Ամասիացիս: Ո՛վ ընթերցող, այս բանք վասն այն գեղջուքբառ գրեցի, որ տխմարք հասկանան եւ վարձուց տէր լինամք: Ես ինքս չի հանի զայս, այլ ընտրութեամբ ժողովեցի:

6. — Յեսուսէ նորոգողներուն (ԺԷ 361—373) էջ: Սոքա որ գրեցաք՝ բազում օգտութիւն ունին ցաւուց: Ապա ես անարժան ծառայս՝ որ եմ Գալուստ Ամասիացին, ժողովեցի գրոց լաւոյգն եւ գրեցի:

7. Ամենայն ցեղ զարկուց որ լինի (է) մարդն թէ́ բռընպով, թէ́ նետով եւ թէ́ սրով եւ կամ այլ իւիք զինչ եւ իցէ, տես զխոցն. (Ըեէ—) թիզ մի լեցի կամ այլ մեծ՝ զինքն պողպատ ասխով եւ ապրշումէ դերձանով կարէ պատրաստութեամբ: Կարն ազգ եւ ազգ լինի, զի ծածկեր էին հէքիմներն. ես Գալուստս այնպէս յայտնեցի՝ որ շնորհալի մարդ ոք յանձնէ առնէ բժշկութիւն: Թէ ասես՝ Առանց վարպետի չի լինի քան զՖրէնկաց բժիշկն հնարագէտ եւ ճարտար չի լինի

զի նոքա փորձելով գտան զբժշկութիւն, դեղերն խոցին քսելով եւ զմեռեալ մարդն ճեղկելով, եւ հաւու եւ անասնոց դեղն փորձելով՝ եղեն ճարտար բժիշկ, եւ մեր գրեալն իբրեւ քաղցր հելվայ է, որ հեշտ կուտվի։ Եւ յիշեա զանարժանս։ — Բայց կայ որ բարակ քուրքճի ասեղն խոթես եւ ապրշումէ դերձանն փաթթես ասեղին քովերն, թէ երկու թիզ է խոցն՝ տասն ասխով փաթթէ եւ ի վրայէն փաթթէ։ Եւ կայ մէկ ասեղով որ քուրքչու լինի՝ մանծէ դերձանով կարեն։ Ամէն հանելու ասեղն ի տակն հանկուստ ծգէ լաւ, եւ կարէ կրկին ի միւս տեղն խոթէ, մէկ մէկէ երկու մատ հեռու լինի։ Կարելէն ետեւ՝ մեղր, հաւկթի դեղնուց եւ աղ խառն ի վերայ զարկ մէկ երկու հեղ։

Ասոնցմէ աւելի ուշագրաւ են յաջորդքն, որոնցմով իւր ճանապարհորդութեանց եւ բժշկական քաջագործութեանց վրայ մանրամասն տեղեկութիւն կու տայ։ — Արդէն ծանուցած ենք՝ թէ ձեռագրին վերջին էջերը կը գտնուին այս յետինքս, զոր եւ այն կարգաւ յառաջ կը բերենք՝ ինչպէս գրուած են, հազիւ քանի մի տող դուրս թողլով։

1. Նախ եւ առաջ որ բժշկութիւնն ստացայ՝ գնացի Սեւաստ։ Մէկ Տիյարպէքիրցու խոճի տղայ մի անկաւ ի ձիէն եւ փորուն վրայ. եւ սախթեցաւ բղեղն եւ փորն ուռեցաւ. երկու օրն լաւացաւ Աստուծով։ Եւ մեծ Մահմուտ աղան մէկ ամիս էր՝ որ պառկեր էր ի նուզլայից, որ ամէն աչքն որպէս մեծ ընկուզ էր դարձեր. վեց օրն լաւացաւ Աստուծով։ Եւ քաղաքին մուֆթուն խէզնէտէր Իմրահամ չալապին որ սէվտայ ունէր, հանց որ լեզուն ծամծամեալ էր, քսան օրն լաւացաւ Աստուծով։ Եւ քաղաքին մուսանլիմին խէզնէտէրին նստոյ տեղն խոց մի կայր անբժշկելի. երեք օրն լաւացաւ։ Այսք մեծ մեծ ցաւեր էին. այլ մանր մունր խիստ շատ լաւացաւ։

2. Եւ գնացի ի Տէրէնտէ փախստական՝ Սէյտ օղլու փաշայէն, կամէր հէքիմպաշի առնէր զիս։ Իսկ Տէրէնտէ մէկ պոլուքպաշի մի խոցոտեալ ի մաթեայից եւ սրաճայից՝ վեց տարի էր՝ որ տոշակն էր անկեր, մինչեւ երեսուն բժիշք եկեալ էր՝ չէին կարացեր, եւ աղքատացեալ էր խիստ, տունն եւ ըռզակն ծախեալ էր. տասնութ օրն բժշկեցաւ Աստուծով. եւ այլ բազում մարդիկ բժշկեցան Աստուծով։

Եւ Մարաշ, Անթէպ սակաւ ինչ բժշկեցան։

3. Եւ Ատանայ միսանլըմին մէկ սիրելի աղան ոտն անբժշելի խոց ունէր, որ մեծ մասն բժշկներն կտրել էին Հալէպ եւ դեղեր էին, չէր եղեր. երեսուն օրն բժշկեցաւ Աստուծով, ուռեցեալ եւ մեծացեալ էր զետ տղայ։ Եւ մէկ այլ փորն զետ օձ ճանաւար կայր փորն. դեղով ձգեցի ի փորիցն, լաւացաւ։ Եւ այլ բազում սաֆրայ, սէվտայ, պալղամ, նուզլայ, սախայ, պաւասիր, ջերմ, աչաց ցաւ, ականջացաւ եւ ատամնացաւ եւ ֆրէնկի ցաւ եւ բոր, զուգամ եւ մայ-ասուր՝ շնորհօք ամենայզօրին Աստուծոյ բժշկեցան։

4. Իսկ Ղայսէրի փաշան Մանայխուլիացցաւ ունէր, լաւացաւ երկու օրն Աստուծով. եւ այլ բազում վէրք լաւացան։ Եւ մէկ խոճայ մի՝ որ Այան չէլէպի կասէին իւրն, մէկ մեծ հանք հանեց անթակն. մէկ գիշերն դեղով հասուցի, եւ վաղն բլաւ եւ ազատեցաւ։ Եւ անդամալոյծ կին մի ի սզուից էր անկեալ. տասուերկու օրն բժշկեցաւ։

5. Ամասիեայ սաֆրայոտ եւ սէվտայոտ մարդ շատ բժշկեցան։ Ապա տղայ մի ի ծառէն անկեալ էր եւ պռկունքն ճզքեր էր, սուր քարի վերայ էր անկեալ. կարեցաք եւ հինգ օրն լաւացաւ։... Պալղամ, բոր, քոս, խալ, սզուլու շատ լաւացան։

6. Ունեայ՝ որ ծովու ափ է, մէկ մայասուրոտ մարդ կայր վաղուց, եւ անունն Եւտայ էր եւ Հուռոմ էր, լաւացաւ։

7. Սամսոն շատ մարդ չէրպէդով յիստակեցաւ, որ թիւ չունի։

8. Ըստամպօլ մինչ երկու հազար մարդ չէրպէթով յիստակեցան։ Քսան երեսուն մեծամեծ գէր եարանէց բժշկեցան։ Եւ աղայ մի կայր՝ որ անունն Էյիպ աղայ կասէին, Պաղտատու փաշին ղաբի քեահեասին էր, տուզլու պալղամ ունէր հինգ տարվան. Ղասըմ փաշան դեղ արաւ՝ չեղեւ, եւ այլ շատ բժիշք դեղ արարին՝ չեղեւ. տասուիրեք օր հապ կերուցի՝ լաւացաւ։ Շատ ոսկի առի։ Բօրեր, ֆռանկ զահմէդիներ, ապռաշներ, պիծակներ, պքիլէներ, որ թիւ չի կայ, լաւացան։

9. Եւ Ըստամպօլայ գնացի Հալէպ, եւ չի կեցայ. ստակ կայր՝ բուսուցի (°), եւ իջայ Ջերմուկք. տասն մարդ

ցաւոց պրծան։ Եւ Ամիթ շատ չի կացի։ Մէրաին քանոււմէկ եարալու կայր. արապն ճարտեր էր, պայվատային պայրախն էր. մեծամեծ եարայ էր բացեր. մէկ մեռաւ, այլն լաւացան. տասն տեղ եարայ, ութ տեղ, եօթն տեղ՝ խիստ քիչն երեք տեղ եարայ ունէր, մզրախի, զուրշունի, թրի, ախմայ խէնչէրի. որուն սինկիրն էր կտրեր, որուն քիթն, որուն թեւն. շնորհօքն ամենազօրին՝ յիսուն վաթսուն օրն լաւացան։

10. Իւ Վան տասնուհինգ եարալու մեծամեծ լաւացան, որ մէկ թիղ ֆիթիլ կ'երթայր։... Փաշան հիւանդ էր՝ լաւացաւ։... Բէրդն տասն մարդ լաւացաւ։ Ընկիչէր աղաուն երեսն ուռեցեր էր եւ մորուսն պիտի թափէր՝ լաւացաւ։ Իւ Նոր հարս կնոջ պողազն ուռեցեալ էր, հաղորդ տվեր էին՝ որ շունչն չէր ելանէր, մերձ մահու էր, ծակեցի՝ չորս օրն պրծաւ։ Եւ շաթըրի ոզին վիզն ուռեցեալ էր զետ սեխ որպէս քար. տասն օրն հասուցի, ծակեցի՝ լաւացաւ։...

ՌՃԺԸ.էն (= 1668—69) սկսայ բժշկութեան. մինչ երեք հազար զրուշ աղէկութիւն արարին խիստ եւ խիստ, իբրեւ սուրբ պաշտեցին, ձիով, զիաֆէթ, փէշկէշ, եւ զիս իբրեւ Գալիանոսն եւ Բագարատն ընդունեցան։ Աստուած ողորմի վարպետաց հոգոյն՝ որ այս արհեստս ուսայ. հոգոյ եւ մարմնոյ պիտանացու է եւ լինի Աստուծով. ամէն։

---

Գիտենք արդ զանազանութիւնս Նոր Ամասիացւոյն՝ թէ ինչ եղանակաւ անցուցած է զանունք իւր գրութեան մէջ։ — Յայսմ մասին եւս չի տեսանուիր միակերպութիւն։ Կան կտորներ՝ թէեւ ոչ բազմաթիւ, յորս հին եւ հնագոյն հայ գրուածք բառ ոճոյ եւ լեզուի անփոփոխ պահուած են։ Չեն պակսիր նաեւ նուազ փոփոխութիւն կրածներ։ Վերջապէս կը գտնուին այնպիսի կտորներ որ բոլորովին այլափոխ եղած են։

Անփոփոխ պահուածներուն գլխաւորներն են այն հատակտորք՝ որ իւր բուն Ախրապատնին սկիզբը դրած է Գալլուստ։ Այլուր յառաջ բերած ենք քանի մի Օրինակ՝ իբրեւ համեմատութիւն Ամիրտովլաթայ Պիտանութեան եւ Հաւաքածոյին

ընթերցուածոյ: (Տես Հետազ. էջ 389, 390:) Արդ՝ ասոնցմէ Ե. հմմուկն կ'առնու Նոր Ամասիացիս ըստ ընթերցուածոյ Հաւաքածոյին՝ այնպիսի ճշդութեամբ, որ հարկ չէ մնար կրկին ի մէջ բերել, վասն զի եւ ոչ իսկ աննշանակ տարբերութիւն մուծած է բանաքաղն. մինչեւ Հաւաքածոյին ընթերցուածոյն յայտնի գրչասխալներն անգամ գաղափարած է:

Նուազ փոփոխութեան ներքեւ ինկողներուն կարգը կրնան դասուիլ յաջորդքն:

...Առ հասուն թութ ծեծէ եւ քամէ եւ ի սուրբ պտուկ արկ, — ոսկեբ աւելն՝ հուր աւել է. — եւ դիր եփէ երկու՝ ինչուր կէսն մնայ, եւ առ յետ ի կրակէն. եւ առ այդ թթիդ ջրեղ. եւ առ եփած գինի եւ հալած եւ պարզած մեղր. զամէնդ իրար խառնէ, եւ այնմ ի կրակն դիր եւ երկու եփէ մինչեւ երեքէն (գրեալ՝ Գ.էն) մէկ մնայ:

Մատադրութեան արժանի է այս հատուածը, որ Ցեսուի Դեղագրաց մէջ կը գտնուի ՂԲ. Համարագրով: (Տես Հետազ., էջ 443:) Թողլով աննշանակ փոփոխութիւնքն, որչափ զարմանալի է ոսկեբ բառին՝ յաչս Նոր Ամասիացւոյն՝ մեկնութեան կարօտ երեւնալն, որուն նմանք այլուր եւս կը տեսնուին[1]: Աչքի կը զարնէ նաեւ ցուր բառին՝ հեղ մի ինչուրով փոխանակուիլն, եւ երկրորդ անգամ՝ մինչեւով. Ձեղմ եւ ընդ ձեղմ բացատրութեանց տեղ՝ երկու գործածուիլն. այդ եւ իրար բառերուն վրայէն՝ նախդիրներուն անհետանալն, եւ մանաւանդ՝ չերէցն բառին երեքէն դառնալն:

Այսմ նման այլ օրինակներն ի յաջորդան կը տեսնենք:

Իսկ մեծ փոփոխութեան ներքեւ ինկածներէն եւ կամ բոլորովին կերպարանափոխ եղածներէն՝ բաւական են երկու յաջորդքն:

---

[1] Օրինակի համար “գէշ աւելն՝ ջրի աւել է: Երկու էջն աւելն՝ կամաց եփէ աւել է„. եւ այլ նմանք:

Եւ բժշկապետքն այսպէս ասցել են։ Զինչ խաղողն որ քամեն որ գինի հանեն՝ ապա եռայ եւ փրփուրն ի վերայ գայ եւ մրուրն ի վայր նստի։ Այլ այնոր պատճառն որ ի փոքրութենէ գիպի եւ որ ի մեծութիւն՝ այս է, զի երբ տղան ուժով լինի եւ քանի տարի ապրի նոյն ձեւայ եւ ոչ վատուժի՝ նա ծաղիկն ուշ ելանէ։ Եւ տղան որ ի բնէ վատուժ լինի՝ նայ ի տղայութիւնն հանէ զծաղիկն. զինչ որ ուժով գինին՝ որ յուշ պարզի, եւ վատուժն՝ շուտ. այսպէս եւ ծաղիկն առ մարդն ընծայի։

Համեմատէ ընդ ընթերցուածս Մխիթարայ ըստ մեր ձեռագրին եւ ըստ Ասարայն, ի Թ․ 3։ (Հետազ․ էջ 456 եւ 458։)

Ասաց Գալիանոսն՝ թէ ի մեր երկիրն մարդ մի կայր հարուստ եւ բաղակով, եւ գոթեցաւ. եւ երազին ետես որ Տէր Աստուած հրամայեց՝ թէ Ողորմելի ծառայ, գնայ գնա զօձն բռնէ, զգլուխն եւ զագին կտրէ, եւ եփէ աղով եւ հաւմ ձիթով եւ քուռաթով եւ ջրով, եւ կեր, քեզի դեղ լինի։ Գնաց արար այն մարդն, եւ խալսեցաւ ի գոթութենէն։

Համեմատէ ընդ ընթերցուածս Երեքմ․ եւ Ասարայ։ (Տես Հետազ․ էջ 430։)

*
*   *

Նոր Ամասիացւոյս բժշկարանն ունի նաեւ համառօտութիւն կամ Քաղուածոյ խմբագրութիւն, որոյ ձեռագիրն ալ ընդունած է Մանդրնս բուն ընդարձակ սկզբնագրին հետ։ — Քաղուածոյիս ձեռագիրն 428 էջերով՝ ըստ մեծագոյն մասին՝ բաւական մաքուր նոտրգիր միօրինակ գրչութեամբ է։ Պարունակութիւնն չի տարբերիր ընդարձակէն, ունենալով անոր պէս՝ Մարդակազմութիւն, Ախտաբանութիւն, Առողջապահութիւն, Դեղագործութիւն եւ բժշկականութեան ընդհանուր գիտելիքներն։ Դասաւորութեան կողմանէ ալ ըստ բաւականին նման են իրարու երկու խմբագրութիւնք. միայն՝ Մարդակազմութիւնն, որ յընդար-

ձակին կը կանխէ յառաջ քան զայլն ամենայն, ի Քաղուածոյին հուսկ յետին տեղին թողուած է։ Դարձեալ խմբագիր Քաղուածոյս, գլխաւորաբար Անտարբանութեան եւ Առողջապահութեան մէջ, փոխանակ զանազան հատուածներն՝ սկզբնագրին պէս՝ ըստ նիւթոյ դասաւորելու, այբուբենական կարգաւ դասաւորած է։

Չի գիտցուիր թէ երբ եւ որո՛յ ձեռօք լոյս տեսած է այս Քաղուածոյ խմբագրութիւնն։ — Թէպէտ ձեռագրիս վերջերն, Մարդակազմութենէն անմիջապէս յառաջ, կայ այսպիսի Յիշատակարան, թէ "Թվին ՌԲՃԶ.ին (1756ին) Ապրիլի 7ին Աւետումն սուրբ Աստուածածնայ անարժան Պետրոսը գրեց Քրիստոսի ծառայ։ Ով ր կարդայ այս գիրս՝ Աստուած ողորմի ասէք. դուք յիշեցիք զիս, յիշեալ լիջիք ի Քրիստոսէ, ով որ հանդիպէք՝ ձեզի մէկ աղաչելով պաղատելով հայր մեղային՝ դրի". բայց կարծենք՝ ոչ ոք կարող է կարեւորութիւն կամ ցուցման զօրութիւն տալ այս խառնակ խօսքին, մանաւանդ եթէ միտ դնէ պարագայից յորս կը գտնուի նոյն՝ Յիշատակարան ըսուած խօսքն։ Եւ այս են պարագայք։ Ձեռագրիս վերջերն ութը թուղթ դատարկ թողուած կամ թերեւս ինկած՝ ուստի եւ ասոնց նախընթաց եւ յաջորդ հատուածներն թերի մնացած ըլլալով, յետնագոյն ժամանակի անվարժ ձեռք մի (Պետրոսը՞՞) այս պակասը լեցուցած է, եւ նախընթաց ու յաջորդ մաքուր միօրինակ գրչութենէն տարբեր՝ փծուն գրչութեամբ լրացուցած եւ միանգամայն նոյն այլանդակ Յիշատակարանն յաւելցուցած է։

Զիարդ եւ իցէ, թողլով Ք·ղուածոյս խմբագրին, միանգամայն խմբագրութեան ու գրչութեան ժամանակին խնդիրն, քանի մի օրինակօք տեսնենք երկու խմբագրութեանց համեմատութիւնն։

## ԺԲ. ԱՍԱՐ ԵՒ ՆՈՐԱԳՈՅՆՔ. 23. Բ. 1. 479

Ըստ ընթերց. ընդարձակ խմբագրութեան

1. Առ հասուն եւ թրթու խործովիլ, ապա ձեռօքդ կորատէ եւ ի սանդն ծեծէ եւ զջուրն քամէ կտաւով եւ պարզէ, ապա խիստ պինտ քամէ։ Յայնժամ առ պարզած ջրէդ երկու հարիւր դրամ եւ քացախ քան դրամ եւ մէկ լիտր շաքար, ապա ամէնն արկ ի նոր պտուկ մի եւ եռացո եւ զփրփուրն առ. ի յեռն վարդէջուր ցանէ՝ մինչեւ թանձրանալով կապի, եւ ընդ ամէնն ձուայ մէկ լիտր։ Ապա պաղեցո եւ յաման ած, եւ տուր ըստ ուժուն ի տասն դրամէն մինչեւ ի քսան դրամն, այլ որպէս ըմպելին է՝ երկու ջուր։ Սոքա որ գրեցաք՝ բազում օգտութիւն ունին ցաւոց։ Ապա ես անարժան ծառայս որ եմ Գալուստս Ամասիեացին ժողովեցի գրոց ըստոյգն եւ գրեցի։

2. Հապու միւհիլ, որ է չէրպէգ լուծօղ եւ զարմանալի, որ զսաֆրան, զպալղամն եւ զսէվտան եւ պուխարն յանձնէն քարշողութեամբ հանէ...։ (Այսպէս կը շարունակէ՝ մեր սոս յառաջ բերածին քառապատիկն, եւ յետոյ կը կցէ.) Եւ ես Գալուստս Ամասացի ի բազում քաղաք շրջագայեցի։ Ամենայն քաղաք այս չէրպէգդօվս իստակեցի, եւ բազում փաշայք առին ի այս չէրպէդէս փորձութեամբ, եւ օգտեցան։ Առ տառչին, ըռաւէնդ, թրպութ, սապր երեք երեք դրամ, մահմուտայ, հապու սալաթին, չորս չորս դրամ, քիթրայ հինգ դրամ, նիշաստա երկու դրամ։ Ապա մահմուտան ի մէջ սերկեւլի խորովէ որ զէհր ելանէ։ Առ լաւ սաղ մեծ սերկեւիլ եւ փորէ մէջն մկան պէս, երեսն խափախիկ հան եւ ապա փորէ. եւ լից մահմուտան ի ներս, եւ այն խափախին խմորով ծեփէ, եւ թաղէ (՝) մոխիրն եւ կրակ լից ի վերան, որ լաւ խորովի, եւ հան եւ չորացո. քանի մի օր առաջ հապի սալաթինն յիստակած ի կեղեւէն՝ արկ ի բարկ քացախին եւ գիշերն կենայ, եւ ապա այս եւս չորացո։ Եւ սոքա եւ զայն դեղերն առա եւ մաղէ՝ զարդ զքիթրան, եւ զքիթրան բարակ ծեծէ, եւ գիշերն դիր ի գըրջոց, եւ վաղն աղցած դեղերդ եւ նիշաստան խառնէ յիրար եւ շաղէ, եւ արա հապեր զէտ զսիսառ, եւ ի շքի չորացո։ Յորժամ չորանայ՝ կու փոքրանայ սակաւ մի։ Տկարաց վեց հատ (դ—ր) քնոյ ժամանակն կլանէ սակաւ տաք ջրով, եւ երեք՝ վաղմէհէ կանուխ, եւ կենայ անօթի մինչ խոշոր ճաշկ։ Յետոյ հաւոյ ջրով կամ մսի զապուրն ուտէ, եւ ապուրն լինի լիմոնով. թէ լիմոն չի գտնի՝ քամած մածնով։ Ի ժամն կու կարէ լուծումն։ Այլ մինչ երկու օր ջուր չի խմէ, եւ ջրի տեղ՝ չէր-

պէդ մեղրի կամ հոշպն, եւ կամ ջրախառն գինի, զի ջուրն խոստուկ կու ձգէ։ Լաւ կերակուրք ուտէ՝ մեղր, քէպապներ, հաւեր, որ նոր թապխեդ կապէ. լաւ պխտի կերակուրն։ Եւ մայասուրոտ եւ զապուն մարդոյ մի՛ տար. ապա արի եւ ժիր եւ կաշեւոր մարդկաց՝ երեք քնոյ ժամանակն, եւ հինգ առաւօտուն տուր. այլ ամուր. մարդկաց այլ յաւել տուր, եւ լաւ բեհրեզ արա, եւ յիշեա Գալուսա Ամասացին։

Լոռ ընկերց. տաղտաձոյ խմբագրութեան։

1. Առ հասուն եւ թրթու խաւարծիլ եւ ձեռօքդ կտրատէ եւ սանդն ծեծէ եւ զջուրն առ եւ պարզէ, ապա պինտ քամէ։ Յայնժամ առ (զ)պարզած ջրեդ երկու հարիւր տրամ եւ քացախ քսան տրամ եւ շաքար մէկ լիտր եւ արկ ի նոր պղտուկ մի եւ եռցո եւ զփրփուրն առ եւ ի եռն վարդէջուր ցանեա՝ մինչեւ թանձրանալով կապի։ Եւ պաղեցո եւ ամանն ած, եւ տուր տասն տրամէն մինչեւ քսան տրամ, եւ ջուր երկու՝ մէկ շէրապ խառնէ։ Ո՛վ ընթերցող, յոյժ աշխատեալ եմ զայս ժողովելն եւ փորձելն. յիշեաջիր զմեզ։

2. Հապու միսհիլ։ Մեծ թէրքիպ է լուծող։ Բազում փաշայք առին, եւ ես ինքս շատ կերեալ եմ զայս։ Առ տառչին եւ ըրաւէնդ եւ թրպութ եւ սապր երեք երեք տրամ. մահմուտայ, հէպու սէլաթին չորս չորս տրամ, քիթրէ հինգ տրամ, նիշայ երկու տրամ։ Մահմուտան ի մէջ հայվային խորովէ որ զահրն եւ զչարութիւնն տանի, եւ չորցու. եւ զքիթրէն բարակ ծեծէ եւ քիչ մի ջրով թրջոց դիր գիշերին։ Եւ վաղեան օր զամէն ծեծեալք խառնէ եւ արա հապ լապլապուի չափ։ Այն օրն որ պիտի ուտես՝ կէս աւուրն հաց կեր կուշտ. եւ այն երեկոյին պառկելու ժամն երեքըն կուլ տուր հապին, եւ առաւօտու ժամու պահին չորս եւս կուլ տաս մինչեւ խոշոր ճաշք լուծանէ, եւ հաւու ջրով ապուրն քիչ քիչ երեք երեք դրգալ կեր, այլ եւս ապրէն ետեւ կու լուծէ ընդ ամէնն ութ ինն անգամ թրթու զօրուխով կամ լիմոնով, եւ ջուր մի՛ խմեր, թէ խմես՝ վէրէմ եւ յանկարծամահութիւն ընծայի. գինի ջրախառն եւ խօշապներու ջուր քիչ քիչ. երեք օր պարկեշտ կաց, որ նոր լաւ բնութիւն ըստանաս. եւ յիշեա զԳալըստեկն Ամասիացի։

3. Առ հասուն թութ, ծեծէ եւ քամէ եւ ի սուրբ պղտուկ արկ, եւ դիր մեղմուկ եփէ՝ մինչեւ կէս մնայ

*եւ առ յետ ի կրակէն այդ թթիդ ջրէն հինգ լիտր. եւ առ եփած գինի երեք լիտր, եւ հալած եւ պարզած մեղր երեք լիտր. զամէնդ խառնէ, այլվի ի կրակն դիր եւ մեղմուկ եփէ՝ մինչեւ երեքէն մէկն մնայ։*

*Համեմատէ ընդարձակին ընթերցուածոյն հետ, զոր յառաջագոյն (Հետազ. էջ 476) հաղորդած ենք։*

*Այս քանի մի օրինակներուն վրայ տեսնուած տարբերութիւնն ամբողջ Բժշկարանին մէջ ալ՝ սակաւ բացառութեամբ կը տեսնուի։ Այսպիսի բացառութիւնք կը գտնուին գլխաւորաբար բժշկականութեան ընդհանուր գիտելեաց եւ Դեղագործութեան վերաբերեալներուն մէջ՝ յորս կան հատակոտորք որ իրարու գրեթէ հաւասար չափով են։ Սակայն եւ այնպէս՝ քան զբուն սկզբնագիրն անհամեմատ կարճ է քաղուածոյն. որովհետեւ վերջնոյս մէջ չեն առնուած բազմաթիւ Հտծք. կը պակսին նաեւ այն կտորներն, որոց հետ կապուած է յընդարձակին յիշատակութիւն անուան Ամասիացւոյն, որ անունն հազիւ երկու երեք անգամ կը հանդիպի քաղուածոյին մէջ։ Սոյն տարբերութիւն՝ ընդհանրապէս խօսելով՝ կընշմարուի առաւելապէս համառօտեալ հատակտորոց մէջ, մինչդեռ չափով պահուածներուն մէջ այնպիսի տարբերութիւն ցանցառ կ՚երեւայ։ Իսկ լեզուագիտական տեսակէտէ դիտելով, ոչ միոյն եւ ոչ միւսոյն կրնայ նախադասութիւն տրուիլ. երբեմն միոյն եւ երբեմն միւսոյն ընթերցուածն մանր՝ մանր կէտերու մէջ ընտրելագոյն է քան զմիւսն։ Ինքնին կ՚իմացուի թէ պէտք չէ այս յետին հայեցուածով համեմատութեան մէջ խառնել զաննման գրաբար ընդարձակին։*

*Այսչափով վերջ կու տանք առ այժմ Նոր Ամասիացւոյն գրութեան։ Բայց յետոյ՝ այլ ժամանակակից եւ յետնագոյն գրուածոց վրայ խօսե-*

լու ժամանակ՝ նորէն՝ կը դառնանք իւր բժշկարանին, եւ այն առթիւ կը տեսնենք ոչ սակաւ կարճառօտ կտորներ, որք "բանաստեղծական տեսակէտէ իսկ բոլորովին խոտան չեն". այլ ընդհակառակն բաւական արժանի են մտադրութեան։

## 2. Այբենայք։

Հատածաբանժնիս մէջ աստ անդ եղած ակնարկութիւններէն կրնայ մակաբերուիլ թէ չեն բազմաթիւ Այբ-բեն-գիմ վերնագրիս ներքեւ յառաջ բերուելու ձեռագիրք։ — Ասոնց առջինն կը սկսինք 1725ին ի Սպահան ընդօրինակեալ ձեռագրաւ, որոյ նկատմամբ տեղեկութիւն տրուած է Ասարայ բժշկարանին խուզարկութեան առթիւ։ (Տես վերն էջ 449։) Երդ ի ձեռագրիս՝ Ապուսայիդայ Մարդակազմութենէն զատ՝ կան երկու Պիտառութիւնք, որոց առաջնոյն վերնագիրն է՝ Վասն կազմութեան մարդոյն, Մեծի Գրիգորի Նիւսացւոյ համառօտեալ բարդապատճառ։ Այս առաջին Պիտառութեան վրայ խօսիլն այլ պատեհութեան թողլով, կ'անցնինք երկրորդին, որ կը սկսի այսպէս. "Դուռն որ ցուցանէ զպատճառներն, որ են սապապաթներն." եւ կը շարունակէ մեկնելով գրութեան նիւթն, որոյ առաջին տողերն իբր նախաշաւիղ են։

Դուռն որ ցուցանէ զպատճառներն, որ են Սապապաթներն։ Եւ պատճառն այն բանն է՝ երբ իրքն որ դեռ չէ եղել՝ նա յառաջն պատճառն լինի եւ ապա իրքն երեւնայ։ Եւ ամենայն պատճառ որ լինի հիւանդութեանց՝ վեց ազգ են, եւ բժշկապետքն այսոր Սապապ ալսաթի կու ասեն եւ են այսոքիկ. Օդն, ուտելն եւ ըմպելն, քունն եւ արթնութիւնն, աշխատիլն եւ հանգիստն, լուծումն եւ կապիլն, եւ յարճզի նաֆսանին, որ է պատահումս անձինն։...

Այսպէս գաղափար մի տալէն ետեւ, կը սկսի անանուն Գրիչն (զոր ոմանք կը համարին թէ Ասար է) զբուն Սապապաթներն, որոց թիւն կը հանէ

մինչեւ Լթ. Հմր. եւ այս վերջին համարս է որ մեզի առիթ կու տայ զբաղելու այսու Պիտառութեամբ։

Երբ Հայ բժշկականութեան՝ արաբականին ծնունդ ըլլալուն վրայ կը խօսէինք, երեւելի արաբագիր բժշկաց մասին տեղեկութիւն տալէն ետեւ՝ գրած էինք։

«Ի մէջ այլոց՝ նշանաւոր է Գոստա Պէն Լուգգա, Պաալպէքցի յոյն բժիշկն, որ Թ. դարուն առաջին կիսոյն արաբական անուանի բժշկաց եւ գիտնոց կարգը կը դասուի՝ իւր բազմաթիւ թարգմանութեանց եւ ինքնագիր երկասիրութեանց համար։ Արդ՝ ասոր վրայ կը յիշատակեն թէ Հայ իշխանի մի մօտն եկած՝ զանազան գրուածներ յօրինած եւ անդ մեռած ըլլայ 923ին։ — Զարմանք է որ Հայ բժշկարանաց մէջ՝ որչափ մեզի ծանօթ է՝ այսպիսեաց (խօսուած է նաեւ Պաղտատցի ծեր բժշկին վրայ,) ամենեւին յիշատակութիւն չկայ, եւ որչափ գիտենք Գոստա Պէն Լուգգայի անունն առ մերայինս եւ ոչ մի անգամ կը հանդիպի. ոչ ալ անոր գրուածներէն վկայութիւն կը բերէ»։

Արդ՝ Սապապաթներուն Լթ. Հմրին մէջ հետեւեալ յիշատակութիւնն ու վկայութիւնը կը գտնուի։

Լթ. Եւ յիշեմք զմաֆաճանն՝ որ է յանկարծամահն եւ զիր պատճառն։ Եւ գիտելի է զի այս անտից լինի՝ որ հոգին մէկ հետէ ի սրտէն ի դուրս վազէ. որպէս որ յառաւել խնդութենէն եւ յուրախութենէն լինի, եւ կամ արիւնն ի մէջ սրտին պաղենալուն կամ սառնալուն լինի, որպէս յիշել եմ զբուքն եւ զցուրտն, եւ կամ լիութիւն արեանն որ ի սիրտն լցվի եւ զփորոքնին լնու եւ սպաննէ։ ... Ասէ Բուգարատ՝ թէ Մարդն որ առողջ եւ ի լի մարմին լինի եւ գէր լինի, այն մարդոյն շատ աշխատիլն վնասէ այնոր համար՝ որ զխառնուածքն կու տաքցնէ եւ կու շարժէ եւ զերկնին կու լնու, եւ զսրտին փորոքն այլ կու լնու եւ մաֆաճա կու բերէ։ ... Ասցել է Կոստա Լուկիայի որդին՝ թէ Ես մարդ մի տեսայ, որ բարկացաւ եւ շուտ մի ի վեր վազեց՝ զմուճկին մէկն հագաւ, եւ մինչեւ որ զմէկայլն հագնելու եղաւ՝ անկեալ մեռաւ։ Եւ սմին նման գործեն ամենայն անպատեհ շարժմունք, եւ ածեն յանձն մարդոյն յանկասկած՝ ցաւեր եւ յանկարծամահ։ Վասն

որոյ գրել են ամենայն բժշկապետքն՝ թէ զկենդանութիւնն առողջ պահելոյ Թպտիրն այն է որ բնութեան շարժմունքն չափաւոր լինի, կերակուրն եւ ըմպելին, քունն եւ արթնութիւնն, աշխատիլն եւ հանգչիլն: Եւ պատրաստ ի բարկանալոյ եւ ի հոգմնաց եւ ի վախենալու եւ ի յոխ պահելու. զի այսոք ամենայն զբնութիւնն կու այլայլեն, եւ զառողջութիւնն կու խանգարեն եւ զմարդն ի ցեղուցեղ պատահմունք եւ ի մահաբեր հիւանդութիւնք կու մատնեն:

Սապապաթներուն կցած են քանի մի մանր հատակոտորք, զոր յետոյ կը տեսնենք:

---

*Ըստ տպագրեալ Ցուցակի Մատենադարանիս հետեւեալքն են թէ յինքնուրոյն ձեռագիրս պահեալ Բժշկարանք եւ թէ ժողովածոյ ձեռագրաց մէջ ամփոփեալքն, որք նոր եւ նորագոյն ժամանակաց կը վերաբերին:

---

* Այս հատածը, զոր գտանք հեղինակին թղթերուն մէջ, կը պարունակէ անշուշտ նաեւ ծրագիրն այս "Այլեւայլք„ բաժնին: Աստղանիշ են այն ձեռագրաց թուերը, որոնք հեղինակին գրութեան մէջ կարմրաւ ըղշուած էին, հաւանօրէն անոնք՝ որոնց վրայ քանի մը խօսք պիտի ըսեր հոս: Վասն զի միւսներուն վրայ յընթացս հետազօտութեանցս արդէն խօսուած է, այսպէս Ասար, Գալուստ, Ապուսայիդ եւն: Թերեւս հոս ուզէր ընդարձակ գրել "Հրամանաւ սուրբ թագաւորին Ցովհաննիսի„ մեկնեալ Բժշկարանին վրայ ալ, ինչպէս գիտենք որ հոս պիտի խօսէր՝ թէեւ համառօտիւ՝ "Ցղ. Բնութեան մարդոյն կազմութեան„ գործոյն մասին: Ասոնք արդեւամբք ուշադրութեան արժանի գործեր են, թերեւս նաեւ Թ. 17 ձեռագրի ՄՆԲ հատածով գրութիւնը: Մնացեալք մեծաւ մասամբ խառնակ կտորներ են եւ ընդհանրապէս աննշան: Այս ամէնուն բովանդակութիւնը լիակատար նկարագրուած է ի "Ցուցակին„ (Վիեննա 1896)․ ուստի հոս մեր կողմանէ յաւելուած մ՚ընել զասոնք նկարագրելով՝ աւելորդ աշխատութիւն մըն էր: ՀՐՏՐ.

Թ. 17 *Մարդակազմութիւն (Ապուսայիդայ) եւ Բժշկարան (Դեղագործութիւն՞), Ա—ՄԿԲ Հատուածք, տպագրելոյն էջ* 126—29։

*Թ. 46 *քանի մը տող, տես էջ տպագրելոյն* 212*բ*։

Թ. 88 *Ժողովածոյ, քանի մը Թուղթք*։

*Թ. 109 *Դեղերու անուանք եւ Դեղագիրք, տես էջ տպագրելոյն* 384—85։

*Թ. 146, *ձեռագիր հին* 1473*ին*, «*Ցղ. Բնութեան մարդոյն կազմութեան*» (*ընծայեալն Գր. Նիւսացւոյ*։)

Թ. 254 *Հատակոտորք* «*Մեկնեալ հրամանաւ սուրբ Թագաւորին Յովհաննիսի*». (*հմմտ. Հետազօտ. էջ* 134։)

Թ. 287 *Ասար Սեբաստացի*։

Թ. 294 *Մարդակազմութիւն (Ապուսայիդայ) եւ Բժշկականք Ալիշանի ձեռագրէն*։

Թ. 296 *Բժշկարան խառնակ եւ անճոռնի գիր*։

*Թ. 343 *Մանր Դեղագիրք, բաւական ընդարձակ, անճոռնի գրով*։

*Թ. 344 «*Գիր Հեքիմարանի*», *բաւական ընդարձակ, մաքուր գրեալ*։

Թ. 540 *Գալուստ Ամասիացի*։

Թ. 554 *Նոյնը՝ քաղուածոյ*։

### 3. *Բժշկարան Բունիաթայ Սեբաստացւոյ*։

*Ամենածանօթ բան է հայ գրականութեան բազմաթիւ երկասիրութեանց եւ թարգմանութեանց կորուստն։ Սոյն օրինակ կորստեան զոհ եղած կ'երեւայ յիշեալ բժշկարանս, որոյ իրական գոյութիւնն անժխտելի կ'ընեն ոչ սակաւ յիշատակութիւնք։ Այսպիսի յիշատակութեանց ի մեր ծանօթութիւն հասածներն են յաջորդքն*։

Ա. Մինչեւ դարուս առաջին կիսոյն վերջերն ոչ ուրեք տեսած ենք եւ ոչ իսկ Բունիաթայ անունն։ Առաջին անգամ Բազմավէպ 1849 տարւոյն, յէջն 215, հրատարակեց Պօղոս Սեբաստացի Բժշկին խրատները վերնագրաւ եօթը տուն չորեքտողեան ոտանաւոր։ Մեր նպատակին համար, աւելորդ կը համարինք ամբողջ յառաջ բերել նոյն գրութիւնն, այլ միայն կը հաղորդենք առաջին տունն ու վերջինն. որովհետեւ միջին հինգ տներն ըստ իմաստին՝ թէպէտ բժշկականութեան վերաբերին՝ շատ ընդհանուր խրատական բանք են. իսկ ըստ լեզուին՝ գրեթէ անխառն գրաբար, մինչ առաջինն ու վերջինն՝ ոչ միայն յատուկ կերպով բժշկականութեան վրայ են, այլ նաեւ ռամկօրէն լեզուաւ գրուած. ինչպէս են նաեւ այլ ամենայն հատակոտորք Պունեաթայ։

Պօղոս Սեբաստացի Բժշկին խրատները։

1. Հիւանդին Աստուած է դեղ՝ որ մահու է տէր եւ կենաց.
Զհէքիմըն սէպէպ սաեն, խելօքաց է բանս ասացած,
Թէ ղճալինոսն սաեն եւ գլոխման բազմաց վըկայած.
Հրամանն ի վերուստ պիտի որ օգնէ՝ բժիշկըն գոված։...
. . . . . . . . . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . . . . . .

7. Այլ ես Պունեաթ Սեբաստացի բժիշկ անուամբ,
Որ ի յարհեստս իմ աշխատեր մեծաւ տենչմամբ.
Զձեզ աղաչեմ ով ոք կարդայք սակաւ զայս բան,
Զիս զանարժանս հայր մեղայի առնէք արժան։

Բ. Անցաւ այս հրատարակութեան վրայ երեսուն տարուընէ աւելի ժամանակամիջոց, եւ միեւնոյն Բազմավէպ (յամին 1881, յէջն 34) քանի մի ծանօթ ազգային բժշկաց՝ Մխիթարայ Հերացւոյ, Ամիրտովլաթայ եւ Ասարայ անուանքն յիշատակելէն ետեւ, յաջորդ տողերը գրեց։

“Ասոնց գործերն կամ գրքերն ունինք ձեռքերնիս, սակայն կան ուրիշներ ալ՝ զորս միայն յանուանէ

գիտենք, որով չենք կրնար անսխալ գաղափար մը շինել անոնց գրուածեանց ոճին վրայ: Այս դասակարգէ է Պունեաթ Սեբաստացին, որ Ամիրտօվլաթայ մեծ բժշկարանին գլուխ մը բանի տուած է, եւ յետոյ իր յիշատակարանը կը դնէ այսպէս: (Ցօղուածագրին յիշատակածն եւ յառաջ բերածն. վերագոյն մեր հաղորդած տանաւորին 7երորդ տունն է, սակայն մի տարբեր ընթերցուածով, որմէ ետեւ խօսքն այսպէս կը վերջացընէ:) Իսկ գրած գլուխ մը բանին ունի այս վերնագիրս. "Խրատ վարդապետաց որ ասացեալ են աշակերտաց ուսանողաց". եւ զայս քաղելով կը գրէ ի Գաղիանոսէ եւ յիպպոկրատայ՝ թէ որպէս կարելի է երեւելի բժիշկ ըլլալ:"

Գ. Հետազօտութեանցս ձեռնարկելէն տարի մի վերջն՝ ի մասին Պունեաթայ աւելի որոշ տեղեկութիւն առնալու համար՝ քանի մի հարցում ուղղեցինք մեր հմուտ թղթակցին, Հ. Ղեւոնդայ Վարդապետի Ալիշան, որ իւր սովորական յօժարակամ պատրաստականութեամբ՝ հաճեցաւ հետեւեալ կարեւոր ծանօթութիւնքն հաղորդել:

1. Պունեաթայ գրուած չկայ առ մեզ:

2. Ասար բժիշկ յիշի յառաջին քառորդի ԺԷ. դարուն: — Պունեաթ յիշի յամի 1630 թարգմանող բժշկական ինչ գրոց յարաբ լեզուէ:

3. Ամօք ինչ յառաջ բերեալ են ի Կոստանդնուպոլիս բժշկարան մի, յորում նշանակեալ է վերոյգրեալս տեղեկութիւն (Թ. 2) թարգմանելոյ նորա զԱխրապ-սաֆայ գիրս բժշկական, որ թէ զինչ է՝ ոչ գիտեմ, նոյնպէս թէ զինչ եղեւ կամ ուր գնաց ձեռագիր մատեանն այն:

Բաւական լոյս կու տային այս վերջին ծանօթութիւնք. սակայն ի հարկէ պէտք կը մնար այլ եւս ծանօթութեանց, որք վերոյիշելոց հետ միացած՝ օգնէին լուսաւորագոյն գաղափար ստանալու Պունեաթայ բժշկական երկասիրութեանց վրայ:

Դ. Այս նպատակաւ մեր Մտնդրնին սակաւաթիւ բժշկական ձեռագրաց մէջ խուզարկու-

թիւն ընելով, յառաջ քան զամենայն տեսանք Ամիրտովլաթայ ընդարձակ բժշկարանին Բ. Բաժնին մէջ, ի վերջին դարմանոց Ս+է—յ ախտին յաջորդ տողերն:

"Ես Բունիաթ բժիշկս սեբաստացի այս ցաւուս շատ եմ հանդիպեր: Այս ցաւուս ճանաչումն խիստ դժուար է: Հասու բժիշկ լինի նայ, զայս ցաւս փարատելոյ կարող է: Ցիմ ժամանակս քանի մի մարդ դեղով փարատեցաք (կ:է—ւ՝ փարեատացաք) շնորհիւն Աստուծոյ: Շատ կու լինի որ չեն ճանաչեր զցաւն, մեռաւ դէր կու թաղեն:" — (Ամիրտ. Բ. Բաժին, էջ 82, սիւն Բ:)

Քաջալերուելով այս թեթեւ յաջողութենէն, յառաջ տարինք թէ մեր անձնական խուզարկութիւնն, եւ թէ մեզի ծանօթ անձանց աղաչեցինք որ իրենք ալ ըստ կարելւոյն օգնեն ձեռնարկութեան, իրենց ձեռագրաց մէջ Պունեաթայ անուամբ գտնուած յիշատակութիւններն մեզի հաղորդելով: Բայց ակնկալութիւնս, եթէ չըսենք՝ բոլորովին ապարդիւն մնաց, չունեցաւ գոհացուցիչ ելք: Ծանօթ անձանց ուղղած աղաչանացս ի պատասխանի՝ իմացանք թէ իրենց խուզարկած ձեռագրաց մէջ Պունեաթայ յիշատակութիւն՝ մանաւանդ անոր բժշկական գրուածներէն վկայութիւն կարող եղած չեն գտնելու: Իսկ մեր ձեռագրաց մէջ հազիւ երկու երեք հատակտորոց հանդիպեցանք, որ են հետեւեալքն:

Ն. Ամիրտովլաթայ ընդարձակ բժշկարանին Բ. Բաժնին մէջ՝ Ճ—ր—յ ախտին յետին դարմանն համառօտ յիշատակութիւն կ'ընէ Պունեաթայ: Նոյն յետինն դարմանն այս է:

"Զաալորին շարապն պասվայինով տուր շատ աւուրք. խիստ օգտութիւն կանէ եւ կու տանի, եւ ի վերայ մոմրրովան (ˆ) օծէ. ամէն դիմօք զընութիւնն. լոյծ պահէ: Ես բժիշկ Պունեաթս շատ եմ փորձեր եւ շատ եմ աշխատեր ի սայ:" — (Ամիրտով. Բ. Բաժին, էջ 225, սիւն Բ:)

Զ. Այսչափ միայն էին մինչեւ վերջին ժամանակներս մեր ձեռագրաց մէջ գտնուած յիշատակութիւնք Պունեաթայ մասին, երբ Գալուստ բժշկին ձեռագիրներն ընդունելով՝ մի նոր յիշատակութիւն ալ կարող եղանք նախընթացից վրայ յաւելուլ: Ահա այս նոր յիշատակութիւնն:

«Մուրհամ կանանչ, որ զհին եարայներուն զփուտն հանէ եւ զմսամոլն տանի, եւ աղէկ միս ածէ եւ լաւացընէ: Առ զիպաղ երեք դրամ, սուլման եւ ժանժառ եւ անձրութ երկու երկու դրամ, փորու եղ (ե–) մոմ տասն տասն դրամ, հռոմ ձէթ յիսուն դրամ: Զմոմն եւ զեղն եւ զհռոմ ձէթն հալես եւ քամես եւ զայլն ընես ի հաւանն, եւ հաւանձեռամբն հար աղէկ որ միաւորի, այնչափ՝ որ այլ զիպաղն չերեւի: Եւ առ ամանն եւ պահէ: Օգտէ Աստուծով:

Այս մուրհամս Պունիեաթ բժշկին բանեցուցածն է. եւ ես ինքս փորձեցի եւ տեսայ շնորհքն եւ բանեցուցի խիստ օգտէ Աստուծով:» (Գալ. Թղ. 267:)

Հատակոտորս է ըստ ընթերցուածոյ ընդարձակ խմբագրութեան: Նոյնը կայ նաեւ Քաղուածոյ խմբագրութեան մէջ սակաւ մի տարբեր ընթերցուածով որ կը վերջանայ այսպէս. «Այս Պունեաթեն՝ նէ մեզ.» (էջ 113:)

Ինչպէս վերագոյն ծանուցինք, մեր ջանքն ու ճիգն լիուլի յաջողութիւն չունեցաւ. սակայն եւ այնպէս բոլորովին ի զուր աշխատած չենք համարիր: Որովհետեւ ոչ միայն տեսնուեցաւ որ Սեբաստացի բժիշկս եթէ ոչ լիակատար Բժշկարան, գէթ գրաւոր երկասիրութիւն մի թողեր է, որ մինչեւ մօտաւոր ժամանակներն այլեւայլ կողմեր պահուած մնացեր է, յորմէ զանազան մատենագրաց մէջ առնուեր են յիշատակութիւնք եւ վկայութիւնք իսկ: Աւելի բախտաւոր պիտի համարինք զմեզ եթէ մեր տուած աղօտ նշոյլն գրգիռ ըլլայ՝ Հեղինակին ամբողջական կամ գոնեայ մասնական գրութիւններէն ձեռքերնին բան մ'ունեցողներուն՝ նոյն

աղօտնշոյլն պայծառ լուսաւորութեան հասցընելու, որպիսի եւ իցէ կերպով ի հասարակաց ծանօթութիւն հանելով իրենց գիւտերը։

*Դիտողութիւն Հրատարակչին:* — Այս վերջաբանական կտորը գտանք զատ թղթի վրայ ուրուագծուած։ Պոնիաթայ մասը թերակատար մնացած է ըստ այսմ այս տեղ։ Արդեամբք ալ գիտենք որ Հեղինակը տակաւին գրելիքներ ունէր բժշկիս մասին։ Իրեն անծանօթ չէր Բունիադայ ուրիշ մէկ հատածն ալ վերոյիշեալ Ամիրտովլաթայ Օգտի Բժշկութեան Բաժնին մէջ, այսինքն՝ "Գեղ մի այլ խիստ լաւ է. ժանկառ նշատիր, պօրա Հայոց, հին եղ յիրար խառնէ որպէս մըրհամ եւ օծէ ի տեղին, օգտէ Աստուծով՝ ...Ես Բժիշկ Պ֊Նէտ֊Ն՝ շատ եմ փորձեր եւ շատ եմ աշխատեր ի սայ։" (Թ. 230, Թղ. 114ա։) Գիտենք որ երկար ժամանակ կը մտածէր թէ արդեօք բժիշկս չէ՞ եղած ստացիչ մեր Մատենադարանի Թ. 187 ձեռագրին, որուն մէջ երեք անգամ կը գրուի յիշատակարան մը յիշատակութեամբ Պունիադ անուան, նախ (Թղ. 5ա եւ 74ա) գրելով "Պ֊Նէտ֊Ն հոգի հանգիցէ ի խաղաղութեան ամէն." եւ երկրորդ անգամ (Թղ. 200բ) "Պունիադ հանգիցէ ի խաղաղութեան։" Վերջապէս երկար խօսիլ կ'ուզէր Պունիադայ խրատներուն առաջին տան վրայ, զոր տես վերը գրուած, ուր կը յիշուին Ճալինոս եւ Լոխման։ Այս չորեքտողեանս շատ ծանրակշիռ կը համարէր Հեղինակը, ինչպէս նշանակած է Տաղաչափութեանց Հատածին մէջ։ Խաչատրոյ Կեչառուեցւոյ վրայ խօսած ատեն (տես Տետր Գ., էջ 20 կամ "Հանդէս", 1896, էջ 53) յառաջ կը բերէ նոյն չորեքտողեանը Կեչառեցւոյ Տաղերէն (ի վարս Աղեքսանդրի), եւ կը կցէ սա դիտողութիւնը. "Թէ ինչ աստիճանի ծանրակշռութիւն ունի չորեքտողեանս Հետազօտութեանցս բժշկական մասին համար՝ զայն այլուր կը տեսնենք։ Առ այժմ համեմատէ Պ֊Նէտ֊Ն Սեբաստացի Բժիշկին խրատներուն առաջին տունն." ("Բզմ.", 1849, էջ 215։) — Առանձին թղթիկի մը վրայ Բունիադայ քանի մը յիշատակութեանց հետ նշանակած է Հեղինակը՝ "Թղ. 53ա՞ Ֆօլոս" իբրեւ յիշատակելի։ Այս կոչումն է Ամիրտովլաթայ մեր Մատենադարանի Թ. 230 գործքէն, ուր արդեամբք Թղ. 53ա՞ կայ հատուածս՝ "Ֆօլօն ասէ թէ յորժամ աչքն քիչմն ի տեղուն վերնայ, նա գլխուն եւ վզին երակն այլ վերնայ... եւ հաւկթի սպիտակուց դնես եւ կապես եւ շատ օգտէ

կամքըն Աստուծոյ. Ես գործօղս ծառայս յիշեա„ եւն. (տես "Ցուցակ„, էջ 599։) Չենք գիտեր ի՛նչ դիտողութիւն ունէր գրելիք այս հատածին մասին։

## 4. Ապուսայիդայ Յաղագս կազմութեան մարդոյ

(Մարդակազմութիւն)

Բաւական առատ եւ շատ տարածեալ են այս պիտառութեան ձեռագիրք, որոցմէ իբր տասն օրինակ անձամբ տեսած կամ յայլոց տեղեկութիւն առած ենք։ Որչափ կարող ենք այս մեզի ծանօթ օրինակներէն դատաստան ընել, սոյն գրութեանս ձեռագիրներն՝ այլ ամենայն ձեռագիր գրուածոց մէջ ընդհանրապէս դիտուածներէն շատ աւելի տարբերութիւններ ունին իրարմէ, եւ մեծապէս սխալագիր ու խառն են՝ մանաւանդ սկիզբները, այնպէս որ ի տեղիս տեղիս դժուարաւ հնար է իմաստն իմանալ։ — Առանձիննշանակութեան արժանի կը համարինք մեր մատենադարանին երեք օրինակաց մին (Թ. 17, հին Թիւ 55, Ա.) որ զգուշութեամբ գաղափարեալ է բարեկամի մի՝ ՌՀԴ (1625) թուականը կրող նոտրգիր ու փոքրադիր հաւաքածոյ ձեռագրէն։ Այս օրինակին կարեւորութիւն տուողն է՝ ի վերնագրին նշանակեալն, թէ Ապուսայիդ „յԱսարէ դպրէ սրբագրեալ„. որմէ կ'իմացուի թէ Ասար Սեբաստացւոյն սրբագրութեամբն ի գլուխ ելած է նոյն ձեռագիրն։ Ըստ այսմ կը կարդացուի ձեռագրին կից գտնուող Յիշատակարանին մէջ. "Արդ, եղբարք, օրինակն խիստ պակասաւոր էր եւ սխալած, բայց օգնականութեամբն Աստուծոյ՝ Սեբաստացի Ասար դպիրն եւ ճշմարիտ գրոց աշակերտն, յոյժ ներհմտութեամբ պարապեալ ընդ արտաքին գրեանսն, եւ բազում աշխատութեամբ հազիւ կարաց յայտնել ստուգութիւն սմին։ Բայց որ աւկտիք ի սմանէ՝ յիշեցէք հայր մեղայիւ զբազմաշխատ Ասար դպիրն եւ զիս զմեղաւոր գծողս, որ

*զերես քարտեսիս խառնաճաղանճ արարեալ եւ գծագրող կոչիմ . . .":*

*Կարեւոր է յառաջ քան զամենայն հետազօտել հեղինակիս ազգայնութիւնն եւ իր գրութեան սկզբնական լեզուն։*

*Ձեռագիրներն մեծաւ մասամբ կը նշանակեն հեղինակին Ապուսայիդ անունն, առանց յաւելուածոյ, որով եւ իր ազգայնութեան մասին ամենեւին տեղեկութիւն չեն մատակարարեր։ Եւ թէպէտ կան երեք ձեռագիրք՝ որք նոյն անուան առերի, իբրեւ հեղինակին ազգայնութեան յայտարար, քանի մի բառ կը յաւելուն. սակայն այնպէս աննշանակ ու խառնակ են բացատրութիւնքն որ բոլորովին անիմանալի կը մնայ յայտնել դիտածնին։ Այս երեք ձեռագիրք են Փարիզի ազգային մատենադարանին երկու օրինակներն եւ Միւնխէնի թագաւորական մատենադարանին օրինակն, որք հեղինակին անուան կից միաբան կը դնեն՝ "Ապուսաիդ ղուրդէնկ ըմն հոռոմ (հոռոմ) ամն", զոր ի հարկէ ագէտ ընդօրինակողի մի յաւելուած համարելու է։ Զայս յաւելուած չունի Ասարայ ուղղած ձեռագիրն, յորմէ կը հետեւի թէ կամ իր հին գաղափարն չունէր զայն եւ կամ ինք հարկ համարած է ջնջել։*

*Իրաց այս վիճակին մէջ՝ շատ դիւրին էր ենթադրել, որ արաբական անուան ներքեւ՝ Ապուսայիդ հայ գրագէտ մի է, ըստ օրինակի այլ արաբանուն հայկազնեայց, ինչպէս են Ապու-ղամիներն, Ապլղարիպներն եւ այլ նմանիք։ Բայց ձեռագրաց թերութեան տեղը կը լնուն քանի մի ազգային տեղեկութիւնք, յորոց կ՚իմանանք թէ Ապուսայիդ ասորի է ազգաւ, միանգամայն բժիշկ եւ հնագէտ, որոյ հետ հաղորդակցութիւն ունեցած են Շնորհալի հայրապետն եւ Տարսոնի արքեպիսկոպոսն Ն. Լամբրոնացի։*

Ապուսայիդայ ազգայնութեան եւ իրեն հետ Շնորհալւոյն հաղորդակցութիւն ունենալուն մասին՝ Հ. Ղեւոնդ Վ. Ալիշան նոյն հայրապետին Մատթէի մեկնութեան առթիւ այսպէս կը գրէ. "Վկայ ունիմք յիշատակ մը, որ կը ծանուցանէ մեզ՝ թէ զխնդիրն Ս. Յովսեփայ հօրն անուանը, (զոր Մատթէոս Յակոբ կոչէ, Ղուկաս Ղեւի,) լուծելու համար, հարցուցեր էր նաեւ Ապուսայիդ Ասորի բժշկին եւ հնագիտին, եւ անոր եկեղեցւոյն աւանդութեամբ ստուգեր որ Հեղեայ անորդի մեռնելովը՝ Յակոբ առեր էր անոր կինը, ըստ օրինաց Հրէից, եւ անկէ ունեցած զաւակն Յովսէփ՝ իր որդին էր բնութեամբ, այլ օրինօք՝ որդի Հեղեայ...„: (Շնորհալի եւ պարագայ իւր, էջ 120:)

Իսկ Ներսիսի Լամբրոնացւոյն ասորի բժշկիս հետ հաղորդակցութիւն ունենալուն վրայ այս տեղեկութիւնը կը գտնենք որ անոր խնդրանօքն յօրինած է նոյն արքեպիսկոպոսն իւր [illegible] [illegible] չինոց գրութիւնն, որոյ թէպէտ օրինակն մեզի հասած չէ, բայց գոյութեանը վրայ չի կրնար տարակուսուիլ: (Տես Սիսուան, էջ 516, ծանօթ. եւ Պատմ. Հյ. Դպր. Հտ. Ա. էջ 638:)

Այս երկու տեղեկութիւններէն գէթ մերձաւորապէս կ'իմացուի Ապուսայիդի կենաց եւ գրութեան ժամանակն, որ կ'իյնայ Շնորհալւոյն († 1173) եւ Լամբրոնացւոյն († 1198) կենդանութիւն միջոցին: — Դարձեալ հնար է մակաբերել թէ հաւանաբար գոնեայ առ ժամանակ մի ապրած է ի Կիլիկիա, եւ կրնայ կարծուիլ թէ բոլորովին անտեղեակ չէր հայերէն լեզուի, մանաւանդ ենթադրելով որ Լամբրոնացւոյն անոր խնդրանօք շինած գրուածն հայերէն էր, ինչպէս բնական է կարծել:

Ապուսայիդի ազգայնութեան որոշուելէն, ասորի եւ ոչ հայ լինելն իմացուելէն ետեւ, բնական է կարծել թէ իւր Մարդակազմութեան սկզբնագիրն ալ հայերէն չէ՝ այլ կամ ասորերէն

եւ կամ արաբերէն, զոր այլ ոք հայազգի թարգմանած է: Զայս՝ կը ցուցընէ ոչ միայն գրութեան ոճը կամ լեզուն, որ ոչինչ իւիք օտարութեան նշան կու տայ, ընդհակառակն՝ ծայրէ ծայր ազգային ռամկօրէն բարբառոյն յատկանիշը կը կրէ. — այլ նաեւ Նախաշաւիղն, որ կը տեսնուի թէ գէթ ըստ մասին հեղինակէն տարբեր անձի մի կամ թարգմանչին յաւելուածն՝ թերեւս եղանակաւորումն է: Նախաշաւիղն ի սկզբան խառնակ կերպով կը գրէ թէ Գաղիանոս, Արիստոտէլ, Բագարատ մարդակազմութեան եւ բժշկականութեան վրայ ճառեցին, եւ առնցմէ նոյն գիտութիւնք ամէն ազգաց մէջ սփռեցան: Այս մասն եւ յաջորդին սկզբնաւորութիւնն կ'երեւայ թէ սկզբնագրին թարգմանութիւնն է: Նոյն յաջորդ մասին մէջ կը գտնուի հեղինակին անուան յիշատակութիւնն, որ ենթադրելով թէ նոյն ինքն հեղինակն ալ գրած ըլլայ՝ թարգմանիչն այնպէս փոխած կամ եղանակաւորած է, որ երրորդի մի բերնէ լսուելուն տարակոյս չի մնար: Ահաւասիկ բովանդակ հատածն*:

1. Ըստ օրինակին Աստրայ

(Թ. 294:)

“Յաղագս կազմութեան մարդոյն եւ գոյացութեանն ամենայն անդամոց մարմնոյն կամաւքն Աստուծոյ:

2. Ըստ Օրինակին Գալաթի

(Թ. 540:)

“Վասն մարդակազմութեան ամենայն անդամոցն, կամօքն Աստուծոյ ստուգիւ ճարտարութեամբ ընտրած իմաստասիրական արհեստիւ:

---

* Հոս տեղ Հեղինակը յառաջ բերած էր միայն վերջին հատուածամասն «Եւ շնորհաց տուողէն» եւն: Մենք դրինք ամբողջ յառաջաբանն չորս (1—4) բաժնով այլեւայլ ձեռագրաց համեմատ, թէ գործքին լեզուին մասին գաղափար մը տալու համար եւ թէ ցուցընելու թէ ինչ մեծ տարբերութեամբ կամ ալէալէս խմբագրութեամբ կը գտնուի գործս ձեռագիրներուն մէջ: ՀՐՏՐ.

Սոուգիւ ճարտարաւք ընտրած իմաստասիրաց եւ բժշկական վարդապետացն Հելլենացւոցն եւ Յունաց, իմանալոյ զբնութիւն մարմնոյ մարդոյն, զատեղծուածքն եւ զանդամքն, զոսկերսն եւ զզօդուածսն, զերակսն եւ զջերսն: Եթէ որպէս գոյացան եւ կամ թէ զինչ է ի սոցանէ մի մի բնութիւնքն կամ գործքն, որով զամենայն անդամս մարմնոյն առօգանեն: Այլ եւ զցաւոց շարժմունքն եւ զդեղերուն աւկտակարութիւնսն եւ զգործն, զոր իմացեալ գրեցին մեծ բժշկապետքն Գեղիանոս, Արիստոտէլ եւ Բագարատ. եւ ի սոցանէ սփռեցան յամենայն ազգս, ի Յոյնս եւ յԱսորիս, եւ ի Պարսիկս եւ ի Հնդիկս, ի Հելլենացիս եւ յԱրապիկս. եւ սփռեցաւ ընդ ամենայն ոլորտս տիեզերաց շնորհաց տուողէն ի վերուստ. եւ եղեն ճարտարք յազգս ազգաց: Եւ ի սոցայոյ հրամանէն եւ ի բանից քննեալ ստուգեցին զբազումք եւ իմացան ճարտարութեամբ: Ընդ որս ե— [illegible] է նոյանէ որ կոչէ Աստ[illegible], զոր [illegible] է Գրոց բժշկապետացն յառաջ ե— [illegible] ե— [illegible] բանիւ [illegible] ե— [illegible] ի գովութիւն եւ ի փառս Աստուծոյ, որ ստեղծ զարարածս եւ զարդարեաց ամենայն պիտոյիւք. զոր կամեցաւ եւ արար եւ զոր հրամայէ՝ լինի. եւ ո՛ ոք կարէ քննել զխորս Աստուծոյ. զի զամենայն զոր

Եւ բժշկական վարդապետաց Հելլենացւոց եւ Յունաց իմանալ զբնութիւն մարմնոյ մարդոյն, զատեղծուածքն եւ զանդամքն, զաւդուածքն եւ զջղերն, զերակսն, զըղեղն եւ զջըրհեղն, թէ որպէս գոյանան կամ զինչ է ի նոցանէ մի մի բնութիւնքն կամ գործքն, որ զամենայն անդամս մարմնոյ օգտեցանեն: Եւ զցաւոց շարժմունքն եւ զդեղերն եւ զօգտութիւն. որ եւ իմացեալ գրեցին մեծ բժշկապետն Արիստոտէլ եւ Գալիանոս եւ Բագրատ. եւ սոցանէ սփռեցան ընդ ամենայն ազգս, ի Յոյնս, յԱսորիս, ի Պարսիկս, եւ ի Հնդիկս, ի Հելլենացիս ե— է Հ—յ—, եւ ընդ ամենայն ոլորտս տիեզերաց, ի շնորհաց տվողէն ի վերուստ եղեն ճարտարապետքն, յաղագս ի նոցա հիմանն եւ ի բանէն քննել ստուգեցին եւ իմացան ճարտարութեամբ: Ընդ որս ե— ամ է նոյանէ, որ կոչէ Աստ[illegible] ե— [illegible], է [illegible] Գրոց [illegible] Աստ[illegible] [illegible] ե— [illegible] ե— [illegible] ի գոհութիւն եւ ի փառս մարդասիրին Աստուծոյ: Որ ստեղծ զարարածս. եւ զարդարեաց որպէս փեսայ. զոր կամեցաւ արար. եւ զոր հրամայեաց եղեւ: — Արար Աստուած զերկինս եւ զերկիրս, զծով եւ զցամաք „ եւն:

ինչ արար Աստուած, բարի են յոյժ։ — Արար Աստուած զՋուրս, զերկիր, զծով եւ զցամաք" եւն։

3. Ըստ օրինակին Մինխենի (Cod. Arm. II.)

"Յաղագս մարդոյ կազմութեան ամենայն անդամոց։ Ստուգիւ ճարտարաւք ընտրած իմաստասիրաց եւ բժշկական վարդապետաց Հելենացոց եւ Յունաց եւ Եբրայեցւոց, յիմանալոյ զբան մարդոյն, զստեղծուածքն, զանդամքն եւ զբնութիւնքն, զօդուածքն եւ զերակն, զլեղին եւ զջրհեղսն, թէ որպէս գոյացան եւ զինչ ի սոցանէ միմեանս բնութիւնս կամ գործս, որպէս զամենայն անդամքս մարմնոյն, թէ որպէս առողջանեն եւ զցօղ շարժմունսն եւ զդեղերոյն օգտակարութիւնսն, ի զիւր իմացեալ գրեցին, Բժան կերպիւ գրեալսն Արիստոտէլ, Բոտ, եւ ի սոցանէ սփռեցան ընդ ամենայն ազգս, ի Յոյնս եւ յԱսորիս եւ ի Պարսս եւ ի Հընդիկս եւ Հելենացիս եւ ի յԱրապս, եւ այլ ազգս ընդ ոլորտս տիեզերաց, շնց. տուողէն վերուստեղէն ճարտար յազգս ազգաց. եւ ի սոցունց հրամանէն եւ բանիցն քննեալ ստուգեցին եւ իմացեալ ճարտարութեամբ. ընդ որս եւ մեծն է սոցանէ որ կոչի Արիստոտէլ, զորոյ լեզն հռոմ սա, ի Բողոսմ գրոց ժողովեալ …

4. Ըստ օրինակաց Մեր Մատենադարանի

Թ. 17 եւ 254 եւն։

ա. (Թ. 17) Ստուգիւ ճարտար մտաւք գրեալ իմաստասիրաց եւ բժշկապետ վարդապետաց Հելենացւոց եւ Յունաց եւ յԵբրայեցւոց իմաստնոց գիտացեալ եւ իմացեալ զբնութիւն մարդոյ, այլ եւ զստեղծուածսն, զանդամսն, զաւդուածսն, զբնութիւնքն. զջիլսն, զլեղին, զջրհեղն եւ զայլն թէ որպէս գոյացան եւ զինչ ի սոցանէ ի միմեանս բնութիւն կամ գործ, եւ թէ որպէս զամենայն անդամսն առողջանեն. եւ այլ եւ զցաւոց շարժմունսն եւ զդեղերուն օգտակարութիւնն. զոր գործեաց մեծ բժշկապետն Գաղիանոս, Արիստոտէլ, Բագրատ, եւ ի սոցանէ սփռեցան ամենայն ազգս, Յոյնս, Ասորիս, Պարսիկս, եւ Հնդիկս եւ յայլս ընդ ոլորտս տիեզերաց. զոր շնորհեաց տուողին ի վերուստ եղեն ճարտարք յազգս յազգաց եւ ի սոցայց բանէն եւ հրամանացն քննեցին եւ ստուգեցին բազումք, զորս . . ." (— Հատուածը կը պակսի։)

բ. (Թ. 254 Թղ. 7 ա.) "Արար Աստուած զերկինս եւ զերկիր, զծով եւ զցամաք" եւն. (ամբողջ յառա-

[illegible] [illegible] թիւն եւ ի փառս Աստուծոյ. որ ստեղծեաց զարարածս եւ զարդարեաց որպէս փեսայ. զոր եւ կամեցաւ եւ արար, եւ զոր հրամայեաց հաստատեցօ, եւ ո՞ք կարէ քննել զարարածս Աստուծոյ: — Արար Աստուած զերկինս եւ զերկիր, զծով եւ զցամաք„ եւն: [illegible]) — Տես նաեւ Թ. 436, ԺԴ [“Սուրբ գիրք ճարտար մտաւք գրեալ] իմաստասիրաց եւ բժշկական վարդապետացն Հելլենացոց եւ Յունաց, Եբրայեցւոց„ եւն եւն: — Թ. 442, Զ “Յաղագս կազմութեանն մարդոյն եւ գոյացութեան ամենայն անդամոց մարմնոյն կամօքն Աստուծոյ: Սուրբ գիրք ճարտարօք ընտրած իմաստասիրաց„ եւն:

Հածիս մանաւանդ նօտրագիր մասէն աւելի յայտնի ապացոյց հնար չէ գտնել գրութեանս սկզբնագրին օտար լեզուաւ յօրինեալ լինելուն. վասն զի յայտնի է որ ոչ թէ ինքնին գրած է զայն հեղինակն, այլ օտար մի, որ չի կրնար այլ ոք ըլլալ՝ բայց եթէ թարգմանիչն: — Իսկ թէ ո՛վ է այն թարգմանիչն կամ յորո՛ւմ դարու եղած է թարգմանութիւնն, յայսմ մասին առ հինս ոչ յիշատակութիւն եւ ոչ իսկ ակնարկութիւն կը գտնենք: Լեզուին նայելով, որ խառնակ գրաբար նախաշաւղէն զատ բոլոր ռամկօրէն է բաւական կոկ, գուշակել կու տայ թէ հեղինակին գրութենէն շատ հեռու ատենուան գործ չէ թարգմանութիւնն. բայց որոշ ժամանակ հնար չէ սահմանել ապահովութեամբ: Սակայն ի մէջ կը բերենք յիշատակութիւն մի, որ թերեւս աղօտ լոյս կրնայ մատակարարել ի լուծումն խնդրոյս:

Ներսեսի Լամբրոնացւոյ կ'ընծայուի սատ անդ Մարդակազմութիւն մի: Հ. Ալիշան Արքեպիսկոպոսի զանազան հեղինակութիւնքն ու թարգմանութիւնքն կարգաւ յիշատակելով, իբրեւ անոնց վերջինը կը դնէ. “[illegible] ըստ վկայութեան համառօտողի ուրուք վարուց նորին, թերեւս մեկնութիւն գրոց Նիւսացւոյն„: (Սիսուան, էջ 91:) Նոյնպիսի յիշատակութիւն մ'ալ կայ

համառօտ Յիշատակարանին մէջ, որ տպուած է ի վերջ "Տեառն Ներսէսի Լամբրոնեան ննջման Յովհաննու„ գրոց, եւ՝ որ հաւանաբար կը գտնուի ի ձեռագրին՝ ուստի առնուած է նոյն տպագրութեան օրինակն։ Յիշատակարանն եւս ի կարգի այլեւայլ գրութեանց Լամբրոնացւոյն կը դնէ նաեւ վերոյիշեալն, ըսելով "Նաեւ գրեաց զմարգարէականսն գիրքն„։ (Տպ. Կ. Պոլսոյ 1736, էջ 159։) — Արդ նկատելով մի կողմէն Լամբրոնացւոյ եւ Ապուսայիդայ մէջ եղած յարաբերութիւնն՝ զոր վերագոյն նշանակեցինք, եւ ի միւս կողմէն՝ երկու յիշատակութիւնքս՝ որ կը հաստատեն թէ նոյն Արքեպիսկոպոսն Մարդակազմութեան գիրք յօրինած է. — հնար չէ արդեօք կարծել թէ այն Լամբրոնացւոյ յատուկ գրութիւն կարծուածն՝ Ապուսայիդինն է։ Մենք չենք համարձակիր հաստատել. բայց եւ ոչ կ'ուզենք բացարձակապէս մերժել. այլ կը համարինք թէ անդէպ չէ կարծել որ կամ Լամբրոնացին է բուն թարգմանիչ Ապուսայիդայ ասորերէն կամ արաբերէն գրածին, եւ կամ նոյն հեղինակին ըստ իւր կարողութեան հայերէն գրածն՝ ուղղած եւ բուն ազգային ոճի դարձուցած է։

Լամբրոնացի տեղեակ էր ասորերէնի (թերեւս նաեւ արաբերէնի), յորոյ ի ցոյց հետեւեալը բաւական կը համարինք։ Գրիգոր տղայ կաթողիկոսն 1193ին ի Հռոմկլայ ըլլալով, ինչպէս կը գրէ ինքն իսկ Ն. Լամբրոնացի ի յիշատակարանի թարգմանութեան Օրինագրոց, "պատահեալ անդ յԱսորւոց Թէոդոս անուն՝ կիրթ յիմաստութեան՝ քահանայ, յայտնեաց Տեառն՝ զոր գոյր առ ինքն այս համառօտ Քաղաքական Օրինագրութիւնս. եւ հրաման տուեալ ինձ ... յեղաշրջեցի ի հայս ... յետ որոյ ապա եւ ի Հելլենացւոց գրոց արարի թարգմանութիւն Մովսիսական օրինացդ, եւ Լեւոնի եւ Կոստանդեայ օրինացդ„ եւն։ Հ. Ալիշան կը յաւելու թէ "Յետին բանքդ կրկին հաստատեն զի գրեալն

ռու Թէոդոսի չէր ուրեմն Հելլենարէն, այլ ասորերէն, որպէս եւ ցարդ գտանի այն։ Ի դէպ է կարծել, եթէ ի դեգերել իւրում ի վանորայս Սեաւ լերին՝ ուր եւ Ասորւոց վանք էին, հմտացաւ Ներսէս եւ սեմականացն լեզուաց։" (Տես "Սիսուան", էջ 90, ծան. 2։) Նոյն ժամանակները սովորական էր օտարազգեաց՝ իրենց կամ որպիսի եւ իցէ արտաքին լեզուէ հայերէն թարգմանելն, զոր յետոյ այս կամ այն հայրապետը կ՚ուղղէր*։

Ապուսայիդայ երկասիրութիւնը զանազան խմբագրութեամբ կը գտնուի ձեռագրաց մէջ, ինչպէս վերը դրուած Ներածութենէն ալ կը կրնայ տեսնուիլ։ Զանազանութիւնը շատ մեծ է, ոչ միայն ամէն մի տեղւոյ ընթերցուածոց տարբերութիւնքը, այլ՝նաեւ բովանդակ գործոյն ծաւալը նկատելով այլեւայլ գրչագիրներուն մէջ։ Կան գրչագիրներ որ մեծ յաւելուածներ ալ ունին, որոնք միւսներուն մէջ կը պակսին։ Նշանաւորագոյն յաւելուածն է այն, որ յանուն Մխիթարայ Բժշկի կը գտնուի Փարիզու Թ. 108 եւ Ասարայ (մեր Մատենադարանի Թ. 294) ձեռագրին մէջ։ Ապուսայիդայ միւս ձեռագիրք "Վասն ստեղծման աչաց" գլուխը, ձեռագրաց պէսպիսութիւնք չհաշուելով, ունին հետեւեալ կերպով, զոր ամբողջովին յառաջ կը բերենք իբրեւ օրինակ լեզուի երկասիրութեան՝ ձեռագրաց գրչախաղները միայն ուղղելով։

| | |
|---|---|
| 1. Ըստ Մխիթարեանց օրինակին։ | 2. Ըստ Թ. 17 ձեռ. Մտնդր. |
| Վասն Ստեղ[ծ]ման աչաց։ Ցաւրինեաց Աստուած | Վասն ստեղծման աչաց։ — Ցաւրինեաց Աստուած |

* Հոս կը դադրի Հեղինակին գրածն Ապուսայիդի մասին, ուստի թերակատար է։ Թերին սակաւ ինչ լրացընելու համար՝ աւելցուցինք յաջորդները, որոնց նպատակն է գրքին բովանդակութիւնը ցուցընել եւ անոր լեզուն՝ քանի մը քաղուածքներով, առանց ուրիշ խնդրոց մէջ մտնելու։ ՀՐՏՐ.

զաչքն վասն տեսութեան մարդոյն եւ զամենայն տեսութիւն յինքն եդիր եւ՛ յօրինեաց զաչքն․ Ե․ տապաղայ եւ եդիր յինքն․ Գ․ գիճութիւն եւ զլոյս աչիցն հաստատեաց յայն․ Ե․ տապաղայն․ իսկ ի դրուցի տապաղէն ասեն հեճպա եւ ինքն որպէս ապիկի կուպա մի է եւ Բ․ տապաղային ասեն շապահիէ եւ Գ․ին ասեն շիպիքէ․ եւ Դ․ ասեն սուլիպէ եւ Ե․ ասեն յունապիէ եւ Զ․ խառնիէ եւ Է․ ասեն ուշթահամայ։ Իսկ առաջի գիջութեան ասեն զճիճի․ Բ ասեն ճիլաի․ Գ․․ ասեն ըլճպաւիճ։ Եւ զտեսութիւն այդ․ Է․ տապաղայիդ մէջն հաստատեաց Աստուած․ վասն այն իրք յինքն չկարէ հասանել․ եւ փնասել զաչքն․ այդ ամէն պահարանքն այնօք արար․ որ տաեն տաքութիւն եւ աւդն աչիցն փնաս ոչ առնէ։ Զայդ ամենայն բարի արար եւ զջուրն աչացն վասն այն աղի արար որ սրտին տաքութիւն եւ աւդն աչիցն փնաս ոչ առնէ։ Եւ աչացն ի դուրս․ Բ․ մազ յօրինեաց Աստուած, մէկ վասն տեսութեան եւ միւսն որ զաչացն գիջութիւնն եւ զջուրն քարշէ․ Ա․ թարթեւանք է եւ Ա յունքն․ թէ թարթեւանքն չէր, հանապազ զաչից ջուրն երթայր․ թէ ոչ դու տես որ երբ թարթեւանքն թափին հանապազ յաչացն ջուր երթայր․ եւ ունքն թէ չէր․ ի հեռի տեղիք չկարէր տեսանել մարդն․ թարթեւա-

զաչս վասն տեսութեան մարդոյն եւ զամենայն տեսութիւնս ինքն եդիր․ եւ յաւրինեաց Աստուած զաչս Է սատառ եւ եդ ինքն Գ գիճութիւն։ եւ զլոյս աչացն սահմանեաց Է սատառ․ ի ներս դրուցի սատառին հէճէպ կասեն եւ ինքն որպէս ղուպամի է ապակի, Բ սատառին շահապի, եւ Գ սատառին ասեն շպիքնէ, Դին սուլպի եւ Ե ունապի եւ Զին ղունի եւ ուշթամի։ Առաջին գիճութեան ասեն զճեճին, Բ ճլիտի, Գին շքպատիճ․ Եւ զտեսութիւն ետ Աստուած ի մէջ այս Է սատառիս հաստատեց Աստուած որ յղեղան գիջութիւն փնաս չառնէ աչացն։ Եւ ջուր աչացն հանտի արար Աստուած որ սրտին տաքութիւն ի յաւդն փնաս չառնէ աչաց։ Եւ աչացն ի դուրս Բ մազ յաւրինեաց Աստուած, Ա թարթեւանունք եւ Ա յունքն (Զէ—․ օնքն․) եւ զայս ամենայն արար վասն տեսութեան եւ զմիւսն վասն աչաց գիջութիւն տանելու․ զի թէ արտեւանունքն չէր, հանապազ ջուր երթայր․ թէ չէ տես որ երբ արտեւանունքն թափի, նայ հանապազ աչաց ջուր կերթա արտասուօք․ եւ թէ հօնքն չէր, մարդ ի հեռու իրք չի կարէր տեսանել, եւ թէ արտեւանունքն զատէ ի զատ չէին․ զի ունքն հեռուն տեսանելուն ոյժ տայ եւ արտեւանունքն եւ մօտոյ, եւ արեգակն զի փնաս չառնէ․

Digitized by Google

նունքն ի մաւտէ ուժ տայ տեսանել աչացն եւ յունքն ի հեռօոր. զարեգակն[1] փխսի ի յաչիցն ի զատ պահէ։ Եւ յայն ցաւերն որ յաչքն լինի վասն այն լինի որ թարթեւանունքն թափի, որպէս առու որ ջուր երթայ յինքն. երբ ծառից եւ խոտն յառուին յեզերն հատանի, նա թումբն առուին աւերի եւ հողն իներս լցուի եւ աւերէ զառուն. զի այն ծառոցն եւ խոտերուն տակն կուբռնէն զառուին եզրն որ չաւերի. Նոյնպէս եւ աչքն մարդոյն երբ մազն հատանի ի կոպէն, նա բազում ցաւեր դիպի աչիցն։ Աստուած զմարդոյն լուսուն. յարեգակն արար երբ ի մօրէն ծնանի տղան եւ յայն ժամն. լուսինն ի պեղծ աստեղատանն լինի. նայ տղայն աչիկայ լինի զի Աստուծոյ հրամանէն է։

եւ յորժամ արտեւանունքն թափի, այնպէս է որպէս առու մի (Ձեռ. առումի) որ ինքն ջուր երթա. երբ ծառ ու խոտ չի լինի եւ թփեր, եզերքն աւերին, եւ հողն իներս լցւի. զի ծառից եւ խոտերուն քուքերբռներ զայն, Նոյնպէս աչք մարդոյն երբ մազն հատանի կոպէն, նայ (Ձեռ. կոպէննա) բազում ցաւ դիպի աչաց։ Աստուած զմարդոյն աչքն լուսաւոր արար իբրեւ զարեգակն. եւ երբ որ ծնանի տղան ի մօրէն, թէ յայնժամ լուսինն ի պեղծ աստեղանն լինի, եւ երբ տղան մեկնի մօրէն, եւ լուսինն ի զաւհալ ի տուն լինի, աջիկա լինի. զի Աստուծոյ հրամանքն այն է, ստեղծողին Աստուծոյ փառք։[2]

Արդ սյս է Ապուսայիդայ գրած հատածն Աչքին վրայ, զոր ձեռագրաց ալ մեծագոյն մասը

---

[1] "Արեգակն" երկու տեղ ալ, յետոյ "լուսին" բառը նշանաձեւով էր. մենք դրինք նոյն բառերը։ Տես նաեւ միւս ձեռագիրն, ուր "արեգակն" նոյնպէս նշանաձեւով է. երկու անգամն ալ։

[2] Թ. 254 ալ այսպէս է, բայց քանի մը տարբեր ընթերցուածներով, որ շատ աւելի լաւ են եւ կ'ուղղեն Թ. 17ի անիմաստ տեղերը։ Տարբերութիւնքն են "... զամենայն տեսութիւնս յինքն էգէր ... ղուպպամի է ... Դին չուլպի ասեն, եւ Եին ունապի ասեն եւ Զին ղունի եւ Էին ուչթամի։ Առաջին գինուլթեան ասեն զչեճիլն, Բ ճլխտէ ... եւ զտեսութիւն Աստուած ի մէջ այս է ստատուխ հաստատեց որ յղեղան ... եւ զջուր աչացն արար Աստուած որ սրտին ... զի թէ արտեւանունքն չէր՝ հանապազ աչացն ջուր երթայր, եւ եթէ ունքն չէր, մարդն ի հեռու իբք չկարէր տեսանել ... ի հեռու տեսանելու ոյժ տայ եւ արտեւանունքն ի մօտոյ որ արեգակն փխսի չառնէ ... եւ եզերքն աւերին ... զի ծառից քօքերն էր որ բռնէր զայն. Նոյնպէս է եւ աչք ... նա ցաւ բազում դիպի ... եւ երբ ծնանի տղայն ի մօրէն, յայնժամ լուսինն ի պեղծ աստեղացն լինի, տղին աչքն չլար եւ ցուռտ լինի, եւ երբ տղան մեկնի ի մօրէն, եւ լուսինն ի զօհալին տունն լինի, աջիկա լինի" եւն։

ունին: Միայն թէ կայ կարգ մը, որ այլազգ ունի հոս: Թ. 294 չունի հոս այս գլուխը, այլ առոր տեղ երեք բոլորովին ուրիշ գլուխներ նոյն նիւթոյ մասին, որոնց հեղինակ կ'անուանուի Մխիթար՝ ի վերջոյ կցելով նոյն գլուխն ալ: Փարիզի Թ. 108 ձեռագիրն ուրիշ ընթացք բռնած է. թէ Ապուսայիդայ հատածը պահած է հոն նախ եւ թէ անոր կցեր է յիշեալ երեք գլուխները յանուն Մխիթարայ: Այս գլուխներուն խորագիրքն ու սկզբնաւորութիւնքն են այսպէս. (ա) "Վասն շինուածոյ եւ յօրինուածոյ աչացն: Ասացեալ է մեծն Մխիթար" եւն. — (բ) "Անէմք պատեանն աչացն: Արդ առաջին պատեանն որ ընդ ներքս է" եւն. — (գ) "Վասն գիտելեաց զմիասնին եւ զերեքենց գործն: Եւ գիտելի է զի աչքն ունի Դ մկունս" եւն: Առաջինը կարճ բան մըն է իբրեւ ներածութիւն. միւս երկուքը շատ երկայն են, եւ մեկնութիւն են Ապուսայիդայ յիշեալ գլխոյն՝ անոր կարճ բանն երկար բացատրելով եւ պարզաբանելով: Մեզի համար կարեւոր է առաջինն, ուր կը յիշուի առոնց յաւելման պատճառը, այսպէս (ըստ Թ. 294 ձեռագրին:)

"Ասացեալ է մեծն Մխիթար թէ ամենայն բժիշկ որ աչաց կամենայ ծառայել, պիտի որ զկազմութիւն աչացն կարգայ որ իր ստածումն իմաստութեամբն լինի. Եւ է յայս փառանաւորս չէր գրած եւ ոչ է Աղբաղացիէն: Արդ կամ եղեւ ինձ Մխիթարս որ յիշեմ զաչաց կազմուածութեանն կարգաւորս, եւ ասեմ թէ քանի Տաղաւարք են, որ են պատառնի աչացն. եւ կամ թէ քանի՛ Ըմպելատեղիք են՝ որ են գիջութիւնք աչացն, եւ կամ թէ քանի Աղալակեսք, որ են մկունք աչացն: Եւ յիշեմ զտեսողական հոգին եթէ յուր ընծայի, եւ որպէս գայ եւ անցանի յառաջ ընդ զոյգ ջեղոն, զոր Լուսենեօն անուանեն: Եւ պարտ է գիտենալ զայս. զի առաջին իմաստունքն շատ հակառակ են ասացեալ միմեանց՝ վասն աչաց պատառացն. զի ոմանք Զ եւ ոմանք Ե, ոմանք Դ, ոմանք Գ եւ ոմանք Բ պատառ ասացին. բայց ես զԳեղիանոսինն ասեմ, զի Գեղիանոս եւ իր հետեւողնին Է պատառ ասացին զաչքն, եւ Գ գիջութիւն եւ Բ մկունք. եւ ես յիշեմ զամէն մէկ ուրիշ ուրիշ աւգնութեամբն Աստուծոյ:"

Տ—րբեր——Բէ—Նէ Յե——էրէՆ Փ—րէղ—— Թ․ 108․ « . . . ամենայն բժիշկ որ կամենան աչաց ծառայել . . . որ իւր սատածումն . . . եւ ի յայս Ն——ողայս (փխ. ֆ——Ն—Ն—ղ—) չէր գրած . . . Թէ քանի՞ տապաղայ է, որք են սատառք աչաց, եւ կամ քանի ըռուտապաթ որք են գիճութիւնք աչաց եւ կամ քանի աղալունք, որք են մկունք աչաց . . . եթէ ո՞ւր ընծայի . . . ջեղսն՝ որ Լ———ե-նեյն անուանեն։ Եւ պարտ է գիտել . . . զի ոմանք Զ ասեն եւ ոմանք . . . եւ ոմանք Բ։ Եւ Գ գիճութիւն ունի սատառն եւ Բ մկունք, զոր յիշեմ» եւն։

Աստրայ (կամ Թ․ 294) եւ Փարիզի Թ․ 108 ձեռագրաց մէջ ըսինք սա տարբերութիւնը կայ, որ առաջինին Ապուսայիդի յիշեալ գլուխը յաւելուածոյ երեք գլուխներէն ետքը կը դնէ, բաժնելով նաեւ զանոնք սա վերջաբանութեամբ՝ «Կ——տ—րեյ—— Պ——մ——Բէ—Ն Տե——ղ—ջ—Նէն, կամաւքն Աստուծոյ։» Յաւելուածոյ գլուխները հետաքրքիր են թէ բովանդակութեան կողմանէ, որ է մեկնութիւն Ապուսայիդայ գլխուն, եւ թէ լեզուին պատճառաւ։ Աչքի կը զարնեն մանաւանդ աչքի եօթն «սատառներու» արաբական անուանց իւրաքանչիւրին հայերէն թարգմանութիւնքն, որոնք թերեւս առանց օգտի ալ չեն։ Հետեւեալքն են այս սատառաց յատուկ բացատրութիւնք, որոնց դիմաց ջանացուած է եւրոպական համանիշները նշանակել։

*Տապաղայ որ է ——փ——Ն (membrane): — Ըռուտապատ որ է ֆէՂ——Բէ—Ն աչաց (humeur): — Աղալունք որ են մ——Նէ աչաց (muscles): — Լ———ջՆեօՆ (rétine, nerfs optiques): — Ա․ Աստառ, զուլթիէ, պինդ մարմին (sclérotique): — Բ․ Աստառ, շիմիա, —ջէ (choroïde): — Գ․ Աստառ, լապաքիա, —րէ (rétine)? — ա․ Գիջութիւն, զուճաճի, ——պ—կէՆէ (humeur vitrée): — բ․ Գիջութիւն, ճալիտի, ———ՆէՆէ (cristallin): — Դ․ Աստառ, յանքրապութիա, ——րփ——փէՆէ (iris): — գ․ Գիջութիւն, Նօսր ——ղէփ—ջ——յ ձուի (humeur aqueuse): — Ե․ Աստառ,

---

* Մանրագիրս այսպէս նշանակուած գտանք Հեղինակին թղթոց մէջ՝ հանդերձ գղ. համանիշներով: Նոյնութեամբ դրինք հոս ամբողջն անփոփոխ: ՀՐՏՐ.

յանապիա, խուղուլէնի (uvée): — Զ. Աստառ, խառնոպիա, եղլերենի (cornée): — Է. Աստառ, մուլթահիմա, կոշրոծ (conjonctive de la paupière)?

Այս ընդարձակ յաւելուածոյ երեք գլուխներն ի բաց առեալ՝ թէ՛ Ասարայ եւ Փարիզի ձեռագրին եւ թէ՛ միւսներուն մէջ միակերպ կը գտնենք գրքին գլխոց բաժանմունք, եւ ընդհանրապէս մատենին բովանդակութիւնը՝ համաչափ, եթէ չհաշուենք այն կէտն ալ որ գրեթէ որչափ ձեռագիր կայ՝ նոյնչափ ալ խմբագրութիւն կրնանք ըսել ընթերցուածոց չափազանց տարբերութեամբքն: Բայց գլխոց կամ հատուածներու չափն ու ծաւալն ընդհանրապէս նոյն է. միայն ոմանց մէջ տեղ տեղ յետեւառաջութիւն մը կը նշմարուի գլխոց կարգին, որ վերջապէս մեծ բան չէ: Գրքին ներքնոյն մասին գաղափար մը տալու համար, կը դնենք հոս գլխոց ցանկը, որ ընթերցուածոց զանազանութիւնքն եւ քանի մը մանր տարբերութիւնքն դուրս հանելով՝ հետեւեալն է.

## Ցանկ

Նախաբան, եւն: Ա. Վասն շինուածոյ գլխոյն եւ ըղեղանն: Բ. Վասն ստեղծման աչաց. (Հոս Թ. 294 եւ Փարիզի Թ. 108 կը յաւելուն յիշեալ երեք գլուխները:) Գ. Վասն ստեղծման ականջացն: Դ. Վասն ստեղծման քթին: Ե. Վասն ստեղծման բերանոյն եւ ատամանցն: Զ. Վասն ստեղծման սրտին: Է. Վասն ստեղծման թոքին: Ը. Վասն ստեղծման լերդին: Թ. Վասն ստեղծման փայծղանն: Ժ. Վասն ստեղծման երիկամացն: ԺԱ. Վասն ստեղծման լեղւոյն: ԺԲ. Վասն ստեղծման փաղափշտին: ԺԳ. Վասն ստեղծման երկաւորացն: ԺԴ. Վասն ստեղծման ստամոքին: ԺԵ. Վասն ստեղծման աղէճորոտացն: ԺԶ. Վասն ստեղծման եւ յաւրինուածոյ ոսկերացն եւ ջղիցն եւ երակացն: ԺԷ. Վասն ստեղծման եօթն անդամոցն:

Հոս վերջին գլխոյս ծայրը (ի Թ. 294) կը կցուի Ասարայ յիշատակարանն, զոր վերն Հատածիս սկիզբն յառաջ բերենք, որով այս 17 գլուխ-

ներն իբրեւ Ապուսայիդայ գործը կրկին կը հաստատուին։ Այս ցանկը՝ զոր դրինք ըստ Թ. 294ի կամ Ասարայ, անով կը տարբերի ի Թ. 17 որ օրինակի համար հոն ԺԲ գլուխը նախ դրուած է եւ անկէ ետքը ԺԱ, կամ ԺԶ գլուխն հետեւեալ խորագրով է՝ "Վասն բնութեան մարդոյն որ ի չորից տարերց գոյանայ." եւ գլ. ԺԷ այսպէս "Վասն ստեղծման Գ գլխաւոր անդամոցն։" Նման բաներ են միւսներուն ալ տարբերութիւնքն ի մասին պէսպիսութեան խրատագրաց եւ կարգին գլխոց։ Շատերը պակասաւոր են ի վերջոյ. այսպէս Մինխէնի ձեռագիրը ԺԴ գլխով կամ Ստամոքսի հատածով, ճիշդ նոյն գլխով նաեւ մեր Մատենադարանի Թ. 254 ձեռագիրը։

Աւելորդ կը համարինք ուրիշ օրինակներ յառաջ բերել, գրքիս լեզուին իբրեւ օրինակ։ Ցընթացս Հատածիս պէտք եղած տեղն յառաջ բերուած կտորները լիովին կը ցուցընեն թէ անոր ներքինն բովանդակութիւնը, թէ թարգմանութեան լեզուի որպիսութիւնը եւ թէ ձեռագրաց տարապայման պէսպիսութիւնն մատենիս բովանդակի ծաւալին մէջ ի սկզբանէ մինչեւ վերջը։ Ապուսայիդայ գործոյս մասին մնացած քանի մը խնդիրները կը թողուին ուրիշ առթի եւ պատեհ ժամանակի։ Տես նաեւ Թօրգոմեանի յօդուածն ի "Հանդէս" 1892, էջ 333 եւն։

## Գ. ԼԵԶՈՒ ԱՍԱՐԱՑ ԵՒ ՆՈՐԱԳՈՒՆԻՑ*

Մինչեւ այստեղ ըսուածներէն հնար է հետեւցընել թէ Ասարայ բովանդակ Բժշկարանն ըստ

---

* Այս վերջին Բաժինս Հեղինակին թղթերուն մէջ գտանք, բայց ոչ վերջնականապէս դասաւորուած ու յղկուած: Պահեցինք ինչպէս որ էր, դասաւորելով այլեւայլ մասերն՝ ինչպէս պատճառ երեւցաւ, եւ ասոր համար մէկ երկու փոքր փոփոխութիւն ընելով: ՀՐՏՐ.

մեծագոյն մասին հաւաքումն է ուրիշ գործքերէ: Բայց սուտ հնար չէ հաւանեցրնել թէ Ասար ի բովանդակ Բժշկարանին չունենայ ամենեւին երեւեցուցիչ իւր բնական ոճոյն եւ լեզուին: Եւ արդեամբք իսկ իւր երկասիրութեան մէջ կը գտնուին այնպիսի հատակոտորներ՝ որք ազատ ամենայն օտար ազդեցութենէ՝ իւր լեզուն մեզի կը հաղորդեն: Եւ արդէն այսպիսեաց՝ եթէ ոչ ամենուն՝ գոնեայ մեծի մասին իմաստ իսկ կը ցուցընէ թէ բխմունք են իւր սեպհական մտաց եւ յայտարարութիւնք իւր անձնական փորձառութեանց: Յիշեալ հատակոտորք ունին հեղինակին ժամանակին յատկանիշներն. այսինքն՝ թէեւ նախնեաց ռամկօրէնին բուն վայելուչ ղարդերէն մերկացեալ՝ նոյնին շատ նշանները կը պահեն. բայց այսու հանդերձ յաճախ մեծ նմանութիւն ունին այժմու արեւմտեան բարբառոյն տակաւին չկանոնաւորեալ վիճակին, միանգամայն տեղ տեղ նախնի ռամկագիրներէն հեռանալով՝ աւելի կը մօտենան վերջին դարուց գրաբարին: Վերջապէս շատ յաճախ կը տեսնուին անանկ օտար բառեր, որ անսովոր են հնոց, յորս տիրող տարրն է Թուրքերէնն:

Ա. Ահա յԱսարայ[1] առաջին տեսակէն քանի մ'օրինակ.

Յորժամ մաղձ յոլով երթայ եւ երկնչիս թէ մեռանի՝ տար յիրմէտ կում մի քացախիւ որ խմէ: — Զխօսքն ի քիթն ի դուրս խօսի: — Թէ վերաբերութիւն չկարէ այնել՝ դու բռանց մի տար վերաբերութիւն այնել: — Ի կշտելեց վերաբերութիւն: — Ի կշտելեց ի քուն մի լինար: — Տուր մէկ հետուց որ խմէ: —

[1] Ասարայ բժշկարանն՝ ըստ մեր ձեռագրին՝ իբրեւ երեք բաժին կը նկատենք: Առաջին բաժինն է ձեռագրին բուն գրչութեամբն, որ՝ ինչպէս ծանուցեր ենք (Հետազ. էջ 452) մինչեւ ՂԹ գլխոյն սկզբնաւորութիւնը կը հասնի: Սոյն բաժնէն առնուած կտորները առանց աստղանիշի են: Միակ աստղով նշանակուածներն անոնք են, որ մինչեւ ՃԻԳ հատուած կը հասնին. երկու աստղով անոնք որ անկէ ետքն եղած խառնակ մասերէն քաղուած են:

Երբ չորնայ՝ հետէն փոխէ եւ այլ արկ: — Հանէ օղկէ եւ ցանէ ի վերայ խոցերոյն: — Որոյ ոտքն ի ճանապարհին խաշի: — Ըռ զբողկն Թերածեծ արա:

Բ. Շատ բազմաթիւ են Օտարախառն Օրինակները, որոնցմէ շարք մը յառաջ կը բերենք, աչքի զարնող օտարոտութիւնք նօտրագիր որոշելով:

Գլ. ԻԸ. Այս Խօխօօօ ղրօօօօօ կուս հատցընէ: — Ապա թէ խոցն գլխ'ի վայր լինի՝ առ ոչխարի Հօրօմ ծուծն... կու քակէ ու կու հատցնէ: — Առ... ղօֆօմօղօվ շաղուէ: — Գլ. ԻԹ. Նօօր որ բուսնի կամ խոց որ ողէշ լինի. առ ղօրօյ ղօյեօյ...: — Գլ. ԼԴ. Եւ թէ հօօօյ առնէ՝ նայ չէյինով ձուապեղ արա եւ ի վերայ կապէ: — Գլ. ԾԴ. Մարդուն Բօօօյ կու առնէ: — Գլ. ԿԴ. Մաճուն արա եւ տուր ֆեհրէզով: — Տօօղլօօ պալղամին ալ օգտէ: — Գլ. ԿԸ. Եւ ցեղ մի այլ կայ՝ որ քամի է, չէօհ ի ոտամըքն կու մտնու քամին, չէօհ ի յաղիքն, եւ ի ժուռ կու գայ եւ կու ոլրէ զփորոտն: Այնոր պարտ է որ պատրաստի յայն կերակրոցն որ քամի կու ընծայեն, եւ խմէ զայն մօպուխնին որ զքամին կու հանեն, եւ ուտէ զայն մաճուններին որ զքամին կու վարեն...: Առ զօչխարին չօղըրօխն այրէ եւ զռամիթն, եւ պախրէի լեղով շաղուէ... Սակաւ մի վարդ խառնէ եւ ի վերայ դիր, զցաւն կու տանի եւ շատ շահ կու անէ եւ կու պատռէ: Բայց գիտացիր որ մօօրթօօ արիւն կայ, թօմօր մի ի ձախ դիհճն կու լցվի, զայն վաթել պիտի...: Այս դեղս արիւն գնալուն չի օգտեր. հանց գիտեննաս: — *Թէօղ երեւումն առնէ, 166: — *Կօրկոտ եւ բրինձ ֆօլօյով եփած, 185: — *Օգնէ Խօմ գիճութեան որ յերկնին զօրացել լինի, 174: — Դօվլօյէ մին, 194: — *Վեց դրամն (դեղոյս) կատարեալ շարպաթ է, 179: — *Օգտէ տուզլու պալղամին եւ օլօօր օլմօղ խօրօնէրոյ, 209: — **Հօօղ օլօօր օլմօղ խօրայի եւ մազ եւ մորուք վայր եկածի, 211: — *Խիստ օգտէ եւ հօմ լուծող է, 211: — **Երբ որ մարդոյ եղ ծծելու կամ հապ տալու լինաս՝ յառաջըն ցաւոյն չօրօյ լուծման դեղ տաս եւ ապա յետ լուծման դեղին տուր զհապն եւ թէ եղելու ես՝ եղէ, 217—18: — **Երեւայ ի բաղնիք եւ օօղօօնով լուացուի, 210: — **Դիր ղօօօնչօրն ի մէջն, 208:

Պէտք չէ զարմանալ Թուրքերէն բառից այսչափ յաճախութեան վրայ: Բժշկարանիս մէջ քանի

մը տեղ կան նաեւ նոյն լեզուաւ համառօտ տեղագիրք, յորոց մին է այս.

Գլ. ԻԲ. Քաթր քույրուղուն տարի չիչէյինի իմպիքտէն սույուն չքարասին, պիր քաջ կիւն ոյուն իլէ:

Գ. Բայց մեր ուշադրութեան արժանի են մանաւանդ այժմու արեւմտեան բարբառոյն նման հատակոտորք: Այս յետինք յաճախ այնչափ նման են արեւմտեան բարբառոյն որ շատ տեղ պարզապէս ղ, ի, յ նախդիրները հանելով՝ գրեթէ անոր հետ կը նոյնանան: Այս խմբէն յառաջ կը բերենք մի քիչ աւելի թուով կտորներ:

Ոմանք դեղ առնեն, եւ այս է թէտպիրն՝ որ ի կերակրէն յետեւ չշարժի, եւ զինչ որ բան ունի՝ ի կերակրէն յառաջ առնէ, եւ կերակրէն յետեւ պառկի եւ չշարժի, 32ա: — Առ մեղր եւ կամաց եփէ որ չայրի, 68: — Զայս ցաւս շուտով սատծել պիտի. չէ՝ արծուէք կու առնէ, 75: — Տեսաք որ երբ վարդի ջուր խմցուցին՝ որպէս ջուր ելաւ ի բերանոյն եւ աղատեցաւ, 85: — Գիտացիր, եղբայր, զի աչաց դեղ առնելն մեծ արուեստ է, եւ ով ի վարդապետէ չէ ուսած՝ նա չի կարեր զբանն ի գլուխ տանիլ: Պատրաստ կացէք որ այլ յաւելի վնաս գործէք մարդոյ, 95: — Ի յայս ցաւոյս սատծումն համբերել պիտի, այնոր համար՝ որ հիւանդութիւնն հում է եւ դժար եփի. վասն զի օրեր պիտի անցնի՝ որ ընդունի սատծումն, 107: — Կծու իրվտանք շատ զեն է, 123: — Այն ի սավտայէն է՝ որ ի մորթն է զարկեր, 125: — Ինքդ յարենէ կու լինի եւ ի սավտայէ այլ կու լինի... հանց որ մարդիք զինքն բոր կու կարծեն, որ ոտքն ու ձեռքն ի վեր կու տայ, 128: — Զայս այտոց չլինի թէ ծակես, 128: — Քանի մն հետ ի դրսէն տաք ջրով լուանաս, 129: — Զինչ որ սավտայի ցաւոց օծելիքներ կան՝ զայնոք տես եւ արա, 129: — Մարդն ծառի նման է, որ երբ ծառին տակն զարնեն՝ նա վերեւն ծայրքն չորանայ, 148: — *Այս ցաւոյս չպիտի որ բժիշկն ձանձրանայ մէկ անգամ կամ երկու դեղ տալով, 166: — Գէշ ցաւ է եւ չի բժշկիլ. հէքիմն գէշ անուն կու վաստկի, 167: — *Ուտէ ան բաներն որ զարիւնն թանձրացնէ, 167: — Գիտացիր որ հիւան-

դին ուժն ի տեղն է, 168։ — Թէ այսոցմով չբացուի (ուռեցն)..., ճղքէ եւ հան ի մէջէն զսերմն ցաւոյն, 168։ — *Այն մարդոյն որ ի յաչքն ջուր է իջել՝ շատ օգտէ, 196։ — Պատրաստ եւ խիստ պատրաստ՝ որ ի տաքութենէ եղած ցաւերուն չտաս, զի զեն հասցնէ, եւ յիշեա զՄեքաստացի Ասար ծառայս եւ զԱստուածատուր երէց գծող, 185։ — Լուծէ պալղամ հանող դեղերով, 129։ — Արա զարիւն հանելու դեղերն, 44։ — Դեղ որ յարենէ եղած սավտան հանէ, 84։ — Ի տաքութենէ եղած խլտերն կու հանէ, 87։ — Ի մարմինն եղած հարարաթներոյն օգտէ, 106։ — Լուծման դեղ ի սաֆրայէ եղածին, 83։ — Օգտէ խթիւղայ եղածին, 87։ — Ի հովութենէ եղածին նշանն այն է՝ որ..., 109։ — Օգտէ ի պաղութենէ եղածին, 109։

---

Նոր եւ նորագոյն բժշկական գրութեանց սեպհական լեզուին վրայ միահաղոյն խօսելու սկիզբն ըրինք յառաջ բերելով Ասարայ բժշկարանէն հաւաքեալ հատակոտորներ, որոց մէջ ակնյայտնի կը տեսնուին այս ամենայն գրուածոց լեզուին գլխաւորագոյն յատկանիշքն։ Մեքաստացի բժշկին երկասիրութիւնն նախապատիւ կը դասենք ոչ միայն այն պատճառաւ՝ որ կանխագոյն է ժամանակաւ քան զայլս, ուստի եւ անոնցմէ զոնէ ոմանց օրինակ եղած է, այլ նաեւ անոր համար՝ որ անոնցմէ սակաւ մի աւելի քատմանեայ ինքնակացութիւն ցոյց կու տայ եւ առաւելագոյն կարգաւորութիւն։

Ամենայն ոք կը նշմարէ որ այս նմոյշներուն լեզուն երեք գլխաւոր յատկանիշ ունի։

Ա. Գրեթէ առանց բացառութեան միշտ կը գործածեն ռամկագրաց սովորական կու — կամ լոկ կ մասնիկն — եւ ոչ երբեք եմ կ, լինիմ կ՝ — եւ թէ կայ — եւ կենայ — հնագոյն ձեւերն, որք հազիւ կը հանդիպին բանաքաղութեանց մէջ։ (Տես Հետազ. 435, 436։) Նոյնն ըսելու է նաեւ նա մասնկին համար. (անդ։)

Բ. Հնագունից գոգցես անծանօթ օտարալեզու (պարսիկ, արաբիկ, թաթար եւ մանաւանդ

Նոր.) բառեր կը գործածեն յաճախութեամբ իսկ, թողլով անոնց հայերէն նոյնանշաններն՝ որ ի սովորական կիրարկութեան են հնոց եւ միջնոց իսկ մօտ:

Գ. Առանց բոլորովին հեռանալու նախնեաց ռամկօրէնէն, որոյ սովորական կերպն ու ասացուածներն անխախտ կը պահեն, — շատ տեղ կը մօտենան արդի ռամկօրէնին՝ թէ ըստ նշանակութեան բառից եւ բացատրութեանց, եւ թէ ըստ դասաւորութեան մասանց նախադասութեան. այնչափ՝ մինչեւ շատ անգամ ճշդիւ կը նոյնանան արեւմտեան (Կ.Պոլսոյ) բարբառոյն՝ եթէ ոչ այժմու նորոգեալ՝ գէթ նոյն նորոգութենէ յառաջուան վիճակին:

Այստեղ կ'ամփոփենք ուրիշ տողանի մի նմուշից՝ առաւելապէս այնպիսիներն ընտրելով, որք երրորդ յատկանիշին կը վերաբերին. վասն զի աւելորդ կը համարինք առանձին նմուշներով յառաջ բերել առաջին եւ երկրորդ յատկանիշներուն վերաբերեալքն, որոց՝ մանաւանդ Բ.ին (օտարալեզու բառից) վերաբերելոց՝ բաւականէն աւելի յաճախութեամբ պիտի հանդիպինք այս նմուշներուն մէջ ալ. տես նաեւ Ասարայ օրինակները: Հատակոտորներն առնուած են գլխաւորաբար Գալատէն (Ասարայքն տես վերը) եւ սոցին ժամանակակիցներէն եւ յաջորդներէն: Միայն առաջնէն առնուածներն իրեն անուամբը կը նշանակենք, իսկ մնացեալքն՝ առանց անուան՝ Զանազան կը կոչենք:

Ա. Նմանք այժմու բարբառոյ.

(Գալատափ:)

Ջուր դիր առջեւդ որ ուրդն ի մէջն թափի, 124: — Չի թողուր որ ատամն փթտի, 124: — Եփէ հանդարտ կրակով, որ բոց չանկանի ի մէջն, 189: — Իրիկունն կաթիկ կաթիկ յականջն կաթեցո, 97: — Տուր որ ի լեզուին ներքեւն դնէ, որ հալի եւ կուլ

երթայ։ 101։ — Զմարդն վազցու, որ հեւքն բերնէն առնու, 104։ — Ականջ որ գետի ձայն հանէ, 99։ — Օգնէ բերնին վեր տալուն, 108։ — Ականջն չլինի զի- պաղով բան կամ դեղ հասուցանես, մարդն ի ժամն մեռանի. զիպաղ որ է ճիւա, 99։ — Տուր ֆինճան մի որ խմէ. տես թէ ի գլուխն զինչ կու բերէ, 336—37։

Բ. Նմանք եւ Նոյնք ընդ այժմու ռամկօրէնի։

(Գողթան։)

Պաղ օրն մի աներ, ի տաք օրերն արա։ — Կե- րակուր մարսելու համար երկու դրամ օգտէ։ — Խելքն կու պտըտի եւ գլուխն ի ժուռ գայ։ — Պաղեր է եւ հաւայ է առեր։ — Ի բարձր տեղաց ի վայր ընկնել լինի եւ ցաւ լինի տուել։ — Լաւ տեղիկ մի պահէ որ ծածք լինի տեղն եւ կենայ լման տարի մի։ — Քսէ ի պաղենալու եղած ցաւէտ կամ պալղամէ եղածին ի մարմինն եղած հաստրնուն օգտէ։

Գ. Օտարախառն Հատակոտորք։

(Գողթան։)

Սապոնն ղալիպէ եւ չոր- ցու, 137։ — Մայասուրոտ եւ զապուն մարդոյ մի՛ տար, 181։ — Սաղընմիշ կացիր որ պաղ չհանի, 192։ — Զկերակուրն կու մարսեցնէ եւ ըրախիի մեզէ է, 206։ — Մարդ որ խռանալ կա- մենայ, 342։ — Սէվտայոտ ոք, 281։ — Սաղ պտուկ

(Զանազանք։)

Թէ կամիս որ չարբիս՝ դու առ ի (լօշտակին) պտղէն, ծեծէ եւ պջուրն քամէ, հէջ չի արբիս (Թ. 17, Թղ. 15բ։) — Զմեղրն եռցու եւ զքաֆն վաթէ (անդ, Թղ. 17բ։) — Աչքն որ խոցտէ եւ հաւա առել է (անդ. Թղ. 19բ։)

խիստ ղարեր է... (պտուկին) բերանն խափախով եւ խամուրով ծեփէ... մէկ սահաթին ութ մասին մէկն կենայ, 347։ — Զչուննն երկու պալմիշ արա, 351։ — Առ զըողկն եւ ռէնտէէ, 356։ — Մի՛ աղար՝ այլ պի- դուն ձգէ ի ներս, 137։ — Լաւ կերակուր ուտէ ու քէպապներ, որ նոր թապիէթ կապէ, 161։ — Լաւ բեհրեղ արա. 182։ — Զամէն քամի տէֆ կանէ, 192։ — Իւրմէդ (դեղէն) աւուրն մէկ հատ իսթիղմալ անէ, 86։ — Իրիկունն երեք երեք հատ իսթիղմալ անէ, 101 (բաւական յաճախ։)

Դ. Ընտիր բառք եւ ասացուածք։

(Գողթան։)

Տեղուցեղ ցաւեր լինքն երեւայ, 56։ Այս՝ ցե-

(Զանազանք։)

Կոչէ զչուննն ի քեզ, եւ նա վազ վազ գայ առ քեզ

ղուցեղ կու լինի, 343: Այսոց բանն ցեղեւցեղ լինի, 344: — (Դեղն) բարակ՝ շարմղէ եւ ձգէ աչքն, 91: Շարմղած սխեռ, 91: Ջսեւուկ-հնտիկն շարմղած՝ բարակ լաթն ծրարէ, 87: — Ընդ իրար աղէկ աղկէ, 97: — Դուրս արա եւ չորցու. աղկէ եւ ի բան տար 114: — Կովտուն, 190: — Վասն փորանցի եւ արիւնբերի, 145: Ջեղկարճ, 263: — Վասն նըկրիս ցաւուն, որ կէս մի պարոնցաւ ասեն, 342: — Լոկ զխոցբերանն յիրար ած, 260: Խոցուորն ի բաղնիք տար, 277: — Ջցաւտէրն վարդի եղով օծ, 345: — Վաղընկուց անօթեց խմցոյ, 169: — Բերանն աղ ձգէ ամէն վազվէնկուց, 98—99: — Չմնի թէեւ կենայ շապկոնց ի մէջ ձնին, 249—50: — Այդ ցեղիդ դեղն բռին լինի, 255: — Սպի չտայ առնուլ, 139: Հրով այրածի դեղ ցրտային արա, որ սպի չառնու տեղին, 139: — Փողք որ հեծուկ անկանի եւ նեղէ զմարդն, 119: — Ի տեղիքն այտուց անկանի, 317: — Եռն ընդ եռ արտասուս կու թափէ, 94: — Երբ հարաքաթ առնէ՝ ներքսեւն վառ վառ կու գայ, 104: — Վասն աղեաց որ ցաւի եւ կոճ ի կոճ դուրս գայ, 146: — Պահէ ի պահ սիրտն թեթեւնայ եւ նուաղի, 314: — Ժամ ժամ թուի թէ ի կրակն այրիլ եմ, 317: — Քոր որ է մարմնոյն եռքն եւ քերուիլն, 322: — Տուր պտղուցովդ որ օծէ ի ակռատկերտ, 109: — Առ ղամիշ բարկուկ որ չէքիրտէկն մէկնի (մէյնի, սըղմի) մէջն, 97:

(Թ. 17, Թղ. 15ա:) — (Դեղս) զուռեցքն նստեցնէ զցաւն կտրէ (անդ, 18ա:) — Առ զլապստակի թոքն, ի աչքնդ դիր ուռեցքննստի (անդ, 20բ:) — Ջամէնն հաւասար ի հաւան լից ու աղկէ՝ երեք հետ աղէկ աչքդ քաշէ (անդ, 18բ:) — Առ զլթթման ծաղիկն եւ ճմռէ ափդ եւ կուլ տուր (անդ. 19ա:) — Առ զհաւքին ձուամեռ ձագն ու դիր ի կրակն որ մոճիր դառնայ (անդ, 19ա:) — Այնչափ եթէ որ յուկապն փտորի (անդ, 21բ:) — Ջշարեմազած ալիւրն ի ներս խառնէ (անդ:) Սղկէ, զաֆրան սըղկած (անդ:) Ջուռի ծառին կճեպն չորցու եւ այրէ որ մոծիր լինի եւ կովի եղով խաւրծ արա (անդ, 23ա:) — Սալամանդր կայծանայ եւ ոչ այրի (անդ, 28բ, Հտծ. ՀԱ:) — Ջրակարիճ ողն ի վայր ողողի ի վերայ ջրին (անդ:) — Հիւանդն մահու է՝ թէ կենայ, երբ ջուր ուզէ՝ տուր ջուր եւ զկէսն յետ առ եւ վրայ շան լից. թէ շունն թափ տայ՝ կապրի, թէ չէ՝ մեռանի (անդ, ՃԻԲ:)

Ե. Յատուկ բառք եւ ասութիւնք հնոց,

(Գաղափար։)

Ինչ այս ցաւս դիպի մարդոյն, 165։ Ինչ այս ցաւս մարդոյ դիպի, 345։ Ինչ այս Նշանս երեւի, 345—46 եւ այլուր։ — Զխունկն խառնէ եւ կամկէկ եղցու, 189։ — Զայսոք ձարբ աղա, 255։ — Սլորակ արա եւ մուտամ ի բերանդ պահէ, 311։ — Նշաձիթով վերաբերութիւն առնել (տուր), յաննումն ի վերայ թթունուռ տուր, 328—29։ Նորա դեղթափն այս է՝ զի մատն արկանէ մեղրաջրով, յաննումն գինի տուր, 322—23։ — Բազմաթիւ ուրիշներ։

(Զանազանք։)

Հալէմաշ ջերմանն տաքութիւն կամկեկ եւ քչիկ քչիկ կու յաւելնայ ի յանձն (Սապապ. ԺԴ։) — Ի՞նչ ես նստեր ի մէջ տաշտիդ։ Ո՞նց չնստիմ ի մէջ տաշտին (Թ. 345, Թղ. 202բ։) — Զի՞նչ լայք, զի՞նչ աղաղակէք, ի՞նչ արիւն արտասուէք։ Ո՞նց չլամք, ո՞նց չաղաղակեմք եւ արիւն չարտասուեմք (անդ, 203ա) եւ նմանիք։

---

Աստրայ եւ իւր յաջորդաց գրուածներուն լեզուական հանգամանաց վրայ մինչեւ այս տեղ տրուած տեղեկութիւններէն, անոնցմէ բերուած համեմատական օրինակներէն եւ իւրաքանչիւրին սեպհական հատակտորներէն՝ ամենայն ոք ինքնին կ'իմանայ որ այսպիսեաց լեզուն չէր կրնար միակերպութիւն ունենալ. այլ մէն մի Գլուխն կամ բաժինն ի հարկէ երեւցընելու է զատարբերութիւն ոճոյ եւ լեզուի այն աղբիւրներուն որոցմէ քաղեալ է։ Վասն զի հին եւ հնագոյն հայ գրութիւններէ առնուած կտորներն անփոփոխ պահուած չըլլալով, կամ թէ ըսենք՝ ամէն իբր-հեղինակ մէջ ընդ մէջ կամ յանձնէ եւ կամ այլուստ յաւելուածներ ու փոփոխութիւններ մուծած ըլլալով, — հնոց լեզուին հետ խառն կը գտնուին իբր-հեղինակին կամ իւր ժամանակին լեզուական յատկութիւնք. ուստի եւ կ'ըլլան այլայլախառն՝ իբր սարէ եւ կտաւէ շինուած զգեստ։

Թէ փոփոխութիւնքս՝ որ հնագոյն ազգային գրութիւններէ առնուած կտորներուն մէջ կը

տեսնուին, միոյ միոյ ի խմբագրաց անձնական գործն է՝ եթէ ոչ, չի կրնար դիւրաւ սահմանուիլ: Ցայսմ մասին ապահով որոշում ընելու համար՝ պէտք էր գիտնալ թէ արդեօք իրենք ալ ճիշդ միեւնոյն ձեռագիրներն ի կիր արկած են՝ որք այժմ մեր ձեռքը կը գտնուին, թէ տարբեր ձեռագիրներ: Վասն զի հաւանականութենէ դուրս չէ ենթադրել որ կամ մերիններն եւ կամ իրենցն այլուստ ուստեք այլոյ միջոցաւ արդէն փոփոխութիւն կրած էին: Ուստի խնդրոյս լուծումն այնպիսեաց թողլով՝ որ մեզմէ աւելի նիւթական միջոցներ եւ մասնագիտական տեղեկութիւն ունին, քանի մի համեմատական Օրինակ կը դնենք աստ:

Համեմատենք նախ Երեքմանէին եւ Ասարայ մի Դեղագիրն:

Դեղագիրս այն է՝ զոր իւր Գ․ Բաժնին մէջ յառաջ կը բերէ Երեքմանեայն յանուն Ստեփաննոսի, որ կը ծանուցանէ թէ իւր հայրն Ահարոն իրեն ուսուցած է: Մենք այն Դեղագիրն հաղորդեցինք նոյն մատենէն առնուած Օրինակներուն Ա․ խմբին մէջ՝ 6 համարագրով: (Տես Հետազ․ էջ 413:)

Ասար միեւնոյն Դեղագրին սկզբնաւորութիւնը զանց առնելով, յառաջ կը բերէ պարզապէս յանուն Ստեփանոսի՝ իւր բժշկարանին "Վառն Բշտանկէ՝ որ է Յէանկն„ վերնագրեալ ԻԴ․ Գլխոյն մէջ՝ այս սկզբնաւորութեամբ․ "Ինքդ ցեղուցեղ լինի, եւ յիշեմք համառօտաբար: Առաջինն այն է՝ որ, եւն: Այս տեղ մի րստ միջէ կը թուէ հիւանդութեանս տեսակներն մինչեւ եօթներորդն, եւ իւրաքանչիւր տեսակին մանրամասն նկարագրութիւնն եւ միոյն միոյն ստածման միջոցներն յառաջ բերելէն ետեւ՝ կը գրէ այսպէս (Ասար, էջ 33—34:)

1․ Տմէտ հատածի․ "Եւ գրէ Ստեփաննոս բժիշկն թէ Այս զօրաւոր է քան զայլ ամենայն ցեղերդ: Առձկան սոսինձ տասն դրամ, կորատէ եւ ի վերայ գինի ած եւ թրջէ, եւ եփէ յեղն մինչեւ աղէկ հալի սոսինձն.

եւ առ խնկի փերճոկ վեց դրամ, մազտաքի, անծրուէթ, մուռ եւ աղաղիայ հինգ հինգ դրամ . . . զամէնդ աղա մանտր եւ (է) սուինձն լից եւ խառնէ. եւ մազաղաթով նոյն կերպիւն դիր ի վերայ ծակուն եւ կողման պահէ մինչեւ ողջանայ։ Եւ այս տիմէտ այլ շուտ ողջացնէ քան զմեկնութիւն։ . . ." — Համմտէ Ա. Խմբին Օրինակաց Թ. 6րն հետ։ (Հեփուորթ. էջ 413)։

2. Ուրիշ օրինակ մը։ Ասար, էջ 169 յառաջ կը բերէ հետեւեալը. "Հապ լուծման եւ շատ օգտութիւն առնէ, զոր ես Ստեփաննոս փորձեցի պոմնով աբեղայի եւ ծերի եւ կորիջի։ Առ . . . աղա եւ մաղէ, եւ թէ կամիս՝ հապ արա, եւ թէ կամիս՝ տաք ջրով կթխայ առ. քան կամ երեսուն դրամ ջուր եւ տասն դրամ շաքար խառնէ եւ տուր։ Բայց զհապն յիրիկօրէ առ եւ զկթխայն յառաւօտուն առ"։ — Համմտէ Նոյն Ա. խմբին Օրինակաց Թ. 4րն հետ։ (Հեփուորթ. էջ 412։)

Երեքմանեին եւ Ասարայ ընթերցուածոց համեմատութենէն ամենայն ոք կը տեսնէ անոնց իրարմէ տարբերութիւնն։ Բնական է նախադասել զԵրեքմանեինն։ Սակայն եւ այնպէս չի կրնար ուրացուիլ թէ ուղղագոյն է Ասարայն։ Բայց ով կրնայ վճռողակի սահմանել որ արդեօք Սեբաստացւոյն ձեռօք եղած են տարբերութիւնք կամ փոփոխմունք թէ ինքն լոկ այլոյ ուրուք արդէն փոխածն առած է. կամ թէ ինքն ի ձեռքն ունեցած է զհարազատ ձեռագիր Ստեփանոսի, եւ տարբերութիւնք բուն Դեղագրին գործ են Երեքմանեին խմբագրին։

Հաւաքածոյին մէջ ի կարգի 39 Նուսխաթնուն Ցեսէի կան երկու Դեղագիրք ՀԴ. եւ ՀԳ. Համարագրաւ, զոր առած են Ասար եւ Գալուստ, եւ այս են ընթերցուածքն։

Ա. Դեղագիրն՝ Հատ. ՀԴ։

1. Հաստատածոյ, Հատ. ՀԴ։ Վարդ մարապայ։ Առ կարմիր վարդ եւ ի մասրէն սրբած, եւ զքիթն զայն որ սպիտակ լինի՝ կտրէ եւ ձգէ, եւ առ ի յայդ վարդէդ

2. Ասար, էջ 171։ Վարդ մարապայ։ Առ կարմիր վարդ տերեւ մէկ լիտր եւ յիստակ մեղր մէկ լիտր՝ զվարդն ի լայն աման ած եւ ձեռօքդ աճռէ եւ յաման ած,

լիտր մի, եւ առ յիստակ եւ ծոր մեղր մէկ լիտր, եւ (զ՝վարդն ած ի լայն եւ ի սուրբ աման, եւ ձեռօքդ աճ-ուէ զվարդդ, եւ զմեղրդ հետ-էն ի վերայ ած. պինդ խառ-նէ որ միաւորին, եւ ապա ի բղուղ արկ. եւ ի վերայ բերնուցն Նօսր կտաւ կապէ եւ քառասուն օր արեւն դիր եւ երեք չորս օրն փայտէ շերեփով խառնէ, եւ յետ քառասուն աւուրն՝ երբ պիտենայ՝ տուր ըստ կարեացն: Նոյն Նշանօքդ արա եւ շա-քրով մարապայն:

եւ ի վերայ բերնուցն Նօսր կտաւ կապէ եւ քառասուն օր յարեգակն դիր եւ ամէն օր մէկ անգամ խառնէ փայտէ իրօք, եւ յետ քա-ռասուն աւուրն տուր ըստ կարեաց մարդոյն: — Օգտէ ստամոքացն եւ ордէ. եւ այն ջերմանն օգտէ՝ որ ի պալղամէ լինի, որ յամենայն աւուր ջերմն բռնէ: Եւ թէ շաքրով անցնես՝ այլ պակաս օգտէ քան զմեղրով անուցածն, բայց զստամոքն ուժովցընես. եւ շաքրով շինելն այլ որպէս այսոր շինելն է:

3. Գաղիանոս, ԽԼ 362—63: Վ՝արդ մուրապայ: Առ կարմիր վարդի տերեւ լիտր մի, եւ առ յիստակ եւ ծոր մեղր մէկ լիտր, եւ զվարդն եւս ած մէկ լան աման մի, եւ ի բերանն Նօսր կտաւ կապէ, եւ քառասուն օր արեւն դիր, եւ ամէն անգամ երեք չորս հեղ փայտէ շերեփով խառնէ, եւ յետ քառասուն աւուրցն տուր ըստ կարեացն: Օգտէ ստամոքացն եւ սրբէ. եւ այն ջերմութեանն օգտէ՝ որ ի պալղամէ լինի, եւ ամենայն ջերման օգտէ: Եւ թէ շաքարով անցնես՝ այլ պակաս օգտէ քան զմեղրով սընցուցածն. բայց ստամոքն ու-ժովցնէ, եւ շինելն այդոր պէս է:

Բ. Դեղագիր, Հտծ. ՀԳ:

1. Հաւաքածոյ, Հտծ. ՀԳ: Շարապ վարդի, որ զխրտն խնտացնէ եւ անուշ-ցնէ, եւ կակղացնէ զբնու-թիւնն: Առ աղէկ կարմիր վարդի տերեւ լիտր մի եւ ած ի վերայ ջուր, եւ աղէկ եփէ կրակով՝ (որ) զուժն ի ջուրս տայ եւ ապա քամէ, եւ քանի ջուրն լինի՝ երկու շաքար արկ ի վերայ, եւ ի պղինձ ած եւ աղէկ եփէ, եւ զփրփուրն առ ինչուր

2. Ա[illegible]ր, ԽԼ 172: Շա-րապ վարդի, որ զխրտն՝ խընտացնէ եւ զբնութիւնն կակղացնէ: Առ կարմիր վարդի տերեւ մէկ լիտր եւ ած ջուր եւ եփէ որ ուժն ելնէ եւ քամէ, եւ առ ջրին կշռովն երկու շաքար՝ արկ ի վերայ եւ եփէ մեղմն, եւ հետէն զփրփուրն առ մինչ որ ի ղվամ գայ, եւ տուր որպէս զայլսն:

*կապի, եւ ապա աման արկ,*
*եւ երբ պիտենայ՝ տուր ըստ*
*կարեացն։*

3. Գ—լ——ո, ԽՂ 362։ *Շէրապ վարդի, որ զսիրտն խնդացնէ եւ անուշցնէ եւ կակղացնէ զբնութիւնն։ Առ աղէկ կարմիր վարդի տերեւ լիտր մի եւ ած ի վերայ ջուր եւ եփէ որ զուժն ի դուրս տայ եւ քամէ, եւ որչափ ջուրն լինի՝ երկու շաքար արկ ի վերայ, եւ զփրփուրն առ մինչեւ կապի, եւ ապա յաման արկ եւ պահէ. եւ յորժամ պէտ լինի՝ տուր ըստ կարեացն։*

*Հոս կը փակենք թէ Ասարայ եւ թէ անոր հետ Նորագունից բժշկական գրութեանց եւ լեզուին մասին մեր դիտողութիւնք, համարելով որ պէտք եղածը դրինք մինչեւ այստեղ։*



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## Բ. ՏԵՏՐԻՍ

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն. 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գուլէր. Իրաւունք Հայոց: 1890: 8° Երես՝ 85+59: Փր. 1.25

Բ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ, Ազգաբանութիւն ազնուական զարմին Տիւզեանց: 1890: 8° Երես՝ 50 (պատկերազարդ:) Փր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յակովբոս, Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: 8° Երես՝ ԺԱ+159: Փր. 1.25

Դ. Դեմետրիոս Տաճի Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: 8° Երես՝ 79: Փր. —.85

Ե. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի: 1892: 8° Երես՝ Դ+272: Փր. 3.—

Զ. Ալպէր Տըմիշէ եւ Գ. Փիսոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: 8° Երես՝ 82: Փր. 1.—

Է. Մառ Նիկ., Անանունային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ոնոփրիոս Անոփեան: 1892: 8 Երես՝ 89: Փր. 1.25

Ը. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893 8° Երես՝ Ժ+51: Փր. 1.—

Թ. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտ. Ա. 1794—1860: 1893: 8° Երես՝ 232 (Լուսանկարով): Փր. 2.50

Ժ. Կոնիքիր Փր. Կ., Քննութիւնք զրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Ց. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Ը+92: Փր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: 1893: 8° Երես՝ Ժ+533 (1 զնկարիւ.): Փր. 4.50

ԺԲ. Խաչաթեան Գր., Ջենոբ Գլակ, համեմատական ուսումնասիրութիւն: 1893: 8° Երես՝ 78: Փր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փարսադան, Հայ գիւղա կան տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: 1894 8° Երես՝ 103 (6 տախտակ՝ 55 պատկերով): Փր. 2.—

ԺԴ. Գարբիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտ. Բ. կամ Ցաւելուած: Թրգմ. Հ. Ց. Վ. Տաշեան: 1894: 8° Երես՝ ԺԱ+43: Փր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Ց. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա. Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ. Փրոքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ. Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: 8° Երես՝ 9+145: Փր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Ցակովբոս Վ., Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք: Հտ. Ա. Ա—Զ: 1895: 3° Երես՝ ԺԲ+294: Փր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Ցակովբոս Վ., Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Փէթէրի, ի մի ամփոփուած եւ թարգմանուած հանդերձ ծանօթութեամբք: 1895: 8° Երես՝ 202: Փր. 2.50

ԺԸ. Տիրբեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: 8° Երես՝ 192: Փր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Դրանսիլուանիո Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Կերլա Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: 8 Երես՝ Թ+352: Փր. 3.60

Ի. Տաշեան Հ. Ցակովբոս Վ., Վարդապետութիւն առաքելոց անվաւերական կանոնաց մատեանը, Թուղթ Ցակոբայ առ Կոդրատոս եւ կանոնք Թադդէի: 1896: 8° Երես՝ Թ+442: Փր. 6.—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հետազօտութիւն: Մասն Առաջին՝ Պատմական տեղեկութիւնք Սասնոյ վրայ: Թրգմ. Հ. Բ. Պ.: 1896: 8° Է+62: Փր. 1.—

ԻԲ. Կարրիէր Ա., Աւգայրու զրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ. Թրգմ. Հ. Գաբրիէլ Վ. Մէնէվիշեան. 1897. 8° էջ ԺԶ.+107: Փր. 1.50

ԻԳ. Ցովնանեան Հ. Ղ., Հետազօտութիւնք նախնեաց ուամկօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ. Մասն Ա. Ռամկօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897, 8° էջ Ը+272: Փր. 4.—

ԻԴ. Ցովնանեան Հ. Ղ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի եւն: Տետր Բ, 1897: 8° էջ Ա—Ը+273—522: Փր. 3.—

---

